# ՏԻԵԶԵՐԱԿԱՆ
# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ



## ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ

### 1

*Պատմութիւն, Տիեզերական պատմութիւն։*

1. ԱՄԵՆԱՅՆ ինչ որ փոփոխումն կրէ, տայ նիւթ պատմութեան՝ որ ոչ այլ ինչ է բայց ընծայութիւն փոփոխմանց այնորիկ․ ուստի ամենայն իրիք՝ բաց յԱստուծոյ որ առանց փոփոխութեան է, գոյ ինչ պատմութիւն։ Այլ յամենայն փոփոխելեաց միջի է մանաւանդ նիւթ պատմութեան մարդն՝ առաւել ըստ մտաւոր զօրութեանցն իւրոց, եւ իբրեւ ինքնիշխան միայն եւ իբրեւ ընկերական հաղորդութեան՝ որ ի բնութենէ իւր կարեւոր է նմա — յայն սակս մարդոյն պատմութիւն կոչի առաւելութեամբ իւր՝ պատմութիւն։ Յայսմ մարդկեղէն պատմութենէ որ ամբաւ իմն է, տիեզերական պատմութիւնն քաղէ զնշանաւոր դէպսն, այս ինքն զայնպիսի ինչ դէպս որ յայտնի իսկ ազդեցութիւն մեծ ի վերայ հանգամանաց համօրէն մարդկութեան կամ մեծի իրիք մասին նորա գործեաց, կապեալ զամենեսին ընդ գիտնաբար իմն կարգաւ ի մի գործարանաւոր բոլոր, առ ի նովաւ զփոփոխմունս նիւթական եւ մտաւոր յառաջադիմութեան (կամ ընկերական հանգամանաց) համօրէն ազգի մարդկան նկարելոյ։

2. Թէպէտ եւ համօրէն այսր մարդկեղէն պատմութեան դէպք՝ գործք մարդկեղէն ազատութեան են, այլ զի եւ Աստուծոյ գիտութիւնն եւ կամք այս ինքն աստուածեղէն տեսչութիւն նորա ի միասին ընթանան[1], յայն սակս պատմութիւնն է միանգամայն՝ պատմութիւն արտաքին գործոցն Աստուծոյ կամ տեսչութեան նորա, մանաւանդ տեսչութեանն ի Քրիստոս, այս ինքն՝ "Տակաւ յայտնումն կամ արդեամբք կատարումն յաւիտենական խորհրդոյն զոր ի վերայ մարդկութեանս ունի Աստուած, որ է՝ առնել անձին իւրում Քրիստոսիւ արժանի ինչ փառաւորութիւն ի մէջ մարդկան անդստին ի մարդկան իսկ ազատ արբանեկութենէ"[2]։ — Սմին իրի միայն ազդին քրիստոնէութեան կարէ իմանալ զմարդկեղէն

1 Եփես. Ա. 11։ 2 Մէլէր, Պատրաստ. Եկեղ. պատմ. Եփես. Ա. 9 — 10։ Եբր. Բ. 10։

պատմութիւնն որ յառաջին եւ որ յետոյ քան զՔրիստոս։ Քանզի առանց Քրիստոսի որպէս ինքնին իսկ մարդկութիւնն նոյնպէս համօրէն տիեզերական պատմութիւն չէր այլ ինչ՝ բայց առեղծուած ինչ անհնարին առ լուծանել, բաւիղ ինչ առանց ելից, մեծ ինչ աւերակ յորում երեւիցին հատակոտորք եւ քարինք փլուզեալք շինուածոյ իրիք մնացելոյ թերակատար[1]։

## 2

### Վախճան կամ շահ պատմութեան։

Շահն զոր պատմութիւնն տայ, կամ ընդհանրական է կամ մասնաւոր։

Ըստ առաջնոյն՝ օգտակար իմն եւ հեշտական օրինակաւ յագեցուցանէ զբնածին տենչանս մարդոյն գիտելոյ զազգի ազգի անցս իւրոյ մարդկեղէն ազգին որ ի դարս դարս իցեն դիպեալ, զչափաւոր խորհուրդս մտաց նորա լի առնէ օգտակար փորձիւք, յստակէ եւ ճշդագոյն գործէ զդատաստանս նորա ի վերայ մտաւոր եւ հանդերձեալ իրաց։ Այնու զի զպատճառսն շարժիչս մարդկեղէն գործոցն ցուցանէ, եւ զայն ամենայն որ զգործոցն զհետ եկին՝ ի մէջ բերէ, ամենեւին տպաւորիչ իմն օրինակաւ բայց առանց անձինն վնասու ուսուցանէ յառաջատես զգուշութիւն եւ խորհրդական իմաստութիւն, եւ ցուցանէ օրինակօք՝ կենդանագոյնս քան զամենայն վարդապետութիւն թէ իրաւունք եւ առաքինութիւն՝ եթէ աստ ուրեմն ոչ միշտ զարժան պատիւն եւ զվարձս գտանիցեն, անդէն ի խղճէ մտաց գործելեացն եւ յընդունելութենէ յապա եկելոց մարդկան որ ազատ ի կարեաց եւ ի նախանձուէ իցեն՝ առնուն ապաքէն ցապաք հատուցումն։ Նոյն ցուցանէ եւ զպատիւ մարդկեղէն բնութեան, քաջալերէ եւ յաճախէ իմն զզօրութիւնն զոր բնածին իմն ունի մարդն առ ի լինելոյ նմանող ամենայնի որ ազնուականն ինչ եւ լաւ իցէ։ — Բանայ պատմութիւնն դարձեալ թատր ինչ աստուածեղէն արդարութեան, այնու զի վկայէ երկուց մեծամեծ ազդեցութեանց որ յամենայն դարս լինիցին, յորոց մին զոյժ եւ զզօրութիւն կենդանութեան բարւոյն ցուցանէ, եւ միւսն զպատիժս չարին՝ որ թէպէտ անագան սակայն անվրէպ ի վերայ հասանէ. եւ սոցին ամբաւ օրինակս մի ըստ միոջէ յաճախէ։ Նմին իրի ամենայն ոք եւ ամենայն հասակ գտանէ ի նմին թելադրութիւն ի լաւ անդր, զգուշութիւն ի վնասակարացն, չափաւորութիւն ի յաջողութեան եւ հանգուցիչ մխիթարութիւն ի կարեաց եւ ի նեղութեան ժամանակի[2]։

1 «Ո՞ է արժանի բանալոյ զգիրսն եւ լուծանելոյ զկնիքս նորա. եւ ոչ ոք կարէր ոչ յերկինս եւ ոչ յերկրի եւ ոչ ի ներքոյ երկրի, ... բայց միայն առիւծն յազգէն Յուդայ ի զաւակէն Դաւթի ... գառանն զենեալ»։ Յայտ. Ե. 2 — 6։

2 Նշանաւոր իմն են վասն շահուց պատմութեան զոր Կիկերոն ասէ. «Պատմու-

Մանաւանդ շահ պատմութեան ձգի յամենայն իսկ կարգս եւ աշխարհս մարդկան, որ մասն որ ինչ եւ բարոյական կրթութեան իցեն ուշակալք: Քաղաքագէտն զխորհուրդս իւր, զկարծիս եւ զմտածութիւնս ընդ քար փորձութեան պատմութեանն պարտի շփել, եւ ցուցանիցէ նմա պատմութիւնն չլինել կարի վստահ ի տեսութիւնս[1], եւ զանյայտ չշնել ամենեւին սոցա. պատմութեամբ իրաւագէտն հասանէ ի գիտութիւն օրէնսդրութեանց որ կացին եւ որ այժմ կայցեն, սկզբանն նոցա եւ ազդեցութեան զոր ի լաւութիւն ազգացն գործեցին. ցուցանէ առն աստուածախօսի զսկիզբն, զյօրինումն, զտարածումն կրօնիցն եւ զայն ամենայն որ զնոցա զհետ եկին, յայտ առնէ նմին զմեծութիւն կոչմանն իւրոյ եւ մատուցանէ նմա ամենեւին իսկ հաւանեցուցիչ ցոյցս վասն վարդապետութեանցն իւրոց: Նոյն եւ զառնէ փիլիսոփայէ վասն ազգի ազգի աղանդացն գիտութեան առնլի է: Վասն գեղեցիկն գիտութեանց՝[2] որպիսի ինչ վասն ճարտարխօսութեան, բանաստեղծութեան եւ այլոց արուեստից՝ մատակարարէ նիւթ յորդ եւ առատ եւ բազում աջող վարդապետութիւնս հաստատեալս բազում դարուցն փորձիւ:

## 3

### Բաժանումն պատմութեան:

Տիեզերականն պատմութիւն է բոլոր ինչ յօղուածոյ. նմին իրի մարթի բաժանել ըստ նիւթոյ պատմութեանն, կամ ըստ ձեւոյ, եւ կամ ըստ ժամանակին:

Ա. Ըստ նիւթոյն բաժանի

1. Ի պատմութիւն քաղաքական, որ պատմէ զնշանաւոր անցս տէրութեանց որ յօրինակի անդ առաջնորդութեան նոցա, ի ներքին եւ յարտաքին համեմատութիւնս նոցա, ի սահմանս նոցա եւ յիշխանս նոցա եւ յայլ եւս ինչ նոյնպիսիս լեալ իցեն:

2. Ի պատմութիւն կրօնից, որ զայլ եւ այլ միտս ազգաց ազգաց զոր զգերագոյն էութենէն ունէին, եւ զպէսպէս գունակս պաշտելոյ զնա՝ ցուցանէ, բերեալ ի մէջ եւ զկարծիս զոր զվախճանէ եւ զյուսոյ մարդոյն ունէին:

3. Ի պատմութիւն մատենագրութեան, որ զծագումն, զյառաջադիմութիւն, զտարածումն, զառաւել կատարելութիւն եւ զխանգարումն գիտութեանց պատմէ:

թիւնն է վկայ ժամանակաց, լոյս ճշմարտութեան, կենաց յիշատակ, վարդապետ վարուց, հրեշտակ պատգամաւոր հնութեան„. եւ զոր Դիոդորոսն Սիկեղացի ասէ, թէ "է օգնական յառաջատեսն զգուշութեան, քաղաքային ճշմարտութեան, մայր փիլիսոփայութեան„. եւ զոր Կամպիզզան ասէ առ Լիւեայ. "Եթէ այս յիշատակարանք կենաց զքեզ ոչ հաւանեցուցանիցեն, ապա չգոն որ զքեզ հաւանեցուցանիցեն„:

1 Théorie.

2 Esthétique.

| ԷՋ | ՏՈՂ | ՎՐԻՊԱԾՔ | ՈՒՂԻՂՔ |
|---|---|---|---|
| 39 | 8 | Հաառակն | Հակառակն |
| 42 | 35 | զՊափղակոնացիս | զՊափղագոնացիս |
| 43 | 9 | Ցնիէատէր | Ցնիէսդէր |
| 84 | 34 | ի Սաւսդուքինեայ | յԱտրդանեայ |
| 86 | 40 | ԺՁ | ԺԷ |
| 167 | 48 | 1700 | 1600 |
| 169 | 11 | քերան | քերբոն |
| 222 | 30 | 1456 | 1450 |
| 475 | 40 | Boucolique | Bucolique |
| 518 | 15 | Մենենինոսի | Մենենիոսի |
| 532 | 35 | — 40 | — 480 |

# ՏԻԵԶԵՐԱԿԱՆ

# Պ Ա Տ Մ Ո Ւ Թ Ի Ւ Ն

## ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ

### 1

Պատմութիւն, Տիեզերական պատմութիւն։

1. Ամենայն ինչ որ փոփոխումն կրէ, տայ նիւթ պատմութեան՝ որ ոչ այլ ինչ է բայց ընծայութիւն փոփոխմանն այնորիկ. ուստի ամենայն իրիք՝ բաց յԱստուծոյ որ անանց փոփոխութեան է, գոյ ինչ պատմութիւն։ Այլ յամենայն փոփոխելեաց միջի է մանաւանդ նիւթ պատմութեան մարդն՝ առաւել ըստ մտաւոր զօրութեանցն իւրոց, եւ իբրեւ ինքնին առանձինն միայն եւ իբրեւ յընկերական հաղորդութեան՝ որ ի բնութենէ իմն կարեւոր է նմա — յայն սակս մարդոյն պատմութիւն կոչէ առաւելութեամբ իմն՝ պատմութիւն։ Յայսմ մարդկեղէն պատմութենէ որ ամբաւ իմն է, տիեզերական պատմութիւնն քաղէ զնշանաւոր դէպսն, այս ինքն զայնպիսի ինչ դէպս որ յայտնի իսկ ազդեցութիւն մեծ ի վերայ հանգամանաց համօրէն մարդկութեան կամ մեծի իրիք մասին նորա գործեաց, կապեալ զամենեսին զնոսա զխտնարար իմն կարգաւ ի մի գործարանաւոր բոլոր, առ ի նովաւ զփոփոխմունս նիւթական եւ մտաւոր յառաջադիմութեան (կամ ընկերական հանգամանաց) համօրէն ազգի մարդկան նկարելոյ։

2. Թէպէտ եւ համօրէն այսր մարդկեղէն պատմութեան դէպք՝ գործք մարդկեղէն ազատութեան են, այլ զի եւ Աստուծոյ գիտութիւնն եւ կամք այս ինքն աստուածեղէն տեսչութիւն նորա ի միասին ընթանան[1], յայն սակս պատմութիւնն է միանգամայն՝ պատմութիւն արտաքին գործոցն Աստուծոյ կամ տեսչութեան նորա, մանաւանդ տեսչութեանն ի Քրիստոս, այս ինքն՝ "Տակաւ յայտնումն կամ արդեամբք կատարումն յաւիտենական խորհրդոյն զոր ի վերայ մարդկութեանս ունի Աստուած, որ է՝ առնել անձին իւրում Քրիստոսիւ արժանի ինչ փառաւորութիւն ի մէջ մարդկան անդստին ի մարդկան իսկ ազատն արքանեկութենէ„[2]։ — Նմին իրի միայն ազգն քրիստոնէութեան կարէ իմանալ զմարդկեղէն

1 Եփես. Ա. 11։ 2 Մէլէր, Պատրաստ. Եկեղ. պատմ. Եփես. Ա. 9 — 10։ Եբր. Բ. 10։

պատմութիւնն որ յառաջն եւ որ յետոյ քան զՔրիստոս։ Քանզի առանց Քրիստոսի որպէս ինքնին իսկ մարդկութիւնն նոյնպէս համօրէն տիեզերական պատմութիւն չէր այլ ինչ՝ բայց առեղծուած ինչ անհնարին առ լուծանել, բաւիղ ինչ առանց ելից, մեծ ինչ աւերակ յորում երեւեցին հատակոտորք եւ քարինք փլուզեալք շինուածոյ իրիք մնացելոյ թերակատար[1]։

## 2

### Վախճան կամ շահ պատմութեան։

Շահն զոր պատմութիւնն տայ, կամ ընդհանրական է կամ մասնաւոր։

Ըստ առաջնոյն՝ օգտակար իմն եւ հեշտական օրինակաւ յագեցուցանէ զբնածին տենչանս մարդոյն գիտելոյ զազգի ազգի անցս իւրոյ մարդկեղէն ազգին որ ի դարս դարս իցեն դիպեալ, զչափաւոր խորհուրդս մտաց նորա լի առնէ օգտակար փորձիւք, յստակէ եւ ճշդագոյն գործէ զդատաստանս նորա ի վերայ մտաւոր եւ հանդերձեալ իրաց։ Այնու զի զպատճառսն շարժիչս մարդկեղէն գործոցն ցուցանէ, եւ զայն ամենայն որ զգործոցն զհետ եկին՝ ի մէջ բերէ, ամենեւին տպաւորիչ իմն օրինակաւ բայց առանց անձինն վնասու ուսուցանէ յառաջատես զգուշութիւն եւ խորհրդական իմաստութիւն, եւ ցուցանէ օրինակօք՝ կենդանագոյնս քան զամենայն վարդապետութիւն թէ իրաւունք եւ առաքինութիւն՝ եթէ աստ ուրեմն ոչ միշտ զարժան պատիւն եւ զվարձս գտանիցեն, անդէն ի խղճէ մտաց գործելեացն եւ յընդունելութենէ յապա եկելոց մարդկան որ ազատ ի կարեաց եւ ի նախանձուէ իցեն՝ առնուն ապաքէն ցապաք հատուցումն։ Նոյն ցուցանէ եւ զպատիւ մարդկեղէն բնութեան, քաջալերէ եւ յաճախէ իմն զզօրութիւնն զոր բնածին իմն ունի մարդն առ ի լինելոյ նմանող ամենայնի որ ազնուականն ինչ եւ լաւ իցէ։ — Բանայ պատմութիւնն դարձեալ թատր ինչ աստուածեղէն արդարութեան, այնու զի վկայէ երկուց մեծամեծ ազդեցութեանց որ յամենայն դարս լինիցին, յորոց մին զոյժ եւ զզօրութիւն կենդանութեան բարւոյն ցուցանէ, եւ միւսն զպատիժս չարին՝ որ թէպէտ անագան սակայն անվրէպ ի վերայ հասանէ. եւ սոցին ամբաւ օրինակս մի ըստ միոջէ յաճախէ։ Նմին իրի ամենայն ոք եւ ամենայն հասակ գտանէ ի նմին թելադրութիւն ի լաւ անդր, զգուշութիւն ի վնասակարացն, չափաւորութիւն ի յաջողութեան եւ հանգուցիչ մխիթարութիւն ի կարեաց եւ ի նեղութեան ժամանակի[2]։

1 «Ո՞ է արժանի բանալոյ զգիրսն եւ լուծանելոյ զկնիքս նորա. եւ ոչ ոք կարէր ոչ յերկինս եւ ոչ յերկրի եւ ոչ ի ներքոյ երկրի, ... բայց միայն առեւծն յազգէն Յուդայ ի զաւակէն Դաւթի ... գառանն զենելոյ»։ Յայտ. Ե. 2 — 6։

2 Նշանաւոր իմն են վասն շահուց պատմութեան զոր Կիկերոնն ասէ. «Պատմու-

Մասնաւորն շահ պատմութեան ձգի յամենայն իսկ կարգս եւ աշխատանս մարդկան, որ մասնաւոր ինչ եւ բարոյական կրթութեան իցեն ուշակալք: Քաղաքագէտն զխորհուրդս իւր, զկարծիս եւ զմտածութիւնս ընդ քար փորձութեան պատմութեանն պարտի շփել, եւ ցուցանիցէ նմա պատմութիւնն չլինել կարի վստահ ի տեսութիւնս[1], եւ զանյայտն չդնել ամենեւին առոյգս. պատմութեամբ իրաւագէտն հասանէ ի գիտութիւն օրէնսդրութեանց որ կացին եւ որ այժմ կայցեն, սկզբանն նոցա եւ ազդեցութեան զոր ի լուծութիւն ազգաց գործեցին. ցուցանէ առն աստուածախօսի զսկիզբն, զյօրինումն, զտարածումն կրօնից եւ զայն ամենայն որ զնոցա զհետ եկին, յայտ առնէ նմին զմեծութիւն կոչմանն իւրոյ եւ մատուցանէ նմա ամենեւին իսկ հաւանեցուցիչ ցոյցս վասն վարդապետութեանց իւրոց: Զնոյն եւ զառնէ փիլիսոփայէ վասն ազգի ազգի աղանդաց գիտութեան ասելի է: Վասն գեղեցիկն գիտութեանց[2] որպիսի ինչ վասն ճարտարխօսութեան, բանաստեղծութեան եւ ազատն արուեստից՝ մատակարարէ նիւթ յորդ եւ առատ եւ բազում աջող վարդապետութիւնս հաստատելոյ բազում դարուցն փորձիւ:

## 3

### Բաժանումն պատմութեան:

Տիեզերականն պատմութիւն է բոլոր ինչ յօդուածոյ. նմին իրի մարթի բաժանել ըստ նիւթոյ պատմութեանն, կամ ըստ ձեւոյ, եւ կամ ըստ ժամանակին:

Ա. Ըստ նիւթոյն բաժանի

1. Ի պատմութիւն քաղաքայինն, որ պատմէ զնշանաւոր անցս տէրութեանց որ յօրինակի անդ առաջնորդութեան նոցա, ի ներքին եւ յարտաքին համեմատութիւնս նոցա, ի սահմանս նոցա եւ յիշխանս նոցա եւ յայլ եւս ինչ նոյնպիսիս լեալ իցեն:

2. Ի պատմութիւն կրօնից, որ զայլ եւ այլ միտս ազգաց ազգաց զոր զգերագոյն էութենէն ունէին, եւ զպէսպէս զունակս պաշտելոյ զնա՝ ցուցանէ, բերեալ ի մէջ եւ զկարծիս զոր զվախճանէ եւ զյուսոյ մարդոյն ունէին:

3. Ի պատմութիւն մատենագրութեան, որ զծագումն, զյառաջադիմութիւն, զտարածումն, զառաւել կատարելութիւն եւ զխանգարումն գիտութեանց պատմէ:

թիւնն է վկայ ժամանակաց, լոյս ճշմարտութեան, կենաց յիշատակ, վարդապետ վարուց, հրեշտակ պատգամաւոր հնութեան,,. եւ զոր Դիոդորոսն Սիկիլացի ասէ, թէ "է օգնական յառաջատեւն զգուշութեան, քահանայ ճշմարտութեան, մայր փիլիսոփայութեան,,. եւ զոր Պոլիբիոսն ասէ առ Լիւկոս. "Եթէ այս յիշատակարանք կենաց զքեզ ոչ հաւանեցուցանիցեն, ապա չգոն որ զքեզ հաւանեցուցանիցեն,,:

1 Théorie.

2 Esthétique.

պեղարկութիւն յօրինէ զմիֆըն պատմութեան ազգաց (բաց յԵբրայեցւոցն), երբեմն զմեծ ինչ, երբեմն զփոքր մասն պատմութեան նոցա զրուէ, եւ չէ պատշաճ իբրեւ ժողովածոյս առասպելաց ամենեւին մերժել:

Ի բանիւն աւանդութիւնս պարտ է 1. զհանդերձանս զարդուն ի բուն նիւթոյ անտի ընտրել. 2. զբուն զառաջին հանգամանս ի յետին յաւելուածոց եւ ի կարծեաց զատանել, եւ 3. զնոյն ըստ մտաց եւ ոգւոյ առաւելագոյն հնութեանն իմանալ եւ մեկնել:

Գ. ԳՐՈՎՆ ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆՔ. որոց բազում իմն ազգք են.

1. Յիշատակարանք հանդերձ արձանագրով, կամ արձանագիրք ի յիշատակարանաց վերայ. որք կամ հրապարակաւ իմն գրեալ են, եւ կամ առանձինն ուրուք կամօք. հրապարակաւ են, որ տէրութեանն հրամանաւ լինէին, որպիսի ինչ կիծն պարոսեան (յօրինեալ յամի 262 նախ քան զՔր.), կարիացին, եւ աղուղիտեանն, սիւնն Գուիլեայ, յիշատակարանն Անկիւրայ եւ այլ եւս նոյնպիսիք:

2. Գանձկանք են երեւելի աղբեւրք ազգահամարի, ժամանակագրութեան, կարգի պայազատութեան. դարձեալ հաստատեն զաւհեկանք կամ յատակագոյն գործեն զերկրպագական դէպսն եւ զկայեն վասն հանգամանաց կրթութեան ազգի միոյ: Մանաւանդ պիտոյ են նոքա վասն այնց ժամանակաց պատմութեան, յորոց առ կաւաւոր ինչ մատենագիրք կամ հատակոտորք ինչ մատենից նոցա մնացին:

3. Ժամանակագրութիւնք. որք վաղ իսկ ի բուն հին ժամանակս ազգաց բազմաց յետ մտանելոյ ի նոսա նշանագրացն հանգամանաց եւ նիւթոց կարեւորաց առ ի գրել՝ սովորական իմն էին: Այդքին երբեմն հրապարակաւ կամ տէրութեանն հրամանաւ գրէին (դիւանագիրք) եւ առ ազգաց ոմանց (մանաւանդ առ արեւելեայ ազգս) նոքին եւեթ մնացին միշտ իբրեւ մատեանք պատմութեան:

4. Բուն ճառքանք պատմագրոց՝ յորս ոչ միայն զդէպսն ըստ ժամանակացն կարգի պատմեն, այլ եւ զզօդ եւս զիպացն պատահելոց իմաստութեամբ ցուցանիցեն (տես Համառօտ 3. Բ. 5:). այնպէս զի մարթ եւ պարտ իցէ ընտրել զդէպսն ի զօդուածոյ նոցա առ միմեանս, ի մեկնութենէ եւ ի դատաստանաց եղելոց զնոցանէ: — Մատենագիրք կամ տոհմայինն են կամ այլազգի, ժամանակակից կամ յետին:

Յարկանելն զսոսա ի կիր պարտ եւ պատշաճ է քննել 1. ըստ մատենին՝ թէ արդեւք արդարեւ մատեանն յառնէ անտի մատենագրեալ իցէ որոյ մատեանն համարեալ է, եւ այն ոչ եղծէ ի միում կամ ի միւսում մասին մատենին, այլ յամենայն իսկ մա-

ունան, ուստի ոչ ինչ օտար յաւելուած ի ներքս խառնել կայցէ (որ են վաւերականութիւն եւ անաչառութիւն մատենին). զայս պարտ է յարտաքին եւ ի ներքին պատճառացն ցուցանել. 2. ըստ մատենագրին՝ թէ արդեւք ըստ հանգամանացն իւրոց (իբրեւ վկայ ականատես կամ ականջալուր) եւ ըստ ուսումնական հրահանգաց կարող եւ ձեռնհաս էր նա զճշմարիտ հանգամանս իրացն պատմելոյ, եւ թէ արդեւք մարթ իցէ ընծայել նմա զայս պահանջեալ առաքինութիւն մտաց՝ եթէ կամի եւս նա ասել զճշմարտութիւնն (որ է լինել մատենագրին արժանի հաւատարմութեան):

Չիք ինչ հին պատմագրութիւն որ զայս եւ զայլ եւս ամենայն մանր պահանջմունս անաչառն քննականութեան կարիցէ հանել, որպէս գրոց սրբոց պատմագրութիւնն, եթէ իբրեւ ի լոկ մարդկեղէն մատենագրութիւն ինչ եւս ի նա հայիցիմք: Նմին իրի յամենայն իսկ ընթացս հին պատմութեան է կանոն ընտրութեան ճշմարտութեան բանից պատմագրացն հնոց, որոց մեծ մասն դուն ուրեք եւ ոչ յամենայն մասունս պատմութեանն իւրեանց կարեն անկանել ընդ ճիշդ ինչ քննութեամբ: Իսկ վասն հնագոյն պատմութեան (ի սկզբանէ մարդկութեան գրեթէ մինչեւ ցկատարած Բաբելական-Ասորեստանեաց-Քաղդէական պետութեանն) զգիրս սուրբս գրեթէ միայն աղբեւր պատմութեան մարթի համարել. մինչ զի բանք նորա որ առ անդ զազգաց ազգաց ի կարգս պատմութեան աստուածպետական ազգին գտանիցին՝ իբրեւ աստեղք իմն են որ առ սակաւ մի զթանձրամած մութն որ ի պատմութիւնս ժամանակացն այնոցիկ իցէ՝ առ անդ փարատիցեն:

## 5

### Օգնական գիտութիւնք:

Ամենայն ինչ որ դիպիցի՝ ի տեղւոջ եւ ի ժամանակի դիպի, նմին իրի վասն ճշգիւ իմանալոյ թէ զինչ ինչ դիպեցաւ, կարեւոր հարկ է գիտել թէ ուր ուրեք եւ երբ այն դիպեցաւ: Զառաջինն վճարէ Աշխարհագրութեանն ուսումն եւ զերկրորդն՝ Ժամանակագրութեանն, որ իբրեւ երկու աչք պատմութեան են:

Ա. Աշխարհագրութիւնն (բնականն եւ մանաւանդ պատմականն կամ քաղաքային) զերկիր բնակութեան մարդկանն ըստ իւրաքանչիւր բաժանման նոցա՝ առ հասարակ իմն ըստ իւրում արտաքին եւ ներքին հանգամանացն, զդիր եւ զանուանս նշանաւոր տեղեաց, հանդերձ բնական եւ քաղաքային փոփոխմամբքն նկարէ վասն զպատմութիւն դիպացն որ ի նոսա դիպեցան՝ յստակագոյն եւ տեսանելի իմն առնելոյ: Ուստի յայտ իմն է թէ ըստ երեւելի ինչ փոփոխման քաղաքային հանգամանացն առնու եւ աշխարհագրութիւնն փոփոխումն, եւ ըստ ընթացից ժամանակի (քաղաքային) պատմութեան՝ բաժանի եւ աշխարհագրութիւնն ի հին, ի միջին եւ ի նոր:

Բ. Ժամանակագրութիւնն (պատմական) է գիտել թէ ցեարդ իւրաքանչիւր ազգք արդեամբք զժամանակն բաժանեցին։ — Եթէ սովորական միութիւնքն ժամանակի՝ այս ինքն ամք կարգաարկցին ի թիւ՝ սկսեալ յերեւելի ինչ դիպաց — կոչին Թուականութիւն (եւ սկիզբն նորա՝ գլուխ ժամանակի[1])։

Երեւելիք ի Թուականութեանց են յաջորդքս։

1. Հեճրա, Թուականութիւն Տաճկաց յամէ 622, Յուլ. 16, յետ Քրիստոսի, յորում ժամանակի գնաց Մահմէտ փախստեայ։

2. Հայոցն Թուականութիւն յամէ 551 յետ Քր. որ է ամ նորոգման տումարին առ Մովսիսիւ կաթուղիկոսիւ։

3. Ինդիկտիոնք որ սկսանին յամէ 313 Սեպտեմբ. 1 յետ Քր. մի մի Ինդիկտիոն բովանդակէ 15 ամ. քանզի յամի անդ 313 կարգեաց Կոստանդիանոս հնգետասան հնգետասան ամ առնել քննութիւն եւ ըստ քննութեանն արկանել հարկս ի վերայ սահմանաց համօրէն հռոմէական պետութեան։

4. Դիոկղետիանեան Թուականութիւն յամէ 282 Օգոստ. 29 յետ Քր. որ է առաջին ամ թագաւորութեանն Դիոկղետիանոսի. զայս Թուականութիւն քրիստոնեայք՝ մարտիրոսաց Թուականութիւն կոչէին, որով ցայժմ հին Եգիպտացիք (Ղպտիք) վարին։

5. Հիւպատոսութեան Թուականութիւն. սովորութիւն էր մանաւանդ յետ Քրիստոսի յամաց անտի հիւպատոսացն զժամանակն որոշել կամ որոց ի նմին ամի հիւպատ կացեալ իցեն, եւ կամ յետ ելանելոյ եւս ուրուք ի հիւպատոսութենէն համարէին ըստ ամացն որ անցին յետ այնորիկ՝ կարգաւ[2]. եւ տեւէր այն սովորութիւն մինչեւ ց6երորդ դար։ — Նոյնպէս հասարակաց իմն սովորութիւն էր ըստ ամաց թագաւորութեան իւրաքանչիւր կայսերաց կամ թագաւորաց զժամանակն որոշել որով վարի եւ Մովսէս Խորենացի։

6. Սելեւկեանց Թուականութիւն յամէ 311 կամ 312 Հոկտ. 10, յառաջ քան զՔր. յորս առեալ Սելեւկոս զԲաբելոնիա սկսաւ թագաւորել. մի գիրք Մակաբայեցւոց զառաջին թիւն արկանեն ի կիր եւ միւսն զերկրորդն։ Այս Թուականութիւն որ եւ Յունական կամ Աղեքսանդրեան Թուականութիւն եւ կամ Թուականութիւն Դաշանց կոչի, այնու զի ի դաշինս միշտ նովին վարէին, էր սովորական իմն Թուականութիւն Հրէիցն մինչեւ ց11երորդ դար յորում սկիզբն արարին յարարչութենէ աշխարհի արկանել զտարիսն ի թիւ — ցայժմ նովին վարին Ասորիք յեկեղեցական իրս։ — Գոյր եւ Թուականութիւն ինչ Անտիոքեան յամէ 49 Սեպտեմբ. 1 յառաջ քան զՔրիստոս որով եւ Եւագրիոս եկեղեցական պատմագիր վարի։

1 Époque. 2 Μετὰ τὴν ὑπατείαν, post consulatum.

7. Շինուած Հռոմ քաղաքի (ըստ Վառոնի) յամէ 753 կամ (ըստ Կատոնի երիցու) 752 յառաջ քան զՔր.: ԶՎառոնի զհետ երթան մեծ մասն պատմագրացն Հռոմայեցւոց:

8. Ողոմպիադացն թուականութիւն յամէ 776 Յուլ. 25 յառաջ քան զՔր.: Մի մի Ողոմպիադ (տօն ողոմպիական խաղուց) բովանդակէ ամս 4:

9. Բիւզանդեանն (Կոստանդնուպօլեան) կամ Արարչութեան թուականութիւն որով բազում ժամանակս Յոյնք եւ Ռուսք վարեցան, եւ ցայժմ իսկ արկանեն ի կիր Աղբանացիք, Սերուիացիք եւ Նոր Յոյնք՝ է յամէ անտի արարչութեան (Ադամայ) 5508 ամ (ըստ հաշուոյ իմիք ժողովելոյ յԵօթանասնիցն Թարգմանութենէ) մինչեւ ցսկիզբն Դիոնիսեան կամ Քրիստոսի թուականութեան: — Յոյնք թողին զայս թուականութիւն ի ժամանակէ անտի Տրուղղեան ժողովոյ (692) եւ Ռուսք յամի 1700:

10. Իսկ թուականութիւն ամաց որ յառաջ եւ յետոյ քան զԾնունդն Քրիստոսի՝ ճշգրտագոյն է քան զնա եւ քան զամենայն պարզագոյն եւ դիւրագոյն միանգամայն, որ թուէ յամէ անտի մարմնաւորութեանն Քրիստոսի սկսեալ յամէ անտի Ծննդեանն նորա որ թէպէտ եւ ի Դեկտ. ամսեանն էր, սակայն վասն յառաջագոյն լինելոյ յղութեանն՝ ի Յունուար ամսոյ նորին տարւոյ առնու սկիզբն առաջին ամ թուականութեանն այնորիկ, եւ յայնմ ամէ յառաջ կոյս ի խոնարհ եւ յետս ի վեր առնի հաշիւ ամաց: — Արդարեւ վայելուչ է այս օգուտ քրիստոնէութեան որ չգիտէ մեծ ինչ քան զայն եւ նշանաւոր վայրկեան եւ կամ դէպս ինչ ի համօրէն մարդկեղէն պատմութեան զոր կարիցէ առնել գլուխ ժամանակի: Եւ որպէս կենդրոն իմն մարդկեղէն պատմութեան է Քրիստոս, նոյնպէս եւ միջավայր ամենայն ժամանակի պատմութեանն, որ յերկուս իմն հատանի Քրիստոսիւ. մի կէս նորա ժամանակ պատրաստութեան առ Քրիստոս է, եւ միւս կէս՝ ժամանակ ընդունելութեան նորա[1]:

Այլ այս առանց իրիք երկմտութեան է թէ այն առաջին ամ ուստի այս թուականութիւն առնու սկիզբն՝ ամօք ինչ յետնագոյն է քան զճշմարիտ ամ Ծննդեանն Քրիստոսի. եւ որպէս բազմաց հաւանութեան է՝ 7 ամօք (= 747 շին. Հռոմայ) թերեւս սակաւագոյն եւս բայց ոչ աւելի քան զայն. այնպէս զի փոխանակ ըստ սովորութեան համարելոյ՝ այս ամ 1848 պարտ իցէ հաշուել 1855: — Նմին հակառակ փոխանակ նոյնպէս ըստ յաճախ սովորութեան համարելոյ 4004 ամս յառաջ քան զՔր. պարտ իցէ հաշուել 4004 — 7 = 3997, եւ կամ վասն բոլորակութեան (ի մէջ այլ եւ այլ կարծեաց որք յաւելուն կամ 3 կամ 4 կամ 6 կամ 7 զմիջինն ընտրելով) 4004 — 4 = 4000 ամ յառաջ քան զՔրիստոս:

1 Գաղ. Դ. 3: Կողոս. Բ. 8: Տես Ս. Գր. Լուս. առ Ադամթ. էջ 300: Եղիշէ էջ 231—232:

Սոյն քրիստոնեան թուականութիւն յորժամ առանց ուղղելոյ արկցի ի կիր, որպէս է իսկ սովորութիւն վասն յանհնարին շփոթութեանց ապրելոյ՝ անուանեալ կոչի Սովորական կամ Դիոնիսեան թուականութիւն ի Դիոնիսոսէ Կարճէ՝ հօրէ վանաց ի Հռոմ որ այնմ նախ եղեւ հնարագիւտ (յամի 532), եւ տակաւ սփռեալ տարածեցաւ յազգս քրիստոնէից. հասարակաց իմն էր այնուհետեւ ի 11 եւ յ12 դարու յորս սկսեալ էր եւ քահանայապետացն Հռոմայ վարել նովին:

Որպէս զբուն հնագոյն պատմութիւն մարդկութեան՝ նոյնպէս եւ զժամանակագրութիւն նորա ոչ ուստեք գոյ ստուգութեամբ հանել բայց ի գրոց սրբոց: Թէպէտ եւ ի գրոց սրբոց եւս ժամանակագրութեան, վասն զի ոչ ամենայն յայտնի նշանակեալ կան ամացն համեմատութիւնք, կարծեօք իմն հարկ առնի զհամեմատութիւնսն լնուլ՝ սակայն չէ այն խափան տակաւին զնոյն ժամանակագրութիւն իբրեւ ճշդագոյն եւ ճշմարտագոյն քան զամենայն առասպելական ժամանակագրութիւնս համարելոյ՝ զոր արտաքինք ի մատենագրացն ընդ առասպելախառն պատմութեանցն իւրեանց հիւսեն [1], եւ առնլոյ իբրեւ հաստատուն իմն կէտ եւ հիմն համեմատութեան վասն համօրէն ժամանակագրութեան հին պատմութեանն՝ զոր տումարս բովանդակէ: — Պատկեր այսր հին ժամանակագրութեան եւ օրինակ ամփոփելոյ զ4000 ամն նորա որ յիշեցան՝ է այսպէս:

Նոյն միութիւն որով ժամանակագրութիւնս չափի՝ է ամն արեգական: Թէ արդեւք ամն յառաջ քան զՄովսէս՝ ըստ լուսնական թէ ըստ արեգական ամաց անկանէր ի համար՝ չէ մարթ ի բանից անտի գրոց ցուցանել: Սակայն յօրէնսդրութիւնս անդ Մովսեսի ամսագլուխն կամ նոր լուսինն մանաւանդ նշանաւոր իմն երեւի [2], ուստի գոյ առնուլ ի միտ թէ սովորութիւն էր լուսնական ամսովք որ ի 28 աւուրց կան՝ վարել: Վասն զամն որ յ12 լուսնական ամսոց կայր՝ ընդ տարւոյ արեգական միաբանելոյ նպաստ լինէին օրէնք ինչ Մովսիսի որ հրամայեն որոյ մի գարւոյ յերկրորդում աւուր պասեքատօնին մատուցանել [3]: Նմին իրի պարտ էր քահանայիցն մուծանելով նահանջ աւուրս հոգ յանձին ունել զի պասեքատօնն ոչ յառաջ եւ ոչ յետոյ քան զժամանակ հասանելոյ գարւոյն լինիցի: Ցայն տակս սկիզբն եւ երկայնութիւն տարեացն չմարթէր բազում ինչ իւիք մնալ յետնեալ, եւ հարկ է մեզ ընդ անուամբ ամացն որ յետ Մովսիսի իցեն՝ զմտաւ ածել միութիւն ինչ որ ի մերմէ տարւոյ չիցէ ինչ այնչափ այլակերպ: Եւ քանզի չիք ինչ ակնարկութիւն ի գիրս թէ յառաջ քան զՄովսէս կարճագոյն լեալ իցէ ամն, ի դէպ է թէ եւ յառաջ քան զնա չիցէ ինչ այնչափ կարի կարճագոյն քան որչափ ինչ առ նովաւ եւ յետ նորա էր: Անդէն վաղ իսկ յամենեւին ի բուն հին գիրս գրոց սրբոց տարին է միութիւն ժամանակի որով անջրպետութիւնք ժամանակի չափին:

1 Ծանօթ իմն է թէ որպէս պարծիցին Քաղդէացիքն ունել զննութիւնս աստեղագիտութեան ի 40,000 ամաց յառաջ քան զԱղեքսանդրոս Մակեդոնացւոց թագաւոր — ըստ նոցին Քաղդէացւոցն մատենագրաց՝ 10 պարագլխութիւնքն որ յառաջ քան զՋրհեղեղն էին, տեւեցին շարս 120 եւ շար մի ի շարիցն էր = 3600 ամաց: Հնդիկք համարին 300,000,000 ամս, Ճապոնք՝ 2,500,000, տակաւ ինչ նուազագոյն Սինէացիքն. Պարսիկք՝ 100,000, Եգիպտացիք՝ 34,000, Փիւնիկեցիք՝ 30,000, Ետրուրիացիք՝ 12,000:

2 Թուոց ԻԸ. 11 — 15:

3 Ղեւտ. ԻԳ. 10 — 15:

Ընդհանրականութիւն ժամանակի յաջորդութեանց անտի Ադամայ մինչեւ ցմահն Յովսեփայ՝ ամփոփի ի գումարութեանս թուոց ամաց կենաց նոցա որ եղեն յառաջ քան զծնանել զնի յորդւոց իւրեանց: Որով կարգի շղթայ ինչ առանց ընդ մէջ հատանելոյ, որոյ առաջին օղ՝ Ադամ է, եւ վերջին՝ Յովսէփ: Գումարութիւն ամաց կենաց իւրաքանչիւր ուրուք ի նոցանէ յառաջ քան զծնունդ յաջորդին իւրոյ՝ տայ զգումարութիւն ամաց համօրէն իսկ ամփոփութեան ժամանակին որ է յԱդամայ ցՅովսէփ: Ի ծնանել Ադամայ զորդի իւր էր ամաց 130, Սէթ 105, Ենովս 90, Կայնան 70, Մաղաղայէլ 65, Յարէդ 162, Ենովք 65, Մաթուսաղա 187, Ղամէք 182[1]: Նմին իրի Նոյ ուստր Ղամեքայ 1056 ամօք յետոյ քան զԱդամայ արարչութիւնն ծնաւ: Այս թիւ է գումարութիւն ամենայն ամացն որ մի ըստ միոջէ կարգեցան: Ջրհեղեղն որ ի 600որդ ամի կենացն Նոյի եղեւ՝ պատահէ յամի (1056 + 600 =) 1656: Ի 500որդի ամի կենացն Նոյի ծնաւ Սէմ, Քամ եւ Յաբեթ[2]: Քանզի չիցէ նշանակեալ թէ երկքին որպէս միանգամայն ծնան, այլ չէ առանց հաւանութեան՝ թէ Սէմ միայն իբրեւ նահապետ Եբրայեցւոցն յառաջագոյն անուանի, թէպէտ եւ Յաբեթ եւ Քամ էին յառաջագոյն քան զնա ծնընդեամբ, որպէս կարգ իսկ [illegible] ազգահամարին նոցա[3] ցուցանէ: Նմին իրի զծնունդն Յաբեթայ ի դէպ է դնել յամի (1056 + 500 =) 1556 յետ արարչութեանն Ադամայ, եւ զծնունդն Սեմայ երկուք ամօք յետոյ՝ յամի 1558: Ի ծնանել Սեմայ զԱրփաքսադ էր նա ամաց 100, Արփաքսադ ի ծնանել իւրում զՍաղա՝ էր ամաց 35, Սաղա ի ծնանել իւրում զԵբեր՝ 30, Եբեր ի ծնանելն զՓաղէկ՝ 34, Փաղէկ ի ծնանելն զՌագաւ՝ 30, Ռագաւ ի ծնանել իւրում զՍերուք՝ 32, Սերուք ի ծնանել իւրում զՆաքովր՝ 30, Նաքովր ի ծնանել իւրում զԹարա՝ 29, Թարա ի ծնանել իւրում զԱբրահամ՝ 130[4]: Գումարութիւն ամացս այսոցիկ որ նշանակեցան՝ է միահամուռ 450 ամ ի ծննդենէ անտի Սեմայ մինչեւ ցծնունդն Աբրահամու. ապա ամ ծննդեանն Աբրահամու է (1558 + 450 =) 2008 յետ արարչութեանն Ադամայ[5]:

Աբրահամ ծնաւ զԻսահակ որդի իւր ամաց 100[6], ապա ծնաւ Իսահակ յամի (2008 + 100 =) 2108: Իսահակ ի ծնանել իւրում զորդի իւր զՅակոբ էր 60ամենի[7]: Ապա ամ ծննդեանն Յակոբայ էր 2168 յետ արարչութեանն Ադամայ: Թէ 91 ամաց էր Յակոբ յորժամ ծնաւ զորդի իւր զՅովսէփ՝ գտանեմք ի համեմատութեանց բազում բանից զորոց այսպէս: Յովսէփ ի մեկնել իւրում զերազն փարաւոնի էր 30 ամաց[8]: Յետ անցանելոյ եւթն ամացն առատութեան[9] յերկրորդ ամի սովոյն ուստի յետ 9 ամաց յ39երորդ ամի կենացն Յովսեփայ՝ էր Յակոբն 130 ամաց[10], եւ յառաջ քան զ39 ամ ի ծնանել իւրում զՅովսէփ էր ամաց 91: Ապա ուրեմն ծնաւ Յովսէփ յամի (2168 + 91 =)

1 Ծնն. Ե. 3—29:
2 Ծնն. Ե. 31:
3 Ծնն. Ժ: Տես եւ ԺԱ. 10. Ժ. 21:
4 Ծնն. ԺԱ. 10—26:
5 Ժամանակագրութիւն գրոց սրբոց յԱդամայ մինչեւ ցծնունդն Աբրահամու այլ եւ այլ իմն է ըստ երից գլխաւոր օրինակաց գրոց. ըստ

| Եւթ. | Սամար. | Եբր. | |
|---|---|---|---|
| 2262. | 1307. | 1656. | յԱդամայ մինչեւ ցՋր. |
| 1132. | 1002. | 352. | ի Ջրհեղեղէ ցծն. Աբր. |
| 3394. | 2309. | 2008. | միահամուռ յԱդամայ ցծնունդն Աբրահամու: |

Որպէս նշմարի իսկ, յերեցունց սոցա բազմագոյնն է միշտ Եւթանասնիցն. միջին Եբրայեցին սովորել մօտ նմա, միջին Սամարացին. ի վերջոյ կարճագոյն քան զամենայն է Եբրայեցին, եւ միշտ մօտ նմա Սամարացին: Չիք ինչ արդարեւ Եկեղեցւոյ վասն միոյ ի սոցանէ. Եբրայեցւոյն թեթեւագոյն եւ սովորական քան զայլսն է:

6 Ծնն. ԻԱ. 5:
7 Ծնն. ԻԵ. 26:
8 Ծնն. ԽԱ. 46:
9 Ծնն. ԽԱ. 47:
10 Ծնն. ԽԷ. 9:

խուռամ Յովաթամայ[1]։ Եզեկիա էր թագակից հօրն իւրում երկու ամ[2]։ Նմին իրի զգուշութիւն թուոյ ամաց թագաւորացն որ ի ժամանակէ անտի բաժանմանն իցեն՝ պարտ է նուազեցուցանել, առ Յովաթամայ երկու ամս և առ Յովասայ նոյնպէս և առ Ամասիայ նոյնպէս ամս երկուս։ Ի դէպ է և երկուս ևս ամս թագակից թագաւորութեան առ Ոզիայ յաւելուլ որ բորոտեալն էր յայնժամ[3]։ Արդ եթէ երկուս ամս վասն թագակից լինելոյ Յովաթամայ ընդ Ոզիայ հօրն իւրոյ ընդունիցի ոք՝ ապա ընդ ամենայն 8 ամք ի բաց ելանեն ի գումարութենէ 261 ամաց ամենայն թագաւորացն Յուդայ․ և այնպէս ամն 253 լինի բաժանման թագաւորութեանն՝ մինչ առ կործանմանն Սամարիայ։ Ապա թէ ոք վասն բորոտութեանն Ոզիայ ամս թագակցութեան չընդունիցի՝ սակայն կարող է երկուս ամս յայն սակս նուազեցուցանել՝ զի ի հաշուի անդ ամենայն ամքն իբրև լի և կատարեալ ամք համարեալ են․ ուստի յայնչափ երկայնամիտ ժամանակէ երկուս ամս ի բաց հանել վասն ամացն որ ոչ լի և կատարեալ ամք իցեն և իբրև կատարեալ հաշուեալ՝ սակաւ և դիւրին ինչ է։

Յետ կործանմանն Սամարիոյ՝ թագաւորեաց Եզեկիա 23 ամ, Մանասէ 55, Ամոն 2, Յովսիա 31, Յովաքազ ամիսս 3, Յովակիմ ամս 11, Յովաքիմ ամիսս 3, Սեդեկիա ամս 11։ Ի մետասաներորդ ամի Սեդեկիայ, ուստի յամի 387 լինի բաժանման թագաւորութեանն՝ կործանեցաւ Երուսաղէմ[4]։ Ի ժամանակէ անտի կործանմանն Երուսաղեմի՝ որոշումն ժամանակի գիտաց պատմելոց ի գիրս սուրբս՝ հայի յորոշումն անդր ժամանակի ազգաց ազգաց օտարաց ընդ որոց ունէին հաղորդութիւն Իսրայէլացիքն, այսինքն յամս թագաւորութեան Պարսից, Յունաց և Եգիպտացւոց թագաւորացն։ Կիւրոս արքայ Պարսից ետ Հրէիցն յառաջնում ամի թագաւորութեան իւրոյ հրաման դառնալ յաշխարհ իւրեանց[5]։ Առաջին ամն միահեծան թագաւորութեանն Կիւրոսի ի վերայ Մարաց և Պարսից լինի վախճանին Դարեհի Մարի կամ Կիաքսարայ Բ․ որ լինի զԲաբելոն (539 կամ 538 յառաջ քան զՔրիստոս) առնլոյ թագաւորեաց անդէն ամս երկուս՝ պատահէ յամն 536 յառաջ քան զՔրիստոս։ Յայսմ ամի կատարեցան 70 ամք գերութեանն[6]։ Զսկիզբն գերութեանն մարթ է դնել ի չորրորդ ամին Յովակիմայ[7]։ Յայն սակս չորրորդ ամն Յովակիմայ պատահէ յամն (536 + 70 =) 606 յառաջ քան զՔրիստոս։ Յովակիմ չորիւք ամօք կանխագոյն, ապա յամի 610 յառաջ քան զՔրիստոս նստաւ թագաւոր։ Յայսմ ամենայնէ ի մէջ գայ թէ Յովակիմ 365 ամօք յետոյ քան զբաժանումն թագաւորութեան եհաս ի թագաւորութիւն։ Ապա բաժանումն թագաւորութեան պատահէ յամն (610 + 365 =) 975 յառաջ քան զՔրիստոս։ Եւ քանզի ժամանակն որ ի միջի կայ բաժանման թագաւորութեանն յամէ անդ վախճանելոյն Սողոմոնի, որ է 3028 ամն լինի Ադամայ, մինչև ցչորրորդ ամ թագաւորութեան Յովակիմայ ժողովէ 369 ամ, և զ70 ևս ամս գերութեանն մինչև ցԿիւրոս ի վերայ յաւելեալ՝ այնուհետև գումարութիւն ամացս այսպիսի 3467 լինի Ադամայ՝ է առաջին ամն Կիւրոսի։ Կիւրոս թագաւորեաց ամս 7 և վախճանեցաւ յամի 529 նախ քան զՔրիստոս։ Յետ Կիւրոսի թագաւորեաց Կամբիւսէս ամս 7 և ամիսս 7, Զմերդիս ամիսս 7, Դարեհ Ա․ Վշտասպեան ամս 36, Քսեր-

1 Տես Դ․ Թագ․ ԺԴ․ 1․ համեմատեալ ընդ Դ․ Թագ․ ԺԳ․ 10։
2 Տես Դ․ Թագ․ ԺԵ․ 1․ և ԺԸ․ 1։
3 Դ․ Թագ․ ԺԵ․ 5։
4 Դ․ Թագ․ ԻԴ․ 18։
5 Բ․ Եզր․ Ա․ 1։
6 Երեմ․ ԻԵ․ 12․ ԻԹ․ 10։
7 Տես Դ․ Թագ․ ԻԴ․ 1, 2․․․։

Քսէս Ա. ամ 21, Արտաշէս Ա. Երկայնաբազուկ ամ 40, Քսերքսէս Բ.
ամիսս 2, Սոգդիանոս ամիսս 7, Դարեհ Բ. Հարճորդի ամ 19,
Արտաշէս Բ. Ուշեղ ամ 46, Արտաշէս Գ. Ովքոս ամ 21, Արշէս ամ
3, Դարեհ Գ. Կոդոմանոս ամ 4: Քակեցաւ թագաւորութիւնն Պարսից
յԱղեքսանդրէ Մծէ եւ սպանաւ Դարեհ Կոդոմանոս: Գումարութիւն
այսց ամաց թագաւորութեան թագաւորացն Պարսից ի մահուանէ անտի
Կիւրոսի մինչեւ ցմահն Դարեհի Կոդոմանայ՝ ժողովէ ամ 199 միով
ամաւ ընդհատ: Արդ վերջին ամի թագաւորութեան Դարեհի Կո-
դոմանայ կամ ամի կործանման միահեծան իշխանութեանն Պարսից՝ 199
ամօք մերձենայ մօտագոյն ի ծնունդն Քրիստոսի եւ նոյնչափ ամօք հեռա-
նայ յարարչութենէն Ադամայ: Նմին իրի զկործանումն պետութեանն
այնորիկ պարտ է գնել յամի (529 — 199 =) 330 նախ քան զՔրիս-
տոս եւ (3467 + 7 + 199 =) 3673 յետ Ադամայ:

Յունական թուականութիւնն որով վարին առաջին գիրք Մակա-
բայեցւոց՝ առնու սկիզբն յամէ 312 նախ քան զՔրիստոս, որպէս կան-
խագոյն ասացաւ: Իսկ երկրորդ գիրք Մակաբայեցւոցն զամի 311 նախ
քան զՔրիստոս համարի առաջին ամ Յունական թուականութեանն:
Արդ ամի Յունաց 137 զոր Ա. Գլուխ 11. Ա. գրոց Մակաբայեցւոցն
յիշէ՝ է ամի (312 — 137 =) 175 յառաջ քան զՔրիստոս: Կիւրոս
վախճանեցաւ յամի 529 յառաջ քան զՔրիստոս, այսպէս 354 ամօք
կանխագոյն: Յայն սակս իսկ ամի 175 նախ քան զՔրիստոս՝ է ամի յետ
Ադամայ (3474 + 354 =) 3828: Արդ եթէ զամսն 175 մինչեւ ցՔրիս-
տոս ի վերայ դը յաւելուցուս՝ դայ ելանէ թիւն (3828 + 175 =)
4003 յետ արարչութեանն Ադամայ իբրեւ ամ ծննդեանն Քրիստոսի:
— Բայց որպէս կանխագոյն ասացաւ, Դիոնիսիոս Կարճն զամ ծննդեանն
Քրիստոսի համարեալ է համեմատ 754 կամ 753 ամի շինութեան Հռով-
մայ (ըստ Վառոնի). բայց քանզի ըստ Յովսեպոսի վաղ իսկ քան զայն
ամ շինութեան Հռոմայ մեռեալ էր Հերովդէս, ուր ի պատմութեան անդ
մատթեան աւետարանին տակաւին կենդանի գնի Հերովդէս ի ծնանել
Փրկչին. յայն սակս յիրաւի նորագոյնք ի ժամանակագրաց իբրեւ բովա-
նդակութեամբ գնեն ընդ ամենայն 4000 ամ յառաջ քան զՔրիստոս:

Նոյն ամենայն ըստ հաշուի Կերլէի նորոյ ուրուք ժամանակագրի,
զորոյ եւ երթիցուք իսկ զհետ՝ ըստ մարթելոյ: — Իսկ Պետաւիոս ժողո-
վէ 3984 ամ, Ըշըր (Ուսերիոս)՝ 4004, գիրն արուեստի ուղղելոյ զհամար
ժամանակաց՝ 4963: Սովորագոյն եւ դիւրագոյն է 4000 ամացն համար՝
հանդերձ պատճառօքն որ մի ըստ միոջէ կարգեցան:

«ԾԱՆՈՅՑ ՄԵԶ ԶԽՈՐՀՈՒՐԴՍ ԿԱՄԱՑ ԻՒՐՈՑ, ԸՍՏ ՀԱՃՈՒԹԵԱՆ ԻՒՐՈՒՄ. ԶՈՐ ՅԱՌԱՋԱԳՈՅՆ ԵԴ ՆՈՎԱՒ, Ի ՏՆՏԵՍՈՒԹԻՒՆ ԼՐՄԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՑ, ԲՈՎԱՆԴԱԿԵԼ ԶԱՄԵՆԱՅՆ Ի ՔՐԻՍՏՈՍ ՈՐ ԻՆՉ ՅԵՐԿԻՆՍ ԵՒ ՈՐ ԻՆՉ ՅԵՐԿՐԻ, Ի ՆՄԻՆ»:

ԵՓԵՍ. Ա. Թ — 10.

# ՀԻՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՅԱՐԱՐՉՈՒԹԵՆԷ ԱՇԽԱՐՀԻ ՄԻՆՉԵՒ ԾՆՆԴԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

**(4000 — 1)**

## Ա

*Նախաւոր պատմութիւն — Ջրհեղեղ —* **2345** *յառաջ քան զՔրիս.:*

**6**

ՀԱՐԿ է զի պատմութիւն արարչութեան աշխարհիս եւ մարդոյն իցէ Յայտնութիւն: Այսր յայտնութեան աւանդութիւն Թէպէտ եւ առ հին ինչ ազգաց գտանի, այլ այնպէս՝ զի հազիւ հազ Թէ հատակոտորք իմն նորա եւ նշխար աւերակաց այնր նախաւոր աւանդութեան լեալ նշմարին: Միայն ազգն եբրայական սահմանեալն լինել աւանդապահ աստուածեղէն յայտնութեանց՝ պահէր անարատ զայն՝ որ օգնականութեամբ ազդեցութեանն Աստուծոյ արկաւ կանուխ ժամանակօք ի գիր:— Նմին իրի Թէպէտ եւ համառօտ՝ սակայն բաւական եւ յայն սակս իսկ պատուական եւ անգին է ծանօթութիւնն զոր գիրք սուրբք վասն իրացս ընծայեցուցանեն:

«Ի սկզբանէ, ասէ, արար (Երբայեցին՝ հաստեաց) Աստուած զերկին եւ զերկիր»[1], այս ինքն ած նա ի ժամանակի զտիեզերս ի չգոյէ ի գոյ մինչ չեւ լեալ ինչ էր: Այլ հոգի Աստուծոյ, այս ինքն կենդանացուցիչ զօրութիւն նորա, չէր տակաւին ընդմտեալ ընդ տիեզերս[2]:

Իսկ զոր հաստեացն ի սկզբանէ՝ կարգեաց յարդարեաց եւ կենդանացոյց ի վեց աւուրս:— Նախ արար զլոյսն. մեկնեաց զլոյսն ի խաւարէ, զմին կոչեաց տիւ եւ զմեւսն՝ գիշեր: Ապա բաժանեաց Աստուած զջուրսն, այս ինքն անջրպետեաց զկամարն երկնից (զհաստատութիւն) ի ջուրցն որ պատեալ ունէին զնա: Յետ այնորիկ՝ անջատեաց եւ ի ցամաքէ զջուրսն, եւ զցամաքն կոչեաց

1 Ծնն. Ա. 1:

2 Ծնն. Ա. 2:

երկիր եւ զՋուրսն՝ ծով, եւ արար զկարգս բուսոցն։ Յայնժամ ապա յօրինեալ յարդարեաց զարեգակն եւ զլուսին եւ զաստեղս յիւրաքանչիւր կայս իւրեանց եւ ի գործս. եւ յօրինեցաւ փոփոխումն չորեցունց ժամանակաց տարւոյ։ Ապա արար զշնչաւորսն սկսեալ ի ջրականացն՝ լնուլ զծով, զօդս եւ զցամաք հանդերձ ազգի ազգի ազգօք եւ կերպարանօք իւրեանց, եւ օրհնեաց զնոսա[1]։

Աւաղ իսկ ընդ զգալի եւ նիւթական արարածոյ ստեղծեալ էր Աստուծոյ եւ այլ իմն կարգս արարածոց իմանալեաց եւ աննիւթականաց, այս ինքն զհրեշտակացն։ Իսկ ի վեցերորդումն եւ ի վերջին աւուր գործոց իւրոց ստեղծ զհրաշակերտն արարածոց իւրոց զմարդ՝ իբրեւ բովանդակութիւն երկուց կարգաց արարածոցն մարմնաւորացն եւ անմարմնոց՝ ի մարմնոյ եւ ի հոգւոյ[2]։ Յառաջնումն մարդոյ անտի՝ այս ինքն յառնէ (յԱդամայ՝ որ թարգմանեալ կոչի հողածին) յօրինեաց Աստուած զկինն (որ ըստ Եբր. առնածինն նշանակէ) առեալ նիւթ ի կողէ նորա, եւ ած զնա առ նա, եւ այնպէս հաստատեալ կարգեաց զկարգ ամուսնութեան, հրաման տուեալ բազմանալոյ եւ աճելոյ։ — "Եւ հանգեաւ Աստուած յաւուրն եւթներորդի ... եւ օրհնեաց եւ սրբեաց զօրն եւթներորդ"[3]։

Այսր վեցօրեայ արարչութեանն պատմութիւն[4] բազում ինչ իւիք յայժմու քննութեանց երկրախօսութեան[5] առնու հաստատութիւն եւ մեկնութիւն, որպէս եւ սա առ ի նմանէ առաջնորդութիւն եւ զգուշութիւն չմոլորելոյ ի վճիռս իւր։ Առաւել ստուգագոյնք ի վճռաց նորա որ ի սոյն պատմութիւն հայեցին՝ եւ կամ որ ի համեմատութենէ երկրախօսական գիտաց ընդ բանիցն Մովսիսի յօրինեալ իցեն՝ են յաջորդքս։

1. Երկուս իմն արարչութիւնս դնէ Մովսէս. առաջին եւ երկրորդ. զերկոսին եւս ցուցանէ իբրեւ գործ ինչ աստուածեղէն. առաջին արարչութիւնն է ածել ինչ ի գոյ՝ ամենեւին ի չգոյէ, իսկ երկրորդն արարչութիւն՝ զմիանգամ հաստեալ նիւթական ինչ իրս ածել յայլ ինչ յօրինուածս։

2. Նմին իրի առաջին արարչութեան է հաստումն լոկոյ հոգեւորն գոյացութեան եւ միանգամայն լոկոյ նիւթական գոյացութեան։ Ուստի որ յառաջնում համարի անդ Ծննդոցն գրոց կայ "Երկինն եւ երկիր" բան՝ բովանդակեալ ունի յինքեան զկարգ լոկ ոգւոյ եւ զգոյացութիւն մարմնոց տիեզերաց։

3. Իսկ յերկրորդ համարոյ անտի սկիզբն արարեալ՝ զերկրէ միայն ճառէ Մովսէս, իսկ զայլոց եւս մարմնոց տիեզերաց այն-

1 Ծնն. Ա. 2 — 25։

2 Ս. Ներսէս մեծ առ Բուզանդայ Դպր. Դ. Գլ. Ե. "Ի սկզբանէ յորժամ առնէր Աստուած զարարածս, յետուստ արար զմարդն՝ յերեւոյթն եւ յաներեւոյթն իւրոց զօրութեանցն ի մի եւ նոյն ժողովեալ, եւ պատկեր զամենայն ի նմին ամփոփեալ ձուլեաց զարարածս"։

3 Ծնն. Ա. 26 — 31. Բ. 1 — 7, 18, 21 — 25։

4 Ծնն. Ա. 1 — 26։

5 Géologie.

չափ եւ յայն սակս միայն ճառէ, որչափ ունիցին ինչ հաղորդութիւն ընդ երկրին յորում մարդոյն բնակութիւն լինելոց էր[1]։ Վասն այնորիկ իսկ մովսիսեան պատմութիւնն յորժամ ի մանր մանր ինչ իջանիցէ պատմել՝ ոչ եթէ զամենայն տիեզերաց նախակերտն յօրինուածոյ պատմէ, այլ զերկրիս միայն ծնունդ եւ յօրինուած. սակայն ամենեւին հաւանութեան է թէ նոյնգունի անցք եւ ընդ այլ մարմինս տիեզերաց անցեալ իցեն։

4. Զայն իմն մանաւանդ յաճախագոյն կամի տալ առնուլ ի միտ Մովսէս, թէ այն յօրինուածութիւնք որ ի մարմնի երկրիս եղեն՝ հանդերձ արարչութեամբ ամենայն ազգի ազգի իրաց գտելոց ի վերայ երկրիս՝ ոչ բնական իմն անցք կամ ընթացք էին, այլ յԱստուածոյ ամենազօրին զօրութենէ յօրինուած[2]։

5. Ի յօրինուածի աստ յայսմիկ եղելոյ յԱստուածոյ ամենազօրին զօրութենէ՝ կայ կարգ ինչ յառաջադէմ ընթանալոյ յընդհանրականէ ի մասնաւոր անդր, եւ ի մասնաւորի անտի՝ ի խոնարհագունէ ի բարձրագոյն անդր։ Նախ՝ ընդհանրական իմն հանգամանք երկրիս արարչական իմն զօրութեամբ կարգեալ յարդարեցան, այս ինքն ի մէջ գալ լուսոյ, անջատել ձգական ծորան նիւթոյն (օդոյն) ի կայլակաձեւն ծորան նիւթոյ (ի ջրոյ), եւ անջատել դարձեալ կայլակաձեւ ծորան նիւթոյն ի հաստատուն եւ ի պինդ նիւթոյ (ի ցամաքէ)[3]։ Յետ այնորիկ ի մէջ գան ազգի ազգի կերպարանք կենդանութեանց երկրիս յետ յառաջելոյ քրոյական նիւթոյն յօրինուածոյ, եւ այս եւս կերպարանք ազգի ազգիք՝ ընդհանրական իմն կարգաւ գային յառաջ՝ սկսեալ ի բուսոց մինչեւ ցմարդն իբրեւ ցամենեւին իսկ կատարեալ արարած երկրի[4]։ Իբրեւ ընդ մէջ իմն ստեղծման բուսական կենացն եւ շնչաւոր կենացն՝ գայ անկանի հաստատուն կարգումն համեմատութեան երկրի առ արեգակն եւ լուսինն, որով եւ կալաւ երկիր հաստատուն ինչ տեղի ի համօրէն բովանդակութեան[5] մարմնոց տիեզերաց[6]։

Համեմատ այսմ կարգի յառաջադիմութեան երեւելոյ յիրս անդ ըստ կատարելութեանն՝ կայ եւ այլ իմն կարգ յառաջադիմութեան, այս ինքն կարգ կամ յառաջադիմութիւն ժամանակի. այս իսկ զի ի վեց աւուրս վճարեցան յօրինուածութիւնքս այսոքիկ։ Իսկ թէ զինչ այս վեց աւուրք արարչութեանն նշանակիցեն՝ երեք կարծիք եղեն։ Առաջին այնոցիկ՝ որ աւուրքն այնոքիւք ոչ ինչ յաջորդութիւն ժամանակի իմանան, այլ զպայլակերպութիւն վեց կարգաց սահմանաւոր գոյացութեան միանգամայն ի միասին հաստելոց[7]։ Որ զեր-

1 Ծնն. Ա. 14—19։
2 Ծնն. Ա. 3, 6, 9, 11, 14, 20, 24, 26։
3 Ծնն. Ա. 3...։
4 Ծնն. Ա. 11—13, 20—31։
5 Système.
6 Ծնն. Ա. 14—19։
7 Փիլոն Վասն կազմածոյ աշխարհիս, եւ Աւգոստ. Գիրք Ա։ Որիգինէս ընդդ. կեղսոսոյ Զ։ Աւգոստինոս Մեկն. Ծնն. ըստ նկարագր. Գիրք Դ. Գլ. ԺԼ, ԻԲ. Վասն քաղաք. Աստուծոյ ԺԱ. Գլ. Է, ԻԶ, Լ. Խոստով. ԺԲ. Գլ. ԻԹ։ Այլ յետոյ Աւգոստ. Վասն երախայ. Գլ. ԺԷ. զայն կարծիս թողեալ յերկրորդ ի սովորական կարծիսն ընթացաւ։

կրորդ սովորական կարծիսն ունին՝ համարին թէ ի ժամանակս վեց սովորականն աւուրց կատարեցաւ գործ արարչութեանն, յայն իմն համառոտեալ՝ թէ որպէս այլ ինչ ամենայն ի մովսիսեան պատմութեանն ըստ նկարագրին իմն իմանի, նոյնպէս եւ «զօրն» բան իմանալի է. Եւ գիրն իսկ գլխովին ի համեմատութենէ աւուրցն այնուցիկ դնէ կարգեալ զօրն շաբաթու [1]։ Իսկ երրորդն կարծիք մանաւանդ երկրախօսացն է, որ ասենն թէ օրն այն ի պատմութեան անդ՝ ժամանակ ինչ յերկարագոյն առանց իրիք սահմանեալ տեւականութեան նշանակէ, որով չառնի եղծումն մնաց շաբաթուն՝ այլ մանաւանդ համատարի միաբանութիւն իմն չափու աւուրցն արարչութեան ընդ եւթներորդ աւուր հանգստեանն Աստուծոյ ի գործոց իւրոց [2]։ Դարձեալ չէ ինչ հակառակ գրոց, ասեն, այսպէս իմանալ «զօրն» բան. քանզի ինքն իսկ գիր յայնպիսում ինչ վայրի արկանէ «զօրն» բան ի կիր, ուր չէ մարթ օր արեգական ածել զմտաւ [3]. Եւ գտանի իսկ ուրեք ուրեք ի կիր արկեալ ի գրոց՝ առ ի ցուցանելոյ ժամանակ ինչ առանց որոշման տեւականութեանն [4]։ — Եւ ցուցանեն իմն յարդեանց գիւտից երկրախօսութեան թէ բազում բուռն եւ յանկարծակի փոփոխմունք լեալ են ի գնդի երկրիս՝ մինչ չեւ սորա յայս հաստատուն եւ յանփոփոխ կերպարանս հասեալ առ ի լինելոյ բնակութիւն մարդոյ, եւ թէ այս փոփոխմունք յոյժ իմն մեծ անջրպետութիւն ժամանակի պահանջեն յառաջագոյն լեալ. եւ ընդէր եւ վասն էր իրիք պատճառի արդեւք այնչափ բազում բուսական եւ շնչաւորական յօրինուածք՝ որոց նշխարք ցայժմ գտանին՝ անդէն ի միում աւուր յանկարծակի առնոյին գոյութիւն. Նա եւ ընթացք տակաւ պնդանալոյ եւ սեղմելոյ այլոց եւս մարմնոց աշխարհի՝ զայնմ ընթացից ասեմ որ մասամբ իմն տակաւին կատարի, տան մեզ համեմատութեամբ իմանալ զչափ ժամանակի պնդանալոյ մասանց վաղ իսկ պնդացելոց. Եւ այսպէս եթէ ընդունիցիմք թէ պատմութիւն մարդկան յոյժ իսկ յետնագոյն իցէ ժամանակաւ քան զպատմութիւն երկրի, առնուն լուծումն բազում դժուարութիւնք առանց դիմելոյ յաւելորդ սքանչելիս։

Բայց սակայն մարթ է արդեւք ումեք ջատագով մնալ երկրորդն կարծեաց՝ տալ երկրախօսացն պատասխանի՝ թէ գիրք սուրբք ոչ զբնական ինչ ընթացից յօրինուածոյ, այլ իբրեւ զզարմանալի իմն այս ինքն զաստուածագործ ինչ յօրինուածոյ պատմէ, եւ ամենայն իսկ բանիցն օրինակ զայս իմն մանաւանդ յաճախագոյնս ջանայ տալ իմանալ՝ թէ բուսական եւ շնչաւորական ծնունդքն՝ զորոց ճառի անդ, իցեն նոյնք ընդ այնոցիկ զոր մարդն յետոյ ընկալաւ իբրեւ իւր կալուած տէրութեան [5]։ — Նմին իրի եթէ կամիցի ոք եւ զարգիւնս իրաց զոր երկրախօսութիւնն ցուցանէ՝ ընդունել, եւ միանգամայն զվեցօրեայն ժամանակ՝ վեցից արեգական աւուրց ժամանակ համարել, յայնժամ հարկ է զմի յերկուց աստի դնել, այս ինքն թէ կամ այժմու բոյսք եւ անասունք ի ցեղից անտի կորուսելոց ծագեալ են, եւ կամ թէ մովսիսեան պատմութիւնն ոչ զամենայն դարուց կենաց երկրիս ճառիցէ, այլ միայն զայնմ ժամանակէ՝ յորում վերջին իմն բուռն փոփոխումն եղեալ՝ յօրինեալ յարդարեցաւ երկիրս բաւական լինել ի բնակութիւն մարդոյն։

1 Ծնն. Բ. 3։ Ելից Ի. 11։
2 Ծնն. Բ. 2, 3։
3 Ծնն. Ա. 5, 8, 13։
4 Ծնն. Բ. 4։ Սաղմ. ՂԹ. 10։ Զաքար. ԺԴ. 6։ Բ. Պետր. Գ. 18։
5 Ծնն. Բ. 19։

## 7

Թէպէտ եւ հանօրէն իսկ այս երկիր հանդերձ ամենայն յօրինուածովք պատրաստեալ էր կալուած իշխանութեան եւ ժառանգութիւն մարդոյն, սակայն մանաւոր եւս ինչ վայրս ի համօրէն երկրէ պատրաստեալ՝ եդ Աստուած անդ զառաջին զոյգ մարդկութեան, զԱդամ եւ զԵւա. այս ինքն ի դրախտ ինչ գեղեցիկ յԷդեմ՝ որ է փափկութիւն կամ գեղեցկութիւն[1]: Յայսմ փափկութեան վայրի կայր մարդն ի գլուխ ամենայն երկրաւոր արարածոց՝ ոչ միայն առաւելութեամբ բնութեանն իւրոյ[2], այլ եւ Աստուծոյ իսկ կարգելով զնա իբրեւ իշխան նոցա եւ տեղապահ իւր եւ երեւեցուցիչ տէրութեան իւրոյ ի վերայ ամենայն երկրաւոր արարածոց (որով լինէրն պատկեր Աստուծոյ)[3]. վասն որոյ եւ յանդիման արար նմա Աստուած զամենայն շնչաւորս երկրի եւ օդոց: Որով եւ դրդէր իմն զԱդամ զպատուական պարգեւ բարբառոյն՝ զորոյ զզօրութիւնն ի բանաւոր բնութեան անդ իւրում եւ ի կազմածի մարմնաւոր գործարանացն ունէր ածել յայտնագոյն ի մէջ[4]: — Բայց եւ ինքն էր անձնիշխանութեամբ ի հնազանդութեան արարչին իւրոյ եւ ի մտերմագոյն իմն բարեկամութեան: Երեւէր Աստուած նոցա մօտաւոր՝ օրինակաւ իւիք որով մարթիցի լինել նոցա իմանալի, եւ լինէր նոցա կենակից իբրեւ հայր ընդ որդւոց, ուսուցանէր եւ կրթէր հայրական իմն պայմանաւ. ցուցանէր նոցա թէ զինչ կարիցէ առնել եւ զինչ՝ ոչ, յայտ արարեալ նոցա թէ զինչ գայցէ զհետ գործոց նոցա՝ առ ի զգուշացուցանելոյ զնոսա ի վնասուէ եւ ի թշուառութենէ: Այսպիսի ինչ էր հրամանն՝ որ իբրեւ նշանակ յայտարար հնազանդութեան նոցա յարարիչ անդր իւրեանց եւ հայր՝ լինելոց էր, այս ինքն չճաշակել ի պտղոյ ծառոյն գիտութեան որ էր ի դրախտի անդ առընթեր ծառոյն կենաց[5]:

Սակայն թուի իմն թէ ոչ ընդերկար ինչ ի բարութեան եւ յարդարութեան անդ վայելեցին հարքն մեր առաջինք. քանզի կինն մոլորեալ պատրեցաւ ի բանսարկուէ՝ որ էր մի ի հրեշտակաց անկելոց եւ երեւեցաւ նմա ի կերպս օձի, ճաշակել ի պտղոյ անտի ծառոյն գիտութեան. հրապուրեալ խոտորեցոյց կինն եւ զայրն իւր ի նոյն, եւ այնպէս երկոքեան անցին ըստ հրամանն Աստուծոյ՝ առ քննասիրութեան եւ որկորստութեան եւ ամբարտաւանութեան[6]: Այսպէս խանտաւորութեամբ սատանայի մտին մեղք յաշխարհ եւ ի ձեռն մեղաց՝ մահ ի վերայ ամենայն մարդկեղէն ազգի[7]:

1 Ծնն. Բ. 8—15:
2 Կիկերոն Վասն աստուած. բնու. Բ. Գլ. ԾԹ. «Որոց վասն ասիցէ ոք արդեւք կազմեալ զաշխարհս: Արդարեւ այնպիսի շնչաւորաց վասն՝ որ բանաւորութեամբն վարին... քանզի բանաւորութիւնն է որ ի վերայ քան զամենեսին է»:
3 Ծնն. Ա. 26, 27: Ս. Գրիգ. Լուսաւորիչ առ Ագաթ. Գլ. ԻԴ. էջ 196:
4 Ծնն. Բ. 19:
5 Ծնն. Բ. 16, 17:
6 Ծնն. Գ. 1—6: Բ. Կորնթ. ԺԱ. 3:
7 Իմաստ. Բ. 23, 24: Հռոմ. Ե. 12:

Իսկ եւ իսկ վաղվաղակի իբրեւ անկան՝ զգացին թէ մերկ իցեն եւ ծածկեցան տերեւովք. եւ իբրեւ լուան զձայն բարբառոյն Աստուծոյ՝ չզքան թաքեան յերեսաց նորա ի խորշէ յանցանացն տագնապեալք: Այլ կշտամբեաց զնոսա Տէր վասն անցանելոյ նոցա զպատուիրանաւն: Ապա ծածուկ իմն եւ խորհրդական բանիւք ծանոյց օձին եւ այնմ որ ընդ նովաւն թագուցեալ էր՝ զանէծսն. իսկ զԱդամ եւ զկին նորա եւ նոքօք զամենայն իսկ զաւակ նոցա դատապարտեաց յազգի ազգի նեղութիւնս եւ յաշխատութիւն տառապանաց մինչեւ ցմահ նոցա. եւ յետ ինքնին իսկ Աստուծոյ ագուցանելոյ նոցա հանդերձ՝ հան զնոսա ի դրախտէ անտի: — Այլ անդէն ի դատավճռի օձին ցուցաւ ամբաւ ողորմութիւն Աստուծոյ ի վերայ ազգի մարդկան. քանզի բովանդակեալ կայր ի վճռի անդ խոստումն հանդերձելոյ փրկչին որ գալոց էր "զի յլուծէ զգործս սատանայի,"[1] եւ այնպէս բարձրիգլուխ պարծեցաւ ողորմութիւն առ դատաստանաւ (առ արդարութեամբ)[2]: Եւ դարձեալ պահումն իսկ աշխարհի եւ մարդկութեանն որ ի նմա յետ մեղացն՝ ցուցանէր Ադամայ զաստուածեղէն վճիռ հանդերձեալ փրկութեանն ի մեղաց: Ապրեաց Ադամ եւ զվերջին պատիժս մեղաց իւրոց զմահ՝ յ930 ամի կենաց իւրոց, առանց յերկուանաց գտեալ ողորմութիւն յԱստուծոյ[3]: Եւ նա առակ օրինակի Քրիստոսի երկրորդն Ադամայ[4]:

## 8

Այլ յառաջ իսկ քան զիւր փարձն՝ ետես Ադամ զմահ ի ծնունդս իւր տարաժամ: Քանզի ետ նմա Աստուած երկուս որդիս Կայէն եւ Աբէլ անուն. նա մշակ էր եւ սա հովիւ: — Յետ ժամանակաց ինչ ի վերայ անցանելոյ՝ մատուցին երկոքին Աստուծոյ պատարագս. Կայէն ի պտղոց երկրին, իսկ Աբէլ յանդրանկաց խաշանց իւրոց: Եւ հայեցաւ Աստուած յԱբէլ եւ ի պատարագս նորա, իսկ ի Կայէն եւ ի զոհս նորա ոչ նայեցաւ: Նախանձեցաւ Կայէն եւ չզգաստացեալ եւս ի խրատուցն Աստուծոյ, առ տարաւ զԱբէլ ի դաշտ եւ սպան զնա: Արկ Աստուած անէծս ցաւագինս ի վերայ եղբայրասպան անօրինին, եւ եդ նշան ի Կայէն, որ եւ յուսահատ եւ տատանեալ շրջէր[5]: Եւ գնաց նա փախստեայ յերեսաց Աստուծոյ յերկիրն Նայիդ յանդիման Եդեմայ, եւ եղեւ նահապետ ցեղին Կայենեանց: Ինքն Կայէն շինեաց զառաջին քաղաք (խղոց) անուն եդեալ նմա զերրորդոյն որդւոյ անուն՝ Ենովք: Ղամէք ի հինգերորդումն աստիճանի՝ զառաջինն արար երկուս

1 Ա. Յովհան. Գ. 8:
2 Յակոբ. Բ. 13:
3 Իմաստ. Ժ. 1, 2: "Նա (իմաստութիւնն) զնախաստեղծն զհայրն աշխարհի զմիայն՝ հաստատեալ պահեաց, եւ փրկեաց զնա ի յանցանաց իւրոց": — Սիրաք. ԽԹ. 19:
Ս. Իրենէ. ընդդ. հերետ. Գ. Գլ. ԼԳ:
Տերտ. ընդդ. Մարկիոնի. Գլ. ԻԵ:
Եպիփան. 46:
4 Տես Ա. Կոր. ԺԵ. 45:
5 Ծնն. Դ. — 15:

կանոնս հակառակ առաջնոց կարգի անուանութեանն. յորոց մին Ադդա ծնաւ զՅովբէղ եւ զՅովբաղ (Յաբաղ եւ Յուբաղ). Յովբէղ արար սկիզբն կենաց հովուութեան ընդ վրանօք. իսկ Յովբաղ (Ապողոն) գտակ երգոց եւ քնարի: Իսկ երկրորդն Սելլա ծնաւ զԹոբէլէղ (կամ Տուբաղկային) որ եղեւ նախ ճարտարապետ գործոյն պղնձոյ եւ երկաթոյ: (Գտանեմք զսա յաւանդութիւնս բուն հնոց ազգացն բնակելոց յԻտալիա, ընդ Վուլկանն անուամբ եւ առ Յոյնս՝ յառաջադրեալ անդ Տեղքինաց եւ առ Սկանդինաւացւոց Գուաղինն կոչեցեալ): — Սորին քոյր Նոյեմա համարի գտակ ոստայնանկութեան[1]:

„Զ Սէթ շնորհեաց Աստուած Ադամայ փոխանակ Աբելի՝ յորժամ էր նա ամաց 130, որ եկաց 912 ամ եւ եղեւ նահապետ ցեղի Սեթեանցն որք ճշմարիտ աստուածպաշտութեամբն եւ առաքինութեամբ այլակերպ ի Կայենեանցն էին: Ենովս նորին որդի եդ հրապարակաւ պաշտօն աստուածեղէն կեցեալ ամս 905: Եւ յաջորդքն էին՝ Կայնան որ եկաց ամս 910, Մաղաղայէլ որ եկաց ամս 895, Յարեդ ամս 962, Ենովք եկաց ամս 365, "եւ հաճոյ եղեւ նա Աստուծոյ եւ ոչ ուրեք գտանէր զի փոխեաց զնա Աստուած"[2]: Մաթուսաղա (Մաթուսաղէմ) նորին որդի եհաս յ969 ամ կենաց իւրոց որ է յերկարագոյն քան զամենայն կեանս մարդկան: Ղամէք եկաց ամս 777 որում հնար էր տակաւին տեսանել զԱդամ 56 ամ. Նոյ եկաց 600 ամ (յառաջ քան զջրհեղեղն): Սա է վերջին ի տասն նահապետաց անտի զոր դիրք յարարչութենէ մինչեւ ցջրհեղեղն յիշեն, որովք եւ ճշմարիտ աստուածգիտութիւնն կարգեցաւ եկն յառաջ[3]:

1. Յայտնի իսկ երեւի թէ տասն նահապետքս ոչ ըստ անդրանկութեանն են, այլ զի զնոսա եւեթ ի մէջ բերէ Մովսէս, յորոց ուղղակի սերեցաւ Նոյ: Ապա թէ ոչ՝ զիա՞րդ Յարեդ ի 162 ամի հասակի իւրոյ չունէր որդիս յառաջ քան զԵնովք, եւ Մաթուսաղա ի 187 ամի հասակի իւրոյ չծնաւ, մինչեւ ծնաւ նմա Ղամէք. ուր նախին հակառակ Կայնան 70 ամաց էր յորժամ զՄաղաղայէլ ծնաւ, իսկ Մաղաղայէլ եւ Ենովք 65 ամաց էին յորժամ սա զՄաթուսաղա եւ նա զՅարեդ ծնաւ: Նմին իրի հայեցեալ յերկայնութիւն կենաց յայնժամու մարդկանն, որով աճումն մարդկան անհամեմատ իմն յաճախութեամբ քան զմերոց ժամանակաց

1 Ծնն. Դ. 16 — 23: — Գործիք ինչ, որպիսի ինչ տապար եւ այլ եւս նմանօրինակք որ երբեմն առ մեզ ընդ երկրաւ գտանիցին ի քարայական նիւթ փոխեալ, նմանապէս շինուածք ինչ սկզբնագործ արանց յօրինելոց ի կուտելոյ մեծամեծ քարանց առ միմեանս, զորս սովորութիւն է կիկլոպեան արանց կոչել, որպիսի ինչ ուրեք ուրեք յԵւրոպէ յարեւմտեան կողմանս Իտալացւոց աշխարհին, ի Սիկիլիա, ի Սպանիա եւ ի Յունաց աշխարհին կայ, նշխարք արուեստից այնց ժամանակաց՝ բազմաց թուեցան: — Մինչեւ համարել եւս թէ եւ գիր եւս առ նոքօք լեալ իցէ. եւ արդարեւ Փիւնիկեցիք եւ Եգիպտացիք գտակ գրոց կամ գրուց զոմն աստուած դնեն, որ թերեւս զՍեթայ ակնարկիցէ.

2 Սիրաք. ԽԴ. 16. ԽԹ. 16: Եբրայ. ԺԱ. 5: Յուդա Ա. 14, 15:

3 Ծնն. Դ. 25, 26. Ե:

լինի, դիւրին է իմանալ թէ զիարդ Կայէն կարէր շինել քաղաք։ Թերեւս միայն զգաստն Նոյ հայեցեալ ընդ ապականութիւն ժամանակին իւրոյ, եւ յառաջագոյն նշմարեալ մարգարէութեամբ թէ ոչ յամիցէ պատուհասն՝ յառաջ քան զ500 ամ հասանել իւրոյ, այս ինքն մինչ չեւ գիտացեալ թէ որոշեալ իցէ զնա Աստուծոյ լինել երկրորդ հայր մարդկութեանն ապականելոյ՝ ոչ եկն յորդեծնութիւն։

2. Զերկայնութիւն կենաց նոցա այնպէս իմն բազումք կարծեցին մեկնել՝ թէ այն ամք որ զկենաց նոցա յիշեն՝ ոչ արեգական էին, այլ ամս այլ ընթացս լուսնի կամ ամիսս նշանակիցեն։ Արդարեւ եթէ հինքն Եգիպտացւոց տարիս՝ զամիսս կոչէին [1], առաւել առ հինսն Եբրայեցւոց չգտանին ինչ հետք այնպիսի համարոյ, մանաւանդ զի մեծամեծ իսկ անպատեհութիւնք զհետ գային թէ այնպէս ոք զբանն իմանայցէ [2]։ Ինքնին իսկ գիրք [3] զԵնովսայ առնէ 90 ամաց՝ զԿայնան ծնեալ, եւ զԵնովքայ 65 ամաց՝ զՄաթուսաղա ծնեալ. արդ եթէ ամիս՝ այն ամքն իցեն, ապա Ենովս՝ $7^{1}/_{5}$, եւ Ենովք՝ $5^{1}/_{5}$ ամաց որդիս ծնանէր։ Ըստ աւանդութեանց եւ կարծեաց ամենայն ազգաց՝ նահապետացն կեանք յոյժ իսկ յերկարագոյնք քան զյետնոցն էին, այլ ըստ ամսականն համարոյ յետս ընդդէմ նմին հակառակն էր դիպելոց, յետնոցն մինչեւ ցմեզ իսկ առաւել երկայնակեացս քան զնոսա լինել։ — Իսկ զոր առ Քաղդէացւոցն եւ Բաբելացւոցն եւ Եգիպտացւոցն եւ Հռոմայեցւոց գտանեմք մեւս եւս տօմարական համար ամաց, այս ինքն ըստ 10 10 ամաց մի մի տարի հաշուել 273 աւուրբք, 5 ժամուք եւ 11 վայրկենիւք, նոյնպէս չերեւի յառաջին գիրս անդ Մովսէսի, նա եւ ոչ այլ եւս ամենայն ուրեք ի գիրս՝ այսպիսի ամք հաշուին. մանաւանդ զի այն տասն տասն ամաց տարիք չնուազեցուցանեն ինչ այնչափ զմեծ գումարութիւն ամացն այնոցիկ զոր չաւատալի իմն թերահաւատքն համարին. քանզի դարձեալ Ադամ փոխանակ 930 ամացն՝ 695 $^{43}/_{75}$ ամաց վախճանէր։ Ապա չիք ինչ պատճառ չիմանալոյ ըստ արեգական ամաց զչափ կենաց նահապետացն։

3. Երկայնակեցութիւն նոցա յայտ առնէ զհաստատութիւն եւ զանհեղեղ կազմածոյ մարմնոց նոցա։ Այլ գիրք առաւելագոյն իմն յաղթանդամութիւն ընծայեն յորժամ ցեղքն երկոքին խառնել ընդ միմեանս սկսան, ուստերք Սեթեանցն ընդ դստերս Կայենեանց, եւ ծնան ի նոցանէ արք անուանիք ժամանակին՝ սկայքն որք ի չարիս Կայենեանցն կործանեցան զորոյ եկն զհետ ջրհեղեղն [4]։

Այս բաժանումն մարդկութեան յերկուս՝ յառաջ քան զջրհեղեղն՝ է բուն կրօնական իմն բաժանումն. որպէս առաջին մեղքն բաժանե-

1 Պրոկղոս ի Տիմէոս, եւ Վառոն առ Ղակտանտեայ Գիրք Բ. Գլ. ԺԳ։
2 Ս. Աւգոստինոս Վասն քաղաքի. Աստ. ԺԴ. 6։ Գիրք. ԺԵ. Գլ. ԺԲ։
3 Ծնն. Ե. 9, 21։
4 Ծնն. Զ. 1, 2, 4, 11, 12։ Իմաստ.

ցին զմարդ յԱստուծոյ, նոյնպէս երկրորդ մեղք բաժանեցին զմարդ ի մարդոյ: Անդէն յառաջնում արտաքին պաշտաման կրօնիցն, այս ինքն ի պատարագացն մատուցման՝ ընտրեցան ի միմեանց Կայէն եւ Աբէլ, ոչ եթէ նիւթով ինչ պատարագացն յորում չգոյր ինչ թերութիւն, այլ ընտրութեամբ ներքին խորհրդոց եւ զգացման. այնպիսի ինչ ընտրութեամբ որ կայ ի մէջ խոնարհութեան եւ ամբարտաւանութեան, վստահութեան մանաւանդ յԱստուած որ ձրի տալոց իցէ զշնորհս սրբութեանն, եւ վստահութեան ի պատարագն որով իբրեւ գնովք պահանջիցէ զք զշնորհսն Աստուծոյ. ուստի այնպիսի ինչ խտիր էր, որպիսի ի միջի կայ ճշմարիտն եւ սուտ ապաշխարութեան: Թէպէտ եւ վասն ներքին խորհրդոցն Աբէլի չյիշեն ինչ առանձինն գիրք, այլ տան իմն իմանալ այնու զի հաճութեամբ հայեցաւ Աստուած ի պատարագն նորա. այլ վասն խորհրդոցն եւ զգացման Կայենի թէ որպիսի ինչ էր, այն իմն յայտ առնէ զոր եցոյց Կայէն վասն մերժման պատարագին իւրոյ. «Բարկացաւ Կայէն յոյժ եւ խոնարհեցան անկան երեսք իւր». կարծիք սատանիկք որ յառաջագոյնն թագուցեալ էին ի սրտի նորա, գտին պատճառս յայնժամ երեւելոյ ի դուրս — ամբարտաւանութիւնն որ այժմ կրեաց արհամարհանս, եւ նախանձ ընդ նա որ հաճոյն քան զնա գտաւ. ցասումն նորա ապաքէն առ Աստուած եւեթ էր, քանզի նա էր որ արհամարհեաց զպատարագս նորա. եւ զիա՞րդ արդեւք կարէր ցասնուլ Աստուծոյ, թէ ոչ համարէր ի միտս իւր թէ անիրաւութիւն եղեւ նմա ի նմանէ. այս պատարագօքն իբրեւ իրաւունս իմն ի հաճութիւն անձին Աստուծոյ առնել կարծէր, եւ ի չհաճելն նորա՝ գրգռեցաւ ի նմա ցասումն եւ անգոսնումն հակառակ Աստուծոյ, որոց ամենեցուն հիմն եւ աղբեւր ամբարտաւանութիւնն էր. որպէս եւ նախանձն ընդ նա որ հաճոյն եղեւ՝ ծնունդ իմն եւ ազդեցութիւն է ամբարտաւանութեանն՝ որ թշնամանս ինչ կրեալ իցէ. եւ յայժամ անդէն իսկ ի կարծեալ թշնամանչէ անտի իւրմէ չկարէ ամբարտաւանութիւնն տանել վրէժս՝ զցասումն իւր եւ զվրէժխնդրութիւն ի վերայ այնր ցուցանէ՝ որ նախամեծարն քան զնա եղեւ, եւ սաստիկ եղբայրսպանութիւն նորա:

Որպէս Ադամ յետ մեղացն ի դրախտէ՝ նոյնպէս առաջին որդին մարդոյ մերժեցաւ [1] ի բնակութենէ անտի որ առաջին էր յետ ելանելոյ ի դրախտէն, փախստեայ ի մարդկանէ եւ յերկրէ [2] որ վկայ եւ յանդիմանիչ եղբայրսպանութեան նորա էին: — Ամենայն ծնունդք Կայենի՝ որպէս ծնանն ի տարագրութեան նորա եւ ի բաժանման ի մարդկանէ, նոյնպէս ծնան եւ ի բաժանման նորա յԱստուծոյ, եւ ի յուսահատութեան զարգացան: Քանզի որպէս զնմանէ՝ նոյնպէս եւ զծնընդոց նորա չյիշեն ինչ նշմարանք ի պատմութիւնս նոցա՝ թէ ջանացեալ իցէ նոցա յուսով եւ վստահութեամբ ընթանալ առ Աստուած կամ մերձաւորին պատարագօք ածել զնա ի հաշտութիւն, եւ առհասարակ իսկ՝ ոչ ինչ նշմարանք աստուածպաշտ մտաց կամ աստուածպաշտութեան ինչ գործոյ: Եւ թուի թէ ուր Կայէն ի թերահաւատելն յողորմութիւնն Աստուծոյ՝ հաւատայր պատժիչ արդարութեանն նորա եւ սարսէր, որդիք նորա յամենեւին մոռացութիւն Աստուծոյ կործանեցան — Եւ քանզի մարդ որ դարձուցեալ իցէ զխորհուրդս իւր յԱստու-

1 «Ահա հանես զիս այսօր յերեսաց երկրէ եւ յերեսաց քոց թաքեայց եւ լինիցիմ երերեալ եւ տատանեալ յերկրի: Ծնն. Դ. 14:

2 «Ել Կայէն յերեսաց Աստուծոյ եւ բնակեցաւ յերկրին Նայիդ (Նոդ, այս ինքն երկիր տարաբախտութեան, երերման եւ տատանման) յարեւելից Եդեմայ»: Ծնն. Դ. 16:

Նոյց ի վերջնական համեմատութենէ տեսանի որ իւրաքանչիւրն ազդե-ցութիւն ի կամին գործել՝ ընծայեցուցանէին այլ ինչ մերձաւոր պատ-ճառք իբրեւ դրդիչք եւ հրապոյրք՝ որ ամենեւին նման այնմ է որով եւ առաջին մեղքն եկին ի կատարումն. զի որպէս անդ կինն էր որ հրապուրեալ մոլորեցոյց զայրն, նոյնպէս եւ աստ դստերք մարդկան՝ որոց գեղն հրապուրեալ խոտորեցոյց զորդիս Աստուծոյ խառնել ընդ նոսա [1]: Որով քակեցաւ միջնորմն ի մէջ բարեացն եւ չարաց, եւ նոյնն քակեցաւ եւ անջրպետն որ ի միջի էր բարւոյն եւ չարի. եւ չարին բացաւ ասպարէզ նոր առաջի՝ տարածանել եւ ճարակել ապականել զտոհմն ազնուական:

Յետ խառնութեան ցեղիցն յիշեն գիրք զսկայսն իբրեւ ի խառ-նութենէ անտի յառաջ եկեալ [2]: Անուն սկայիցն զհարուստ եւ զկա-շխմբուան զօրութենէ նոցա, զմարմնեղէն եւ զանձերացն ստուարու-թենէ յայտ առնէ. այլ որպէս ակնարկել իսկ թուին գրոցն բանք, սկայք էին եւ ի չարիսն՝ զզօրութիւն ուժգնութեան իւրեանց ի բռնու-թիւն, ի յափշտակութիւն եւ յարհամարհութիւն ամենայն աստուածե-ղէն եւ մարդկեղէն իրաւանց արկեալ ի կիր: — Այլ զի՞նչ ինչ կատա-րած այնպիսի համօրէն ճարակելոյ ապականութեանն էր լինելոց, այսմ գիրք համայնաջրուհեղ ջրհեղեղաւն տան պատասխանի:

## 9

Չկարէ բաւականն զարմանալ ոք ընդ անպաճոյճ պարզութիւն բանիցն որովք առնեն գիրք Ծննդոցն սկիզբն պատմութեան ջրհեղեղին: «Սրտմտեցաւ, ասէ, Աստուած զի տեսանէր զմարդն ի վե-րայ երկրի, եւ մտախոհ եղեւ ի սրտի իւրում, եւ ասէ տէր Աս-տուած, ջնջեցից զամենայն մարմին զոր արարի յերեսաց երկրի ի մարդոյ մինչեւ յանասուն (որով չարաչարին վարեցաւ մարդ) եւ ի սողնոց մինչեւ ի թռչունս երկնից. զի բարկացայ (զղջացայ) զի արարի զնոսա» [3]: Զղջումն Աստուծոյ եւ զնեղն նորա ի մտի ապաշաւանաց ջնջել՝ երկուս իրս յայտ առնեն. թէ անբժշկական էր ապականութիւնն, եւ թէ յայն սակս անհրաժեշտ էր եւ ջնջումն նոցա: Իսկ զի ճարակեալ չարին յամենայն մարդկութիւնն, ապա-կանեալ էր ամենայն երկիր առաջի Աստուծոյ, ամենայն մարմին ապականեալ էր զճանապարհ իւր [4]: Յայս վախճան հասեալ էր առաջին սերունդն մարդկութեան, որ ամենեւին հակառակ այնմ վախճանի էր յոր հաստատեալ էր զնա Աստուծոյ: Իսկ միանգա-մայն չգտայր ի մէջ այլ ինչ զարմ կամ զաւակ ազատ յապակա-նութենէ, որով նորոգութիւն ինչ ապականութեանն կարիցէ լի-նել. ապա ուրեմն՝ եթէ խորհուրդն Աստուծոյ զոր ի վերայ մար-դոյն ունէր եւ վախճանն իսկ մարդկութեան չէր կորնչելոց եւ եղա-նելոց ի դերեւ, հարկ էր թէ յայնժամ ապականեալ մարդկու-թիւնն ատանկէր եւ այլ ինչ նոր մարդկութիւն յառնէր կայր

1 Ծնն. Զ. 1—3:
2 Ծնն. Զ. 4:
3 Ծնն. Զ. 6, 7...:
4 Ծնն. Զ. 11, 12:

յաւերակաց առաջնոյն. ուստի «վախճան ամենայն մարմնոյ հասեալ էր», այնու զի ընդ ճանապարհ հակառակ բնութեանն իւրեանց մտեալ ընթանային յառաջադէմ[1]: — Բայց սակայն չէ իսկ սովոր արարիչն եղծանել ինքնին զձեռակերտս իւր. տայ նա ի ձեռս արարածոց իսկ իւրոց զգործ սրտմտութեանն եւ պատժոցն պատուհասից, տայ իշխանութիւն միումն ի տարերաց ի վերայ միւսոյն, եւ ամենեցուն իսկ առհասարակ ի վերայ մարդոյն ապստամբելոյ ի Նմանէ:

Նոյ միայն եգիտ շնորհս առաջի Տեառն. զի էր նա այր արդար եւ կատարեալ յազգի անդ իւրում, եւ հաճոյ էր նա Աստուծոյ[2]: Եւ ասէ Տէր ցՆոյ. «Ես ածից ջրհեղեղ ջրոյ ի վերայ երկրի, ապականել զամենայն մարմին յորում է շունչ կենդանի ի ներքոյ երկնից. բայց ընդ քեզ եդից ուխտ». եւ յաւելեալ տայր հրաման շինել նաւ մեծ 300 կանգուն (գիրկ) յերկայնութիւն եւ 50 ի լայնութիւն եւ 30 ի բարձրութիւն, ներքնատամբ եւ միջնատամբ եւ վերնատամբ, եւ բաց յորդւոց եւ ի կնոջէ եւ ի կանանց որդւոց իւրոց՝ առնուլ ի ներքս յամենայն ազգաց անասնոց սրբոց եւթն զոյգ, եւ յանսրբոց՝ մի մի զոյգ հանդերձ դարմանօք վասն իւր եւ վասն նոցա: Զայս պատուէր ընկալեալ Նոյ 100 ամօք կանխագոյն քան զհասանել պատուհասին, եւ քարոզէր Նոյ զուր զամն զայնոսիկ ապաշխարութիւն մեղաւոր ազգին այնմիկ[3]: Բայց ինքն արար զամենայն զոր պատուիրեաց նմա Տէր:

Յորժամ հասանէր սահմանեալ ժամ պատժոցն իբրեւ ի 1655երորդի ամի աշխարհի արարչութեան, իբրեւ 2345 ամօք կանխագոյն քան զծնունդն Քրիստոսի — «Յամին 600երորդի կենացն Նոյի ի 27 աւուր ամսոյն երկրորդի (27 Նոյեմբերի) պատառեցան ամենայն աղբերք անդնդոց բազմաց եւ սահանք երկնից բացան, եւ եղեւ անձրեւ ի վերայ երկրի զքառասուն տիւ եւ զքառասուն գիշեր» — եւ սաստկացաւ ջուրն յոյժ եւ ծածկեաց զամենայն լերինս բարձունս եւ բարձրացաւ քան զնոսա ի վեր հնգետասան կանգուն (գիրկ), եւ ծփայր տապանն ի վերայ ջուրցն: — «Մեռաւ ամենայն մարմին շարժուն ի վերայ երկրի, թռչնոց եւ անասնոց եւ գազանաց եւ ամենայն սողուն զեռուն ի վերայ երկրի եւ ամենայն մարդ: Եւ ամենայն որ ունէր շունչ կենդանի յռունգունս իւր ի վերայ ցամաքի մեռաւ»: Մնաց Նոյ միայն եւ որ ընդ նմա էին ի տապանի անդ: Եւ կաց մնաց ջուրն ի վերայ երկրի աւուրս 150[4]:

Բայց յիշեաց Աստուած զՆոյ եւ զամենայն անասունս որ էին ընդ նմա ի տապանի անդ. ած հողմ ի վերայ երկրի եւ նուազեցին ջուրքն: — Յեւթնեւտասներորդ աւուր ամսոյն եւթներորդի (17 Ապր.) նստաւ տապանն ի լերինս Արարատայ ի Հայոց աշ-

1 Ծնն. Զ. 13:
2 Ծնն. Զ. 9: Սիրաք. ԽԴ. 17:
3 Բ. Պետ. Բ. 5:
4 Ծնն. Է. 6—24:

խարհին։ Յառաջնում աւուր ամսոյն տասներորդի (1 Յուլիսյ) երեւեցան գլուխք լերանց. յետ քառասուն աւուր առաքեցաւ ագռաւն եւ յետ նորա երիցս յետ եւթն եւթն աւուր աղաւնին։ Յառաջնում աւուր ամսոյն առաջնոյ (1 Հոկտ.) ետես Նոյ թէ նուազեալ է ջուրն, բայց ի քսան եւ եւթներորդ աւուր ամսոյն երկրորդի (ի 27 Նոյեմբեր ամսոյ) ուրեմն ցամաքեցաւ ամենեւին։ Այս տեւեաց բաւեաց ջրհեղեղն ամ մի լի եւ կատարեալ [1]։

(Զոր երկրորդ ամիսն կոչէ Եբրայեցին, ըստ Եւթանասնիցն թարգմանութեան կոչի եւթներորդ, եւ այսպէս մի ըստ միոջէ եւ այլ եւս ամիսքն հաշուին։)

## 10

Այս իսկ է բովանդակութիւն պատմութեան նախաւորն աշխարհի՝ յարարչութենէ անտի մինչեւ ցսատակումն համօրէն մեղաւոր ազգին՝ բաց ի միոյ միայնոյ արդարոյ հանդերձ տամբն իւրով։ Եթէ չհամարէաք եւս աստուածաշունչ զգիրս սուրբս՝ որ մի միայն ճշմարիտ յիշատակարան դիպացն այնոցիկ է, սակայն գտանեմք զանպաճոյճ պատմութիւնս նորա հաստատեալ եւ ի գրոց այլոց եւս ազգաց։

Վասնզի եթէ ամենայն ազգք ոչ՝ սակայն գոնեայ մեծ մասն նոցա պատմէ զարարչութիւն տիեզերաց զերկրի եւ զմարդոյն. գիտեն նոքա զդրախտէն եւ զանկանելոյ ի մեղս ի ձեռն օձի, եւ զեղբայրսպանութենէ — յիշեն եւ զերկայնակեաց կեանս նախաւոր մարդկան եւ ունին տասն թիւ յազգահամարս իւրեանց եւ ի կարգս պայազատութեան՝ համեմատ տասն նահապետացն յառաջ քան զջրհեղեղն. նկարեն եւ զապականութիւն բարուց մարդկան, զորոյ զհետ ածեն ամենայն վիպասանութիւնք նոցա՝ մեծ ինչ ջրհեղեղ ջուրց եւ սատակումն ազգին այնորիկ ապականելոյ։

Արդարեւ այս ամենայն պատմութիւնք խանգարեալ իմն են երբեմն առաւել եւ երբեմն նուազագոյն, եւ այլանդակ պատմութեամբք խառնեալ. սակայն ամենեքին ունին իւրեանց հիմն պատմական ինչ ճշմարտութիւնս, զորս օգնականութեամբ գրոց սրբոց մարթի հանել ի խառնակութենէ անտի։

Ա. Որպէս առ Յոյնս նոյնպէս եւ առ Հռոմայեցիս առաւել յերգս պոետացն այնպիսի աւանդութիւնք գտանին։

Ովիդիոս Նասոն Ա. Գիրք. Այլակերպ. 5—23. տող.

Նախ քան ըզծով եւ զերկիր եւ զհամասփիւռըն զերկին,
Ընդ տիեզերս համօրէն էին երեսք մի մեկին,
Զոր կոչեցին խառնութիւն. բիրտ եւ անկարգ կոյտ էր այն,
Էր ըռկ կըշիռ անխըլիրտ. կային սերմանք իսկ համայն

1 Ծնն. Ը. — 14։

Երկապատակ ինչ իրաց գումարելոց խառնեալ անդ.
Ոչ աշխարհի տակաւին մատուցանէր լոյս Ցիատնդ,
Եւ ոչ փերբէ աճմամբ նոր ըղձահեղջիւրըն ընդոր....
Ուր երկիրն էր, էր եւ օդ, անդ եւ ծով մեծ եւ անդունդ.
Այսպէս երկիր չէր կայան եւ ոչ ծով էր նաւագնաց,
Օդըն լուսով կարօտ էր. ոչ ինչ յիւր ձեւոյն եկաց:
Եբարձ Աստուած՝ լուսազոյն ընութիւնըն զայս կազ տարերց,
Քանզի յերկնիցըն զերկիրս, եւ ի յերկրէ ըղձալս հերձ.
Եւ զերկին նուրբ բաժանեաց ի թանձրամած յայսմ օդոյ:....
Իբրեւ ըղձոյն կոյս այսպէս, ո՛ ով եւ էր այն Աստուած
Կազմեալ եհերձ, եւ ըղձերձեալն ուրոյն յանցնիւր մասունս ած.
Նախ զերկիր իսկ, զի մի հարթ լիցի ի բնաւ իսկ կուսաց,
Ի կերպարանս ինչ մեծի բոլորակի ած գրնդեաց:......
Ապա աստեղըն սկսան շողալ յերկինս ամենայն
Զըգդոր նահանգ ինչ յիւրոց շընչաւորացըն ունայն.
Զայն որ յերկինս անղին է՝ աստեղք եւ դիքըն կալան.
Զատուցան ջուրքըն փայլան ձըկանց լինել ի կայան.
Հող ընկալաւ իւր երէ, հաւըս թըռչունս՝ օդ շարժուն:
Բայց սըրբազոյն քան զնոսա դեռ շընչաւորըն իմաստուն
Չէր ի միջի, որ ինքնին տիրել այլոց իշխան է.
Ծնաւ անաուստ մարդ. զոր թերեւս՝ յաստուածեղէն սերմանէ
Արար կազմիչն՝ աշխարհի լուսագունի ինչ ծագումն.
Կամ որ այն ինչ յեթերէ զատաւ՝ յերկրիս յայս նորումն
Պահեալ կային սերմանք ինչ երկնից՝ նորին համազգւոյն,
Զոր եւ խառնեալ Յապետեանն ընդ ջուր գետոցըն՝ հանգոյն
Յօրինեաց իմն պատկերի ամենիշխանն աստուածոց:
Այլ շընչաւորք թէ նային խոնարհեալ միշտ յերկրիս ծոց,
Մարդոյ շնորհեաց բարձըր դէմս, պըշնուլ յերկինս եւ պատուէր,
Եւ կըշիռ դէպ աստեղաց ձգտել զերեսս իւր ի վեր:

1. Առաջին արարչութեան (հասսման, արարչութեան յոչընչէ[1]) չէք տեսիլ[2], ուստի եւ ոչ անուն իսկ առ Յունաց եւ Հռոմայեցւոց, այլ նոքա "առնել" (ποιεῖν) կոչեն եւ սոքա "ծնանել կամ յօրինել" (creare), քանզի դնեն ինչ միշտ յառաջագոյն ինքնակաց՝ զոր պուետք նոցա խառնակութիւն[3] կոչեն, եւ փիղիսոփայքըն՝ նիւթ (հիւղ, հիւղէ[4]):

2. Նոյնպէս թէպէտ եւ բարձրացուցանիցեն եւս զմարդն՝ դնելով զնա պատկեր եւ նմանութիւն Աստուծոյ, սակայն չառնեն զնա անմիջնորդական ձեռակերտ Աստուծոյ[5], այլ արկանեն միջնորդ զոք ի միջի որ ոչ կատարեալ Աստուած իցէ, այլ մասամբ իմն բղխումն[6] յԱստուածոյ. որպիսի ով միջնորդ առ Յոյնս եւ առ Հռոմայեցիս Պրոմեթէոս է (Յապետեանն)[7]:

Նոյնպէս եւ ի Հընդկաց աւանդութիւնս (որպէս եւ յամենայն արեւելեայցն աւանդութիւնս) պակասէ միշտ տեսիլ անմիջնորդական արարչութեանն Աստուծոյ, սակայն զարարչութենէ Հընդկիկք յստակագոյնս քան զՅոյնս զմտաւ ածեն՝ ոչինչ յառաջագոյն ինքնակաց դնելով:

Ի հին ինչ գիրս նոցա ուսուցանէ Մենու՝ իմաստնոցն Հընդկաց. "Այս համօրէն աշխարհ, ասէ, խաւար էր. չէր հնար որոշել ինչ,

1 Ծնն. Ա. 1:
2 Idée.
3 Chaos.
4 Ὕλη, Եղնիկ, էջ 21:
5 Ծնն. Ա. 26, 27:
6 Emanation.
7 Տես Մովսէս Խորենացի պատմ. Հայ. Գիրք Ա. Գլ. Ե:

ամենայն ինչ ի խոր ինչ քուն ընկղմեալ կայր, մինչեւ իմաստակացն եւ անհրեւոյթին Աստուած Հնգեքումբք տարերօք եւ այլ եւս գեղեցիկ կերպարանօք ած զամենայն ի յայտնութիւն՝ փարատեալ զամենեւին զմութն: Կամեցեալ նորա ազգի ազգի արարածս ածել ի մէջ՝ ի ձեռն բղխման իւրք փառաց իւրոց՝ նախ ստեղծ զջուրս եւ եդ նոցա զօրութիւն շարժման: Ի ձեռն շարժմանն այնորիկ եղեն եկաց ձու ոսկեղէն՝ որ իբրեւ զճառագայթ արեգակունս ցոլանայր լուցեալ, յորում ծնաւ Բրահմա, հայրն մեծ ամենայն մարդոց արարածոց: Ջուրքն Նարա կոչին, քանզի ծնունդ են Ներայ կամ Իսուարայ՝ որ Նարայիանս անուանեցաւ, քանզի առաջին Այիանս (շարժումն) նորա ի վերայ ջուրց էր„: — Պատմի նոյն եւ այսպիսի ինչ օրինակաւ. “Թէ յորժամ Բրահմայն Աստուած բազում ամս ի ձուի անդ բնակեաց, էր միշտ ինքն, եւ խորհեալ ինքն զինքն՝ բաժանեաց զձուն յերկուս հաւասար մասունս, եւ ի միոջէն յօրինեաց զերկինս, եւ ի միւսմէ գործեալ զերկիր: Իսկ ի միջավայրի երկոցունցն կարգեաց եդ զնուրբ եթերն, զութ ծագս աշխարհի, եւ զմշտնջենաւոր սահմանս ջուրց„:

Այլ եւս ինչ նուիրական գրոց նոցա ամփոփին յաջորդքս: Եղեն ի Բրահմայ երեք ջոկք՝ Դեւայքն որ են բարի եւ հաւատարիմ ոգիքն, Ասուրայքն՝ չար եւ անկեալ ոգիք որք սիրեն զխաւար եւ կամին ընդքանդումն, եւ յետոյ մարդիկ: Բրահմա հան յիւրմէ զմարդն առաջին որ միանգամայն այր էր եւ կին: Չկարէր նա միայն լինել: Եւ ահա կատարեցան իղձք նորա. բաժանեցաւ մարմին նորա յերկուս կէսս ի Մանու (այր) եւ ի Սատարուպա (կին): Մահասաուրա իշխանն Ասուրայ մերձեցաւ առ նոսա ի կերպս օձի եւ մոլորեցոյց զնոսա: Այս առաջին մարդիկ ցանկացեալ հայէին ի գեղեցիկ գեղեցիկ կողմանս երկրի, զոր եհան ի նոցանէ Բրահմա: Այնուհետեւ սպառեցաւ զարմն երջանիկ: Բոյսքն օգտակարք՝ եղեն թունաւորք, եւ անասունքն ի զգօնութենէ դարձան ի վայրենութիւն: Եւ Մանու անկմամբն եղեւ մահկանացու: Առաջին որդիք Մանուայ եւ Սատարուպայ առասպելք էին եւ իմաստունք (Մունի եւ Ռիշի): Առ ժամանակօք նոցա էջ աստուածութիւնն ի խոնարհ առ զոհ ինչ: Եդ նոցա օրէնս Մանու, սակայն մարդիկ առակաւ եղծանէին եւ խանգարէին եւ բանն Աստուծոյ եղծայր եւ անհետ լինէր: — Ըստ պատմութեանց ինչ Հնդկաց՝ առաջին մարդն կոչի եւ Կարդամ, այս ինքն կաւ [1]:

Ըստ նուիրական գրոց նոցին արեւելեան գրացեացն Զենդաւեստայ՝ այլ է որ ի յաւիտենից մարդն Գաւան-կու, եւ այլ այն՝ որ ի ժամանակի եղեւ: Մարդն յաւիտենական՝ հոգեւոր եւ առաքինի էր եւ ունէր նա մարմին ի դեղին ինչ փափուկ հողոյ կազմեալ: Նա հրամայէր եւ ամենայն ինչ էր հնազանդ նմա, զի եդեալ էր նա ի վերայ ամենայն իրաց երեւելեաց: Բնակէր նա ի բուրաստանի ուրեք կախելոյ ի վերոյ քան զերկիր, զոր ստորամնէին շուրջանակի չորք վտակք բխեալ ի դեղին աղբերէ, եւ բերէր պտուղս կենաց: Բայց ցանկութիւնն արար զԳաւան-կու ծառայ ազգելի իրաց որ յառաջագոյնն հնազանդ էին նմա: Գնաց նա զհետ որկորբաստութեան իւրոյ եւ կորոյս զլուսաւորութիւն մտաց իւրոց, եւ այնպէս բաժանեցաւ նա ի յաւիտենականն մարդոյ: Փակեցաւ բուրաստանն եւ արգելաւ ճանապարհն. ամենայն արարածք եղեն նորա թշնամիք: Այլ յետ անկմանն դարձան միւսանգամ մարդիկ ի կեանս բարեպաշտութեան. (Եւ լինէին երկայնակեացք

1 Տես զայսմ ամենայնէ առ Թովմ. Մաւրիկ. անդ. ի գլխոյն՝ Հնութիւնք Հնդկաց:

եւ այնչափ յանձնառութեամբ անձանց զոր ընծայեն միում միում ի տասն ազգաց մեանի, ցուցանեն դիպուածին զոր ունին զերկրպագանելեցութենէ կենաց մարդկան ժամանակին այնորիկ։ — Հընդիկք ըստ երկրպագանելեցութեանն՝ նոյնպէս եւ յաղթանդամ մարմինս ընծայեն։

Գ. Մ.ՃԼ պայծառագոյնք յոյժ են աւանդութիւնք Ջրհեղեղին մանաւանդ առ Քաղդէացւոց։ Աղէքսանդրոս Բազմավէպ ունի այսպէս. "Գրոնոս, ասէ, նմա (Քսիսութրեայ = Նոյի) ի քուն յայտնել, զոր հայրն անուանեն Արամազդայ, ի հնգետասաներորդում Դեսիոս ամսեան որ է Մայիսի, մարդկան ի ջրհեղեղէն սատակել. հրաման տալ զամենայն զառաջինս եւ զմիջինս եւ զվերջինս մատենից փորել եւ դնել յԱրեգ քաղաքին Սիպպարացւոց։ Նաւ գործել եւ ի ներքս մտանել հանդերձ ազգականօք եւ հարեւոր բարեկամօք. համբարել ի ներքս ուտելիս եւ ըմպելիս, մուծանել եւ գազանս եւ թռչունս եւ չորքոտանիս. եւ ամենայն հազմանօք պատրաստ լինել ի նաւարկել։ Հարցեալ թէ յո՛ւր ուրեք արդեւք նաւարկիցէ, պատասխանի տուեալ թէ առ դիսն՝ աղօթս առնել զի բարիք մարդկան լինիցին։ Եւ չստուգանէր գործել զգործ նաւագործութեանն. որոյ երկայնութիւնն էր հնգետասան փոսաւան եւ լայնութիւնն երկու փոսաւանք։ Համբերձեալ կազմեալ ըստ ամենայնի որպէս եւ առ հրաման՝ զկին եւ զորդիս եւ զհարեւոր բարեկամս ի ներքս մուծանել։ Ի հասանել ջրհեղեղին եւ վաղվաղակի ցածնուլ՝ թռչունս ինչ արձակել Քսիսութրայ, եւ չգտանել ուտել ինչ եւ ոչ տեղի եւ դադար իջանելոյ. դարձեալ միւսանգամ առնուլ զնոսա ի նաւն. եւ յետ սակաւ ինչ աւուրց դարձեալ արձակել այլ հաւս, եւ նոցա միւսանգամ անդրէն ի նաւն գալ՝ կաւով թաթախ զմագիլսն բերեալ։ Այլ երրորդ անգամ արձակել եւ անդրէն միւսանգամ չգալ ի նաւն։ Յայնժամ իմացեալ Քսիսութրայ եթէ յայտնեալ բացեալ է երկիր, քակել զկողմ մի ձեղուան նաւին, եւ տեսանել երթեալ յեցեալ զնաւն ի լեառն ինչ։ Ելանել կնաւ եւ դստերբ միով հանդերձ եւ նաւապետաւ նաւին, եւ երկիր պագանել յերկիր. բագին կանգնել եւ զոհ դից մատուցանել, եւ այնուհետեւ չէք յայտնի լինել՝ նոքօք հանդերձ որ ընդ նմա ի նաւէն ելանէին։ Եւ որ անդէն ի նաւին մնային եւ չելանէին ընդ Քսիսութրեանն՝ ելեալ յետոյ խնդրէին զնա, եւ յանուանէ շրջէին գոչէին կոչէին։ Քսիսութրայ չերեւեալ այնուհետեւ նոցա՝ բայց ձայն բարբառոյ յօդոցն եկեալ՝ պատուէր տայր եթէ պարտ է նոցա դիւցապաշտս լինել, եւ եթէ ինքն վասն դիւցապաշտութեանն երթեալ բնակիցէ ի բնակութիւն դիցն. եւ կինն նորա եւ դուստր եւ նաւապետն ի նոյն պատիւ վայելել։ Եւ դուլ եւ պատուէր տալ նոցա երթալ միւսանգամ ի Բաբելոն, եւ թէ այնպէս ինչ հրամանք դիցն իցեն՝ նոցա երթալ ի Սիպպարացւոց քաղաքէն փորել հանել զմատեանսն՝ որ ծածկեալ կայցեն անդ եւ տալ մարդկան. եւ եթէ տեղին յորում վայրի ելեալ կային՝ Հայոց աշխարհն է"[1]։ — Զնոյն բանս երկրորդէ եւ Աբիդենոս ի Քաղդէացւոց պատմութեանն[2]։

ԶԱսորւոցն եւ զԱրաբացւոց որ դրացիքն եւ մերձաւորք Քաղդեացւոցն էն, խառնելով եւ զՅունաց աւանդութիւնս՝ պատմէ Ղուկիանոս ասորի-տոյն՝ յորժամ ճառիցէ զմեհենէ ինչ ի Հերապօլիս առ Եփրատաւ՝ որ էր հայրենի քաղաք նորա. "Զայս մեհեան, ասէ, պատմեն ի Դեւկա-

1 Բերոսոս կամ Բիւսոսոս քաղդէացի առ. 2 Առ Եւս. Քրոն. Ժամ. Ա. եւ Գա-
Եւս. Քրոն. Ժամ. Ա։ Ցեռ եւ խոր. առասպ. Ասեա. Բ. 12։
Դեռք Ա. Գլ. Բ։

զիմնէ Մկիւթացւոյ չինեալ, առ որով մեծ ջրհեղեղն եղեւ (զայս առէ Ղուկիան վասն ի Դեւկալիոնէ Թեսաղացւոյ զաւակացանելոյ առ որով ի Թեսաղիա ջրհեղեղն պատահի լեալ): Ի Ցունաց, առէ, լուայ պատմել զԴեւկալիոնէ, եւ է այսպիսի ինչ առասպելն: "Այժմու ազգ մարդկան չէ ինչ նոյն ընդ առաջնոյն, քանզի այն կորեաւ: Այլ սա յերկրորդ զարմէ անտի սերին, որ ի Դեւկալիոնէ բխեալ բազմացոյն սերընդամբք կարգեալ եկն յառաջ: Առաջին մարդիկն յանդգունք էին յոյժ, եւ հակառակ օրինացն ածիրս գործէին: Ձկային յերդմանն եւ ոչ հիւրասիրութիւն ցուցանէին, եւ չժողովէին զօտարս, եւ ոչ Թէպէտ եւ վասն ի Թիկունս հասանելոյ մաղթէր որ՝ զընդդային ինչ: Ցայն սակս հասին ի վերայ նոցա անհնարին աղէտք: Ջուրք ելանէին բազում յորդութեամբք ի սրտէ երկրի, եւ հոսէին տարափք անձրեւաց, եւ վերացաւ ծովն, մինչեւ ամենայն ինչ կորեաւ: — Բայց Դեւկալիոն միայն յամենայն մարդկանէ պահեցաւ այլում իմիք ազգի, վասն խոհեմութեանն եւ գիցապաշտ առ դիսն լինելոյ. բայց այսպէս ապրեցաւ նա: Մուտ նա ի տապան մի մեծ արկղագործ՝ զոր ունէր, եւ եմոյծ ի ներքս զկին իւր եւ զորդիս: Ցայնժամ եկին առ նա երկու երկու վարազք եւ ձիք, առեւծք եւ օձք եւ ազգք ազգք անասնոց իւրաքանչիւր զոր երկիրս բուծանէ, եւ զամենեսին ընկալաւ առ ընդ իւր ի ներքս, եւ ոչ վնասեցին նմա, զի եղ ի միջի նոցա սէր մեծ եւ բարեկամութիւն Արամազդ: Եւ այսպէս նաւարկեալ գնային ի տապանի անդ, մինչ դեռ տակաւին ջուրքն աւելին բաւէին: Այսպիսի ինչ են վէպք Ցունաց վասն Դեւկալիոնի: Բայց յոյժ զարմանաց են բանք պատմութեանն, որ ի Հերապոլիսն պատմի: Քանզի ասեն Թէ յերկրի անդ նոցա բացաւ գուբ մի մեծ, եւ ամենայն ուղխաջուրք հեղեղին անդր ժողովեալ անհետացան: Ցետ այնորիկ ուղղեաց Դեւկալիոն սեղան, եւ շինեաց ի վերայ գբոյն բագին նուիրական դիցն Հերայ: Ջգուբն՝ իմ իսկ տեսեալ է, կարի փոքր է այն. բայց Թէ երբեմն մեծ էր եւ ապա փոքրկացաւ. զայն ոչ գիտեմ: Բայց իմ տեսեալ է աչօք իմովք Թէ փոքր է: — Ի հաստատութիւն պատմութեանս բերեն ի մէջ զյաջորդս. երկիցս ամի ամի ածեն ջուր ծովու ի մեհեան անդր. եւ ոչ եթէ քուրմքն միայն ածեն, այլ եւ ամենայն երկիրն Ասորւոց եւ Արաբացւոց, նա առաւնիկ եւ յայնկոյս կողմանցն Եփրատայ գան բազում մարդիկ եւ բերեն ջուր: Հեղուն զջուրն ի մեհենին եւ ընԹանայ ջուրն ի գուբ անդր. եւ Թէպէտ եւ փոքր եւս գուբն է, սակայն առնու ջուր բազում: Զայս յայն սակս առնեն, զի Դեւկալիոն, ասեն, զայս կարգեաց առնել յիշատակ պատահելոցն եւ դիցն բարերարութեան: Այս պատմութիւն է նոցա զմեհենէն„:

Եւ զաղաւնին եւս, որպէս եւ զծիածանն չեն ամենեւին մոռացեալ ազգք: Պատմէ Պղուտարքոս ձեւ զայս օրինակ. "Աղաւնւոյ իրիք, ասեն, ի տապանէ անտի արձակեալ՝ եւ դառնալովն այդրէն նշանակեալ լցէ Դեւկալիոնի վասն անձրեւացն չցածնլոյ, եւ ապա չդառնալովն զջեր եւ զպարզ օդոյն, ասեն, տուեալ նշանակ„:

Ըստ Հնդկաց՝ տէրն աշխարհի հայեցեալ մարդասիրութեամբ ընդ այրն աստուածապաշտ (Սատիաւրատա = Նոյ), կամեցաւ ապրեցուցանել զնա ի միջոյ կործանմանն՝ որ վասն ապականութեան ժամանակին գալոց էր, խօսէր ընդ նմա այսպէս. Ցետ եւթն աւուրց, ով Թշնամեացն նուաճող, ընկղմեսցին երեքին աշխարհքն (այս ինքն երկինք, երկիր եւ սանդարամետք) ի համատարած ինչ անդունդս մահու, բայց նաւ մի

մեծ միայն յղեալ յինէն՝ անդէն ի սաստկիչ ալեաց միջի կալոց է առա-ջի քո յանդիման. ապա առցես դու ընդ քեզ զամենայն արմատս բժըշ-կականս եւ զամենայն ազգս սերմանց, եւ երթեալ մտանիցես ընդ այլոցն եւս եւթանց իմաստնոց յընդարձակ արկղագործ տապան անդր, զզոյգս յամենայն անասնոց առեալ ի միասին, եւ անդէն ի ներքս մտցես յապահովելի ի հեղեղէն ի վերայ անհուն ծովուն ծփանաց, առանց լուսոյ, բայց միայն ի նշուլից քոյոց իմաստուն ընկերացն: Եւ անդէն իբրեւ սկսանիցի նաւն ծովածուփ վարել ի սաստիկ բքոցն յու-զելոց, պնդեալ հարստեսցես դու զնա ծովական ինչ օձիւ մեծաւ ի վերայ եղջերին իմոյ (քանզի պահպանիչ աստուածն Վիշնու էր որ ի ձկան կերպս իջեալ խօսէր ընդ նմա), զի ես մօտ առ քեզ կամ եւ ձգեցից զնաւն քեւ եւ ընկերօքդ հանդերձ: — Իբրեւ Սատիավրատա հնազանդեալ մնայր ժամանակին զոր սահմանեաց նմա այն որ տէրն է մտաց մերոց, ողողեաց կալաւ զերկիր ամենայն ծովն, եւ վաղվաղակի մեծացաւ ծովն ի սաէպ անձրեւացն որ ի թանձրամած ամպոց իջանէին: Իսկ ինքն զմտաւ ածեալ զհրաման պատուիրանին, եւետ զնաւն զի մտանէր գայր, եւ եմուտ ի ներքս ի նաւն հանդերձ գլխաւոր Բրամա-նօքն: — Յայնժամ եկն եկաց Հերի (միւս եւս անուն Վիշնու աս-տուածոյ) ի միջոյ համայնաջրունջ հեղեղէ, որ երթայրն եւ նուազէր յայն-ժամ. սաստկեաց նա զձեւն Հայագրիւա, եւ եգիտ միւսանգամ զնուի-րական մատեանն,,:

Յետ սակաւ ապականելոյ մարդկան, ասեն Սինէացիք, Նիու-ուա (Նոյ) արգել փայտիւ զջուրսն որ ի խոնարհ իջանէին եւ փակեաց զխա-մարն երկնից զարմանալի ինչ հնգգունեան վիմով (ծիածան):

Ոմեքսիկացւոց ասէ Կղաւիգեր, որ էր եւ ինքն մեքսիկացի յազգէ, եւ զհւրոյ ազգին զպատմութիւնն ի Սպանիացւոց եւ յԻտալացւոց լեզու հար ի մատենի, թէ "Մեքսիկացւոց՝ հանգոյն այլոց ազգացն ի կարգ եւ ի յարդարումն եկելոց՝ հաստատուն ինչ զրոյցք պատմին զաշ-խարհագործութենէ, զջրհեղեղէ ջուրցն, զերգուացն խառնակութենէ եւ զազգացն ցրուելոյ. այլ բազում ինչ եւ առանցին ճառք ընդ պատ-մութեանն խառն են: Զայս ամենայն անցս եւ զդէպս նոքա ի նկարու հանեալ ցուցանեն: Ասեն թէ համօրէն մարդիկ հեղձան ի հասարակաց ջուրցն հեղեղէ. եւ թէ մի մարդ միայն որում անուն Կոքսկոքս եւ ըստ այլոց Թէօհիպակդլի, զերծեալ ապրեցաւ ընդ իւրում ամուսնոյն՝ նաւակաւ: Եւ ելին նոքա ի լեառն մի զոր նոքա անուանեալ կոչեն Կողհուական, եւ անդ եկեալ յորդէծնութիւն բազում որդւոց որ ամենեքին խուլք էին, մինչեւ աղաւնւոյ իրիք ի դիտակէ ծառոյ միոյ նոցա բարբառս ուսուցեալ, բայց կարի այլակերպս յիրերաց, որպէս զի չկարէին նոքա զմիմեանս իմանալ,,:

Մատենագիրք բազումք իրաց Ամերիկացւոցն պատմեն թէ հար-ցեալ երբեմն բնակչաց Կուբայ կղզւոյն վասն իւրեանց սկզբանն՝ ի Սպա-նիացւոց, այսպիսի ինչ զրոյցս են պատմեալ. "Լուեալ են նոքա ի նախ-նեաց իւրեանց թէ ած Աստուած զերկինս եւ զերկիր եւ զայլսն ամե-նայն համակերպս ի հաստումն: Դարձեալ, ասեն, ոմն այր ծեր, յա-ռաջագոյն առեալ զազդումն ջրհեղեղի որով պատժելոց էր Աստուած զմարդիկ վասն մեղացն իւրեանց, նաւ մի մեծ գործեալ, եւ ինքն իւրով տամբն ի ներքս մտեալ: Իբրեւ դադարէին հոսանք ջուրցն, արձակել նորա ագռաւ մի որոյ բազում մարմինս մեռելոտիս գտեալ, չդառնալ այդրէն: Ապա արձակեալ նորա աղաւնի մի յաղաւնեաց, եւ նորա

ուստի մասնաւոր իմն ջրհեղեղ եւ սակաւ զգալակերպութեան յայնժամու եւ այժմու երկրիս գնեն։ Զ. Նմին հակառակ բաղդատեսցուք հանգերձ հոյակապ երկրախօսիւ տր Լիւքաս գնել գնեն համառօտաբար ինչ ջրհեղեղ՝ այլ ի հիմանց փոփոխմամբ սաստն լինել ի գնդի երկրիս. այնպէս զի այժմու կղզիք մեր յայնժամու լերանց գագաթունք իցեն, եւ գագաթունք լերանց մերոց՝ կղզիք յայնժամու ծովուն։ — Յայն սակս ի գագաթունս բարձրաբերձ լերանց որ սալաքար իցեն, ասէ տր Լիւք, չգտանին խեցիք կամ այլ ինչ ծովային ծնունդք։ Զնորին հակառակն շուրջ զլեռնամբքն այնորքիւք գտանին ցածագոյն լերինք կոյտ որք ի ծովային մարմնոց առաջնոյ ծովուն յօրինեալ կան։ Ոսկրոտի մարդկան չգտանի ուրեք, ասէ, այժմ ի մերում երկրի, քանզի անգուստ ի սկզբանէ թաղէին մարդիկ զմեռեալս իւրեանց, ուստի չէր հնար հեղեղաց տանել զնոսա ի ծով, որպէս տանէին զանասնոցն ոսկերս եւ զդիականս զորս այնչափ յաճախութեամբ ի դաշտավայրս մեր եւ ի լերինս որք յայնժամ ի ծովու էին՝ գտանեմք։ (Զայսչափ յաճախութիւն ոսկրատեղոյ անասնոց որպէս եւ զծառոց ի քրէական նիւթ փոխելոց՝ ի ժամանակս վերջորեայն տարրշութեան փախեն այժմու սառուցագոյն հանգամանք երկրագիտութեան)։ Ըստ տր Լիւքայ նաւաղել ջուրցն զոր յիշատակէ Մովսէս, է թողուլ ծովու զառաջին ժողովեալն իւր, թէպէտ եւ կայր մնայր ջուրն եւ ի խորանձորս եւս նորոյ երկրին։ Եւ այնպէս ի միում ի կղզեաց առաջնոյ ծովուն, այս ինքն ի լերինն Արարատայ դադարեաց տապանն։ — Իսկ դժուարութեանն զոր յաշխարհագրական բանիցն Մովսէսի [1] մարթի ոք ընդդէմ բերել, տայ պատասխանի թէ յորժամ Մովսէս զերկրէն Եդեմայ խօսէր, զառ հմանս հին ինչ երկրի նկարէր։ Զաւանդութիւն չորից գետոցն այնոցիկ պահեալ էին, ասէ, նոյեանք, եւ յետ ջրհեղեղին նորոց գետոց ետուն զհին անուանսն, որպէս Եւրոպացիք ասէ, յԱմերիկացւոց աշխարհին զվայրսն ըստ իւրեանց հայրենի աշխարհին անուանեցին։ Այս կարծիք, թուի ինձ, ասեն, թէ կարեւոր եւս է առ ի մեկնելոյ թէ ընդէր չորեքին գետքն այնոքիկ որ յԱդամայ ժամանակս ի միոջէ աղբերէ ելանէին, այժմ չգոն ուրեք ի միջի։ 3. Այլ առաւել հասարակաց միաբանութեան կարծիք այն են, որ ոչ այնչափ փոքրկացուցանէ զջրհեղեղն մինչեւ մասնաւոր ինչ ջրհեղեղ գնել, եւ ոչ նմին հակառակ այնչափ սաստկագոյն համարել, որպէս զի եւ զնիւթքն մասունս գնդի երկրիս ի հիմանց խախտեալ նոր աշխարհ հանել ի մէջ։ — Թէ որչափ հեռի ի հոգւոյ մովսիսեան պատմութեանն [2] է առաջին կարծիք՝ յայտ է (զի սպառնայ Աստուած ջնջել ոչ զմարդ միայն, այլ եւ զանասուն եւ զսողուն եւ զթռչունս երկնից, վասն որոյ եւ պատուիրէ առնուլ յամենայն ազգաց անասնոց ի տապանն [3]. եւ "սաստկանայր ջուրն . . . եւ ծածկէր զամենայն լերինս բարձունս որ էին ի ներքոյ երկնից, հնգետասան կանգուն բարձրացաւ ջուրն ի վեր")։ — Իսկ գիւան տր Լիւքայ որչափ գեղեցիկ, սուր եւ դիպող ի մեկնութիւն երկրագիտական դժուարութեանց ինչ կամ բանից ինչ գրոց զառաջինն երեւիցի, միշտ իսկ չկարէ հաճել զայնպիսի միտս որ առողջ եւ հաստատուն ինչ քննութիւն սիրիցեն։ Ուր՝ զի այնմ յանդուգն եւ համարձակ կարծեաց հակառակ գտանի ինչ ինչ եւ յերկրագիտութենէ՝ այնու զի յընդարձակ շարս յատակի երկրիս՝ որ է յատակ ծովուն առաջնոյ ըստ տր Լիւքայ, եւ յայլ եւս բազում տեղիս գտանին շերտ շերտ կուտեալ մնացորդք ցամա-

1 Ծնն. Բ. 10 — 14։ 2 Ծնն. Զ. 7։ 3 Ծնն. Է. 20։

քայլին շնչաւորաց եւ ծառոց եւ այլ եւս ինչ իրաց որ ցանկալի մա-նաւանդ եւ ոչ ծովու պատշաճիցեն : — Դարձեալ ոգի մախախման պատմութեանն եւ բանքն[1] չներեն այնպիսի մեկնութիւն : Մովսէս ի նկարել անդ զանեղի բնակութեան առաջնոյ մարդոյն, զդրախտէն ասեմ կամ զեդեմայ՝ մեկին եւ յայտնի բանիւք ի մէջ բերեալ ցուցանէ խորե-մատամբ զմիջին կողմն զայն արեւմտեան Ասիոյ, որ առ երկու մեծա-մեծ գետովք եւ ընդ մէջ չորից ծովուց կայ, այս ինքն ընդ մէջ ծովուց Պարսից եւ Արաբացւոց ծովուցն եւ ընդ մէջ Կասպիական եւ Միջեր-կրական ծովուն : Այնպէս յայտնագոյնս անուանէ Մովսէս զերկոսին մեծամեծ գետս այսր միջին կողման Ասիոյ, զԵփրատ եւ զՏիգրիս գե-տոց ասեմ, որպէս զի չիցէ խոկ հնար ամենեւին տարակուսելոյ, թէ արդեւք այն գետք իցեն զոր մեք Եփրատ եւ Տիգրիս կոչեմք : Ջեր-րորդ գետն դրախտին, զոր Մովսէս Փիսոն կոչէ, տմկրութիւն է ի հիւսիսակողմն ի Կովկասեան սահմանս որոնել, եւ համարին իմն թէ գուցէ Փասիս գետ իցէ այն, սակայն չէ այն առոյգ հանգոյն առա-ջնոցն : Ջչորրորդ գետն (զԳեհոն) հին մեկնիչք առաւել զՆեղոս գետ համարէին, բայց ընթացք չորրորդ գետոյն այնորիկ զոր Մով-սէս նկարէ, չունի ինչ նմանութիւն ընդ այժմու ընթացից Նեղոս գետոյ : Նոյնպէս եւ մի աղբեւրն այն դրախտին ուստի չորեքին գետքս ելանէին՝ չգտանի ուրեք ի վերայ երկրի, կամ զի ցամաքեալ իցէ այն եւ կամ խցեալ եւ կամ այլով ինչ օրինակաւ անհետ լեալ. եւ կամ (որպէս ոմանքն կարծեն) թերեւս անդէն յանկանել մարդոյն յերանա-լից կայանացն, տատանումն ինչ եւ դղրդումն ամենեւին խոկ այլայլեալ իցէ զանեղին զայն, որովք ի մէջ գայցէ այլակերպութիւն մախախման նկարագրին եւ այժմու դրից կողմանցն այնոցիկ եւ գետոց նորա[2] :

## Բ

### Աշխարհ նոր — Բաժանումն ազգաց . 2345 — 2245

### 11

Եւ Նոյ հրամանաւ Աստուծոյ ի տապանէ անտի հանդերձ տամբն իւրով եւ ամենայն անասնովք եւ կոխեաց զցամաքն : Շի-նեաց Նա վաղվաղակի սեղան եւ եհան ողջակէզ Աստուծոյ յամե-նայն անասնոց սրբոց եւ հաճոյ եղեւ Տեառն պատարագ նորա : Օրհնեաց Աստուած զՆոյ եւ զորդիս նորա զի աճեսցին եւ բազ-մասցին եւ լցցեն զերկիր : Եւ թողացոյց եւս նոցա բաց ի բուսոց ուտել եւ զմիս անասնոց, որով մարթի առնուլ ի միտ թէ ար-գելեալ էր այն Ադամայ եւ Սեթեանցն, եւ այս իսկ հանդերձ փո-փոխութեամբ հանգամանաց նորոյ աշխարհիս, յիրաւի համարի

1 Ծնն. Բ. 8 — 15 :

2 Ըստ մերձեցուցանելոյ մատենագրաց զայս երկու անդրայս գետս յայլ եւ այլ ծանօթ գետս՝ փոփոխեն եւ զդիր դրախտին : Ռելանդ եւ Կալմէտ Փիսոն գետով իմանան զՓասիս, եւ Գեհոն գետով՝ զԵրասխ. եր-կիր Եւիլատայ համարին զԿողքիս, եւ երկիր Քուշայ (Եթովպացւոց) համարին զԿասսէա զերեթէ ի Խուժաստանի . (տես Ստրաբ. ԺԱ. 512 : Դիոդ. Սիկիլ. ԺԵ. 111 : Սուիտ. Բիւզ. : Ապպիան. զՊարթ.) ուստի եւ զԵ-դեմ կամ զդրախտն դնեն ի Հայոց աշխար-հին : Բոշար եւ Հուետիոս փոխեն զԵդեմ ի հարաւակողմն Միջագետաց (այժմու Նա-հանգն Պաղտատ), Կլերիկոս ի մէջն . զդոյն Մովս. փոխէ յԱսորիս, Միխայելիս՝ մօտ ի ծովն Կասպից, եւ այլք այլուր :

պատմեալ երկայնակեցութեան նահապետացն առաջնոց: Նմին հակառակ արգել Աստուած Նոյեանց տալ զարիւն անասնոց զի նովին առաւելագոյն ի զգուշութիւն յորդորեսցին չհեղուլ զարիւն մարդոյ. միւսանգամ պատուիրեաց զգոյշ լինել յարենէ զոր եւ յանասունսն իսկ պատահայր լինել վրէժխնդիր: — Նոյն եդ եւս Աստուած ուխտ ընդ Նոյի եւ ընդ ազգի նորա եւ ընդ ամենայն արարածոց, եւ նշանակ ուխտին երեւեցոյց զծիածանն եւ խոստացաւ ոչ ջնջել յայնմհետէ զաշխարհ ջրհեղեղաւ[1]:

Սկսաւ Նոյ գործել զերկիր եւ տնկեաց այգի: Արբեալ ապա ի գինւոյ նորա եւ վասն զի չգիտէր զզօրութիւն ըմպելւոյն՝ արբեցաւ: Որդի նորա կրտսեր Քամ տեսեալ զնա ի վրանի զի անկեալ դնէր՝ այպն արար եւ ծիծաղեցաւ ընդ մերկութիւն հօրն. բայց Սէմ եւ Յաբեթ նորին եղբարք գնացին յետս յետս եւ ծածկեցին զմերկութիւն հօրն իւրեանց: Իբրեւ սթափեալ իմացաւ Նոյ զգործն Քամայ, անէծ զորդի նորա զՔանան եւ եդ զզաւակ նորա ծառայ՝ երկուց որդւոցն իւրոց Սեմայ եւ Յաբեթի, զորս օրհնեաց իսկ: Նոյն ինքն Նոյ վախճանեցաւ 950 ամաց, յամի իբրեւ 2000 յառաջ քան զՔրիստոս[2]:

## 12

Արդ սկսեալ աճել եւ բազմանալ մարդկան (որպէս կամէր իսկ Աստուած) հարկեցոյց զնոսա խնդրել գտանել վայրս ինչ առատաբերս, եւ խաղացին յարեւելից ի դաշտավայրն Սենաարայ: Անդ զարգացաւ ի մէջ նոցա վստահութիւն ի զօրութիւն իւրեանց եւ հաստատուն յամբարտաւանութիւն եւ ի մեծամտութիւն. զի խորհեցան խորհուրդ՝ շինել բուրգն որոյ գլուխն հասանիցէ մինչեւ յերկինս, զի այնպէս քաջանուն եւ փառաւոր լինիցին, եւ իբրեւ այն թէ անգոսնիցեն իմն եւ զԱստուած: Անդ ցրուեաց Աստուած զգործ ամբարտաւանութեան եւ յիմարութեան նոցա. զի խառնակեաց զլեզուս նոցա որ յայնժամ մի միայն էր, եւ ի պատժելն զմանկամիտ ընդունայնապարծ հպարտութիւն նոցա՝ արկ միանգամայն հիմն այլակերպութեան լեզուաց: Նոյն յայն սակս Բաբէլ (խառնակութիւն) անուն կոչեցաւ տեղւոյն:

Զայսր դիպաց եկն երեւելի ինչ զհետ, զի բաժանեալ սփռեցան Նոյեանքն յայս եւ յայլ կողմանս, եւ այնպէս տակաւ ձգեցաւ բնակութիւն մարդկան յամենայն սահմանս երկրի[3]: Զայս բաժանումն ազգաց սովորութիւն է դնել յամի իբրեւ 2245—30 յառաջ քան զՔրիստոս: Սմանք այսպէս համարին թէ այն եւս իմն յետոյ դիպեցաւ, եւ Փաղէկ որդի Եբերայ՝ յորմէ Եբրայեցիքն անուանեցան[4], յետոյ առեալ իցէ զՓաղէկն անուն որ ի բաժանումն անդր

1 Սիր. ԽԴ. 17—19: Եսայ. ԾԴ. 9:
2 Ծնն. Ը. 15—Թ:
3 Ծնն. ԺԱ. 1—9:
4 Ծնն. ԺԱ. 10—26:

Հայր եւ ոչ եթէ անդէն ի ծննդեանն իւրում՝ որ եղեւ յամին՝ որ յառաջագոյն նշանակեցաք։

Բնակութիւն ամենայն երկրի եղեւ ի զաւակաց անտի երից որդւոցն Նոյի։ Սեմեանքն առաւել քան զայլ ցեղսն կացին մնացին միահամուռ․ քանզի բնակեցին նոքա յԵփրատ գետոյ ընդ արեւմուտս մինչեւ ցծովն Միջին կամ Միջերկրական եւ ընդ արեւելս մինչեւ ցՍքառս գետ․ եւ վասն միաձեւ կերպարանաց եւ համաբամանաց կողմանցն այնոցիկ՝ առաւել քան զամենայն ցեղս պահեցին յամենայնի զմերձաւորութիւն եւ զնմանութիւն ցեղին իւրեանց։ — Յաբեթեանքն առին ի բնակութիւն զհիւսիսի արեւմտից Ասիոյ եւ զԵւրոպէ, ուստի քան զամենայն ցեղս՝ սոցա բնակութեանն օդոց խառնուածք այլակերպք եւ ազգի ազգիք են․ եւ յայն սակս լեզու նոցա եւ բարք յերկարագոյն ժամանակօք անկան ընդ մեծամեծ փոփոխմամբք։ — Քամեանքն գաղթեցին նախ անդ յԱփրիկէ եւ ի միոյն մասին ներքնակողմանցն Ասիոյ, եւ ցեղք ինչ ի նոցանէ որ յառաջնումն առ Եփրատաւ, եւ ի հարաւակողման Արաբացւոց աշխարհին եւ առ ծովեզերքն Ասորւոց բնակէին, ի Սեմեանց անտի մերժեցան եւ կամ խառնեցան իսկ ընդ նոսա։ — Վասն առաւել յայտնագոյն զայս երեւելի բաժանումն ազգացն եւ զնոցին սերունդս առնելոյ, պարտ եւ պատշաճ է դիտել մանր զանգին եւ զպատուական ազգահամար ազգացն զոր Մովսէս աւանդէ։ Եւ ինքեանք իսկ անուանք իւրաքանչիւր արանցն որ յազգահամարի անդ նշանակեալ կան՝ ապաքէն իւրաքանչիւր ազգս նշանակեն․ եւ մեծ մասն նոցա ունին յանկութիւն ընդ անուանց ազգացն որովք կոչին առ յետին եւս արեւելեայս[1]։

## 13

Յաբեթի ծնունդք են — 1․ Գոմեր (Գամեր), Գամիրք կամ Կիմմերացիք առ հիւսիսային ծովեզերբն Սեւ ծովուն։ Ի նմանէ սերեալ են․ ա․ Աքանազ, ազգ ինչ ի մէջ Հայոց աշխարհին եւ Սեւ ծովուն, թերեւս Բիւթանացիք եւ Փռիւգացիք․ ասեն եւ զԳերմանացւոց թէ յԱքանազայ իցեն․ բ․ Ռիփաթ, ուստի բնակիչք Ռիփայեան լերանցն յորս երբեմն զՊափղագոնացիս ասեն բնակել․ գ․ Թորգոմ, ուստի Հայք։ — 2․ Մագոգ, յորմէ բնակիչք Կովկասու եւ մօտաւոր վայրացն, Սկիւթացիք եւ թերեւս եւ Սարմատք իսկ։ — (Գոգն եւ Մագոգ իբրեւ հիւսիսային ազգք յիշին առ Եզեկիէլի ԼԸ․ 2)։ — 3․ Մադայ, ուստի Մեդացիք, կամ Մարք։ — 4․ Յաւան, ուստի Յոնիացիք կամ Յոյնք, յորմէ ա․ Եղիսա ուստի Հեղենք անձուկ մտօք, բնակիչք Եղիսայ եւ այլք․ բ․ Թարսիս, ուստի

1 Ծնն․ Ժ․ 1 — 32։

բնակիչք Կիլիկիոյ եւ դիւցի զաւառացն. գ. Կիթիմ, Կետիմ (Կիտտիմ), ուստի Պեղասգացիք, յորոց ի Կիպրոս եւ ի Մակեդոնիա եւ յԻտալիա եղեւ բնակութիւն. դ. Դոդանիմ, ուստի Դոդոնացիք յԷպիրոս։ — 5. Թուբաղ (Թոբէղ), ուստի Տիբարենացիք ի Պոնտոս եւ ի Կիլիկիա։ — 6. Մոսոք (Մեսէք), ուստի Մոսխացիք ի վերայ լերանցն որ զՎրաց աշխարհ ի Հայոց աշխարհէն եւ զՀայոց աշխարհ ի Կողքիսոյ բաժանեն. ազգք վայրագք յորոց եւ զՀոնս ասեն սերել։ — 7. Թիրաս յորոց Թրակացիք, եւ որ բնակեալ են առ Թիրաս (Տնիէստեր) գետով [1]։

Քամայ որդիք են — 1. Քուշ, յորմէ բնակիչք Քուշաստանի, Եթովպիոյ եւ Հարաւակողման Արաբիոյ. սերունդք նորա են ա. Ներրովթ, որ արկ հիմն իշխանութեան Բաբելացւոց, որ առ սկիզբն ի կողմանս Սենաարայ. բ. Սաբա, ուստի բնակիչք Մերովայ յԵթովպիա. գ. Եւիղա (Քաւիղա), ուստի Քաւղոտացիք ի Հարաւակողման Արաբիոյ. դ. Սաբաթա կամ Սաբոթա, նոյնպէս ի Հարաւակողման Արաբիոյ. ե. Սաբակաթա (Սաբաթակա), ուստի բնակիչք արեւելեան ծովեզերացն Եթովպիոյ. զ. Հռեգմա, յԱրաբիա առ ծոցոյ ծովուն Պարսից. ի սոցունց՝ ա. Սեբա Սաբա եւ բ. Դադան (Յուդադան) որ են ազգք նոյնպէս ի նմին վայրի։ — 2. Մեսրայիմ (Մեծրայիմ) ուստի Եգիպտացիք. սերունդք նորա զարմեալ ա. Ղուդիիմացիք Թերեւս Լուդիացիք. բ. Անամացիք, բնակիչք Ամմոնեայ անապատին. գ. Ղաբացիք, Ղուբացիք, Ղիբէացիք. դ. Նեփթօացիք, բնակիչք Նեփթուսու ցամաքին որ կայ ի մէջ Եգիպտոսի եւ Արաբիոյ. ե. Պատրոսացիք, բնակիչք Թեբայեցւոց կամ վերին Եգիպտոսի, ուր կայ նահանգն Փատուրէս. զ. Քասղոնացիք բնակիչք վայրացն մօտ ի Կասիոս լերանն ի ստորին կողմանս Եգիպտոսի եւ ի Կողքիս։ Ի Քասղոնացւոց սերեալ են Կափթորացիք ի Կրետէ կղզւոյ՝ ուստի Փղշտացիք եկին ի Հարաւակողմն աշխարհին Պաղեստինացւոց։ — 3. Փուդ, Մաւրիտանացիք, արեւմտեան Ափրիկեցիք։ — 4. Քանան, բնակիչք աշխարհին Պաղեստինացւոց եւ ծովեզերացն Ասորւոց. ի նմանէ սերեցան Սիդոնացիք, Քետացիք, Յեբուսացիք, Ամորհացիք, Գերգեսացիք, Խեւացիք, Արակացիք, Սինիացիք, Արուադացիք, Սամարացիք, Համաթացիք, Կինիացիք, Կենեզացիք, Կեդմոնացիք, Ռափայինք, Փերեզացիք, Քանանացիք, զորոց յետոյ ճառեսցուք [2]։ — Եւ Մեքսիկացիք յԱմերիկա պատմեն թէ ի Քամայ են։

Սեմայ որդիք են — 1. Եղամ, բնակիչք Եղիմայիսայ ի Պարսից աշխարհին։ — 2. Ասուր, ուստի ժողովուրդ Ասորեստանեաց թագաւորութեան։ — 3. Արփաքսադ, բնակիչք Հիւսիսակողման աշխարհին Ասորեստանեաց կամ Քաղդէացւոց։ Որդի նորա Սաղա, յորմէ Եբեր նահապետ Եբրայեցւոց Փաղեկաւ որդւովն. Փաղեկայ

1 Ծնն. Ժ. 2—5։ 2 Ծնն. Ժ. 6—20։ ԺԵ. 19—21։

եղբայր Յեկտան՝ էր նախահայրն ազգացն Արաբացւոց, որ են Ելմոդադ, Սաղէք, Ասարմոթ (Ազարմաւէթ), Յարաք, Յոդորամ (Ադուրամ), Եզէղ (Ուզալ), Դեկղա, Եբաղ (Գեբաղ), Աբիմայէղ, Սաբա, Ուփիր, Եւիլա եւ Յոբաբ. բնակեալ նոսէին առքա յերկիրին, որ է ի Մասեայ (Մեսա) մինչեւ ցլեառն Սեփար (կամ Սոփփերա) ընդ արեւելս, ուր Արաբանի եւ Գեզիրաթ հոսեն ի խորշ ծոցուն Պարսից, եւ յերջանիկն Արաբիա։ — 4. Ղուդ որպէս հաւանութեան թուի՝ ժողովուրդ ինչ Եթովպացի թէպէտ եւ մեծ մասն մեկնչացն համարին զԼիւդացիս բնակեալ ի Փոքուն Ասիա։ — 5. Արամ, բնակիչք Ասորւոց եւ Միջագետաց որ Արամեցիքն կոչին. սորա սերունդք են ա. Հուս (Ուզ) ի կողմանս Դամասկոսի. բ. Հուղ ի Խոր Ասորիս. գ. Գաթեր (Գեթեր) նախահայր Բակտրիացւոց. դ. Մէս կամ Մասէք (Մոսոք) բնակիչք լերանց Մասեայ (Մեսա) ի Միջագետս[1]։ Այս իսկ է բովանդակութիւն մասնաւոր ազգահամարին, զորոյ զմասն մի ինքնին գիրք մեկնեն, եւ զմասն մի հմուտք պատմութեանց[2]։

## 14

Ի վիպասանութիւնս եւ ի պատմական վկայութիւնս ազգաց բազմաց՝ գտանեմք միաբան զորոց սրբոց զտեսիլ եւ զյիշատակ երից նախաւոր ցեղապետաց մարդկան՝ որոց ի միոջէ միայնոյ նահապետէ առեալ իցէ սկիզբն հանդերձ մանր ինչ դիպօք պատմութեանն Նոյի եւ երեցունց որդւոց նորա, զպատմութիւն աշտարակաշինութեանն իբրեւ զչար ինչ գործոյ, եւ զայնր զհետ գալ բազմաբարբառն լինել մարդկան, եւ զամենայն ազգս տարածանել ի կողմանց միջին Ասիայ։

Ա. Բուն հին ինչ մատեան Հնդկաց պատմէ այսպիսի ինչ. "Սատիաւարմանայ (որ եւ Մենու) համաշխարհական թագաւորի եղեն որդիք երեք. երիցագոյնն ի նոցանէ էր Շերմա, երկրորդն Քարմա, եւ երրորդն Յապետի։ Սոքա էին այր բարեբարոյք, հոյակապք յառաքինութեան եւ ազնուագոյնք գործովք, վարժք եւ կիրթք ի հրահանգս զինուց պատերազմի, քաջք եւ առաքինիք եւ յաղթութեանցն ցանկացողք։ Եւ Սատիաւարման հանապազ ի նկատութիւնս հոգեւորական ինչ իրացն վայելէր. եւ իբրեւ տեսանէր թէ որդիք իւր բաւական էին թագաւորելոյ, եդ ի վերայ նոցա զբեռն թագաւորութեանն։ Բայց ինքն եմուտ ի պաշտօն դիցն եւ քրմաց եւ կովուց,,։

"Իբրեւ երբեմն թագաւորն Մենու ըստ սահմանելոյ հրամանին ընդ գինիս մտեալ յանզգայեալ էր եւ ննջէր մերկ, տեսս զնա Քարմա, եւ կոչեաց անդր զիւր զերկուս եղբարսն եւ ասէ. Զի՞ է այս. յինչ կերպարանս գտանեմք զհայր մեր հասեալ։ Ծածկեցին զնա կտաւովք եւ տային նմա այդրէն ուշաբերել։ Իբրեւ ի միտսն եկեւ եւ եհաս ամենեւին յիրացն վերայ, անէծ զՔարմա այսպէս. Լինիջիր դու քան

1 Ծնն. Ժ. 21 — 31։ 2 Տես եւ յԲ. Յամ. Քրոն. Խոս. ԵԼ 9—13։

զամենայն առաւել առակագոյն. եւ քանզի անհամեմատ, ի ծովը հասար առաջի նոցա, ի ծագաց է անտի առնուցուս զաւ զանուանումն: Յայնժամ էառ նա Շերմայ սահմանս ժառանգութեան մեծանխառն ի հարաւակողմանս լերանցն նոցա: Եւ Յաբեթայ շնորհեաց զամենայն ինչ որ ի սահմանս հիւսիսակողմանց լերանցն նոցա կային: Բայց ինքն աստուածպաշտութեան նկատութեամբ ի կատար երանութեան հասանէր":

Նոյնպէս եւ Ամերիկացիք յառաջ վարեալ զպատմութիւն ջրհեղեղին՝ պատմեն "Ծերոյն այնորիկ համարեալ զերկիր ցամաքեալ ի ջուրցն տեսանել, ելանել ի նաւէ եւ կազմել գինի ի վայրի խաղողոյ, եւ ի գինւոյն արբեալ ի քուն մտանել: Իբրեւ եւես, ասեն, որդի նորա, ծաղր արար զմերկութեամբն նորա, եւ միւս որդին եկեալ առ մեծարանաց ծածկեաց զմերկութիւն նորա: Իսկ ծերոյն զարթուցեալ զնա անէծ եւ զսա օրհնեաց: Եւ թէ ինքեանք յառաջնմէ որդւոյ անտի իջանեն, եւ մերկ իսկ շրջելոյ նոցա՝ զայս տան պատճառս. այլ նմին հակառակ, ասեն, Սպանիացիք (Եւրոպացիք) քանզի հանդերձս ագանին, թուի թէ յերկրորդ որդւոյ անտի սերեալ են":

Նոյնպէս եւ առ արեւելեայս ասէ յիշատակ երիս լինելոյ ցեղապետաց. "Յետ ջրհեղեղին, ասէ Սիբիլլա, ի վերայ առաջնոյ մարդկան լինելոյ՝ թագաւորեաց Կրոնոս եւ Տիտան եւ Յապետոս": կամ ըստ թարգմանութեանն եղելոյ առ Խորենացւոյն[1] "Զկնի նաւարկութեան Քսիսութրեայ ի Հայս, Զրուանն (զի այսպէս կոչեն արեւելեայք զՍէմ[2]) եւ Տիտանն եւ Յապետոսթէ լինէին իշխանք երկրի":

Բ. Մասն աշխարհագրութեան՝ լուիցուք աւանդութեանն որ անդէն յերկրի անդ յորում եղեւ՝ պատմի: Բաց յԱղեքսանդրէ Բազմավիպէ[3] ունի եւ Աբիւդենոս այսպէս. "Դիպեալ առաջնոցն՝ զօրութեամբ եւ յաղթանդամութեամբք յուղացեալք, մինչեւ զդիւն եւս անգոսնել եւ յանպիտանութիւն հասանել: Սկսանէին զբարձրաբերձ զաշտարակն կանգնել, որ այժմ Բաբելոն կոչի. եւ իբրեւ մօտ յերկինս հասուցանէին դիցն, այնուհետեւ հողմոց դից օգնական լեալ՝ մղէին եւ յերկիր կործանէին զմեքենաւոր գործն անարեացն. եւ յաւակն կործանեալ՝ Բաբելոն անուանէր: Որ ցայն վայր միաշուրթն համալեզուք էին, եւ ի դիցն բազմամբառ խառնախօս խլրտութիւն ի միաբանեալսն եկեալ մտանէր"[4]:

Նմին համեմատ ի նոյնպիսի աղբիւրաց եւ ընտանին մեր Մար Աբաս Կատինա[5] զայս մեծագին աւանդութիւն մատակարարէ. "Ահեղք, ասէ, եւ երեւելիք առաջինքն ի դիցն եւ աշխարհի մեծամեծ բարեաց պատճառք, որ սկիզբն աշխարհի բազմամարդութեան: Եւ ի սոցանէ հասեալ գտան ազգ սկայիցն, անհեդեդք, յաղթանդամք մարմնով եւ վիթխարիք, որք յղացեալ ամբարտաւանութեամբ ծնան զամբարիշտ խորհուրդ աշտարակաշինութեանն, եւ ի նոյն լինէին ի գործ անկեալք. յոր հողմ[6] ահագին իմն եւ աստուածեղէն շնչեցեալ

1 Գիրք Ա. Գլ. Զ:
2 Խոր. Ա. Գ. Զ. էջ 43:
3 Առ Եւս. Քրոն. Ա:
4 Առ Եւսեբ. Քրոն. Ա:
5 Առ Խորենացւոյն Գիրք Ա. Գլ. Բ:
6 Այսպէս եւեթ ասեն գիրք, թէ վասն խառնակութեան լեզուացն զաղարեցին ի շինելոյ զքաղաքն եւ զաշտարակն (Ծնն. ԺԱ. 8): Այլ Մ. Գրիգ. Լուս. զայս աւանդութիւն, այս ինքն զկործանել աշտարակին հողմով՝ որոյ է իսկ բազում ստուգութիւն, խառնէ ի վարդապետութիւնս իւր. "Հուր ահագին հողմախառն շարժ հարւածոյ Աստուծոյ... անկեալ ի վերուստ կործեալ զաշտարակն՝ վերուստ ի վայր փլուզեալ հասեալ, ստացեալ ցան եւ ցիր կացուցանէր" (Ագաթ. Հր. էջ 486 — 487): Տես եւ Թէոփիլոս Անտիոք. (յամի իբրեւ 250 յետ Քր.) առ Աւտողիկոս Գիրք Բ.):

ի դիցն ցասմանէ, ցրէ զամբարտաւանսն, եւ մեծագործն ամբարտաւան բարբառս խուռնաքանչիւր ամէնք բաշխեալ՝ տարմաւ շփոթի ի մէջ արկանէին„։

Այս ամենայն բաբելական կամ քաղդէական աւանդութիւնք վասն խոսացս որ անդէն յաշխարհի անդ նոցա դիպեցան, արդարեւ յայտ յառակագոյնք եւ ճշգագոյնք ըստ գրոց պատմութեանն են քան որ առ Յոյնս եւ առ Հռոմայեցիս վասն սոցին գիւղաց յառասպելս անդ պատերազմի սկայիցն ընդ դից [1], պատմի։

Մեծ դէպք բաժանման լեզուաց հաստատի եւ պատմութեամբ իսկ լեզուաց։ Ընդէն ի բուն ի կարի հին ժամանակս տեսանեմք այլ եւ այլ լեզուս՝ էութեամբ այլակերպս ի միմեանց կազմեալ եւ յօրինեալ ամենայն հանգամանօք, որ արդարեւ յայնչափ անձուկ ժամանակի որ ի Ջրհեղեղէ եւ անդր է՝ չմարթի առանց Աստուծոյ զօրութեանն յանկարծ ի ներքս խառնելոյ՝ դիպել։ — Նա՝ որպէս ի բնէ իսկ ի դէպ էր թէ աստուածեղէն զօրութիւնն զբազմաւորութիւն լեզուացն ըստ բազմաւորութեան ցեղիցն յարդարէր, նոյնպէս եւ արդեամբք իսկ ի բազմաւորութեան անդ լեզուաց, զոր առաջի ունիմք, նշմարի այնպիսի խնամութիւն եւ ազգականութիւն որով առնի համատառութիւն մովսիսեան ազգահամարին, որ զամենայն մարդիկ յերիս նախաւոր ցեղս բաժանէ, որպէս ըստ սերընդեանն նոյնպէս եւ ըստ լեզուացն եւ ըստ երկրագրական սահմանաց նոցա [2]։

Վասնզի նորագոյն քննութիւնք յօրինուածոց քաջ ի բաց հին լեզուաց զայն իմն հաւանութեան ցուցանեն թէ ի միջէ անտի նախաւոր լեզուէ երեք բուն այլ եւ այլ լեզուք միայն ելեալ են, այս ինքն Յաբեթեանցն եւ Քամեանցն եւ Սեմեանց։ — Այլ ի յառաջել ժամանակաց այն երեքին մայր լեզուք ընդ երեցունց ցեղիցն որոց լեզուք էին, ընկալան փոփոխմունս։ Մանաւանդ խառնուրդք առհմից ինչ եւ այլեւայլութիւն կլիմայի բնակութեան նոցա՝ եմոյծ այլակերպութիւնս իւրաքանչիւր բարբառ [3] անդր յերից մայր լեզուացն, միշտ իսկ եւ յետ բազմապատիկ դարուց յայնչափ այլակերպութեանն եւս՝ զնմանութիւն ազգականութեանն պահեալ, եւ զնմանութիւն նախաւոր կաղապարին իւրեանց։

1. Նմին իրի չէ ինչ կարի զարմանալի եթէ լեզու Յաբեթեանցն որք ըստ օրհնութեանցն Նոյի, թէ "Ընդարձակեսցէ Աստուած Յաբեթի„ [4], զմեծ քան զամենայն մասն հնոյ աշխարհին տարածեալ կալան, եւ ի կարի այլ եւ այլ կլիմայս բնակեցին՝ այնչափ մեծամեծ փոփոխումն ընկալաւ, մինչ զի ազգականութիւն նոցա առ միմեանս նուրբ քննութեամբ եւեթ նիւթոյ եւ ձեւոց նոցա գտանի։ Այս ցեղ լեզուաց անուանեալ կոչի հնդկային-գերմանական կամ հնդկային-եւրոպական. այս ինքն ի կարգէ լեզուաց այնոցիկ որ ի Հնդկաց՝ քերելով ի վերոյ քան զարեւմտեան հարաւային կողմանս Ասիոյ մինչեւ ցհիւսիսային ծագս Եւրոպիոյ բնակեալ են։ Որպէս ծառոյ իրիք որչափ ոստքն բազմանայցեն եւ տերեւքն եւ ծաղիկք, սակայն միշտ միութիւն բնոյն եւ

1 Γιγαντομαχία.
2 Ծնն. Ժ. 5, 20, 31։
3 Dialecte.
4 Ծնն. Թ. 27։

զօրութիւն արմատոյն երեւի, դոյնպէս եւ ի լեզուս սերընդոցն Յաբեթի ցրուելոց յերկրուս մասունս աշխարհի՝ նշմարին առաջին հանգամանք մայր լեզուի նոցա։ Հին մարական անուանք ըստ ձեւոյն եւ ըստ մտացն ճշդիւ ունին նմանութիւն ընդ սանսկրիտեան լեզուին Հնդկաց. նշխարք զանդիկ լեզուին ամենեւին միաբան են ընդ սանսկրիտ լեզուի, եւ զմեծ մասն նոր պարսիկ բանից դիւրաւ մարթի ի սանսկրիտ լեզուէ բխեցուցանել. ուր եւ հայ լեզուի ազգականութիւն ընդ զանդիկ եւ պարսիկ լեզուի առանց իրիք յերկուանաց է։ Դարձեալ սանսկրիտն եւ զանդիկ լեզու ընդ հին յունական, ետրուրիական, գերմանական, կեղտական, սլաւական լեզուաց, եւ սոքա եւս ընդ միմեանս անթիւ բանս ունին հասարակաց եւ ի դպրութեանն (քերականական) յօրինուածի առէպ համաստարութիւն, որովք յետ քննութեանց Բոպպայ եւ այլոց քննչաց լեզուաց՝ առանց երկուանաց իմն թուի բխել նոցա ի միոջէ լեզուէ Յաբեթեանց։

2. Մայր լեզու Քամեանց չանկանի ընդ քննութեամբ, քանզի բարբառքն որ ի նմանէ առին սկիզբն սերելոյ՝ ոչ ինչ բաւական մուտ շնորհեն համեմատութեամբ՝ արկանել զնոսա ի խոյզ եւ ի խնդիր։ Զհին լեզու Եգիպտացւոց անկատար իմն ճանաչեմք, այս ինքն ի դոյզն հատակտորոց մեհենական [1] նշանագրովք գրելոց ի ժամանակս փարաւոնեանցն թագաւորաց, եւ ի նոր եգիպտական լեզուէ՝ յոր մասունս կոպտեան (խպտի) նշանագրովք գրեալս գտանեմք. իսկ զայլ եւս զԱփրիկեցւոց բարբառս միայն ուրեք ուրեք բանիւք չափ գիտեմք, եւ զայն՝ ոչ ինչ կարի ստուգութեամբ։ Սակայն գոն եւ կռուանք ինչ ուստի մարթ իցէ համեմատութեամբ յայտ գալ թէ եւ Քամեանք իւրեանց առանձինն բարբառովն ազգ ինչ զատ յայլոց ցեղիցն լեզուաց կացուցանեն։ Միայն գաղթականք Քանանու որ ի հարաւային արեւմտեան կողմանս Ասիոյ բնակէին, խառնեցան ընդ Սեմեանս, օտարացեալք յառանձինն բարուց ցեղին իւրեանց։

3. Իսկ Սեմեանք յիւրեանց առաջին բնակութենէ անտի ոչ այնչափ հեռացան՝ մինչեւ լինելոյ կղիմայիցն կարի այլակերպ։ Եւ մեծ ինչ մասն ի նոցանէ ազատ էր յազգախառնութենէ օտարոտի ազգաց։ Վասն այնորիկ իսկ եւ բարբառքն եւս սեմականք չանկան յոյժ ընդ փոփոխմամբք, եւ այնպէս միաձեւ միանման յամենայն ժամանակի պահեցան, որպէս զի նոքին միայն չետուն երբեք մեզ կարծեաց ինչ երկմտութեան զազգակցութենէ իւրեանց։ Ի մէջ բարբառոցս այսոցիկ թուի թէ նախ եբրայականն, ապա արամացին (կամ ասորականն) եւ յետոյ արաբացին առաւելապէս շահեալ տիրեաց յազգսն հարաւային արեւմտեան կողմանց Ասիոյ։ Բաց ի լեզուէ անտի Քանանացւոց՝ փիւնիկեցի եւս լեզու սեմական էր եւ մօտ ամենեւին եբրայական լեզուի [2], զոր օրինակ եւ անուանք տեղեաց եւ արանց Փիւնիկեցւոց եւ բանք նոցա ի վերայ դաջեկանաց, եւ որ ուրեք ուրեք բանք առ հռոմայեցի մատենագիրս՝ որպէս առ Պղաւտոսի, Աւգոստինեայ եւ Յերոնիմոսի իբրեւ ի Կարքեդոնացւոց՝ համազգեաց Փիւնիկեցւոցն՝ գտանին, ամենայնիւ եբրայեցիք կամ սեմականք են։

1 Hiératique.

2 Յերոնիմոս Մեկն. Եսայ. Է. եւ ԽԹ. 21։ Աւգոստինոս Մեկն. Ծնն. Ա. 24. եւ ճառ. ՃԺԴ։ Մեկն. Յովհ. ԺԵ. որպէս եւ Բոշար Նուիրական երկրագր. Գիրք Բ Գլ. 1։

# 15

## Անցք ի յաջորդն ։

1. Զլեզուացն բաժանումն եմոյծ Աստուած վասն զի ընդ բաժանումն մարդկան կամէր[1] եւ լինել ազգ ազգ։ Բաժանմամբն զչապականեալ մասնն ի հաղորդութենէ ապականութեան ապականելոյն պատսպարէր, եւ զզօրութիւն չարութեանն կասեցուցանէր[2]։ Յորժամ մեղաւոր ի մեղաւորէ բաժանիցի, եւ մի ազգ զմեւս ազգ՝ այլակերպութեամբ լեզուի, բարուց եւ կրթութեան յուրմէ ի բաց անջատիցէ եւ հակառակութեամբ իսկ առ միմեանս կցեն, յայնժամ հրապոյրք օրինակի չարաց գործոց զոր մին յազգաց տայ՝ ոչ այնչափ միաւորին ազգի ազգիցեն, եւ ոչ այնչափ ցոլանալով փոփոխ առնուն աճումն մեղքն։ Նա՛ մարդկութիւնն իսկ եթէ յազգս ազգս չբաժանէր, ոչ վայրական տարածութեամբ տարածանել դիւրաւ ի վերայ երեսաց համօրէն երկրի կարող էր, կամ կամեցեալ զդոց իսկ բանիւք վարել՝ լնուլ զերկիր[3], եւ ոչ ըստ մասաւոր զօրութեանն յայլ եւ այլ հնարաւոր կերպարանս զինքն երեւեցուցանել՝ եւ ըստ այլ եւ այլն շաւղաց մասաւոր կրթութեանն խուզելով խնդրել գտանել զԱստուած[4]։

2. Առանց զայս բազմութիւն եւ զբաժանումն ազգաց եղծանելոյ՝ կամ եղեւ դարձեալ Աստուծոյ լինել արտաքին ինչ իրիք միաւորութեան ի բաժանման անդ ազգաց՝ հակառակ իսկ կամաց նոցա, այնպէս զի որպէս ի կամելն մարդկան միութիւն՝ ինքն ընդ բաժանումն կամեցաւ, նոյնպէս ի կամելն նոցա բաժանումն՝ ինքն կամեցաւ ընդ միաւորութիւն։ Զայս հան նա ի գլուխ ի ձեռն չորեցունց համաշխարհական պետութեանց՝ որք զխորհուրդն ոչ միայն զոր ի վերայ միոյ միոյ յազգացն ունէր Աստուած՝ հանէին ի գլուխ, այլ եւ ի վերայ միմեանց եւս մի ըստ միոջէ եղեն նոցին խորհրդոց կատարիչք[5], առ ի հեռաւորն եւ ի մերձաւորն պատրաստութիւն համօրէն մարդկութեան առ յաւիտենական արքայութիւնն Քրիստոսի։

Տեսիլ մարդկակերպարան պատկերի մարգարէութեանն[6] է տեսիլ համօրէն մարդկութեան որ յառաջ քան զՔրիստոս։ Ասորեստանեայն-Բաբելոնեան-Պարսկական Մակեդոնեան հնագոյն քան զամենայն թագաւորութիւնս աշխարհի տեւեաց բաւեաց հանա-

1 Ծնն. ԺԱ. 6—9. "Ահա ազգ մի եւ լեզու մի ամենեցուն... եկայք իջցուք եւ խառնակեսցուք զլեզու նոցա, զի մի լուիցեն իւրաքանչիւր բարբառոյ ընկերի իւրոյ։ Եւ անտի սփռեաց զնոսա տէր Աստուած անտի ընդ երեսս ամենայն երկրի... անտի ցրուեաց զնոսա տէր Աստուած ընդ երեսս ամենայն երկրի"։ ուր նախն հակառակ դանդաղէին իմն մարդիկ բաժանել ի միմեանց, զի ըստ հերքայեցւոյն՝ ի շինել անդ նոցա զաշտարակն առնէին. "զի մի սփռեսցուք ի վերայ երեսաց ամենայն երկրի" (Ծնն. ԺԱ. 4.) իբրեւ այն թէ աշտարակն այն յամենայն կողմանց տեսանելի լինել բարձրութեամբն՝ կացցէ մէջ ի միաւորութեան. այլ Աստուած զյիշատակարան միութեան նոցա արար յիշատակարան բաժանման նոցա։

2 Ծնն. ԺԱ. 6։

3 Ծնն. Թ. 1։

4 Գործ. ԺԷ. 26։

5 Եսայ. Ժ. 5։ Երեմ. Ծ. 9։

6 Դան. Բ. 37—46։

պարզորդ նորոգմամբ աւելի քան զ15 դար։ Այր թագաւորութեան հիմնիչ Բէլ՝ առ պաշտօն աստուածութեան, եւ բարձրացաւ թագաւորութիւնն այն առ Նաբուքոդոնոսորաւ եւ եղեւ թագաւորութիւն համաշխարհական. նմին իրի նմանի նա ոսկեղէն գլխոյ։ Ճոխ եւ հզօր, այլ սակաւագոյն ընդարձակութեամբ եւ տեւականութեամբ էր Մարական-Պարսկական թագաւորութիւնն եւ միանգամայն փառաւոր եւ մեծատուն. նմին իրի ընծայեցուցանի ի կերպարանս լանջաց եւ բազկաց արծաթեաց։ Իսկ Մակեդոնական թագաւորութիւնն խառնեալ ընդ միմեանս զսահմանս երկուց առաջնոց թագաւորութեանցն ընդ սահմանաց Յունացն եւ ընդարձակեալ տարածեցաւ. պղնձի էր նա զի պղնձին նիւթ պատերազմի եւ արուեստի է [1]։ Իսկ երկաթն որ զամենայն փշրէ եւ խորտակէ՝ պատկեր է Հռովմէական տէրութեանն որ զմեծաւ նուաճեաց եւ յետոյ ուրեմն ձգեալ տարածեցաւ ի վերայ ծանօթ ցեալ կողմանց աշխարհի։ Այլ յետ եղծագործ ապականութեան բարուցն որ շահեալ կալաւ ի նմա՝ տկարացաւ եւ եղեւ երկպառակ. ազգք օտարոտիք խառնեցան ընդ Հռովմայեցւոց, բայց երկաթոյ եւ խեցեաց չգոյր հնար զօդել ի մի։ (Յաւերակաց եւ ի մնացորդաց Հռովմէական տէրութեանն յօրինեալ կացին նորագոյն թագաւորութիւնքն։) Հռոմ կայր ի համօրէն մեծութեան իւրում ի ժամանակի զի ծնաւ Որդին Աստուծոյ։ Իջ նա յերկնից. "Հատաւ վէմ առանց ձեռին,,. փշրեաց խորտակեաց նա հոգեւորն օրինակաւ զտէրութիւնն Հռովմայեցւոց եւ զմեծ մասն երկրի. եւ հաստատեաց թագաւորութիւն յաւիտենական աստուածեղէն որ ոչ յայսմ աշխարհէ [2]։ — Այս է ժամանակագրական իմն բաժանումն հին ազգացն պատմութեան ըստ ընթացից իւր աստուածեղէն տեսչութեանն՝ որ ի նմին երեւիցին։

3. Աշխարհագրական ասպարէզն յորում անցին ի հանդէսի այս ամենայն դէպք՝ են երեք մասունք աշխարհի, Ասիա, Ափրիկէ եւ Եւրոպէ։

Ա. Մեծն քան զամենեսին Ասիա՝ որոյ 700,000 չորեքկուսի մղոն տարածութիւն է, անձուկ ինչ կրծիւն Սուեզայ բաժանի յԱփրիկեցւոց աշխարհէն, եւ Տանայիս գետով կամ Ուրալ լերամբք՝ յԵւրոպացւոց աշխարհէն. իսկ զայլ ամենայն կողմանս նորա պատեալ ունի ծով համատարած։ Հիւսիսային Ասիա յԱղտայեան լերանց մինչեւ ցծովն Սառնապատ ուր Սիբիրեան նահանգքն կան՝ գրեթէ անծանօթ էր նախնեացն։ Միջին Ասիա որ ի միջի է Աղտայեան եւ Տաւրոս լերանց ի Կասպիական ծովէ մինչեւ ցՈվկիանոս Արեւելից կամ Հնդկաց՝ անուանեալ կոչէր ի նախնեաց անտի Սկիւթաստան եւ Սարմատիա (Մեծ Թաթարք եւ Մոնղոլք), եւ է մեծ ինչ երկիր խոպան այլ ոչ եթէ ամենեւին անծին եւ

1 Տես Եզեկ. ԻԷ. 13։ 2 Յովհ. ԺԸ. 36։ Յայտն. Ա. 13—18։

Յայսմ յորդութենէ ունի զզգայութիւնն՝ մասն մի Եգիպտացւոց աշխարհին (հիւսիսակողմն Եգիպտոսի) եւ զպտղաբերութիւն երկրին՝ այնու զի ի նուազելն թողու տիղմ ինչ պարարտ, յորոյ վերայ թէ միայն արկանիցէ ոք սերմն առանց վարելոյ կամ պեղելոյ, հնձէ առատութեամբ՝ նա եւ երկիցս իսկ ի տարւոջ ժամանակի, եւ առնու առհմականս ազգի ազգի արմատոց եւ մրգոց։ Ապա թէ չաճէ գետն, լինի սովալլուկ աշխարհն ամենայն[1]։ Անձրեւաւն է օդն, եւ փոխանակ անձրեւացն ցօղն գիշերական գործէ առատութիւն երկրին[2]. սակայն առէզ յոյանսն եւ ինչ ինչ հիւանդութիւնք։ Բայց կան յաջմէ եւ յահեկէ Նեղոս գետոյ բազում կողմանք աւազուտք կամ լեռնայինք, որ յաջակողմն կուսէ երթեալ հասանեն ի զոգ ծովուն Արաբացւոց, եւ յահեկէ հասեալ կցին յաւազուտն անապատին Լիբիացւոց, յորս կան եւ վայրք ինչ պտղաբերք որ անուանեալ կոչին Ովասք. այլ նորին իսկ արեւմտեան լերինքն ամրացուցեալ պահեն զհովիտն Նեղոսի յեղծագործ ապականութենէ աւազոյն անապատի՝ զոր առեալ բերէ հողմն։

Բաժանի Եգիպտոս 1. ի Վերին Եգիպտոս ի Սուհենայ[3] կամ Սիէնայ[4] մինչեւ ցՍիուտ՝ ուր Ջրմուղն Յովսեփայ է։ Յայսմ վերինն Եգիպտոսի եւեթ գտանին յաճախագոյն մնացորդք շինուածոց Եգիպտացւոց, եւ որչափ ի հարաւ կոյս ոք ընթանայ, դոյնչափ բազմագոյն գտանէ։ Աստ է նշանաւոր մայրաքաղաքն Նո[5] կամ Նո-Ամմոն կամ Դիոսպոլիս մեծ կամ Թեբէք եւ չափ նորա շուրջանակի 4 մղոն, որոյ հոյակապ աւերակք ցայժմ կան, եւ հանդէս զքանչելի եւ չքնաղ շինուածոցն. (չորք գեւղք կան այժմ անդ՝ Լուքսոր, Քառնաք յաջմէ Նեղոսի, Քուռնու եւ Մետինեթ-Աբու ի ձախմէ)։ Նոյնեւեթ ցայժմ անդէն եւ շինուածք կամ աւերակք Հերմոնթիս, Լատոպոլիս, Մեծ Ապողինոպոլիս, Կղեոթիս, Սիղսիլիս, Օմբոս քաղաքաց. նոյնպէս եւ յԵղեփանտինէ եւ ի Փիղէ կղզիս գետոյն՝ մօտ ի հարաւային սահմանս վերինն Եգիպտոսի կան երեւելի յիշատակարանք։ — 2. Ի Միջին Եգիպտոս կամ Հեպտանոմիս (Եւթն Օրէնք) որ ի վերին Եգիպտոսէ հասանէ մինչեւ ցբաժանումն գետոյն, եւ փոխանակ շինուածոց կենդանեացն՝ լի է տամբք եւ այրիւք մեռելոց եւ յուրանօք. նոյնպէս նշանաւոր քա-

1 Ի սոսին իմն ակնարկէ Եսայ. ԺԹ. 5 — 9. «Արբցեն Եգիպտացիքն զջուրս ծովեզերեայ, քանզի գետն նուազեսցէ եւ ցամաքեսցի։ Եւ պակասեսցեն գետքն եւ ջրափոսք գետոյն եւ ցամաքեսցին ամենայն ժողովք ջրոցն եւ յամենայն մարգագետնին եւ յամենայն ամուրս եղեգան եւ պրտուոյ եւ ի լուսամարգս. ամենայն կանաչ որ շուրջ զգետովն իցէ, եւ ամենայն սերմանքն որ ընդ երկրաւ ջրով ջրեալ իցեն՝ խորշակահար ցամաքեսցին։ Եւ սրտատեսցին ձկնորսքն, եւ յողբս հանցեն ամենայն կարթընկեցք գետոյն. եւ ցանցորդքն եւ ուռկանաւորքն սուգ առցեն»։

2 Խոր. Գ. Գլ. ԿԲ. էջ 525 — 526։

3 Եզեկ. ԻԹ. 10։

4 Երոդ. Բ. 30։ Ստրաբ. ԺԷ։

5 Երեմ. ԽԶ. 25։ Եզեկ. Լ. 14. ըստ Եբրայեցւոյն. ըստ Եւթանասնիցն Դիոսպոլիս (Ամմոնական քաղաք). Թէպէտ եւ զայս քաղաք ոմանք անդ լինել համարին՝ ուր այժմ Աղեքսանդրիա է, սակայն եւ ոչ նոյն ընդ Թեբէս քաղաքի։

զայք գլխաւոր է Նոփ կամ Մոփ[1] կամ Մեմփիս[2]: — 3. Ի Ներքին Եգիպտոս որ ի միջի կայ երկուց բազկացն Նեղոսի ի Դելտայի անդ. քաղաքն գլխաւոր Զօան[3] կամ Տանիս[4] (կամ Տայանիս) յորում աստուածեղէն նշանքն կատարեցան, և Սայիս և Ոն կամ Հելիոպոլիս կամ Արեգ քաղաք, և ի հաւկ հիւսիսային ծայրս բազկացն Նեղոսի՝ Պեղուսիոն յարևելից, Կանոպոս՝ յարևմտից:

Այս իսկ աւելի նշանաւոր է երկիրն Գեսեմ որ փակեալ կայ ի մէջ վերջին կողմանց Նեղոսի, ներքին և միջնոյն Եգիպտոսի, ծովուն Միջնոյ և ի մէջ Պաղեստինացւոց և Արաբացւոց աշխարհին: Մասն մի էր այն Ռամեսեայ և կայր ի վերայ ճանապարհին Մեմփեայ և Տանեայ որ հանէր յերկիրն Քանանացւոց. Թէպէտ և խոպան էր, բայց կային անդ վայրք ինչ պտղաբերք, գեղեցիկք ի վար ցորենոյ և գարւոյ և ի ճարակ արօտականաց հանդերձ ջրհորովք և ջրաշեղջիւք, հեռի ի գոլորշւոյն որ ի Նեղոսէ ելանէ, նմին իրի և առողջարար օդն:

## 17

Բնակեալ յԵգիպտոս զաւակն Մեծրայիմայ՝ որ էր մի յորդւոցն Քամայ[5]. ըստ հին ինչ աւանդութեան ինքնին իսկ Քամ եկն յԵգիպտոս: Եւ յայն սակս իսկ ոչ միայն Կոպտիքն (Խոպտիք) քաջ ի բաց հինք քան զամենեսին, որ բնակեցին ի հովտին Նեղոսի, անուանեալ կոչեն զԵգիպտոս՝ Քեմի կամ Քամի, այլ և մեհենական գիրն Ռոսետեան[6] ցուցանէ թէ ինքեանք Եգիպտացիք նոյնպէս Քամ կարդային, և Եբրայեցիք ևս Մեծրայիմ կամ երկիր Քամայ անուանեն[7] և կամ յարկս Քամայ[8]: Բայց և այն իսկ առանց իրիք երկմտութեան է թէ և ի զաւակէ անտի Քուշայ գաղթականք յԵթովպացւոց աշխարհէն անդր եկին, և թէ յաճախագոյն բնակութիւն մարդկան և հրահանգք Եգիպտացւոցն ի հարաւ կուսէ ի հիւսիսակողմն ընթացան:

Քանզի յԵթովպիա ի մէջ Նեղոս և Տակասա (Աստապուս և Աստաբորաս) գետոց կայր՝ անուանեալ կղզին Մերովէ՝ այժմ Մերաւէ (ի ձեռ Գեղաստ նշանագրոյ), տէրութիւն ինչ քրմական, որպէս կարծի հաւանութեան թուի, յօրինեալ ի գաղթականութենէ իմիք վաճառականաց եկելոց ի հարաւային Արաբիոյ, Թեբեա և ի Հնդկաց ևս: Սահման և զօրութիւն իշխանութեան նոցա ձգեալ հասանէր ի հիւսիսոյ՝ ցՆուբիա, և ի

1 Եսայ. ԺԹ. 13: Երեմ. Բ. 16. Եզ. 1: Ովսէ. Թ. 6. ըստ Եբրայեցւոյն. ըստ Եւթանասնիցն՝ Մեմփիս:
2 Եբրայ. Սամարացին և այլք բազումք:
3 Թուոց ԺԳ. 22: Եսայ. ԺԹ. 11, 13: Սաղմ. ՀԷ. 12, 43. ըստ Եբրայեցւոյն. ըստ Եւթանասնիցն՝ Տանիս:
4 Սամար. Քաղդ. և այլք բազումք:
5 Ծննդ. Ժ. 6, 13, 14:
6 Տես ի խաղորհ էջ 57:
7 Տես Սաղ. ՃԵ. 23, 27. ՃԶ. 22:
8 Սաղ. ՀԷ. 51:

հարաւոյ՝ յերկիրն Եթովպիացւոց, որոց հիմք առ հասարակ Եթ-ովպիա անուն կոչէին եւ երբեմն Հնդկաստան եւս: Եթովպիք եւ երջանիկ հռչակեալ էին նոքա առ հին Յունաց՝ քան զամենայն ազգս եւ մեծատուն ոսկւով, փղոսկրով եւ ազնիւ փայտիւք: Բազում յիշատակարանք հին շինուածոց, որ առ Նեղոս գետով կան, որպիսի ինչ՝ յուրանք, աւերակք մեհենից եւ քանդակք ի վերայ յաղթ սեանց կամ քարակոյտ որմոց, զարմացուցանեն ցայսօր զճանապարհորդսն:

Եթեւովպիա կամ Մերովէ անուանեալն օրինակ նախանձելի էր Եգիպտոսի. սակայն որ ինչ անուն մեծամեծ ակիզբն միայն էր այնր՝ որ տակաւ երեւեցաւ յառաջ կայս զնացից Նեղոս գետոյ՝ յԵգիպտոս, որ եւ յետ առ ըստ իշխանութեան եւս զօրացաւ ի վերայ Եթեւովպիոյ:

Մեծ ուրեմն ի ժամանակ անդր որ ի մէջ է 2200 եւ 2000 ամաց յառաջ քան զՔր. հաստատեցան կացին քաղաքք քրմական իշխանութեանց Եգիպտացւոց. նախ Թեբէք կամ Դիոսպոլիս ի վերնակողման Եգիպտոսի, առ նմին Թիս որ յետոյ Աբիդոս կոչեցաւ, Եղեփանտինէ եւ Հերակլէոպոլիս որ յետոյ ընդ առաջնոցն միաւորեցան, որպէս հաւանութեան թուի, ապա Մեմփիս եւ յետոյ Տանիս եւ առ նմին Սայիս, Մենդէս, Բուբաստոս եւ Սեբեննիտոս. այս վերջինք ի ներքնակողման Եգիպտացւոց աշխարհին են, եւ որպէս թուի առ սակաւ սակաւ խառնեցան ի Մեմփացւոցն իշխանութիւն: Ի հարստութեանց աստի հզօրագոյն եւ երկարագոյն քան զամենեսին՝ Թեբայեցւոցն եւ Մեմփացւոց էր: Ամենայն իսկ համօրէն Եգիպտոս յ36 Օրէնս[1] (կուսակալութիւնս) բաժանեալ էր. եւ քաղաքք, ասեն, էին ի նոսա 20,000, յորս բնակեալ էին 10,000,000 մարդկան:

## 18

1. Պատմութիւն յօդուածոյ Եգիպտացւոց հաստատեալ կայր ի վերայ բաժանման տոհմից[2], որ ճշդիւ իսկ զատեալ որոշեալ ի միմեանց էին պատուով իսկ մահու՝ եթէ թողուր ոք զիւր տոհմն: — Առաջին տոհմն՝ քրմացն տոհմն էր, որ վասն ընտրելոյ ազանէին կոչուի, եւ ոչ հուպ ոք կարէր ի նոսա լինել՝ թէ ոչ նախ ընդ բազում մկրտութիւնս անցանէր: Զերրորդ մասն երկրին սեպհական ստացեալ ունէին[3]: Ոչ եթէ պաշտօն միայն դիւցն յանձն էր նոցա, այլ եւ զամենայն իսկ խելամտութիւն գիտութեան նոքա ունէին: Արկանէին ի կիր արուեստ գրութեան մեհենական պատկերակերպ նշանագրովք, ընդ որոց եւ զպատմական տեղեկութիւնս կապէին: Բժիշկք, իրաւագէտք եւ օրէնսգէտք էին, դատաւորք

1 Νόμοι. 2 Հերոդ. Բ. 164. γένεα. 3 Տես եւ Ծնն. խէ. 22, 26.

ճարտարապետք, կրօնաւորք, նա եւ ստրուկք իսկ եւ խնամակալք թագաւորաց եւ զնոյնանէ ինչ կրթութիւն վարուց ժողովրդեանն կամէր[1]: Այսն սակս իսկ Եգիպտոս քրմական ինչ (դիցապետական) տէրութիւն էր: — Այսր տէրութեան գլուխ ընդ ճոխութեամբ քրմացն եւ օրինաց՝ Փարաւոն էր, որ յերկրորդ տոհմէ անտի, այս ինքն ի զինուորացն տոհմէ էր, որոց թիւ 400,000 հաշուի. յերկուս մասունս բաժանեալ էին սոքա, ի Հերմոտիբիացիս եւ ի Կաղասիրիացիս. որպէս ի հօրէ առնուին զզինուորութիւն, եւ չէին իշխան այլ ինչ ձեռագործս արկանել ի կիր. իւրաքանչիւր ուրուք ի զինուորաց էր 12 արտավար երկիր. մի արտավար 100 կանգուն եգիպտական (մի կանգուն եգիպտական 21½ մատն գաղղիական): — Ձեռագէտքն էին տոհմ երրորդ. ի սոցանէ էին արուեստագէտք եւ վաճառականք եւ գործավարք եւ որ զերկիր ի վարձու առնուին. եւ վասն առաւել սիրոյ Եգիպտացւոցն առ արուեստս ճարտարութեան, մանաւանդ առ նկարչութիւն եւ առ ոստայնանկութիւն՝ բազմաւոր էր տոհմն: Չէր մարթ նոցա երկուս արուեստս միանգամայն արկանել ի կիր, եւ ոչ իսկ ի պաշտամունս տէրութեան մտանել էր նոցա հրամայեալ. չէ յայտ թէ կարէին ունել ստացուածս երկրի, կամ զանեալ յեռ ժառանգութեանց եւ այն ի ձեռաց նոցա: — Իսկ տոհմն չորրորդ նաւավարացն՝ վասն սուրբ ուասին վաճառաշահութեան եւ անդ անդ յորդերոյ Նեղոսի կարեւոր էր: — Հինգերորդ տոհմն հովուաց էր. չէ հաւանութեան թէ այս տոհմ անարգ եւ զարշելի իցէ ընդ Եգիպտացւոցն, քանզի չէր ինչ ընդհատ յարդիւնաւորայից, որք այնչափ պատուական էին յԵգիպտոս, եւ չէր իսկ հնար թէ անսուրբ ինչ համարէին արածել զայն ինչ որում սատուածական պաշտօնն հարկանէին, այլ միայն անտի էին ցեղքն՝ որ թափառական ինչ հովուութեան կեանս կէին (Նոմադքն)[2], որք հանապազ թշնամիք Եգիպտացւոց եւ նոցին վարչութեան էին: — Վեցերորդ տոհմն խոզարածացն անարգ քան զամենայն տոհմս էր, որոց արգելեալ եւս էր խառնել ընդ այլ եւս տոհմս, նա եւ ի մեհեանս եւս չէր համարձակ մտանել: — Յետոյ ուրեմն ի բազմանալ հաղորդութեան Եգիպտացւոց ընդ Յունաց առ Փսամետիքաւ, հարկ իմն լինէր այնուհետեւ յօրինելոյ եւթներորդ տոհմի թարգմանացն՝ յԵգիպտացւոց անտի որոց զյոյն լեզու ուսեալ էր:

2. Այլ դատաստանք նոցա եւ օրէնք լի էին արդարութեամբ եւ իմաստութեամբ, այլ բազումք յօրինացն յոյժ իսկ խստագոյնք էին: — Որ բարձրագոյն ատեան քան զամենայն ատեանն էր՝ ի Թեբէս, կայր ի միոջէ զահերիցուէ եւ յ30 ատենա-

1 Զայսց քրմաց արգելեալ ակնարկէ Եսայ. ԺԹ. 11. «Ցիմարեալքն . . . իմաստունք խորհրդականք Թագաւորին, եւ յիմարեալքն խորհուրդք նոցա. զիա՞րդ ասիցէք զար- քայն թէ որդիք իմաստնոց եմք մեք, եւ որդիք Թագաւորաց որ ի սկզբանէն էին»:

2 Ծնն. ԽԶ. 34:

ձեւով ի վեր՝ պարանոց եւ գլուխ կնոջ. գլուխն է շուրջանակի 100 ոտն եւ բարձրութիւնն 60 ոտն. երեսք նորա հային ընդ արեւելս: 3. Կոթողքն են չորեքկուսի սիւնք ողորկք կճեայք, որք իբրեւ զաշտարակս կան կանգնեալք, եւ որպէս թուի՝ ցուցանէին զժամ արեւու: Բարձրագոյնն ի նոցանէ՝ է 180 ոտն եւ կշիռ նորա 13,000 կենդինար, եւ կայ այժմ ի Հռոմ քաղաքի ի հրապարակին Լատերանու: Այլքն կային առաջի դրանց մեհենից եւ ապարանից: Բաց ի կոթողացն որ ի Հռոմ փոխեցան՝ կան տակաւին յԵգիպտոս 13 կոթողք: 4. Ի միջին Եգիպտոսի էր եւ Լաբիւրինթոսն, շինուած իւր յորում 12 ապարանք էին եւ 3000 սենեակք, կէսք ի նոցանէ ընդ երկրաւ էին եւ կէսք ի վերայ երկրի. այժմ կայ աւերակ: 5. Ըստ նմին օրինակի եւ Մեմնոնեանն ունէին յօրինուած զարմանալի, եւ էին շուրջ զնոքօք սրահք բազմաց հանդերձ սեամբք եւ դահլիճք բազումք. ամենայն շինուածքն ներքուստ լի են մեհենական զարդուք:



Ի պատմութեանն Եգիպտացւոց յետ բազմաց աստուածոցն հարստութեանց՝ զորոց հինք ի մատենագրաց ասեն բազում առասպելս, ապա ուրեմն հասանեմք ի Մենէս (զոր ոմանք զՄեսրեմ զորդի Քամայ համարին) առ որով առաջին աներկբայականն ժամանակք պատմութեանն առնու սկիզբն (2000 — 1400 նախ քան զՔր.): Համարի նա առաջնորդ եւ սկիզբն ամենայն մտաւոր եւ քաղաքային կրթութեան Եգիպտացւոցն. զնմանէ ասեն փոփոխել զընթացս Նեղոս գետոյ: Բուսիրիս Բ. շինեաց զքաղաքն Թեբայեցւոց. Նորին յաջորդ Օսիմանդիաս եթող հոյակապ յիշատակարանս, որոց կան ցայժմ աւերակքն. նշանաւոր է մատենադարան նորա, որ ոգւոց բժշկարանն կոչէր եւ շիրիմն նորա: Ուքորէոս շինեաց զՄեմփիս, գեղեցիկ եւ օգտակար դիրիւք, եւ զաթոռ արքունական անդր ի Թեբայեցւոց քաղաքէ փոխեաց: Բազում ժամանակօք յետոյ քան զնա յիշատակի Մերիս որ զանուանակից ծովակն ետ պեղել, այս ինքն՝ զպատրաստեալ վայրն ի բնութենէ պատշաճեցոյց նա ի լիճ՝ մասն առնլոյ զջուրն ի ներքս, յորժամ առաւել քան զչափն յորդիցէ գետն Նեղոս, եւ զի ի ժամանակի կարօտութեան ջրոցն՝ ջրմղօք տարածանիցի ջուր նորա ընդ երկիրն ամենայն. պատմեն լեալ շուրջանակի 96 ժամ, ցայժմ իսկ 72 ժամ է շուրջանակի: (Ոմանք զայն ծովակ նահապետին Յովսեփայ դնեն):

Յորժամ ամբարձաւ Յովսէփ ի պատիւ բարձրութեան յԵգիպտոս (յետոյ քան զամս 1800 յառաջ քան զՔրիստոս), տէրութեանն Եգիպտացւոց մասն էին գոնեայ միջինն եւ ներքինն Եգիպտոս: Ոչ միայն փրկեաց նա զԵգիպտոս ի սովոյ, այլ եւ զիշխանու-

եւ եդ փոխանակ նորա զեղբայրն իւրեայ Յովակիմ թագաւոր Յե-րուսաղէմ: Բայց յետ երից ամաց միւսանգամ դնէր արշաւանս ի կողմանս Արածանւոյ, բայց առ Կարքամիսաւ ի պարտութիւն մատնեցաւ ի Նաբուքոդոնոսորայ (606), որ խաղաց ասպատա-կաւ, այլ ոչ մինչեւ յերկիրն Եգիպտացւոց ¹ եւ վախճանէր Նե-քաւով՝ յամի 600:

Նորին որդի Փսամիս եդ ասպատակ յԵթովպիա († 595): Ապրիէս (Հոփրա կամ Վաֆրա ըստ Եբր. 588—570) նորին որդի՝ վանեալ վկանդէր զՍիդոն եւ զայլ եւս քաղաքս Փիւնի-կեցւոց հանէր ի ձեռաց Նաբուքոդոնոսորայ. յաղթեաց նա Տիւ-րացւոց եւ Կիպրացւոց ի նաւամարտի կռուի, խաղաց յօգնա-կանութիւն Սեդեկիայ, այլ փոյթ եւ փոյթ իբրեւ երեւեցաւ Նաբու-քոդոնոսոր առաջի քաղաքին Երուսաղեմացւոց, ել գնաց Ապրիէս վատութեամբ փախստեայ: — Այս կամէր Ապրիէս թիկունք օգնականութեան լինել Լիբիացւոց, մերժել հանել զԿիւրենեա-կան մեծամասն զաղթականութիւնն Յունաց. ի պարտութիւն մատնեցաւ թագաւորն, հազիւ հազ թէ սակաւաւորք յԵգիպ-տացւոց փախեան մազապուր: Ընդէն տարածանէր համբաւ ատա յԵգիպտացւոց աշխարհին թէ չարութեամբ մտօք առ տարա զԵգիպտացիսն թագաւորն՝ զի տացէ սատակել, զի այնպէս ա-ռաւել քան զառաջին աթոռակալն իւր տացէ այլազգեացն իշխել ի վերայ Եգիպտացւոցն: Ամասիս որ առաքեցաւ ի թա-գաւորէ անտի առնել խաղաղութիւն ի մէջ խռովելոցն՝ ընտրե-ցաւ թագաւոր: Պատմեն թէ չառ յանձն Ամասիս խրատ տուեալ հնազանդ լինել թագաւորին. արտաքսեաց ամենայն ամբոխն «Կամ լինել թագաւոր եւ կամ պատառ պատառ կոտորել»: Այս խա-ղային Եգիպտացիք ի մարտ պատերազմի՝ ի պարտութիւն մատնե-ցաւ Ապրիէս, ձերբակալ եղեւ, բայց ունէր զնա Ամասիս թա-գաւորաբար ի դիպահուջ (յառաջին ապարանսն իւր ի Սայիս). իբրեւ միւսանգամ փորձ փորձէր առնուլ ի բուռն զթագաւորու-թիւնն՝ սպանաւ յամի 570 ²:

Բայց մինչ դեռ սոքա տակաւին զաղմկեալն էին, խաղաց Նա-բուքոդոնոսոր յետ 13 ամ վատատեւեցուցանելոյ զզօրսն ի պաշարմանն Տիւրոսի՝ հանել վրէժ սաստիկ յԵգիպտացւոցն: Չու արար նա մոլեգին եւ ընչաքաղց բանակօքն ընդ հովիտն Նեղոսի, դիակունք եւ կոյտ կոյտ աճիւն եւ մոխիր՝ էին նշանակ ճանապարհին. չգոյր չափ սպանութեանն եւ աւերածին, հազարաւորք յԵգիպտացւոցն ածան շղթայիւք ի Բաբելոն: — Այլ Ամասիս խնամու-թեամբ մտեալ ընդ հնազանդութեամբ Բաբելացւոց լինէր նոցա հարկատու աւելի քան զ40 ամ (մինչեւ ցկործանումն տէրու-

1 Տես Դ. Թագ. ԻԳ. 29. ԻԴ. 7: Եր. յայնժամ եւ յառաջագոյն պատմեալ Երեմ. ԽԶ. 2....: գիրքն:
2 Տես Երեմ. ԽԴ. 30. որ յԵգիպտոս

թեանն այնորիկ)․ եւ այնպէս պահեաց զիշխանութիւն թագաւորութեան իւրոյ († 525)[1]։

Ամասիս որ ոչ ի տոհմէ զինուորացն էր, ընտանութեամբ եւ բարուք առաջնորդութեամբ եկաց հաստատուն ի թագաւորութեանն․ առ նովաւ ի խաղաղութեան էր Եգիպտոս եւ ի բարութեան։ Բազում ինչ նպաստ լինէր ի գոյն՝ սերտագոյն հաղորդութիւն նոցա ընդ Յունաց, որոց ետ թագաւորն եւ զՆաւկրատիս նաւահանգիստ․ եւ վասն օտարասէր եւ արհամարհոտ հայրենեացն չերեւելոյ՝ յաճախեաց շինել մեհեանս։

Ի վերայ Փսամենիտեայ նորին որդւոյ յարձակեցաւ Կամբիւսէս Պարսից թագաւոր անդէն յառաջնում ամի թագաւորութեան նորա․ առ Պեղուսեաւ ի պարտութիւն մատնեցաւ Փսամենիտէս եւ սակաւ ինչ ժամանակ կրեաց պաշարումն ի Մեմփիս քաղաքի, ապա կալան զնա ձերբակալ։ Ընկաւ այնուհետեւ Եգիպտոս ընդ Պարսից իշխանութեամբ, որք յետ յաղթութեանն բազում ապականութիւն յերկրին գործեցին, մանաւանդ վասն ի պաշարման անդ քաղաքին Մեմփացւոց զհրեշտակն Կամբիւսեայ կոտորելոյ։ Փսամենիտէս յետ զստրկութիւն դստերացն եւ զկոտորած ջերմ բարեկամաց եւ իւրոյն իսկ որդւոյ տեսանելոյ՝ սպանաւ վասն տակաւին զժողովուրդն գրգռելոյ․ եւ այնպէս առին կատարումն բանք մարգարէիցն եւ լցան դատաստանքն Աստուծոյ[2]։

## 26

Եգիպտական պատմութիւն յաւերակս քաղաքին Թեբայեցւոց։

Շինուածք Եգիպտացւոցն բազում ինչ նպաստ լինին ի ստուգութիւն եւ ի լուսաւորութիւն հնոյ պատմութեանն Եգիպտացւոց, եւ յայսց շինուածոց՝ մանաւանդ շինուածք հոյակապ քաղաքին Թեբայեցւոց։ Ի քննութենէ աւերակաց սորա եւ ի քանդակաց գտելոց անդէն՝ յաջորդ պատմական գիւտքս գան ի մէջ։

1․ Ի սորին երեւի քաղաքն եգիպտական Թեբայեցւոց (ամենեւին համեմատ պատմութեանն) քաղաք արքունի թագաւորաց Եգիպտացւոց, եւ այն հնագոյն քան զամենայն արքունիս։ — Ոչ մեհեանք միայն կան ի նմա այլ եւ ապարանք մեծամեծք իշխանաց, սրահիւք մեծամեծօք զարդարեալք սեամբք՝ որք թուին առեալ դատաստանաց, ընդունելոյ հրեշտակութեանց, աւանդելոյ հարկաց եւ այլ եւս նշանաւոր իրաց։ Զապարանսն զայնոսիկ մարթի ընտրել ոչ միայն յօրինակէ անտի շինուածոց նոցա, այլ զի քանդակքն որ յորմունս եւ ի սիւնս երկոցունցն գտանին՝ կրօնական իմն են յորժամ մեհեան՝ շինուածն իցէ, եւ պատերազմական յայնժամ՝ յորժամ հասարակաց կամ իշխանաց ապարանք իցեն։

Նկարագիր Դիոդորի Սիկեղացւոյ եւ Ստրաբոնի ըստ գլխաւոր իմն մասանցն գտանին միաբան աւերակացն։ Առաջին յիշատակ քաղաքին

[1] Տես Երեմ. ԽԶ. 1—27։ [2] Եսայ. ԺԹ—14։ Երեմ. ԽԶ. 13....։ Եզեկ. ԻԹ—Լ։

Թեբայեցւոց գաւառի առ Հոմերայ [1], որ նկարէ իմն զքաղաքն իբրեւ կեդրոն եւ համբար մեծի առեւտրական փոխանակման, եւ իբրեւ գլխաւոր քաղաք պատերազմող մեծի իրիք թագաւորութեան, որ եւ համեմատ քանդակացն՝ զպատերազմական զօրութիւն նորա համառօտէ ի պատերազմական կառսն նորա։ Իսկ վասն 100 դրանցն զոր զնմանէ յիշէ՝ չմարթի հաստատել ինչ։ — Ըստ Դիոդորի (որ երթեալ իսկ յԵգիպտոս էր) չորս գլխաւոր մեհեանս ունէր քաղաքն, որ այժմ թուին լինել կոյտք յիշատակարանաց Քառնաքայ, Լուքսորայ եւ Մեդինաթ-Ապուայ. չորրորդն մնայ անյայտ։

Զ. Ի պատերազմունս որ ի քանդակս անդ երեւին՝ բազում ինչ նշանակք են որք ընտրեն զԵգիպտացիսն եւ զդաշնաւորս նոցա ի թշնամեաց իւրեանց՝ որք առհասարակ երեւին յԱսիացւոց անտի, եւ դաշտ պատերազմին բազում անգամ արտաքոյ քան զԵգիպտոս երեւի։ Ի քանդակս որոց իւրաքանչիւր պատկերանից միշտ այս շրջան երեւութից նշմարի՝ խաղալ թագաւորին, խառնուրդք ճակատուց, յաղթութիւն, արշաւանք շքոյ յաղթութեան, եւ վախճան ամենայնի՝ կրօնական ծէսք (թափոր)։ Օրինակ պատերազմացն երբեմն ցամաքային կռիւ է եւ երբեմն նաւամարտիկ պատերազմ։ Ի նաւամարտիկ կռուի առանց մօրուաց են թշնամիքն եւ ագուցեալ կարճ հանդերձս, եւ կէսք ի նոցանէ ունին ծածկոյթ գլխոյ բոլոր ինչ բոլորակ եւ ի վերուստ փետուրք շուրջանակի, եւ կէսք ի նոցանէ կրեն սաղաւարտ որ ի մաշկէ անասնոց թուի թէ իցէ յօրինեալ. առանց երկմտութեան է թէ ջերմ ինչ երկրի բնակիչք էին, եւ եթէ զՀնդիկս եւ զդրացիս նոցա զասիացի Եթովպացիս այս ինքն զԳեդրոսիացիս եւ զԿրմանս դնիցեմք, որք ըստ Հերոդոտեայ [2] զնոյն հանդերձս ագանէին՝ զոր Հնդիկքն, բայց միայն զի զմորթ ճակատու երիվարացն հանեալ ի գլուխս կրէին, ապա յայնժամ թերեւս ոչ այնչափ առաւելք թուիցին հին զրոյցք Եգիպտացւոցն վասն արշաւելոյ Սեսոստրի [3] ի Հնդիկս եւ ի Բակտրիացիս։

Ի շինուածս նաւացն երեւի ընտրութիւն ի նաւաց Նեղոս գետոյ. համեմատ ինձ պատմութեան (Հերոդոտեայ [4] եւ Դիոդորի [5]) երկայնաձեւ են, առագաստիւ եւ թիակօք միանգամայն վարին. եւ զատանին ի նաւաց թշնամեացն այնու՝ զի Եգիպտացւոցն նաւք յառաջակողմանն կրեն նշանակ առիւծու կամ գլխոյ խոյոյ։

Իսկ ի ցամաքային պատերազմունս թշնամիքն ունին մօրուս եւ երկայն հանդերձս եւ խոյր ի գլուխ, ուր Եգիպտացիքն առանց մօրուաց են եւ կարճագոյն հանդերձիւ եւ մերկ գլխով։ Կէս զօրութեան Եգիպտացւոց ի հետեւակս է եւ կէս ի կառս. առաջնորդէ պատերազմին թագաւորն, զօրաւարքն բարձրագոյնք են հասակաւ անցեալ առաջի զօրացն։ Հետեւակազօրն կայ ամենեւին խիտ առ խիտ առ միմեանս եւ կանգնեալ իբրեւ որմ հաստատուն, որպէս Քսենոփոնն նկարէ [6]։ Յօրինակի անդ յարձակելոյ նոցա, պատելոյ ի կողմանէ, երկայնելոյ ձգելոյ զճակատն՝ յայտնի նշմարի կրթութիւնն զոր առհամ եգիպտական զինուորացն ունէր։ Մերթ նկարին ի ճակատու ընդ թշնամեաց որ կամիցին անցանել ըստ գետ ինչ, մերթ հալածեն զնոսա ինքեանք անցեալ ընդ գետ ինչ կամ ընդ խրամս, եւ մերթ ի ներքոյ

1 Իղիակ. Թ. 381։
2 Հերոդ. Է. 70։
3 Հերոդ. Բ. 102։ Դիոդ. Ա. 53։
4 Հերոդ. Բ. 102։
5 Դիոդ. Ա. 53։
6 Քսենոփ. Խր. Կիւր. Զ —. Է —։

պարապարաց յօրինեալ իբրեւ փոհանակ ինչ [1] ի մեծամեծ վահանաց, եդեալ սանդուղս ի վեր՝ ընդ որ ելանէ զօրականն, ի չորից աստիճանաց անտի դղեկի իրիք գրուեալ է առաջինն, բայց առաւելին պաշարեալքն արձակեն քարինս եւ այրեցող նիւթս ի վայր: Սակայն դրօշն որ ի վեր անդ կանգնեալ կայ ծակոտեալ ի նետից՝ թերեւս նշանակ ձեռս առլոյ իցէ: Եւ (որպէս ի սքանչելի սրահի անդ ապարանից Մեդինաթ-Աբուայ նկարեալ կայ) թագաւորն յաղթեալ ճակատուն՝ նստեալ ի կառսն իւրում, եւ երիվարքն զարդարեալ մեծապայծառ արկանելեօք՝ տայ բերել առաջի զգերի պատերազմին: Գան նոքա երեք երեք կամ չորք չորք բերելով զնոսա առ միոյ եգիպտացւոյ, ի չորս կարգս մի ըստ միոջէ: Արկեալ են նոքա կապոյտ եւ կանաչ վերարկուս, եւ ի ներքոյ կարճագոյն ինչ հանդերձ որ ի հողմոյ տատանի: Եգիպտացիք զգեցեալ են ձորձս սպիտակս կարեալ կարմրով: Անդէն են ձերբակալքն, բազուկք նոցա կապեալ եւ կծկեալ, կիտոցն ի վերոյ քան զգլուխն: Առաջի կառաց յաղթողին կուտեալ կայ կոյտ ձեռաց կտրելոց, որք ձեռք անկելոցն թուին: Եւ այլուր դարձեալ ընծայեցուցանին 11 զօրավարք ըմբռնեալք ճոպան ի փող, զորս բերեն առաջի թագաւորին. երկոտասաներորդն ի գուձս՝ անդէն գլխատելոց է: Եւ ձեռք թագաւորին ըմբռնելոյ՝ կապեալ են ընդ կառացն յոր լծեալ են երիվարքն, եւ վարուանգապան կալեալ զսանձից երիվարացն՝ արգելու, մինչեւ ելեալ ի կառս թագաւորն ձգձգիցէ զհետ զթագաւորն կապեալ: Ցայլում եւս պատկերի որ ի նմին սրահի է՝ նստեալ կայ թագաւորն յաթոռ իւրում եւ կրեն զնա ուլթ արք պատերազմիկք գահաւորակաւ: Արքն զարդարեալ են փետրովք որ յաղթութեան իմն նշանակ են: Աթոռն ծածկեալ է մեծագին ապաստակօք, որք թագաւորին հանգչելն ի վերայ բարձի. առեալ ունի ի ձեռին իւրում զխարազանն եւ զանուանեալ փականն (որ այժմ համարի լինել ստուգութեամբ՝ բահ ինչ եւ արօր յօրինեալ ըստ նորին ձեւոյ) եւ խոյր ինչ զլխով կան կերպարանք օձի, որք ամենեքին նշանակք Ոսիրիս աստուածոյ են եւ միանգամայն նշանակ թագաւորի, ի թիկանց նորա կան երկու ոգիք որք ծածկեն զնա թեւովքն իւրեանց: Կան առընթեր նորա կերպարանք առիւծու, բազէի, օձի, սփինքսայ որ են նշանակք մեծութեան նորա: Որ ճեմեն կարգաւ՝ են մասամբ միով զօրականն զարդարեալ արմաւենեօք եւ փետրովք, եւ միւսով մասամբ քուրմքն որ արկանեն խունկս: Մեւս ոմն թուի ընթեռնուլ ի քարտիսէ իմիք գովաբանելոյ զգործս եւ զքաջութիւնս թագաւորին: Խաղան առհասարակ ի կողմն մեհենին Ոսիրիսայ որոյ պատկերն անդէն երեւի: Չորք քուրմք գան ընդառաջ ընդունել զգլխուցաղն եւ մատուցանել ի ներքս ի մեհեան անդր:

Նոքա խաղան եւս յառաջ եւ ինքն եւս Ոսիրիս աստուած թողեալ զբնակութիւն իւր գայ ընդ թագաւորին. քանզի ամենեւին մեծաւ շքով առեալ շրջեցուցանեն զնա ի վերայ պատուանդանին քուրմք քսան եւ չորք՝ որք արկեալ են երկայն շքեղ հանդերձս զխուրեամբք: Ցառաջոյ երթայ թագաւորն՝ այժմ զգեցեալ այլ հանդերձ եւ եդեալ այլ խոյր ի գլուխ: Ի վերայ գլխոյ նորա սաւառնեալ կայ բազէ, եւ նուիրական ցուլն եւս (Ապիս) գայ ի միասին ի ճեմն՝ առաջի երթալով եւթնեւտասն քրմաց նշանակօք աստուածոյն Ոսիրիսայ: Եւ առհասարակ իսկ այնուհետեւ կրօնական կերպարանս առնուն ճեմքն. քուրմքն

1 Testudo.

են այնուհետեւ անդ գլխաւորքն եւ ոչ զօրականն։ Եւ յետ այնորիկ մատուցանէ զոհս Թագաւորն։

3. Ի պատերազմական կողմանս Եգիպտացւոց երեւին նշանաւոր կառք նոցա, նա աւանիկ եւ ամենայն զօրութիւն նոցա ի կառսն է եւ ամենայն պատերազմունք նոցա պատերազմ կառաց համեմատ նկարագրին Հոմերոսի, ուր նմին հակառակ զօրութիւն ասիական թշնամեաց նոցա է զօրութիւն հեծելազօրու, թէպէտ եւ ունիցին եւ նոքա կառս։ Միշտ իսկ կառք Եգիպտացւոց որպէս եւ Ասիացւոց՝ երկուս եւեթ անիւս ունին եւ երկու երիվարք ձգեն զնոսա. ի կառս Եգիպտացւոց յաճախ այն է՝ զի մի ոք միայն կայ, իսկ ի կառս Ասիացւոց երկու եւ երեք իսկ, այնու զի այլ ոք կառավարն է եւ այլ ոք պատերազմողն, յորս երեւի եւ հին ձեւ պատերազմական կառաց այնպէս՝ որպէս Հոմերոսն նկարէ եւ որպէս Քսենոփոնն պատմէ լինել առ Մարս, Ասորիս եւ Արաբացիս՝ մինչ չեւ փոփոխեալ Կիւրոսի զձեւ նոցա եւ փոխանակ երկուց անուոցն՝ չորիւք անուովք դերանգաւքէն կառս յօրինեալ [1]։ Այս կառք էին զորս տայր բերել արքայ Սողոմոն յԵգիպտոսէ գնովք արծաթոյ [2]։ Կանաչ գոյն կառացն եւ ձեւ նոցա եւ զարդք անուոցն եւ զօդք յայանի երեւեցուցանեն թէ ամենեւին ի պղնձոյ են կառքն, որպէս ամենայն ուրեք հատու ինչ գործիք կանաչ երանգով նկարին, եւ ըստ վկայելոյ Ագաթարքիդայ եւ Դիոդորի Սիկեղացւոյ՝ այն ամենայն գործիք ոչ յերկաթոյ այլ ի պղնձոյ էին, այս ինքն սուսերք նոցա եւ աղեղունք եւ նետք եւ կապարճք նոցա։ — Սուսերք Եգիպտացւոց ազգի ազգի կերպարանս ունին, կէսք երկայն, կէսք կարճ, ոմանք ուղղորդ, եւ ոմանք կոր կամ մանգաղաձեւ. նոյնպէս բազմաձեւ են աղեղք եւ նետք նոցա. զարմանալի իմն խառն է ի վերայ վահանաց Եգիպտացւոց եւ թշնամեաց նոցա. վահանք Եգիպտացւոց սաւարագոյն են եւ յաճախ չորեքկուսի՝ բայց վերին ծայրն բոլորաձեւ. ի բախել ընդ ամուր ինչ գդեկի՝ երեւի այնպիսի վահան ի միջի՝ որով գրեթէ ամենայն մարմինն ծածկի, ամենեւին համեմատ այնմ զոր Քսենոփոնն նկարէ [3]։ Նմին հակառակ վահանք թշնամեաց նոցա են երբեմն բոլորք բոլորակք եւ երբեմն չորեքկուսի, սակայն միշտ փոքր։

Բաց ի պատերազմական կողմանցս՝ առանին եւս կողմանք Եգիպտացւոց ի քանդակսն երեւին. պէսպէս կահք եւ անօթք Եգիպտացւոց ունին զգեղեցկութիւն յունական անօթոյն, թէպէտ նմանեալ սոցա յօրինեալ իցեն թէպէտ ոչ։ Անկողինք նոցա եւ աթոռք մարթեն առակաւին օրինակ մեզ լինել։ Նուագարանք նոցա մանաւանդ քնարքն նոցա՝ ըստ գեղեցկութեան կերպարանացն անցուցանեն զնորօքն։

Արժան է եւ ձորձոցն նոցա դնել առանձինն միտ։ Այնչափ պէսպէս եւ ազգի ազգի կերպարանս ունին՝ մինչեւ առանց իրիք երկմտութեան լինել՝ թէ եւ նիւթք նոցա այլ եւ այլ իմն են։ Կէսք ի նոցանէ նուրբ այնչափ են՝ մինչեւ անդամոցն երեւել, եւ կէսք թանձրագոյնք։ Թագաւորն որպէս եւ զօրականն յաճախ կարճ հանդերձս ագանին, թէպէտ եւ զօրականն ի ճեմսն ագանի երկայնս. մշակքն եւ գործաւորք լոկ սպիտակ ինչ կտաւ զմիջովք. քուրմքն ձորձս երկայնս, բազում անգամ արկեալ կամ պատեալ զանձամբ օրինակաւ ինչ իւիք, յորոց կէսք սպիտակք են եւ կէսք սպիտակ եւ կարմիր խառն, եւ կէսք դարձեալ նկարակերտ աստեղազարդ եւ կամ ծաղկանկար. եւ բազումք շողան երեւելի երեւելի գունովք արեւելից։ Քուրմքն

1 Քսենոփ. Խր. Կիւր. Զ։ 2 Գ. Թագ. Ժ. 29։ 3 Քսեն. Խր. Կիւր. Զ։

երեւին այլ եւ այլ իմն խուրիւ յայլ եւ այլ ատեն. իսկ յորժամ ի ծածուկ խորհուրդս միջամուխ լինէին քուրմքն՝ անասնոց գլուխս ունէին փոխանակ արտախուրակի, այս ինքն եդեալ զյօրինեալ կերպարանս գլխոյ անասնոց սրբոց. եւ թագաւորն եւս յորժամ ի խորհուրդս ընդ քրմացն լինէր միջամուխ, առնու զքրմական զարդն գլխոյ զարտախուրակն բարձր՝ զոր եւ Ռախրիան ունի: Հիւսք եւ յօրինուածք վարսից նոցա պէսպէս իմն են, երբեմն յոյժ իսկ ճարտարութեամբ յարդարեալ, եւ երբեմն առանց իրիք յերկուանոյ սուտ կամ արուեստական վարսք (կեղծամ) ի գլուխն երեւին, որպէս ի բուն հին հնդկային յիշատակարանս Եղեփանդին կղզւոյ նշմարի. բայց Եգիպտացւոցն առաւել ճարտարագոյնք երեւին: — Բազում եւ այլ ինչ՝ այս յիշատակարանք եգիպտական հնութեանցն մեզ մատակարարէին՝ թէ չէին բազմապատիկ արշաւանք աւազակաց կամ յափշտակողաց յայնչափ սքանչելեաց՝ այնչափ անյայտ նշմարանս հազիւ մեզ թողեալ: — Նկարք եւ քանդակք որոց այրիցն մեռելոց զայլ եւս ինչ հանգամանս առանձին կենաց նոցա ցուցանեն. երբեմն կշռեն վաճառք ի կշռորդս եւ անասունք եւս կենդանւոյն՝ առ ի վաճառելոյ զնոսա, երբեմն լինի հացկերոյթ՝ յորում երեւի տանուտէրն եւ ամուսին նորա եւ կոչնականքն առընթեր սեղանոյն լցելոց բազմապատիկ կերակրովք, մերթ կաքաւք լինին, մերթ որսք, մերթ մշակութեան, գործք, որպէս՝ ակօս պատառել, սերմանել, տափել, յատանել, կապել, այգի կթել, կալուլ ցորեան առ կճղակ եզանց, եւ համբարել, որսալ ձուկն եւ կարթիւ եւ ցանցիւ [1], եւ աղծեալ ապխտել ձկունս, մերթ նաւարկել ընդ Նեղոս գետ եւ առագաստիւք եւ թիակօք, հովուութիւն եզանց, ձիոց, իշոց, ոչխարաց. երբեմն երաժշտական գործիք, քնարք, ծնծղայք, ազգի ազգի փողք կամ սրինգք. դարձեալ անասունք եւս՝ ոչ միայն ընտանիք եւ մարդընտելք, այլ եւ վայրենիք եւս, եւ այլ եւս նոյնպիսիք:

Գտանին յայս անդ ի մէջ Մումիայցն եւ նշխարք ինչ մատենագրութեան Եգիպտացւոցն, այս ինքն Պապիրոսք գալարեալք, յորոց է մի Պապիրոս զոր եթէ ոք պարզիցէ՝ գտանէ 28 ոտն յերկայնութիւն, յորում են աւելի քան 30,000 նշանագիրք ի 515 սիւնս, երբեմն մեհենագրական գրով եւ երբեմն նշանագրովք գրեալ են: Գտան անդ թրծուն աղիւսք դրոշմեալ արձանագրովք ինչ. գիրն մեհենագրական է, եւ թուի թէ փայտեղէն տախտակօք ի վերայ դրոշմեալ իցէ [2]:

1 Տես Եսայ. ԺԹ, 8:
2 Տես զայսմ ամենայնէ ի Նկարագրին Եգիպտոսի ի գաղ. լեզու, եւ յԵգիպտականս Վ. Համիլթոնի անգղիացւոյ

մեծ ի վերայ քաղաքային կենաց Հնդկաց ունին, մանաւանդ վարդապետութիւնն նոցա վասն փոփոխման ոգւոց ի մարմնոց ի մարմինս։ Քանզի մարդիկ՝ ոչ ինչ այլ ինչ էին ըստ Հնդկաց կարծեաց՝ բայց ոգիք մեղուցեալք որ ի մարմինս առաքեալ իցեն ի քաւութիւն։ Այս քաւութիւն յետ հնգետասան փոփոխման ոգւոց մարմնոց ի մարմինս՝ ապա կատարէր — ութերորդ փոփոխումն էր՝ փոփոխումն ի մարմին մարդկեղէն. եւ զոր օրինակ Եգիպտացիք ի փոփոխմանէ անտի դիպապատիկ արուեստին իւրեանց հնարէին այրել, այնպէս Հնդիկք ամենեւին յաստուածեղէն խոկմունս զանձն ընկղմելով։ Նմին իրի իսկ անհնարին կամաւոր ապաշխարութիւնք են նոցա, որպիսի ինչ՝ յանաստս եւ յանապատս մնաւանդ ի նուիրական տեղեաց պանդխտութեանց՝ զաջ ձեռս ունել վերամբարձ մինչեւ ցչորանալ, ամս բազումս ի միում կայի կալ իբրեւ թէ ընկղմեալ ի բարձրագոյն խորհուրդս, լինել Բրամանացն մենակեացս, եւ այլ եւս նոյնպիսիք. զսոսկալի իրաց զոր 2000 ամօք յառաջ քան զայս Յոյնքն զանուանեալ մերկիմաստնոց պատմէին, այժմ ականատեսքն վկայեն, եւ համեմատ նմին են պատմեալքն ի մատեանս Հնդկաց[1]։ Զմեծ մասն իւրեանց այրեալ ի խարուկի՝ արկանեն ի նուիրական գետն Գանգէս, եւ երբեմն թողուն զդիականսն՝ զի տարցի գետն։ Այն ամենայն հանգամանք եւ օրէնք կենաց իւրաքանչիւր ուրուք եւ թագաւորութեանն իսկ՝ սահմանեալ կայ ի նուիրական մատեանս նոցա։

Զբրաման թշնամանել եւ չքաւել զթշնամանսն, նա եւ հարկանելն իսկ զնա ի շիղ յարդի՝ մեղք են, որ դժոխոց պարտաւոր կացուցանեն։ Բրամանաց միայն համարձակ է զնուիրական մատեանն ի ձեռս կրել, քանզի նոցա միայն իրաւունք են՝ զնուիրական գրոցն զմեկնութիւնսն ընծայեցուցանել, եւ իւրաքանչիւր քաղաքային աստնիցն պարտք այն իսկ են, զԲրամանսն հանապազ ի շքի ունել։ Եթէ ոք ի Սուդրայց յանդգնեալ ժտիցի բանս թշնամանադիրս խօսել առ Բրաման ոք ի Բրամանաց, պարտ է ձողս հրացեալս երկաթիս երկայնս՝ ցտասն մատունս ի պարանոց այնպիսւոյն մխել. ապա եթէ խրատս եւ թելադրութիւնս մատուցանել մտաբերիցէ, պարտ է հեղուլ ընդ բերանն եւ ընդ ունկունս նորա ձէթ եռացեալ։ Եթէ ոք Սուդրա համարձակեալ ժպրհիցի նստել ի վերայ աթոռատակի առն Բրամանի, պարտ է նշան ձաղանաց ի վերայ ճակատու այնպիսւոյն դրոշմել տարագոյն երկաթով, եւ վաղվաղակի ի վտարանդիկս հա-

1 Որպէս ճարտար ասաց ոմն ի Գերմանացւոցն տեղեկաց հնդկային իրաց՝ թէ ահագինս գեղեցիկ է նկարագիրն որ կայ ի Սակոնտալա հնդկային բանագործութեանն վասն խղճուկ անապաստանին։ — Հարցանէ արքայ Դուշմանտա ցկառավարն իւրում թէ ուր նուիրական տեղի առնն այնորիկ իցէ զոր ինքն որոնիցէ, առ կառավարն պատասխանի. Սակաւիկ մի ինչ յայնկոյս թուի անտառակին, անդ ուր անտանեն խոզու զոմն աշխատապաշտօն զի կայ անշարժ եւ անխաղաղ, եւ զթաւ մազառամձեւ վարսն նորա, յաւելեալ զաչսն ի ակնատեսակ անդր արեւուն։ Քաղ մի զիր, ասէ զի ծածկեալ է կէս մարմնոյ նորա հողեղէն շինուածով ի կուտս. մորթ ինչ օձի է փոխանակ քրմական լարին եւ մասն մի եւս նորա պատեալ զպարանոցաւ. բազում տունկք որոց պինդ ծուէր առ ծուէր կապեալ իցէ՝ կան շուրջ զպարանոցաւ նորա, եւ զուսս նորա շուրջանակի ծածկեն բոյնք թռչնոց..։

Նոցա մերժել յաշխարհէ։ Նա եւ Թագաւորի իսկ չէ օրէն վնաս ինչ հատուցանել եւ դոյզն ումեք ի Բրահմանացն, այլ թէ երբեք յայն ժամիցի, անդէն վաղվաղակի դիցն ի Թիկունս իջեալ Բրահմանին, զԹագաւորն հանդերձ զօրօքն իւրովք եւ փղովք եւ գանձուքն անհետ ի միջոյ սատակիցէ։ Բրահման ոք իցէ, թէպէտ եւ չիցէ մեհենական դրոցն միջամուխ, սակայն էութիւն իմն է աստուածեղէն՝ իշխանական ճոխութեամբ, որպէս բոց հրոյն եւ այլքն եւս ի զօրութեանց մի ըստ միոջէ որ յԱստուծոյ արարան։ Ցամենայն եւ ի բնաւ իրս քաղաքի առանձինն իմն առաւելութիւնք են Բրահմանաց։ Եւ պատիժք պատուհասիցն զոր վասն յանցանացն ինչ հասանիցէ նոցա կրել, մեղմագոյնս իմն դնին ի վերայ նոցա քան ի վերայ այլոյ ուրուք ի խոնարհագոյն կարգաց անտի։ Ցամենայն իրս որ ի կեանս իսկ մարդոյ պատաշաճիցեն, ձգէ զիւր ազդեցութիւնն Բրահմանն ըստ օրինացն։ Բրամանքն այնչափ մեծարոյ եւ աստուածաշուք համարին, որպէս զի եւ դուզնաքեայ ինչ ոք յայնմ կարգէ՝ թշնամանս իւր հաշուի ընդ Թագաւորի ի հաց լինել, այնու զի Թագաւորն չէ ի կարգէ Բրահմանացն. Նա եւ առաւել լաւ համարի ի կենաց անկանել, եւ ոչ զիւր դուստր՝ Թագաւորի որ չիցէ եւ ինքն Բրահման, տալ կնութեան։

Իշխանութիւն եւ մեծարոյ կարծիք Բրահմանի քան յամենայն կողմանս՝ ի Թանճոր ցայժմ առաւել անխախտ ապահի, այնու զի վասն իւրոյ հարաւային դիրից յամենայն օտարամուտ նորակրօնիցն յապահովէ եւ ի զգուշութեան կայ։ Աստ վայելէ տակաւին առհմ Բրահմանացն յիւրում իշխանութեանն. ինքեանք ունին զամենայն մեծաշուք պաշտամանս, բայց բնակեն յամուր ամուր կողմանս դղեկաց եւ քաղաքաց եւ սկեն մեծաւ հոգաբարձութեամբ եւ բազում խնամով ի վերայ կանխակալ սովորութեանցն եւ բարուց։

## 29

Նշանաւոր են յոյժ շինուածք Հնդկացն որք մեծաւ մասամբ յիրս կրօնից նոցա հային։ 1. Այրք եւ անձաւք փորեալք եւ խորեալք ի մէջ ապառաժ քարանց որ ի Թիկունս լերանց կան, եւ են նոքա մեհեանք փորեալք ի ներքոյ լերանց, հաստատեալք յաղթ եւ ստուար սեամբք եւ զարդարեալ ազգի ազգի քանդակօք։ Հռչակաւոր են այսպիսի մեհեանք որ յԷղեփանտինէ, ի Սալսետտէ եւ յԷլլորա կղզիսն կան, թերեւս հնագոյնք քան զամենայն մեհեանս Հնդկացն. բաց ի մեծայաղթ կերպարանաց դից ինչ եւ պատկերաց նուիրական անասնոց որպիսի ինչ Նանդիայ՝ (որ է անուն ցլոյն նուիրականի Շիւայ աստուածոյ) որմունք այրիցն այնոցիկ լի են բազում եւ անհամար կերպարանօք քանդակելովք յիրաց անտի հնդկային առասպելաբանութեանն։ 2. Յիշատակարանք փորեալք քերեալք ի ժայռից. սքանչելի եւ զարմանալի են հնացորդք մեհենից ի Մաւալիպուրամ, զորս չիցէ տակաւին կլեալ ծովն, եւ են նոքա քաղաք ինչ քրմապետական Թագաւորի փորեալ ի ժայռս։ 3. Ազատ յուրանանձն շինուածք մեհենից, զոր Պագոդան կոչեն եւ ոչ հաւասար են հնութեամբ առաջնոցն՝

բաղում կան առա անդ ի Հնդկաց աշխարհին. երևելիք են որ ի Մադուրա և ի Թանճոր կան, և մեհեան Ջագգաննաթա գեղջ յՕրիսսա։ Շինուածք այսպիսի մեհենից յարեալ կան մանր ինչ շինուածք և մատուռնք. գաւիթն և սրահք և զարդարեալք սեանքն ոչ սակաւ ընդարձակութեամբ, աւազանք սրբութեան և այլ ևս ինչ այնպիսիք։ — Արդարև սկայագործ է ամենայն շինուած նոցա, սակայն ազնուականութիւնն այն և գեղեցկութիւն և պատշաճութիւն ձևոց յունական ճարտարութեանն պակասէ։

## 30

Մատենագրութիւնն Հնդկաց է մեծատուն և գեղեցիկ։ Գլխաւոր և հնագոյն և աղբիւր այլոց մատենագրութեանց նոցա է մատեան օրինացն՝ աւանդեալ որպէս ասեն, ի Մենուայ (ի՞ Նոյէ), որոյ նաւ յետ ջրհեղեղին նստաւ ի վերայ միոյ ի գլխոցն Հիմալայայ, որ յ12 գիրս բաժանեալ է (որոյ սկիզբն պարունակեալ ի պատմութենէ խնդրէ արարչութեան՝ ճառէ վասն կրթութեան, վասն ամուսնութեան օրինաց, վասն առանձին պարտուց, վասն տնից և սրբութեանց, վասն աստուածեղէն պաշտաման, վասն առաջնորդութեան և օրէնսդրութեան, վասն ի հասարակ զօրէնս ունելոյ, ապա վասն վաճառաց, և վասն խառնեալ տոհմից, վասն ապաշխարութեան և քաւութեան և յետոյ ուրեմն վասն փոփոխման ոգւոց՝ մարմնոց ի մարմինս և կենաց յետ մահու)։ Սակաւ ինչ յետնագոյն ժամանակաւ քան զնա են Վեդայք նոցա որք յերիս գիրս բաժանին (ժողովածոյք չափով երգոց վասն ամենայն աստուածոց, օրէնք վասն զոհից, ժողովածոյք աղօթից և երգոց)։ Իբրև մեկնութիւնք իմն Վեդայից են մատեանքն որ Պուրանայք կոչին, որ վասն հատման աստուածոց և աշխարհի ճառեն, և են խառն սքանչացուցիչ ինչ պատմութիւնք աստուածոցն, և Վեդանտայք՝ այս ինքն մատեանք իմաստնոցն Հնդկաց։ — Բաց ի նոցանէ գրեանն Ուպաւեդա և Վեդանգա ճառեն վասն արուեստի դպրութեան և չափով բանից։

Բանաստեղծութիւն նոցա կարէ քաջ քաջ մրցել ընդ յունական բանաստեղծութեանն։ Ստորիկ ցնորք ազգին և ազգի ազգի կերպարանք առասպելարկութեան հնդկային դիւցաբանութեանն՝ տան նիւթ յորդ ի վիպասանութիւնս [1]։ Վալմիկի ոմն ի ճարտարացն նոցա ի մեծ դիւցազնական բանաստեղծութեանն որ անուանեալ կոչի Ռամայանա, նկարէ զարշաւան դիւցազինն Ռամայ (որ է ինքն Վիշնու աստուած մարմին առեալ) ի վերայ Չէյլան կղզւոյ՝ առնուլ զկղզին. և Վիասա ոմն ի մատենին Մահա Բարատա անուն՝ պատմէ յութեւտասն երգս զքաղաքային մարտ

1 Epos.

պատերազմի Պանտուայ եւ Կուրուայ տոհմորդութեանն Կրիշնայ որ էր դարձեալ Վիշնու աստուած մարմին զգեցեալ երկրաւոր անգամ։ Այսց երկուց գլխաւոր գործոց որ իբրեւ ծայր իմն Հնդկային դիւցազնական վիպասանութեանն են (իբրեւ Հոմերոս Հնդկային), այլ եւս բազում մատեանք բանաստեղծաց նոցա զհետ երթեալ նմանեցին (որպէս Ռագուանսա՝ զոր յօրինեալ է Կալիդասայ, Նալաս՝ զարմանալի վասն ճշգրիտ զիւրաքանչիւր նկարագիր բարուց յօրինելոյ եւ Բագաւադգիտա՝ որ է կատարեալ ինչ բովանդակութիւն հաւատոցն Հնդկաց)։ — Յետ վիպասանական բանաստեղծութեանն գայ քնարականն, սակայն տիրէ ի նմա ողբերգութեան իմն նկարագիր։ Ի կարգ իդիլեան[1] բանաստեղծութեան հայի Գիտա Գովինդա՝ գործ հռչակաւոր Յայիտայ Գեւասայ, յորում զխեանս հովուութեանն Վիշնուայ նկարէ։ Յուսուցչական բանաստեղծութիւն հայրն առակըն կամ առասպելք Պիդպայիայ։— Նա աւանիկ եւ ճարտարագոյնն քան զամենայն ազգս բանաստեղծութեան՝ բանագործականն[2] ի գեղեցիկ յառաջադիմութիւն հասեալ է առ նոսա. ի բազում ճարտարագործ բանագործական մատենից երեւելի քան զամենայն է հոյակապ բանագործութիւնն բախտի՝ Սակոնտալա անուն, որ է մի ի պատուական մարգարտաց հնոցն բանաստեղծութեան, արժանի ընդելոյ առընթեր գործոց ճարտարաց ամենայն ժամանակաց։ — Թէպէտ եւ բուն նկարագիր հնդկային մատենագրութեանն՝ բանաստեղծութիւնն է, սակայն յայլ եւս մասունս մարդկեղէն իմաստութեան երեւի յառաջադիմութիւն, մանաւանդ ի փիլիսոփայութեան. գտանեմք առ փիլիսոփայսն նոցա բազում այլ եւ այլ կերպարանս կամ ընթացս քննութեան, սրութիւն մտաց եւ խորութիւն մտածութեան։ Բայց քանզի ամենայն դպրութիւն նոցա ի մէջ Բրահմանացն զարգանայր, ի դէպ իմն էր թէ եւ փիլիսոփայական քննութիւնն ի սահմանս անդ կրօնից եւ զկրօնից եւեթ լիցէ։ Յետոյ ուրեմն ի լինել յաճախագոյն հաղորդութեան ընդ արեւմտեայց՝ սկիզբն առ գիտութիւնն նոցա լինել ազատ ի կապանաց հինն դիւցաբանութեան։ Ընդ այնն ի նմին ժամանակէ եւ այլ եւս ինչ գիտութիւնք, որպէս ուսողութիւն, բնական գիտութիւն, աստեղագիտութիւն սկսան զարգանալ։

Համեմատ այսմ մտաւոր յառաջադիմութեան է եւ լեզուն որով այն ամենայն աւանդեալ կայ։ Հին նուիրական լեզու Հնդկաց որ անուանեալ կոչի Սանսկրիտ, է մի ի կարգ մեծատուն եւ գեղեցիկ եւ կատարեալ լեզուաց ծանուցելոց մեզ, որում եւ ոչ մի ինչ լեզու ի նորագոյն լեզուաց յաղթէ։ Ի մեծութեան, ի ձեւս եւ ի նկարագրութեան հազիւ հազ թէ մերձենայ նմին յունական լեզու։ Շքեղ իմն յիշատակարան է նա եւ գեղեցիկ ցոյցք մտաւոր

1 Idyllique. 2 Dramatique.

կրթութեան զոր յայնժամ երբեմն ունէին Հնդիկք: Այժմ մեռեալ իմն լեզու է նոցա, միայն մատենագէտքն նոցա իմանան. որ առ վերնակողմամբ Գանգէս գետոյ բնակեալ են՝ յստակագոյնս եւ մօտագոյն քան զամենայն Հնդիկս խօսին սանսկրիտերէն եւ իմանան: Հնագոյն բարբառք ազգականք սանսկրիտ լեզուի կոչին Պրակրիտ, որովք վարեալ են երբեմն եւ ռամիկքն Հնդկաց մանաւանդ ի բանագործական մատեանսն իւրեանց, յորժամ կանանց տացեն խօսել. քանզի համեմատեալ ընդ սանսկրիտայ՝ թուլագոյն եւ կնատագոյն է, որպէս իտալացի լեզու՝ համեմատեալ ընդ արի լեզուին Հռոմայեցւոց: Արեւելի բարբառ ի Պրակրիտ բարբառոյ է նուիրական լեզուն Ճենիզաց (Ճենազանց) ի Դեկկան:

Բայց սակայն չգտանին հետք պատմագրութեան ի մէջ բազմամբոխ մատենից, զոր ցայժմ նորագոյն քննութիւնք մատուցին մեզ առաջի, ոչ ինչ մատեան պատմութեան կամ բնաւ ժամանակագրութիւն ինչ գոնեայ այնչափ՝ որչափ Սինէացիքն ունին. այլ ամենայն իսկ դէպք եւ անցք անցեալք ընդ նոսա եւ ի վերջին եւս պատմական ժամանակի՝ ի կերպարանս բանաստեղծութեան են եւ նովաւ ներկեալ ամենեքին:

## 31

Յառաջին առասպելապատում ժամանակին՝ ի բազում անձնիւր տէրութիւնս բաժանեալ էր աշխարհն Հնդկաց, որոց գլխաւորք կային Ռաճայք (իշխանք), յորոց շատք հնազանդէին ումեմն Մահարաճայ (մեծի արքայի)։ Ի վերնակողմանն Գանգիսի եւ գետոցն որ անդր հոսեն՝ տիրէին իբրեւ զթագաւորս՝ անուանեալ Որդիքն արեգական որ ի Բրամայ սերէին. իսկ ի միջին եւ ի ստորին կողմանս գետոյն՝ Որդիքն լուսնի, որ ի Քրիշնայ կարգեալ գային՝ որպէս ասեն: Փոփոխմունք կրօնից՝ որպիսի ինչ Բուդդայութեան տարածումն՝ յարուցին ընդ ժամանակս ժամանակս յոյզս մեծամեծս: Զ Ռամա–Խանդրայէ՝ զորոյ կերպարանս առեալ Վիշնու՝ յարձակեալ ի Ձէյլան կղզի ապրեցոյց ի Տասարաթա արքայէ Այոդիայ՝ զօրիորդն Սիդա որ յափշտակեալն էր ի Ռաւանայ յիշխանէն դիւաց, իբրեւ զմեծէ ումեքէ աշխարհակալէ եւ դիւցազնէ յիշատակեն վէպքն Ռամայանայ: Աշխարհակալութիւնք Աղեքսանդրի մեծի՝ որ եհաս մինչեւ ցՀիփասիս գետ (այժմ Սէթլէճ ի Փէնճապ) 328 ամօք յառաջ քան զՔր., յայտնագոյն եւ մեկին գործեն զպատմութիւն Հնդկաց. եւ անտի եւ այսր հանապազորդ իմն տուրեւառիկ վաճառաշահութիւն հաստատեցաւ ընդ Եգիպտոսի եւ ընդ Առաջակողմանն Ասիայ, եւ Յոյնք բազումք անդր գաղթեցին: Յետ Աղեքսանդրի մեռանելոյ Անդրոկոտտոս առ ընդ իւրով ձեռամբ զամենայն երկիրն որ է ի մէջ

Ինդոսի եւ Գանգիսի, եւ բաւական եղեւ ածել ի հաշտութիւն խաղաղութեան զՍելեւկոս Նիկանովր որ մինչեւ ցՊաղիկրաթա (Փատնա) յառաջեալ մտեալ էր զի զնա նուաճեսցէ, եւ առ իւր կնութեան զդուստր նորա: Իսկ որ յետ Անդրակոտտայ պայազատք կացին, տիրեցին երկրին մինչեւ ցերկրորդ դար յառաջ քան զսկիզբն համարոյ մերոյ ժամանակին:

Ոչ է յայտնի անուն թագաւորաց յիշատակելոց ի յունացն մատենագրաց՝ զՍանդրակոտտոս միայն ի տուչութիւնս Հնդկացն հաւաստեաւ կայ գտանել: Հանդերձ այսու եւ առանձինն զոյգք Հնդկաց յիշեն իբրեւ ի թոռանց նորա զՎիկրամատիթա որ սակաւ ինչ յառաջ քան զԱւգոստոս Կայսր էր, որ զՍակս (զՍկիւթացիս որոց զՅունական Բակտրիացիսն փոխանակեալ էր) հալածականս ի հիւսիսային կողմանցն Հնդկաց աշխարհին եհան, 60 ամօք յառաջ քան զՔր.: Առ նովաւ երկրորդ դար էր ծաղկելոյ դպրութեանն Հնդկաց, եւ թագաւորն յապարանսն սնուցանէր զերեւելի իմաստունս եւ զպոետս յորոց մի Կաղիդաս էր որ զՍակունտալա բանագործութիւնն գրեաց: Ապա յիշի Վիկրամատիթա Բ. որ յամի 191 յետ Քր. առ զտէրութիւնն, առ որով աղանդք իսկ Բրահմանաց եւ Բուդդայեանց ընդ միմեանս գային ի վէճ մեծագոռութեամբ, ապա յետոյ եւ Վիկրամատիթա Գ. որ տիրեաց յամի 441 յետ Քր.: Ամենեքին սոքա էին հոյակապք ի թագաւորութեան աշխարհացն Գանգիսի, որոյ միջավայր Այոտյա (Աւտէ) էր, որ յայլ եւ այլ ժամանակս ազգի ազգի օրինակօք ի Փենճապ կամ ի Դեկկան ձգեալ տարածեցաւ: Այս թագաւորութիւն, յորում արդի ճառեալ երեք թագաւորքն տիրեցին՝ ձգեալ յաւականէր մինչեւ ցամս 805 յետ Քր. եւ թագաւորութեան էին սահմանք մեծատարածք: Անդստին ի ժամանակէն Անդրակոտտայ տեւէր հաղորդութիւն Հնդկաց ընդ Յունաց եւ ապա ընդ Հռոմայեցւոց, որպէս յայտ է ի պատմութենէ հրեշտակութեանց թագաւորացն Հնդկաց առ ինքնակալսն Հռոմայեցւոց, մինչեւ յետոյ ուրեմն ի տիրել ի վերայ նոցա Արաբացւոցն (805) հատաւ անմիջնորդական հաղորդութիւն Հնդկաց ընդ Առաջակողման Ասիոյ եւ Եւրոպայ:

(Այս ինչ առանց իրիք երկմտութեան է թէ Հնդիկք վաղ իսկ ի սկզբանէ ունէին հաղորդութիւն ընդ արեւելս՝ ընդ հովտին Հովանգոյ եւ Հանչիկիան գետոց այս ինքն ընդ Սինէացւոց աշխարհին:— Սինէացւոց աշխարհ ըստ այժմու ընդարձակութեանն է գրեթէ կիսովն հաւասար մեծութեան Եւրոպացւոց աշխարհին, մեծաւ մասամբ փակեալ եւ ամրացեալ բնական սահմանօք. անապատք եւ լերինք բարձրաբերձք բաժանեն զնա յայլոց կողմանց Ասիացւոց աշխարհի. պտղաբեր է երկիրն, կան ի նմա կարգաւ խոխոմք եւ ընթանան գետք հզօրք եւ մեծամեծք:

՝Ի բուն հին ժամանակս (որպէս հաշուեն 3000 ամ նախ քան զՔր.) ի բաժանել գաղթականաց ի կողմանց վերին Արիայ՝ եկին, ասեն, գունդք ինչ գաղթականաց՝ նախահայրք Սինէացւոցն ի բարձանց Կիւէնլիւնայ, խաղացին ի խոնարհ ընդ հովիտս Հոանգ-գոյեայ եւ իջին ի գեղեցիկ դաշտավայրսն Շանսի եւ Շէնսի, եւ տարածեցան ի պտղաբեր երկրի անդ որ ի մէջ է Հոանգոյ եւ Եանչիկիան գետոց, նուաճեալ զհին տակաւ ուր բնակիչսն (Միաո-ոչէ) զոր անդ գտին: Յիմաստնոց անտի կամ ի Թագաւորաց որ երեւելի լեալն իցեն առ նոսա, յիշին ի հին զրոյցսն նոցա Փու-հի եւ Յայո՝ երկոքին բարերարք ազգին, ուսուցիչք եւ անդրիչք վեհ-րենութեան նոցա. պատմեն նոյն զրոյցք վասն Ջրհեղեղաց որ առ երկոքումբք Թագաւորօքն այնոքիւք լեալ իցեն: — Ապա ուրեմն ի զարմէ հարստութեանն Ճուեանց եւ Կոնֆուկիոս իմաստուն (յամի իբրեւ 500 նախ քան զՔր.) որ եղեւ նոցին օրէնսդիր եւ կարգիչ կրօնիցն նոցա հնգեքումբք գրովք իւրովք (Կինգ). Թէպէտ եւ ընկալան յետոյ կրօնք նոցա խառնուած ի վարդապետութենէն Բուդդայ, որ եմուտ առ նոսա յամի իբրեւ 60 յառաջ քան զՔր.: Սինէացիք Փո կոչեն զԲուդդայն, իսկ Կոքին-Սինէացիք եւ Տուն-Սինէացիք՝ Փատ:

Ի կարգս Թագաւորաց նոցա զոր մի ըստ միոջէ գրեն ժամանակագիրք նոցա՝ սկսանին երեւել նշմարանք ինչ ստուգութեան ի ժամանակէ անտի Թագաւորութեանն Խուայ (1452 յառաջ քան զՔր.) առեալ մնացանգ ի մատենէն Կոնֆուկեայ: — Ի տէրութենէ Խուայ մինչեւ ցայժմու Թագակալ տոհմն Չինկ կամ Թայ-ցին՝ 22 կայսերական հարստութիւնս յիշատակեն ժամանակագիր մատեանքն Սինէացւոց: Երեք առաջինի տոհմք, ասեն, անդստին յամէ 1767 մինչեւ ց258 նախ քան զՔր. տիրեալ: Ի ժամանակս անցոյն վերջնոց Ցի-Հոանկ ոմն դիւցազն Սինէացի համբաւեն լեալ, որոյ, ասեն, եկեալ ողողեալ յաճախագունդ բազմամբոխ բանակօք, զամենայն զփոքր իշխանս եւ զգերաս խոպատագուն եբարձ ի միջոյ, եւ զամենայն աշխարհն Սինէացւոց խառնեաց ի մի Թագաւորութիւն, եւ տիրեաց մինչեւ ց207 յառաջ քան զՔր.: Այս իշխան, որպէս ասեն, էր նախնի այժմու կայսերական տոհմին Թայ-ցին որ յայն սակս պանծացեալ յօրանայ յիւր երիցագոյն նախնութիւն: — Գիւտ դրոշմելոյ մատենից, պատերազմական փոշւոյ եւ յախճապակւոյ՝ ընծայի Սինէացւոցն յառաջ քան զգիւտ Եւրոպացւոցն: Սովորական իմն էր յախճապակի ի Յապոնացւոց աշխարհին՝ որ ի Սինէացւոց անտի ընկալաւ հրահանգս եւ կրթութիւն: — Մեծ ինչ արգել մտաւոր յառաջադիմութեան այսր հին ազգի էր այն իսկ, զի գիր նոցա ոչ թէ նշանակ ձայնից այլ անուանց էր, եւ այնպէս լեզուն եւս նոցա աղքատ է յոյժ եւ համօրէն իսկ ազգն այն հին՝ մանուկ է տակաւին:)

## 32

Եգիպտացւոց եւ Հընդկաց աշխարհք էին երկու ծայրք ընդ միմեանս հաղորդութեան հնոցն ազգաց, սակայն բնակիչք նոցա քան զամենայն աշխարհաց՝ առաւել ունին նմանութիւն ի քաղաքային յօրինուածութեան, ի կրթութեան, յարուեստս, ի վարս եւ ի բարոյս իւրեանց։

“Յօրինուած Տէրութեանց հնոցն Հընդկաց եւ հնոցն Եգիպտացւոց յայտնի իսկ զնոյն նկարագիր ունին։ Տէրութիւնքն որ անդ էին, քրմաց պետութիւնք էին։ Օրէնսդրութիւն եւ ամենայն խելամտութիւն գիտութեանց ի ցեղին քրմաց է, որով զնեն չափ ճոխութեան թագաւորացն, որ ի ցեղէ զինուորաց ընտրէին։ Արքունիք նոցա ամենեւին իսկ նման են միմեանց։ Իշխանութիւն եւ գործք նոցա նոյն էին, նա եւ սպասաւորք իսկ նոցա չեն ընդհատ ի միմեանց։ Հաստատել նորոց տէրութեանց եւ տարածանել քաղաքային կրթութեան, թուի ինձ թէ յերկոսին տէրութիւնս եւս ամենեւին իսկ զմիօրինակ ընթացս իցեն ընթացեալ։ Եւ յԵգիպտոս եւս՝ զառաջինն բազում փոքր հարստութիւնք էին, որք այնու՝ զի անձուկ էր վայրն, դիւրագոյն եւ հաստատագոյն եւս ի մի միահեծան տէրութիւն գալ եւ միաւորել կարէին, ուր ի Հընդիկս բնութիւնն իսկ լերամբք, անապատիւք եւ գետովք խափան այնպիսի միաւորութեանն լինէր։

Յօրինուածութիւնն քաղաքի յերկոսին տէրութիւնս եւս հաստատեալ էր ի բաժանման ցեղից ինչ ի միմեանց. բարձրագոյն ցեղքն ամենեւին իսկ նման են միմեանց, միայն խոնարհագոյնքն այլակերպք են, եւ այնր պատճառք՝ տեղական հանգամանքն են։ Ցեղք անսուրբք որպէս յԵգիպտոս՝ նոյնպէս եւ ի Հընդիկս խտրին ի սրբոց։ Ցեղքն քրմաց յերկոսին տէրութիւնս բազմապատիկ նման են միմեանց։ Ստացուածք եւ իրաւունք նոյն են նոցա, օրինակ կենացն ի նոյնպիսի կարգս հաստատեալ է, գլուխք գերծեալք եւ զգեստք կտաւիք հասարակ են երկոցունցն։ Ունին նոքա կանայս, այլ չգոն անդ քրմուհիք։ Ունին գիրս նուիրականս, զորս նոցա միայն ընթեռնուլ համարձակ է։ Իշխանութիւն նոցա ի նոյնպիսի հնարս հաստատեալ է. ոչ եթէ քուրմք միայն են նոքա, այլ եւ աստեղագէտք եւս եւ բժիշկք, դատաւորք՝ այլովքն հանդերձ։ Որով ճոխութիւն նոցա առհասարակ ի խելամտութեան գիտութեանց հաստատեալ է։ Եւ զինուորացն եւս ցեղք ունին բազում ինչ նմանութիւն ընդ միմեանս, միայն Եգիպտացւոցն առաւել հզօրագոյն էր, բայց սակայն եւ նոքա եւս ստիպեցան երթալ վտարանդի։ Զգեստք նոցա եւ հանդերձանք թուին ինձ թէ նման միմեանց իցեն։ Ունէին նոքա կառս պատերազմի, այլ ոչ այնչափ հեծելազօրս, միայն՝ զի Եգիպտացիք չարկանէին ի կիր փիղս։ Սեպհական ստացուածս գետնոյ ունէին զառաջինն որպէս Եգիպտացիք նոյնպէս եւ Հընդիկք։ Ցովսէփ ի ժամանակի տիեզերական սովոյն զամենայն երկիրն յառաջին ստացչաց՝ յարքունիս ստացաւ։ Առանց երկմտութեան է թէ ոմանք յաստուածութեանց Եգիպտացւոց եւ Հընդկաց ի նոյն տեսիլս հաստատեալ են, այլ ոչ զայնր զհետ գայ, թէ ի միմեանց առեալ իցեն նոքա զնոսա։ Պաշտօնն Լինգամայ (որ էր նշանակ ծննդականութեան) հասարակ էր եւ Եգիպտացւոց եւ Հընդկաց, այլ չիցէ ինչ հնար զի եւ երկոքին եւս առանձինն յանձանց զնոյն հնարեալ իցեն։

Բայց սակայն զարմանալի է նմանութիւնն որ յարտաքին պաշտամանն կայցէ։ Պաշտօն նոցա ի սրբութիւնս ինչ եւ ի նուիրական

տեղիս հաստատեալ է։ Զոհք արեանք եւ առանց արեան հասարակ են եւ երկոցունց եւս։ Ուխտք նոցա պահանջէին երթալ պանդխտութեամբ ի տեղիս ինչ նուիրականս, եւ անտի իսկ են բազմամբոխ ժողովք մարդկան ի տօնս։ Ընդ պանդխտութեանցն բազում ինչ ապաշխարութիւնք եւ պատարագք խառն էին։ Ոչ միայն լուանալն ի գետս սրբութիւն էր, այլ եւ հեղձնուլն իսկ զգլխովին ի նոսին։ Ճեմք (թափորք) ամենեւին իսկ նման են միմեանց։ Զպատկերս դիցն ոչ միայն ի ձեռս բարձեալ տանէին, այլ եւ կառօք ի մեհենաց ի մեհեանս շրջեցուցանէին։ Պաշտօն անասնոց եւ յերկոսին եւս գտանի։ Զցուլն նուանդի պաշտեն Հնդիկք, որպէս Եգիպտացիքն՝ զԱպիս։ Կովն յերկոսին եւս նուիրական է, չէ մարթ նուիրել զնա որպէս առ Նեղոս գետով նոյնպէս եւ առ Գանգիսիւ։ Անասունք զոհիցն յերկոսին եւս ակէրութիւնս մեծաւ խնամով ընտրին։ Տեսիլք երկոցունց զհանգամանաց հոգւոց յետ մահուան՝ գրեթէ նոյն են։ Վարդապետութիւն քրմացն ընդունի զփոփոխումն ոգւոց։ Ռամիկն երկոցունց զմի եւ զնոյն հասարակ կարծիս ունի զհանդերձեալ (զՊղուտոնեայ կամ զդժոխոց)։ Նա եւ նշանաւոր դատաստան Եգիպտացւոց զմեռելոց գտանի առ Հնդիկս զարմանալի իմն նմանութեամբ։

Արուեստքն առ երկոսին եւս ազինս զնոյն ընթացս ունէին։ Արուեստն ճարտարապետութեան գլխաւոր քան զամենայն արուեստս էր, որոց ընկեր էին առ երկոսին եւս՝ քանդակագործութիւն եւ նկարչութիւն։ Թէպէտ եւ եգիպտական ճարտարապետութիւնն չէ ամենեւին նոյն ընդ Հնդկաց, այլ նմանութիւն իմն ընթացից երկոցունցն յայտ յանդիման երեւի։ Հնդկացն ճարտարապետութիւն ի շինուածոց այրից ծագէր։ Զնոյն նկարագիր ունի գրեթէ եւ եգիպտականն։ Ներքին յօրինուած մեծամեծ տաճարաց, մասունքն յորոց կազմեալ են, զաւիթք հարթ առաստաղօք եւ սեամբք յարդարեալք, ձեւն յուրանաձեւ մեծամեծ դրանց՝ հասարակաց են երկոցունց ազգացն։ Ի զարդս նոյն ճաշակ է նոցա։ Յաղթ պատկերք դից եւ անասնոց, քանդակք յորմս ծեփեալս կճախառն կրով, եւ նկարեալս երանգօք, դրօշք ի զարդ մուտից նուիրական տեղեաց ի տօնական աւուրս՝ հասարակաց են երկոցունցն։ Բայց սակայն գոն եւ այլակերպութիւնք ինչ։ Նկարագիր արուեստիցն մի եւ նոյն է յերկոսին։ Ի խաղալն յառաջադէմ յայտ յանդիման երեւին այլազունակ վայրական հանդամանք. որպիսի ինչ՝ զարդք վերնախարսխաց սեանցն յիւրաքանչիւր յերկուց ազգաց անտի. ի կերպարանաց բնիկ տնկոց աշխարհին առեալ են։ Դարձեալ է եւ այլ ինչ խտիր մեծ։ Ի Հնդիկս այրքն յորս այրէին զդիակունս մեռելոց, յօրինեալ էին ի բնակութիւն կենդանեաց. յԵգիպտոս՝ ուր զամենայն հնարս հնարէին առ ի պահելոյ զնոսա անեղծ, յօրինեալ էին ի բնակութիւն մեռելոց։ Քանդակագործութիւն եւ նկարչութիւն գրեթէ ի նոյն աստիճան հասեալ են։ Երկոքին եւս թեւամուխ լինէին մեծամեծ ինչ իրս ի քանդակսն յանդիման կացուցանել, եւ թերեւս Եգիպտացիքն առաւել են յայսմիկ քան զՀընդիկս։ Նկարչութիւնն յերկոսին եւս առանց խառնուածոյ երանգոց էր եւ առանց նմանահանութեան[1]։

Երկոցունց եւս ազգաց էին մատենագրութիւնք, այլ Եգիպտացւոց, որչափ ինչ յայտ է մեզ, չէին այնչափ բանաստեղծական մատեանք որպէս Հնդկաց։ Թուի իմն թէ չէին նոցա դիւցազնական

1 Perspective.

նրգք, յոր հաստատեալ կայր կրթութիւն ժողովրդեան ի Հնդիկս։ Պատմական տեղեկութիւնք, առանց հաստատուն ժամանակական կանոնաց, յերկուսին եւս անբուժութիւնս բովանդակեալ կային յազգահամարս Թագաւորաց եւ ի պատմութիւնս ինչ գործոց ոմանց ի նոցանէ։

Բայց սակայն այս ամենայն նմանութիւնք չմարթին ի վեր քան զատուրեան հաւանութեան հանել զկարծիսն՝ թէ բարձրագոյն ցեղքն Հնդկաց յեգիպտացւոց եւ կամ ստացեալ ի Հնդկաց սերեալ իցեն, մանաւանդ յորժամ զայնչափ այլակերպութիւնս եւս ոք զննաւ ածիցէ»[1]։

## Ե

### Հաշիւ Արեաց ցեղաց — Արեաց կամ Զենդիկ ազգ։

### 33

Ամփոփ. Զենդաւեստայն — եւ նորին Թարգմանութիւն հանդերձ տեղեկութեամբք զոր արարեալ է Անկեթիլ տիւ Պերրոն գաղղիացի, եւ յաւելուածն ի նմին ի Կղեւկերայ գերմանացւոյ. եւ Ռոդէի գերմանացւոյ՝ վասն նախկական դրութեանց Բակտրիացւոց, Մարաց եւ Պարսից։ — Նշանաւոր իմն լինին ի հնոց անտի վասն պատմութեան նոցա՝ պատմագիրք Յունաց, առաւել ինչ եւ Եբրայեցւոց։

ԱՐԵԱՐՆ որ ձգեալ տարածանի յՀնդուս գետոյ մինչեւ անդր քան ի Տիգրիս (բաց յԱսորեստանէ)՝ բաժանեալ էր ի մանր մանր բնակութիւնս ցեղից ինչ. ուստի եւ սահմանք էին յարեւելից՝ աշխարհն Հնդկաց, ի հիւսիսոյ՝ Յաքսարտէս (Սեհուն) գետ եւ ծովն Կասպից, յարեւմտից՝ Հայոց, Ասորեստանեաց եւ Բաբելացւոց աշխարհ, ի հարաւոյ՝ ծովն կամ ծոցն Պարսից։ Ի ծովեզերքն կայ կարգաւ պտղաբեր աշխարհն Սուսիան առ երի Բաբելացւոց հանդերձ գլխաւոր քաղաքաւն Շուշ կամ Շուշան, առ երի նորա յարեւելից՝ Պարսկաստան, յորում արքունական քաղաքն Պերսեպոլիս (Պասարգադա), եւ առ երի նորա Կարմանիա, եւ առ սորա երի Գեդրոսիա՝ անպտղաբեր ինչ աշխարհ առ սահմանօքն Հնդկաց։ — Ի հիւսիսոյ սոցա սկսեալ նոյնպէս յարեւմտից կայ լեռնայինն Մարաստան առ երի Ասորեստանի եւ Հայոց աշխարհին, եւ գլխաւոր քաղաք Եկբատանք, առ երի նորա յարեւելից՝ Պարթեւաստան, առ սորա երի բուն Արիք եւ առ Արաքոսիա՝ երկիր մեծատուն առ սահմանօքն Հնդկաց։ — Ի հիւսիսոյ սոցա յարեւելից ծովուն Կասպից՝ Վրկանք, առընթեր նոցա յարեւելից Մարգիանք եւ առ սոցա երի Բակտրիացիք (հանդերձ Սոգդիացւովք), որոց գլխաւոր քաղաքք երեւելիք վաճառականութեամբ՝ Բակտրիք եւ Մարականդ (Սամարղանդ)։

Ամենքեին սոքա էին ցեղք տուարածականք ազգակիցք միմեանց, եւ հասարակաց անուն էր նոցա Արիք. այժմ ստուգութիւն է յանուանէ մատենի կրօնիցն նոցա կոչել զնոսա եւ Զենդիկ ազգ։ Երեք ցեղք ի նոցանէ եղեն երեւելիք, եւ կարգաւ կալան զմնացեալսն ընդ իշխանութեամբ՝ Բակտրիացիք, Մարք եւ

1 Հէրէն, Ցեսիլք ի վերայ հնոց ազ. հին պատմութենէ Հնդկաց. էջ 509. գոց. Ա. Ցում. Ա. Մասն. Հատուածք ի Վիեննա 1817։

Գաղատիկք, որպէս եւ երեք երեւելի ազգակից բարբառք միոյ լեզուի նոցա այժմ ընտրին ի գիտնոց՝ զանդիկ լեզու Բակտրիացւոցն, պահլաւիկ լեզու Մարացն եւ պարսիկ լեզու Պարսիցն։

## 34

1. Քաղաքային եւ կրօնից հրահանգք նոցա՝ ի Բակտրիացւոց առ Ոքսոս գետով սկսաւ տարածանել։ Թագաւորութիւն Բակտրիացւոցն քրմական պետութիւն էր, բաժանեալ ի չորս տոհմս։ Քուրմքն որ եւ մոգքն կոչէին՝ յերիս իմն կարգս բաժանեալ էին, ի Հերպետս (աշակերտս), ի Մոպետս (վարդապետս), ի Դաստուր Մոպետս (կատարեալ վարդապետս)[1]. սոքա էին յայտնիչք հանդերձելոց, գիտունք նոցա եւ թարգմանք Աստուծոյ կամացն, եւ զոհք առաջի նոցա մատչէին, եւ օրէնսդէտք՝ նախն իւր ազդեցութիւն մեծ ի վերայ ազգին ունէին։ Երկրորդ զինուորացն տոհմն էր։ Երրորդ մշակացն՝ որ յոյժ մեծարոյ էր առ նոսա։ Չորրորդ տոհմն ձեռագիտացն եւ վաճառականացն։ Երեւելի եւ հռչակաւոր էր առ հինսն վաճառականութիւն Բակտրիայ եւ Մարականդայ. քանզի Բակտրիկք գլուխ էին ճանապարհաց եկելոց ի Հնդկաց աշխարհէն եւ յարեւելեան բարձր կողմանց միջինն Ասիայ եւ ի Սերիկայ. եւ ի վերայ Ոքսոս գետոյ տանէին զվաճառսն ի ծովն Կասպից (քանզի յայնժամ ունէր գետն հաղորդութիւն ընդ ծովուն), եւ անտի մատանէին ի Կուր եւ յԵրասխ գետ Հայոց աշխարհին, ապա փոխէին ի Պոնտոս Եւքսինոս ափանել յԱսիա եւ յԵւրոպէ, եւ կամ ընդ Բաբելոն մինչեւ ցնաւահանգիստս Փիւնիկեցւոցն։

Օրէնսդրութիւն եւ վարդապետութիւն յառաջագոյն իմն կրօնից ընծայեցոյց նոցա՝ կամ զոր ունէինն փոփոխեաց Զրադաշտ կամ Զրադեշտ, որ էրն յաւուրսն Վշտասպայ արքային նոցա ըստ նմանութեան Կոմփուկեայ ի Սինեացւոց աշխարհին։ Այն ամենայն բովանդակեալ կայ ի նուիրական գիրսն՝ որ անուանեալ կոչի Զենդ Աւեստա որ թարգմանի Կենդանի բան, զոր Զրադաշտ իսկ պատմեն գրեալ. ի 21 գրոց անտի՝ առաջինն եւ հնագոյնն միայն մնացեալ է Վենդիդադ անուն, յորում բովանդակեալ կայ գումարութիւն փիլիսոփայութեան եւ քաղաքական սկզբանցն Զրադաշտի եւ օրէնք աստուածոցն պաշտաման եւ օրէնք դատաստանաց։ Այն իմն են աղէտք զի սա միայն է երեւելի ինչ գործ՝ մնացեալ ի հին զանդիկ մատենագրութենէ. քանզի Իզաշնեայն եւ Յաշտասեան մատեանք՝ ժողովածոյք իմն աղօթից են, եւ Բունդահաշն (պահլաւիկ լեզուաւ) զվարդապետութիւնս ինչ Զենդ Աւեստին առնէ եւեթ դիւրիմացս ռամկին։

1 Զենդ. Բ։ Տես եւ Եղիշ. Պատմ. Վարդան. Ը. էջ 318. Գ. էջ 106։

Որպէս Եթեովպացւոցն եւ Հնդկաց՝ նոյնպէս եւ Բակտրիացւոց քրմական պետութեանն սկիզբն անկանի ի ժամանակս՝ յորս չմարթի գտանել սոյգ պատմութիւնս։ Միայն առաջին երկու փարգարդք (գիրք) Զենդաւեստին ունին պատմական ինչ յիշատակս որ բազում իմն կարօտ մեկնութեանց են։ Ըստ սոցին՝ առաջին երեւելի այր եւ թագաւոր որ գնաց ի թափառական հովուութենէ բնակեցոյց ի Բակտրիա կամ ի Վերիա՝ է Ճեմշիդ կամ Ճամշիդ։

Այս բնակութիւն աշխարհին պղասացիկ իմն օրինակաւ նկարի անդ․ որպէս թէ երբեմն հերձեալ պատառէր երկիր՝ ոսկեղէն եւ աստուածապարգեւ սուսերաւ, շնչաւորս փոքունս եւ մեծամեծս այնուհետեւ ծնուցանէր բազում յաճախութեամբ, ուր յառաջն չգոյր եւ չէր իսկ ինչ ի միջի յայնպիսեացն․ եւ Ճեմշիդ լի առնէր զաշխարհն ամենայն՝ կարմրատեսիլ հրատօքն, այս ինքն նուիրական պաշտամամբք եւ աստուածպաշտութեան հրահանգօք։ Ճեմշիդ արքայ էր գլուխ ազգացն եւ անդէոց, եւ արար նա զերկիրն ամենայն շէն բարեշէն։ Երկիրն որ առաւ եւ բաժանեցաւ ըստ համեմատութեան նուիրական իմն ընտրութեանց՝ է Վերիենէ կամ Արիաստան, որոյ գլխաւոր գաւառն Վիր կամ Վարճեմկերտ՝ է թագաւորակաց կայանք Ճեմշիդայ։ Արտաքոյքն ցանկ ոսկեղէնք զամենայն որ ինչ ազնիւ առ ունել էր՝ բուսուցանէին․ այնպիսի ինչ էր վայրն։ Մանկտին անդ ցածունք էին, միշտ պատադիրք, փափկասունք, մարմնագեղք։ Ճեմշիդ յօրինեաց ճանապարհս․ 9 ճանապարհս ի մեծատարած վայրս, եւ 6՝ ի տեղիս որոց չափ ինչ ընդարձակութիւն էր, եւ 3՝ ի սակաւանիստ տեղիս։ Ած բնակեցոյց նա առ ճանապարհօքն մեծատարած տեղեաց արս 1000 եւ կանայս 1000, առ ճանապարհօք տեղեացն որոց միջին իմն մեծութիւն էր՝ 600, իսկ առ ճանապարհօք սակաւանիստ վայրացն՝ 300։ Այսպէս յօրինեալ շինեաց նա իւրով ոսկեղէն սուսերաւն զՎէր կամ զՎար (զԱրիաստան)։

Ի Վարճեմկերտ տիրեցին մի ըստ միոջէ պայազատք Ճեմշիդայ ի տոհմէ անտի նորա՝ մինչեւ ցՓերիդուն որդի դստեր Ճեմշիդայ։ (Թուի թէ այս անուանք թագաւորաց Ճեմշէդ, Փերիդուն՝ հարստութիւնս մանաւանդ ակնարկեցեն քան թէ առանձինն թագաւորս։) Փերիդունեայ որդիք անկան ընդ միմեանս եւ թագաւորութիւնն բաժանեցաւ ի թագաւորութիւն Տուրայ, որ էր երիցագոյն որդի Փերիդունեայ ի հիւսիսակողմն Ոքսոսի կամ Գեհոնի՝ (որ կոչեցաւ Տուրան), եւ ի թագաւորութիւն Իրիդայ, ի հարաւակողմն գետոյն (որ կոչեցաւ Իրան)։ Տուր յաղթել յաղթեաց Իրիդայ, բայց սորա դուստր պրծեալ ապրեցաւ։ Ի սորա տոհմէն յարեաւ ապա Մինուչար, որ զԻրան ի Տուրանեանց անտի թափեալ հան, եւ յայնմ հետէ երկու թագաւորութիւնք կացին յար միմեանց։ ԶՄինուչար եւս պայազատեաց ի տէրութեան Իրանայ Կէկոբադ, որով սկիզբն լինի հարստութեան Կէանեանց փոխանակ Պիշդադեանց հարստութեան որ ցայնժամ տիրէր, թէպէտ եւ չէ մարթ ի զենդեան մատենիցն ցուցանել թէ զիարդ անց տէրութիւնն ի Կէանեանս։ Թերեւս այն այլակերպութիւն Կէ (Կաւա) անուան միայն է, որ նշանակէ թագաւոր, զոր ի Կոբադայ հետէ սկսան կրել իշխանքն, ուստի թուի թէ Կէանեանք յաջորդք Մինուչարայ էին։ Առ Կէ-Գուստասպեաւ կամ Կաւա-Վշտասպաւ՝ որ էր թագաւոր հինգերորդ ի Կէանեանց անտի եւ որդի Արուատասպայ՝ եկաց Զրադաշտ, որով առնի վախճան ճառից մատենիցն Զենդայ։ — Այսչափ ինչ մթութեամբ ամփոփի ի բուն հին պատմութենէ կողմանցն Բակտրիացւոց։

## 35

2. Առաւել քան զամս զօրացան Մարք, որոց թագաւորութեանն յօրինուած ակարացեալ իմն քրմական պետութիւն էր։ Ի 6 տոհմս բաժանեալ էին. մեծարոյ քան զամենեսին՝ մոգուցն էր։

Ըստ Կտեսեայ, ասեն, անկեալ նոցա ընդ հնազանդութեամբ Ասորեստանեաց առ ժամանակօք փառնասայ իշխանին իւրեանց։ Այլ Վարբակէս Մար յաղթէ մօտ ուրեմն յամին $^{875}/_{800}$ առ. զմեծ միաւորեալ թագաւորութիւն Ասորեստանեաց եւ Բաբելացւոց, ըստ աւանդինն իմն պատմութեան Կտեսեայ († 860)։ Նորին պայազատք՝ զորոց մի ըստ միոջէ պատմէ Կտեսիաս, թերեւս յարեւելեանն Ասիա տիրեցին, քանզի բուն իսկ Մարք էին յայնժամ ըստ գրոցն պատմութեանն ընդ հնազանդութեամբ Ասորեստանեացն թագաւորութեան[1]։ Զոր Կտեսիան յիշէ, են Մանդաւկէս յամի իբրեւ 860, Սոսարմոս՝ 810, Արտիկաս՝ 780, Արբիանէս՝ 730, — Արտէոս կամ Դէիոկէս յամի իբրեւ 710։

Բայց յետ պարտութեանն Սենեքերիմայ եղին Մարք յազատութիւն. եւ յետ բազում ամաց անտէրունչութեան՝ ընտրեցին (որպէս Հերոդոտոս պատմէ) զԴէիոկէս կամ զԱրփաքսադ վասն խոհեմութեանն եւ արդարութեան ի թագաւորութիւն (710)։ Էր նորա մարտ պատերազմի սաստիկ ընդ Կադուսիացւոց. յայնմ ճակատու բազումք ի հնազանդելոց նորա յետս կացին։ Զայն տեսեալ եւ զմտաւ եւս ածեալ ընդելացուցանել զժողովուրդն ի կարգ եւ ի յօրինուածութիւն, հարկ համարեցաւ անհնարին խրատութիւն ի կիր արկանել, եւ եղեւ ահագին յոյժ։ Մեծացոյց նա զԷկբատանս, զքաղաք գլխաւոր արքայութեան իւրոյ. ած զնովաւ պարիսպս եւթնպատիկ, իւրաքանչիւր որմ յորմոցն արտաքուստ ի ներքս բարձրագոյն քան զմիմեանս էին, եւ անցեալ՝ այլ եւ այլ գոյն, ի միջի անդ որմոցն կային տունք բնակութեան, աշտարակք շուրջանակի հարեւր կանգուն ի բարձրութիւն, եւ դրունք իբրեւ զբրգունս. եւ չափ քաղաքին շուրջանակի 4 1/2 մղոն. անդ էին ապարանք արքունի յորում բնակէր Դէիոկէս։ Այլ ապա ուրեմն ի պարտութիւն մատնեալ վատթարեցաւ Արփաքսադ յարքայէն Ասորեստանեաց ի Սաւսդուքինեայ[2]։

Փրաւորտէս (կամ Արտինէս) Նորին որդի (յամի իբրեւ $^{660}/_{630}$) առկ ի նեղ զՊարսիկս, եւ առ զԱսիա մինչեւ ցԱղիւս գետ. ապա կամէր կործանել եւ զթագաւորութիւնն Ասորեստանեաց, բայց առ Նինուէիւ ի պարտութիւն մատնեալ անկաւ ի ճակատուն։ Կիաքսարէս (կամ Ասուերոս յամի իբրեւ 635) կամէր զհօրն վրէժ խնդրել եւ տանէր յառաջ զպատերազմն յաղթութեամբ. բայց իբրեւ Սկիւթացւոց գունդք ի լերանցն Կովկասու իջեալ տարա-

1 Տես Դ. Թագ. ԺԷ. 6. ԺԸ. 11։ Ա. Մնաց. Ե. 26։ 2 Տես Յուդիթ Ա. 1—6։

ծեցան ի վերայ կողմանցն Ասորւոց՝ ձեռնելոց Կիաքսար յետս, եւ փրկեցաւ այնպէս քաղաքն Նինուէացւոց։ Յետ 28 ամաց մեծագոյն իշխանութեան, ձեռնտուութեամբ հեռացոյց Կիաքսարէս զՍկիւթացիսն (յամի իբրեւ 608)։ Իսկ հնգամեայ պատերազմն զոր ընդ Լիւդացիսն ունէր՝ արար վախճան նուաղութիւն արեգական յամին իբրեւ 595, որ է ամ վախճանին Կիաքսարայ։ — Յամի իբրեւ 606 միաբանեալ էր նա ընդ Նաբուպաղասարայ եւ կործանեալ զտէրութիւնն Ասորեստանեայց եւ խառնեալ ընդ թագաւորութեան իւրում։

Աժդահակ (կամ Աստիագէս կամ Աբշաւիր) նորին որդի թագաւորեաց ամս 35 առ. մեծազօրն Նաբուքոդոնոսորաւ, բայց էր խաղաղութեամբ ընդ նմա։ Նմին հակառակ Կիաքսար Բ. (կամ Դարեհ Մար) նորին որդի էր պատերազմաւ ընդ թագաւորացն Բաբելոնացւոց, եւ տիրեաց իսկ նոցա (62 ամաց) միաբանութեամբ ընդ Պարսից՝ որոց թագաւոր Կամբիւսէս փեսայացեալ էր քեռն նորա Մանդանեայ։

## 36

3. Զկրօնս եւ զօրէնս Բակտրիացւոցն եւ զքաղաքային եւ զարքունեաց կարգս եւ զօրինուածութիւն Մարացն միաւորեալ ժառանգեցին Պարսիկք։ Սոքա էին ազգք տուարածականք եւ ազատ ի զեղծութենէ վարուց, եւ բաժանէին մանաւանդ յերիս ցեղս զինուորականս, յերիս ցեղս մշակականս եւ յերիս ցեղս հովուականս։ — Ազնուագոյն ի զինուորական ցեղէց անտի էր Պասարգադացն ցեղն եւ ի ցեղի անդ տոհմ երեւելի՝ Աքեմենեանն։ Յայսմ տոհմէ սերէր Ագրադատ՝ որ է ինքն Կիւրոս[1] որդի Կամբիւսեայ եւ Մանդանեայ դստեր Աժդահակայ Մարաց թագաւորի, որ հանն իսկ զՊարսիկսն յառաջին կարգ ի մէջ Արեաց ազգին։ Այլ թէ որպիսի ինչ օրինակաւ այն դիպեցաւ՝ հակառակս ինչ միմեանց մեկպագրեն Հերոդոտոս, Կտեսիաս եւ Քսենոփոն։

Ըստ Հերոդոտեայ, Կիւրոս զօրութեամբ զինու յինքն փոխարեաց զտէրութիւն Մարաց, որպէս զհարդ յառաջագոյն քան զծնունդ նորա կանխաւ երեւեալ էր Աժդահակայ ի տեսլեան երազոյ։ Ուստի եւ Աժդահակ առ ի թափելոյ զանձն ի դժնդակ ճակատագրէ՝ զդուստր իւր զՄանդանէ դոյզն ումեք պարսկի, Կամբիւսէս անուն, տայր կնութեան. այլ իբրեւ ծնաւ ի նոցանէ ուստր մի, որ յետոյ Կիւրոսն կոչեցաւ, միւսանգամ տագնապէր զնա առաջին երկեւղն, նմին իրի պատուէր ետ նա իշխանին իւրում Հարպակայ սպանանել զաղտ զմանուկն։ Հարպակ չառ յանձն սպանանել զտղայն, եւ մեկուսացոյց զնա առ հովիւ

1 Պարս. Կուր կամ Կուրշ որ թարգմանի այն ի վերայ բանն [illegible], ըստ ոմանց Արեւ, ասեն եւ պատմեն ինչ անուն էր [illegible] թագաւորացն Պարսից։

գետոյն Կուր[1], Մոսխիկեան լերինք[2]. յարեւմտից՝ գետն Եփրատ. ի հարաւոյ՝ զօտի լերանցն Մասեաց (Մեսսայ) եւ Տաւրոսի[3]. յարեւելից՝ Ատրպատական[4] եւ ծովն Կասպից կամ Վրկանից: Իսկ ըստ արուարձանեայ աշխարհացն կան առ նմին ի հիւսիսոյ՝ Աղուանք եւ Վիրք, Կողքիս[5] կամ Եգեր[6]. յարեւմտից՝ Պոնտոս եւ Գամիրք (Կապադովկիա). ի հարաւոյ՝ Միջագետք եւ Ասորեստան[7]. յարեւելից՝ Մարք եւ Վրկանք:

Այս աշխարհ ընդարձակ որ եւ Մեծ Հայքն կոչի՝ յընտրութիւն Փոքրն Հայոց յայնկոյս ափերաց Եփրատայ, բաժանէր ըստ բնական եւ քաղաքական հանգամանաց բնակչացն՝ ի 15 նահանգս:

Այրարատ նահանգ 20 գաւառօքն կայ գրեթէ ի միջոցի ամենայն նահանգացն Հայոց, յարեւելից նորա՝ Ուտի 7 գաւառօք, Արցախ 12, Սիւնիք նոյնպէս 12, Փայտակարան դարձեալ 12. ի հիւսիսոյ՝ Տայք 9 գաւառօք, Գուգարք՝ դարձեալ 9 գաւառօք. յարեւմտից՝ Բարձր Հայք 9 գաւառօք, յորոյ լեռնադաշտացն արձակին գետք ընդ աշխարհն համօրէն, Չորրորդ Հայք 8 գաւառօք. ի հարաւոյ՝ Տուրուբերան 16, Վասպուրական 36, Աղձնիք 10, Մոկք 9, Կորճայք 11, Պարսկահայք 9 գաւառօք:

Արտաքնոյն աշխարհագրաց առաւել ծանօթագոյն իմն են Չորրորդ Հայք եւ Բարձր Հայք. զի ուր զայլոց նահանգաց զանազանս եւեթ հազիւ գոյ գտանել առ նոսա, որպէս զանուն Տայոց[8], Գուգարաց[9], Ուտիայ[10], Սիւնեաց[11], Վասպուրականի[12], նմին հակառակ զկողմանց արեւմտից ըստ գաւառաց գաւառաց եւս ճշգրիտ բերեն զանուանսն ի մէջ, որպէս Դարանաղիք[13], Եկեղեաց[14], Սպեր[15], Կարին[16] ի Բարձր Հայոց. Խորձէն[17], Հաշտեանք[18], Ծոփք[19], Հանձիթ[20] ի Չորրորդն Հայոց. եւ որ մօտ ի Բարձր Հայսն են Բասեանք[21], Բագրեւանդ[22] եւ այլք. ի գաւառաց այլոց նահանգաց յիշին Տոսպ[23], Շակաշէն[24], Տարօն[25], Կորդուք[26]:

Բերք Հայոց աշխարհին ի հնումն ոչ աննշան իմն էին, այլ այլ եւ այլ իմն ըստ իւրաքանչիւր նահանգացն օդոցն խառնուա-

1 Բուզանդ. Դպր. Ե. Գլ. ԺԵ. «Հին սահմանքն որ յառաջնում էր լեալ ընդ երկիրն Հայոց եւ ընդ երկիրն Վրաց, որ է թիգն մեծ գետոյն Կուր»: եւ Դպր. Ե. Գլ. ԺԳ. «Կուր գետ որպէս եւ յառաջն լեալ էր ընդ երկիրն Աղուանից եւ ընդ երկիրն Իւրեանց (Հայոց), սահմանն արարեալ կացուցանէին»: — Նոյնպէս եւ Խոր. աշխարհագր. ԻԶ: Ստրաբոն ԺԱ: Պտղոմ. Ե. 13:
2 Ստրաբ. ԺԱ:
3 Պտղոմ: Ստրաբ. ԺԱ:
4 Բուզանդ Դպր. Ե. Գլ. Ը:
5 Պտղոմ. Ե. 13:
6 Խոր. աշխարհագր. ԻԷ, ԻԴ:
7 Խոր. աշխարհագր. ԻԷ:
8 Τάουν, Ստեփ. Բիւզ. 363:
9 Γογαρήνη, Ստրաբ. ԺԱ. 528:
10 Otene, Պլին. Զ. 13: Կուտայք.:
11 Σουνήτις, Պրոկ. Պարս. Ա. 15:
12 Βασορόπηδα, Ստրաբ. ԺԱ. 528:
13 Δαρανίσσα, Պտղոմ. Ե. 13:
14 Ἀκιλισήνη, Պտղոմ. Ստրաբ. ԺԱ. ԺԲ:
15 Σισπίριτις, Ստրաբ. ԺԱ:
16 Καρήνιτις, Ստրաբ.: Պլին. Ե. 24:
17 Χορσά, Պտղոմ. Ե. 13:
18 Ἀστιανήνη, Պրոկ. Շին. Գ. 3, 8:
19 Σωφήνη, Դիոն Կաս. ԼԶ. 36:
20 Ἀνζητήνη, Պտղոմ. Ե. 13:
21 Φασιάνη, Դիոդ. Սիկ. ԺԴ. 664:
22 Βαγραυανδήνη, Պտղոմ. Ե. 13:
23 Τοσπία, Պտղոմ. ԺԳ. 156:
24 Σαγασήνη, Ստրաբ. ԺԱ. 528:
25 Taurantium, Տակիտոս ԺԴ. 14:
26 Γορδική, Ստրաբ. ԺԶ: Պլուտ.: Պտղոմ.: Դիոն Կաս. — Corduena, Ամմիան. ԺԶ: Պլին. ԺԶ. 15:

ծոյ․ Հիւսիսային արեւմտից կողմանք մատուցանէին աղ քրէական եւ բիւրեղ եւ ջերմկաջուրս․ Եղնիկք եւ Տուրուբերան՝ բամ-նաւթոյ, պղնձոյ եւ երկաթոյ եւ կապարի[1] եւ գղթոր, քարա-խունկ ի Կողթ՝ յԱրցախ նահանգի, բամբակ ի կողմանս Փայտակա-րանի, գաղպէն եւ մեղր ի Տուրուբերան նահանգի, գինի ի Գող-թան, գարի ի կողմանս Փայտակարանի, թուզ, նուռն, սերկեւիլ, նուշ եւ աղտոր՝ ի Տայս, տակառ ինչ ձիթենի՝ յՈւտի նահանգի, ներկ որդան կարմիր՝[2] յԱյրարատ նահանգի․ լինէր եւ փայտահատու-թիւն ի շինուած ապարանից զոր տային մայրիքն մեծամեծ առ Երասխաւ, ի Մոկս, ի Գուգարս եւ այլուր․ որսք փայտից էին մուրտ, գերերի, տաւսախ, մայր[3], մամխի[4], հացի[5]: Բաց ի բնա-կան անտառացն որ բազում իսկ թուին լեալ ի հնումն որպէս յայտ ի պատմագրաց է[6], եւ արուեստք եւս առողջութիւն էր անկեալ անտառս ի կաղնոյ եւ յայլ եւս ծառոց իբրեւ որձս երկոց պատրաստելոց յորսս[7]: Ըմբռա իսկ էր երէ առ որս, որպիսի ինչ ինձ գեղեցկախայտուց, առեւծ, ցին, այծեամն, կաքաւ եւ այլ այլ հաւուց:

Մարթի զայն մանր աշխարհագրական բաժանումն Հայոց աշխարհին հայեցեալ յընթացս պատմութեանն Հայոց՝ յընդհանրական իսկ բաժանումն ամփոփել բաժանեալ զհամօրէն Հայոց աշխարհ

Ա․ Ի Հիւսիսային կողմն 1․ Ի հովիտն որ ի միջի փակեալ կայ յԵրասխ եւ ի Կուր գետոց, որք կէս իսկ կողմն յօրինեն կից ի ծովն Վրկանից: Որ ինչ Հընդկացն Գանգէս, նոյն էր Հայոցն գետն Երասխ, զորոյ ափունսն ունին զգեթէ ամենայն երեւելի քաղաքքն, որ առաւելութեամբ իսկ գետ լոկ անուանի[8] իբրեւ բուն սեպհական գետ Հայոց աշխարհին, որ անդէն ի նմանէ ելեալ ի նմա յանգի: Աստ իսկ է բուն նախաւոր բնակութիւն Հայ ազգի եւ ապարէզ ամենայն պատմական երեւելի անցից նորա, նիստք նահապետացն եւ աթոռնիք թագաւորաց նորա: — ա․ Արմաւիր[9] նիստ նահապետական իշխանացն եւ հարստութեան թագաւորացն Հայկազանց՝ կայր ի վերայ բլրոյ[10] առ Երասխ գետով ի հարաւոյ․ այլ վասն տակաւ հեռանալոյ գետոյն՝ հարկ լինէր ընտրելոյ այլ իսկ քաղաք[11]: բ․ Արտաշատ[12] նիստ (հեթանոս) թագաւորացն

1 Բուզանդ. Դպր. Գ. Գլ. Ժ:
2 Ղազար Փարպեցի էջ 20:
3 Խոր. Բ. Գլ. ԽԹ. էջ 262:
4 Բուզ. Դպր. Դ. Գլ. Ժ:
5 Բուզ. Դպր. Գ. Գլ. ԺԴ:
6 Խոր Բ. Գլ. Ջ. էջ 160 ... տակաւ: Բուզանդ էջ 120, 122 ...:
7 Բուզ. Դպր. Գ. Գլ. Ը:
8 Խոր. Բ. Գլ. ԽԲ. էջ 248 եւ այլուր:
9 Ἀρμαύρια.
10 Խոր. Ա. Գլ. ԺԲ. Գիրք Բ. Գլ. Դ եւ ԼԹ:
11 Խոր. Բ. Գլ. ԼԹ:
12 Խոր. Բ. Գլ. ԽԹ: Artaxata Պլինիոս Զ. 9: Տակիտ. ԺԳ. 39, 41. ԺԴ. 23. ԺԵ. 15: Τὰ Ἀρτάξατα, Պտղոմ.: Ստրաբ. ԺԱ: Պղուտարքոս ի Ղուկուղլոս: Դիոն Կասիոս ԼԶ, ԽԹ: Ըստ Ստրաբոնի անուանի եւ τὰ Ἀρταξιάσατα այս ինքն քաղաք Արտաքսիասայ որ է Արտաշէս, որպէս եւ Հայերէն անունն Արտա(շէս)շատ: Արտաշէս այս շինիչ քաղաքիս այլ ոմն Արտաշէս է քան սոյն եւ ոչ Արտաշէս Բ. որում տայ Մովսէս

Արշակունեաց ի գետախառնունս Երասխ եւ Մեծամօր գետոց, Հոյակապ՝ Տաբերական կամ Տաբերին կամրջօք[1], ի վերայ բլրոյ[2], յոր եւ փոխեցան ամենայն վայելչութիւնք քաղաքին Արմաւրայ[3]. ցայժմ երեւին աւերակքն: Գ. Վաղարշապատ[4] կամ Նոր քաղաք՝[5] Նիստ (քրիստոնեայ) Թագաւորացն Արշակունեաց, յոր փոխեցաւ հին աւանն Վարդգեսի Հոյակապն յերգս վիպասանաց, զՔրէզ բլրով ի վերայ Քասաղ գետոյ[6]: — Սակաւ ժամանակեան իմն արքունիք էին ամուր եւ գեղեցիկ քաղաքն Երուանդաշատ՝ դրամբքն պղնձեօք եւ երկաթի նիգերօք մնջքենաւոր երկդիմի արքունեացն[7]. ընդարձակ աւերակք քաղաքիս ցայժմ նշմարին[8]: — Սոյն է եւ բուն հին մեհենական քաղաքն որ է դարձեալ Արմաւիր՝ Դոդոնայն Հայկազանց, յորում էին խնկրդբանք անուանի եւ Հայկայ սօսիքն Արամանեկայ. զնա փոխանակեաց Բագարան ի վերայ Ախուրեան գետոյ[9], եւ զսա՝ Արտաշատ[10]. այլ կային մնային հանապազ նախաւոր պատիւ եւ մեծարանք Արմաւրայ: — Սոյն են եւ ամենաշատ եւ ամենաբերն Շիրակ նահանգ եւ գինեւէտ աշխարհն Գողթան՝ կայան հնագոյն պուեստաց մերոց:

2. Ի դէպ է ի սոյն հիւսիսային կողմն կցել եւ զդրացի երկիրն զոր փակեն երկու թեւք գետոյն Արածանւոյ կազմեալ մեւս եւս կէս կղզի հանդէպ առաջնոյն, յորում կան քաղաքք նշանաւորք ի հնութեան՝ յերկրորդ աստիճանի, որպէս Բագուան (Բագաւան), Վաղարշակերտ, Թորդան, Թիլն աւան, Երէզն աւան, ամուր եւ անառիկ բերդն Անի՝ տեղի գերեզմանաց Թագաւորացն Հայոց[11], յորում էր հայր եւ Թագաւոր աստուածոցն Արամազդ[12] եւ կայան քրմապետին[13] որ ակէր ի վերայ մեհենական դիւանին[14]:

Բ. Ի Հարաւային կողմն, այս ինքն հանդերձ արեւմտեան կողմամբ աշխարհիս՝ զորով պատի ի հարաւոյ Տիգրիս եւ ի հիւ-

Խորենացի զշինուած քաղաքիս (Խոր. Բ. Գլ. ԽԹ). այլ որպէս ոչ զսա, նոյնպէս եւ ոչ զնոսա մարթի մերժել. զսա՝ զի ունի իւր վկայս աւընթեր զերգս վիպասանացն մերոց որ առ նովին ժամանակաւ յօրինեալ են (առ Խոր. Ա. Գլ. Լ. «Արտաւազդայ ոչ գտեալ, ասեն, քաղաք որդւոյն Արտաշիսի տեղի ագարակաց՝ ի հիմնանալ Արտաշատու, նա անց, ասէ, գնաց եւ շինեաց ի մէջ Մարաց զՄարակերտ», այլովքն հանդերձ. (Խոր. Ա. Գլ. Լ.) եւ ոչ զնոսա՝ զի ոմանք ի նոցանէ յառաջ քան զԱրտաշէս Բ. կացին. (Ստրաբոն յամի իբրեւ 30 յետ Քրիստոսի, Պղինիոս † 79: Թուի եւս այն բան երգոցն վիպասանաց, եթէ քաղ ոք մա զնիցէ, առաւել նորոգութիւն ինչ մեծ նշանակիցէ քան եթէ ամենեւին նորաշինութիւն, եւ այնպէս երկուց կողմանց առնիցի համանութիւն:

1 Ագաթ. Գլ. Բ. էջ 36: Բուզ. Դպր. Գ. Գլ. ԺԲ. Դ. Գլ. ԾԵ:
2 Խոր. Բ. Գլ. ԽԹ:
3 Անդ:
4 Կործանումն առ Բուզանդայ Դպր. Դ. Գլ. ԾԵ:
5 Կորիւն: Ագաթանգեղոս:
6 Խոր. Բ. Գլ. ԿԵ եւ ԺԶ:
7 Խոր. Բ. Գլ. ԼԹ:
8 Քանդումն նորա առ Բուզանդայ Դպր. Դ. Գլ. ԾԵ:
9 Խոր. Բ. Գլ. Խ:
10 Խոր. Բ. Գլ. ՀԷ:
11 Ագաթ. Գլ. ՃԲ. էջ 586: Խոր. Գ. Գլ. Ժ եւ ԻԷ:
12 Ագաթ. Գլ. ՃԲ. էջ 586: Խոր. Բ. Գլ. ԺԲ եւ ԺԳ:
13 Խոր. Բ. Գլ. ԾԳ:
14 Խոր. Բ. Գլ. ԽԸ եւ ԿԶ:

ափոյ երկրորդ քաղաքին Արտաշատու՝ եւ շուրջանակի ինն եզերք Արճիշոյ եւ Բզնունեաց ծովուն. զառվաւ Ասորեստանեացն՝ եւ զնովաւ Տարօնոյն ինն նշանաւորին հերայ: — Այնու զի յերկոսին ծովուն յամենայն կողմանց մանր մանր ինչ գետք (8 գետք ի ծովն Բզնունեաց) դիմեալ իջանեն եւ չիք զօրանել ելս ինչ ջուրց ի նոցանէ, յայն սակս պարտ եւ պատշաճ է համարել զնոսա ուրոյն եւ ինքնակաց բովանդակութիւնս[1] ջուրց:

Ծովն Արճիշոյ[2] որ երկթայ եւ մեծանայ (ըստ Ռուքինեանոյ), է ընդ երկայնութիւն (այս ինքն ի հարաւոյ ի հիւսիսակողմն) 30 ժամ եւ ընդարձակագոյն լայնութիւնն՝ 10 ժամ. ամենեւին խորութիւնն՝ 24 ոտք, միջինն՝ 12: Անհնարին է աղութիւն ջուրցն. նաւ ծանրացեալ ակաղձուն 100 թակուկօք[3] ոչ մխի ի ջուր աւելի քան զ3—4 ոտս, նմին իրի չյուզին այնչափ ի մրրկէ ջուրքն: — Դաշտավայրքն որ շուրջ զնովաւ են՝ յոյժ պտղաբերք են, որոց բնակիչք ձեռնհաս էին արդեւք յօրինեալ յարդարել զգետսն որ ի նա թափին՝ վասն առէպ նաւարկութեանց զվաճառս այլ եւ այլ կողմանց ի քաղաքսն որ առ գետով կան՝ սփռելոյ:

Կարծի ի Ռուքինեանոյ եւ ի Ռիտտերայ աշխարհագրէ ոչ սաւանց ինչ հաստատութեան՝ թէ գուցէ ինչ ճանապարհ սկսեալ գործ ընդ ծովն Արճիշոյ՝ յօրինեալ ի հինսն (ի Տարօնոյ կամ յԱսորեստանեաց) վասն հեծելոց, քանզի նշանաւորին իսկ հերայ այսպիսի ճանապարհի յերեւաց անտի ջրոյն:

Ծովն Բզնունեաց[4] որ նոյնպէս տակաւ յորդէ եւ տիրէ եզերացն (ըստ Ժոպերայ), է գեղեցիկ կապոյտ՝ ուրեք ուրեք յեզերսն թուխ իբրեւ զթանաք. որս ծովուն է ձուկնն տառեխ (ի 20երորդ օրէ Մարտ ամսոյ մինչեւ ց1 Մայիս ամսոյ ըստ Մոնթէիթայ անգղիացւոյ):

Յարեւելեան եզերս նորա յամենածաղիկն քան զամենայն կողմանսն Ասիայ (ըստ Ռիտտերայ աշխարհագրի) կայր հոյակապ քաղաքն Շամիրամակերտ, երրորդ քաղաք պերճանի (ամարաստուն) թագաւորացն Ասորեստանեաց իբրեւ համգոյն Բաբելոնի եւ Նինուէի. եւ արդեամբք իսկ ըստ ճաշակի շինուածոյ Բաբելացւոց քաղաքին յօրինեալ էր այն, ապարանք երկձեղունեայք եւ երեքձեղունեայք գունեալ նկարակերտ եւ լուսալիք. անցանէր մի մասն գետոյն ընդ մէջ քաղաքին եւ ապա անտի ջրմղօք ի պէտս բնակչացն եւ յոռոգումն ծաղկոցաց լինէր. փողոցք լայնք եւ ընդարձակք եւ

1 Système.

2 Ըստ Ստրաբոնի՝ ԺԱ. Λίμνη Σπαῦτα Ատրպատական ծովակ, թերեւս Καπαῦτα համեմատ Խորենացւոյն որ Կապուտան ծովակ կոչէ: Ըստ Պտղոմեայ Ձ. Գլ. Բ. Λίμνη Μαρτιανή.

3 Tonneau.

4 Ըստ Պտղոմեայ (Ե. Գլ. 13) Arsissa որ թուի Արճէշ (յԱրճիշակովիտ նահանգի) որպէս կոչի իսկ քաղաք մի յեզերս նորա: Ըստ Ստրաբոնեայ ԺԱ. Μαντιανή որ ըստ նորա թարգմանի Կապոյտ (Κυανεανή ἑρμηνευθεῖσα). այլք համարին կոչեցեալ յազգէ անտի Մատիանացւոց կամ Մատիէնացւոց զորոց Հերոդոտոս Ա. 72, 202 ճառէ:

համօրէն իսկ քաղաքն բաժանեալ յայլ եւ այլ կողմանս այլ եւ այլ գունիւք։ Այսր Հոյակապ քաղաքի՝ յետ աւերելոյ նորա ի կէս չորրորդ դարու՝[1] կայ տակաւին բերդն, շինուած ինչ բնութեան եւ արուեստի, քան զոր չիք ինչ մեծայաղթ յանցորդ հնութեան ի յառաջակողմանս Ասիացւոց աշխարհին. կան աւազին սենեակքն եւ արահք փորեալք եւ խորեալք անդէն յապառաժի անդ, զորս Խորենացի՝ տաճարս եւ սենեակս օթից եւ տունս գանձուց եւ մեհս երկարս անուանէ[2]։ — Ի հարաւոյ Վանայ երկուց ժամուց գնաց ճանապարհի (ըստ Վիլբրահամայ) կամ երից (ըստ Շիլլոյ) տապաջին երեւելի տեղի՝ որոյ հին աւերակք նշմարին եւ չեն տակաւին քննեալ՝ է Արտեմիդ[3]։

Սեպաձեւն նշանագիրք որ շուրջ զծովակաւս ասէպ եւ ընդ ամենայն իսկ համօրէն կողմանս այսոսիկ աշխարհիս մերոյ տարածեալ կան, յորոց կէսք Ասորեստանեայց գիր են եւ կէսք Արիական ազգին, յայտ տարեալ ցուցանեն թէ այս կողմանք աշխարհիս մերոյ առ Ասորեստանեայց եւ Պարսից միահեծան պետութեամբք մեծամեծ անցից ընդեալ են տապարեգք։ — Որ առ Մանազկերտաւ գեղեցիկ սեպաձեւ գիրն է[4], հիւսիսայնին արեւմտեան սահման է սեպաձեւն գրոց, ոչ միայն Հայոց աշխարհին՝ այլ ամենայն համօրէն կողմանց Ասիացւոցն։

Յայսմ հարաւային կողման Հայաստան աշխարհի կան գլխաւոր եւ Հոյակապ եւ Հզօրագոյն նախարարութիւնք Հայոց։ Աղձնիք՝ որոյ իշխանն կոչէր բդեաշխն եւ մեծ բդեաշխն[5], եւ Թագաւոր եւս կոչէր երբեմն[6]։ Իսկ սմանէ անդէն յաշխարհին Աղձնեաց է Հոյակապ նախարարութիւնն Արծրունեաց. դարձեալ նշանաւոր են Ծոփք՝ որ բաժանէր ի Ծոփս մեծ եւ ի Ծոփս Շահունեաց, Ռուշտունիք (Ըռշտունիք, Որշտունիք), Բզնունիք, Խորխոռունիք, Ապահունիք, Անձեւացիք. նշանաւորք եւ Հոյակապք էին եւ իշխանք նահանգացն եւ գաւառացն Մոկաց, շահապն Հեր եւ Զարաւանդ գաւառի, Կորդովաց (Կորդուաց) այլովքն հանդերձ։ — Աստ են բերդք եւ ամենաշատ գաւառքն Հաշտենից եւ Տարօնոյ՝ յորում կայր հոյակապն Աշտիշատ յաշտից տեղի Թագաւորացն Հայոց[7]։

1 Բուզ. Դպր. Դ. Գլ. ԾԵ։

2 Խոր. Ա. Գլ. ԺԶ. Տես զմանր նկարագիր դղեկին Վանայ՝ յԵւրոպա լրագրի 1847 թիւ 10, 13, 16, 19, ըստ Շուլցայ գերմանացւոյ որ նախ յԵւրոպացւոց եմուտ անդր. յետ նորա բդեշխն անգղիացի Բրանդ։

3 Ἀρτεμίτα առ Պտղոմ.։ Այժմու բնակիչք եւս կոչեն Արտեմիդ կամ Արտամիդ։

4 Գտեալ նորոգ ի Շուլցայ՝ յ39 տողս, զորս ասէ այնպէս անարատ իսկ պահեալ մինչեւ երէկ իսկ փորեալ համարել։ Այլ քննութիւնք Շուլցայ եւս մանաւանդ զկողմանք Վանայ, յորոց այնչափ ինչ նիւթ սեպաձեւ գրոց ընդօրինակեալ ստուգաւ յԵւրոպա է, որ երկիցս տասնեակ է (ըստ Սէն Մարտենայ) քան զամենայն որ յայն վայր ծանուցեալ եւ ստուգեալ էր։ Զորս յառաջնում օրինակ անուանի դղեկին ընդօրինակեաց՝ չեն ինչ այնպէս համառօտ անձնեաքին. մին ի նոցանէ է 98 տող 15,000 նշանագրօք, այլքն ունին նշանագիրս 7, 8, 10 — 12,000։

5 Ագաթ. Գլ. ՃԺԲ. էջ 595։

6 Բուզ. Դպր. Ե. Գլ. ԺԶ։

7 Ագաթ. Գլ. ՃԺԴ. էջ 603։

# 38

Գտցին նախնաւոր ինչ կամ այդրէնածին բնակիչք ի Հայոց աշխարհին՝ մանաւանդ ի հարաւային կողմանն մերձ ի կողմանս Ասորեստանեայց առ ծովուն Բզնունեաց՝ ի հարաւոյ նորա եւ յարեւմտից հիւսիսոյ [1], որք ըստ զրուցացն Ողոմպիոդորայ խնամոյ եւ երգոց վիպասանացն Հայոց՝ ի Սեմական տոհմէ էին [2]: Իսկ որ դարձեալ ուրեք ուրեք մինչեւ անդր իսկ ի հիւսիսային կողմանս զգետովն Երասխայ սակաւաւոր բնակիչքն էին [3] թէ արդեւք ի նմին ցեղէ իցեն՝ այն ամենեւին անյայտ է:

Յետ սորա գաղթեցին անդր բուն բազմաւոր եւ տիրող բնակիչք ի Յաբեթական տոհմէ՝ Հայք: Ինքն իսկ աշխարհագրական դիր բնակութեան Հայ ազգի որ ի սահմանս բնակութեան եւ ի միջոցի որդւոցն Յաբեթայ անկանի [4], եւ սեպհականութիւն եւս լեզուին [5] միաբանեալ ընդ յայտնի վկայութեան պատմութեանն [6] առանց երկմտութեան առնէ՝ լինել ազգիս անդամ ինչ յանդամոց յաբեթական տոհմին: Յայսմ բազմատարած տոհմի իբրեւ առանձինն ցեղ եւ ազգ որոշէ զմեզ զառաջինն Հայկ՝ որով անուանի նա նահապետ ազգիս:

1. Ծնունդք որով Հայկ կապի ընդ Յաբեթայ՝ են ըստ Մար Աբասայ ի վերուստ ի խոնարհ Մեդոգ, Սիրաթ, Թակլաթ (այս ինքն Յաբեթ, Մեդոգ, Սիրաթ, Թակլաթ, Հայկ) զորս Մովսէս Խորենացի համեմատ իմն դնէ գրոցն սրբոց՝ Գամերայ, Թիրասայ եւ Թորգոմայ: Սակայն խանգարի նովին համեմատութիւն եւ կարգ ծննդոց զոր ամենայն բնագիրք գրոցն սրբոց որպէս եւ Թարգմանութիւն մեր միաբան ցուցանեն. զի ըստ առ Խորենացւոյն ուրոյն ծնունդք են Գամեր եւ Թիրաս, ըստ գրոց՝ ի միում գծի են երկոքին իբրեւ անմիջական որդիք Յաբեթի, եւ սորա յերկրորդ գծի Թորգոմ [7]: Բայց զի եթէ կամիցիմք զՀայկ ի նմին ժամանակի դնել յորում կամի լինել զնա Մար Աբաս, չէ հարկ երիս ծնունդս ընդ Յաբեթ եւ ընդ Հայկ ի միջի դնել, զի ըստ գրոց իսկ ազգահամարի պատմական են երկու եւեթ ծնունդք ընդ Յաբեթ եւ ընդ Հայկ, որչափ ընդ Քամ եւ ընդ Նեբրովթ ի միջի է [8]: Այս երկու եւեթ ծնունդք այսոքիկ են մեզ, եւ սոքա են՝ Գամեր եւ Թորգոմ, որպէս ի յաջորդացս ամփոփի:

Ըստ որում ի բնէ սովոր իսկ են գրել թէ ամենայն իսկ քրիստոնեայ մատենագիրք՝ որպէս մերքն [9] նոյնպէս եւ օտարազգիք՝ [10] զԹորգոմայ [11]

1 Խոր. Պատմ. Ա. Գլ. Ժ. եր 53 եւ 54:

2 Խոր Ա. Գլ. Զ. եր 43 — 44:

3 Խոր. Ա. Գլ. ԺԲ. եր 63:

4 Տես ի վեր անդր համառօտ 12. եր 42:

5 Տես նոյնպէս ի վեր անդր եր 47:

6 Մար Աբաս առ Խոր. Պատմ Ա. Գլ. Թ. եր 51:

7 Ծնն. Ժ. 2, 3: Ա. Մնաց. Ա. 4 — 7:

8 Ծնն. Ժ. 2 — 4: Ա. Մնաց. Ա. 4 — 7:

9 Մովս. Խոր.: Կորիւն ի վարս Ս. Մեսր.: Բուզ. Պատմ. Գ. Գլ. ԺԴ. Պատմ. Ե. Գլ. Ը: Ագաթ. Գլ. Ա. եր 20 «Ազգ Թորգոմեայ». Գլ. ՃԸ. եր 579 «Տուն Թորգոմայ». Գլ. ՃԺԲ. եր 594 «Հայաստան աշխարհ, տուն Թորգոմայ»:

10 Թէոդորետոս, Իսիդորոս Խառակացի, Սինկեղղոս որ ժողովեալ է զբանս ինչ ի հին մատենագրէ ումեմն՝ յորմէ ժողովեալ է եւ մերոյն Սամուէլեայ Երիցու: — Տես Խոր. Քրոն. Բ. եր 12:

11 Ծնն. Ժ. 3: Ա. Մնաց. Ա. 6:

եւ զտունն Թորգոմայ՝ [1] զՀայոց իմանալ, եւ յիրաւի իսկ։ Քանզի յառաջնում բանի անդ տունն Թորգոմայ անդէն առընթեր Գամրաց դասանի ի զօրսն ի վերայ Մագոգայ, եւ իբրեւ ըստ աշխարհագրական ինչ դրից կարգաւ կոչէ զազգսն մարգարէն ի վերայ Մագոգայ յորժամ ասէն "Լիդացիք ամենեքին սաղաւարտաւորք եւ վահանաւորք, Գամեր (Գամիրք) եւ ամենեքին որ շուրջ են զնովաւ, եւ տունն Թորգոմայ ի ծագացն հիւսիսոյ եւ ամենեքին որ շուրջ են զնովաւ„։ — Նոյնպէս եւ ի միւսումն բանի մարգարէին [2] յայտնի իսկ ակնարկէ Հայաստան աշխարհ՝ երեւելին եւ հայկական դարմանօք երիվարաց [3] յորժամ ասիցէ "ի տանէ Թորգոմայ ձիովք եւ հեծելովք եւ ջորւովք լցին զվաճառս քո (Տիւրոսի)„։ — Զհայր Թորգոմայ ցուցանեն մեզ ինքնին գիրք [4] առանց մեկնութեանցն կարօտանալոյ, այս ինքն զԳամեր (Գոմեր) զնահապետ արեւմտեան դրացեաց մերոյ աշխարհին՝ զԳամրաց կամ զԿապադովկացւոց ասեմ։

2. Իսկ ո՞վ իցէ արդեւք անմիջնորդական որդի Թորգոմայ։ Ըստ Խորենացւոյն չիք այլ ծնունդ ընդ Նոյ եւ ընդ Հայկ ի միջի, որ արդարեւ յոյժ իսկ հաւանութեան է։ Քանզի սովորութիւն եբրայական ազգին որ ըստ հին ինչ ազգահամարի միշտ անուանս ազգացն կարդայ, տուն Թորգոմայ զՀայս կոչելով՝ յոյժ մերձաւոր սկիզբն եւ որոշիչ հայր եւ նահապետ Հայոց՝ զԹորգոմ ցուցանէ. զի այնպէս ինչ տուն Թորգոմայ զմեզ կարդան, որպէս զեւրեանց իսկ ժողովուրդն կոչեն՝ տուն Իսրայելի (կամ Յակոբայ). մինչ զի առաւել տեղի գոյ արդեւք կարծելոյ թէ որ առ Եբրայեցւոցն Թորգոմն (Թոգարմայն) է՝ նոյն իցէ ընդ Հայկին Հայոց, քան եթէ կարծելոյ թէ այլ ինչ ծնունդ ի միջի կայցէ ընդ Թորգոմ եւ ընդ Հայկ։

Թուի ինձ թէ առանց ինչ հաղորդութեան Մար-Աբասեան պատմութեանն գիտէր վաղ ազգն զայս նահապետ իւր զՀայկ՝ հանդերձ իւիք իւիք հանգամանօք կենաց նորա, թէպէտ եւ մարթ էր ժամանակաւ խառնել ինչ յաւելուածոյ ի նոսա։ Մովսէս Խորենացի (յամի 460 — 470) յարկանելն զայն ի կիր օտար լեզուաւ, եւ որպէս ի կարգէ բանիցն կայ ի մէտ առնուլ[5], թերեւս զառաջինն հրապարակաւ ծանօթ կացուցանել զմատեանն Մար Աբասայ, համարի առ հասարակ ծանօցեալ զգոյութիւն Հայկայ իբրեւ մեծի ուրուք եւ ցանկալի նախնւոյ Հայաստանեայց, որ եւ յիշատակեալ եւս իցէ պատմութեամբ արտաքոյ քան զՄար Աբաս[6], եւ երեւեալ աշխարհագրական ինչ յիշատակաւ[7]։ Եւ վաղ իսկ քան զնա՝ եթէ ոչ ինքն Ագաթանգեղոս (100 ամօք կանխագոյն քան զնա) գոնեայ թարգմանիչն որպէս հաւանութեան թուի՝ Կորիւն (յամի իբրեւ 445) տայ ինձ Հայկայ զսեպհականութիւն ինչ ուժգնութեան եւ քաջութեան[8]։ Փոքր ինչ յառաջ քան զայն կամ անդէն ի նմին ժամանակի մի ոմն կամ երկու ի Հայ թարգմանաց աստուածաշունչ գրոց տան եւ այլ եւս ինչ սեպհականութիւնս կամ նշանակս Հայկայ. զի գիտեալ նոցա ի թարգմանութեան 70ից ի տեղի անդր յորում յիշի աստեղատունն՝ զոր Քաղդէացիք Քիմա կամ Քիմին կոչեն, որ նշանակէ՝ գոռ պատերազմող կամ տիրող կամ սկայ, որ եւ նկարէր իսկ աղեղնաւոր՝ արդ յոյժ իսկ հաւանութեան է թէ զնախնին

1 Եզեկ. ԻԷ. 14. ԼԸ. 6։
2 Եզեկ. ԻԷ. 14։
3 Եւսեբ. Ա. 149։ Մաքաբ. ԺԱ. 558, 587։
4 Ծնն. Ժ. 2 — 4։ Ա. Մնաց. Ա. 6։
5 Գիրք Ա. Գլ. Ը — Ժ։
6 Խոր. Ա. Գլ. ԻԲ. էջ 104։
7 Խոր. Ա. Գլ. Ժ. էջ 54։
8 Ագաթ. ՃՁ. էջ 572։

## 39

«Այս Հայկ գեղապատշաճ եւ անձնեայ, քաջագանգուր, խայտակն եւ հաստաբազուկ. սա ի մէջ սկայիցն քաջ եւ երեւելի լեալ, ընդդիմակաց ամենեցուն, որք ամբառնային զձեռն միապետել ի վերայ ամենայն սկայիցն:... Պատահմունք ի դէպ եղանէին Բելայ բռնանալ ունել զամենայն երկիր: Սրտամ ոչ կամեցեալ Հայկայ հնազանդ լինել Բելայ, յետ ծննդեան որդւոյ իւր զԱրամենակ ի Բաբելոնի, չուեալ գնայ յերկիրն Արարադայ, որ է ի կողմանս հիւսիսոյ, հանդերձ որդւովք իւրովք եւ դստերօք եւ որդւոց որդւովք, արամբք զօրաւորօք՝ թուով իբրեւ 300 եւ այլովք ընդոծնօք եւ եկօք յարեցելովք ի նա եւ բոլոր աղխիւ»:

Այլ «ի հաստատելն տիտանեանն Բելայ զթագաւորութիւն իւր առ ամենեսեան, առաքէ ի կողմն հիւսիսոյ զմի ոմն յորդւոց իւրոց առ Հայկ արամբք հաւատարմօք, գալ նմա ի հնազանդութիւն եւ կեալ խաղաղութեամբ: Բնակեցեր, ասէ, ի մէջ ցրտութեան սառնամանեաց, այլ ջեռուցեալ մեղկեա զցրտութիւն սառուցեալ քո հպարտացեալ բարուցդ, եւ հնազանդեալ ինձ՝ կեաց ի հանդարտութեան, ուր հաճոյ է քեզ յերկրիս իմում բնակութեան: Ի բաց դարձուցեալ Հայկայ զպատգամաւորսն Բելայ, խստութեամբ պատասխանեաց: Դառնայ առաքեալն անդրէն ի Բաբելոն: Ապա զօրաժողով լինի ի վերայ նորա տիտանեանն Բէլ ամբոխիւ հետեւակ զօրաց, գայ հասանէ ի հիւսիսի յերկիրն Արարադայ մերձ ի տունն Կադմեայ. փախստական լինի Կադմոս առ Հայկ, քաջ ընթացիկս առաջի իւր առաքէ. Գիտեա, ասէ, ով մեծդ դիւցազանց, զի դիմեալ գայ ի վերայ քո Բէլ յաւերժիւք քաջօք եւ երկայնադիզօք հսակօք սկայիւք մրցողօք: Եւ իմացեալ զմերձ լինելն նորա ի տուն իմ՝ փախեայ, եւ գամ առաւիկ տագնապաւ: Արդ աճապարեա խորհել որ ինչ գործելոց ես: Իսկ Բէլն յանդուգն եւ անձոռնի զօրութեամբ ամբոխին՝ որպէս յորձան ինչ սաստիկ ընդ զառիվայր հեղեալ՝ փութայր հասանել ի սահմանս բնակութեան Հայկին, ի սիրտ եւ ի մարմին վստահացեալ արանց զօրաւորաց: Աստ ուշիմ եւ խոհեմ սկայն, քաջագանգուրն եւ խայտակն, աճապարեալ հաւաքէ զորդիս իւր եւ զթոռունս, արս քաջս եւ աղեղնաւորս, թուով յոյժ նուազունս, եւ զայլս եւս որ ընդ իւրով ձեռամբ. հասանէ յեզր ծովակի միոյ որոյ աղի են ջուրքն, մանունս ունելով ձկունս յինքեան (ծովն Բզնունեաց): Եւ կոչեցեալ զզօրս իւր ասէ ցնոսա. յելանելն մեր հանդէպ ամբոխին Բելայ, դիպել ջանասցուք տեղւոյն՝ ուր անցեալ կայ ի մէջ խռան քաջացն՝ Բէլ: Զի կամ մեռցուք, եւ աղխ մեր ի ծառայութիւն Բելայ կացցէ. կամ զաջողութիւն մատանց մերոց ի նա ցուցեալ, ցրուեսցի ամբոխն, եւ մեք եղիցուք յաղթու-

թիւն տացեալք։ Եւ յառաջ կայր անցեալ բովանդակ ասպարէզն՝ հասանէն ի միջոց ինչ դաշտաձեւ լերանց բարձրագունից. եւ յաջմէ ջուրցն հոսանաց ի բարձրաւանդակութեն կուռ կալով ի տեղւոջ։ Ի վեր զերեսս ամբարձեալ՝ երեւեցաւ նոցա բազմութիւն անկարգ հրոսակի ամբոխին Բելայ ցան եւ ցիր յանդուգն յարձակմամբ ընդ երեսս երկրին սուրալով. իսկ Բէլ հեզ եւ հանդարտ ամբոխիւ մեծաւ ի ձախմէ ջուրցն ի վերայ ստոյ միոյ իբրեւ ի դիտանոցի։ Ծանեաւ Հայկ զխումբ վառելոյ ջոկատին, յորում Բէլ առաջի ամբոխին եկեալ հասեալ ընտրիւք եւ վառելովք ոմամբք, եւ երկար միջոց ճանապարհին ընդ նա եւ ընդ ամբոխն, եւ ինքն գլխանոց ագուցեալ երկաթի նշանաւորօք վերջօք, եւ տախտակս պղնձիս թիկանց եւ լանջաց, եւ պահպանակս բարձից եւ բազկաց, գօտեւորեալ զմէջն, եւ յահեկէ զսուրն երկսայրի, եւ նիզակն արի ի ձեռին իւրում աջոյ, եւ յահեկումն վահան, եւ ընտիրք յաջմէ եւ ի ձախմէ։ Եւ տեսեալ Հայկին զտիտանեանն կուռ վառեալ, եւ զարս ընտիրս ընդ նմա աջինս եւ ահեկինս, կարգէ զԱրամենակ երկու եղբարբք ընդ աջմէ, եւ զԿադմոս (զնորին որդի) եւ զայլս երկուս յորդւոց իւրոց ի ձախմէ, զի արք կորովիք էին յաղեղն եւ ի սուսեր. եւ ինքն առաջի, եւ զայլս հրոսակին զհետ իւր կարգեաց. երեքանկիւնի իմն կարգեաց ձեւով, հանդարտ յառաջ մատուցանելով„։

“Եւ հասեալ երկոցունց կողմանց սկայիցն ի միմեանս՝ ահագին դղրդիւն ի վերայ երկրի առնէին շահատակելովն, եւ ահս պակուցանողս տարազուք յարձակմանցն զմիմեամբք արկանէին։ Ընդ ոչ սակաւք յերկոցունց կողմանց սկայիցն արք յաղթանդամք բերանոյ սրոյ դիպեալք, տապալ յերկիր կործանէին. եւ մարտն յերկոցունց կողմանց մնայր անպարտելի։ Զայսպիսի անակնունելի դիպուած տարակուսանաց տեսեալ արքային տիտանեան՝ զարհուրեցաւ, եւ ի նոյն բլուր ուստի էջն՝ վերջոտնեալ ելանէ. քանզի խորհէր ի միջոցի ամրանալ ամբոխին մինչեւ հասցէ բովանդակ զօրն, զի միւսանգամ ճակատ յօրինեսցէ։ Զայս իմացեալ աղեղնաւորին Հայկայ՝ յառաջ վարէ զինքն, մօտ հասանէ յարքայն, լի քարշէ պինդ զլայնալիճն, դիպեցուցանէ զերեքթեւեանն կրծից տախտակին, եւ շեշտ ընդ մէջ թիկանցն թափանցիկ լեալ՝ յերկիր անկանի սլաքն. եւ այսպէս ճոխացեալն տիտանեան կործանի՝ յերկիր զարկուցեալ, եւ փչէ զոգին։ Իսկ ամբոխն տեսեալ զայսպիսի ահագին գործ քաջութեանն, փախեան իւրաքանչիւր դէպ երեսաց իւրեանց։ — Զդիակն Բելայ պաճուճեալ իմն դեղովք հրամայէ Հայկ տանել ի Հարք, եւ թաղել ի բարձրաւանդակ տեղւոջ ի տեսիլ կանանց եւ որդւոց իւրոց„[1]։

1 Խոր. Ա. Գլ. Ժ, ԺԱ։

միւսանգամ ի բնակութիւն Հարքայ հանդերձ Արմենակաւ՝ յետ հաստատելոյ միւսանգամ իբրեւ ստացուած ժառանգութեան Կադմեայ զառաջին տեղի բնակութեան նորա (ի հարաւոյ ծովուն Բզնունեաց): 3. Իսկ Արմենակ եւս յետ հօրն մեռանելոյ ի բազմանալ ծննդոցն՝ թողու եղբօր իւրում Մանաւազայ զՀարքն, եւ միւս եղբայր նորա Խոռ երթեալ բնակէ ի հիւսիսակողման ծովուն աղւոյ, որպէս եւ Բազ որդի Մանաւազայ յարեւմտից հիւսիսոյ առ նովին ծովաւ. եւ ինքն Արմենակ խաղայ յարեւելս հիւսիսոյ ի խորին դաշտավայր մի պարսպեալ ի բարձրագագաթն լերանց (յԱրագած): 4. Արմայիս որդի նորա շինէ առ եզերբ գետոյն (Երասխայ) զԱրմաւիր — միւս եւս որդի նորա Շարայ անուն յոլովածին եւ շատակեր տանի ամենայն ազխիւն ի դաշտ մի մօտաւոր ի թիկունս Արագածոյ: 5. Որդի Արամայիսայ՝ Ամասիա յաջորդէ զնա յԱրմաւիր. յետ ծնանելոյ նորա երիս որդիս (զԳեղամ, զՓառախ, զՑոլակ) թողեալ զԱրմաւիր Գեղամայ՝ ինքն անցանէ մերձ ի լեառնն հարաւոյ (Մասեաց) եւ շինէ երկուս տունս առ ընտանութեամբն՝ միւս երկուց որդւոցն իւրոց (արւոյն) Փառախայ եւ (կայսեան) Ցոլակայ, եւ ապա դարձեալ յԱրմաւիր՝ մեռանի: 6. Գեղամ եւս թողեալ զՀարմայ զորդի իւր՝ յԱրմաւիր, ինքն եւ գնաց զմիւս լերամբ (Գեղ) արեւելեան հիւսիսոյ յեզր ծովակի միոյ, եւ շինէ առ նմին շէնս (զԳեղաքունի): — Նորին որդի Սիսակ գաղթեալ բնակէ ի Սիւնիս (ի Սիսական):

Տարածումն կամ ներքին գաղթականութիւնք ի Հայոց աշխարհին ընթանային ի հարաւոյ ի հիւսիսի: Տեղիք գաղթականութեանց որպէս ի դէպ իսկ էր ի բնէ՝ ընտրելին վայրք զոր բնութիւնն ամրացուցեալ իցէ առ լերանց ստորոտովք ի ճարակաշատ եւ բերրի տեղիս եւ յաճախաջուրս առ գետովք: Ի գաղթականութիւնս յայնոսիկ ընդ ազգահամարի եւ կարգի ծննդոց՝ ընթանայ կից եւ հին երկրագրութիւն աշխարհին: Այսպիսի իմն կարգ եւ օրէնք երեւին, զի ի բազմանալն՝ անդրանիկքն փոխանակեսցեն առ ժառանգ մի որպէս զիրաւունս հօրն նոյնպէս զբնակութիւն նորա. իսկ այլք յորդւոցն՝ ընդ որոց բազում անգամ եւ հայրն՝ գաղթեսցեն այլուր, եւ այնպէս լինիցի տարածումն:

Այս էր ներքին ընդարձակութիւն Հայոց աշխարհին եւ բնական իմն աշխարհահակալութիւն, ըստ բազմանալոյ սերնդոց՝ որք եւ ի տարածութեան անդ եւ ի բազմութեան զիւրեանս զմիմեանս ի միջէ հօրէ եւ ընտանիս մեծեանց եւ արենակիցս, եւ գեղեցիկ ազատութիւն՝ էր հաստատակայ իրաւունք տոհմից նոցա, իւրաքանչիւր տոհմ իւրով նահապետական առաջնորդութեամբն վարեալ:

Իբրեւ առհասարակ իմն ցեղք էին Կադմեանքն ի կողմն Արդասանեաց աշխարհին, եւ Սիսականքն ի կողմանս արեւե-

կեց։ Այսպէս սերունդք Կադմեայ եւ Միսակայ գրեթէ իբրեւ տոհմ իմն զինուորաց էին ի Հայոց աշխարհին։

Այլ ի բազմանալ կարի սերընդոցն եւ ի շփել ընդ դրացի ժողովրդոց նոյնպէս բազմացելոց, հարկ լինէր այնուհետեւ միութեան իմիք առաջնորդութեանն յամենեսին ի նոսա լինել, զոր արդարեւ առաւել երախտաւորին եւ այնմ որ կարօղն էր՝ ի դէպ էր առնել յանձն։ Այսպիսի ոք Արամ էր որդի Հարմայ որ "այր աշխատասէր եւ հայրենասէր եղեալ լաւ համարէր զմեռանելն ի վերայ հայրենեացն՝ քան եթէ տեսանել զորդիս օտարածնաց կոխելով զսահմանս հայրենիս, եւ հարազատից արեան նորա տիրել արանց օտարածնաց,,։

Ի կողմանս արեւելից Մադէս ոմն Նիւքար մար յազգէ՝ այր հզօր եւ պատերազմասէր՝ հինիւ յարձակեալ ի վերայ սահմանացն Հայոց՝ ծառայեցուցեալ ունէր յերկուս ամաց հետէ։ Արամայ ժողովեալ զբազմութիւն ընտանի արանց քաջաց եւ աղեղնաւորաց եւ նիզակաւորաց յերիտասարդաց անտի եւ ի հարբստաց իբրեւ 50,000, հասանէ գրեթէ զիշերախառն, հարկանէ զզունդն մարական եւ զՆիւքարն Մադէս ածէ ձերբակալ յԱրմաւիր, եւ գրաւեալ ունի զաշխարհն մինչեւ ցլեառնն Զարասպ անուն[1]։ — Ապա նովին հայազունդ զօրօք խաղացեալ հասանէր ի կողմանս հարաւոյ աշխարհին՝ հարկանել զմիւս եւս ապականիչ երկրին զԲարշամ ոմն անուն, զորով էին իբրեւ 40,000 հետեւակք եւ 5000 հեծելազօր, տայր ընդ նմա ճակատս, ելանէր Բարշամ փախստեայ ընդ մէջ Կորդուաց եւ կողմանցն Ասորեստանի, բայց անդէն ի փախստեանն հարեալ ի զինակրացն Արամայ՝ մեռանէր։ — Յետ զարեւելեայ կողմանսն առնելոյ յանձն Միսակեանցն ի պահպանութիւն եւ զհարաւային կողմն՝ տանն Կադմեայ՝ ինքն յարեւմուտս կոյս աշխարհին դիմեալ հասանէր. անդ զմիջոց երկուց ծովուցն՝ զՊոնտոսի եւ զՄիջնոյ ծովուն բռնացեալ ունէր Պայապիս ոմն Քաղեայ. փախստեայ գնայ Պայապիս ի կղզի ինչ Միջնոյ ծովուն. գրաւէ ընդ իշխանութեամբ զկողմանսն՝ թողեալ կուսակալ զոմն Մշակ անուն[2]։

Արամաւ ելանէր աշխարհն Հայոց ի նահապետական առաջնորդութենէ եւ ամփոփէր ի մի իշխանութիւն՝ լինել տէրութիւն մի։ Իսկ նահանգք եւս յայս տէրութիւն յաւելան, զորս ի նոյն միութիւն ազգին ջանայր խառնել Արամ փոփոխմամբ լեզուի նոցա ի հայերէն լեզու[3] ըստ խորամանկ արուեստի Հռոմայեկան աշխարհակալութեանն. առաջին քաղաք այնր տէրութեան հոյակապ հայրենի յիշատակօք՝ էր Արմաւիր։ — Այլ անդէն ի նմին ժամանակի յետ անկանելոյ առաջին տէրութեանն Բաբելացւոց՝ յարուցեալ կայր եւս իմն քան զնոսա մերձաւոր եւ

1 Խոր. Ա. Գլ. ԺԳ։ 2 Խոր. Ա. Գլ. ԺԴ։ 3 Խոր. Ա. Գլ. ԺԴ. էջ 73։

սահմանակից Հայոց աշխարհին՝ Ասորեստանեաց համաշխարհական տէրութիւն, առ որով մեծազօրն զօրութեամբ չկարէր յերկարաձգելս կալ մնալ ինքնօրէն՝ Հայոց նորոգ տէրութիւնն։ Բանզի թէպէտ եւ առ Արամու ազատ իմն տէրութիւն էր դաշնաւոր միայն Ասորեստանեաց տէրութեանն, եւ ունէր թագաւոր իշխանութեամբ ածելոյ վարսակալ մարգարտեայ[1], սակայն առ Արայիւ նորին յաջորդաւ եղեւ Հայաստան նահանգ Ասորեստանեացն պետութեան[2], եւ եղանէր իսկ հարկ ի նմանէ[3]։

Ինքն իսկ երկիր Հայոց աշխարհին աշխարհագրական իմն յիշատակարան եւ մնացեան պատմութեան է վասն ամենայն անցից նահապետացն։ Արագած լեառն յիշեցուցանէ զԱրմենակայ[4], Արմաւիր քաղաք՝ զԱրմայիս, Շիրակ՝ զՇարայ, լեառն Մասեաց՝ զԱմասիա[5], Փառախոտ՝ զՓառոխ, Ցոլակերտ՝ զՑոլակ, Գեղ լեառն եւ ծովն եւ շէնն Գեղաքունի՝ զԳեղամ[6], նոյնպէս եւ ձեռակերտն Գառնի՝ զնորին որդի զԳառնիկ[7], Սիւնիք կամ Սիսական աշխարհ՝ զՍիսակ[8]։ — Նա եւ ի վերայ սերընդոցն իւրեանց մշանջենաւորեալ կան անուանք իւրաքանչիւր նահապետացն, Մանաւազ՝ ի վերայ առհմին Մանաւազեանց, Բաղ՝ ի վերայ Բզնունեացն, Խոռ՝ ի վերայ Խոռխոռունեացն, եւ այլ եւս իւրաքանչիւր ցեղք ունէին յիշատակս հաստատուն զանցնիւր նահապետս իւրեանց։ — Արդարեւ յայս ամենայն համեմատութեանց անուանցս ըստ սոուգութեան կէպք կամայական իմն թուին, որպէս զԵրասխն անուն ածել յանուանէ Արասս նահապետի յառաջ[9], եւ կէպք այնպիսի՝ զի չկարիցեմք կալ սոուգութեանն երաշխաւոր, թէպէտ եւ չիցեն եւս անհաւանութեան, որպէս զՄասեացն անուն յԱմասեայն անուանէ ածել յառաջ. սակայն մնացեալ մեծ մասն նոցա ունի ինչ հիմն հաստատութեան յորժամ ոչ ի յանկութենէ անուանն միայն այլ եւ ի զրուցաց եւս բերիցի ինչ վկայութիւն հաստատութեան, որպէս յորժամ վասն Շիրակայ ասիցէ Խորենացին "Յորոյ անուն (այս ինքն ի Շարայի) եւ գաւառն, ասէ, անուանել Շիրակ"[10]. ուր արդարեւ սքանչելի է եւ միաբանութիւն պատմութեանն ընդ ընտանի եւ անպաճոյճ զրուցաց ազգին՝ յորոց զնշանաւոր եւ զգեղեցիկ հին առակն թէ "Թէ քո Շարայի որկորն է, մեր Շիրակայ ամբարքն չեն" գտանէ Մովսէս Խոր. ի կէս հինգերորդ դարու տակաւին ի բերանս ռամկապարզ շինականացն[11]։ — Եւ դարձեալ՝ յորժամ վասն Մանաւազայ, Բաղայ, Խոռայ ասիցէ "ի սոցանէ, ասէ, լեալ զնահապետութիւնս Մանաւազեան եւ զԲզնունեաց եւ զՈրդունին անուանեալ ... ի նմանէ (ի Խոռայ) ծագեալ, ասէ, մեծ նախարարութիւն ազգին Խոռխոռունեաց"։

1 Մար Աբաս առ Խոր. էջ 70 — 71, եւ Դիոդ. Սիկեղ. Բ. Գլ. Ա. որ յայտնապէս իսկ թագաւոր կոչէ զիշխանն Հայոց, եւ ի Նինոսէ եւս Ասորեստանեաց թագաւորէ պատմէ անդէն ի թագաւորութեանն հաստատեալ, այլ ոչ եւեթ ընդհատ ի Մար Աբասայ, զի նա ասացեալ յառաջագոյն ասելս պարտել Արամայ ի Նինոսէ, իսկ նա պատմէ նախ պարտեալ եւ ապա մարգարտիւթեամբ հաստատեալ յաթոռ իւր։ Վասն այլակերպութեան անուանն զի Բարզանէս կոչէ զԱրամ՝ չէ ինչ զարմանալի այնոցիկ որ հմուտ իցեն սովորութեան մատենագրացն Յունաց յանուանել նոցա զիշխանս ազգացն օտարեւ կից խառն ի խուռն՝ Բարզանէս, Արտաբարզանէս եւ յայլ եւս նոյնպիսի անուանս։

2 Խոր. Ա. Գլ. ԺԵ։

3 Խոր. Ա. Գլ. Ի. էջ 98։

4 Խոր. Ա. Գլ. ԺԲ. էջ 63։

5 Խոր. Ա. Գլ. ԺԲ. էջ 65։

6 Անդ։

7 Խոր. Ա. Գլ. ԺԲ. էջ 66։

8 Խոր. Ա. Գլ. ԺԲ. էջ 65։

9 Տես Խոր. Ա. Գլ. ԺԲ. էջ 63։

10 Խոր. Ա. Գլ. ԺԲ. էջ 63 — 64։

11 Խոր. Ա. Գլ. ԺԲ. էջ 64։

# 41

*Հայաստան, նահանգ. Ասորեստանեայց պետութեան (—600)։*

ԶԱրամ պայազատէր Գեղեցիկն Արայ նորին որդի[1]. իբրեւ 12 ամ էր զի հաւատարիմ ամուսնութեանն զԹով կապեալ էր նա ընդ Նուարդայ, եւ երկոքին ուրախ լեալ յորդեակն իւրեանց ժառանգ 12ամենի՝ յԱրայն Արայեան[2]։ Պղտորել իսկ զայն միաբանութիւն կամէր դշխոյն Ասորեստանեայց Շամիրամ։ Իբրեւ չեղեւ նա ձեռնհաս ամենայն փառօք եւ մեծութեամբ տիկնութեան իւրոյ հրապուրել զԱրայն գեղեցիկ՝ խաղայ ի վերայ նորա ի մարտ պատերազմի. հասանեն բազմամբոխ սպառազէնք նորա ի դաշտավայրս հարաւակողման գետոյն Երասխայ, անկանի Արայ ի խառնուրդսն ի մէջ նահատակացն, սա պարտեալ ի զօրութենէ զինուց նորա եւ տիկինն աշխարհակալ՝ պարտեալ ամօթալից ի բարոյական զօրութենէ զգաստութեան նորա[3]։ Արդարեւ գեղեցիկ եւ անօսր յիշատակ ոչ ի Հայոց հնութիւնս միայն՝ այլ եւ յամենայն իսկ ազգացն հնախօսութիւնս, յորս միայն բարենշանն Վիրգինիա հռոմայեցի գտանի արժանի հարսնութեան Գեղեցիկն Արայի։

Իբրեւ մեկնել կամէր տիկինն՝ յետ զուր ջանալոյ զգիւտկին զոր կախեալ ունէր ի տանիս ապարանիցն՝ ածել ի շունչ եւ ի կենդանութիւն, կապեաց զնա այնուհետեւ գեղեցկութիւն հայ հողոյ[4]. շինէր իւր քաղաք ամարանոցի ի հարաւակողմանս երկրին Հայոց զհրաշակերտն Վան (զքաղաքն Շամիրամայ)[5]. եւ ամենեւին իսկ զաշխարհն ի կարգս մեծաց գրացի նահանգաց Ասորեստանեայց պետութեանն փոխէր՝ ի բազում տեղիս արձանս հաստատեալ եւ սեպաձեւն գրովք յիշատակս իւրոց աշխարհակալութեանցն գրեալ եւ քարինս սահմանաց ի տեղիս տեղիս կանգնեալ նովին գրով[6]։

Որպէս սովորութիւն իսկ Ասորեստանեայց պետութեանն էր յայլ նահանգս իւրեանց առնել՝ նոյնպէս եւ ի Հայոց աշխարհին կարգեալ ունէին կուսակալս անդստին ի բնակաց աշխարհին եւ ի տոհմակցաց, որ եւ, որպէս հաւանութեան թուի, որդի ի հօրէ զկուսակալութիւնն պայազատէին հարկանելով եւ հարկս[7]. լինէր եւ զօրաժողով կազմել ուրոյն զօր հայազունդ որոց զօրավար ինքնին կուսակալք աշխարհին էին, որք եւ հոյակապք եւ նշանաւորք երեւէին քաջութեամբ ի ճակատս. որպիսի ոք առաջին կուսակալն էր ազնուապաշտօնն Արայ Արայեան հայր հզօրն եւ հանճարեղն Անուշաւանայ՝ զոր նուիրեալ էր նորա ի սօսիսն

1 Խոր. Ա. Գլ. ԺԵ։
2 Խոր. Ա. Գլ. Ի։
3 Խոր. Ա. Գլ. ԺԵ։
4 Խոր. Ա. Գլ. ԺԶ. եր 81 — 82։
5 Տես վերագոյն, եր 91։
6 Խոր. Ա. Գլ. ԺԶ. ի վերջ կոյս։
7 Խոր. Ա. Գլ. Ի. եր 98։
8 Խոր. Ա. Գլ. Ի. եր 97։

Արամանեկայ յԱրմաւիր[3]. անկաւ նա ի յանդուգն պատերազմունսն Շամիրամայ ի խառնուրդս ուրեք ճակատուց[1]: — Նոյնպէս եւ առ Տեւտամաւ արքայիւ Ասորեստանեաց՝ յորժամ Տրովացւոց նշանաւոր պատերազմն ընդ Յունաց գրգռէր, առաքէ Զարմայր ի թիկունս օգնականութեան Պրիամայ արքայի Տրովացւոց. անդ ի քաջացն Յունաց առեալ վէրս ի կենաց փախճանէր. եւ մեք ընդ Խորենացւոյն կամիմք վերաբերել նմա յԱքիլլեայ եւ ոչ յայլմէ ումեքէ ի քաջացն[2]: Այսպիսի կուսակալք կացին առ Ասորեստանեաց տէրութեամբ ընդ ամենայն 29 ազգ յԱրայեանն Արայէ մինչեւ ցՊարոյր ուստր Սկայորդւոյ (600)[3]:

Թուէպէտ եւ անծանօթ իցեն յիշատակք գործոց սոցա՝ սակայն ըստ անուանցն իսկ գեղեցիկ ինչ յիշատակք են բուն հնութեան հայրենեաց մերոց, որ եւ բաւական են տալ պատճառս իրիք իրիք քննութեան. Արայ (Արայեան), Անուշաւան, Պարէտ, Արբակ, Զաւան, Փառնաս, Սուր, Հաւանակ, Վաշտակ, Հայկակ, Ամպակ, Առնակ, Շաւարշ, Նորայր, Վստակար (ըստ օրինակաց Յովհ. Կաթ. եւ Գրիգ. Մագիստրոսի՝ Վստամ, Կար՝ ուրոյն անուանք), Գոռակ, Հրանտ, Ընծայք, Գղակ, Հօրոյ, Զարմայր, Պերճ, Արբուն, Բազուկ, Հոյ, Յուսակ, Կայպակ, Սկայորդի: — Խնդիր իմն է թէ զիարդ հնար լինել իցէ այսց հարազատ Հայ հնչմանց անուանցս որ տան եւ որ վերագոյն եդան՝ աւանդել ի քաղդէական լեզու առանց ապականութեան եւ ապա անտի ի յոյն լեզու փոխել (ի ձեռն Մար Աբասայ), այնպէս զի կարիցէ Մովս. Խորենացի առանց խանգարման զբուն նախաւոր հնչումն հանել ի նոցանէ յետ այնչափ ժամանակաց ի վերայ անցանելոյ. ուստի թերեւս կարծիք իմն չփին զՄովսիսիւ թէ գուցէ յիւրոց ինչ կարծեաց ինքնակամն յօրինեաց ինչ ինչ յորս չկարէր ճշդիւ զբունն ընթեռնուլ: Սակայն չէք այնչափ տեղի կասկածանաց ընդ երկիւղած մատենագիրս, զի 1. սակաւ ինչ անուանք որպէս Կադմոս եւ Կարդոս[4] արդարեւ չթուին ամենեւին քաջ հայերէն անուանք, այլ առ չկարելոյ իմն գտանել՝ այնպէս թուի արկեալ նորա ի կիր որպէս ի յոյն մատենին Մար Աբասայ գտանէր: 2. Հարկ էր թէ բազումք յանուանց անտի որ մեզն այժմ անծանօթք են, յայնժամ ուրեմն ծանօթ էին՝ մանաւանդ յառաւել ինչ կամ ի զրոյցս, որպէս յայս ի Շարայի անուանէն է, զորոյ զառակն ածէ ի մէջ[5]. ի դէպ է թէ եւ յայլոց եւս բազմաց նոյնպիսի ինչ մանր ծանօթութիւնս ունէր պատմագիրն հայ՝ զորոց չհամարի միշտ հարկ տալ համառս:

Մանաւանդ զի բազումք եւս յանուանց անտի ի վերայ նախարարութեանց եւ նահապետութեանց ինչ մշտնջենաւորեալ կային, եւ կամ այլովք եւս ինչ գրովք էին յառաջագոյն ծանօթականս, որպէս ակնարկէ իսկ ինքն պատմագիրն յորժամ ասիցէ վասն մատենի իրիք թէ "ի բայց բանից եւ անուն իմն յազգաց Հայոց եւ նմանեաց կակաղէ"[6]: Ուստի ոչ եթէ ամենեւին ի կարծիս եւ ի կամս նորա ազատատան իրքն էին:

1 Խոր. Ա. Գլ. ԺԹ, Ի:
2 Սակայն ասէին փիլիթարեացիս հէքդ ի վերայ մահուն Թշուառութեան.
Զի յոյժ անտի Ենեայ մեծի անկանիս ....: Վիրգիլ. Ենէակ. Ժ:
3 Խոր. Ա. Գլ. ԺԹ. էջ 95—96:
4 Խոր. Ա. Գլ. Ժ. 53 եւ Գլ. ԺԵ. էջ 80:
5 Խոր. Ա. Գլ. ԺԲ. էջ 64:
6 Խոր. Ա. Գլ. ԻԲ. էջ 104:

## 42

### Թագաւորութիւն առ Մարօք (610 — 535):

Յետ կալոյ Մարաց յետս առ Գիտմէրա յամի 714 յԱսորեստանեաց՝ սակայն պատերազմ էր նոցա ընդ սոցա, յետոյ (նախ քան զ610) միաբանեցան եւ Պարոյր ընդ արքային Մարաց (Կիաքսարայ Ա.) ընդդէմ Ասորեստանեացն՝ ընկալեալ ի նմանէ խոստումն թագաւորելոյ Հայոց աշխարհին [1]: Այսպէս յետ յաղթութեանն եւ կործանելոյ զՆինուէ եւ եկաց առանձինն նոյն Հայոց թագաւորութիւն, ոչ ամենեւին առանց կախելոյ զանեայ երբեմն զՄարացն թագաւորութենէ [2], նա աւանիկ եւ հարկատու եւս նոցին երբեմն լինելոյ, որպէս յայն մատենագիրն (Քսենոփոն) պատմէ: — Յայսմ իշխանութեան զՊարոյր զառաջին թագաւոր պայազատեցին ընդ ամենայն 8 թագաւորք (Հրաչեայ, Փառնաւազ, Պաճոյճ, Կոռնակ, Փաւոս, Հայկակ Բ., Երուանդ Սակաւակեացն, Տիգրան): Առաջինն միայն ի սոցանէ եւ վերջին երեւին ի պատմութեան. Նա՝ իբրեւ օգնական եւ նիզակակից դաշնաւոր պետութեան Բաբելացւոցն առ մեծազօրն Նաբուքոդոնոսրաւ՝ որով եւ զՀրէական ազգն ծանեաւ, եւ ած փոքր ինչ զաղթականութիւն յաստուածապաշտ ժողովրդենէ անտի ի սահմանս Հայոց աշխարհին [3]: Իսկ վերջինն՝ թշնամութեամբ ընդ Բաբելացւոց պետութեանն՝ էր նիզակակից եւ գործակից ի պատերազմին որով այն պետութիւն կործանեցաւ ի Պարսից:

Գեղեցիկ է հաստատութիւն թագաւորութեան մերոյ առ Մարօք եւ լինելոյ ինքնօրէն՝ յերկուց բանից անտի գրոց սրբոց, յորոց մին գրեթէ ի սկիզբն եւ միւսն ի կատարած ժամանակի թագաւորութեանս Հայոց. այս ինքն փախուստ որդւոցն Սենեքերիմայ առ վերջին կուսակալօք՝ ի Հայս եւ ընդունելութիւնն [4], եւ կոչել մարգարէին զԱրարատեան թագաւորութիւնն ի մարտ պատերազմի ի վերայ Բաբելացւոցն [5]:

## 43

Սակայն բուն իսկ նշանաւոր գործք եւ արութիւնք Տիգրանայ էին ընդ Մարացն պետութեան: Որպէս ի համբառնալ պետութեանն Մարաց, նոյնպէս եւ ի նուաճել նոցա ընդ իշխանութեամբն Պարսից (յամի 535) ոչ առանց գործակցութեան Հայոց իրքն կատարեցան: Քսենոփոն (ըստ մարզպանեան պատմութեանն)

1 Խոր. Ա. Գլ. ԻԱ. էջ 100: Այսպէս ասէ թէ հնար է վերածանել զբանս խորենացւոյն ընդ սոյն ժամանակագրութեան:
2 Խոր. Ա. Գլ. ԻԲ: Քսեն. Կիւր.:
3 Խոր. Ա. ԻԲ. էջ 13—14:
4 Եսայ. ԼԷ. 38: Դ. Թագ. ԺԹ. 37: Տոբ. Ա. 24: Տես Մար Աբաս առ Խոր. Գիրք Ա. Գլ. ԻԴ. 105 — 106:
5 Երեմ. ԾԱ. 27: Տես Քսենոփ. ի կրթութեան Կիւր.:

միաբան եւ միագործ ընդ Միհրանս գործէին Կիւրոս եւ Տիգրան,
նմին իրի եւ արքայն Մարաց Աժդահակ ի ծփի եւ ի տագնապի
լեալ վասն միաբանութեանն նոցա ընդ միմեանս՝ տեսանէ ընդ
քունս երբեմն ի Հայոց աշխարհին ի ծայրս բարձրաբերձ ինչ լե-
րանց նստեալ կին բարձրանձն, ծաւի, կապուտակ, ծիրանազգեստ,
արկեալ զանձամբ շղաշատեռ երկնագոյն կապուտակ. եւ զի եր-
կուանք ասիպէին՝ յանկարծակի ծնանէր երիս ի դիւցազանց կա-
տարեալս հասակաւ. առաջինն ի նոցանէ զերանան ածեալ ի վե-
րայ առիւծու արշաւէր յարեւմուտս կոյս, եւ երկրորդն ի վերայ
ընձու՝ ի կողմն հիւսիսոյ, իսկ երրորդն զվիշապ ինչ անարի
(զԱժդահակ որ վիշապն թարգմանի) սանձեալ դիմեալ գայր ի
վերայ մարական տէրութեանն: — Այնուհետեւ խառնակեալ
տեսլեանն՝ այլ իմն կերպարանս ցուցանէր, զի այն որ ի վերայ վի-
շապին հեծեալ կայր՝ յանկարծակի թեւս առեալ հասանէր ի
վերայ տանեաց արքունեացն զարդարելոց գեղեցիկ եւ բազմագոյն
շատրուանօք, ուր մատուցանէր Աժդահակ զոհս եւ խունկս դիցն
երեւելոց անդէն ղջանչելատեսիլն տեսլեամբ: Եւ զի մօտ հասեալ
դիւցազինն՝ զդիսն որ զԱժդահակ պսակեցին՝ կամէր կործանել,
խառնակ ի մէջ անկանէր Աժդահակ, բայց յետ երգօք եւ այլով
եւս զինուք զմիմեանս խոցելոյ՝ ի պարտութիւն մատնեալ կործա-
նէր Աժդահակ: — Զարթուցեալ կոչէ տարաժամ զիշխանս
զխորհրդականսն, եւ այս բան թագաւորին հաստատի ի խորհրդո-
դեանն՝ խնամութեամբ բարեկամութիւն կեղծաւորեալ դաւաճա-
նել: Յետ առաքելոյ պատարագացն եւ լինելոյ պատգամաւորու-
թեանց յերկուց կողմանց՝ առաքէ բարենշան եւ խնամօտն օրի-
որդն Տիգրանուհի քոյր Տիգրանայ յարքունիս Մարաց. սակայն
չյիմանեալ խորագէտն պատուով տիկնութեանն Արեաց, եւ ոչ
պատրեալ ի հրապուրանացն՝ գրգռելոյ ի գժտութիւն ընդ Զա-
րուհեայ կնոջ եղբօր իւրոյ, փութապէս ի ձեռն մտերմաց ազդ
առնէր առ զննդութիւնն: Նմին իրի երբեմն հրաւիրեցաւ Տիգ-
րան յԱժդահակայ գալ ի տեղի ինչ՝ մէջոց սահմանաց երկոցունց
թագաւորութեանց՝ բարբառնոք որպէս թէ իրս ինչ մեծամեծս
բերան ի բերան իցէ խօսելոց, նորա առեալ զունդ բազմաձեռն
հասանէ ի կողմանս Մարաց աշխարհին. յերկարէր ձգէր պատե-
րազմն ժամս բազումս, մինչեւ զօրաւ իւրացն լինէր մահուամբն Աժ-
դահակայ՝ զոր ինքնին իսկ Տիգրան հարկանէր նիզակաւն թափ-
անցանց ընդ զրահն: — Եւ զառաջին կին նորա զԱնոյշ եւ զար-
քայորդիսն եւ զօրիորդսն թագաւորազունս խախտեալ բնակե-
ցուցանէր յարեւելից լերինն Մասեաց: Իսկ զՏիգրանուհի մեծա-
րէ աւանօք եւ դաստակերտիւք, կարգեալ զզաւակ նորա յազա-
տութիւն, ոստանիկ երբեմն զարմ եւ զաւակ արքունի[1]:

1 Խոր. Ա. Գլ. ԻԵ — ԼԱ.

Այսպէս զայն ձեւ Մար Աբաս, սխալեալ զհրամն յանուրջոց՝ որպէս երեւելի ինչ դէպք ի զրոյցս աւրեւելեայցն ի տեսլենէ երազոց տա-նուն յաճախ սկիզբն: Սակայն ոչ ամենայնիւ միաբանեն ընդ նմա Յա-նացն մատենագիրք, որք զնոյն զրոյցս այս ինքն զփոխել զգլխաւոր տէ-րութեանն ի Մարաց ի Պարսիկս՝ վաղ քան զնա հարին ի մատենի: — Ըստ Քսենոփոնեայ՝ սիրով խաղաղութեամբ իմն եւ արժանեօք քաջութեան Կիւրոսի այն փոփոխութիւն համարի դիպեալ. յայն սակս եւ ոչ իբրեւ նուաճեալ ինչ զՄարացն տէրութիւն պատմէ, այլ թէ եւ եկաց միաւորեալ իմն տէրութիւն ի Պարսից եւ ի Մարաց — ուստի չգտք ինչ մուտ միջամուխ Հայոց ի նոյն լինելոյ: Այլ ըստ Խորենացւոյ եւ Մար Աբասայ միաբանին հաւանութեան ոչ առանց պա-տերազմի այն վճարեցաւ, ուստի եւ բարձաւ իսկ եւ ջնջեցաւ Մարացն տէրութիւն փոխանակեալ Պարսիցն տէրութեամբ: Սակայն եւ առ սոսա ի պատմութեան անդ պատերազմին եւ ի բուն գործելիս գործոյն՝ բա-զում այլակերպութիւն մանաւանդ թէ հակառակութիւն երեւի: Բայց եւ այնպէս ի բովանդակութեան անդ եւ ի հիւսուածի պատմութեանն յընդհանրական իմն տեսլեանն՝ կայ նոյնութիւն մեծ եւ զարմանալի: Քանզի ըստ Խորենացւոյ՝ թողեալ զմանր մանր ինչ հանգամանս՝ բուն գլխաւոր դէպք գումարին ի մի միութիւն այսպէս:

«Երազ տեսանէ Աժդահակ վասն կործանման թագաւորութեան իւրոյ ի զաւակէ դստերն իւրոյ երեւելոյ ի տեսլեան անդ, եւ խռովի. հարցանէ խրատ ի բազմաց յորոց հարցանելն պարտ էր: Աժդահակ յանձն առնէ Հարպագայ ազգականի նորա նենգ գործել Կիւրոսի, նա խնայէ. այլ գտանի ինչ օրինակաւ (գրով եդեալ ի պորտ նապաստակի) զգացուցանէ Կիւրոսի յաշխարհն Պարսից զխորհուրդն սպանութեան՝ զոր խորհէր Աժդահակ ի վերայ Կիւրոսի, որ եւ գայ զօրօք. եւ յետ բախելոյ ընդ նմա ճակատու՝ առնէ զնա ձերբակալ, եւ առեալ առնէ ի գերութիւն ի Պարս»[1]:

Իսկ Մար Աբասայն այսպէս զայն դնէ. «Երազ տեսանէ Աժդա-հակ վասն կործանման թագաւորութեան իւրոյ ի ձեռն դիւցազինն ծնելոյ յանկարծ ի կնոջէ ուժեղէ ծիրանազգեստ ի տեսլեան երեւելոյ՝ եւ խռովի, եւ հարցանէ զխորհրդականս իւր[2]: Ջանայ Աժդահակ եւ յանձն առնէ Տիգրանուհւոյ գործել դաւ Տիգրանայ. զընդդացեալ խնայէ Տիգրանուհի յեղբայր իւր. այլ գաղտ զգացուցանէ Տիգրանայ զխոր դաւաճանութեանն զոր խորհէր Աժդահակ ի վերայ Տիգրանայ՝ որ եւ զօրօք խաղայ ի վերայ նորա, թէպէտ եւ զԱժդահակ սպանա-նէ ի ճակատուն, սակայն զկին նորա եւ զաղջկունս եւ զամենայն իսկ զտուն նորա առեալ խաղացուցանէ ի գերութեան»[3]:

«Սմին իրի եթէ չկամիցիմք ամենեւին մերժել զմատենագիրսս՝ եւ զընդհանրականագոյնսն ի բանից անտի նոցա արժանի համարիցիմք ժո-ղովել՝ մարթ է մանաւանդ թէ պարտ է սուղագոյն զյաջորդս հա-մարել: 1. Ոչ առանց զինուց այն փոփոխմունք աթոռոց դիպեցան. զի ըստ բնութեան իմն հաւանութեան է՝ թէ չէր հնար ազգի միոյ կամ տոհմի դիւրաւ զիւր գլխաւոր իշխանութիւնն առ այլում փոխարինել: 2. Ի պատերազմի անդ ոչ Կիւրոս առանձինն էր, այլ որպէս ի դէպ իսկ էր՝ դրացի ազգք յերկոսս կողմանս բաժանեալ էին, ոմանք ի Մա-

1 Տես զայնս Հերոդոտոսայ ի յառաջբանս. հայ թարգմանութեանն Քսենոփոնի, էջ 3 — 18:

2 Ա. Խոր. Ա. Գլ. ԻԶ:

3 Խոր. Ա. Գլ. ԻԵ — Լ:

րացն եւ ամենքը ի Պարսից, յորոց եւ Հայոցն որ անդէն գրոցի Մարացն էին՝ հասանէր գործ մեծ վճարել առ Տիգրանաւ ի հիւսիսոյ կողմանէ Մարաստանի, յորժամ ի հարաւոյ նորա յարձակեալ հասանէին Պարսիկք զօրավարութեամբն Կիւրոսի, որում ի դէպ էր լինել վաղ իսկ ի բանի ընդ մերում Տիգրանայ, որպէս արդեամբք իսկ ունի պատմութիւնն [1]։ Համառօտութիւն իմն ի սոյն մասանցանեն եւ երգք վիպասանացն [2] որոց յօրինիչք Գողթնացիքն են գրոցիք եւ սահմանադիրք Մարական գաղթականութեանն ածելոյ ի Տիգրանայ յետ պատերազմին ի տոհմէ անուն Աժդահակայ, զորս երգն վիշապազունս կոչէ։
3. Այլ յետ յաղթութեանն Պարսից միաբանելոց ընդ Հայոց ի վերայ Մարացն, որպէս բազում անգամ ի հինսն դիպէր, եւ որպէս գոյ իսկ յուսալ յազնուականութենէ բարուցն Կիւրոսի՝ զԿիաքսարէս մար փոխանակ Աժդահակայ մատոյց Կիւրոս ի բարձ թագաւորութեան Մարացն, կամ անդէն ի սկզբանն իսկ զվերադոյն իշխանութիւնն Պարսից սեպհականեալ՝ եւ կամ յետ մահուն Կիաքսարայ անց այն ի Պարսիկս. քանզի յայտնի իսկ միաբանեն գիրք ի սմին ընդ Քսենոփոնեայ դնել յառաջին անդ Բաբելոնի թագաւոր զոք մար [3] (զԴարեհ Մար այս ինքն զԿիաքսար) առընթեր Կիւրոսի։ — Թերեւս ողբերգք երգքին եւս հոյակապ պատմագիրք առնուն իւիք իւիք մասն աւանդութեան։

## 44

Ընդ Տիգրանաւ պատմի սահմանաց թագաւորութեանն առ ժամանակ մի մեծանալ աշխարհակալութեամբ՝ յարեւմուտս կոյս ի Գամիրս մինչեւ ի վերայ Յունացն եւս գաղթականաց բնակելոց յԻոնացւոց եւ ի Յոնիացւոց աշխարհին, յորոց եւ հարկս եւս պատմի առնուլ [4]։ Սոյնն լինէր ապաքէն մեծ իմն յառաջադիմութիւն քաղաքային հրահանգաց Հայոց աշխարհին։

Ի բնէ ժողովուրդք յոյժ էին Հայք ի վաճառականութիւն։ Երասխ գետով որ կապէր իմն յայնժամ ընդ Աքսոս գետոյ ի ձեռն Կասպիական ծովուն՝ լինէր նոցա առեւտուր հաղորդութեան ընդ Բակտրիացւոցն, նա եւ ընդ Հնդկաց եւս [5]. եւ ի հարաւոյ ընդ Եփրատ գետ [6] հասանէին ի Բաբելոն, եւ կամ կարաւանօք ընդ Կապադովկիա եւ ընդ Ասորիս առնէին ի Փիւնիկաստան [7] եւ բազում ինչ ի բերոց հայ հողոյ։ Ի համաշխարհական վաճառս Տիւրացւոցն էին հոյակապ՝ ձիք եւ ջորիք ասպատանացն Հայոց [8], որք այսր անդր սփռէին մանաւանդ ի դրացի աշխարհին Պաղեստինացւոց։ Ընդ այնր ոսկի եւ արծաթ եւ ականս պատուականս, անկուածս եւ գոյնս, ցորեան եւ եւղ եւ մեղր [9] բերէին յաշխարհն։ — Վաճառականութիւնն ածէր զնոսա ի հմտութիւն նաւարկութեան, այլ առաւել ի գետոցն նաւար-

1 Խոր. Ա. Գլ. ԻԶ. ի սկզբանն։
2 Խոր. Ա. Գլ. Լ. էջ 124։
3 Դան. Ե. 31։
4 Խոր. Ա. Գլ. ԻԴ։
5 Մարքուարդ ԺԱ. 509։ Պղին. Զ. 15։ Տես եւ Քսենոփ. Խրատ Կիւր. էջ 169—170, ուր ի մէջ գան Հայք երթեւ հմուտք ճանապարհաց ի Հնդիկս։
6 Հերոդ. Ա։
7 Եզեկիէլ ԻԷ. 14։
8 Եզեկ. ԻԷ. 14։ Մարքուար. ԺԱ. 558, 567։
9 Խոր. Ա. Գլ. ԻԴ։

կութիւն¹. տակաւին ի ժամանակս դժուարին էր ընդ Եւքսինոս ծով նաւարկել, այլ քաջ ընդ ծովն Կասպից։ — Նոյնպէս ներքին ինչ արուեստք կարեւորք կենաց, որպէս մշակութիւն եւ տատայնանկութիւն եւ յօրինուած նարօտուց² ոչ ի սակաւ ինչ կատարելութեան համարին։ — Ըստ նմին օրինակի գայթնութիւն ի ծաղկի իմն թուի, որ կազմեալ իսկ ընդ զինուորական պատուեստի է։ Յօրինուած զինուորութեան էր ի վերջ կոյս ժամանակս կարգեալ եւ յարդարեալ, փոխանակ միայն հետեւակազօրուն՝ հեծեալք եւս առընթեր յաւելան, եւ փոխանակ լոկոց շերտաւորացն՝ սուսերաւորք եւ տիգաւորք, փոխանակ թեթեւն վառելոց՝ ասպառազէնք եւս զրահապատք յերկաթոյ եւ վահանաւորք — իսկ աղեղնաւորքն եւ պարսաւորք՝ որք միայն ի հեռաստանէ մարտէին գործել՝ առ հասարակ զինուորական կրթութեամբ՝ դիպաղեղունք³։

## 45

Վասն բարւոք զհանգամանս հրահանգաց եւ զհամօրէն իսկ քաղաքային պատմութեան ամենայն ժամանակաց Հայոց աշխարհին իմանալոյ՝ ոչ սակաւ նպաստ լինիցի եթէ առնուցու ոք ի միտ զհամեմատութիւնն ընդ երկոսին ազգաց։ — 1. Թէպէտ եւ ուրոյն իմն եւ առանձինն ազգ էին Հայք՝ սակայն հարկ էր նոցա ըստ քաղաքականութեանն յայլ եւ այլ փոփոխմունս անդ ժամանակաց յարել իմն սերտիւ ի մի ի դրացի ազգացն։ Երեւելի կողմք ազգաց որ շուրջն էին զնոքօք, էին յարեւելից՝ մեծ ազգն Արեաց կամ Զանդիկ ազգ, ի հարաւոյ՝ Բաբելական – Ասորեստանեաց եւ Ասորւոցն ազգակից ցեղք։ Ընդ վերջնոցս իսկզբանէ իսկ իբրեւ հակառակութեամբ իմն էր Հայոցն ազգ եւ օտարացեալ իսկ ի նոցանէ։ Այլ ընդ Արեաց կապէր զնոսա բազում ինչ. նախ դիրն աշխարհագրական, զի բուն աշխարհն յորում ծագեցաւ եւ զարգացաւ ազգ Հայոցն եւ յորում եդ զամենայն յիշատակարանս իւր, այս ինքն կողմանք Երասխայ եւ Կուր գետոյ՝ ամենեւին ընդմտեալ իմն էին ի մէջ ցեղից Զանդիկ ազգին. հարկ էր սերտ իմն հաղորդութեան վաճառականութեան եւ այլոց մտաւոր տուրեւառիկ փոփոխմանց ընդ Բակտրիացւոցն լինել. իսկ երկրորդ գլխաւ-

1 Հերոդ. Ա. «Նաւք նոցա որ երթան ընդ գետ անդր ի Բաբելոն, բոլոր բոլորակք են եւ ի մորթոյ են, զորս Հայքն հօրինեն որ ի վերոյ քան զԱսորեստանեայս բնակեալ են, յօրինեալ կողմն ի ծառոցն կարկլոց եւ պատեն մորթովք... ոչ յետոյն կողմն նաւին յայտնի է եւ ոչ առաջին կողմն՝ սուր, այլ մանուանդ ի կերպարանս վահանի է բոլորակ շուրջանակի... Այսպէս նաւաց եւ մեծամեծք գոն եւ մանունք. ամենեւին իսկ մեծամեծքն առնեն բեռն իբրեւ 1000 տաղանդ, իւրաքանչիւր նաւ ի նաւացն ունի յինքեան էշ մի, որ մեծամեծքն են՝ աւելի եւս։ Իբրեւ ի Բաբելոն նաւավարքն հասանիցեն եւ զբեռնն թափիցեն՝ զփայտն եւ զյարդն ամենայն առն գնոց, եւ զմորթսն հանեալ յէշսն՝ վարեալ տանին ի կողմանս Հայոց աշխարհին. քանզի ի վեր կոյս գետոյն չմարթի նաւարկել վասն ուժգնութեանն, եւ յայսն սակս իսկ ոչ ի փայտից այլ ի մորթոց նաւսն գործեն»։

2 Խոր. Ա. Գլ. ԻԴ։

3 Անդ։

որն ցեղ Զանդիկ ազգին՝ զՄարացն առեալ, անգէն ոչ միայն դրացի էր, այլ եւ ընդմտեալ իմն միջամուխ յաշխարհն մեր ձգէին սահմանք նոցա, մանաւանդ ի բուն հին ժամանակն, թող զբազմամբոխ գաղթականութիւնս նոցա որ երբեք երբեք ի Հայոց աշխարհին սփռեցան։ Նոքին իսկ աշխարհագրական երեսք երկրին, գետոցն եւ դղեկաց եւ քաղաքաց անուանք յայտ առնեն զնախչացն սերտ հաղորդութենէ ընդ Արիական ազգին, այնպէս զի զնոյն երեսս ունին բուն նախաւոր կողմանք Հայաստան աշխարհին, զոր երեւելի նահանգք ցեղից նոցա ունէին. կենդրոն իմն նահանգաց նոցա է որպէս եւ մերոյն՝ Երասխ եւ Կուր անուն գետք. նահանգն Պարսկաստան՝ Երասխին եւ Կուր գետովք զրեթէ միւս եւս Հայաստան է, որպէս Հայաստան՝ միւս եւս Պարսկաստան. ունի եւ Մարաստան Կուր գետ, ունի եւ աշխարհն Բակտրիացւոց Երասխ գետ (Աքսոս), որոյ զոգցես յաջորդութիւն եւ աղխումն իմն էր ի հնումն մերն Երասխ, թող եւ զԵրասխն գետ Մոգդիացւոց նահանգին։ Ոչ դոյզն մտադրութեան արժանի է եւ նոյնութիւն քաղաքացն անուանց ի —կերտ, —շատ, —անդ, —ապատ եւ այլոց եւս նոյնպիսեաց որք առհասարակ յԱրեաց լեզու են։

2. Որպիսի ինչ մերձաւոր դրացութիւն երկրին է՝ նոյնպիսի եւ լեզուին ազգականութիւն. չիք այնպիսի պատեհ տեղի ի կարգել զհայերէն լեզու ի կարգի անդ լեզուացն՝ բայց գնել զնա առընթեր զանդիկ, պահլաւիկ, (հին) պարսիկ բարբառոց Արեաց լեզուին, որոց անհամար իմն անուանք են հասարակաց ընդ հայերէն լեզուի, եւ այն յանուանս եւս որ ամենեւին էական ի մարդկեղէն խօսս իցեն, որովք իբրեւ քոյրք իմն առ միմեանս երեւին։ — Նոյնպէս եւ ի կրօնսն եւ ի կարծիս որ զաստուածութենէ է։ Այնպէս իմն սովորութիւն լեալ է կարծել թէ ի բուն հին ժամանակն առանց պաշտամանց ինչ եւ աստուածխօսութեան լեալ իցեն Հայք, եւ յետուստ ուրեմն պաշտօն ինչ յունական դից գտեալ մուտ առ նոսա ըստ դիպաց իմն. այսպէս եւ Վաղարշակ ի սկզբան մտի թագաւորութեանն իւրոյ (յամի իբրեւ 190 յառաջ քան զՔր.) առանց մեհենից եւ պաշտամանց զազգն գտեալ՝ խառնակութեան իմն զիրսն համարի[1], այնու զի վաղ իսկ յառաջագոյն պաշտօն Արեաց ազգին որ ըստ բուն զրադաշտական օրէնացն էր՝ եղծեալ եւ խանգարեալ եւ խառնեալ պաշտամամբք նուաճելոց ազգացն էր, եւ այնպէս մոռացեալ։ Արդ այն յառաջագոյն պաշտօն զանդիկ վարդապետութեանն հանդերձ այլովք եւս տուրեւառիկ փոփոխմամբք՝ ի դէպ էր եւ մերոցն բուն հին նախնեաց հաղորդել, առ որս չիք տեսանել զքաբէլոնական կամ զԱսորւոցն պաշտամունս կամ պատկերս դից եւ այլ եւս նոյնպիսիս. անուանքս իսկ Արամազդ, հրեշտակ, դեւ, դժոխք[2],

1 Խոր. Ա. Գլ. Թ. էջ 48։ 2 Տես ի խոնարհ հատուած 74։

զհաղորդութիւնէ կրօնական ուսմանց զրադաշտական վարդապետութեանն յայտ առնեն՝ որ յետ երբայական վարդապետութեանն յստակագոյն քան զամենայն աստուածխօսութիւնս էր յայնժամ։ Նաև յետոյ ևս յորժամ Պարսիկք առ համաշխարհական պետութեամբն ընկալան ի յատակ պաշտօնն իւրեանց զգիւ յունական աստուածապաշտութեանն, նոյն անցք և առ մեզ անցին. Անահիտ և Տիւր անուանք (Արտեմեայ և Հերմեայ կամ Ապողոնի) հասարակաց Արեաց և Հայոց անուանք են՝ որովք դարձեալ միաբանական իմն հաղորդութիւն Հայոց ընդ Արեաց յայտ առնի։

3. Այլ առաւել ևս պայծառագոյն քաղաքային բախտ մեր յամենայն ընթացս պատմութեան ընդ նոցա բախտին կից ընթանայր. ընդ Մարաց և ընդ Պարթևաց եղեն նահանգ Աքեմենեանեաց պետութեան, ընդ Մարաց կործանեցին զԱքեմենեանցն պետութիւն, ընդ Պարթևաց և ընդ Մարաց քակեցին զսելեւկական-քաղդէական պետութիւնն, ընդ Պարթևաց անկան ընդ մակեդոնական պետութեամբ, զի եթէ ի նմին ժամանակի ընդ նոսա տապալեալ եղեն յիշխանութենէ պետութեանն նոցա, և եղեն թագաւորութիւնք երկու ընդ միով Պարթև-Արշակունի հարստութեամբ. որ մինչ քաղաքային յօժարութիւն էր ըստ զինուորական և ըստ ազնուականաց կարգի, էր և ի Հայոց աշխարհին՝ յորում համօրէն աշխարհն ի նախարարութիւնս էր բաժանեալ. մինչև առ Սասանեանքն թուի իմն և պատուար կայր Հայոց թագաւորութիւնն ի մէջ Հռոմէական և ի մէջ Արեացն տէրութեան, մերթ նոցա բառնն ազդեցութեանն զօրանալով և մերթ նոցա։ Մինչև ապա ուրեմն քրիստոնէութեամբն ամենևիմն բաժանեալ յԱրեացն աշխարհէ՝ ապրէր յետ մեծամեծ հալածանաց ի վտանգէ ընկղմելոյ ի մէջ բազմամբոխ ազգին Արեաց. ուստի և քրիստոնէութեանն շնորհ է այժմու գոյութիւն ազգիս։ —Նմին իրի յառաջ քան զքրիստոնէութիւն՝ ազգն զանձն մի իմն բոլոր ընդ այլ ցեղից արիական ազգին համարէր, և այնպէս իսկ էր յօրինուած քաղաքականութեան նորա. յայն սակս չմարթի և չպարտի իսկ ոք պահանջել ի հին ժամանակէ ազգիս յառաջ քան զքրիստոնէութիւն՝ ուրոյն առանձինն գոյութիւն, այլ հասարակաց Արեաց ազգին գոյութիւն՝ նորա ևս համարեալ էր. ուստի և ոչ գիր իսկ գոյր առանձինն, այլ պարսկական գիրն յաջորդէին և ի դաշանց գիրս արկանէր ի կիր[1]։

Յայսմ ամենայնէ յայտ է թէ ընդէր բազում անգամ յանուն Մարաց և Պարթևաց կամ Պարթևաց զմեզ կոչեցեն արտաքնոցն մատենագիրք, և երբեմն նոյնս իսկ ընդ նոսա համարեցին։ —Ամենայն իսկ ծառս՝ և զայն քաջ ցուցանէ թէ այս իսկ է կարգ և դիր հնոյ պատմութեանն Հայոց՝ ի պատմութեան ազգաց։

1 Խոր. Ա. Գլ. Գ. եւ 21։

# Է

## Հովիտ Եփրատայ եւ Տիգրիս գետոց — Բաբելոնիա եւ Ասորեստան.

## 2300 — 538։

## 46

Աղբիւրք. Բերոսոս (յամի իբրեւ 250 յառաջ քան զՔր.) քուրմ Բելայ որ ի յիշատակարանաց Ասորեստանեայց եւ Բաբելացւոց հան զպատմութիւնն՝ որոյ հատուածք եւեթ կան. Աբիւդենոս (նոյնպէս ժամանակաւ). Մար Աբաս (յամի իբրեւ 190 — 140 յառաջ քան զՔր.), Եւսեբի նոյնպէս ի նոցին աղբիւրաց որ բազում ինչ իւիք մնացեալ են գրոցն պատմութեան ի գիրս Թագաւորաց եւ Մնացորդաց եւ Մարգարէիցն։ — Ի Ցուցակ անուն Հերոդոտոս վասն Ասորեստանեայց պատմութեան յառաջին գիրսն. Կտեսիաս Կնիդացի (յամի իբրեւ 400 յառաջ քան զՔր.) որոյ հատուածոցք կան առ Դիոդորոսի Սիկիլիացւոյ՝ որ մնացեալն է ընդ նմա բազում իւիք հակառակ առաջնոցն։ — Օգնականք են՝ ի Գաղղիացւոց՝ սեպագրականն մեկնողք Փուլենի, Օփերտ, Լը Նորման, եւ մանաւանդ Հենկէն գերմանացի։

ԸՆԴԱՐՁԱԿ Բաբելացւոց (որ յառաջին գիրս հնոց կտակարանացն Սենաար կոչի[1], եւ ի վերջին գիրսն առաւել յաճախագոյն Երկիր Քաղդէացւոց[2]) է երկիր ինչ ի ստորին սահմանս Եփրատայ եւ Դկղաթ (Եփրատ եւ Տիգրիս) գետոց, որ ի հիւսիսոյ հասանէր ցՄարական Որմն՝ որ բաժանէր զնա ի Միջագետաց, ի հարաւոյ՝ ցզոգ ծովուն Պարսից, իսկ յարեւմտից եւ յարեւելից ունէր սահմանս զորս չմարթի ճշդիւ որոշել։ Հին բնակիչք նորա արուեստիւք եւ աշխատութեամբք այրեցուցին զերկիրն յողողելոյ գետոցն, որք յորդեալ մօրացուցանէին զնա, յորժամ ձիւնք բարձրաբերձ լերանց Հայոց աշխարհին հալէին. Ջրմղօք եւ այլովք եւս նոյնպիսեօք տարեալ զջուր գետոյն այր անդր՝ լցին զպակասութիւն անձրեւացն, որ դուն ուրեք իջանեն, որով եւ բուսանէին արմտիք բազում յոյժ, կենդրոս կամ գոնդ[3] եւ կնձիթ. բայց թզենի, ձիթենի եւ որթ չաճողէին[4]. այլ ընդ այնր առատ էին արմաւենիք, յորոց պտղոցն հանէին եւ ամբրաւօղի եւ մեղր։ — Չէր երկիրն առատաբեր ի փայտահարութիւն եւ ի քարահատութիւն, բայց ընդ այնր մատուցանէր բնութիւնն հող ինչ պատեհ ի նիւթ թրծուն աղիւսոյ՝ զորոց կէս յարեւու ցամաքեցուցանէին եւ զկէսս ի հնոցս, եւ լինէին պինդ անհնարին որպէս ցայժմ մնացորդքն ցուցանեն յետ այնչափ անչափ դարուց. առ նմին մատուցանէր երկիրն փոխանակ շաղախոյ՝ նաւթ ինչ առատ յոր խառնէին ի շամբից մօրուցն՝ եղեգունս եւ կամ կճիւն կամ տերեւս արմաւենեաց, որպէս ցայժմ համեմատ բանիցն Երոդոտոսի՝ յաւերական նշմարի։

Գլխաւոր քաղաք աշխարհին Բաբել կամ (ըստ Յունաց) Բաբիլոն, էր մի ի կարի իսկ հոյակապ եւ ի մեծամեծ քաղաքաց

1 Ծնն. ԺԴ. 1։

2 Երեմ. ԻԲ. 25. ԻԴ. 25. այլ եւ Ե. 1, 8, 25։ Եզեկ. ԺԲ. 13. ԻԳ. 15։

3 Panicum miliaceum.

4 Հերոդ. Ա։ Տես եւ Քսենոփ. Արշաւ. Կիւր. Բ։

ժամանակացն առաջնոց, պատկեր իմն Հռոմ քաղաքի[1]: Էր շինեալ չորեքկուսի. մի մի ի կողմանցն էր 120 վտաւան կամ երեք երկրագրական մղոն, որպէս զի լինել շուրջանակի 480 վտաւան կամ 12 երկրագրական մղոն: Բաց յապարանից եւ ի մեհենից կային եւ բուրաստանք եւ անտառք եւ մարգք յընդարձակութեան անդ, զորով պատ առեալ կային որմունք յօրինեալք ի թրծուն աղիւսոյ մածուցելոյ կպրով[2]. բարձրութիւն որմոցն էր 200 գիրկ եւ թանձրութիւն 30 գիրկ, եւ պահէին զնա 250 աշտարակք բարձրաբերձք, եւ էին նորա դրունք պղնձիք՝ 100[3]:

Բաժանէր քաղաքն ի հին Բաբելոն՝ յարեւմտեան եզերսն Եփրատ գետոյ, յորում կայր աշտարակագործ մեհեանն Բելայ կամ հնագոյն դղեակն արքունական, թերեւս նա է հին բուրգնն Բաբելոնի, որոյ աւերակք կան ցայժմ (Պիր Նիմրոդ անուն). յութերորդում եւ ի վերջին դստիկոնին էր սրբագոյն տեղի մեհենին յորում չգոյր պատկեր, այլ միայն սեղան մի ոսկի եւ գահոյք վասն դիցն: — Ի Նորն Բաբիլոն, որ յարեւելեան եզերսն Եփրատանայ շինեցաւ ի Նաբուքոդոնոսորայ վասն ամրանալոյ յերեսաց Մարացն, եւ ունէր հաղորդութիւն ընդ հնոյն վիմագործ կամրջաւն արկելովք ի վերայ Եփրատայ:

Դէմ ընդդէմ հնոյ արքունական դղեկին կանգնեալ կայր յարեւմտեան գետեզերի անդ արքունական դղեակն Նաբուքոդոնոսորայ[4] հանդերձ անուանելովք կախաղանաւոր բուրաստանօք, զոր վասն կնոջն իւրոյ հովասուն ի Մարաց աշխարհին անելոյ՝ կազմեաց Նաբուքոդոնոսոր[5]: — Ինչ ինչ ի շինուածոց անտի մարթի թէ ի Շամիրամայ իցէ կազմեալ (ուր Կտեսիաս առ Դիոդորի Բ. 7. զամենայն իսկ զքաղաքն ի նմանէ շինեալ պատմէ). բայց մեծ մասն նոցա յետոյ ուրեմն առ Նաբուքոդոնոսորաւ յօրինեցաւ ըստ Դանիելի[6]. որում միաբանէ եւ քաղդէական մատենագիրն Բերոսոս, երկրորդ շինիչ զնա եդեալ[7], այլ բուն առաջին հիմնարկութիւն նորա անդ ուրեմն ի սկզբան ժողովելոյ մարդկանն ի Սենաար եղեւ[8]:

## 47

Ի քաղաքէ աստի առ սկիզբն թագաւորութիւնն Բաբելացւոց, հնագոյն քան զամենայն թագաւորութիւնս, որպէս գիրք յայտ առնեն՝ յորժամ ասիցեն եթէ «Քուշ որդի Քամայ ծնաւ զՆեբրովթ, նա սկսաւ լինել որսորդ սկայ առաջի Տեառն»: Այս

1 Տես Բ. Պետր. Ե. 13:
2 Ծնն. ԺԱ. 3: Հերոդ. Ա. 179:
3 Տես Եսայ. ԽԵ. 2: Երեմ. ԾԱ. 12, 53, 58:
4 Բերոսոս եւ Դիոդոր. Բ. 8:
5 Բերոսոս առ Եւսեբ. քրոն. Ա. էջ. 68—70:
6 Դան. Դ. 7:
7 Տես առ Եւս. քրոն. Ա. էջ 68—96:
8 Ծնն. ԺԱ. 2—9:

Բայց շինիչ եւ տէր աշխարհին եղեւ Նեխրովթ կամ Նեբրովթ առաջնորդ տէրութեան Բաբելացւոցն. նա շինեաց զՆինուէ, զՌեհոբոթ քաղաք եւ զմեծ քաղաքն Ռեսէն [1]: — Արդարքինք ի մատենագրաց՝ Նինոսի համարին շինեալ զՆինուէ (իբրեւ Նին Նուէ՝ Նինոյ բնակութիւն), բայց թուի թէ շփոթեալ խառնակեն իմն զգործս Նեմրովթայ ընդ գործոյն Նինոսի: Այս գլխաւոր քաղաք Ասորեստանեայց աշխարհին կայր առ Դիգղաթ գետով շինեալ երկայնաձեւ չորեքկուսի՝ 4 մղոն յերկայնութիւն եւ 2½ ի լայնութիւն, եւ շուրջանակի 15 մղոն. պարիսպ նորա ի բարձրութիւն 100 ոտն եւ ի թանձրութիւն 10. եւ 1500 աշտարակք եւ մահարձանք պահէին զքաղաքն սկայագործ [2]: — Համօրէն Ասորեստան բաժանէր յարեւմտից կուսէ ի Միջագետաց Դիգղաթ գետով, իսկ ի հարաւոյ հատանէր ցերկիրն Բաբելոնացւոց, յարեւելից մինչեւ ցՄարս եւ ի հիւսիսոյ ձգէր ի սահմանակողմն Հայաստան աշխարհին: Հիւսիսային դաշտավայրք առ Տիգրիս գետով ոռոգանէին ի բազում խաղից եւ ի ջրմղաց, եւ յայն սակս իսկ պտղաբերք էին: — Որպէս երկիրք նոյնպէս եւ լեզու եւ ազգն իսկ Ասորեստանեայց կիսովն յարեւելեան ցեղէ էին, սակայն ի դրացի աշխարհէն ի Բաբելաստանէ եւ յԱսորւոց եւս ի վաղուց բազմապատիկ մասունք մտեալ էին ի նոսա:

Ժամանակագրութիւն Ասորեստանեացն կարօտ է քննութեան՝ զոր ի դէպ է համառօտիւ վճարել այսպէս:

1. Կտեսիաս (մօտ յամի 400) գրեաց պարսկական պատմութիւն ի 23 գիրս, յորոց առաջին 6 գիրք բովանդակեալ ունին զԱսորեստանեացն պատմութիւն. զհետ նորա չգտան բաց յոմանց՝ ամենայն յոյն եւ հռոմայեցի պատմագիրք, որպէս Դիոդորոս Սիկեղացի՝ յորմէ ունիմք զմեծ մասն հատակտորացն Կտեսեայ, Կաստոռ Հռոդացի (որ է աղբեւր եկեղեցական ժամանակագրացն Ափրիկանեայ, Եւսեբեայ՝ յորմէ թուի ինչ ինչ առեալ եւ Խորենացւոյ), Յուստինոս եւ այլք:

Արդ պատմէ Կտեսիաս այսպէս. Անդէն յամի 2176 յօրինեալ կազմեցին աշխարհակալութեամբ Նինոս եւ Շամիրամ զհամաշխարհական տէրութիւնն Ասորեստանեայց: — Զնինոս առաջնորդ պայր տէրութեան ոչ ի վերայ Բաբելացւոցն եւեթ, այլ եւ ի Հայոց, ի Մարաց եւ ի Բակտրիացւոց վերայ պատմէ տիրեալ, եւ թագաւորել նմա ամս 50: Նորին կին Շամիրամ՝ որ պատերազմաւէր մեօքն եւ իմաստութեամբ եհաս թագաւորութեանն, հնարեցաւ օգնականութեամբ մերձմանցն իւրոց մերժել զորդի իւր զՆինուաս (Զամէս) ի թագաւորութենէն, եւ ի վերայ աշխարհակալութեանց առնն իւրոյ, ասէ, հատանել պատերազմաւ մինչեւ ցկողմանս Եգիպտացւոց եւ Եթովպացւոց, եւ յետ այնորիկ յաճախագունդ զօրք խաղացեալ ի վերայ Հնդկաց աշխարհին՝ եւ անդ ի պարտութիւն մատնեալ. եւ յետ պարտութեանն՝ իւրոյոյն որդի Նինուաս զնա սպանանէր յետ թագաւորելոյ նորա ամս 24: Այնուհետեւ մի ըստ միոջէ բազում թագաւորք դատարկք եւ թուլամորթք զմիմեանս պայազատեն ամս 1300 (որոց թիւ համարոյ եւ անուանք

1 Ծնն. Ժ. 11 — 12: Միքիա Ե. 6: 2 Տես Յովնան Գ. 3. Դ. 11:

պլատագունակ ի բաղձից պատմչին) մինչեւ ցՍարդանապաղոս (կամ Թօնոս Կոնկոզերոս)։ Յարեան ի վերայ սորա Վարբակէս կուսակալ Մարաց եւ Բեղեսիս քուրմ կամ կուսակալ Բաբելացւոց, խաղացին զօրօք ի վերայ քաղաքին Նինուէացւոց. Թէպէտ եւ հարան եւս երկիցս եւ խորհէին յետս կալ, այլ յետ օգնականութեան ուստեք հասանելոյ, պաշարեցին միւսանգամ զքաղաքն։ Իսկ եւ յերրորդ ամի պաշարմանն յորդեալ գետն Դկղաթ, յարձակեալ մտին ի քաղաքն. բայց արքայ Սարդանապաղոս արկ իւրովի հուր յարքունիսն եւ այրեցաւ հանդերձ կանամբքն եւ գանձուքն։ Այսպէս ըստ Կտեսեայ եւ ըստ այնոցիկ որ զհետն չոքան նորա, յամի 876 (= 2176 — 1300) Ասորեստան հանդերձ գլխաւոր քաղաքաւն Նինուէիւ վկանդեալ ի Մարաց՝ լինի աներեւոյթ ի պատմութենէ։

2. Բայց սակայն յորժամ Կտեսիան անհետ բարձեալ ի միջոյ զԱսորեստանեայց պետութիւնն առնէ, անդէն ի նմին ժամանակի ի բուն ծաղկի եւ ի բարձրութեան զնա ցուցանէ պատմութիւն գրոցն սրբոց՝ յորս չգտանեն ամենեւին ինչ նշմարանք այսպիսի համաշխարհական տէրութեան յայսչափ հին ժամանակի, եւ այսպէս կանուխ կործանման նորա։ Զի ըստ գրոցն՝ Ասորեստանեացն թագաւորութիւն, որոյ հիմնիչ փոխանակ Նինոսի՝ Նեմրովթ է, հաստատեցաւ ի Բաբիլոնէ, ունէր քաղաքս բազումս առ վերնակողմամբքն Տիգրիս եւ Եփրատ գետոց, յորոց մեան մի երեւելին միւսանգամ Նինուէն եւ այլք յԾննդոց գլուխ[1]. Եւ ամենայն պատմութիւնք Կտեսեայ որ վասն առաւել քան զհազարամեան ժամանակ տիրելոյ Ասորեստանեայց ի վերայ Պաղեստինացւոց, Ասորւոց եւ փիւնիկեցւոց են՝ եղծանին ի ճշդագոյն եւ ի ժամանակակից պատմութեանց եւ ակնարկութեանց՝ որ զայնց աշխարհաց ի գիրս սուրբս կան։

Նոյնպէս եւ երեւելիք յարտաքին պատմագրացն. Հերոդոտոս ոչ այնպէս վաղ բառնայ զԱսորեստանեայց տէրութիւն ի միջոյ, եւ ոչ այնպէս կանխագոյն տարածանէ զիշխանութիւն նոցա ի վերայ աշխարհացն այնոցիկ որ յիշեցան. այլ յամէ 1234 ց714՝ ամս 520 տայ իշխել նոցա յայսմ կողմանէ մինչեւ ցփոքր Ասիա, եւ յայնմ կողմանէ մինչեւ ցսահման մի հիւսիսային եւ արեւելեան Ասիոյ[2]։ Այլ առաւել ճշգագոյնս բաբելացի պատմագիրն Բերոսոս. ըստ սմա՝ թագաւորեցին թագաւորք Ասորեստանեացն ի վերայ Բաբելոնի ամս 526, յամէ 1296 մինչեւ ցամն 770 նախ քան զՔրիստոս առանց ընդհատ ժամանակի։ Թէպէտ եւ ջանացին յայնմ հետէ Բաբելացիք խզել զլուծն Ասորեստանեայց եւ յաջողեցաւ իսկ երբեմն, սակայն նուաճեցան միւսանգամ[3], եւ Ասորեստանեայք առ Սենեքերիմոսիւ եւ Ասորդանիոսիւ (որ ծանօթ իսկ են եբրայական պատմութեանն) յընթացս Ցերրորդ դարուն հասին աշխարհակալութեամբ ի փիւնիկէ, ի Հրէաստան եւ յԵգիպտոս[4]։ Այսպէս եւ որ ի նոցին աղբիւրաց զպատմութիւնն ժողովեաց՝ մերն Մար Աբաս՝ զկործանումն Ասորեստանեացն պետութեան տայ ուրեմն առ հարքն Նաբուքոդոնոսորայ դնէ (յամի իբրեւ 610 նախ քան զՔր.)[5] այնպէս զի յետ լինելոյ Պարուրայ օգնական իշխանին Մարաց ի կործանումն տէրութեանն այնորիկ՝ յաջորդն Պարուրայ՝ Հրաչեայ պատահէ առ Նաբուքոդոնոսորաւ[6]։ Ուստի եւ ոչ առ սոսա կան նշմարանք համ-

1 Ծնն. Ժ. 11։ Միք. Ե. 5։ Յովն. Գ.։
2 Հերոդ. Ա. 95. տես եւ 72, 102։
3 Անդ։
4 Անդ։
5 Խոր. Ա. Գլ. ԻԱ։
6 Խոր. Ա. Գլ. ԻԲ. «Հրաչեայ... առ

աշխարհական տէրութեանն կանուխ եւ որոց Նորին զՀեռ ջնջան, եւ կործանման տէրութեանն Ասորեստանեաց յառաջ քան զծագելն ժամանակն զոր ընծայեն Նմին գիրք․ այլ Նմին Հակառակ որպէս ի գիրս՝ Նոյնպէս եւ առ սոսա պատմի ընդդիմակացն այնր ամենայնի։

Այն սակս Թողեալ զկանոնեան պատմութիւնն եւ զասորական Հայթայթանս մերջին մատենագրաց միաբանելոյ զնա ընդ գրոց պատմութեան, այս ինքն՝ գնելով երկուս Ասորեստանեաց տէրութիւնս, մի Հին տէրութիւն Ասորեստանեաց եւ մի Նոր (զորմէ 6 գիրք Ասորեստանեաց կատարեալն պատմութեան՝ զոր ունի Կտեսիաս, ոչ ինչ ամենեւին յիշատակեն), պարտ է Հայել Հաստատուն՝ յառաջնորդութիւն գրոց սրբոց՝ ի կիր արկեալ յամբողջութիւն՝ եւ զպատմութիւնս պատմագրացն զորս յիշեցաք։

1. Երաւքինք ի պատմագրաց զՆինոս եւ զՇամիրամ դնեն Հաստիչս այսր պետութեան․ այլ Նորագոյնք ի մատենագրաց զերկոսին եւս Համարին առասպելական ինչ գիւտս անուանց, զՆինոս փոխանակ քրմական իշխանութեան ըստ Բելեան պաշտաման, եւ զՇամիրամ փոխանակ քրմական իշխանութեան Միհրական պաշտաման [1], եւ Նինուաս իցէ առաջին աշխարհական Թագաւոր՝ ի քրմացն իշխանութենէ զերծեալ։ Սակայն Թէպէտ զայնչափ կանխութիւն ժամանակի (2000 նախ քան զՔր․) եւ զայնչափ ընդարձակ աշխարհակալութիւնս (յԵգիպտացւոց ցՀնդիկս) որ զնոցանէ պատմի, չիցէ պարտ ամենայնիւ ճշմարիտ Համարել, բայց Թուի Թէ կայ դրեԹէ անընդդիմակաց իմն Հաստատութիւն վասն գոյութեան անձինն Շամիրամայ, եւ չափաւոր ինչ աշխարհակալութեան եւ մեծագործ ինչ շինութեանց [2] որոց յիշատակ Հանդերձ անուամբն Շամիրամայ ի գիրս [3] եւ ի բերանս բնակչաց կողմանցն այնոցիկ ցայսօր այնչափ յաճախութեամբ յածի, որչափ անուն եւ յիշատակ Աղեքսանդրի (Իսքենտէր), Թող զգրոյցս ազգին մերոյ ի բուն Հին ժամանակս [4]։

Սակայն այս առանց իրիք Հակառակութեան է Թէ մօտ ուրեմն յամս 1300 յառաջ քան զՔր․ իշխանք կամ Թագաւորք Ասորեստանեացն ընդարձակեցին զսաՀմանս տէրութեան իւրեանց ի Հարաւոյ անդր իսկ ի վերայ տէրութեան Բաբելոնա-

ռվաւ, ասեն, կեցեալ զՆաբուգոդոնոսոր որդւոյ Բաբելոնացւոց„։ Ասենն բան Խորենացւոյն առ՝ զասելն Մար Աբասայ նշանակէ, որպէս յայտ ի բաղդատ ընդէմ Համեմատութենէ է։

1 Ըստ Կուներայ առ Դիոդ․ Սիկ․ Բ․ 20․ պատմի զՇամիրամայ Թէ պաշտէին զնա Ասորիքն իբրեւ Դերկետոյ դուստր, առասպելաբանելով եւս զնմանէ Թէ յաղաւնի փոխեցաւ։

2 Տես առ Ռիտտերայ Տեղ․ Զ․ Մասն Ա․ եղ 239, ուր դասէին առեալ շինութիւնք նորա ի սաՀմանակողմանց Բակտրեայ՝ ի Հերատ, ի Համատան (յԵկբատանա), եւ անտի կարգաւ յամենայն իսկ Պարսկաւ (Քուրդիստան) ի Հինն Ասորեստանի, մին-չեւ այսր իսկ ցնորս Բաբելոնեաց ի կողմանս Հայոց աշխարհին։

3 Մար Աբաս եւ Խորենացի առեալ․ Տես եւ առ Մովսէս․ ծԶ․ 787։

4 Առ պատմիչս՝ եւ աշխարհիս մերոյ առասպելք զպատմութիւն Ասորւոց (զՄար Աբաս) արդարացուցանեն․ առ ուրեմն զմահն առեալ Շամիրամայ եւ զՀեռանալ փախուցեալ եւ զպատերազմ եւ զկռիւ Հոյն եւ զորդւոց, այլ եւ ի մօտ Համարել ասեն սուրբ հաւատոց, եւ զյուսալ ի ծով, եւ բան ի Նմանէ՝ Ուլունք Շամիրամայ ի ծով։ Այլ Թէ ասացեալ առաջել՝ եւ Շամիրամ քար՝ առաջին բան զնխարէ„։ Խոր․ Դիրք Ա․ Գլ․ ծԶ․ եղ 89 — 90։

ցւոց որ մնայրն լեալ էր նոցա, այնպէս զի մինչեւ ցկէս 8երորդ դարու ի ժամանակագիր պատմութիւնս Բաբելոնացւոցն 45 թագաւորք յիշատակին կացուցեալք յԱսորեստանեայց ի վերայ Բաբելացւոցն, որոց թագաւորութեանն ժամանակք գումարին ի միասին միանգամայն 526 ամք: Ի հիւսիսոյ եւ յարեւելից էր նահանգ՝ աշխարհն Հայոց եւ Մարաց՝ ուր (ըստ Հերոդոտոսի) մինչեւ ցկատարած կոյս 8երորդ դարու իբրեւ 520 ամ տիրեցին: Իսկ ի հիւսիսային արեւմտեան կողմանց անդր իսկ ի ներքս ի կողմանս Փոքուն Ասիոյ մտին միջամուխ, որպէս առանց հակառակութեան ցուցանեն յիշատակարանք Շամիրամայ, զորոց պատմեն անդ լեալ հինքն, եւ կարգել հարստութեան իրիք յազգէ Ասորեստանեայցն ի թագաւորութեան Լիւդացւոց[1], եւ նշանք յաղթութեանցն յորինեալք ի թագաւորացն Ասորեստանեայց որ ի նորագոյն ժամանակս միւսանգամ յայտնեալ գտան (ըստ նոր քննութեանցն Լեպսիուսի), յորս են եւ յիշատակարանքն ի Յոնիացւոց աշխարհին զորս Հերոդոտոս[2] Սեսոստրի ընծայէր: Մինչեւ ցկէս 8երորդ դարուն չէին առաւելին լեալ միջամուխ զէնք եւ ասպատակէնք նոցա ի ծովեզերս ծովուն Միջնոյ: Ընդէն զամէն իսկ ժամանակաւ խնամածք ի գրոցն պատմութեանէ, թէ նախ զհնոր մանր թագաւորութիւնս Ասորւոցն որ ցայնժամ ինքնօրէնք էին՝ հնազանդեցուցին[3]. ապա անդր եւս անցեալ ի վերայ աւերակաց երկուց եւս երբայական թագաւորութեանցն՝ ջանային զմեծագանձ վաճառաշահ քաղաքսն որ ի վերայ ծովեզերեայց ծովուն Միջնոյ էին, միանգամայն հանդերձ Եգիպտոսիւ եւ ծովեզերեայ նահանգօք Փոքուն Ասիոյ առնուլ ի բուռն եւ ըմբռնել զհամաշխարհական վաճառականութիւնն: Ինքեանք իսկ Իսրայելացիք էին որ զայս խարազան խրատու ազգաց առաջակողման Ասիացւոցն զգացեալ ածին առ իրեանց կորուստ եւ յապականութիւն տուապձանեաց տէրութեանցն: Առաջին պատճառք աշխարհակալութեանն զինելոյ Ասորեստանեայց յառաջակողմն Ասիոյ գժտութիւնքն էին, զոր թագաւորքն հիւսիսային թագաւորութեանն Հրէից՝ Մանայէմ (771—761) առնէր ընդ արանց ապստամբելոց ի նմանէ յայնկոյս Յորդանանու: Իբրեւ եւս թէ չէ առաւել հնազանդել զնոսա, կոչեաց զարքայն Ասորեստանեայց զՓուղայ, նա եկն եւ զնոսա մի ապստամբելոցն ան տարաւ վտարանդիս[4], բայց եւ ի վերայ ազգացն Իսրայելացւոց արկ հարկս ծառայից[5]: Սակայն երկրորդն եւս կողմանքն զարձեալ առանց խռովելոյ ի զինուց անտի եւ ի բանից մարգարէիցն՝ մնացին այնուհետեւ հանդերձ Ասորեստանեօք եւ զԵգիպտացիս ձգել ի գժտութիւնս խաբեաց, մի կողմն զասոսա եւ

1 Հերոդ. Ա. 7:
2 Հերոդ. Բ. 106:
3 Ամով Զ. 2: Եսայ. Ժ. 8... ԼԶ.
12... ԼԷ. 11...:
4 Ա. Մնաց. Ե. 26:
5 Դ. Թագ. ԺԵ. 19. 20: Ովսէէ Ը. 10:

ի Բաբելոնիա իշխէր կուսակալ մի յԱսորեստանեայց, Մարաստան եւ Հայաստան եւ արուարձանեայ նահանգք վաղ իսկ հնազանդէին նոցա[1], եւ անդէնայն իսկ միջնաշխարհն Պաղեստինացւոց հանդերձ մերձաւոր կողմանքն Արաբացւոց եւ ծովեզերեայք Փիւնիկեցւոց եւ Փղշտացւոց, ուստի վաճառաշահ նահանգք հին համաշխարհական վաճառականութեանն էին ընդ ձեռամբ նոցա:

3. Յետ բազմամեան պատերազմաց զԱսորւոց եւ զՊաղեստինացւոց թագաւորութեանցն զկէս հնազանդելոյ եւ ավերակացուցանելոյ, եւ զկէսն անձնուէին իսկ ընծելոյ, այնուհետեւ առընթեր հասեալ կային մօտ զօրք Ասորեստանեայցն՝ ի հին թագաւորութիւն անդր Փարաւոնեանցն. արդ վասն ի վերջին կէտ աշխատութեանց իւրեանց հասանելոյ՝ հարկ էր տալ եւ զվերջին պատերազմն ընդ հզօր նախանձորդին իւրեանց, որ վաղ իսկ զնոյն խորհուրդս աշխարհակալութեան ունէր ի վերայ նահանգացն որ ի միջի են Միջին ծովուն եւ Եփրատ գետոյ: Գրգռեցաւ պատերազմն յարժամ Եգիպտացիք արարին դաշնաւորութիւն ընդ Եզեկիայ արքայի Յուդայ որ կացեալ էր յետս յԱսորեստանեայցն[2], եւ այնպէս որպէս գիրք միաբան ի ամին ընդ Եգիպտոսեայ[3] պատմեն՝ զայլն երեւէին առ Սենեքերիմաւ յաձախագունդ բազմամբոխ բանակք որք ընդ Ռնապատն Արաբիա անցեալ[4] հասանէին ի հիւսիսակողմն Յուդայաստանի, անտի արձակէին գունդ մի պաշարել զԵրուսաղէմ[5], ուր բուն զօրն դիմեալ երթայր յաշխարհն Եգիպտացւոց: Դժնդակ իմն է կատարած պատերազմին. զօրքն Սենեքերիմայ որպէս պատմեալ էր Եսայի մարգարէ, կոտորեցան ի ժանտէ[6], եւ Թեւացարդ զօրացն փախստեայց ի հալածեալ անտի զօրաց հզօր թագաւորին Եգիպտացւոց Թարաքայ այրէր կորակոր[7]: Յետ չաջողութեան արշաւանիս (715) խորտակեցաւ զօրութիւն Ասորեստանեայցն: Ոչ միայն նահանգքն որ առ Միջնով ծովուն էին՝ ելին ի ձեռաց նոցա, այլ՝ եւ այլ եւս թագաւորութիւնք խառնեալք ի տէրութիւն նոցա գտեալ պատրաստ ի ժամանակին յայնմիկ՝ ջանացան ելանել միանգամ յազատութիւն որ եւ յաջողեցաւ Մարացն առ Դէիոկեաւ (714), ուր Բաբելոնացիքն ապստամբել ապստամբեցին, սակայն միւսանգամ նուաճեցան[8]:

4. Սակայն Ասորեստանեայք եւ յետ այսց ձախողանաց, քանզի տակաւին հզօրք էին՝ չկարէին թողուլ զխորհուրդ աշխարհակալութեանն զոր յայնչափ ժամանակս յաջողութեամբ կատարեցին: Յայն սակս նախ նուաճեցան ծովեզերեայք Փիւնիկեցւոց աշխարհին եւ

1 Դ. Թագ. ԺԷ. 6. ԺԸ. 11: Եսայ. [illegible]. ԻԱ. 13.... ԻԲ. 6:
2 Դ. Թագ. ԺԸ. 7, 21:
3 Հերոդ. Բ. 141:
4 Համեմատե ընդ Եսայեայ՝ անդ —
5 Դ. Թագ. ԺԸ. 14....
6 Եսայ. Ժ. 16... ԻԸ. 4... ԼԷ. 3—36
7 Եսայ ԼԷ. 7, 9, 36....: Սաղմ. ՀԵ. 4....
8 Բերոսոս: Տես Դ. Թագ. Ի. 12....

ւերազմն ընդ Մարաց եւ Պարսից, եւ Ներիգլիսար (559—555) նորին քեռայր որ սպանն իսկ զնա՝ անկանէր ի ճակատուն, եւ Լաբոսոարքադ (կամ Լաբերսորաք) նորին որդի ապաժամանն եւ անարգորդոյն 9 ամսեայ սպանեալ (555), Նաբոնիդոս կամ Նաբոնե-դոս որդի Եւիլմարոդաքայ եւ կնոջ նորա Նիտոկրիսայ վերջին թագաւոր Բաբելացւոց առնոյր այնու հետեւ զթագաւորութիւնն (555—538)[1]. զսա գիրք՝ Բաղդասար կամ Բեղշասար անուանեն.

Սա վարէր յառաջ զպատերազմն ընդ Մարաց եւ Պարսից. բայց Կիւրոս յաղթեալ նմա հան զաւառս բազումս ի նմանէ: Յայնժամ վարձեաց նա զօր բազում անհնարին, ի ձեռն եւ դաշ-նաւորին իւրում Կրեսոսայ: Անց Կրեսոս ընդ Ալիւս ընդ սահ-մանս թագաւորութեան իւրոյ, դիմեաց հաս ասպատակաւ ի Գա-միրս: Բայց Կիւրոս եհար զնա զօրօքն որ սակաւաւոր էր քան զնորայն եւ ստիպեաց դառնալ այսրէն ի Լիւդաստան. անդ միւ-սանգամ ի մեծի պատերազմի ընդ միմեանս բախեցին, բայց Կիւ-րոսի յաղթեալ Կրեսոսի առ զգլուխ քաղաքաց նորա զՍարդս եւ զնա կալաւ ձերբակալ (իբրեւ 550): Յետ այսր յաղթութեան պատերազմի նուաճեցաւ ընդ ձեռամբ Մարաց եւ Պարսից համօ-րէն Փոքրն Ասիա, յԵգէական ծովէ մինչեւ ցԵփրատ գետ: Յետոյ հնազանդեցոյց Կիւրոս եւ զԱսորիս եւ զԱրաբիա:

Ապա աւելի եհաս կարգաւ միւսն ի վերայ թագաւորու-թեանն Քաղդէացւոց: Քանզի Կիւրոս յետ պարտելոյ զԲաղ-դասար առ Բաբելոն քաղաքաւ եւ Բաղդասարայ ամփոփելոյ ի ներքս ի քաղաքն, ակսաւ պաշարել զԲաբելոն (յամի իբրեւ 540): Ընդհանուրն իսկ թուէր առնուլ զայնպիսի քաղաք որոյ այնպէս թանձր պարիսպք էին եւ բարձրաբերձ աշտարակք եւ խրամ շուր-ջանակի խոր յոյժ, որոյ պաշար եւս գոյր 20 ամաց եւ պաշտպա-նէր նմա ամենայն զօրն Քաղդէացւոց: Եւ արդեամբք իսկ դեգե-րեաց եկաց Կիւրոս առն երկուս առաջի քաղաքին, բայց ոչ դա-տարկութեամբ. զի մինչ դեռ պաշարեալքն ի ներքուստ արտաքս ծաղր առնէին զնա եւ զզօրս նորա, սորա ձեռն ի գործ արկեալ վատատակէին ի կորուստ նոցա:

Հրաման ետ Կիւրոս փորել ջրանցս լայն եւ խոր, զի զԵփրատա-նի որ ընդ մէջ Բաբելոնի անցանէ՝ տարցի ի ծովակ ինչ որ անդ աւելի մօտ կայր, զի այնպէս ցամաքեցուցեալ զխոր գետոյն՝ ընդ այն մտանիցէ ի Բաբելոն: Եւ սահմանեաց օր մի յորում ամ ըստ ամէ ի գիշերի առնէին տօն Բաբելացիքն շուայտութեամբ եւ ար-բեցութեամբ ըստ միաբանն պատմութեան գրոց սրբոց[2] եւ ար-տաքին մատենագրաց[3]:

1 Տես վասն սոցա ամենեցուն զԲերո-սոս առ Եւս. Քրոն. Ա. էջ 71 — 73. եւ զՔսենոփ. Խրատ. Կիւր:

2 Դան. Ե:

3 Քսենոփ. Խրատ. Կիւր:

Ի նմին գիշերի ետ բանալ Կիւրոս զջրադարձան. յերկոցունց կողմանց դիմեցին ի ներքս Պարսիկք եւ Մարք ի Բաբելոն եւ գետոյ ուղիղ ի վերայ տանն արքունի։ Գիշերապահքն արբեալք կոտորեցան առաջի դրանն, խշշիւնն եւ աղմուկն ստիպեցին բանալ զդրունսն. յայնժամ յարձակեալ ի վերայ թագաւորին սպանին զնա եւ զայնոսիկ որ ընդ նմա էին։ Այսպէս առաւ Բաբելոն ընդ միաբան պատմութեանն գրոց սրբոց եւ արտաքին մատենագրաց (538)։

Ոչ միայն առումն Բաբելոնի եղեւ դատաստան ինչ Աստուծոյ հարիւրաւոր ամօք կանխագոյն պատմեցաւ[1], այլ եւ մի մի եւս դէպք առանձին կան նշանակեալ ի մարգարէութիւնսն[2]։ Քանզի յետ խրատելոյ յԱստուծոյ ամենայն ազգաց՝ Բաբելոն եւս պիտոհետեւ ընդունելոց էր հատուցումն[3]։ Իսկ ամենեւին քայքայումն քաղաքին առ սակաւ սակաւ եղ ի գլուխ. կոյտ կոյտ աւերակաց նորա առ Եփրատ գետով մօտ ի փոքր քաղաքիկն Հիլլա՝ համարին լեալ նշխարանք ամբարտաւան քաղաքին Բաբելացւոց[4]։

## Ը

### Առաջակողմն Ասիոյ. (2200—550)։

### 50

Աղբիւր։ Հերոդոտոս Ա, Բ։ Հոմերոս՝ Իլիական, ամենայն ըստ տառադարձելոց։ Ստրաբոն Ժ, ԺԲ—ԺԴ։ Պաւսանիաս Մեղա Ա։

ԱՌԱՋԱԿՈՂՄՆ Ասիոյ կամ Փոքր Ասիա երկիր ինչ իբրեւ 12,000 մղոն՝ կայ յարեւելից առ Եփրատ գետով (առ Ալիւս գետով), իսկ յայլ եւս կողմանց պատէ զնա ծով (Եգէականն եւ Միջերկրական), եւ հատեալ անցանեն ընդ նա լերինքն Տաւրոսի։ Ի կողման արեւմտից կան նահանգքն Միւսիա, Լիւդիա, Կարիա. ի կողմանս հարաւոյ՝ Լիւկիա, Պամփիլիա եւ Կիլիկիա հանդերձ Իսաւրիաւ. ի հիւսիսակողման՝ Բիւթանիա, Պափղագոնիա, Պոնտոս. իսկ ի միջավայրի՝ Փռիւգիա (հանդերձ Պիսիդեաւ եւ Լիկաւոնեաւ), Գաղատիա, Կապադովկիա (հայերէն Գամիրք)։ Իսկ ի ցեղից անտի Կարիացիքն էին ի կողմն արեւմտից, Փռիւգացիքն ի ներքս անդ մինչեւ ցԱլիւս գետ, Ասորի Կապադովկացի ազգն յայնկոյս Ալիւս գետոյ, իսկ Թրակացիք ի Բիւթանիա. այս ազգք էին բազմաւորք քան զամենեսին։ Երեք թագաւորութիւնք ի սոցանէ արժանի են յիշատակի պատմութեան, որք առհասարակ յարդիւնարարութիւնս, ի բոլս, ի խաշնարածութիւն, եւ ծովեզերեայքն ի նաւարկութիւն եւս եւ ի վաճառականութիւն պարապէին։

1 Եսայ. ԺԳ, ԺԴ, ԻԱ, ԻԷ։
2 Եսայ. ԻԱ. 5, 9։ Երեմ. Ծ. 24, 5, 38. ԾԱ. 30 — 32, 39, 41։
3 Երեմ. ԻԵ. 8 — 11, 12, 15 — 26։
4 Տես Երեմ. Ծ, ԾԱ։

1. Տրովադական թագաւորութիւնն բովանդակէր զարեւմտակողմն Միւսիայ որ եւ կոչէր եւս փոքր Փռիւգիա։ Սորա պատմութիւն բովանդակեալ կայ ի բանս եւեթ պւետից եւ չէք հնար ճշմարտիւ զժամանակացն որոշմունս առնել ի մէջ։ Թագաւորք պատմին լինել՝ Սկամանդրոս յառաջին. հարստութենէ, Տեւկրոս, Դարդանոս յերկրորդ հարստութենէ, Տրոս շինիչ Տրովադայ, Իղոս յորմէ Իղիոն քաղաք կոչեցաւ՝ առ զՆիւթանիա, Լաւոմեդոն, առ որով ընդ Յունաց պատերազմն լինել, Պրիամոս առ որով Տրովա յետ 10ամեայ պատերազմի (յամի իբրեւ 1190) ի Յունաց քանդեցաւ։ Եւ կալան զերկիրն նոցա Փռիւգացիք եւ Լիւդացիք։

2. Փռիւգացւոց թագաւորութեան պատմութիւն է նոյնպէս լի առասպելօք։ Գրեթէ ամենայն իսկ թագաւորաց նոցա Գորդիոս կամ Միդաս անուն կոչէր, զկարգ յաջորդութեան նոցա չմարթի ճշգիւ սահմանել։ Զառաջնոյ Գորդիոսէ որ զԳորդիոն քաղաք գլխաւոր շինեաց՝ պատմեն կապել զհռչակաւոր հանգոյցն ի վերայ կառաց իւրոց ի մեհենին. զայն հանգոյց Աղեքսանդրոս Մեծն յետ բազում ամաց կտրեաց սուսերաւն։ Յետ վախճանելոյ վերջնոյն Միդայ՝ անց թագաւորութիւնն առ Լիւդացիս (յամի 560)։ — Ի Փռիւգացւոց պատմի լեալ Եզովպոս։

3. Թագաւորութիւնն Լիւդացւոց։ Լիւդացիք (կամ Մէոնացիք) զարմ ինչ էին ի ցեղէ Կարիացւոցն։ Երեք հարստութիւնք եղեն թագաւորութեան նոցա. առաջին՝ Ատիադացն մինչեւ ցամն 1200. երկրորդն՝ Հերակղեանց ցամն իբրեւ 730. երրորդն՝ Մերմնադեանց յորոց բուն պատմութիւնն սկսանի, այս ինքն ի Գիւգէս հովուէ որ զԿանդաւղէս թագաւոր սպան, առ զԿողոփոն եւ զՏրովադա † 690։ Արդիս առ զՊրիէնէ, բայց առ նովաւ դիմեցին Կիմմերիացիք ի Լիւդաստան (670) եւ առին զՍարդս որ էր նոցա քաղաք գլխաւոր † 640։ Սադիատտէս † 630։ Աղիատտէս մերժեաց հան զԿիմմերիացիս եւ ապա առ զԶմիւռնիա. ետ պատերազմ եւ ընդ Կիաքսարայ Ա. Մարաց թագաւորի, † 570։ Կրիւսոս նորին որդի առ զԵփեսոս, հնազանդեաց զամենայն Առաջակողմն Ասիայ մինչեւ ցԱղիւս գետ, եւ այնպէս յօրինեաց զմեծ թագաւորութիւնն Լիւդացւոց յոր խառն էր եւ Թրակիա։ Բայց աշխարհակալն Կիւրոս արար վախճան թագաւորութեանն նորա, եւ զԱռաջակողմն Ասիայ արար նահանգ Պարսից թագաւորութեան (ի մէջի 560—550 ամաց)։

Այս Առաջակողմն Ասիայ էր մանաւանդ ասպարէզ արշաւանաց թափառական ազգաց Հիւսիսակողմանց Ասիոյ։ Քանզի ի մեծատարած վայրսն որ յԵւքսինոս եւ ի Կասպից ծովուց տարածեալ ձգին ի հիւսիսակողմն արտաքոյ քան զասպարէզ պատմութեան (որ հայրենիք իմն էին Հոնաց, Մոնգողաց, Թաթարաց, Կաղմուկաց, Թուրքաց) բնակեալ էին ազգք խառնաղանձք՝

եւ Անտիլիբանանու կան, անուանեալ կոչէին խոր Ասորիք, որ յեռայ եւ զհովտաւն ծովեզերեայն բովանդակէր: Լերինքն Լիբանանու եւ Անտիլիբանանու զարձեն պատուարք զարեւմտեան կողմն Ասորւոց գետովք, խաղիւք եւ աղբերօք որ ի լերանց անտի իջանեն. բայց որչափ երթայ ոք միջանկեալ ի դաշտաձեւ անդին, դոյնչափ անպտղաբեր զհովտանան զտանէ, եւ յետ տապարացն զայ աւազուտ ինչ մեծ՝ յորում կան առաւ անդ զաղար ինչ փայլք, յորս հոյակապ իմն էր քաղաքն Պաղմիրայ: Նշանաւորք ի գետոց են Որոնտէս (այժմ Էլ-Ասի) եւ Եղեւթերոս (Ազատ գետ) որ ի լեռնոտանէ անտի վերնակողմանն Լիբանանու ելանեն, եւ Քրիսորոաս գետ (այժմ Բարադա) որ յԱնտիլիբանանէ իջանէ:

Բնակեցին յերկրին Ասորւոց որդիքն Արամայ որդւոյ Սեմայ, (զորս Հոմերոս եւ Հեսիոդոս քաջ ի բաց հինք ի Յունացն մատենագրաց՝ կոչէին Արիմացիս) եւ ի նոցանէ կոչեցաւ անուն ազգայն[1]: Բաժանեալ էին Ասորիք կամ Ասորեստանք ի բազում իշխանութիւնս եւ ի սահմանս: 1. ի Միջագետս կամ յԱրամն Նահարայիմ զատանէք թագաւոր կացեալ զՔուսան Ռասաթայիմ կամ Գուսարսաթէմ, որ ութանեայ ժամանակ Իսրայելացւոց տիրեաց յամս իբրեւ 1430[2]: 2. Արամ Մաաքա կամ Մաքա (Մաքաթ)[3]: 3. Արամ Սուբայ կամ Արամ տանն Ռոոբայ (Բեթ-Ռէոբ) ի վերայ հիւսիսային սահմանացն Պաղեստինեայ[4]: 4. Եմաթ (Համաթ) նահանգ (առ Որոնտէս գետով եւ առ Լիբանան լերամբք) համանուն քաղաքաւ Համաթաւ (յետոյ Եպիփանիա)[5] որոյ թագաւոր բարեկամութեամբ էր ընդ Դաւթի[6]. ապա առաւ յԱսորեստանեայցն[7]: 5. Սոբա սահմանակից՝ թագաւորութիւնն Արփաթայ[8]: 6. Հաւրան յարեւելից ծովուն Գալիլեացւոց (նոյն ընդ այնմ որ յետոյ Աւրանիտիս կոչեցաւ)[9]: 7. Գեսուր առ Հերմոնիւ[10] որոյ թագաւոր Թողմի ետ զդուստր իւր Դաւթի կնութեան ուստի Աբիսողոմ ծնաւ, որ յետ զԱմնոն զեղբայր իւր սպանանելոյ եկաց փախստեայ ի Գեսուր առն երկիր[11]:

Այս ամենայն թագաւորութեանց՝ երեւելիքն ի նոցանէ լինէին առաջնորդ յերեւելի գործս եւ իբրեւ այն թէ զապարապետութիւնն ունէին. այսպիսի երեւելի թագաւորութիւն թուի լեալ ի սկզբանն՝ թագաւորութիւնն Սուբայ եւ ապա թագաւորութիւնն Դամասկեայ, որոց բան փախստեան ի մէջ էր՝ տիրել Իսրայելացւոց մինչեւ անդ յետ բաժանման թագաւորութեան նոցա յերկուս:

1 Ծնն. Ժ. 22:
2 Դատ. Գ. 8:
3 Յես. ԺԳ. 11: Բ. Թագ. Ժ. 6. 8: Ա. Մնաց. ԺԹ. 6. ԻԹ. 6. ըստ եբրայեց.:
4 Բ. Թագ. Ժ. 6: Դատ. ԺԸ. 28:
5 Յես. ԺԳ. 5: Դատ. Գ. 3: Գ. Թագ. Ը. 65: Դ. Թագ. ԺԴ. 25: Ամով. Զ. 15: Երեմ. ԽԹ. 23: Եզեկ. ԽԷ. 11:
6 Բ. Թագ. Ը. 9:
7 Դ. Թագ. ԺԸ. 34. ԺԹ. 13: Եսայ. ԼԷ. 12, 13:
8 Դ. Թագ. ԺԸ. 34. ԺԹ. 13: Եսայ. ԼԷ. 13:
9 Եզեկ. ԽԷ. 16, 18:
10 Երկր. Գ. Գ. 14. ըստ եբրայեց.: Յես. ԺԲ. 5. ԺԳ. 13:
11 Բ. Թագ. Գ. 3. ԺԳ. 37:

# 52

Ա. Թագաւորութիւնն Սուբայ (առաւել յայսկոյս Եփրատայ) որոյ թագաւորաց, որպէս թուի, միշտ Ադրաազար անուն էր[1], ոչ գոյզն ինչ էր զօրութեամբ. քանզի Դաւիթ յառաջնում պատերազմի անդ զոր տայր ընդ նմա՝ առ գերի ի նոցանէ 1700 հեծեալ եւ 20,000 հետեւակ[2]. բայց սակայն Ադրաազար յետ ոչ բազում ժամանակի ի վերայ անցանելոյ, միւսանգամ բազում զօրօք զօրաւիգն օգնականութեան Ամոնացւոցն հակառակ Դաւթի լինէր: Յետոյ ուրեմն ի պարտութիւն մատնեալ նուաճեցան յամի իբրեւ 1040[3]:

Բ. Առաւել նշանաւոր էր թագաւորութիւնն Արամ Դամասկեայ ի հիւսիսոյ արեւմտից Արամ Սաբայ՝ հանդերձ գլխաւոր քաղաքաւն Դամասկեաւ, որ կայր վաղ իսկ եւ ի ժամանակին Աբրահամու[4]: Այս թագաւորութիւն էր ընդ իշխանութեամբ Արամ Սուբայ նախ քան զժամանակն Դաւթի[5]: Այլ յետ հնազանդելոյ զնա Դաւթի ընդ ձեռամբ[6] յիշեն սակաւ այնուհետեւ թագաւորք նոցա յԻսրայելացւոցն պատմութեան, եւ (ըստ Նիկողայոսի Դամասկացւոյ[7]) ընդ ամենայն տասն եւեթ թագաւորք կացին մինչեւ ցկատարած թագաւորութեանն, որք առհասարակ անուանեալ կոչէին Ադադ (յանուն արեգակնային աստուածոյն Ասորւոց). սակայն ի գիրս սուրբս այլ իմն անուանք կոչին նոցա: — Առաջին թագաւոր ի թագաւորաց զոր գիրք յիշեն՝ էր Ռասոն որ զառաջինն զթագաւորութիւնն Դամասկեայ արար ինքնօրէն թագաւորութիւն՝ թօթափեալ զլուծ տէրութեան թագաւորացն Սուբայ, որ ի վաղուց տիրէին, եւ (յամի իբրեւ 980) զլուծն Սողոմոնի՝ որ յետ աշխարհակալութեանցն Դաւթի տիրէր ի վերայ ամենայն թագաւորութեանցն Ասորւոց[8]: Յայնմ ժամանակէ հետէ Դամասկոս (որպէս յառաջն երբեմն Սուբա) եղեւ ի գլուխ մանր մանր թագաւորութեանցն Ասորւոց[9], եւ էր հանապազ պատերազմաւ ընդ հարաւային դրացեաց իւրոց՝ ընդ Իսրայելացւոց որք առաւել ի պարտութիւն մատնէին: Յետ Ռասոնի թագաւորէր Հեսիոն, եւ զսա փոխանակէր նորին որդի Տաբրիմոն, որ էր դաշնաւոր ընդ Ասայի արքայի Յուդայ[10]: Ապա թագաւորէր Բէն-Ադադ Ա. (յամի իբրեւ 950) առ որով սկիզբն առնոյր պատերազմն ընդ Իսրայելացւոց. եւ տեւէին յեղծումն եւ յապականութիւն երկոցունց եւս եբրայական թագաւորութեանցն առ որդւովն նորա եւ պայազատաւ Բէն-Ադադաւ Բ. (յամի իբրեւ 900): Այս Բէն-Ադադ

1 Ա. Թագ. ԺԱ. 23: Բ. Թագ. Ը. 3, 5. Ժ. 16:
2 Բ. Թագ. Ը. 4:
3 Բ. Թագ. Ժ. 8 — 19:
4 Ծնն. ԺԴ. 15:
5 Բ. Թագ. Ը. 3 . . . Ա. Թագ. ԺԱ. 23:
6 Բ. Թագ. Ը. 6:
7 Առ Յովսեփ. Նախն. պատմ. Է. 5, 2:
8 Գ. Թագ. ԺԱ. 23 — 25:
9 Տես Գ. Թագ. Ի. 1, 16, 24: Ամովս Ա. 5:
10 Գ. Թագ. ԺԵ. 18, 19 ըստ բնագր.:

պար փոփոխումն առաջնորդութեան մանր թագաւորութեանցն Ասորւոց, զի բարձեալ զթագաւորս՝ որոց թիւ համարոյ էր 36, կացոյց փոխանակ նոցա կուսակալս[1]։ Սա էր մեծ եւ անուանի քան զամենայն թագաւորսն Դամասկացւոց (ըստ Նիկողայոսի Դամասկացւոյ)։

Յետ այնորիկ անցանէր թագաւորութիւնն ի նոր ինչ հարստութիւն՝ յորմէ առաջին թագաւոր եկաց Ազայէլ (յամի իբրեւ 890)[2], որ առաւել եւս յաջողութեամբ քան զառաջինսն տանէր յառաջ զճակատսն ընդ Իսրայելի։ Այլ ապա ուրեմն առ նորին որդւով Բեն-Ադադաւ Գ. (յամի իբրեւ 840)՝ յաջողել սկսան Իսրայելացիքն եւ վանթափել Ասորիքն. քանզի յետ երից ճակատուց՝ ոչ միայն աշխարհակալութիւնքն նոցա ելին ի ձեռաց նոցա[3], այլ եւ Յերոբովամ Բ. (825 — 784) ընդարձակեալ տարածեաց միւսանգամ զսահմանս թագաւորութեանն Իսրայելի ի վերայ սահմանացն Ասորւոց՝ որոց Դամասկացիքն տիրեալ էին[4]։

Յայնմ հետէ անհետ իմն լինի Դամասկոս իբրեւ զժամանակ կիսոյ դարու՝ ի պատմութենէ գրոց սրբոց, մինչեւ յետ ժամանակին այնորիկ՝ յորում (ըստ Նիկողայոսի Դամասկացւոյ) թագաւորեալ էր Ադադ Թ. գայ երեւի յասպարիզի անդ գրոցն պատմութեան՝ տասներորդն եւ վերջին թագաւոր Ռասոն (Ադադ Ժ. յամի իբրեւ 760)։ Սորա միաբանեալ ընդ Փակէայ արքայի Իսրայելի՝ յաղթէր ի բազում ճակատս Աքազու արքայի Յուդայ. նմին իրի ի նեղ մեծ անկեալ սորա՝ կոչեաց զԹագղաթփաղասար զարքայ Ասորեստանեայց ի թիկունս օգնականութեան. եկն Թագղաթփաղասար, սպան զՌասոն, առ զԴամասկոս, եւ զբնակիչսն հան տարաւ վտարանդի (յամի իբրեւ 740)[5]։ Այսպէս ածան ի Դամասկոս զաղթականք յԱսորեստանեայց[6] (որպէս յետոյ եւ ի Սամարին)։ Յայնմ հետէ դադարեաց թագաւորութիւն ի Դամասկոսէ, եւ այնպէս առին կատարումն սպառնալիք մարգարէիցն[7]։ Յետ կալոյ ընդ տէրութեամբն Ասորեստանեայց[8] անց առ ժառանգս իշխանութեանն նոցա՝ նախ առ Քաղդէացիսն[9] եւ ապա առ Պարսիկս։

1 Գ. Թագ. Ի. 24։
2 Գ. Թագ. ԺԹ. 16։ Դ. Թագ. Ը. 13 — 15։
3 Դ. Թագ. ԺԳ. 19, 25։
4 Դ. Թագ. ԺԴ. 25 — 28։
5 Դ. Թագ. ԺԵ. 37. ԺԶ. 5 — 9։ Եսայ. Է. 1... Ը. 1...։ Բ. Մնաց. ԻԸ. 5...։
6 Յովսեպ. Հնախօս. պատմ. Թ. 12, 3։
7 Եսայ. ԺԷ. 3։ Երեմ. ԽԹ. 23 — 27։ Ամովս Ա. 3 — 5։
8 Տես Եսայ. Թ. 11։
9 Երեմ. ԽԹ. 23, 27։ Տես եւ Դ. Թագ. ԻԴ. 2։

## Ժ

### Արաբիա. (2000—)։

### 53

ԱՐԱԲԻԱ է մեծ ցամաք կղզէ ի հարաւոյ արեւմտից Ասիոյ. սահման նորա յարեւելից՝ Բաբելոնիա եւ խորշ ծովուն Պարսից, ի հարաւոյ՝ ծովն Հնդկաց, յարեւմտից՝ ծովն Կարմիր եւ Եգիպտոս եւ Եթովպիա, ի հիւսիսոյ՝ Պաղեստին եւ երկիրն Ասորւոց. զսա գիրք կոչեն եւ Արեւելս[1], որպէս եւ զբնակիչսն՝ Արեւելեայս[2], որպէս ցայժմ Սարակինոսք (Շարգիլյ) իսկ կոչեն, որ հայերէն թարգմանի Արեւելեայք։ Արաբիա բաժանի յերիս.

Երջանիկն Արաբիա (Եէմէն) որ է բուն ցամաք կղզին ի մէջ ծովուցն յառաջագոյն ճառելոց՝ որ անուանեալ կոչի եւ երկիր Յեոց, Սաբա եւ Կեդար՝[3] ի ծովակողմանսն հարթ է եւ անծին եւ անպտուղ. ի ներքնակողման աշխարհին տարածեալ ընթանայ շար իմն լերանց որ յայս կոյս յայն կոյս զեջեալ հարթանայ. իսկ հիւսիսակողմն արեւելից յորում մերթ բլուրք են, մերթ հովիտք եւ մերթ դաշտք՝ է պտղաբեր քան զամենայն կողմանսն. անդ կային բովք ոսկւոյ եւ ականց պատուականաց, թէպէտ եւ այժմ երկաթ եւ կապար եւեթ հանեն, ազնիւ ինչ արմաւք, խունկք նշանաւորք առ հինսն, որովք լինէր վաճառականութիւն մեծ[4]։

Անապատն Արաբիա (Հէճազ) կամ վրանահար Արաբիա (վասն բնակչացն թափառական ընդ վրանօք բնակելոյ) որ ի գիրս Անապատ լոկ կոչի[5], բովանդակեալ ունի զմասն հիւսիսոյ արեւելից, որ է ի մէջ սահմանացն Արածանւոյ եւ մասին միոջ ծոցոյ ծովուն Պարսից, եւ ի մէջ Երջանիկն եւ Ապառաժն Արաբիայ եւ Պաղեստինացւոց եւ Ասորւոց։ Բլրաձեւ իմն երկիր է, երբեմն անապատ եւ երբեմն դաշտ։ Ջերմութիւն անհնարին է յոյժ, եւ սամիէլ շնչէ հարաւ (մինչեւ ց63 աստիճան Ռէոմիւրի), որ վաղվաղակի իսկ ի վայրկեան ժամանակի կոտորէ զմարդ եւ զանասուն[6]։

Ապառաժն կամ Պետրեանն Արաբիա (Հաճար)՝ որ ի գիրս սուրբս Սէմ լոկ անուանեալ կոչի[7], հանդերձ հին գլխաւոր Պետրա քաղաքաւ՝ է ամենեւին ի հիւսիսակողման արեւմտից. կէս նորա լեռնային եւ քարուտ, եւ կէս դաշտավայր ծածկեալ հրաքարիւ, յորս կան եւ կողմանք ինչ պտղաբերք։ Եղանիտեան եւ Հերոպողիտեան գոգք Կարմիր ծովուն ի հարաւոյ իմն ցհիւսիսի յօրինեալ կազմեն կէս ինչ կղզի ըստ նմանութեան երեքանկեան

1 Ծնն. ԻԵ. 6։
2 Դատ. Զ. 3։ Եսայ. ԺԱ. 14։ Յովբ. Ա. 3։
3 Բ. Մնաց. ԻԱ. 16։ Յովբ. Ա. 17. ըստ Եբր։ Սաղմ. ՀԱ. 10։
4 Գ. Թագ. Ժ. 2, 10, 15։ Երեմ. Զ. 20։ Եզեկ. ԻԷ. 22 . . .։
5 Եսայ. ԽԲ. 11։
6 Եսայ. ԼԵ. 7. ԽԹ. 10։
7 Եսայ. ԽԲ. 11։ Բ. Մնաց. ԻԶ. 7։

երկք ի վայր շրջելոյ· ի հարաւային ծայրի անդ կայ լեառնն Սինայի հանդերձ Սինայի եւ Քորեբ գագաթամբք։

Յամենայն հիւսիսակողմանն Արաբիայ բուսանին ոչ միայն արմաւենի եւ կաղնի [1], թզենի եւ ձիթենի, այլ եւ մոշայ՝ թուփ ուստի մանանայն որ քաղցր ինչ խիժ է՝ իջանէ, եւ թանձրացեալ առնի հատ եւ փոխանակ շաքարի արկանի ի կեր եւ յագեցուցանէ եւս։ Բնակիչք հանօրէն Արաբիայ ի հնումն ամենեւին չառնէին փոյթ զմշակութենէ երկրի, որպէս եւ ցայժմ արհամարհ իմն են առ նոսա մշակք· այլ առաւել խաշնարածութեամբ եւ յափշտակութեամբ կէին [2]։

— Բնակիչք այսց երկուց վերջին մասանց Արաբացւոց աշխարհին էին առաւել ի հաղորդութեան ընդ Իսրայելացւոց քան զբնակիչսն Երջանիկն Արաբիայ, ուր բուն նախաւոր Արաբացիքն բնակեալ էին։

## 54

Ազգք բուն հին բնակիչք Արաբիայ էին· 1. ի զաւակէն Քուշայ որդւոյ Քամայ, յորմէ են Եւիլացիք (կամ Քաւիլացիք), եւ Սաբաթացիք ի հարաւային Արաբիա· Ռեգմացիք եւ սերունդք նոցա ի կողմանս հարաւոյ արեւելից առ ծոցոյ ծովուն Պարսից· իսկ Սաբացիք եւ Սաբաթաքացիք, որպէս յայժ իսկ հաւանութեան թուի, ի Մերովէ եւ յարեւելեան ծովեզերսն Եթովպիայ բնակէին· 2. զաւակն Յեկտանայ (զոր ինքեանք Կաքտան կոչեն) միոյ ուրուք յեղբարցն Փաղեկայ եւ որդւոյն Եբերայ ի զաւակէն Սեմայ [3]։

Սոքա անուամբ եւեթ ծանօթ են, բայց եւ ինքեանք Արաբացիքն ի սոցունց համարին զինքեանս սերեալ, եւ անուանք իսկ հովտաց եւ լերանց եւ գետոց որ պահեալ կան յԱրաբացւոց աշխարհին՝ հաստատեն զնոցին գոյութիւն ի ժամանակին առաջինս։

Միայն երկուք ի ցեղից անտի Յեկտանեանց յիշին իբրեւ հոյակապք եւ մեծատունք՝ յեկտանեան Սաբացիքն եւ Սոփերացիք, երկոքին եւս յԵրջանիկն Արաբիա առ Կարմիր ծովուն։ Այսց Սաբացւոց դշխոյն որոյ անուն ըստ աւանդութեան ինչ Բաղկիս կոչէր, եւ ցայժմ հաշուի ի կարգս հին իշխանաց Երջանիկն Արաբիայ եւ նշխարք իսկ արքունեաց նորա երեւին ի Մարեբ, լուեալ զհամբաւ իմաստութեանն Սողոմոնի եբեր նմա պարգեւս՝ ոսկի եւ ականս պատուականս եւ ազգի ազգի խունկս [4], որովք ընդ հանուր առնէին վաճառաշահ։ ԶՍոփիրն (կամ զՍոփիր) եւս առանց տարակուսանաց իբրեւ բնակութիւն Յեկտանեանց [5] պարտ

1 Acacia, փայտ անփուտ եւ թեթեւ։

2 Ծնն. ԻԵ. 39 — 40։ "Ի պարարտութենէ երկրի եղիցի բնակութիւն քո, եւ ի ցօղոյ երկնից ի վերուստ. եւ սրով քով կեցցես,,. տես եւ ԺԶ. 12։

3 Ծնն. Ժ. 7, 25 — 30։

4 Ա. Թագ. Ժ. 1 — 10։ Բ. Մնաց. Թ. 1։

5 Ծնն. Ժ. 28, 29։

է յԵրջանիկն Արաբիա դնել. նոյնպէս մեծատունք էին Սոփերացիքն եւ առնէին վաճառաշահ ընդ բազում ազգս. զոսկին նոցա Եբրայեցիք ընտիր քան զամենայն ոսկի համարէին:

## 55

Ընդ այսց հնոց բնակչաց խառնեցան յետոյ կամ թէ մերժեցին իսկ զնոսա մասամբ ուրիք՝ սերունդքն Փաղեկայ, այս ինքն 1. որդիքն Աբրահամու, որ ի Քետուրայ ծնան եւ ցեղքն նոցա [1]. 2. որդիքն Նաքովրայ եղբօր Աբրահամու, որպէս Բուզ՝ յԱպառաժն Արաբիա եւ Հուս՝ յԱւսիտիս [2]. բայց մանաւանդ 3. զաւակն Իսմայելի որդւոյ Աբրահամու զոր ծնաւ յԱգարայ [3]. որ բազմացեալ կալան զմեծ մասն Արաբիայ, եւ էին առհասարակ արօտականք [4]: Մասն մի ի նոցանէ Հագարացիք՝ ի մօրէ անտի Իսմայելի, եւ մասն մի՝ Իսմայելացիք կոչէին:

Ա. Հագարացիքն որ յարեւելից ցեղին Ռուբինի բնակէին, առ Սաւուղաւ մերժեցան առաւել եւս յարեւելս հարաւոյ [5]: Աւարն որ յայնժամ ի նոցանէ առաւ 50,000 ուղտ, 250,000 ոչխար, 2000 էշ, 100,000 գերի, յայտ առնէ թէ ցեղ հզօր եւ բազմամբոխ էին. եւ զի պարտութեամբն այնուիկ ոչ ջնջեցան՝ յայտ ի սաղմոսացն Դաւթի է [6], ուր ի մէջ արտաքսմանեայ ազգացն երեւին:

Բ. Իսմայելացիքն ըստ երկոտասան որդւոցն Իսմայելի յերկոտասան ցեղս բաժանեալ էին, յորոց ապաքէն ոմանք՝ վաղ իսկ յայս կամ յայն ցեղ ի ցեղեցն խառնեցան: Ի ցեղից աստի նշանաւորք են 1. Նաբաթացիք որ ի Նաբէովթայ Իսմայելացւոյ էին [7], ժողովուրդ խաշնարած եւ վաճառական [8] ի հիւսիսարեւմտեան Արաբիայ, որոց քաղաք գլխաւոր Պետրա, մօտ ի Հոր լեառն, որոց տունք ի մէջ ապառաժ վիմաց փորեալ էին [9]: 2. Կեդարացիք զաւակ Կեդարու Իսմայելացւոյ բնակեալ յԱնապատն Արաբիա՝ ազգ ինչ յափշտակող էին եւ խաշնադարման եւ մեծատուն իսկ խաշամբք եւ անդէովք [10], պատերազմողք եւ զօրաւորք զօրութեամբ, մանաւանդ քաջ աղեղնաւորք [11]: 3. Չեն այնպէս անծանօթ եւ Թեմնացիք կամ Թեմանացիք ի Թեմանայ որդւոյ Իսմայելի [12], որք մանաւանդ վաճառաշահք էին [13]: 4. Ցեղքն Յետուր եւ Նափիս նմին հակառակ չթուին նշանաւոր [14]:

1 Ծնն. ԻԵ. 1 — 6:
2 Ծնն. ԻԲ. 21 — 23:
3 Ծնն. ԻԵ. 12 — 16, 18:
4 Nomades.
5 Ա. Մնաց. Ե. 10, 19 . . . :
6 Սաղմ. ՁԲ. 7:
7 Ծնն. ԻԵ. 13:
8 Եսայ. Կ. 7:
9 Եսայ. ԽԲ. 11:
10 Եսայ. Կ. 7: Երեմ. ԽԹ. 29: Եզեկ. ԻԷ. 21:
11 Եսայ. ԻԱ. 16 . . . : Սաղմ. ՃԺԹ. 4 — 6:
12 Ծնն. ԻԵ. 15:
13 Յոբ Զ. 19: Եսայ. ԻԱ. 14: Երեմ. ԻԵ. 23:
14 Ա. Մնաց. Ե. 19:

Բուն նորքին հին պատմութիւն Արաբացւոց անյայտ իմն է։ Սողոմոն բարեկամութեամբ էր ընդ երեւելի վաճառական ցեղիցն նոցա յԵրջանիկն Արաբիա[1], նոյնպէս եւ Յովսափատ արքայ Յուդայ[2], որ առնոյր իսկ ի նոցանէ հարկս՝ խոյս եւ նոխազս. Նմին հակառակ Յովրամ պարտեցաւ ի ցեղիցն Արաբացւոց[3], որպէս եւ Ոզիա կրեաց պատերազմ, այլ յաղթեաց նոցա[4]. բայց ամենեւին ամենայն ցեղքն որպէս այժմ՝ նոյնպէս եւ ոչ յայնժամ երբեք նուաճեցան։

Իսկ պատերազմունք աշխարհակալութեան Ասորեստանեացն եւ Քաղդէացւոց չհասին ի բուն Արաբացիսն, այլ միայն ի ցեղս ինչ որ յԱպառաժն եւ յԱնապատն Արաբիա բնակէին։

## 56

Բնակիչք էին Արաբիոյ եւ յաջորդ սերունդք Աբրահամու, որպէս եւ սերունդք ինչ Ղովտայ.

Ա. Եդովմայեցիք սերեալ յԵսաւայ որ մերժեցին զՔոռեացիսն ի լերանէն Սէիրայ՝ ի հարաւային սահմանսն Քանանու, եւ բնակեցին յետոյ ի հարաւոյ մինչեւ ցԴեդան, եւ ի հիւսիսոյ մինչեւ ցԲոսրա եւ ցԱւրանիտիս՝ յԱրաբիա[5]։ Յերկրին նոցա կան քաղաքք երեւելիք նաւահանգստիւք՝ Եւիլաթ եւ Գասիոնգաբեր։ Յեդովմայ (որ է կարմիր)՝ կոչեցաւ ծովն Կարմիր։ — Կային նոցա թագաւորք[6], եւ էին միշտ թշնամութեամբ ընդ Իսրայելացիսն[7]։ Թէպէտ եւ հնազանդեաց զնոսա Դաւիթ[8], բայց անդէն առ Սողոմոնիւ միւանգամ յետս կացին[9], եւ ամենեւին իսկ ապստամբեցին ի Յովրամայ եւ կացուցին իւրեանց առանձինն թագաւոր[10]։ Յայնմ հետէ տային պատերազմ ընդ թագաւորութեանն Յուդայ[11], այլ առաւել քան զամենայն արուարձանեայս Իսրայելացւոցն յերկաբեալ. մինչ թագաւորութիւն նոցա, եւ յետոյ ուրեմն ի վերջին ժամանակս ի ձեռն Մակաբայեցւոցն եւ Ասամոնեցւոց ի գլուխ ելին ի նոսա պատգամք մարգարէիցն[12]։

Բ. Ամաղեկացիքն որդիք էին Ամաղեկայ որդւոյ Եղիփազու ուստերն Եսաւայ[13], եւ յայն սակս իսկ ազգակիցք Եդովմայեցւոցն, եւ էին նոքա ազգ յափշտակող եւ հովիւք խաշանց, որք անկան ի վերայ Իսրայելացւոցն յելանելն նոցա յԵգիպտոսէ[14]։ Եւ վասն այնորիկ եղեն նոքա ժառանգութեամբ թշնամի Իսրայելացւոցն[15]։

1 Գ. Թագ. Ժ. 15։
2 Բ. Մնաց. ԺԷ. 11։
3 Բ. Մնաց. ԻԱ. 16։
4 Բ. Մնաց. ԻԶ. 7։
5 Յեսու. ԺԵ. 1։
6 Ծնն. ԼԶ. 31 — 43։
7 Թուոց. Ի. 14 — 21։ Դատաւ. ԺԱ. 17, 18։
8 Բ. Թագ. Ը. 14։ Գ. Թագ. ԺԱ. 15, 16։
9 Գ. Թագ. ԺԱ. 14, 21, 22։
10 Դ. Թագ. Ը. 20 — 22։
11 Բ. Մնաց. ԻԵ. 11, 12. ԻԸ. 17։
12 Եսայ. ԼԴ. 5, 6։ Երեմ. ԽԹ. 7 — 22։ Եզեկ. ԻԵ. 12 — 14. ԼԵ։
13 Ծնն. ԼԶ. 12։
14 Ելից ԺԷ. 8 — 16։
15 Տես Երկր. օր. ԻԵ. 17 — 19։

հարին Ամաղեկացիք միանգամ զԻսրայելացիսն[1]. յետ ամաց քառասնից միաբանեալ նոքա ընդ Մովաբացւոց եւ Ամոնացւոց՝ յաղթեցին Իսրայելացւոց[2]. եւ յետ բազում ժամանակաց ի վերայ անցանելոյ նեղեցին նոքա զնոսա հանդերձ Մադիանացւովք ամս եւթն[3]: Բայց յետոյ ուրեմն արքայ Սաւուղ եհար եւ սատակեաց զնոսա ամենեւին, եւ կալաւ ձերբակալ զԹագաւոր նոցա[4]: Եհար զնոսա եւ Դաւիթ եւ արար հարկատուս[5], եւ առ Եզեկիաւ ամենեւին իսկ ջնջեցան Ամաղեկացիք ի ձեռն Շմաւոնեան ցեղին[6]:

Գ. Մադիանացիքն սերէին ի Մադիանայ որդւոյ Աբրահամու ծնելոյ ի Քետուրայ[7], մեծ մասն նոցա արօտականք էին եւ բնակէին յարեւելեան ծովեզերս ծոցոյ Արաբացւոց ծովուն[8]: Նոքա զի գայթակղութիւն եղեն նոքա Իսրայելացւոցն ի պաշտօն հեթանոսութեան, ետ Մովսէս պատերազմ ընդ նոսա եւ սատակեաց[9], եւ հինգ յիշխանաց նոցա կոտորեցան[10]: Թէպէտ եւ տիրեցին յետոյ Մադիանացիքն եւթնամեայ ժամանակ ի վերայ Իսրայելացւոցն[11], այլ յետ այնր ժամանակի ամենեւին վատթարեցան, եւ չորք յիշխանաց նոցա կոտորեցան[12]: Եթէ չջնջեցան այնու, սակայն տկարացան յոյժ, քանզի չյիշին իսկ բնաւ այնուհետեւ:

## 57

Դ. Մովաբացիքն որդիք էին Մովաբու որդւոյ Ղովտայ[13], բնակեալ էին նոքա ի կողման արեւելից Աղից ծովուն ի պտղաբեր վայրս. դրացիք էին նոցա Մադիանացիքն եւ Եդովմայեցիք. ի հիւսիսոյ՝ Ամովրհացիք, յորոց բաժանեալ էին Առնոն գետով[14]. քաղաք գլխաւոր էր նոցա Արմովբ (Արոյէր, Արէոպոլիս)[15]: Վաղ իսկ իշխանն նոցա Բաղակ եցոյց թշնամութիւն ընդ Իսրայելացիսն[16], եւ Եգղոմ արքայ կալաւ յետոյ ընդ լծով ծառայութեան ամս 18 զԻսրայելացիսն[17]. Եհար զնոսա Դաւիթ եւ արար ընդ հարկաւ[18]. առ Յովրամ թագաւորաւ յետս կացին, բայց խորտակեցան յերեսաց նորա՝ որ միաբանեալ էր ընդ թագաւորին Յովսափատու[19]: Յետ այնորիկ միաբանեալ ի դաշն մտին Մովաբացիքն ընդ Ամոնացւոց եւ ընդ Եդովմայեցւոց հակառակ թագաւորին Յովսափատու, բայց փոխանակ հարկանելոյ զՅովսափատ, դիմ-

1 Թուոց. ԺԴ. 45:
2 Դատ. Գ. 12, 13:
3 Դատ. Զ. 3 — 6:
4 Ա. Թագ. ԺԵ. 3 — 9, 32, 33:
5 Ա. Թագ. ԻԷ. 8, 9. Լ. 1 . . . :
6 Ա. Մնաց. Դ. 41 — 43:
7 Ծնն. ԻԵ. 2:
8 Ելից Բ. 15:
9 Թուոց. ԻԵ. 17, 18:
10 Թուոց. ԼԱ. 2, 7 . . . :
11 Դատ. Զ. 1 — 6:
12 Դատ. Է. 12, 19 . . . Ը. 10 — 12, 21:
13 Ծնն. ԺԹ. 36, 37:
14 Թուոց. ԻԱ. 13:
15 Թուոց. ԻԱ. 15:
16 Թուոց. ԻԲ. 2 — 6:
17 Դատ. Գ. 12 — 14:
18 Բ. Թագ. Ը. 2:
19 Դ. Թագ. Գ. 5, 7, 21 — 27:

մեանս Հարեալ՝ կատարեցին զերեսուս[1]։ Յետ աւուրցն կործանմանն Երուսաղեմի առին միւսանգամ զՀնի սահմանս երկրին իւրեանց[2]. այլ յետ այնորիկ նուաճեցան ամենեւին ընդ ձեռամբ Նաբուքոդոնոսորայ եւ բնաջինջ եղեն, եւ այնպէս կատարեցան ի վերայ նոցա դատաստանքն Աստուծոյ[3]։

Ե. Ամոնացիք սերունդ են Ամոնայ որդւոյ Ղովտայ[4], եւ էր երկիր նոցա յարեւելս Գերիայ առ Յաբոկ գետով, եւ քաղաք գլխաւոր նոցա էր Հռաբաթ-Ամոն[5]։ Ընդ բնակեալ էին երբեմն սկայազունքն Զոմզոմինք, որ ջնջեցան ի նոցանէ[6]։ Մասն մի երկրին Ամոնացւոց առին յԻսրայելացիսն[7]։ Նուաճեցին Ամոնացիք զԻսրայելացիս ամս 18, եւ հարին եւս զամանակս իւրեանց ի Գաղայադ[8]. այլ յետոյ ուրեմն ի պարտութիւն մատնեցան եւ հանեալ ի նոցանէ քաղաքք բազումք[9]։ Նաաս թագաւոր նոցա առնէր թշնամութիւն ընդ արքային Սաւուղայ, բայց հարեալ վատթարեցաւ ամենեւին[10]։ Հանունն անարգասանութեամբ թշնամանեալ զհրեշտակս արքային Դաւթի, զրգռէր ի պատերազմ, եւ զօրութիւն օգնականութեան էին նմա եւ Ասորիքն իբրեւ դաշնաւորք Ամոնացւոց։ Յետ երկայնաձիգ պաշարման ձեռս եառ Հռաբաթ, եւ եղեն Ամոնացիք հարկատու Իսրայելի[11]։ Զանազան ջանացան զերծուցանել զանձինս ի հարկանելոյ հարկս, այլ չաջողեցաւ նոցա եւ առաւել եւս ծանր հարկք ի վերայ եդան[12]։ Թէպէտ եւ միաբանեցին նոքա հանդերձ Մովաբացւովքն ընդդէմ Նաբուքոդոնոսորայ[13], բայց միւսանգամ նուաճեցան փաղփաղակի առ ի պատժել պատուհասից անօրէնութեանց իւրեանց[14]։ Յետոյ ուրեմն դառնացեալ պարտեալ գնաս ի Մակաբայեցւոց[15], եւ անհետ իսկ եղեւ անուն նոցա։

## ԺԸ

### Քանան կամ Պաղեստին. (2000—)։

### 58

ԵՐԿԻՐ բնակութեան ազգացն Քանանացւոց էր յարեւմտից Յորդանան գետոյ[16] մինչեւ ցծովն (այս ինքն հանդերձ Փիւնիկեաւ[17] եւ երկրաւն Փղշտացւոց[18]). անուանեալ կոչէր ի սկզբանն երկիր Քանանու կամ Քանան[19] յանուն բնակչաց աշխարհին[20]։—Յետոյ

1 Բ. Մնաց. Ի. 23։
2 Տես Դ. Թագ. ԻԴ. 2։
3 Երեմ. ԽԹ։ Եզեկ. ԻԵ. 8, 9, 11։ Ամովս Բ. 1, 2։
4 Ծնն. ԺԹ. 36, 38։
5 Երկր. օր. Գ. 11, 16։
6 Երկր. օր. Բ. 19—21։
7 Յեսու. ԺԳ. 25։
8 Դատ. Ժ. 7—9, 17։
9 Դատ. ԺԱ. 32, 33։
10 Ա. Թագ. ԺԱ. 1—11։
11 Բ. Թագ. Ժ, ԺԱ. 1. ԺԲ. 26—31։
12 Բ. Մնաց. Ի. 1, 22—25. ԻԶ. 8. ԻԷ. 5։
13 Դ. Թագ. ԻԴ. 2։
14 Եզեկ. ԻԵ. 10։ Ամովս Ա. 13, 15։
15 Ա. Մակ. Ե. 6—8։
16 Ել. ԺԶ. 35։ Թուոց. ԼԳ. 51։ Յեսու. Ե. 11, 12. ԻԲ. 11։ Երկր. օր. ԺԱ. 30։
17 Եսայ. ԻԳ. 11։ Մատթ. ԺԵ. 21, 22։
18 Ծնն. Ժ. 19։ Տես Թուոց. ԺԳ. 29, 30։ Երեմ. ԽԷ. 4, 7։
19 Սաղմ. ՃԴ. 11. ՃԵ. 38։
20 Ծնն. Ժ. 15—20։

տուանց Փիւնիկեցւոցն եւ երկրին Փղշտացւոց՝ ի Փղշտացւոցն անուանէ անուանեցաւ Պաղեստին կամ Փաղեստին՝ եւ զարեւելեան կողմն եւս Յորդանանու (զԳաղաադաւ) առեալ ի մէջ [1], որ է համօրէն երկիր բնակութեան Իսրայելացւոցն՝ որ յետոյ անդր զաղթեցին ։

Սահման են երկրին Պաղեստինացւոց յարեւելից անապատքն Ասորւոց եւ Արաբացւոց՝ որք ձգեալ համանեն ցգետն Եփրատ. ի հարաւոյ՝ հիւսիսային Արաբիա, ուր Ամոնացիքն եւ Մովաբացիք եւ Իդումեայեցիք նստէին, եւ հեղեղատն Եգիպտոսի. յարեւմտից՝ ծովն Միջին, եւ ի հիւսիսոյ՝ Փիւնիկէ, Դամասկոս եւ Լիբանան։ Ըստ առաւելութեան գրոց իբրեւ միջին իմն սահման ի հիւսիսոյ ցհարաւ անուանի այսպէս. Դան (որ կայ առ ըստոտամբն երկրորդն Լիբանանու կամ Անտիլիբանանու կամ Ընդեմ Լիբանանու) մինչեւ ցԲերսաբէէ (ի վերայ սահմանացն Արաբիոյ). իսկ յարեւմտից յարեւելս՝ ծովն Միջին հանդերձ գետովն Եգիպտոսի, եւ կողմանք գետոյն Եփրատայ յորոց բաժանեալ էր Պաղեստին՝ անապատաւն [2]։

Լերինք այսր աշխարհի են Լիբանան եւ Ընդեմ Լիբանանու (զոնէ մասամբ իւիք)՝ հանդերձ Հերմոնիւ եւ Ամանա ի հիւսիսակողմանն, Կարմեղոս եւ Թաբոր յարեւմուտս. լերինքն Իսրայէլի կամ Եփրեմայ ի միջնակայրի ընդունին Պաղեստինու հանդերձ լերամբքն Սեմերոնի, Սամարիոյ, Գեբաղու եւ Գարիզինի, Գաղաադու եւ այլովք բազմօք։ Լերինքն Յուդայ ի կողմանս հարաւոյ հանդերձ Սիոն, Մորիա եւ Ակրա լերամբք։ Լերինքն Գաղաադու մինչեւ ցանապատն Արաբացւոց յարեւելս երկրին Յորդանանու, ուր են լերինքն Բասան եւ Արգոբիմ, Բասգա եւ Նաբաւ։

Ի մէջ արեւելակողման եւ արեւմտակողման աշխարհին Պաղեստինացւոց երեք ծովք կան. ծովակն Մառոմայ (Մերոմայ), Գենեսարեթայ, ծովն Աղուից՝ զոր արտաքինք Ասփաղտիս ծովակ կոչեն, իսկ այժմ Մեռեալ ծով։ Բուն գլխաւոր գետ է Յորդանան որ յԱնտիլիբանան լեռնէ ելանէ, անցանէ ընդ ծովն Գենեսարեթայ, եւ ընդ հովիտ ինչ հարթ իջանէ ի ծովն Աղուից եւ անդ ապականի. այլ երբեմն խաղայր ընդ հիւսիսային Արաբիա, եւ թափէր ի ծովն Կարմիր։ Ի Յորդանան՝ որ զՊաղեստին յերկուս մասունս բաժանէ, մտանեն յարեւելից կուսէ՝ գետն Յարմուք եւ Առնոն, իսկ յարեւմտից՝ Եմոն, Կրիթ եւ Կեդրոն։ Մտանեն ի ծովն Միջին՝ Բեղոս, Կիսոն եւ հեղեղատն Եգիպտոսի, մօտ ի Ռինոկորուրա (կամ Ռինոկոռուրա)։

Երբեմն աշխարհն Պաղեստինացւոց պտղաբեր էր յոյժ. գրեթէ համօրէն իսկ ազգք արմտեաց՝ գինի, ձէթ, արմաւ, թուզ եւ

1 Պաղ. ։ Պղծ. Ե. 12, 13 եւ այլք ։ 24 ։ Դատ. Ի. 1. եւ այլուր ։
2 Թուոց ԼԴ. 3 — 12 ։ Եզեկ. ԽԷ.

ամենայն պտուղք հարաւոյ ծնանէին պարարտութեամբ. տունկք բաղսամոնի, եղեւնիք եւ անտառք կաղնեաց բուսանէին առատութեամբ. ծնունդք անասնոց ամենեւին բազմանային. կային եւ բովք ի լերինսն. օդն անդրախառն էր եւ կարգաւ. եւ Համառօտ իսկ ասել՝ էր երկիր որ բղխէր զկաթն եւ զմեղր[1]։

## 59

Ա. Բնակիչք երկրին Քանանացւոց կամ Պաղեստինացւոց էին ի բուն հին ժամանակին ազգք սերեալք յորդւոց Քանանու ուստեր Քամայ, որք ըստ կարգի ազգաբանութեան են 1. Սիդոնացիք (յանդրանկէ անուն որդւոյն Քանանու), 2. Քետացիք, 3. Յեբուսացիք, 4. Ամորհացիք, 5. Գերգեսացիք, 6. Խեւացիք, 7. Արակացիք, 8. Ասենացիք, 9. Արադացիք (Արուադացիք), 10. Սամարացիք (Սեմարիացիք), 11. Ամաթացիք։ — Ի սոցանէ Քետացիքն բնակէին ի հարաւային լեռնային կողմանն ի մէջ Հովտին Սեփելայ, առ ծովուն Միջնոյ եւ առ Հովտին Սիդդիմայ. ի Հեբրոնի նոցա յայնմ իսկ տեղւոջ յորում յետոյ Երուսաղէմ էր՝ Յեբուսացիքն. յարեւելից երկոցունցն ի Հովտին Սիդդիմայ առ Յորդանան գետով՝ Ամորհացիքն. ի Յորդանանէ մինչեւ ցՍիւքէմ՝ Գերգեսացիք. ի Հերմոնայ առ լեռնոտամբն Անտիլիբանանու՝ Խեւացիք։ — Մնացեալ վեցեքին ցեղքն են Փիւնիկեցիքն։

Բ. Հաւանութեան իսկ է թէ Քանանացիքն յետոյ եկին յերկիր անդր գաղթականութեամբ ի կողմանց ծոցոյ Արաբացւոց կամ Պարսից ծովուն[2]։ Այլ ազգք բնածինքն կամ որ յառաջ իսկ քան զնոսա եկեալ էին ազգք ինչ՝ որ ոչ յազգականութենէ Քանանացւոցն էին, կային բնակեալ առընթեր նոցա։ Ի սոցանէ Կենեզացիք՝ որպէս հաւանութեան թուի, բնակեալ էին ի հարաւային լերինսն Յուդայաստանի, Կադմոնացիք յարեւելս Փիւնիկեայ առ Լիբանան լերամբք, Փերեզացիք առ լերամբքն Եփրեմի ի մէջ Սիւքեմայ եւ Բեթելայ, Ռափայեցիքն (Ռափայիմք) որ էին ազգ սկայից յաղթանդամք[3], բնակէին մանաւանդ յայնկոյս Յորդանանու, ի նոցանէ էին Զոմզոմինքն[4], Ենակացիքն (Ենակիմք)[5] եւ Էմիացիք. վերջինն ի սկայից անուանի էր Ովգ արքայ Բասանու. Կինեցիքն բնակեալ էին առ ծովուն Աղուց եւ շրջէին խաշամբք իւրեանց յարօտս Արաբացւոցն[6]։ Զաւակն Յոբաբայ որոց սկիզբն ի Մադիանացւոց էր, բնակեցին յետոյ անդ, եւ Կինեցիք կոչեցան[7]. եւ մասն մի նոցա բնակեալ էր յանապատին Յուդայ[8]։

1 Երկր. օր. Ը. 7—10. ԺԱ. 9—12։
2 Երոդոտ. Ա. 1, 7, 89։ Ստրաբ.։ Յուստին. Ա. 18։
3 Թուոց. ԺԳ. 29, 33։
4 Երկր. օր. Բ. 20։
5 Երկր. օր. Բ. 11։ Յես. ԺԵ. 15։
6 Ծնն. ԺԵ. 19—21։
7 Դատ. Դ. 11։
8 Դատ. Ա. 16։

Այդ իսկ ի Մովսիսի ժամանակին[1] բազմաթիւ Քանանացիքն համարեալ էին յառաջեան ինչ քաղաքային յօրինուածութեան։ Էին նոքա ընդ թագաւորօք, բաժանեալ յառանձինն սահմանս քաղաքաց եւ նահանգաց եւ ի մանր ինչ տոհմս[2]. էին նոցա եւ զինուորական ինչ յօրինուածք[3], եւ պարապէին եւս ի մշակութիւն եւ ի վաճառականութիւն։

Ի ջնջել անդ մեծի մասին նոցա ի ձեռաց Իսրայելացւոցն՝ բազումք, որպէս հաւանութիւն է, այսր անդր գաղթեցին[4]։

## 60

Ի ծնացելոց անտի Քանանացւոց՝ Ամովրհացիքն էին որ ի բնէ հզօրագոյնք քան զամենեսին էին ի մէջ ազգացն այնոցիկ, մինչեւ յանուն Ամովրհացւոցն կոչել երկրին Քանանացւոց[5], եւ նոցա անուամբ զայլ ցեղսն անուանել[6]։ Մասն մի նոցա ել յառաջին բնակութենէ իւրմէ եւ կալաւ զարեւելեան կողմն Յորդանանու, այս ինքն զԳաղաադ[7]։ Իբրեւ հասին Իսրայելացիք ի սահմանս (արեւելեան) Քանանու, որ որոշեալ էր լերամբքն Ամովրհացւոց[8], խնդրեցին ի նոցանէ անցանել խաղաղութեամբ ընդ երկիրն նոցա, այլ փոխանակ այնր թագաւոր նոցա Սեհոն ելանէր ի մարտ պատերազմի ընդ Իսրայելացւոցն, բայց առ Առնովնայ ի պարտութիւն մատնէր, եւ ջնջեցաւ ազգ նորա, եւ առաւ թագաւորութիւն նորա յԱռնովնայ մինչեւ ցՅաբովկ[9]։ Նոյն անցք անցին եւ ընդ Ովգ արքայ՝ դրացի ազգակից թագաւորութեանն Բասանու, որ ձգէր ի Յաբովկայ մինչեւ ցՀերմոն[10]։

Նա եւ ի բուն իսկ (արեւմտեան) երկրին Քանանու ծնացեալ էին Ամովրհացիք։ Գաբաւոնացիքն ունէին ազատ ինչ տէրութիւն ի հիւսիսակողման արեւմտից Երուսաղեմի. Խեւացիք էին նոքա, եւ անուանին իսկ երբեմն Ամովրհացիք. նենգութեամբ եդին նոքա դաշինս խաղաղութեան ընդ Իսրայելացւոցն[11]։ Դաշնաւոր եղեն ի վերայ Իսրայելացւոցն հինգ թագաւորք Ամովրհացւոց հանդերձ թագաւորաւն Երուսաղեմի, այլ ամենեքին պարտեցան եւ կոտորեցան[12]։

Գտան եւ ի հիւսիսակողման երկրին Քանանու Ամովրհացիք միաբանեալք ընդ այլոց թագաւորացն Քանանացւոց, որք կոտորեցան առհասարակ եւ ջնջեցան[13]։ Բայց Ամովրհացիքն չէին լքեալ

1 Թուոց. ԺԳ. 29։ Յեսու. ԺԱ. 4։
2 Թուոց. ԻԱ. 1։ Երկր. օր. Է. 24։ Յեսու. Ժ. 3, 23. ԺԱ. 1. ԺԲ. 9։
3 Յեսու. ԺԷ. 16։
4 Մովս. Խոր. Ա. Գլ. ԺԹ։ Պրոկոպ. պատմ. Վանդալ. Ա. 10։
5 Ամովս Բ. 10։
6 Ծննդ. ԺԵ. 16։ Յեսու. ԻԴ. 18։ Դատ. Զ. 10։
7 Յեսու. ԺԲ. 2 — 5։
8 Երկր. օր. Ա. 7, 19։
9 Թուոց. ԻԱ. 21 — 31։ Երկր. օր. Բ. 26 — 37։
10 Թուոց. ԻԱ. 33 — 35։ Տես Երկր. օր. Գ. 1 — 8։
11 Յեսու. Թ. 3 — 15. Ժ. 2։
12 Յեսու. Ժ։
13 Յեսու. ԺԱ. 1 — 14. ԺԲ. 7....։

տակութիւն բնաջինջ. զի նեղեցին նոցա զԻսրայելացիսն եւ մերժեցին ի լերինս, բայց սակայն եղեն հարկատու ցեղին Յովսեփայ[1], եւ յետոյ նուաճեցան եւ ծառայեցին ի գործ աշխատութեան ընդ իշխանութեամբն Սողոմոնի[2]։ Եւ յետ գերեդարձին եւս հրէից յիշին[3], այլ չասեն քաջ յայտ թէ լեալ իցեն տակաւին յայնժամ մնացորդք ի նոցանէ։

Այլ բուն ծաղկեալ ցեղք Քանանացւոց եղեն Փիւնիկեցիք։

## ԺԲ

### Փիւնիկաստան. (2000 — 560)։

### 61

Աղբիւր. Սանքոնիաթոն փիւնիկեցի ի Բերիտոս քաղաքէ (յառաջ 1200 յառաջ քան զՔր.). յոյն թարգմանութիւն զորոյ նորա թարգմանեալ ի Փիլոնէ Բիբղացւոյ, որոյ հատուածոյք կան առ Եւսեբեայ, (Պատրաստ. Աւետ. Գիրք Ա. Գլ. 10), այլ անխտան հարազատութիւն մատենիս ընդ խնդրով է. սակայն եթէ ծնեալքս եւս իցեն եւ անխտան այն հատուածոյքդ՝ ոչ ինչ նուազ ի պատմութիւն լինին, այնու՝ զի հանեն զաշխարհագրութիւնս եւ զաստուածոցն եւեթ ծննդաբանութիւնս է անդ բանն։ Նոյն իրք գտանեալ Եբրայեցւոց եւ Յունաց մատենագիրք նման ազգիւքս. յԵբրայեցւոց մանաւանդ Եզեկիէլ. ի Յունաց անտի Դիոս եւ Մենանդրոս Եփեսացի, որ ի Տիւրոս՝ ի Տիւրացւոցն դիւանաց գրեաց զՏիւրացւոցն պատմութիւն, որոյ հատուածոյք կան առ Եւսեբեայ (ի Քրոն. Ա. Յով. էջ 177—181). եւ առ Յովսեպոսի Եբրայեցւոյ (ընդդ. Ապիոն. Ա. 18, եւ Նախնեաց պատմ. Է. 5, Յ. Թ. 14. ԺԳ. 1.), Դիոդոր Սիկիլ., Թէոփիլոս Անտիոքացի (յառաջ 170 յետ Քր.) առ Աւտոլիկոս Գ. 22։ — Նշանս լինին ի նոցին մանաւանդ Հերեն։ — Հին դահեկանք Փիւնիկեցւոց՝ առ Էքքէլեայ Ա։

Հիւսիսակողմն արեւմտից երկրին Քանանու՝ նեղ եւ նուրբ երկիրն որ կայր ի ծովեզերս ծովուն Միջնոյ ի մէջ Պաղեստինացւոց եւ Ասորւոց աշխարհին՝ յարեւելից առ երի Լիբանանու, ի հիւսիսոյ առ Եղաւ գետով, իսկ ի հարաւոյ չգոյր նմա սահման հաստատուն վասն բազում փոփոխմանն (որ եւ յետոյ Փիւնիկաստան կոչեցաւ), էր բնակութիւն 6 ցեղից ի 11 ցեղից անտի Քանանացւոցն։ Սիդոնացիք սերունդք անդրանկին Քանանու բնակէին յարեւմտից Խեւացւոցն. անդր իսկ ի հիւսիսակողմն արեւմտից առ լեռնոտամբն հիւսիսային Լիբանանու նստէին Արակացիք եւ Ասինացիք, յարեւմտից առ ծովեզերբն եւ յԱրադոս կղզւոջ Արադացիք կամ Արուադացիք, յարեւելից ի հովիտս հիւսիսակողմանն Լիբանանու՝ Սեմարիացիք կամ Սամարացիք. եւ առ Որոնտէս գետով Եմաթացիք կամ Քամաթացիք[4]։

Սոքա առհասարակ Փիւնիկեցիք կոչեցան ի Յունաց եւ ի Հռոմայեցւոց, ուր ինքեանք Քանանացիս զանձինս կոչէին եւ Քանան զերկիրն, որպէս յայտ ի դրոց դահեկանաց նոցա եղեւ[5]։

1 Դատ. Ա. 34—36։
2 Գ. Թագ. Թ. 20, 21։
3 Բ. Եզր. Թ. 1։
4 Ծնն. Ժ. 15—19։ Թուոց. ԺԳ. 30։
5 Թուի թէ եւ Եբրայեցիք յետ Ընկճե-լոյ նոցա զհարաւային Քանանացիսն՝ այս-

Այսպէս ընտրեալ զանձինս ոչ միայն յիւրեանց ազգակից ցե-ղիցն այլ եւ յազգաց ազգաց պատերազմողաց՝ եղեն հոյակապ եւ քաջամարտ հրահանգօք իւրեանց եւ ճարտարութեամբ արուեստի եւ զինուք։

## 62

Ծիրանեգործանոցս նոցա երեւելի էին 1. Ներկք նոցա՝ որ եւ ծի-րանիքն կոչէին, որ ոչ եթէ մի միայն երանգ էր՝ այլ անուն գլխաւ-որ ինչ ազգի երանգոց յօրինելոց ի շնչաւորացն ներկէ, այս ինքն ի հիւթոյ անտի խղունջնաց ծովու. սպիտակ եւս եւ թուխ եւ ամենայն իսկ միջին աստիճանք գոյին ծիրանւոյ։ Երկու իմն ազգ էր խղունջնաց ծիրանւոյ, մի՝ որ գտանէր ի ժայռս եւ յապառաժս, եւ միւս եւս ազգ բուն իսկ խղունջն ծիրանւոյ զոր խայծիւ որսային ի ծովէ, որ կոչէր իսկ՝ Նաւակային ծիրանի։ Որպէս գիւտ ծիրանւոյ փիւնիկեցւոցն էր՝ նոյնպէս միշտ իսկ առաւելութիւն իմն էր ծի-րանւոյ նոցա, եւ ոչ ուրեք այնպէս ներկանէին կարմիր եւ մանու-շակագոյն որպէս ի Տիւրոս։ Նաւն զազնիւ ասրն հօտիցն Արաբա-ցւոց ներկանէին փիւնիկեցիքն՝ արուեստիւ եւ խառնմամբ ազգի ազգի աստիճանս երանգոց նոցին տալով, եւ միանգամայն շողիւն եւս։ 2. Նոքեանք իսկ փիւնիկեցիքն գործէին յասուէ անօթ պճարձան զայնոսիկ. երեւելի արուեստանոցք ոստայնանկութեան նոցա էին ի վաղ ժամանակին ի Սիդոն[1], եւ յետոյ յայլ եւս քաղաքսն փիւնիկեցւոց եւ մանաւանդ ի Տիւրոս։ 3. Մեւս եւս ծնունդ արուեստից փիւնիկեցւոցն էր ապակին։ Աւազն կամ բո-րակն զոր ի դոյն պէտս ի կիր՝ գտանէր ի հարաւային կողմանս աշխարհին նոցա առ լեռնոտամբն Կարմեղայ ի ծովակէն Կենդեւայ (որ է Մակեդդով, որպէս համանութեան Թուի). գլխաւոր արուեստանոցք էին ի Սիդոն եւ ի սահմանակիցսն նորա ի Սարեփ-թա։ Թէպէտ եւ վասն ամոքախառն օդոյ արեւելից՝ չէր պիտոյ վասն պատուհանաց, եւ ոչ վասն բաժակաց՝ այնու զի յազնիւ քրէական նիւթոյ եւ ի քարանց սովորութիւն էր յօրինել, սակայն վաղ իսկ երեւի սկիզբն լեալ՝ զորմունս եւ զառաստաղս սրահից ապակեով զարդարել։ Սակայն միշտ իսկ բազմադիմի միտք ὕαλος անուան որ առհասարակ զերեւելի նիւթոյ յայտ առնէ, թէպէտ քար իցէ թէպէտ այլ ինչ, չտայ ստուգութեամբ որոշել թէ ար-դեւք բուն այժմու ապակի էր այն եթէ այլ ինչ նիւթ նմին նման։

նուհետեւ առաւելութեամբ իմն քանանա-ցիս՝ զփիւնիկեցիսն ասոր եւս կոչել (Սո-փոն. Ա. 11)։ Որպէս եւ զվաճառականս սովորութիւն է գրոց սրբոց ըստ եբ-րայեցւոցն՝ քանանացիս (այս ինքն փիւնի-կեցիս) կոչել՝ այնու զի առաւելութեամբ իմն վաճառականք ի հնումն փիւնիկեցիքն էին։ (Ովսէէ ԺԲ. 8։ Սոփոն. Ա. 11։ Եսայ. ԻԳ. 8, եւ թարգմանիչքն թարգմա-նեն οἱ ἔμποροι, այս ինքն վաճառականք։) — Փիլոն Բիբղացի (առ Եւսեբ. Քրոն. Ա. 10) Քնա՝ անուն տայ փիւնիկեցւոցն, որս եւ եբրայեցին Փիլոն, Վարք Մովս. Բ։

1 Հոմեր. Իլիակ. Զ. 291. Ոդիս. ԺԵ. 424։

4. Դարձեալ մեւս եւս ազգ ճարտարութեան փիւնիկեցւոցն էին գործածք զարդու, որպիսի ինչ՝ գունաւորակ ապակի եւ ոսկւոյ ճարտարութեամբ աղխեալ ընդ մետաղս[1], եւ արուեստական ձեւակերտք ի փղոսկրէ[2]. գործածք ի քրէական նիւթոց մանաւանդ ի պղնձոյ՝ մեծաւ պքանչելի ճարտարութեամբ, որպիսի ինչ ձուլել սիւնս խոյակօք հանդերձ, վանդակս, անիւս, զարդս նռնաձեւս, ամանս ջեռուցիչս, տաշտս. ոսկիմքը երեւելի մանաւանդ Տիւրացիքն էին[3]: Ընտրատախիտ լերինքն Լիբանանու զոր ունէին՝ յայլ եւս իմն ճարտարութիւն զնոսա ածին. հատանել վէմս մեծամեծս ի լերանց եւ տաշել զնոսա, յորում մանաւանդ ճարտարք երեւին Գիբղացիքն[4]. Հարկանել փայտս ի շինուած, գի, սաւս, սարդ, նոճ, մայր, եղեւնափայտ, յորում քաջ մանաւանդ Սիդոնացիքն էին, որք եւ լաւ գործեալ հատուցանէին ի մօտաւոր աշխարհս[5]: Այլ գլխաւոր պիտանութիւն փայտահատութեան նոցա էր վասն նաւագործութեան, որով եղեն միշտ Փիւնիկեցիքն առաջին ազգ նաւամարտիկ եւ վաճառական յամենայն աշխարհին Ասիացւոց իբրեւ զԱնգղիացիս աւուրց մերոց:

## 63

Համաշխարհական վաճառականութեամբ զազգս երից մասանց աշխարհի կապէին ընդ միմեանս, կացեալ գրեթէ ի միջոցի երեցունցն:

Ա. Ցամաքային վաճառականութիւն էր նոցա ընդ հարաւէն Ասիոյ եւ ընդ արեւելեան կողմանց Ափրիկեցւոց աշխարհին, յորոց կարաւանօք գային առ նոսա ազգի ազգի վաճառք ընդ երիս իմն գլխաւոր շաւիղս. 1. Ընդ հիւսիսային շաւիղ գային Փիւնիկեցւոց ի կողմանց Պոնտոս եւ Կասպիական ծովուց՝ պղինձ եւ գերի (ի ցեղիցն Սկիւթացւոց) եւ ձիք եւ ջորիք ի Կապադովկիոյ եւ ի Հայոց աշխարհէ[6]: 2. Ընդ հարաւային շաւիղ՝ գային վաճառք յԵրջանիկն Արաբիոյ որոց համբարանք վաճառաց էին գլխաւոր քաղաքքն նորա Սաբա (Մարիաբա), Ադէն եւ Կաննա (քաղաքք ծովեզերեայք ի վերայ Հնդկային Ովկիանու), Վաղան, Սեգամա (Սեգամոս), Սաննա, Խաւան, Նաւիլաթ, Մակորաբա (Մեկկա) եւ Ասարա[7]. եւ յԱնապատն Արաբիոյ առ Պարսից ծոցովն, յորում Գերրա քաղաք է եւ Տիղոս եւ Արադոս կղզիք՝ որոց բնակիչք, որպէս հաւանութեան իրք է, գաղթականք ի Փիւնիկեցւոց էին: Անդր տային ի բերոց երկրին խունկս, զմուռ[8],

1 Հոմեր. Ոդիս. ԺԵ. 459:
2 Եզեկ. ԻԷ. 6:
3 Գ. Թագ. Է. 13—46:
4 Գ. Թագ. Ե. 17, 18:
5 Գ. Թագ. Ե. 6, 10. Զ. 31, 33: Տես եւ Եզր. Գ. 13:
6 Եզեկ. ԻԷ. 13, 14: Տես Բօշար. ԵՂ 200, 207:
7 Λευκή κώμη.
8 Σμύρνη, Myrrha.

կասիա[1], դանդաղանն[2]: Զայնն Արաբացիք եւ ոսկի եւ ակունս պատուականս ազգի ազգիս[3]: Ի ձեռն Արաբացւոց հասանէր Փիւնիկեցւոց ի Հնդկաց եւ յԵթովպացւոց՝ կինամոմոն, փղոսկր եւ եբենոս փայտ, գործեալ մարգարիտ եւ Հնդկային ծիրանի[4]: Իսկ միջնորդք խոյն եւ բերեալք այսց վաճառաց առ Փիւնիկեցիս էին՝ տաւարածական ազգքն Իդումայեցւոց եւ Մադիանացւոց, որք գային կարաւանօք՝ հանդերձ բազմամբոխ ուղտուք իւրեանց[5]: Եւ ինքեանք եւս առնուին ի Փիւնիկեցւոցն այլ եւս ինչ քրէականութիւնս, որպէս պղինձ, երկաթ, կապար, անագ գործեալ յանօթ ինչ եւ ի կահ[6], ճանապարհ ոսկի յօրինեալ ի զարդ[7]: — Յեգիպտոսէ գայր Փիւնիկեցւոցն՝ կտաւ, բանճակ, պատատուք, ցորեան ի ժամանակս առփա միայն[8], եւ ընդ այնր առաքէին ասդի անդր գինի բազում յաճախութեամբ՝ յանօթս խեցեղէնս, որպէս էրն իսկ սովորութիւն հնոյն: 3. Ընդ արեւելեան շաւիղ գայր ա. ի Պաղեստինացւոց ցորեան ընտիր քան զամենայն ցորեան, ձէթ, մեղր, մոմ եւ բալասանն[9]. Բ. յԱսորւոց՝ գինի եւ ասր յանապատէ (ի խաշանց ընտիր ընտիր հօտիցն Արաբացւոց, առեալ ի բացի). Գ. Բաալբեկ (Բաալաթ կամ Հելիոպոլիս) ի հովտին որ ի մէջ է Լիբանանու եւ Անտիլիբանանու, եւ Պաղմիրա (Թադմոր կամ Թեդմոր) յանապատին Ասորւոց (երկոքին շինեալք ի Սողոմոնէ[10], որոց ցայժմ կան նշանաւոր աւերակք) էին վասն երթեւեկի վաճառականութեան, մին առաջի ելանելոյ կարաւանաց յետ ժողովելոյ ամենեցուն անդր, եւ միւսն լուծանելոյ՝ յանապատի անդ: Ի ձեռն կարաւանացս այսոցիկ էր Փիւնիկեցւոց հաղորդութիւն վաճառականութեան ընդ Բաբելոնիայ եւ ընդ Ասորեստանի եւ միջնորդաւ նոցա ընդ Բակտրիացւոց մինչեւ ց Հնդիկս՝ թերեւս մինչեւ ցաշխարհն իսկ Չինէացւոց:

Ը. Ծովային վաճառականութիւն նոցա սկիզբն առ նախ ի յափշտակութենէ նաւաց եւ զարգացաւ. առ Հոմերաւ նաւարկեալ զծովեզերս Յունաց երեւէին երբեմն իբրեւ յափշտակիչ

1 Laurus casia.

2 Եզեկ. ԻԷ. 22—24: Հերոդոտ. Գ. 110—112:

3 Տես Եզեկ. ԻԸ. 13. «Զամենայն ակունս պատուականս ի քեզ կապեցեր, զսարդիոն, զտպազիոն, զզմրուխտ, զկարկեհան, զշափիւղայ, զյասպիս, ... եւ զզմրուխտ, զակատն, զմեղեսիկն, զակնեւորն, զբիւրեղն, եւ զերկնագոյնաքարն, եւ ոսկւով լցուցեր զգանձս քո»: Տես եւ Ծնն. Բ. 12:

4 Եզեկ. ԻԷ. 24: — Վասն Հնդկային ծիրանւոյ տես եւ Դիոդ. Սիկ. Բ:

5 Եզեկ. ԻԷ. 16 եւ 21: Եւ Եսայ. Կ. 5—9, յորում խոստանայ մարգարէն Երուսաղեմացւոց զփառսն Տիւրոսի, թէ «փոխեսցի ի քեզ մեծութիւն ծովու (որով իմանան զերկիրս ծովու Միջերկրականս) եւ ազգաց եւ ժողովրդոց: Եկեսցեն ի քեզ երամակք ուղտուց եւ ծածկեսցեն զքեզ ուղտերամակքն Մադիանու եւ Գեփայ. ամենեքեան ի Սաբայ եկեսցեն, բերել ոսկի եւ կնդրուկ եւ ակունս պատուականս...: Եւ ամենայն խաշինքն Կեդարու ժողովեսցին առ քեզ եւ խոյքն Նաբեովթայ եկեսցեն եւ մատուցցին ընդունելի պատարագ ի վերայ սեղանոյ իմոյ»:

6 Թուոց ԼԱ. 22, 51:

7 Թուոց ԼԱ. 50. «Ոսկի մեհեւանդ կամ ապարանջանս եւ մատանի եւ կշտապանակ եւ փողփողակ ընդելուզեալ»:

8 Ծնն. ԽԲ. 5:

9 Եզեկ. ԻԷ. 17: Գ. Թագ. Ե. 11. «Սողոմոն տայր Քիրամայ 20,000 քոռ ցորենոյ, եւ 20,000 սափոր իւղոյ ձիթոյ զոր տայր Սողոմոն Քիրամայ ի տարւոջ»:

10 Գ. Թագ. Թ. 18:

մանկանց եւ աղջկանց՝ զորս տարեալ վաճառէին ի վաճառս Ասորւոց մեծագնի[1], եւ երբեմն զբօսուցին ինչ վաճառօք եւ խաղալկաց իրօք եկեալ առ նոսա վաճառէին ծանրագնի։ Բայց եւ յետոյ եւս միշտ ստիպեալ իմն էին Յոյնք որ թշնամութեամբ էին հանապազ ընդ նոսա՝ առնուլ ի նոցանէ եւղս անուշունս եւ խունկս վասն զոհից, հանդերձս ծիրանեայ եւ կիս զարդու։ Ճանապարհ նաւարկութեան նոցա էր մանաւանդ ընդ երկայնութիւն հարաւային ծովեզերաց Միջերկրական ծովու (զհիւսիսային արեւմտեան Ափրիկեաւ). բուն կէտ երթեւեկի նոցա էր Թարշէշ (Սպանիա) վասն մեծատուն բովուցն արծաթոյ, ոսկւոյ, երկաթոյ, անագի եւ կապարի[2]։ Թուին երթեալ եւ ի Պասիտերիդեան կղզիս առ Բրիտանեաւ հանել անագ, ի Թուղէ (Իսլանդ կամ Իրլանդ) եւ մինչեւ ցՆաղտիա (Պրուսիա) խեժ՝ որ սաթ նոցա ասթաղնիւ։ Իսկ ընդ ճանապարհ հարաւոյ նաւարկեալ երթային զանեայ երբեմն ի Սոփիէր (կամ յՕփիր)՝ յերկիրն ոսկւոյ, եւեալ ի ծոցոյն Արաբացւոց (ի նաւահանգստացն՝ Եղաթ եւ Գասիոնգաբեր)[3]։ Սոփիէրն, որպէս հաւանութեան թուի, է ընդհանրական ինչ անուն հարաւային մեծատուն ինչ աշխարհաց ի ծովեզերս Արաբիոյ եւ Ափրիկեայ, յորոց փոխանակ կարասեաց՝ յայնժամ նաւուք առանց միջնորդի սկսան առնուլ Հրեայք եւ Փիւնիկեցիք։ Նոյնպէս հաւանութեամբ է, առնէին նաւարկութիւն Փիւնիկեցիք առ ժամանակ մի եւ յովկիանոսին Հնդկաց, եւ կէտ երթեւեկի նոցա էր ի ծոցի անդ ծովուն Պարսից՝ Տիւղոս (կամ Տիւրոս) եւ Արադոս կղզիք։ — Առ Նեքաւովաւ արքայիւ Եգիպտացւոց եկեալ ի ծոցոյ ծովուն Արաբացւոց նաւարկեալ շրջեցան զԱփրիկեաւ, քանզի յերրորդումն ամի անցեալ ընդ Արձանսն Հերակլեայ (Ճիպրալթար) դարձան այսրէն ի Տիւրոս յամի իբրեւ 600 յառաջ քան զՔրիստոս[4]։

64

Այս ծովային վաճառականութիւն նոցա յաջողէր բազմատարած Գաղթականութեամբքն նոցա։ Վաղ իսկ ի բուն հին ժամանակին զբաղեալ կալեալ էին Փիւնիկեցիքն զմեծ կղզիս Միջերկրական ծովուն (զԿիպրոս[5] զԿրետէ[6], զմասն մի Սիկիլիոյ[7]) եւ զմանր կղզիս Արքիպեղագոս ծովու՝ զՍպորադեանսն եւ զԿիկղադեանս (մանաւանդ զՌոդոս[8] եւ զԹասոս[9]) եւ յարեւմտեանս եւ ի հիւսիսային

1 Հոմեր. Ոդիս. ԺԵ. 402...: Տես եւ Հերոդ. ի սկզբան գրոցն։

2 Եզեկ. ԻԷ. 12։ Եւ Գ. Թագ. Ժ. 22. «Նաւ Թարսուսի էր Սողոմոնի արքայի ի ծով (Միջերկրական) ընդ նաւս Քիրամայ (արքայի Տիւրացւոց) եւ յերեք ամս գայր արքայի նաւ ի Թարսուէ ոսկւոյ եւ արծաթոյ»։ Իսկ որ յետ այնորիկ յաւելեալ լինի «Եւ ժանեաց փղաց եւ կապկաց եւ սիրամարգացն», ոչ յամենայն օրինակս գրոց կայ։

3 Գ. Թագ. Թ. 26 — 28. եւ Ժ. 11։

4 Հերոդոտ. Դ. 42։

5 Գործ. ԺԳ. Դ։

6 Աղողոգ. Գ. 1։

7 Թուոց. Զ. 2։ Գործ. ԺԷ. Ա։

8 Գործ. ԺԷ. Ա։

9 Հերոդոտ. Բ. 44. եւ Զ. 47։

ծախեցերս եւս Փոքուն Ասիոյ զատուցին հետք Փիւնիկեցւոց. սա-
կայն ի Յունաց անտի մերժեցան յետս եւ կամ նուաճեալ խառ-
նեցան ընդ նոսա: — Նշմին իրի գլխաւոր գաղթականութիւնք նոցա
էին 1. Սպանիա (Մալակա, Կադրեզա, Հիսպալիս), բայց մանա-
ւանդ հարաւային կողմանքն Սպանիայ, քանզի գաղթականու-
թեանքն Թարշիշայ՝ իմանի համօրէն հարաւային Սպանիա, ուր եւ
զԳադէս եւ զՍալաքեղան (զՍալըթագենա) շինեցին. 2. Հիւսիսային
ծախեցերը Ափրիկեցւոց աշխարհին ուր զՈւտիկա, զԱդրումետան,
զմեծ եւ զփոքր Լեպտիս, զՀիպպոն, զՏունիս, մանաւանդ զԿար-
քեդոն շինեցին. 3. Սիկիլիա՝ ուր զՊանորմոս եւ զԼիլիբէոն կան-
գնեցին: — Ժամանակ երթի գաղթականութեանցս այսոցիկ է
իբրեւ յամի 1000 — 550 յառաջ քան զՔր.: Իսկ մախանան՝ ոչ
այն միայն էր զի քնեցին նոքա հանգիստ եւ ապահովող նաւատորմի
վաճառականութեան իւրեանց, այլ եւ հաստատուն հանգիստն ի
բաց ի քաղաքաց անտի իւրեանց գաղթականացն որ բազմամարդ
իսկ լինէր առ նոսա վասն երթեւեկի վաճառացն[1], եւ զխռովա-
յոյզ մարդիկ՝ որոց համարձակութիւն իսկ էր վասն ապստամբական
անհնազանդութեանց քաղաքային առաջնորդութեանն Փիւնի-
կեցւոց:

## 65

1. Քաղաքական առաջնորդութեան յօդուածութիւն էր դաշնաւորութիւն իմն ազատ քաղաքաց կամ նահանգաց Փիւնիկեցւոցն: Յազատ քաղաքաց անտի երեւելի եւ գլխաւոր էին մանաւանդ Սիդոն եւ Տիւրոս (Սայդան եւ Սուր), որք հանդերձ Արադոսիւ (որ առաւելագոյն երեւելի էր նաւարկութեամբ[2]) էին կապեալ ընդ միմեանս միաբանութեամբ. քանզի հասարակաց համաձայնութեամբ շինեցին զՏրիպոլիս, եւ ընդ իւրաքանչիւր դիմամ մի քաղաքին ունէր եւ անցնիւր պատգամաւորս: Գլխաւորք այսց քաղաքաց, յորոց այն պատգամաւորք առաքէին, կոչէին Թագաւորք ժառանգութեամբ կամ Սուֆեւտք, եւ չէին ընդ իշխանութեամբ միմեանց. բայց կարծեալ իսկ էր ճոխութիւն նոցա, զի դատաւորք[3] կային նոցա առընթեր: Քրմապետք եւս Աստարտեայ դից ոչ փոքր ինչ ազդեցութիւն ի վերայ Թագաւորացն ունէին:

Այս քաղաքք տային սահմանեալ զօրս եւ նաւ եւ արծաթ ի հասարակաց պաշտպանութիւն. համօրէն զօրութիւն դաշնաւորութեանն (առ Քիրամաւ յամի 1030) էր 170,000 հետեւակ՝ 180 պատերազմիկ կառօք, եւ տորմիղ 600 նաւաց: Հանդոյն գաղթականացն իւրեանց Կարքեդոնացւոց՝ վարձկան զօրս եւս առնուին զօ-

1 Եզեկ. ԻԷ. 27:
2 Եզեկ. ԻԷ. 8, 11:
3 Աւետ. Բ. 24. կոչէ զնոսա τους έν τέλει.

նեայ ի կարեւոր ժամանակս ի վերին եւ ի փոքր Ասիայ՝ ի պատե-րազմ կամ ի պահպանութիւն քաղաքի[1]։ Գաղթականութիւնքն եւս նոցա միշտ բարեկամութեամբ էին ընդ նոսա եւ ի հաղորդու-թեան ընդ նոսա ի տուրեւառիկ փոփոխմունս, ի պաշտամունս կրօնից եւ ի քաղաքային վիճակս։ — Արդարեւ այս առաջին ազա-տական քաղաքային յօրինուած էր յԱսիացւոց աշխարհին։

2. Սիդոն էր մայր քաղաքացն Փիւնիկեցւոց ծաղկեալ առ Աբրահամաւ (յամի իբրեւ 2000) եւ առ Հոմերայ (1000)[2] նշա-նաւոր՝ արուեստական ճարտարագործ գործովք. էին նորա նաւա-հանգիստք երկու, եւ պահեաց նա զազատութիւն իւր յերեսաց Իսրայելացւոցն[3], այլ յետոյ անկաւ ընդ իշխանութեամբ Տիւրոսի, բայց ունէր իւր իշխանս առանձինն[4]. ապա ուրեմն կատարեցան ի վերայ Սիդոնի սպառնալիք մարգարէիցն[5], քանզի առ Նաբուքո-դոնոսոր պատերազմաւ զքաղաքն (յամի իբրեւ 590), իսկ Արտա-շէս Գ. քանդեաց յորժամ կամէին ելանել յազատութիւն (յամի իբրեւ 350). միւսանգամ շինեցաւ, այլ այժմ փոքր ինչ քաղաք է աննշանաւոր՝ Սայտա անուն։

3. Տիւրոս հզօրագոյն քան զամենայն քաղաքսն Փիւնիկեցւոց (որ կայր մօտ առ Յեսուաւ[6]) շինեալ ի ժայռի իրիք վերայ, յե-տոյ ուրեմն ամբարձաւ քան զամենեսին լինել գլուխ այլոց քաղաքաց՝ Թագաւորքն։ Առաջին ի նոցանէ անուանի Աբիբաղ մօտ ուրեմն յամի 1050. զնա պայազատէր Քիրամ (իբրեւ 1030), էր նա դաշնաւոր բարեկամ Դաւթի եւ Սողոմոնի[7], եւ ետ նա Սողոմոնի փայտս եւ գործաւորս ի շինուած տաճարին[8]. եւ եղեւ նա նմա օգ-նական կազմել տորմիղ նաւաց, եւ ետ եւս նմա նաւավարս[9]։ Եթ-բաաղ (Իթոբաաղ կամ Յովբաաղ) Ա. յամի իբրեւ 920 էր հայր անօ-րինին Յեզաբելայ[10]։ Փիգմալիոն կամ Պիգմալիոն յամի իբրեւ 900 էր եղբայր Դիդոյ հռչակաւորն տիկնոջ, որ հաստատեալ՝ զԿարքե-դոն շինեաց[11]։ — Առ Եղուղեաւ յամի իբրեւ 720 զուր պաշա-րեաց Սաղմանասար զՏիւրոս ամս 5, եւ 60 նաւք նորա պարտեցան յ12 նաւացն Տիւրացւոց։ — Իսկ առ Եթբաաղեաւ Բ. Նաբու-քոդոնոսոր 13 ամս (586—573) ծախեաց ի պաշարումն Տիւրոսի զի կատարեսցէ ի վերայ նորա զպատուհասն Աստուծոյ[12]։ Բայց

1 Եզեկ. ԻԷ. 10, 11. «Պարսիկք (որ ի մերում օրինակի պակասէ) եւ Լիւդացիք եւ Լիբէացիք (ըստ ոմանց՝ Լիւկիացիք) Թիկունք զօրութեան քո արք ճակատու պա-տերազմողք, որ կախեցին զվահանս եւ սաղաւարտս իւրեանց ի քեզ, եւ նոքա փառաւորեցին զքեզ»։

2 Հոմեր. Ոդիս. Դ. 84. ԺԳ. 285. ԺԴ. 289. ԺԵ. 414։

3 Դատ. Ա. 31։

4 Երեմ. ԻԷ. 3։

5 Երեմ. ԻԷ. 4։ Եզեկ. ԻԸ. 21—23։

6 Յես. ԺԹ. 29։

7 Բ. Թագ. Ե. 11։

8 Գ. Թագ. Ե. Զոր վասն ընդ դրոց որդւոց պատմեն հին յիշատակարանք Փիւնիկեցւոցն, եւ Մենանդրոս Եփեսացի առ Յովսեպոս Հնախօս. Ը. 5. եւ ընդդ. Ապիոն. Ա. 17, 18։ Տես Եւս. Քրոն. Ա. էջ 173 — 182։

9 Գ. Թագ. Ժ. 11։

10 Գ. Թագ. ԺԶ. 31։

11 Մենանդր. Եփես. առ Եւս. Քրոն. Ա. էջ. 181։

12 Եզեկ. ԻԶ, ԻԸ — 19։

իբրեւ եմուտ նա ի ներքս յարձակմամբ՝ ոչինչ եգիտ նա ի նմա բայց շինուած դատարկ. զի մեծ մասն բնակչացն ի կղզին որ մօտ էին՝ փախեան անձամբ ու ընչիւք: Ընդ շինեցին նոքա զՆոր Տիւրոս որ վաղվաղակի անցոյց զՀինն[1], եւ եղեւ նա փոխանակ սորա գլխաւոր կայան համաշխարհական վաճառականութեան[2], եւ ունէր նա զայն պարծանս աւելի քան զ200 ամ՝ ի ժամանակի զի Փիւնիկէ ընդ Պարսից տէրութեամբ նուաճեալ կայր (յամէ 560):

(Ապա եկն եհաս Աղէքսանդրոս Մակեդոնացի, եւ ի նիւթոյ անտի աւերածի հինն Տիւրոսի յօրինեաց թումբ ի ծովեզերէն մինչեւ ցՏիւրոս. յետոյ պաշարեաց սաստկութեամբ զքաղաքն եւ յետ անհնարին աշխատութեան եւ Տիւրացւոցն սաստիկ դիմադարձ լինելոյ, առ Աղէքսանդրոս զքաղաքն պաշարեալ ամիսս եւթն՝ յամի 332 նախ քան զՔր.[3] Մեծ մասն բնակչացն վաճառակուր եղեւ, քաղաքն ի հիմանց բրեալ քանդեցաւ եւ լցան բանք սպառնալեաց մարգարէիցն[4]: Թէպէտ եւ շինեցաւ եւս միւսանգամ, բայց այնպէս յետոյ ուրեմն վարկածեցաւ, զի այժմ անշուան ինչ գեղ ձկնորսաց է Սուրն անուամբ[5]:)

## ԺԳ

### Փղշտացիք. (2000—600):

### 66

ՓՂՇՏԱՑԻՔ ի Քասղուքիմացւոց (Կասղոնիմացւոց կամ Քասղոնիմացւոց) որ ի Մեսրեմայ՝ ի Քամայ որդւոյ էին, սերեցան, եւ բնակէին ի սկզբանն յԵգիպտոս. անտի նաւարկեալ եկին ի Կափտոր (Կապադովկիա), եւ անտի կոչեցան Կափտորացիք (Կապադովկացիք). եւ մասն մի[6] նոցա եւ գաղթեաց ի Պաղեստին եւ մերժեաց զԽեւացիսն ի հարաւոյ արեւմտից դաշտավայրին (Սեփելայ) առ Միջնոյ ծովուն մինչեւ ցԵգիպտոս, եւ բնակեաց ինքն անդէն[7]: Այդ իսկ սոա եգիտ զնոսա Աբրահամ (յամի իբրեւ 1920 յառաջ քան զՔր.) ի մտանել իւրում յերկիրն Քանանացւոց:

1 Πάλαι Τύρος.

2 Տես Եսայ. ԻԳ:

3 Ամովս. Ա. 16, 22: Դիոդ. Սիկ. ԺԷ. 40 — 47: Կուրտ. Դ. 2:

4 Եզեկ. ԻԶ. 26 . . . ԻԸ:

5 Տես Եզեկ. ԻԶ. 5, 14:

6 Որպէս եւ մեւս եւս մասն նոցա, որպէս հաւանութեամբ է, գաղթեալ ի Կղզիս — եւ սաստին անուամբ իսկ նոցա (Կրէ.) Քաղդուքիմ՝ անուանեալ իսկ յանկարծ է ի Կղզիս, մինչ զի առ անուանեալն նոյնութիւն՝ զօ նշանագիր եւեթ պարտ իցէ թողուլ. մանաւանդ զի եւ Հերոդոտ. Բ. 104. Դիոդ. Սիկ. Ա. 28, 55. Ամիան. Մարկել. ԻԲ. 22. Մարտ. Ա. 3. զՔնակիչսն Կղզւոյ՝ որ է ի հիւսիսային արեւմտից կողման Հայոց աշխարհին, յԵգիպտացւոցն ասեն սերեալ:

7 Այս հնարք թուին պատշաճագոյն քան զամենայն՝ առ ի միաբանելոյ զբանս գրոցն Ծնն. Ժ. 14, եւ Ա. Մնաց. Ա. 12. (յորս Փղշտացիք ի Կասղոնացւոց սերին) ընդ այլոցն բանից Երկր. Օր. Բ. 23, Ամովս. Թ. 7, Երեմ. ԽԷ. 4: (յորս գաղթեալ գան ի Կափտորայ եւ Կափտորացիք կոչին): — Եւթանասուն թարգմանիչքն եւս զԿափտորացիսն իմանան Կապադովկացիս կամ Գամիրս:

Փղշտացւոցն գլխաւոր քաղաքն նոցա էր Գերարա, եւ հասարա-կաց անուն թագաւորաց նոցա Աբիմելէք[1]: Յայսմ ժամանակս հինգ գլխաւոր քաղաքք յիշին՝ Ակկարոն, Գէթ, Ազովտոս, Աս-կաղոն եւ Գազա, որոց մի մի իշխանք կային[2]:

Այս ազգ հզօր եւ պատերազմող յոյժ, նմին իրի չէր մարթ թէ ի պարտութիւն մատնեալ նուաճէին[3]. այլ մանաւանդ կա-լան ընդ լծով զԻսրայելացիսն միանգամ ամս 18, եւ յետ այնո-րիկ ամս 40[4]. եւ յաղթեցին ամենեւին Իսրայելացւոցն[5]: Բայց խանդարհեցոյց Սամփսոն զնոսա[6]. եւ արքայ Սաւուղ հար զնոսա բազում անգամ[7], թէպէտ եւ չերբեք ձեռնհաս ամենեւին նուա-ճել զնոսա, քանզի քաջ վարժեալ էին զինու[8]: Իսկ Դաւիթ մի ան-գամ եւ երկիցս պարտէր զնոսա ամենեւին[9]: Արքային Յովսափատայ հարկանէին հարկս[10], բայց առ Յովրամաւ թօթափեցին զլուծ ծառայութեան[11], այլ Ոզիա հնազանդեցոյց միւսանգամ[12]. յետոյ կալին նոքա յԱքազու[13], սակայն Եզեկիա հար խորտակեաց զնոսա միւս-անգամ[14]: Այս ուրեմն որպէս ամենայն ազգքն՝ նոյնպէս եւ նոքա ջնջեցան յաշխարհակալին հեղեղէ Քաղդէացւոցն առ Նաբու-քոդոնոսորաւ, եւ անհետ եղեն ի պատմութենէ[15]:

## ԺԳ.

### Կրօնք կամ հեթանոսութիւն:

## 67

ԹԷՊԷՏ ԵՒ ցայժմ զհաստատութիւն եւ զանցս ազգաց ազ-գաց ծանօթից որ ի միջոցի աստ ժամանակի էին, եւ զճակատս նոցա եւ զերեւելի երեւելի գործս, զյառաջադիմութիւն նոցա յարուեստս եւ ի գիտութեան, զնեքքին եւ զառ միմեանս կցոր-դութիւն հաղորդութեան համառօտեալ նշմարեցաք, եւ զայն մանաւանդ առաք ի միտ՝ թէ յայսմ ամենայնի բազում ինչ իւիք ընդհատս յերկրաց գտանէին. սակայն կայ մնաց մեզ առաջի տա-կաւին կարեւոր ինչ քան զամենայն՝ գիտել տեսանել զկրօնս աս-տուածպաշտութեանն նոցա: Հանգամանք աստուածպաշտու-թեանն՝ եթէ առհասարակ իմն ասել որ կամիցի, առ ամենեցուն սոցա ամենեւին ի վերջին իսկ անարգութիւն հասեալ կային, ընկղմեալ ի մոլար պաշտամունս:

1 Ծնն. Ի, ԻԶ:
2 Յես. ԺԳ. 3:
3 Յես. ԺԱ. 22:
4 Դատ. Ժ. 7, 8. ԺԳ. 1:
5 Ա. Թագ. Դ:
6 Ա. Թագ. Է. 7 — 14:
7 Ա. Թագ. ԺԴ. 3 . . . ԺԴ. 11, 13 — 23, 31, 47, 52:
8 Ա. Թագ. ԺԳ. 19 — 22:
9 Բ. Թագ. Ե. 17 — 25. Ը. 1: Ա. Մնաց. Ի. 4 — 7:
10 Բ. Մնաց. ԺԷ. 11:
11 Բ. Մնաց. ԻԱ. 16:
12 Բ. Մնաց. ԻԶ. 6, 7:
13 Բ. Մնաց. ԻԸ. 18:
14 Դ. Թագ. ԺԸ. 8:
15 Տես եւ Եսայ. ԺԴ. 29: Երեմ. ԽԷ: Ամովս Ա. 6 — 8: Զաքար. Թ. 5 — 8:

Ճշմարիտ ծանօթութիւն աստուածպաշտութեան որ յԱստուածոյն յայտնեալ էր, հանդերձ Նոյիւ պահեցաւ ի տապանին. եւ երկրորդս այս հայր մարդկութեան աւանդեաց անարատ՝ որդւոց իւրոց եւ թոռանց: — Այլ ի տարածանել եւ ի սփռել մարդկանն՝ սփռեցաւ եւ կռապաշտութիւնն՝ որ առեալ էր ծագումն ի յաճախելոյ ապականութեան վարուց մարդկան, եւ երթայր եւ զօրանայր անպաշտութիւնն: Ստոյգ իսկ թուի թէ սկիզբն կռապաշտութեան ի Բաբիլոն եղեւ. աշտարակն որ մնաց անկատար՝ լինել նշան զօրութեան Աստուծոյ ճշմարտի, փոխեցաւ ի մեհեան կռոց, եւ այնպէս նախ Քաղդեայքն անկան, եւ որպէս հաւանութեան թուի՝ յետ այնորիկ Յաբեթեանքն եւ յետոյ Սեմեանք, ուր՝ որպէս ի դէպ է, Նոյ եւ որդի նորա Սէմ եւ թերեւս եւ այլ եւս աստուածապաշտք վաղագոյն բաժանեալ անջատեցան ի մեղաւոր ազգակցացն իւրեանց:

## 68

Այնպէս անդէն 2000 ամօք յառաջ քան զՔրիստոս՝ բաժանէին կրօնքն մոլութեան յերկուս գլխաւոր ազգս, ի Սաբէականն եւ ի Մոգականն. առաջինն՝ պատկերաց պաշտօն մատուցանէր, իսկ երկրորդն՝ հրոյ:

1. Երկոցունց եւս պաշտօնեայք նախ աստեղաց աղօթս հարկանէին, մանաւանդ գնայուն աստեղացն (Աստեղապաշտութիւն), վասն ազդեցութեանն զոր աստեղքն ի վերայ երկրի ունին, կամ զոր համարէին թէ ունիցին, եւ զերկիր՝ ամս հազարաւորս համարէին լինել միջավայր ամենայն արարածոց: Յետ սակաւ ինչ միոյ՝ կամեցան ի համեմատութենէ աստեղացն առ միմեանս՝ եւ ի գնացից նոցա զլինելոց ինչ իմանալ, այս ինքն՝ զանցս թագաւորութեանց եւ իւրաքանչիւր մարդոյ. անտի առ սկիզբն Աստեղագիտութիւն, զոր մանաւանդ Քաղդէացիքն, կամ Քաղդեայք՝ ցեղ ինչ ի ցեղէց Բաբելոնացւոցն արկանէին յիւրեանց շահ ի կիր: — Յառաջնումն սակայն չէին յուրաստ ի բարձրագոյն յաներեւոյթ էութենէն, այլ զոգիսն զորոց համարէին տալ կենդանութիւն աստեղացն, առ միջին իմն աստուածս ունէին. այլ սակաւ երկրպագութիւն ոգւոցն այնոցիկ գնեալ ի բազում ազգաց միջի՝ մերժեաց ի բաց եւ խառնակեաց զգիտելն զոր զմիոյ միայնոյ ճշմարտին Աստուծոյ ունէին:

2. Որպէս զճշմարիտն Աստուած ընդ աստեղաց փոխանակեցին, նոյնպէս եւ զաստեղսն փոխանակեցին ընդ պատկերաց: — Կոչեցին իսկ Սաբեայքն զաստուածսն իւրեանց յերկիր այսր ի խոնարհ, եւ պատկերքն որ ի մեհեանս առնուին պատիւ՝ անցին կացին փոխանակ բուն գնայուն կերպարանացն որ յերկինս էին: — Այս

կուռք մեհենացն տունն այնուհետեւ զանուն կռոցն երկնաւորաց, եւ փաղփաղակի շփոթեցան ընդ աստուածոցն եւս ի գլխովին, եւ համարեցաւ իսկ թէ նոյն զօրութիւն է սոցա եւ նոցա. այսպէս առ սկիզբն Աստղապաշտութեան։

3. Դարձեալ յետ այնորիկ տարերքն յորս գիտէաք զօրութիւնք բնութեանն երեւէին, մարդիկ որ մեծամեծ գործովք անուանի եւ քաջանուն եղեն (Մարդկապաշտութիւն), եւ անասունք տուրք եւ մարքուրք, պիղծք եւ գարշելիք, նա եւ ախտք իսկ անգամ եւ կարիք՝ աստուածութեան պաշտօն առնուին։

4. Յարեան այնուհետեւ կամ թէ յաճախեցին պատրանք դիւց, որ քրմացն իւրեանց մանաւանդ յանձն էր հանդերձ կախարդութեամբն, ըղձութեամբն, երդմնեցուցանելով, մեկնութեամբ եւ քննութեամբ հանդերձելոցն, եւ ինքեանք քուրմքն առաջնորդէին այսմ ամենայնի եւ զաւանէին ի նոցունց շահս։ Մինչ դնէին թռչնոցն ի թռչանի, փորոտեաց անասնոցն յաղերց՝ աջող կամ ձախող աւուրց, եւ ի բեւր իրս եւ ի հանգամանս. եւ որպէս չէ մարթ ուրանալ՝ բազում անգամ այսք չարք գործէին ինչ նոքօք ազդեցութիւն. քանզի երեք նկարագիրքն՝ խաբէութեան, սպանութեան եւ անառակութեան զոր փաղփաղակի առ զանձամբ կռապաշտութիւնն, ամենեւին արժանի են սատանայի, որ մարդասպանն է ի սկզբանէ, սուտ եւ հայր ստութեանց[1]։ Ի յանդիմանութիւն հաստատութեան բանիցս այսցերոց, դիմեսցուք տեսցուք զամ մի զազգի ազգի կերպարանս կռապաշտութեանն։

## 69

Եգիպտացւոց՝ որպէս աշխարհն եւ ժողովուրդն՝ նոյնպէս եւ կրօնք մի միայն եւ առանձինն իւն են յազգի անդ իւրեանց. այս ինքն մեծաւ մասամբ՝ է պաշտօն երկրաւոր մարմնոց (շնչաւորացն)։ Յետոյ թուի խառնեալ եւ Սաբէութեանն դիցաբանութիւն։ Նախ երկոտասան կերպարանք շնչաւորաց՝ կամարի աստեղատանցն զոր երկոտասան նախաւոր աստուածս համարէին՝ որ երբեմն տիրեալ իցեն Եգիպտացւոց աշխարհին. յորս են Հեփեստոս՝ զաւակ հրոյ, Փթա՝ հայր ցեղից աստուածոցն. Պտանա՝ երկիր, Արամազդ Ամոն՝ զաւակ նաւարկութեան, եւ այլք եւս նոյնպիսիք։ — Ի սոցանէ սերեալ կարգին բուն տոհմային աստուածք նոցա՝ Օսիրիս եւ Իսիս, նա՝ իբրեւ արեգակն եւ Նեղոս գետ, եւ սա՝ նորին օգնական՝ իբրեւ լուսին եւ հովիտ Նեղոսի, երկոքին անբաժին ի միմեանց. Տիփոն աստուած հակառակորդ եւ թշնամի (Օսիրեայ եւ Իսեայ) իբրեւ տապ ամառանւոյ որ զգետն եւ զերկիրն ցամաքեցուցանէ։ — Հորոս է արեգակն երիտասարդացեալ որ

[1] Յովհ. Ը. 44.

միւսանգամ անձնացուցանէ Հելիոս, Բուբաստիս քոյր Հորոսի՝ նոյն լուսին, որոյ նուիրական անասուն էր կուզ։ — Թաթ կամ Թոտոս (Հերմէս) է պատուած գիտութեան, գտակ լեզուի եւ գրոյ, օրինաց, արուեստից եւ կրօնից, նմին դպիր եւ բարեկամ եւ խորհրդատու Օսիրեայ եւ Իսեայ։ — Առաւել քան զամենեսին եւ առհասարակ իսկ պաշտօն եւ մեծարանս առնոյր նուիրական ցուլն Ապիս, որ մշակութեան նշանակ էր, եւ շունչ կենդանութեան նորա էր ի դից անտի Օսիրեայ։ Բնակեալ էր նա ի Մեմփիս, ի Հեփեստեայ տաճարին. բուծանէին զնա նուիրական կերակրովք, արբուցանէին ի սուրբ աղբերէ, եւ ի մեծամեծ տօնս միայն ցուցանէին ամենեցուն. կառուցէին տօնս եւ տարեկանս ի պատիւ նորա, եւ երինջ կարմիր՝ որ նշանակ էր Տիփոնեայ, զոհէին առաջի նորա. եթէ մեռանէր Ապիս, սուգ առնոյր ամենայն աշխարհն Եգիպտացւոց, մինչեւ գտանէր միւս եւս նոր Ապիս, զոր նշանակօք ինչ ճանաչէին։

Թէպէտ հանապազ այլոց եւս նուիրական գազանաց անչափ էր բազմութեամբ, այլ ոչ ամենեցուն հաւասար պատիւ էր. իւրաքանչիւր Օրինաց (նահանգաց) առանձինն անասունք էին, եւ բազում անգամ որ աստ իբրեւ նուիրական անասուն առնոյր մեծարանս՝ անդ արհամարհէր եւ զենոյր. աստ զոխատան (զկոկորդիլոս)՝ անդ զնորին թշնամի զհետահան պաշտէին։ Բազում եւ անհամար պատկերք յօրինեալ էին յաստուածոց անտի նշանակօք իմն, եւ անտի կազմեցան ահագին կերպարանք անասնոց եւ մարդկան՝ խառնելոց ընդ միմեանս։

## 70

Յարեւմտեան Ասիա, այս ինքն՝ ի Տիգրիս գետոյ մինչեւ ցՆեղոս գետ (առ Բաբելացւոց, Ասորեստանեայց, Ասորւոց, Քանանացւոց եւ ազգականացն նոցա Փիւնիկեցւոց եւ գաղթականութեանցն նոցա՝ որպիսիք Կարքեդոնացիքն) էին միակերպ իմն կրօնք Սաբէութեան ամենեւին անխառն, այս ինքն՝ զմեծամեծ մարմինս երկնից համարել աստուածս, եւ ի նոցանէ եւ ի նոցունց ազդեցութենէ համարել ոչ միայն զպտղաբերութիւն երկրի, այլ եւ զանձս եւս մարդկան կամ ի բարութիւնս կամ ի չարութիւնս. միանգամայն զամենայն նիւթական բնութիւն յարուական եւ իգական ազգ բաժանել, եւ ըստ այսմ մտաց հարկանել նոցա պաշտօն[1]։

1. Զարեգակն իբրեւ տուիչ պտղաբեր զօրութեան բնութեանն եւ ամենայն իսկ բարութեան՝ Բաաղ (տէր) անուն եդեալ պատուէին Քանանացիքն. նմին կցէր Բէլ աստուածն

1 Տես՝ ակնարկեալ յօրէն. Ը. 2.

Բաբելացւոց, Մերոդաքի աստուած Քաղդէացւոց (այս ինքն Թագաւոր քաղաքի)՝ զոր Յոյնք Հերակլէս անուանէին։ Երեւելի եւ նշանաւոր էր մեհեանն Բահաղու (իբրեւ արեգական) ի Բահաղբեկ (յՀեղիոպոլիս որ է Արեգ քաղաք) յԱսորիս։ Էին նորա ոչ մեհեանք միայն[1], այլ եւ բագինք եւս[2] որ ի տանիս եւ ի բարձաւանդակս[3], ընդ ծառովք[4], ի հովիտս եւ ի դրախտս[5] կանգնեալ էին. էին եւ անդրիք[6]։ Քուրմք նորա բազմամբոխ յոյժ էին եւ ի կարգս կարգս զատեալ[7], որք մատուցանէին առաջի նորա զոհս երբեմն առանց արեան եւ երբեմն արեամբ, եւ մանկունս եւս[8]։ Իսկ զԲահաղ-Փեգովր կամ զԲեղփեգովր Մովաբացւոցն մեծարէին նուիրելով աղջկունս մատաղս[9], եւ որպէս թուի՝ էր նոյն ընդ Բահաղ-Համմոն[10]. — Իսկ Փղշտացիք պաշտէին զԲահաղ-Զեբուբ կամ զԲեեղզեբուղ (զՃանճիկ աստուածն) յԱկկարոն իբրեւ կուռս որ առնիցէ ընձեռութիւնս զհանդերձելոց իրաց[11]։

2. Իսկ իմն էր ընդ պաշտամանն Բահաղու եւ պաշտօն Աստարովթայ կամ Բահաղտիսայ իբրեւ կնոջ Բահաղու[12] որ անուանեալ կոչէր աւելին երկնից[13]։ (Ալիթ եւ Միլիտտա եւս անուանք էին նորա)։ Նա էր նա Լուսինն՝ իգական աստուած Բաբելացւոց, Փիւնիկեցւոց եւ Ասորւոց. եւ զանանէր պատիւ ի նուիրելոցն կանանց առնականաց եւ կուսանաց։ Յոյնք եւ Հռոմայեցիք համեմատէին զնա երբեմն ընդ Ափրոդիտեայ եւ երբեմն ընդ Արտեմեայ եւ երբեմն ընդ Յունոյ, որ զաստուածն սիրոյ եւ զթագուհին երկնից եւ զլուսին նկարէին. Ձկնակերպարան աստուածքն՝ Դերկետոյ Ասորւոցն որոյ գլուխ կնոջ էր եւ մարմին ձկան, եւ Դագոն Փղշտացւոցն[14] մերձաւոր իմն էին Աստարովթայ։

3. Մողոք կամ Միղքոմ (Թագաւոր ժամանակի) էին կուռք ինչ Ամոնացւոց եւ Փիւնիկեցւոց՝ համեմատ Քիւան աստուածոյ Բաբելացւոցն եւ Կռոնեայ Յունաց եւ Սատուռնեայ Հռոմայեցւոց, եւ համարէր էութիւն չար, որում քաւութեան պատարագս մատուցանէին։ Անդրի նորա պղնձի փոր եւ մարդկային ունէր գլուխ եզին. ի ներքուստ ի վեր ջեռուցանէին զանդրին եւ դնէին ի վերայ բազկաց նորա զմանկունսն սահմանեալս ի զոհ, իսկ զճիչ մանկանցն ծնծղայիւք եւ թմբկօք խափանէին[15]։

Քաղդէացիք կամ քաւդեայք այս ինքն քուրմք կամ մոգք Բաբելացւոցն ածին անձնուին ի կատարումն զաստեղացն պաշտօն, որպէս ինքեանք իսկ թուին արարեալ սկիզբն պաշտամանն

1 Գ. Թագ. ԺԶ. 32։
2 Երեմ. ԺԱ. 13։
3 Երեմ. Բ. 20. Դ. 6։ Գ. Թագ. ԺԱ. 7։
4 Ովս. Դ. 13։
5 Երեմ. Բ. 23։ Եսայ. Ա. 29. ԿԵ. 3։
6 Դ. Թագ. Գ. 2։
7 Դ. Թագ. Ժ. 19...։
8 Երեմ. ԺԹ. 5։
9 Թուոց. ԻԵ. 1 — 3, 6, 18։
10 Թուոց. ԻԱ. 29։ Դատ. ԺԱ. 24։ Գ. Թագ. ԺԱ. 7։
11 Դ. Թագ. Ա. 2, 3։
12 Դատ. Բ. 13։
13 Երեմ. ԽԴ. 17, 18, 19, 25։
14 Ա. Թագ. Ե. 1 — 5։
15 Երեմ. ԼԲ. 35, տես եւ ԺԹ. 4 — 6։

այնորիկ ըստ առաւել զխառնութեան աստեղացն զոր ունէին, խառ-նեալ ի նոյն եւ զպաշտօն մարդոց վախճանելոց, որպիսիք՝ Կիւոսն (Սաւնոս), Մերովդաք (Արէս), Նեբուդ (Հերմէս), Միղիտտա (Լուսին), Բէլ (Արամազդ զոր ի Հայաստան մեհենին Բելայ պա-շտէին 70 քուրմք նուիրօք կերակրոց եւ ըմպելեաց[1]). սոքա էին հինգ աստուածք երկնից։ Յետ նոցա գային մի ըստ միոջէ այլ եւս 36 աստեղք. յորս յաւելան 12 պատկերք անուանց աստեղատանցն, բաց յայլ եւս բազմութենէ կոչոյն զոր ունէին Բաբելացիքն[2]։

Հաստատային առհասարակ նոքա Ասորեացիք ունէին նոյնպէս զաստեղացն պաշտօն. իւրաքանչիւր ցեղ ի ցեղիցն՝ մի կամ բազում աստեղս մեծարէր. ընդ պաշտաման աստեղացն յանձախէին եւ մեկնութիւնս՝ խառնեալ ի նոցանէ զհանդերձեալսն։

## 71

(Յոյնք՝ որպէս ազգ քաղաքականութեամբ եւ արուեստիւ ընտրեալքն յազգաց ասիացւոց որք ընդ արեւմտ իշխանք էին, եւ ի զարգացումն իւրեանց կարեւոր ընդ ասիական ձեւոց կրօնութեան, նոյնպէս եւ կրօնք Յունացն էր պաշտօն ազգային կրօնութեան։ Կրօնքն դիցաբանութիւն նոցա էր մարդկեղէն կամ պատմական, փոխանակ զբնութիւն մասնաւոր այլոց կրօնութեանց կոչուցանելոց ծա-նուցեալ զպատիւ ազնուականութեան մարդոյն՝ զաստուածու-թիւնն եւս համարեցան մարդկութիւն։—Զեւս (Դիոս) եւ Հերա՝ աստուածք օդոյ՝ էին թագաւոր եւ տիկին աստուածոց եւ մարդ-կան։ Բայց եւ թագաւորն աստուածոց բաց յաստուածեղէն առա-ւելութեանցն անկեալ կայ ընդ ամենայն ախտութեամբք եւ անկարգութեամբք մարդկան. նոյնպէս եւ տիկին երկնից Յունաց չէ ազատ ի կարեաց նախանձոտ ճոխութեան կանանց։ Ապողոն՝ արեգական աստուած, որոյ հանդերձ գեղեցկութեամբ երիտա-սարդութեանն է եւ գեղեցկութիւն մտաց. նորա տուրք են երգք եւ այլ եւս գեղեցիկ եւ ազնուական արուեստք. նմին իրի զՄու-սայսն ունի առընթեր իւրեւ նուագիչս. սակայն եւ նա չէ ազատ ի փորձանաց զգայնոց։ Հերմեայ ընծայեն առասպելք զհնարագի-տութիւն, զխնամութիւն եւ զհաւանեցուցիչ ճարտարխօսու-թիւն. բայց այն տուրք ըստ մարդկեղէն չափոյ չափեալ են, նմին իրի եւ ի մարդկեղէն յանցանս զառածանին. խնամութիւնն՝ ի նենգութիւն եւ ի խարդախութիւն, ճարտարխօսութիւնն՝ ի ստութիւն եւ ի խաբէութիւն, հնարագէտ ճարտարութիւնն՝ ի շահասէրն անյագս եւ յանիրաւ ստացուածս, մինչեւ Հերմեայ լինել աստուած պաշտպանիչ գողոց։ Աստուածացեալ էր մարդ-կեղէն արութիւնն եւ քաջութիւնն ի վերայ Արեայ, սակայն չէր

1 Դան. ԺԴ. 2, 9։ 2 Տե՛ս ակնարկեալ յերկմ. Ն. 38։

այն բարոյական արութիւն որ ի բարոյիցն զօրութենէ բխէ եւ ի բանաւորութենէ առաջնորդի եւ ի բարձրագոյն ինչ վախճան. գի-տէ՝ հզօր երեւեալ ոչ ի գործելն միայն՝ այլ եւ ի կրել. այլ փո-խանակ ընդ այնր՝ ոգի գրգռեալ ցասմամբ եւ վրէժխնդրութեամբ, որոյ այն եւեթ կայ ի մտի՝ տապալել եւ քանդել: Ոգիական աստուածութեանց բաց ի Հերայ՝ այլ եւս երեք ցուցանեն զա-ռանձինն ինչ սեպհականութիւնս ազգին այնորիկ: Ափրոդիտէ երեւեցուցանէ զգեղն եւ զհրապոյրս ազգին այնորիկ. հակառակ իմն նմին Արտեմիս՝ զկուսութեան սէր, սակայն եւ այս առանց բարոյական թելադրութեան եւ պատճառաց է, եւ իբրեւ նշանակ իմն կարծեցոյ զգայմունս՝ առաւելագոյն սիրով կենաց որսորդու-թեան: Աթենաս յանդիման կացուցանէ զկին առանձին կամ զկոյս հանդերձ արուական իմաստութեամբ եւ արութեամբ իբրեւ ինչ՝ որ դուն ուրեք դիպեցի:

Արդ քանզի աստուածութիւնքս հանդերձ այսպիսի սեպհա-կանութեամբ ոչ ինչ այլ ինչ էին՝ բայց բարձրագոյն իմն մարդիկ եւ ոչ այլակերպ ինչ ազգաւ՝ ի մարդկանէ, ի տեղս հաղորդու-թենէ երբեմն կացին որդիք կամ դստերք աստուածոց զոր կիսաստուածս կամ դիւցազունս Յոյնք կոչէին: Զսոսա զոր պուէտք նախ ուրոյն ուրոյն հնարագիտութեամբ էին խնկեալ, Եսիոդոս ի ծննդոց աստուածոցն զոր գրեաց՝ զամենեսին ի մի ինչ բոլոր բովանդակեալ յօրինեաց կարգաւ իբրեւ զշղթայ՝ կարգեալ ծննդեանն նոցա ժամա-նակս չորից դարուց յորս մարդկեղէնն իբր երթեալ նուազեն մին-չեւ յայժմու տառապեալ հանգամանս:

Ի պաշտամունս Յունացն յաճախագոյն եւ գունակ գունակ էին զոհքն քան յայլ եւս բազում ազգս, այնու՝ զի թիւ զոհիցն ըստ թուոյ աստուածոցն էին, եւ ընտրութիւն նիւթոյ եւ օրինա-կի զոհիցն ըստ առանձինն բարուց իւրաքանչիւր աստուածոցն եւ նոցին տօնակերպաց: Թէպէտ եւ զոհքն որպէս յայլ եւս ազգսն, նոյնպէս եւ առ սոսա՝ առ երկիւղի բարկութեան աստուածոցն էին, սակայն այն երկեւղ ցածուցեալ իմն եւ մեծաւ մասամբ հեղ-ձեալ էր ի թեթեւամիտն բարոյից Յունացն եւ ի զուարթու-թենէ ցնորից նոցա. նմին իրի գործք պաշտամանն առ նոսա առա-ւել ունէին զնկարագիր հասարակաց տօնից եւ ուրախութեան քան կրօնական ինչ գործոց. զայս՝ ձեւքն նոցա եւ կաքաւք եւ երգք եւ խաղք որ ի տօնս աստուածոցն լինէին՝ ցուցանեն: Մա-նաւանդ ի պաշտամունս այնպիսի ինչ աստուածոց յորս ախտք մարդկան յաստուածութիւն փոխեալ էին՝ տային զանձինս անձ-նեւին յանկարգութիւն պղծութեան, որպէս ի տօնսն Ափրոդի-տեայ ի Պափոս եւ ի Կիպրոս, նոյնպէս եւ ի տօնսն Դիոնիսեայ:

Ի հռոմայեցիս անդր անցին կրօնք Յունաց հանդերձ պաճու-ճեալ դիցաբանութեամբն: Սակայն ունէին ինչ հռոմայեցւոցն կրօնք

առանձինն որոյ մեծ մասն յԵտրուրիացւոց անտի էր։ Բայց առաջին դիւցաբանութիւն նոցա յստակագոյն էր։ Պաշտէին նոքա զգերագոյն ինչ զօրութիւն՝ որ վերակացու իցէ անցից անցելոց ի վերայ մարդկան. զայս զօրութիւն ժամանակագիրք նոցա կոչեն Յուպիտէր[1] (Արամազդ), եւ զաստուած զայն պատերազմի եւ քաջութեան զոր համարին լինել հիմնիչ քաղաքին իւրեանց, Կուիրինոս անուն, որ ի մրրկի անհետ յաչաց լինել՝ կարծեցաւ երթալ յերկինս։ Անէին նոքա եւ զոյգս զարանց ումանց եւ զթագաւորաց որ ի բուն հին ժամանակին եկեալ յաշխարհն Իտալիացւոց, անդ զառաջին սերմանս մարդկօրէն կենաց եւ բարոյից սերմանեալ իցեն, որպիսիք են Յանոս (երկդիմին), Սատուռնոս, Փաւնոս, Եւանդրոս, Հերկուղանոս որ եւ Հերակղէան կոչի. սոցա իբրեւ երախտաւորաց աշխարհին համապազորդ կայր յիշատակն եւ ոմանց ի նոցանէ լինէր եւ աստուածօրէն պատիւ։ Այլ բուն գլխաւոր աստուածք Հռոմայեցւոցն՝ կային միայն Յուպիտէր, Մարս եւ Կուիրինոս. եւ Նուման թագաւոր Հռոմայեցւոց որ նախ զկրս կրօնիցն նոցա ած ի կարգ, վասն միոյ միոյ ի նոցանէ կացոյց առանձին քուրմ[2], որպէս եւ զհայրենի պաշտօն հրոյ կամ Վեստայ զոր Աղբանացիքն ունէին, եւ զկարգս վեստեան կուսանացն եդ։

Այս իսկ է բուն նախաւոր հայրենի դիւցաբանութիւն Հռոմայեցւոցն. նմին իրի յունական դիւցաբանութիւնն յետոյ՝ որպէս ի կարգէ Հռոմայեցւոց պատմութեանն յայտ է, իբրեւ օտարեալ իմն ի ներքս մտանէր։ Երկրորդ իմն ընտրիչ ի Յունացն կրօնից այն է՝ զի ուր Յոյնք զազդելի գեղեցկութիւն միայն եւ զկարիս եւ զախտս հանէին յաստուածութիւն՝ անփոյթ արարեալ զբարոյական ազդեցմանց, Հռոմայեցիք աստուածացուցին զառաքինութիւնս եւ զայնպիսի սեպհականութիւնս որ ինքնին զմարդն բաւական են առնել ազնուական, մեծ եւ հանդարտ, առանց որոց մանաւանդ տէրութիւն ինչ չկարիցէ կալ ի հաստի։ — Առաքինութիւն[3] է առաջին յաստուածոց աստի. առընթեր նորա էր բագին Պատուոյ[4]։ Առընթեր Յուպիտերայ (Արամազդայ) ի Կապիտոլինին կայր կանգնեալ պատկեր Հաւատարմութեան[5]։ Որպէս այս առաքինութիւնք վասն համօրէն տէրութեանն նեցուկք էին յերեսաց արտաքնոցն, նոյնպէս անդէն ի ներքս՝ Միաբանութիւն (վասն արանց) եւ Ամօթխածութիւն[6] (վասն զգաստութեան կանանց), որոց մեհեանք եւ պաշտամունք էին. այսպէս եւ քաղաքային առաքինութիւնք Յոյս, Փրկութիւն եւ Յաջողութիւն[7] ի կարգս աստուածոց էին։

Միւս եւս առանձին նկարագիր էր կրօնիցն նոցա՝ հաւատալ թէ ոչ միայն վասն իրաց մարդկան եւ ազգաց հոգան աս-

1 Jupiter, stator, feretrinus, capitolinus.
2 Flamen.
3 Virtus.
4 Honos.
5 Fides.
6 Concordia, Pudicitia.
7 Spes, Salus, Fortuna.

տուածքն[1], այլ եւ որ ինչ օգուտ նոցա եւ վնաս իցէ՝ զայն նշանակօք ինչ կամ յերկինս կամ ի հաւս եւ յանասունս եւ այլովք ինչ երեւելի տեսլեամբք յառաջագոյն ազդեցուցանեն ։ Նմին իրի իսկ ամենեւին մտադիր էին քննել եւ անսալ այսպիսի կարծելոյ ակնարկութեանց եւ նշանացն աստուածութեան · վասն որոյ իսկ էին կարգեալ իշխքն եւ հաւադէտք[2] որ ի Նումայն եղան, եւ որ յետոյ մուծան դէտք ընդերաց՝ ի կատարել անդ զպաշտամունս զոհիցն, ժողով քրմապետացն[3] որ հսկէին ի վերայ՝ զի ճշդիւ գործք եւ պաշտմունք պաշտամանցն պահեսցին, եւ մի ինչ նոցին հակառակ գիւցի, ժողով Տասն կամ Հնգետասան արանց[4] որ ի սիբիլեան մատենից յայտ առնէին՝ թէ որպէս պարտ իցէ զցասումն դիցն ցածուցանել ի սաստիկ ինչ նեղութեան եւ հարուածոց ժամանակի ։ Յայն սակս եւ կրօնք նոցա ոչ իւրաքանչիւր ուրուք առանձինն գործ էր, այլ իրք եւ հոգք համօրէն տէրութեան · ոչ ինչ գործ հասարակաց երեւելի վասն պատերազմի կամ խաղաղութեան լինէր՝ առանց կրօնից ինչ գործոց · որով հռոմայեցիքն կրօնասէրք եւ աղնուապաշտօնք քան զամենայն հին ազգս երեւին ։)

## 72

Արեւելեան աշխոյժ ազգաց կրօնք յառաջագոյն երեւին քան զամենայն կրօնս զորոց ցայժմ պատմեցաք · Հասարակաց իմն կրօնից նոցա նկարագիր այն է զի փիլիսոփայական իմն բովանդակութիւն ունին, եւ յամենեսին ի նոսա կայ տեսիլ բղխման[5] ։

Պատկեր հնդկային աստուածխօսութեան է այսպիսի ինչ ։ Բարձրագոյն էութիւնն, բուն իսկ աստուածութիւնն է Պարաբրահմ, բայց ծածկեալ եւ թագուցեալ յարձակ եւ յանհաղորդական կեանս իւր, անսահմանական, առանց ճանաչելոյ է · եւ որպէս չիք նորա երեւումն եւ պատմութիւն, նոյնպէս եւ առանց պատկերի եւ մեծարանաց է ։ Սակայն իբրեւ յաւիտենական հիմն ամենայնի բարձեալ բերէր յինքեան զսերմանս եւ զտենչանս գոյութեան իւրաց ։ Առաջինն եւ Բրահմա՝ առաջին յայտնութիւն ծածուկ աստուածութեանն, որով տենչանքն անցին ի գոյութիւն ի ժամանակի, յայն սակս Բրահմա է արարիչ աշխարհի որ զամենայն ինչ ած ի գոյ եւ իշխէ նոցա · երեւելի գործ նորա է ժողովուրդն Հնդկաց ի տոհմս իւր, այնու զի ի գլխոյ անտի նորա ելին քուրմքն կամ Բրահմանք, յուսոց նորա՝ տոհմ զինուորացն, յորովայնէն՝ վաճառականաց տոհմն, եւ յոտիցն՝ չորրորդ տոհմն Հնդկաց ։ Վասնզի արարիչն Բրահմա յամենայն արարածս իւր

1 Consulere deos rebus humanis.
2 Augures.
3 Collegium pontificum.
4 Decemviri — Quindecemviri libris sacris inspiciundis.
5 Emanation.

նշանակի, յայն սակս չէք նորա աստուածքին պատկեր եւ ոչ տաճա-քին ինչ պատուի պաշտաման, միայն Բրահմանքն իբրեւ ծնեալք ի հոգւոյ անտի նորա՝ հզօրապէս պատուեն զնա, յորժամ այգուն այգուն կան առ նա յաղօթս. այս միայն են կրօնք նոցա: — Բայց ի Բրահմայ արարչէ յայտնէ զմիւսն աստուածութիւնն դարձեալ իբրեւ պահիչ եւ իբրեւ նորոգիչ լուծելոյն. այս յայտնութիւն է Վիշնու, եւ նշանակի առ ի ջուրս իբրեւ ի սկզբան՝ յորմէ անցէն յառաջինումն իւրն առնուն ծագումն եւ կամ սնունդ, յայն սակս եւ զայն պատկերաց նորա է կապուտակ: — Երրորդ բնութիւն եւ յայտնութիւն Պարաբրահմայ անհրեւութին աստուծոյ՝ է Շիւա կամ Միւա որ համարի սկիզբն քայքայման եւ լուծման, եւ ըստ բարոյական մասին՝ սկիզբն պատժիչ եւ վրէժխնդիր արդարութեան, նմին իրի եւ նշանակ նորա է հուր, եւ զայն նորա կարմիր, եւ ընծայեցուցանի նա ամենեւին խիստ եւ ահաւոր, առանց ազահատութեան եւ առանց ողորմոյ, իբրեւ տէր մահու, եւ յաղթող անպարտելականաց. եւ նկարին զնովաւ ամենայն կերպարանք ահագինք: — Այս իսկ է հնդկային երեքութիւն [1] զոր չէ պատշաճ համեմատել ընդ քրիստոնէական Երրորդութեանն: Բայց ի Բրահմանեանցն որք աստուածքն իմն առանձն կարգեն՝ բաժանեալ են Հինդիկք ի պաշտօնեայս Վիշնուայ եւ Շիւայ:

Վասն բնման երեքգանց սոցա, որպէս եւ վասն արարչութեան աշխարհի գտանի ի Վեդայսն եւ ի մեկնութիւնս Վեդայից ինչ ինչ արտաքոյ առասպելական փառաւորութիւնս այս անցանէ յառաջադիմականութիւն եւ ի բազմաստուածութիւն: Ամփոփական իմն է խնամալ նոցա զգուշութիւն իբրեւ ծնունդ ըստ յօժարութեան իմն եւ հաղորդութեան երկուց սերից. այսպէս զնի առընթեր Պարաբրահմայ՝ նմին ընկեր Պարաշակտի նախամայր մայր ամենայնի, առ Բրահմայ կայ խանդարուն կինն Սարասուատի, առ Վիշնուայ՝ Լակշմի բազմածին, առ Շիւայ՝ Պարուատի աստուածուհին եւ խրատիչ, որպէս զի ստորակայութիւնք աստուածոցն միմեանց յարուական եւ յեղական կերպարանս միանգամայն երեւեցուցանին: Վասն արարչութեան յառակագոյն են բանք Պեգանդ-Շաստերի: Ի յաւիտենից, ասէ, էր անքն առ Աստուած, անքն ած զզօրութիւնն ի մէջ. ի համբուրել զօրութեանն եւ բարութեան զմիմեանս՝ եղ եկաց նիւթն, որ յերից մասամբ զօրութեանց անտի երիս իմն զօրութիւնս ընկալաւ՝ զյօրինելոյ, զբաժանելոյ եւ զհաստատակակելոյն կշռոյ. ի փոփոխս դարձելոյ նոցա երեք կացին տարերքն, նախ եթեր (Ակաշ) որ կարգաւ զօդս, զհուր, զջուր եւ զերկիր ծնաւ. այսպէս երեք տիեզերք ի խաւարէ ի լոյս: — Նմին համեմատ առասպելական իմն է պատմութիւնս վասն ձուոյ աշխարհի յորում փակեալ էր Պարաբրահմա զաւակերս, որ յերկուս կէսս հատաւ,

1 Trimurti.

եւ իւրաքանչիւր կէս ի կիսոցն յեւթն մասունս բաժանեցաւ, յորոց եւթն վերին եւ եւթն ներքին աշխարհքն կացին:

Բուն հիմն եւ աղբիւր առասպելաբանութեանց նոցա այն էր՝ զի Վիշնու ըստ վարդապետութեանն նոցա մշտանգամ յայլ եւ այլ կերպս երեւէր իբրեւ մարմնացեալ իմն ի նոսա, որպէս եւ Շիւա երեւէր յայլ եւ այլ կերպարանս. իւրաքանչիւր ի մարմնաւո֊րութեանց աստի՝ ունէր անցնիւր առասպելաբանութիւնս երբեմն բազմապատիկ իսկ, որով զիւրաքանչիւր մարմնաւորութիւն անձ֊նաւորելով մարթի ունել այնուհետեւ զթիւ աստուածոցն Հնդկաց հանել աւելի քան զ30,000: Նա ըստ թուոյ աստուա֊ծոցն բազմանայր եւ թիւ զոհիցն եւ գործոց պաշտամանց նոցա:

Իսկ ըստ բարոյական հանգամանացն՝ ուսուցանէին կրօնք Հնդ֊կաց առհասարակ անկումն իմն ոգւոց կամ մեղաւորութիւն. այսմ մեղաց դարմանիչ զոք կամ փրկիչ ոչ դնէին, այլ մանաւանդ֊թէ եւ Բրամա եւս՝ որ արարիչ եւ տէր ոգւոց է, ի նոյն անկումն անկեալ է՝ մեղուցեալ ամբարտաւանութեամբ, Նմին իրի եւ հարկ իսկ է մեռանել եւ մշտանգամ ի Վիշնուայ ծնանել: Նմին իրի պարտ է ոգւոցն անձամբ զանձինս սրբել, եւ սրբութեանն դարմանք են ապաշխարութիւնքն եւ խստամբերութիւնք՝ որ յօ֊րէնսն նոցա գրեալ կայցեն, եւ կամ զոր անձամբք յանձանց վերայ կամակար դնիցեն. այսպէս ժուժկալութեամբք եւ ազգի ազգի լլկանօք անձանց՝ ջանան սրբել զանձինս եւ զերծանել ի տիրու֊թենէ մարմնոյ եւ նիւթոյ: Այլ թէ յորչափ սրբութիւն հա֊սեալ իցեն՝ զայն յետ մահուն ընտրէ դատաւորն Յամա, զի ի բնա֊կութիւն անդր նորա երթան ոգիքն զի դատեսցին ի նմանէ՝ թէ արդեւք արժանի իցեն ի բնակութիւն ոգւոցն բարեաց երթալ՝ եթէ ի սանդարամետս, զի անտի յետ սահմանեալ ինչ ժամա֊նակի յայլ եւս մարմինս փոփոխեսցին ոգիքն: — Այս փոփո֊խումն ոգւոց՝ մարմնոց ի մարմինս սահմանեալ որոշէ մի՝ յայլ եւ այլ ազգէ անտի մեղացն զոր ոգիքն ունին, եւ երկրորդ՝ յայլ եւ այլն աստիճանէ եւթն ներքին եւ վերին աշխարհացն. ի ներ֊քին աշխարհան լինին փոփոխմունքն ի քարինս, ի տունկս, եւ ի շնչաւորս՝ յորս փոփոխին այնոքիկ որ արժանի պատժոց լեալ իցեն, իսկ ի վերին աշխարհան լինին փոփոխմունք ոգւոցն այնոցիկ որ առաւել յառաջութեան եւ կատարման կարօտ իցեն: — Այս անցք իրաց որ յանկանէն անտի ոգւոցն մինչեւ ցնորոգումն նոցա լինին, բովանդակէ չորս շրջանս ժամանակի՝ որոց տեւականութիւն միահամուռ է 4,320,000 ամաց. ապա գայ միւս եւս նոր աշխարհ, եւ այսպէս մի ըստ միոջէ:

Յոյժ իսկ կանխագոյն քան զԹուականութիւնն Քրիստոսի՝ ել ի Բրամանութենէ իբրեւ հերձուած՝ Բուդդայութեանն աղանդ՝ որոյ առաջնորդ եկաց Բուդդա (Գաւտամա Բուդդա, կամ

անծանօթ. ի նմանէ յառաջ քան զսկիզբն ժամանակի բխեալ եղեն երկու նախաւոր էութիւնք՝ Որոմազդ (Ահուրամազդա) նախաւոր բարի եւ սկիզբն ամենայն բարութեան, եւ Խարաման կամ Արհմն՝ նախաւոր չար եւ սկիզբն ամենայն չարաց իրաց: Երկոքին եւս եղեն արարիչք, եւ իբրեւ հոգեղէն էութիւնք՝ երկոքին նախ արարին ոգիս. Որոմազդ կամ Որմիզդ արար նախ զեւթն Ամշասպանդս (իշխանս լուսոյ) որ պատեալ կան զաթոռով նորա, այլ եւս քսան եւ ութ Ազատս (Իզէտ), որոց գլխաւոր Միթր կամ Միհր է, որք առաջնորդութեամբն Որոմազդայ վարեն զիշխանութիւն ժամանակի եւ աշխարհի, յետոյ ուրեմն զանթիւ զանհամար Ֆերուէրսն կամ զհրեշտակսն (Ֆերիշթէ) որ են պաշտպանիչք իւրաքանչիւր էութեանց, քանզի իւրաքանչիւր էութիւն ունի մի մի ի նոցանէ: Հակառակ Որոմզդայ արար եւ Արհմնն բազմամբոխ գունդս ոգւոց՝ զԴեւսն: Այս է կարգ ոգւոցն:

Իսկ նիւթական աշխարհս է արարած Որմզդի. քանզի այսպէս իսկ որոշեալ եւ սահմանեալ էր թէ Որմիզդ զառաջին 3000 ամսն միայն իւրն թագաւորեսցէ, եւ ի ժամանակին յայնմիկ ած նա ի գոյ զերկինս եւ զլուսաւորսն եւ զաստերսն: Զսերմանս ամենայն կենդանեաց՝ զմարդկան եւ զգազանաց եւ զտնկոց առհասարակ եդեալ էր յառաջնում ցուլն Աբուդադ, որ նշանակ զօրութեան է, բայց անդէն սկսաւ երկրորդ շրջան 3000 ամաց յորում ժամանակի եւ Արհմն եւս ունի իշխանութիւն տիրելոյ ընդ Որմզդի: Արդ եմուտ Արհմն ի թագաւորութիւն անդր լուսոյ, սպան զցուլն առաջին, թէպէտ եւ այպրեցուցին Ազատքն զսերմանս կենդանեաց եւ թողին բուսանել, սակայն Արհմնն յայլ եւ այլ կերպարանս գազանաց մտեալ եղծ ապականեաց զբարւոք արարածսն, եւ ած խաւար զամենայնիւ՝ մոլորեցուցեալ եւ զմարդն կերպարանօք օձի, եւ զայլ եւս արարածսն ապականեալ խանգարեաց անասնովք եւ բանջարօք թունաւորօք: Յայնմ ժամանակէ հետէ յամենայն իրս՝ ընդ բարւոյն խառն է եւ չարն, եւ սեւէ ի նոսա մարտ պատերազմի բարւոյն եւ չարի, եւ խառնմամբն այնուիկ եւ կռուով անկաւ ամենայն ընդ անցաւորութեամբ եւ ընդ մահուամբ: Սակայն մարդկան՝ որ հաւատարիմ կան ի ծառայութեանն Որմզդի, հրեշտակք նորա օգնական լինին ի պատերազմի զոր ընդ չարին ունին. ընդունին զոգի նորա ի մահուն եւ անցուցանեն ընդ կամուրջն Չինեւադ՝ ի բնակութիւնս երանելեացն, ուր Որմիզդ այգայն դատաւոր տայ իւրաքանչիւր ըստ գործոցն երանութիւն. նմին հակառակ ոգիք այնոցիկ որ զԱրհմնն պաշտեն՝ յափշտակեալքն ի դիւաց եւ տարեալ լինին ի դժոխս (Դուզախ): Յետ անցելոյ պատերազմին ցասհմանեալ ժամանակն, երթայ եւ զօրանայ բարին յաղթութեամբ, լինի փոփոխումն համօրէն արարածոց, յառնեն մեռեալք, հուրն հրդեհէ զամենայն տարերս, այրէ զա-

ամենայն դատապարտեալսն, յետոյ ուրեմն եւ Արհմն ապաշխարութեամբ սրբեալ՝ Որմիզդ եւ Արհմնն միաբանեալ առնեն յաշտ բարձրագոյնն Աստուծոյ եւ այնպէս ոգիքն առնուն կեանսն յաւիտենականս։

Ընդ այսմ զրադաշտական վարդապետութեան կան խառն եւ զարմանալի ինչ հրամանք. յառաջ քան զնոսա առէպ թելադրութիւն առ ներքին ուղղութեան ի խորհուրդս, ի բանս եւ ի գործս, եւ զգուշ եւ յորդորիչ ի դոյն՝ այսպիսի իմն պատճառք ընծային թէ սրբութեամբն այնուիկ նման լինի մարդն Որմզդի եւ նմանող Ամշաստոց նորա, այլ թէ ոչ անկանի ընդ բռնութեամբ Արհմենին։ Համեմատ իմն ապին են եւ պատուէրք վասն արտաքին ուղղութեան առհասարակ յամենայն կեանս, մանաւանդ ի յաշտն առնել եւ առաւել ի պահել սուրբ զնուիրական կրակն, որ համարեալ էր նշանակ զօրութեանն Աստուծոյ եւ պատուական քան զամենայն պատարագս. յետ հրոյ սուրբ է մանաւանդ եւ ջուրն, զոր ընդ հրոյ խառնել մեղք էին, բայց նոյն ջուր զամենայն անսրբութիւնս զկանանց եւ զակամայ ջնջէր։ — Բուն գործք պաշտամանն ըստ պատուիրանաց գրոցն Զրադաշտայ էին ընծայք ի բերոյ երկրի, ծառոց եւ անասնոց եւ այլոց նոյնպիսեաց, բայց զենումն զոհից չիք առ Զրադաշտայ. ընծայքն մատչէին իբրեւ գոհութիւն առ Որմիզդ՝ տուիչ ամենայն բարութեան. շնորհակալութիւն հանդերձ չափաւորութեամբ եւ մաքրութեամբ մեծարոյ յոյժ էր յաչս Պարսից, մինչեւ յիրս ինչ յանցանել ուրուք ըստ նոսա՝ կրէր պատիժս մահու[1]։ Իսկ էութիւն աստուածեղէն պաշտամանն էր ընթեռնուլ զԶէնդն եւ աղօթս. ընթեռնլովն զկենդանի բանն Որմզդի՝ առնոյր պաշտօնեայն Որմզդի զօրութիւն ի գործ բարութեան եւ ի կռիւ ընդ չարին. նոյնպէս աղօթիւքն կոչէին Որմիզդ եւ ոգիքն եւ ինքն եւս Զրադաշտ հանդերձ ամենեքումբք որ սուրբ իցեն, յօգնականութիւն. եւ ոգիքն Խարամանու մերժին. եւ յայն սակս իսկ մատեանն Զենդաւեստայ լի է աղօթիւք վասն ամենայն ժամանակաց։

Այս կրօնք Զանդիկ ազգին երկուք մեծամեծ առաւելութեամբք քան զամենայն իսկ հեթանոսական կրօնս ընտիր եւ բարձրագոյն գտանին հոգեւորութեամբն եւ բարոյական նկարագրաւ, որով լի է համօրէն վարդապետութիւնն այն։ Այլ այս իսկ են աղէտք՝ զի յայնմ յատակութեան չմարթէր ռամկին լինել դիւրահաս, յայն սակս իսկ առ Հերոդոտեայ եւ առ այլոց մատենագրաց Յունաց ոչ զգիրսն Զենդաւեստայ՝ այլ զգիրս ռամկաց ի մէջ Պարսից գտանեմք. յորում թէպէտ եւ զվարդապետութիւնս եւ զսկզբունս զրադաշտական գրոցն գտանեմք՝ այլ ընդ քողով կրօնից աստեղացն։ Յորժամ Հերոդոտոս ասիցէ[2] թէ ոչ պատկերս դնից, ոչ մեհեանս,

1 Քսենոփ. Խրատ Կիւր. Ա. 2, 7։ 2 Հերոդոտ. Ա. 131։

եւ ոչ բազմիցս ունէին Պարսիկք եւ յիմաստութիւն իսկ զերամ հա-մարէին՝ այն ամենեւին համեմատ գրոցն Զրադաշտի է. իսկ յար-ժամ ի յառաջադէմ կայս ասիցէ թէ պատուեն զոհիւք զերկինս[1], զարեգակն, զլուսին, զերկիր, զջուր եւ զհողմ՝ յայտ իմն է թէ զԱզատոսն զօրս Արմիզդ (երկինքն կամ Զեւսն Հերոդոտայ) իբրեւ ոգիս պաշտպանիչս արեգական եւ լուսնի եւ տարերց կացուցեալ էր առընթեր, աստուածացուցեալ իմն են: Նոյնպէս եւ այն թէ զոհս զենուն Պարսիկք[2], եւ ըստ Քսենոփոնեայ[3] երկնաւորն Արա-մազդայ՝ զենուն ցուլս եւ Միհրն աստուածոյ (արեգական)՝ երի-վարս, այն չէ ըստ զրադաշտական ծանօթից այլ ըստ ժողովրդ-եանն կրօնից: — Այլ նաեւն հակառակ յարժամ ասիցէ Հերոդո-տոս թէ չէ համարձակ ումեք ի Պարսից զոհել առանց մոգ կալոյ մերձ ի մոգուցն որ զաղօթս ձօնեսցեն ասիցէ՝ ամենեւին համեմատ նոցին գրոց է. որպէս եւ առաքինութիւնքն Պարսից զոր Քսենո-փոն եւ Հերոդոտոս[4] մի ըստ միոջէ կարգեն՝ հնազանդութիւն, հա-ւատարմութիւն, շնորհակալութիւն, եւ մանաւանդ սաստիկ զգու-շութիւն վասն մաքրութեան, վայելչութեան եւ անճթղածու-թեան՝ ախտանալեն ամենեւին գրոցն եւ զօրինացն Զրադաշտայ:

## 74

Ի Հայոց աշխարհին վաղ իսկ (առ Արայիւ) երեւին բազմաս-տուածութեան կարծիք տիրեալ[5], եւ նախիրական իմն քաղաք էր Արմաւիր յորում անկեալ կային սաւսիք յԱրամանեկայ, եւ սաւ-սափիւն նոցա լինէր ի հմայութիւն գուշակութեան հանդերձելոց՝ ի ժամանակս Հայկազանցն[6]: Հին հանգամանք կրօնիցն Հայոց՝ թուին իսկզբանն ուրեմն լեալ մեծաւ մասամբ մօտ ի զրադաշ-տական վարդապետութիւնն: Զայս ցուցանեն անուանքն մնա-ցեալք ի հին լեզուի անդ մերում. որպիսի ինչ՝ բարձրագոյն էու-թիւնն անուանեալ կոչի Արամազդ (ըստ Զենդաւեստայ՝ Աւրա-մազտա). նա է ոչ-ոքէն եղնի եւ եղէ[7] (համեմատ վարդապետու-թեանն Զրադաշտայ). երկուութիւն հոգեղէն էութեանց՝ մի բարի եւ մի չար, առաջնոցն անուն Հրեշտակ եւ վերջնոցն Դեւք (Ֆերիշթէ, Տիվ)[8]: Ոչ գոյին Հայոց եւ մեհեանք[9] միայն զրա-դաշտական վարդապետութեանն՝ որով արգելեալ իսկ էր չէշխել փակել զաստուածութիւնն ընդ չափաւոր յարկաւ մեհենիցն[10]:

Այլ յետոյ առ սակաւ սակաւ եկին յարեցան աստի անտի օտար իմն պաշտամունք եւ մերժեցին զառաջին յստակագոյն վար-

1 Τὸν κύκλον πάντα τοῦ οὐρανοῦ.
2 Հերոդ. Ա. 132:
3 Քսենոփ. Կրթութ. Կիւր. Ը. 3, 18:
4 Քսենոփ. Կրթութ. Կիւր. Ա. 2. Հերո-դոտ. Ա. 133...:
5 Խոր. Ա. Գլ. ԺԲ:
6 Խոր. Ա. Գլ. Ի:
7 Ագաթ. Զ. էջ 57:
8 Տես Եղիշ. Բ. էջ 52:
9 Խոր. Ա. Գլ. Թ. էջ 48:
10 Տես ի վեր անդր Համ. 73:

դաւանութիւնն. Նախ ի կողմանց Փոքուն Ասիոյ՝ յորում երեւելի էին պաշտամունք եւ մեհեանք Արտեմեայ՝ որ յԱկիլաց եւ ի Հայոց յետ ընդունելոյ նոցա զնա՝ անուանէր Անահիտ։ Երկրորդ անգամ՝ ի սեպհական պաշտամանց Թագաւորացն Պարթեւաց, առ որոց եղծեալ եւ խանգարեալ էր վաղ պաշտօնն զրադաշտական, եւ յետոյ առաւել եւս խառնակեցաւ ի Յունացն դիցաբանութեանն, որոց պատկերքն եւս՝ հանդերձ քրմօքն նոցա ածան ի Հայս։ Իբրեւ աւար ինչ գեղեցիկ առաքեաց Արտաշէս Ա. ի Փոքրն Ասիոյ զձեռագործ պատկերս Յունաց[1]։ Նախ Աշտիշատ, ապա Անի եւ Թիլն եւ Երեզ եւ Բագայառիճ, յետոյ նոր քաղաքն Բագաւան կամ Դիցաւան՝ եղեն քաղաքք նուիրականք եւ ունէին քուրմս իւրաքանչիւր, եւ բազում անգամ եղբարք կամ որդիք Թագաւորաց առնոյին ի Թագաւորէ զպատիւ քրմապետութեան ի վերայ ամենայն պաշտամանց աշխարհին՝ յետ անկանելոյ ի պատուոյ անտի տոհմին Վահունեաց որ ժառանգութեամբ առեալ ունէին զպատիւ քրմապետութեանն։ Ի մեծամեծ ինչ իրս՝ ուխտաւոր լինէին Թագաւորք յերեւելի բագինս. էին նուէրք նոցա ցուլք եւ նոխազք սպիտակք, ձիք եւ ջորիք նոյնպէս սպիտակք զարդարեալք ի զարդ ոսկի եւ արծաթի, պսակք ոսկիք, ղօհարանք արծաթիք եւ անօթք ականակապք եւ հանդերձք երեւելիք[2], եւ երբեմն պսակք ծաղկանց կամ թաւ ոստք ծառոց[3]։

— Գլխաւոր դիք Հայոց էին

1. Արամազդ կամ Արին Արամազդ՝[4] Հայր դիցն ամենեցուն[5], համարեալ էր գլխաւոր եւ իբրեւ սեպհական իմն դիք Թագաւորացն Արշակունեաց։ Ամուր քաղաքն Անի՝ յորում էր (ողոմպիական) պատկեր նորա[6], էր նիստ քրմապետացն Հայոց[7] յորում եւ զգործս Թագաւորացն գրէին ի մատեանս, ուստի եղեն մեհենական պատմութիւնքն[8], էին անդէն եւ գերեզմանք Թագաւորաց[9], որպէս եւ Բագաւանն գերեզման էր քրմապետաց յետ շինելոյ աւանիս այսորիկ։ Բանզի Տիգրան Բ. ի պատիւ եղբօրն իւրոյ Մաժանայ քրմապետի՝ կանգնեաց ի վերայ շիրմի նորա ի Բագաւան միւս եւս պատկեր (վանատուրն) Արամազդայ, զի հիւրք ի զոհից անտի նորա վայելեսցեն եւ տացի նոցա անդէն ընդունելութիւն, յայն սակս անուանեալ կոչէր պատկերն այն Դիցն վանատուր[10]։ Իսկ արքայ Վաղարշ կարգեաց անդէն տօն աշխարհախումբ իսկզբան ամի նորոյ՝ ի մուտն Նաւասարդի, եւ վայելէին ի բազմապատիկ նորոց պտղոց տարւոյն, նմին իրի կոչէր այնմ պատկերի միւս եւս անուն՝ Դիցն Ամենորայ[11]։ — Էր միւս եւս (ամ-

1 Խոր. Բ. Գլ. ԺԲ։
2 Ագաթ. Ա. էջ 30։
3 Ագաթ. Ե. էջ 45։
4 Ագաթ. Զ. էջ 57. ԺԲ. էջ 102։
5 Ագաթ. ՃԲ. էջ 586։
6 Խոր. Բ. Գլ. ԺԴ. էջ 189։
7 Խոր. Բ. Գլ. ԾԳ. էջ 273։
8 Խոր. Բ. Գլ. ԽԸ. էջ 261։
9 Ագաթ. ՃԲ. էջ 586։
10 Խոր. Բ. Գլ. ԿԶ. էջ 300։ Ագաթ. ՃԺԲ. էջ 620։
11 Խոր. անդ։ Ագաթ. ՃԺԲ. էջ 619։

պղնձայի՛ն) պատկեր Արամազդայ առ Միհրս, որում այգուն այգուն ելեալ ի տանիս երկիր պագանէին մարդիկն[1]։

2. Անահիտ կամ Անահիտ տիկին, ծնունդ Արամազդայ, մայր ամենայն զգաստութեանց[2], փառք ազգին Հայոց եւ կեցուցիչ[3], շունչ եւ կենդանութիւն աշխարհին Հայոց[4]. սորա պատկեր կայր կանգնեալ յԵրէզն աւանի Եկեղեաց[5], եւ յոյժ իմն ջերմագոյն էին ի պաշտօն բագնի նորա. Թագաւորքն Հայոց առաքեալ խնդրէին առողջութիւն ի հիւանդութեան իւրեանց[6], եւ առաքէին ի գոհութիւն յաղթութեանցն պատարագս[7]։ Ոչ միայն գաւառականքն այլ եւ օտարք դնէին պատիւ պատկերին այնմիկ, եւ կայսերք եւս Հոռոմոց, նմին իրի էր մեծագանձ յոյժ մեհեանն[8]։ — Էր միւս եւս պատկեր Անահտայ յԱշտիշատ պղնձաձոյլ ոսկեզօծ[9], յայն սակս իսկ անուանեալ կոչէր անդէն Անահիտ՝ ոսկեծին ոսկեմայր դիք, կամ ոսկիհատ ոսկիամայր դիք[10]։

3. Վահագն, քաջն Վահագն (որդի Տիգրանայ Ա. նահապետ ցեղին Վահունեաց, հռչակեալ յերգս վիպասանացն Գողթան[11]). զսա նոյն իմն համարեցան Վահունիքն ընդ Հերակլեայ վասն նմանութեան ինչ իրիք եղելոյ ի գործս, նմին իրի գտեալ զպատկերն Հերակլեայ կանգնեցին յիւրեանց կալուածին յԱշտիշատ Տարօնոյ[12]. մեհեան նորա որ անուանեալ կոչէր Վիշապաքաղն Վահագնի՝ էր մի յերեցունց մեհենիցն Աշտիշատու, որ անուանեալ կոչէր Վահէվահեան մեհեան, եւ էր սա մեծագանձ յոյժ, քանզի բազում նուէրք մեծամեծ թագաւորացն ձօնեալ էին անդ, եւ էին յաշտից տեղիք պատերազմասէր թագաւորացն Հայոց[13]։

Բայց յերեցունց աստի էին եւ այլ եւս դիք։ 1. Դիք ինչ օտարական ազգին Արեաց՝ Տիւր անուն որ համեմատի իմն Ապողոնի որոյ պատկերն ածեալ էր յԱրտաշէսէ Ա. ի Հայս[14]. եւ համարեալ էր սա իբրեւ յայտնիչ կամացն Արամազդայ եւ ցուցիչ երազոց եւ պաշտպանիչ դպրութեան եւ ուսմանց, նմին իրի եւ մեհեան նորա որ էր ի վերայ ճանապարհին Արտաշատու[15] (զի փոխեալ էր անդր պատկերն Ապողոնեայ որ էր նախ յԱրմաւիր եւ ապա ի Բագարանի) անուանեալ կոչէր Դիւան դպրի Արամազդայ, կամ ուսման ճարտարութեան մեհեան[16]։ 2. Միհրա-

1 Խոր. Բ. Գլ. ՁԶ. Էջ 346։
2 Ագաթ. Ե. Էջ 48։
3 Ագաթ. Ե. Էջ 47։
4 Ագաթ. Զ. Էջ 57։
5 Խոր. Էջ 189։ Ագաթ. Ե. Էջ 45. ՃԲ. Էջ 587։
6 Խոր. Բ. Գլ. Կ. Էջ 284։
7 Ագաթ. Ա. Էջ 29 — 30։
8 Պղուտարք.։ Պղին. Ե. 24։ Դիոն Կասս. ԼԶ. 31։
9 Խոր. Բ. Գլ. ԺԲ. Էջ 181։
10 Ագաթ. ՃԺԴ. Էջ 603։
11 Խոր. Ա. Գլ. ԼԱ. Էջ 126 — 127։
12 Խոր. Բ. Գլ. ԺԲ. Էջ 182։
13 Ագաթ. ՃԺԴ. Էջ 602 — 603։ — Զայսց երից աստուածոց օգնականութիւն մաղթէր Տրդատ ի վերայ Հայոց աշխարհին. «Լիութիւն պարարտութեան յարգոյն Արամազդայ, խնամակալութիւն յԱնահիտ տիկնոջէ, եւ քաջութիւն հասցէ ձեզ ի քաջէն Վահագնէ»։ Ագաթ. ԺԲ. Էջ 102։
14 Խոր. Բ. Գլ. ԺԲ. Էջ 181 — 182։
15 Խոր. Բ. Գլ. ԽԲ. Էջ 263. Համեմատ Ագաթանգեղեայ ՃԸ. Էջ 580։
16 Ագաթ. անդ։

կան դիք, աստուածութիւն իմն Միհրայ համեմատեալ Հեփեստեայ դիցն Յունաց, որոյ պատկեր ածաւ ի Հայս[1], եւ էր նորա մեհեան ի Բագաւանի կամ ի Բագայառիճն[2]: Ի բագնի նորա վառէր հուր, եւ ի տօնել Ամանորեանն Նաւասարդի (ամս 26) ի վերայ աշխարհին Հայոց, հրամայեաց անշէջ պահել զկրակն[3]: 3. Նանէական դիք՝ որ համեմատէր Աթենասայ որոյ պատկերն նոյնպէս ածեալ էր ի Հայս ի Յունաց անտի[4], եւ էր մեհեան նորա ի Թիլն աւանի[5]: 4. Աստղիկ՝ որ համեմատէր իմն Ափրոդիտեայ որոյ եկեալ էր նոյնպէս պատկեր ի Հայս[6], եւ էր նորա մեհեան յերեքմեհեանն քաղաքին Աշտիշատ, անուանեալ Սենեակ Վահագնի, տարփեթեր մեհենին Վահագնի[7]: 5. Բարշամին դիք՝ որ օտար իմն ի յունական դից թուի, զորոյ զպատկերն գտեալ ի միջագետս Տիգրան Բ. տարեալ կանգնել դնել յաւանին Թորդան, եւ կոչէր Սպիտակափառ դիք[8], քանզի նիւթ պատկերին էր փղոսկր, բիւրեղ եւ արծաթ[9]: — Ներգալ կամ Նարոգ, Բէլ, Բաթնիքաղ, Թարաթա առանձինն իմն ասպհական դիք էին զորս Աբգար պաշտէր յԱսորւոց միջի[10]:

## 75

1. Արդարեւ մեծ է եւ անհնարին այսչափ խոտորումն եւ ապականութիւն մարդկութեան. սակայն չէր ինչ անդէպ Աստուծոյ՝ (յետ տալոյ մարդկան միանգամ խելքբանէ օժիտ՝ զբնական լոյսն կամ զաստուածական պատկերն, որում չէր իսկ հնար՝ ամենեւին չքմանել կամ ջնջել, հանդերձ նախատար յայտնութեամբն) թողուլ այսպէս ապարէշ մարդկեղէն խնայողութեան եւ ողորմութեան՝ ընթանալ իւրաքանչիւր ազգի եւ ժողովրդեան ընդ ճանապարհս իւրեանց, որպէս սովոր իսկ է եւ միում միում ի մարդկանէ տալ թոյլ, սպասեալ հասանելոյ ժամանակին՝ յորում յետ մեղացն՝ զչափ առեալ ամենայն դժնդակացն որ ի մեղաց անտի ծնանիցին, եւ թէ որչափ անձեռնհաս իցէ մարդն առնել ինքնին մեղացն դարման՝ լուսաւորագոյն իմասցի զանձինն մեղաւորութիւն եւ առցէ զնա ցանկութիւն փրկութեանն ի ձեռն Աստուծոյ եւ շնորհացն նորա: — Արդ ընդ ճանապարհն՝ յորում բնութեան առաջնորդութեամբ խնդրելոց եւ գտանելոց էին մարդիկ զԱստուած՝ յայս կատարած եկեալ հասանէին[11]:

1 Խոր. Բ. Գլ. ԺԲ. էջ 183:
2 Ագաթ. ՃԺ. էջ 590:
3 Խոր. Բ. Գլ. ՀԷ. էջ 222:
4 Խոր. Բ. Գլ. ԺԲ. էջ 183:
5 Ագաթ. ՃԺ. էջ 587:
6 Խոր. Բ. Գլ. ԺԲ. էջ 183:
7 Ագաթ. ՃԺԴ. էջ 603:
8 Ագաթ. ՃԲ. էջ 585:
9 Խոր. Բ. Գլ. ԺԴ. էջ 190. Բարշամինա նոյն թուի ընդ Բարշամինայ՝ զորմէ ասէ ինքն Խորենացին (Ա. Գլ. ԺԴ. էջ 72) թէ աստուածացուցեալ պաշտեցին Ասորիք:
10 Տես Խոր. Բ. Գլ. ԻԷ. էջ 214:
11 Գործք ԺԷ. 26. "Արար ի միոջէ արեանէ զամենայն ազգս մարդկան՝ բնակել ի վերայ երեսաց ամենայն երկրի. հաստատեաց յարգեալ ժամանակս . . . խնդրել զԱս-

2. Նմին իրի եւ Աստուած՝ վասն գլխաւոր կրօնին եւ պաշ-տօն ճշմարտին Աստուծոյ պահելոյ «ի սուտերս անդ մնալու», որ երթայրն եւ թանձրանայր, ընտրեաց զառաջ կանխագոյն զայր մի բարեպաշտօն առաքինի՝ որ ամենեւին հաւատարիմ էր նմա, եւ արար զնա նահապետ ազգի միոյ՝ զոր առաջնորդեալ տանէր Աս-տուած ընդ ճանապարհ յաջողութեան դէմ ընդ դէմ ճանապար-հին ընտրութեան՝ ընդ որ հեթանոսքն գնային, զի ի նմին պահեալ կրօնիցն ճշմարտութեան՝ ի սահմանեալ ժամանակի անդ պատրաս-տութեան սփռեսցի յամենայն ազգս: Այս ազգ է՝ Եբրայեցւոցն կամ Իսրայելացւոցն ազգ:

Այսպէս հարկ էր այսմ ազգի իբրեւ ուրոյն ազգ՝ առանձինն տահմայրին յօրինուածութիւնս ունել. բայց սակայն այն ամենայն յօրինուածութիւնք նորա երկկերպի իմն կերպարանս ունէին. մի քաղաքային՝ վասն ներկայ ժամանակի, եւ միւս եւս ընդհանրական՝ վասն հանդերձելոց. յամենայնի եւ ի բնաւ որ տուեալ լինէր ազ-գին այնմիկ՝ կայ անդէն առ նմին եւ խոստումն յուսալոյ ինչ, նշ-մաւորն՝ յղի է միշտ հանդերձելովն. ընդ ամենայն իսկ պատմու-թիւն ազգին ընթանան առակք եւ մարգարէութիւնք առ յա-պա ինչ եկելոց իրաց, յորոց յայտ իմն է թէ ոչ վասն իւր ինչ է ազգն այն՝ այլ վասն հանդերձեալ ինչ ժամանակի: — Նմին իրի կայ մնայ պատմել մեզ թէ որպէս նմա արար Աստուած յանձն պահել զնախնաւոր ճշմարիտ կրօնն, եւ նորովք յայտնութեամբք աճեցոյց եւ նորիմբք անդէն առանց միջնորդի պատրաստեաց ի ճշմարիտ եւ ի կատարեալ կրօնն եւ ի փրկութիւն մարդկան: Այլ իբրեւ երկոքին եւս Քրիստոսիւ անդէն ի մէջ Իսրայելի ա-զգեալք երեւեցան, եւ քարոզք եւս կատարեալն կրօնից՝ պատգա-մաւորքն փրկութեան ի միջոյ անտի ազգին այնորիկ ելին՝ միապան կանխասացութեանցն եւ համեմատ իրացն բնութեան՝ ինքն ազգն եւ ամենայն յօրինուածութիւնքն նորա եւ պաշտամունք դա-դարեցին:

տուած, զի [illegible] ընծայեսցին զնա իւ փառաւո-րեսցեն»: — Հռոմ. Ա. 19 — 23. «Գիտու-թիւնն Աստուծոյ յայտնի է ի նոսա, քանզի Աստուած իսկ յայտնեաց նոցա, զի աներեւոյթք նորա ի սկզբանէ աշխար-հի արարածովքս իմացեալ տեսանին . . . զի ոչ գտանիցեն ամենեւին տալ պատաս-խանի . . . նանրացան ի խորհուրդս իւ-րեանց եւ խաւարեցան անմտութեամբ սիրտք նոցա . . . փոխեցին զփառս անեղ-ծին Աստուծոյ՝ ի նմանութիւն պատկերի եղծանելի մարդոյ եւ թռչնոց եւ չորքո-տանեաց եւ սողնոց» . . . :

էր նա ի Նմանէ, եւ ի փաղեկայ որդւոյ Եբերայ՝ վեցերորդ, եւ էր նա ուստր Թարայի եւ եղբայր Նաքովրայ եւ Առանու[1]։ Եւ տոհմն եւս նորա ձգեալ ի հասարակաց ապականութենէն ծառայէր կռոց յետ ազգաց իւր․ բայց ինքն Աբրահամ հաւատարիմ էր Աստուծոյ ճշմարտի, եւ առեալ հրաման յԱստուծոյ խաղայր ամենայն տամբն իւրով ի Խառան ի Միջագետս պանդխտել անդ[2]։

Անդ կոչեաց Աստուած զԱբրամ․ „Ել, ասէ, դու յերկրէ քումմէ եւ յազգէ քումմէ եւ ի տանէ հօր քոյ, յերկիր զոր ցուցից քեզ։ Եւ արարից զքեզ յազգ մեծ․ եւ օրհնեցից զքեզ եւ մեծացուցից զանուն քո․ եւ եղիցես օրհնեալ։ Եւ օրհնեցից զօրհնիչս քո, եւ զանիծիչս քո անիծից․ եւ օրհնեսցին ի քեզ ամենայն ազգք երկրի„։ Անսայր Աբրամ հրամանացն Աստուծոյ եւ յ75 ամի հասակի իւրոյ առեալ զՍարա կին իւր եւ զՂովտ զորդի եղբօր իւրոյ Առանու՝ ել գնաց յերկիրն Քանանացւոց եւ եգիտ անդ տեղիս արօտոյ խաշանցն (1920)։ Եւ անդէն երեւեալ Աստուծոյ ի տեսլեան գիշերոյ՝ ասէ ցԱբրամ․ „Զաւակի քում տաց զերկիրդ զայդ„։ Եւ Աբրամ կանգնեաց սեղան Տեառն (մօտ ի Լուզ) մատուցանել նմա պատարագս եւ գոհանալ զնմանէ, եւ շրջեցաւ խաշամբքն յերկրի անդ աւետեաց[3]։ Ապա ճանապարհ արար նա եւ յաշխարհն Եգիպտացւոց հանդերձ Սարայիւ ի ժամանակի սովոյ իրիք, եւ դարձաւ այսրէն՝ մերժեալ իմն ի փարաւոնէ որ պատուհասեցաւ յԱստուծոյ յանուրջս վասն կամելոյ առնուլ իւր զգեղեցիկն Սարա[4]։ Պատկեր իմն էին այն անցք այնր ամենայնի՝ որ անց յետոյ ընդ զաւակն նորա։

## 77

Յաճախեցին Աբրամու անդեայ եւ արծաթ եւ ոսկի՝ օրհնութեամբն Աստուծոյ․ նոյնպէս մեծացաւ եւ եղբօրորդի նորա Ղովտ։ Նմին իրի երկիրն որ ի կողմանս Լուզայ (Բեթելայ) էր՝ անձուկ էր, մանաւանդ զի Փերեզացիք բնակեալ էին անդ, եւ լինէր այնուհետեւ կագ եւ կռիւ հովուացն Աբրամու եւ Ղովտայ ընդ միմեանս։ Ասէ յայնժամ ցնա խաղաղասէրն Աբրամ․ „Մի լիցի, կռիւ ընդ իս եւ ընդ քեզ, եւ ընդ հովիւս իմ եւ ընդ հովիւս քո․ զի արք եղբարք եմք մեք։ Ո՞չ աւադիկ երկիրդ ամենայն առաջի քո է, մեկնեաց յինէն․ եթէ դու յահեակ՝ ես յաջ․ եթէ դու յաջ ես յահեակ„։

Ընտրէր առնոյր Ղովտ զկողմն հարաւոյ արեւելից Յորդանան գետոյ զերկիրն պտղաբեր, անասնաանոյց եւ ջրարբի, զհովիտն Աղ-տից կամ Սեգդիմայ (իբրեւ 12 մղոն յերկայնութիւն եւ 5 մղոն

1 Ծնն. ԺԱ. 10...։
2 Ծնն. ԺԱ. 31 - ԺԲ. 7։
3 Տես Ծնն. ԺԲ. 1 — 9։
4 Տես Ծնն. ԺԲ. 10 — 20։

ի լայնութիւն), ուր էին քաղաքք Սոդոմ, Գոմոր, Ադամա, Սեբոյիմ եւ Բաղա (Սեգովր), որոց տիրէին մի մի թագաւորք։ Զայս՝ ոչ ըստ գործոց հօրեղբօրն իւրոյ խնամութեանն ինչ եւ ազնուական մտօք գործեաց Ղովտ, եւ սկսաւ իսկ տարջանալ յետ սակաւ ինչ ժամանակի ի վերայ անցանելոյ։

Բայց Աբրամու երկրորդեաց Աստուած զաւետիսն իւր թէ «Զամենայն երկիրդ զոր տեսանես դու, քեզ տաց զդա եւ զաւակի քում մինչեւ յաւիտեան։ Եւ արարից զզաւակ քո իբրեւ զաւազ երկրի (որ ընդ թիւ ոչ մտցէ), եւ արդ արի շրջեաց ընդ երկիրդ ... եւ Աբրամ եկն բնակեցաւ առ կաղնեաւն Մամբրէի, որ է ի Քեբրոն. եւ շինեաց անդ սեղան Տեառն Աստուծոյ»[1]։

Յետ սակաւ ինչ միոյ գրգռէր Սոդոմացւոց պատերազմն, առաջին ի պատերազմացն զոր գիրք յիշատակեն (1910)։ Քոդողոմոր արքայ Եղամայ (Եղիմայիսայ՝ ի Պարսից աշխարհէն) եւ ի մարտ պատերազմի հանդերձ թագաւորօքն Սենաարայ՝ (երկրին որ ի մէջ կայ Եփրատ եւ Տիգրիս գետոց) եւ Եղասարայ կամ Սեղասարայ (Պոնտոսի), եւ թագաւորաւն Գոյացւոց (այս ինքն ազգաց կամ հեթանոսաց, թերեւս Գաղիլեայ) ի վերայ հնգեցունց թագաւորացն ի ձորն Աղտից, զի երկոտասան ամ հնազանդեալ կային սոքա ընդ նովաւ, եւ այժմ ապստամբեալ յետս կացին ի նմանէ։ Հար կոտորեաց նա զքաջազունս ի ցեղիցն Քանանացւոց, եւ ապա խորտակեաց զհինգ թագաւորսն յորոց երեքն փախեան մազապուր ի լերինս, եւ երկուքն՝ թագաւորքն Սոդոմայ եւ Գոմորայ անկան ի գուբս բովուցն կպրոյ որ ի ձորն անդ էին, եւ առ տարաւ զՂովտ ձերբակալ ի Սոդոմայ։

Իբրեւ զուժկան առ Աբրամ հասանէր, վառէր սա զընտանիս իւր 318 այր. միաբանեցին ընդ նմա եւ թագաւորքն հովիւք՝ Անէր (կամ Աւնան), Եսքող եւ Մամբրէ դաշնաւորք նորա. պնդեցաւ զհետ նոցա Աբրամ, եհաս ի վերայ նոցա գիշերի, եւ թափեաց ի նոցանէ զեղբօրորդին իւր զՂովտ հանդերձ զերեօքն։ Եկն ընդառաջ նորա թագաւորն Սոդոմացւոց եւ կամէր տալ նմա զամենայն աւարն, բայց Աբրամ՝ քանզի ըստ քաջութեանն նոյնպէս մեծամիտ էր եւ լի հաւատովք եւ յուսով առ Աստուած, չառ ինչ ամենեւին յայնպիսեաց, զի միայն ի ձեռաց Աստուծոյ իւրոյ եւ ի պատիւ նորա կամէր առնուլ վարձս եւ պարգեւս, բայց տայր հանել աւարամասն դաշնաւորացն իւրոց[2]։

## 78

Քանզի չունէր ակն Աբրամ թէ մեծամեծ աւետիքն Աստուծոյ եղանիցեն ի գլուխ ի ձեռն ամուսնոյն Սարայի, մանաւանդ առաջի

1 Ծնն. ԺԳ։ 2 Ծնն. ԺԴ։

Աստուծոյ զորդի հազարապետի տան իւրոյ Եղիազարայ՝ ի ժառանգութիւն։ Բայց ասէր ցնա Աստուած թէ «Ոչ ժառանգեսցէ զքեզ դա, այլ որ ելանէ ի քէն՝ նա ժառանգեսցէ զքեզ։ Հայեաց ընդ երկինս եւ թուեա զաստեղս, եթէ կարիցես թուել զնոսա, այնպէս եղիցի զաւակ քո»։ Հաւատաց Աբրամ յԱստուած եւ համարեցաւ այն նմա յարդարութիւն։ — Եւ յայն սակս իսկ ասաց ցնա Աստուած «Ես եմ Տէր Աստուած քո, որ հանի զքեզ յաշխարհէն Քաղդէացւոց, տալ քեզ զերկիրդ զայդ ի ժառանգութիւն»։

Եհարց ցնա Աբրամ թէ իւ կարիցէ գիտել ճանաչել զայն. եւ հրամայեաց նմա Տէր մատուցանել պատարագ եւ կատարեաց Աբրամ զհրամանն։ Իբրեւ ի մուտս էր արեւն, անկաւ թմբրութիւն ի վերայ նորա եւ համանէր ի վերայ նորա ահ խաւարին եւ անդէն լսէր բարբառ զի ասէր. «Գիտելով գիտասջիր, զի պանդուխտ եղիցի զաւակ քո յերկիր որ ոչ իւր իցէ. եւ ծառայեցուսցեն զնոսա եւ չարչարեսցեն, եւ տառապեցուսցեն զնոսա ամս չորեքհարիւր։ — Բայց զազգն որում ծառայեսցեն՝ դատեցայց ես. եւ յետ այնորիկ ելցեն այսր բազում աստուածովք. ի չորրորդում ազգի դարձցին այսրէն. քանզի չեւ եւս լցեալ են մեղք Ամովրհացւոցն մինչեւ ցայժմ»։ Եդ ուխտ եւ դաշինս Աստուած ընդ Աբրամու յաւուր յայնմիկ եւ ասէ թէ «Զաւակի քում տաց զերկիրդ զայդ ի գետոյն Եգիպտացւոց մինչեւ ի գետն մեծ Եփրատ»[1]։ — Այնու կատարեցաւ ձեւ դաշանցն յաստուածակոյս կողմանէ՝ զի «Ճառագայթք հրոյ անցին յանկարծ ընդ մէջ անդամոցն յօշելոց». քանզի այսպէս էր սովորութիւն հնոցն ի հաստատել զդաշինսն մեծամեծս՝ զի ցեղապետքն անցանէին ընդ անդամանսթիւս զոհիցն՝ յայտ արարեալ թէ այսպէս յօշեսցի ցեղ ի ցեղէցն որ ըստ ուխտն անցանիցէ։

## 79

Ըստ սովորութեան ժամանակացն այնոցիկ եւ թելադրութեամբ իսկ Սարայի, առ Աբրամ զնաժիշտն նորա զՀագար ի հարճութիւն փոխանակ Սարայի, զի այնպէս ածիցէ զաւետիսն Աստուծոյ ի կատարումն, եւ ծնաւ նմա Հագար զԻսմայէլ, յորժամ 86 ամաց էր Աբրամ (1905)։ Բայց յայտ եղեւ թէ չէր Իսմայէլ զաւակն զորմէ խօսեցեալ էր նմա Աստուծոյ։

Յետ ամաց երեքտասանից միւս եւս խոստումն ընկալաւ Աբրամ վասն զաւակին այնորիկ. խօսեցաւ ընդ նմա Աստուած եւ ասէ թէ «Դնիցեմ զուխտ իմ ընդ իս եւ ընդ քեզ . . . եւ եղիցես հայր բազմութեան ազգաց. եւ ոչ կոչեսցի այսուհետեւ

1 Ծնն. ժե։

անուն քո Աբրամ, այլ եղիցի անուն քո Աբրահամ (այս ինքն հայր ազգաց)։ Եւ եդից զքեզ յազգս. եւ թագաւորք ի քէն ելցեն։ Եւ հաստատեցից զուխտ իմ ընդ իս եւ ընդ քեզ, եւ ի մէջ զաւակի քոյ յետ քո յազգս իւրեանց ուխտ յաւիտենական, լինել քեզ Աստուած եւ զաւակի քում յետ քո։ Եւ տաց քեզ եւ զաւակի քում զերկիրդ զայդ, յորում բնակես պանդխտութեամբ. զամենայն զերկիրդ Քանանացւոց ի ժառանգութիւն... եւ այս է նշան ուխտի իմոյ. թլփատեսցի ձեր ամենայն արու"։ — Եւ ի նոյն յայտնեալ ասէր, թէ՝ "Եւ Սարայի կնոջ քո ոչ կոչեսցի անուն նորա Սարա, այլ Սառրա (կին իշխանական) եղիցի անուն նորա։ Եւ օրհնեցից զնա. եւ տաց քեզ ի նմանէ որդի։ Եւ օրհնեցից զնա... եւ կոչեսցես զանուն նորա Իսահակ, եւ հաստատեցից զուխտ իմ ընդ նմա, եւ ընդ զաւակի նորա յետ նորա։ Եւ օրհնեցից եւ զԻսմայէլ եւ աճեցուցից զնա եւ բազմացուցից զնա յոյժ։ Եւ երկոտասան ազգ ծնցի, եւ տաց զնա յազգ մեծ"։

Ապա ի գլուխ հանէր Աբրահամ զհրաման թլփատութեանն (օրինակ կանխանշան՝ մկրտութեանն) անդէն յանձին իւրում եւ յորդւոջն իւրում Իսմայէլ եւ յամենայն արու ազգին որ ի տան նորա էին [1]։

Յետ սակաւ ինչ ժամանակի առաքեալ Աստուծոյ հրեշտակս առ Աբրահամ՝ զորս եւ ընկալաւ իսկ Աբրահամ ասպնջականութեամբ ի խորանի իւրում՝ երկրորդէր զաւետիսն [2], եւ ի գալ ամին միւսոյ յորժամ 100 ամաց էր Աբրահամ եւ Սառա 90 ամաց՝ ծնաւ զցանկալի որդին զԻսահակ (1890) եւ թլփատեցաւ նա յաւուրն ութերորդի [3]։

## 80

Առաջագոյն յիշեցաք թէ ի Սոդոմացւոց քաղաքին բնակեաց Ղովտ. "Բայց արք քաղաքին այնորիկ չար էին եւ մեղաւորք յոյժ" [4], եւ մանաւանդ յանառակութիւն հասեալ հակառակ բնութեան [5]։ Եւ յայն սակս իսկ խորհեցաւ Աստուած ջնջել զնոսա ի միջոյ, եւ եցոյց զխորհուրդս իւր բարեկամին իւրում Աբրահամու ի ձեռն երից հրեշտակաց — "Աղաղակ Սոդոմացւոց եւ Գոմորացւոց, ասէ, յաճախեաց, եւ մեղք նոցա մեծացան յոյժ. եւ արդ իջեալ տեսից եթէ ըստ աղաղակին նոցա որ յիս հասանէ՝ վճարիցե՞ն. ապա թէ ոչ զի գիտացից". եւ դարձան արքն եւ հասին ի Սոդոմ։

Բայց Աբրահամ կայր տակաւին առաջի Տեառն եւ խօսէր. "Միթէ կորուսանիցե՞ս, ասէ, զարդարն ընդ ամպարշտին, ... եւ ո՞չ ներեսցես ամենայն տեղւոյն վասն յիսուն արդարոցն եթէ

1 Ծնն. ԺԶ. ԺԷ։
2 Ծնն. ԺԸ. 1 — 16։
3 Ծնն. ԻԱ. 1 — 8։
4 Ծնն. ԺԳ. 13։
5 Ծնն. ԺԹ. 5։

քցեն ի նմա: “Քաւ լիցի քեզ առնել զայն բան, սպանանել զարդարն ընդ ամպարշտի... քաւ լիցի քեզ որ դատես զամենայն երկիր, մի արասցես զայն դատաստան„: Եւ ասէ Տէր, “Եթէ գտցի ի Սոդոմ յիսուն արդար ի քաղաքի անդ, թողացուցից ամենայն տեղւոյն վասն նոցա„: Իսկ Աբրահամ ստէպ յեղուկս անկեալ աղաչէր, մինչեւ առնուլ յԱստուծոյ խոստումն զի “Եթէ գտցի անդ տասն արդար՝ ոչ կորուսցէ„: Ապա ի բաց գնաց Տէր[1]: Յօրինակէ անտի համօրէն պատմութեանն այսպէս իմն թուի թէ ինքնին իսկ Որդին Աստուծոյ մարդակերպեալ եկն էջ խօսել ընդ Աբրահամու ի բանս անդ եղբայրսիրութեան եւ ողորմութեան: — Բայց մի արդար միայն գտաւ ի Սոդոմ, այս ինքն Ղովտ. առ սա եկին երկու հրեշտակքն (որք ընդ Տեառնն եկեալ էին) ազատեցուցանել զնա եւ զտուն նորա[2]:

## 81

Սոդոմացիքն չարագործք՝ լցին զչափ չարեաց իւրեանց անամօթութեան գործովքն եւ բռնութեամբ. իսկ հրեշտակքն ցուցին Ղովտայ զեկեալ հասեալ պատիժս պատուհասիցն Աստուծոյ, եւ ի վաղիւն գրեթէ բռնի իսկ ձգեցին հանին ի քաղաքէն զՂովտ որ տակաւին յամէր իմն եւ դանդաղէր, եւ զկին նորա եւ զերկու դստերսն: Նա՝ եւ աղաչանացն Ղովտայ արար Աստուած երեսս եւ թոյլ ետ նմա մնանել ի Բաղա քաղաք որ յայնմ հետէ Սեգովր անուանեցաւ, եւ խնայեցաւ[3] ի նա վասն Ղովտայ արդարոյ[4]:

“Արեգակն ծագեաց... եւ Տէր տեղաց ի Սոդոմ եւ ի Գոմոր, յԱղամա եւ ի Սեբոյիմ ծծումբ եւ հուր ի Տեառնէ յերկնից. եւ կործանեաց զքաղաքսն զայնոսիկ, եւ զամենայն կողմանսն եւ զամենայն բնակիչս քաղաքացն, եւ զամենայն բոյս երկրին„ — (յամի իբրեւ 1890): Եւ Աբրահամ եւս որ հայեցաւ ընդ առաւօտն ընդ կողմն ձորոյն “ետես եւ ահա ելանէր բոց երկրին իբրեւ մրրիկ հնոցի„[5]:

Մարթ է այսպիսի ինչ առնուլ յանձն թէ բնութիւն իսկ ձորոյն Աղտից՝ որ լի էր բովիւք աղի եւ նաւթի[6], լինէր պատճառ ամենեւին իսկ փոփոխելոյ կողմանցն այնոցիկ, եւ ծծումբ ինչ կիզիչ գործէր յայնժամ յայրմանն. բայց այն բնական հանգամանք չկարեն ինչ նուազեցուցանել զզարմանալի պայման պատահելոյ նոցա առհասարակ ի միասին եւ զքանչելութիւն արդարութեանն Աստուծոյ[7], որ յառաջագոյն յայտնագոյն պատմեցաւ

1 Ծնն. ԺԸ. 16...:
2 Ծնն. ԺԹ. 1 — 3, 12 — 16:
3 Ծնն. ԺԹ. 4 — 22:
4 Բ. Պետր. Բ. 7, 8:
5 Ծնն. ԺԹ. 23 — 25, 27, 28:
6 Ծնն. ԺԴ. 10:
7 Երկ. օր. ԻԹ. 23:

եւ եղ ի գլուխ։ Նոյնպէս եւ անհնազանդ կինն Ղովտայ լինել արձան աղի (այս ինքն ի քար փոփոխել)՝ որ մնացական որպէս թուի՝ ոչ յետս միայն հայեցաւ [1], այլ ամենեւին իսկ դարձաւ յետս [2], հնար է բնական կարգաւ, բայց սակայն է միշտ իսկ պատիժ պատուհասից Աստուծոյ, եւ է կինն այն՝ արձան յիշատակի զգուշացուցիչ պատժոյ անհաւատութեանն. եւ կայր այն արձան ի ժամանակս մատենագրի գրոցն Իմաստութեան [3]։

Փոխանակ ամենայնից եւ ցանկալի ձորոյն Աղտից [4], մնաց է անդէն ծովակ որ անուանեալ կոչի ծով Աղտից կամ Մեռեալ ծով, եւ այն յիրաւի եւ յարժանի. քանզի ջուր նորա հնգիւ չափ աւելի աղի է քան զջուր ծովու. սփռէ մահունս եւ ապականութիւն շուրջ զիւրեւ գոլորշովն։ Ընչաւորի ինչք չնարթի կալ կենդանի ի նմա կամ շուրջ զնովաւ. ափունք նորա ամենեւին ամուլ եւ անծին են, եւ փոշիանեան բերովք լի. եւ հանապազ իսկ աստ՝ ամենայն իսկ նշանաւոր հանդամանք ծովուն այնորիկ զառանձինն ինչ պատճառաց յայտ առնեն. եւ ոչ այլ ինչ պատճառքն են, բայց միայն արդարութիւն Աստուծոյ ի վերայ ամբարշտաց ի յիշատակ զգուշութեան առ յապա եկելոց [5]։ Դարձցուք այսրէն առ Աբրահամ։

82

Եօթանասուն եւ հինգ ամաց էր Աբրահամ ի ժամանակի իբրեւ զառաջին աւետիսն ընկալաւ յԱստուծոյ, եւ յետ 25 ամաց ուրեմն ծնաւ Իսահակ որդին աւետեաց։ Աճեցեալ զարգացաւ Իսահակ, եւ երեւելի էր ծաղիկ երիտասարդութեան նորա, եւ արդարացուցանէր զգեղեցիկ յոյսս հօրն նորա. բայց անդէն երեւէր ինձ թէ յանկարծակի փաղփաղակի կորեաւ անհետ եղեւ ակնկալութիւնն (1860)։

Քանզի զհանդէս ինչ կամեցաւ առնուլ Աստուած զԱբրահամու. հրամայէ տալ նմա զիւր որդին զմիամօրն եւ զսիրելի ի լերինն Մորիա մատուցանել ողջակէզ։ Անսաց Աբրահամ առանց ամենայն յապաղութեան. քանզի յոյս հաստատութեան նորա յԱստուած՝ քաջ քաջ յաղթէր զխթայն [6]։ Ել հանդերձ Իսահակաւ ի ճանապարհ. իբրեւ ի տեղին հասանէին՝ կազմէր Աբրահամ զսեղանն եւ զպատարագն եւ լի զօրութեամբ հաւատոցն կամէր զհրամանն Աստուծոյ հանել ի գլուխ. քանզի գիտակ իսկ էր այնմ թէ անխաբ են աւետիքն։ Բայց անդէն հրեշտակ Տեառն

1 Ծնն. ԺԹ. 26։
2 Ղուկ. ԺԷ. 31, 32։
3 Իմաստ. Ժ. 6, 7։
4 Ծնն. ԺԴ. 10։
5 Տես Իմաստ. Ժ. 7։ Երեմ. ԽԹ. 18։ Եզեկ. ԺԶ. 49, 50։ — Տես եւ Սոփոն. ԺԶ։ Պլին. Բն. Պատմ. Ե. 15։ Դիոդ. Սիկ. ԺԹ։
6 Տես Եբր. ԺԱ. 17—19։

եկեալ հրամայէր դադարել ի գործոյն, եւ զխոյն ածեալ առնէր պատարագ. «Յանձն իմ երդուայ՝ ասէ Տէր, փոխանակ զի արարեր դու զբանդ զայդ, եւ ոչ խնայեցեր յորդւոյ քո սիրելւոյ. այո օրհնելով օրհնեցից զքեզ, եւ բազմացուցանելով բազմացուցից զզաւակ քո որպէս զաստեղս երկնից բազմութեամբ, եւ որպէս զաւազ առ ափն ծովու. եւ ժառանգեսցէ զաւակ քո զքաղաքս հակառակորդաց իւրոց եւ օրհնեսցին ի զաւակի քում ամենայն ազգք երկրի փոխանակ զի լուար ձայնի իմում»: — Իսկ Աբրահամ առեալ մատոյց խոյ մի զոր եսես կախեալ զեղջերաց՝ զկաղնի ծառոյ, եւ կոչեաց զտեղին՝ Տէր եսես կամ տեսանէ:

Այսպէս սա կատարումն գեղեցիկ, համառօտ այլ խիստ փորձութիւն երկուցն նահապետաց. արժանի եղեւ Աբրահամ օրինակ Հօր Աստուծոյ լինելոյ որ «այնչափ սիրեաց զաշխարհ, զի զորդին իւր միածին ետ»[1], եւ Սահակ առակ լինէր Որդւոյն «որ հնազանդեալ եղեւ մինչեւ ի մահ, եւ ի մահ խաչի»[2], եւ ինքնին բարձեալ տանէր զփայտ մահուն իւրոյ: Նմին իրի չէ ինչ անհաւանութեան եւ սակս բազմաց զՍահակայ թէ երեսուն եւ երից ամաց լեալ իցէ յայնժամ. քանզի 12ամեայն (որպէս ըստ սովորութեան իմն կարծի) չէր բաւական զփայտ ողջակիզին ի լեառնն հանել. եւ պատանեակն անուն ըստ գրոց՝ առհասարակ կամ որդի կամ ծառայ նշանակէ[3]: (Յովսեպոս համարի յայնժամ զՍահակ 25 ամաց:)

## 83

Իբրեւ 127 ամաց էր, այնուհետեւ Սառա, մեռաւ ի Քեբրոն ի գլխաւոր քաղաքի Քանանացւոց: Սուգ առ Աբրահամ ի վերայ նորա, եւ թաղեաց զնա յանդիման կաղնւոյն Մամբրէի, յայրին կրկնում զոր ետ նա գնոց յազգէն Քետացւոց[4]: Գովեն զկնի զհաւատսն Սառայի[5] եւ յորդորեն զհնազանդութիւն նորա[6]:

Իսկ Աբրահամ ծերացեալ էր եւ օրհնեալ յԱստուծոյ ամենայն մեծութեամբք, եւ խորհէր ի միտ իւրում ամուսնացուցանել զորդին ուխտից (1850): Յանձն արար զգործն հաւատարիմ հազարապետի տան իւրոյ Եղիազարու, բայց առ երդումն ի նմանէ չածել նմա կին քանանացի, այլ դուստր մի ի դստերաց հայրենի գաւառին իւրոյ եւ յազգականութենէ իւրմէ: Նմին իրի եւ չոքաւ Եղիազար ի Խառան ի Միջագետս, ուր բնակէր Նաքովր եղբայր Աբրահամու (վախճանեալն): Մինչ դեռ արտաքոյ քաղաքին հանգեալ կայր Եղիազար, կարդաց յուսալից հաւատովք առ Տէր եւ աղաչեաց զնա զի տացէ մեզ նշան հիւրասիրութեան կուսին՝ զոր սահմանեալ իցէ նա վասն որդւոյ տեառն իւրոյ: Եւ անդէն

1 Յովհ. Գ. 16:
2 Փիլիպ. Բ. 8:
3 Ծնն. ԻԲ.
4 Ծնն. ԻԳ.
5 Եբր. ԺԱ. 11:
6 Ա. Պետր. Գ. 5, 6

Ռեբեկա գեղեցիկ եւ բարենշան դուստր եղբօրորդւոյն Աբրահամու՝ Բաթուելի որդւոյ Նաքովրայ, եղբօր սորա եւ բարութեան եւ զգաստութեան գործովք թէ նա է հարսնն ընտրեալ։ Նա եւ Բաթուէլ եւ նորին որդի Լաբան ծանեան թէ տեսչութիւն Աստուծոյ է. հաւանեցան բանից Եղիազարայ եւ գնաց Ռեբեկա զհետ Եղիազարու հանդերձ բիւրապատիկ օրհնութեամբ իւրայոցն ի Քանան։

Մինչ դեռ Սահակ ի դաշտին էր մատուցանել աղօթս առ Աստուած, անտառաւ դայր հասանէր Ռեբեկա. «Եւ եմուտ Իսահակ ի տուն (վրան) Սառայի մօր իւրոյ եւ առ զՌեբեկա, եւ եղեւ նորա կին. եւ սիրեաց զնա. եւ մխիթարեցաւ Իսահակ վասն Սառայի մօր իւրոյ»։ — Այսպէս կատարի գեղեցիկ, պարզ եւ մեկին պատմութիւն փեսայութեանն Իսահակայ [1]։

## 84

Նա եւ Աբրահամ ամուսնացաւ (որպէս ի դէպ է՝ Աստուծոյ ակնարկելով) միւսանգամ ընդ կնոջ միում որում անուն էր Քետուրա. եւ ծնաւ ի նմանէ ի ծերութեան իւրում այլ եւս որդիս վեց, զԱմրամ, զՅեկսան, զՄադան, զՄադիան, զՅեսբոկ, եւ զՍովէ [2]։

Յառաջագոյն իսկ խրատու Սառայի եւ Աստուծոյ հաւանելով արձակեալ էր Աբրահամ զԻսմայէլ եւ զմայրն նորին զՀագար, որ չոգան ի Փառան ի կողմանս Արաբացւոց, եւ անդ առաւ իւր Իսմայէլ կին եգիպտացի [3]։ Եւ ծնաւ նա ի նմանէ զՆաբէովթ, զԿեդար, զԱդբեէլ, զՄափսամ, զՄասմա, զԴումա (կամ զԻդումա), զՄասսա, զՀաղդար, զԹեման, զՅետուր, զՆափիս եւ զԿեդմա [4]։ Բայց Աբրահամ զԻսահակ միայն կացոյց ժառանգ ի վերայ համօրէն ընչից իւրոց. իսկ զորդիս հարճից իւրոց արձակեաց պարգեւօք [5]։ (Բնակեցին նոքա հանդերձ Իսմայելացւովքն յԱնապատն եւ յԱպառաժն Արաբիա)։

Մեռաւ Աբրահամ հարիւր եւթանասուն եւ հինգ ամաց (1817), եւ Սահակ եւ Իսմայէլ որդիք նորա թաղեցին զնա ի կրկին այրին յանդիման Մամբրէի [6] ի Քեբրոն, որ ցայժմ իսկ անուանեալ կոչի քաղաք սիրելւոյն Աստուծոյ [7]։ Այսպէս վերջին ամք կենաց առնն մեծի եւ սքանչելւոյ ստուերաւ իմն ծածկեալ կան. սակայն որ մեզ ծանօթքն են առաքինութիւնքն եւ հաստատուն հաւատք եւ անչափ վստահութիւն նորա եւ խոնարհն հնազանդութիւն, առաջնորդեալ եւ բարձրացեալ միշտ ի զար-

1 Տես Ծնն. ԻԴ։
2 Ծնն. ԻԵ. 1 — 4։
3 Ծնն. ԻԱ. 9—21։
4 Ծնն. ԻԵ. 12 — 16, տես եւ ԺԷ. 20։
5 Ծնն. ԻԵ. 5, 6։
6 Ծնն. ԻԵ. 7 — 10։
7 Տես Եսայ. ԽԱ. 8։

մանաւանդ յայտնութեանցն Աստուծոյ՝ տան անձուկ ստուգութեանն ի միտ զկատարեալ վարս զմնացելոց անձանց նորա[1]։

## 85

Յետ Աբրահամու վախճանին՝ օրհնեաց Աստուած զԻսահակ զնորին որդի[2], եւ կրկնեաց միւսանգամ զաւետիս հօրն իւրոյ[3]։ Այլ յառաջ քան զայս ուրախութիւն ինձ էր ի տան նորա վասն ամլութեանն Հռեբեկայ ամս 20. այլ աղաչեաց Իսահակ վասն նորա զՏէր եւ եղեւ լսելի. ծնաւ Հռեբեկա երկուորեակս որ անդէն մինչ չեւ ելեալ յորովայնէ մօրն՝ ընդ միմեանս ի հակառակ մտեալ խռովէին՝ զերկուց ժողովրդոցն յայտ արարեալ ընդ միմեանս թշնամանցելոց (1832)։ Անդրանիկին՝ քանզի շառագոյն էր եւ թաւ եւ ձայրի՝ Եսաւ անուանեցաւ. իսկ երկրորդին որ բռնեալ հարեալ ունէր զգարշապարէ առաջնոյն՝ Յակոբ (խաբոսիկ կամ յաղթահարիչ) անուն կոչեցաւ։ Իբրեւ ի չափ հասանէր Եսաւ՝ գործէր զգործ որսորդութեան եւ զմշակութեան, իսկ Յակոբ զհովուութեանն։ Եսաւ վասն շեկաթանի (վասն որոյ Եդոմ եւս կոչի, որ թարգմանի՝ կարմիր) հրաժարեաց յանդրանկութենէ իւրմէ, տուեալ զայն եղբօր իւրում Յակոբայ, զորոյ յետոյ բազում ինչ երեւելի եղեն զհետ[4]։

Իբրեւ ծերացաւ Իսահակ եւ վատեցին անկան աչք նորա, կամէր տալ օրհնութիւն անդրանկին իւրում Եսաւայ. իսկ Հռեբեկա քանզի առաւել սիրէր զՅակոբ, արկ նենգութիւն ի կէր (զոր չէ իսկ մարթ արդարացուցանել) զի դարձուսցէ զօրհնութիւնն ի վերայ Յակոբայ, եւ որպէս ի դէպ էր, սրտմտեալ զայրացաւ Եսաւ[5]։ Որպէս ի գնելն Յակոբայ զանդրանկութիւնն յեղբօրէ անտի քաղցելոյ՝ անագորոյնութեամբ, այնպէս եւ ի սմին կայր յայտնի խորհուրդն Աստուծոյ, եւ նորա թոյլ տալով այն անցանելն եղեւ. նախ իրի իսկ եւ գիրք չեշտամբեն զապականացն որ ի գործսն Յակոբայ նշմարին, նա աւանիկ մեծս այս օրհնեալ ի հօրէն՝ որ մանաւանդ անիծանելն պարտ էր զնա յետ հասանելոյ ի վերայ իրացն ստուգութեան, եւ յետ սակաւ ինչ միոյ հասանեն ի նա նշանակք հաշտութեան Աստուծոյ ընդ նմա[6]։

Բայց Ս. Աւգոստինեայ՝ պատկեր ինձ են իրքն՝ Քրիստոսի, որ զգեցեալ զկերպարանս Ադամայ անդրանկին մարդկութեան՝ ջնջեաց զմեղսն նորա եւ ընկալաւ մեզ զօրհնութիւն Հօրն իւրոյ։

1 Տես Սիրաք ԽԴ. 20 — 23։ Հռով. Դ. 3, 9 — 22։ Եբր. ԺԱ. 8 — 10։ Յակ. Բ. 21 — 23։
2 Ծնն. ԻԵ. 11։
3 Ծնն. ԻԶ. 1 — 5։ Տես Սիրաք ԽԴ. 24։
4 Ծնն. ԻԵ. 19 — 34։
5 Ծնն. ԻԷ։
6 Տես Եբր. ԺԱ. 20։

## 86

Ըստ խրատու մօրն իւրոյ չոքաւ Յակոբ փախստեայ վասն զգուշութեան անձին իւրոյ՝ յետ ընկալելոյ անգամ ի հօրէն օրհնելոյ՝ ի Խառան ի Միջագետս՝ առնուլ անդ կին յազգականութենէ իւրմէ (1757), — զի մի լծեսցի ընդ դստերացն Քանանացւոց որպէս Եսաւն։

Ի միում աւուր ի փախստեանն յոգնեալ արեւն ի մուտս էր, ննջեաց Յակոբ բացօթեայ եդեալ քար մի ընդ սնարս իւր։ Եւ ընդ քունն տեսանէր սանդուղս հաստատեալ յերկրի, որոյ գլուխն հասանէր մինչեւ յերկինս, եւ հրեշտակք Աստուծոյ ելանէին եւ իջանէին ընդ նա. իսկ Տէր կարկառեալ ի սանդղացն ասէր. «Ես եմ Տէր Աստուած Աբրահամու հօր քոյ եւ Աստուած Իսահակայ, մի երկնչիր, զի զերկիրդ յորում դու ննջեցեր, քեզ տաց զդա եւ զաւակի քում։ Եւ եղիցի զաւակ քո իբրեւ զաւազ երկրի ... եւ օրհնեսցին ի քեզ ամենայն ազգք երկրի՝ եւ ի զաւակի քում։ Եւ ես ահաւասիկ ընդ քեզ եմ պահել զքեզ յամենայն ճանապարհս քո՝ յոր եւ գնասցես. եւ դարձուցից զքեզ յերկիրս յայս. զի ոչ թողից զքեզ մինչեւ արարից զամենայն ինչ զոր խօսեցայ ընդ քեզ»։

Այսպէս յայտ եղեւ թէ Յակոբ ինքնին էր յորում աւետիքն մեծազգոյն ի կատարումն հասանելոց էին։ Իսկ նա կանգնեաց արձան զվէմն զոր ընդ սնարսն եդեալ էր, եւ կոչեաց զտեղին՝ Բեթէլ (տուն Աստուծոյ, որ յառաջն Լուզ կոչէր)[1]։

## 87

Յետ այնորիկ հասանէր Յակոբ յաջողութեամբ մօտ ի Խառան. անդ եւես զգեղեցիկն Ռաքէլ՝ զդուստր Լաբանու եղբօր մօր իւրոյ եւ սիրեաց զնա. եւ զի առնուցու զնա իւր՝ եկաց նա ի ծառայութեան անձնաւէրն Լաբանայ մօրեղբօր իւրոյ եւթն ամ. եւ թէպէտ եւ նենգեաց նմա Լաբան եւ ետ զդուստր իւր երէց զԼիա տգեղ՝ ի կնութիւն, չձանձրացաւ Յակոբ ծառայել միւսանգամ այլ եւս ամս եւթն վասն զՌաքէլ առնլոյ։ — Առանց իրիք երկբայութեան է՝ թէ այս երկու հարսանիքք Յակոբայ անդէն յառաջնում ամին ի սկզբան պանդխտելոյ նորա առ Լաբանու եղեն՝ փաշամբք երկուց եւթնամեայ ժամանակաց ծառայութեան։

Թէպէտ եւ ծնաւ նմա Լիա որդիս՝ զՌուբէն, զՇմաւոն, զՂեւի եւ զՅուդա, բայց Ռաքէլ էր ամուլ։ Այնմ իրի թոյլ ետ առն իւրում Ռաքէլ՝ ըստ սովորութեան այնց ժամանակաց, առնուլ փոխանակ իւր զնաժիշտն իւր զԲալլա, եւ ծնաւ զԴան

1 Ծնն. ԻԸ՛

եւ զՆեփթաղիմ. իսկ Զելփա նաժիշտն Լիայ ծնաւ զԳադ եւ զԱսեր. յետ այնորիկ ծնաւ ինքն Լիա որդիս զԻսաքար եւ զԶաբուղոն եւ դուստր մի Դինա անուն։ Յայնժամ յիշեաց Տէր եւ զՀռաքէլ, լուաւ ձայնի նորա եւ ետ որդի մի նմա զոր Յովսէփ կոչեաց (1740)։

Կամէր Յակոբ այնուհետեւ դառնալ այդրէն ամենայն տամբ իւրով, բայց հաւանեցաւ աղաչանաց Լաբանու՝ մնալ անդէն ժամանակս ինչ եւ ծառայել նմա ընդ մասին իւիք խաշանցն Լաբանու։ Թէպէտ եւ բազմապատիկ ջանայր ընչասէրն Լաբան առաւելագոյն իմն շահել, բայց օրհնեաց Աստուած զՅակոբ՝ սքանչելապէս. եւ յայն սակս իսկ խանդեալ ախտաւ ընդ նա Լաբան, մինչեւ խորհեցաւ ի մտի Յակոբ յետ վեցամեայ ժամանակի ծառայութեանն երթալ ի բաց, որպէս եւ Աստուծոյ իսկ տուեալ էր հրաման[1]։

## 88

Չու առնէր Յակոբ ամենայն տամբն, խաշամբք եւ ամենայն ստացուածովք իւրովք ի ժամանակի զի Լաբան զխաշամբքն զբաղեալ էր, եւ անց ընդ Եփրատ (1737)։ Իբրեւ ազդ եղեւ Լաբանու զփախստեանէ նորա, պնդեցաւ զհետ նորա եւ եհաս նմա ի լերինն Գաղաադու. բայց խրատեալ յԱստուծոյ ի տեսլեան՝ չարար ինչ վնաս Յակոբայ։ Հաշտեցան ընդ միմեանս եւ եդին դաշինս բարեկամութեան ընդ իրեարս, ապա մեկնեցան։

Ի չուելն իւրեանց գողացաւ Հռաքէլ զկուռս տան հօր իւրոյ զոր Թերափիմս կոչէին, որ էին պատկերք մարդակերպք ի քրէական նիւթոց ըստ սաբէական պաշտամանց ձուլեալք ի ժամանակի պատահելոյ սահմանելոյ ինչ աստեղատանց, եւ ընթանային առ նոսա խնդրել խորհուրդ ի նոցանէ, յորժամ վարանէին ի վերայ հաւանելին։ Հաւանութեան իմն է թէ վասն բարւոյ իրիք էր գործն Հռաքէլայ. բայց՝ որպէս յայտ է, չէր ամենեւին գիտակ Յակոբ իրացն եղելոց[2]։

Որպէս եղեւ Յակոբ՝ զի հաշտութեամբ մեկնեցաւ ի Լաբանայ աներոյ իւրմէ, բայց խռովեցուցանէր զնա երկիւղ եղբօր իւրոյ Եսաւայ, մանաւանդ յորժամ պատմէր նմա թէ խաղացեալ գայ ի վերայ նորա Եսաւ 400 արամբք։ Յայնժամ ապաստան լինէր Յակոբ յԱստուած հարցն իւրոց՝ ջերմեռանդն աղօթիւք, եւ առձակէր պատարագս ի հօտից իւրոց ընդ առաջ նորա. եւ ի վաղիւ անդր իբրեւ ետես զնա ի հեռաստանէ, խոնարհեցաւ անկաւ առաջի նորա ամենայն տամբն։ Խանդաղատեցաւ ի գութ դարձաւ Եսաւ, գիրկս արկ Յակոբայ եւ համբուրեաց զնա, եւ մեկնեցան ի միմեանց հաշտութեամբ[3]։

1 Ծնն. ԻԹ — ԼԱ. — 16. 2 Ծնն. ԼԱ. 17.... 3 Ծնն. ԼԲ, ԼԳ։

Յովսէփ ի գիւտ եղբարցն, եւ վաճառականաց եղեւ ի նոցանէ, մերկացաւ ի պատմուճանէ իւրմէ, այպն եւ նախատ եղեւ — նոյն անցք եւ ընդ Քրիստոս անցին։ Յովսէփ ատեալ էր եւ ծառայ եղեւ, փորձեցաւ եւ կաց հաստատուն, սուտ մեղադրութեամբ պարտաւորեցաւ — եւ Քրիստոս նոյնգունակ զնոյն կրեաց։ Ըստ նմին օրինակի եւ իբր երկուց բանտակցացն Յովսեփայ՝ սոսկ օրինակի էին երկուցն չարչարակցաց Քրիստոսի յաջմէ եւ յահեկէ նորա[1]։ Ըստ հանելոյ Յովսէփ ի բանտէ, զարդարեցաւ ի զարդ փառաւորութեան, եւ տուաւ նմա այլ անուն, եւ հնազանդեցաւ նմա ամենայն աշխարհն Եգիպտացւոց — եւ Քրիստոս փառաւորեալ ի գերեզմանէ, "տուաւ նմա անուն որ ի վեր է քան զամենայն անուն", եւ ամենայն ինչ հնազանդեցաւ նմա[2]։ — Ըստ այսկէ՝ ոչ յարդարաբար նորոց կտակարանացն միայն՝ այլ եւ ի բարեպաշտ հնոցն կտակարանաց երեւելին կենդանին Քրիստոսի՝ որ իբրեւ արդարութեան արեգական եւ յառաջ եւ յետ կոյս ճառագայթս արձակէ։

Ընթացցուք այսուհետեւ ի պատմութիւն ժողովրդեան նորա։

## ԺԶ.

### Պատմութիւն Իսրայէլացւոց։

### Ա.

### Ելք նոցա յԵգիպտոսէ մինչեւ ցվախճանել Մովսէսի. (1500 — 1460)։

### 96

ՅԵՏ վախճանելոյ որդւոցն Նահապետաց՝ այնուհետեւ ինչ թուէր թէ դադարեալ իցէ Աստուած յառաջնորդելոյ իւրոց զաւակի նոցա։ Սակայն անդէն ի նմին ժամանակի հաստատէր լեալ խոստմանցն, աճեցոյց եւ բազմացոյց զԱբրահամեան յազգ մեծ։ Եւ երկիրն Գեսեմ առաւել քան զամենայն կողմանս պարարտեր աշխարհին Եգիպտացւոց՝ պատշաճագոյն էր քան զամենայն վայրս՝ բազմանալոյ ծնընդոց մարդկան։ Դարձեալ՝ վասն զի գործ Իսրայելացւոցն մանաւանդ հովուութիւն էր, հարկ էր նոցա չխառնակել ընդ Եգիպտացիսն՝ որոց զարշելի էր հովուութիւն թափառականն, որով եւ ի կռապաշտութեան անտի ազատեցան, թէպէտ ոչ ամենեւին իսկ առանց արատոյ էին[3]։ Իսկ նեղութիւնքն եւ լլկանք որ վաղվաղակի եկին հասին ի վերայ՝ պահեցին եւ զօրացուցին ի նոսա զյիշատակս աւետեացն Աստուծոյ՝ յորս եւ զհանդերձելոյ իմիք փրկութենէ ճառք կային[4], եւ բաւական էին յուշ առնել նոցա առէպ զօրհնութիւնն Յակոբայ որ զաբութեանց իւր՝ յորս վայելելոցն էին ի խոստացեալ երկրին ի Քա-

1 Տես Ղուկ. ԻԲ, ԻԳ։
2 Փիլիպ. Բ. 7 — 11։ Եբր. Բ. 8։
3 Տես Եզեկ. Ի. 7 — 9։
4 Տես Ծնն. ԽԹ. 12 — 14։

նորա թնդալ ձեռն ի խստութեանն իւրում — եւ ոչ լսեսցէ նոցա փարաւոն։ Եւ արկցէ Տէր զձեռն իւր յԵգիպտոս, եւ հանցէ հանդերձ զօրութեամբ իւրով զժողովուրդ իւր, զորդիսն Իսրայէլի յերկրէն Եգիպտացւոց մեծաւ վրէժխնդրութեամբ։ Եւ ծանիցեն Եգիպտացիքն թէ ինքն է Տէր»։

Արարին Մովսէս եւ Ահարոն որպէս ինչ հրամայեաց նոցա Տէր. Մովսէս 80 ամաց էր յայնժամ եւ Ահարոն 83[1]։ — Այսուհե-տեւ հաստատեաց Մովսէս հրամանաւն Աստուծոյ զհրեշտակու-թիւն իւր նշանօք պատժոցն պատուհասից, որք թէպէտ եւ կից ինն են ընդ առանձինն բնածին երեւութից Եգիպտացւոց աշխար-հին, այլ միշտ եւս յառաջնագոյն պատմէր զնոսա Մովսէս եւ բառ-նայր աղօթիւքն[2]։

## 100

Իբրեւ մտաւս ինն եւ սկիզբն նշանացն ընկէց Ահարոն ի գե-տին զգաւազանն Մովսէսի, եւ փոխեցաւ գաւազանն յօձ. նմա-նել նմանեցին կախարդքն Եգիպտացւոց՝ նշանսն, բայց գաւազանն Ահարոնի եկուլ զնոցայն. եւ Փարաւոն խստացոյց զսիրտ իւր։

1. Ամառն այնուհետեւ ձգեաց ի վաղիւ անդր զգաւազանն ի վերայ գետոյն (Նեղոսի), եւ ամենայն ջուր՝ ոչ գետոյն միայն այլ եւ ամենայն իսկ երկրին յարիւն դարձաւ, եւ սատակեցան ձկունքն ամենայն, եւ նեխէր հարուածն եւթն օր. յայս ասես յայժ իսկ յայտնագոյն է ի կարմրագոյն երանգէ՝ զոր առնու Նեղոս ի մանրանց հողոյ, ի սահմանեալ ժամանակի՝ յելս ամառն եւեթ, այլ մնան ձկունքն կենդանի։ Բայց սակայն զնոյն նշանէին եւ կախարդքն ապարքին՝ գանեալ զջուրն ի ջրհորացն նորոց պեղելոց[3]։

2. Յետ միւսանգամ յորդորելոյ եւ սպառնալեաց՝ ի ձգել գաւա-զանին Մովսէսի ի վերայ ջուրց՝ ել գորտ ի վերայ երկրին Եգիպ-տացւոց եւ յորդեալ զեռայր ամենայն ուրեք։ Թէպէտ եւ զայն արդեամբք եւ գէտքն արարին, բայց միայն աղօթիւքն Մովսէսի զաղարեաց հարուածն։ — Այլ խստացեալ էր սակաւին սիրտն Փարաւոնի։

3. Ապա եհար Ահարոն գաւազանաւն զհողն երկրին, եւ եղե-ւ մուն եւ մժղուկ ի մարդ եւ յանասուն։ Ջանացան առնել զնոյն կախարդքն եւ ոչ կարացին. եւ խոստովան եղեն թէ «Մատն Աս-տուծոյ է այդ»[4]։ Այսպէս յամօթ եղեւ եւ ջնջեցաւ զօրութիւն սատանայի եւ պաշտամանց նորա՝ արհամարհ եւ չնչինագոյն անասնովքն։

4. Իբրեւ միւսանգամ քարացոյց Փարաւոն զսիրտ իւր, ել եղեւ ամենայն երկիրն Եգիպտացւոց շանաճանճիւ, ուր՝ երկիրն

1 Ելք Է. 1—7։
2 Տես Ելք Է. 9, 14, 15. Ը. 8, 9 եւ յայլ տեղիս։
3 Տես Ելք Է. 24։
4 Ելք Է. 9—Ը. — 19։

մանից ի մէջ Եգիպտոսի. եւ սատակեցից զամենայն անդրանիկ յերկրին Եգիպտացւոց, յանդրանկէ անտի Փարաւոնի որ նստի յաթոռ նորա, մինչեւ ցանդրանիկ աղախնոյն որ կայցէ առ երկանս, եւ մինչեւ ցանդրանիկ ամենայն անասնոց: Բայց որդւոցն Իսրայելի ոչ ինչ եղիցի վնաս ի մարդոյ մինչեւ յանասնոց: Դարձեցին Փարաւոնի զբանսն Մովսէս եւ Ահարոն. սակայն եւ այնպէս եւս մնաց Փարաւոն խստացեալ[1]:

Պատրաստեալ հրամանն ետ Տէր Մովսիսի եւ Ահարոնի՝ առնել ամենայն ժողովրդեանն Իսրայելի, թէ ամենայն տանուտէր ընդ երեխս (14 նիսանի ամսոյ առաջնոյ ամսոյ) զենցէ ոչխար արու տարեւոր անարատ, եւ խորովեալ ժողովեսցէ զընտանիս իւր ուտել զնա բաղարջով եւ եղերդով գիշերի, ածեալ զգօտի ընդ մէջս եւ կօշիկ յոտս եւ ցուպ ի ձեռին, որպէս թէ ձեռագիւցեն երթալ. զի պասեք (զատիկ, անցք) Տեառն է: Առեալ զարիւն ոչխարին դիցեն նշան ի վերայ դրանց իւրեանց. զանզի սատակելոց է Տէր ի ձեռն հրեշտակին իւրոյ զամենայն անդրանիկ Եգիպտոսի. եւ յորժամ տեսցէ նա զարիւնն նկարեալ ի վերայ դրանն՝ զանց արասցէ զտամբն: Զայս օր յիշեսցեն եւ որդիք իւրեանց կատարեսցեն տօն տարեկանաց ամ ըստ ամէ եւթն օր մինչեւ յաւիտեան ժամանակաց: — Արարին Իսրայելացիք որպէս պատուիրեաց նոցա հրամանն ի Տեառնէ[2]:

## 102

«Եւ եղեւ ի հասարակ գիշերի՝ եւ Տէր եհար զամենայն անդրանիկս յերկրին Եգիպտացւոց… եւ եղեւ աղաղակ մեծ յերկրին Եգիպտացւոց. զի ոչ գոյր տուն յորում ոչ գոյր մեռեալ ի նմա» (թէպէտ ի մարդոյ թէպէտ յանասնոց): Յայնժամ յղեաց. կոչել Փարաւոն գիշերի զՄովսէս եւ զԱհարոն առաջի իւր եւ ասէ. «Արիք եւ ելէք ի ժողովրդենէ իմմէ եւ դուք եւ որդիքն Իսրայելի երթայք եւ պաշտեցէք զՏէր Աստուած ձեր. եւ զարջառ եւ զոչխար ձեր առեալ գնացէք, որպէս եւ ասացէք. բայց եւ զիս օրհնեսջիք»: — Եւ փութայր ամենայն Եգիպտացիքն զժողովուրդն հանել յերկրէն[3]:

Բայց Իսրայելացիք, որպէս հրամանն առեալ էր նոցա յԱստուծոյ ի ձեռն Մովսիսի, խնդրեցին յԵգիպտացւոց անօթս ոսկւոյ եւ արծաթոյ եւ հանդերձս զարդու բազումս. եւ ետ Տէր նոցա գտանել շնորհս առաջի Եգիպտացւոցն (մեղմացոյց զսիրտս Եգիպտացւոցն); եւ ետուն նոցա յանօթ, եւ կողոպտեցին նոքա զԵգիպտացիսն[4], այս ինքն մեծացան Իսրայելացիք յինչից Եգիպտացւոցն. զանզի յօժարութեամբ իւր տային զոր միանգամ խնդ-

1 Ելից ԺԱ. 1, 4—5:
2 Ելից ԺԲ. — 28, 42, 43—50:
3 Ելից ԺԲ. 29—33:
4 Ելից ԺԲ. 35, 36. տես Գ. 21, 22. ԺԱ. 2, 3:

զրէինն ի նոցանէ, զի թափեսցեն զանձինս ի նոցանէ. եւ դարձեալ զի կարող էին Եգիպտացիքն առնուլ ընդ այնր զկալուածս բաժնի Իսրայելացւոցն, զտունս նոցա եւ զայլ եւս ինչ նոյնպիսիս: — Այսպէս խաղացին որդիքն Իսրայէլի ի Ռամեսեայ ի կողմանս Սոկքովթայ (խուղք) 600,000 այր հետեւակ՝ թող զմանկտի եւ զբազմամբոխ խառնաղանճն որ ել ընդ նոսա եւ զանասունս բազում (յամի իբրեւ 1500). եւ առին ընդ իւրեանս զհացն իւրեանց մինչ չեւ խմորեալ էր, եւ եփեցին յանթեղի. քանզի չետուն ոգի առնուլ Եգիպտացիքն[1]: Այսպէս հան Տէր ի միում աւուր զամենայն ազգն Իսրայելեան յԵգիպտոսէ: Եւ Մովսէս եւ զոսկերսն Յովսեփայ ընդ իւր[2]:

Ի նմին աւուր պատուէր ետ Տէր ի ձեռն Մովսիսի Իսրայելացւոցն՝ նուիրել նմա զամենայն արու անդրանիկ նախածին ի մարդոյ մինչեւ յանասուն, յիշատակ այնր զի խնայեաց նա յանդրանիկսն նոցա՝ յորժամ եհար զանդրանիկս Եգիպտացւոց, եւ եհան զնոսա հզօր ձեռամբ յերկրէն Եգիպտացւոց[3]:

## 103

Խաղացոյց Տէր զԻսրայէլացիսն ընդ ճանապարհ անապատին, քանզի չուեցին նոքա ի Սոկքովթայ (որ էր թերեւս տեղի ժողովելոյ ամենեցուն ի մի վայր), եւ հասին յԵթամ առ անապատաւ՝ որ առ եզերբ Կարմիր ծովուն կայ. «Իսկ Աստուած առաջնորդէր նոցա ցերեկ՝ սեամբ ամպոյ, ցուցանել նոցա զճանապարհն, եւ զգիշեր՝ սեամբ հրոյ, լուսատու լինել նոցա ի գնալն զցայգ եւ զցերեկ (ընդ անշէջն եւ ընդ անկոխ անապատն Արաբիոյ): Եւ ոչ պակասէր սիւն ամպոյն ի տուէ եւ սիւն հրոյն ի գիշերի՝ առաջի ամենայն որդւոցն Իսրայէլի»[4]: Այն տեսիլ զարմանալի՝ լինէր նոցա նշան ժողովելոյ եւ չուելոյ[5]. միայն ի վերայ գնդի Իսրայէլացւոցն երեւէր տեսիլն, թէպէտ եւ չէր ինչ անծանօթ Քանանացւոցն[6], եւ կաց մնաց 40 ամ առանց զկերպարանսն փոփոխելոյ, եւ առաջնորդէր Իսրայէլացւոցն[7]:

Այս որչափ այլակերպ էր այն սքանչելի առաջնորդ ճանապարհաց նոցա՝ ի սովորական օրոցն երեւութից, եւ կամ ի նշանակէ հրոյ կամ ծխոյ, զոր տային զօրավարք հնոց ժամանակաց նշան զօրաց իւրեանց: — Դարձցուք ի ծովն Կարմիր դառնալ անդ զԻսրայէլացիսն. քանզի հրաման տուեալ էր նոցա Աստուծոյ՝ բանակել մօտ ի Փիհահիրովթ (Հերոյապոլիս, այս ինքն Կաջաց քաղաք), զի առցեն զչափ զիւրոյ ամենազօր զօրութեանն[8]:

1 Ելից ԺԲ. 34, 37—39:
2 Ելից ԺԲ. 40, 41, 51. ԺԳ. 19:
3 Ելից ԺԳ. —16:
4 Ելից ԺԳ. 17—22. տես ԺԴ. 19:
5 Ելից Խ. 34—36: Թուոց. Թ. 15—23:
6 Թուոց. ԺԴ. 14:
7 Նեեմ. Թ. 12, 19:
8 Ելից ԺԴ. —4:

## 104

Այն ինչ չուեալ Իսրայելացւոցն՝ շրջեցաւ սիրտն Փարաւոնի և խարհուրդ իշխանաց նորա։ — Պնդեցաւ զհետ նորա Թագաւորն 600 ընտիր ընտիր կառամարտիկ կառօք և հեծելովք իւրովք և ամենայն զօրու իւրով, և եհաս նոցա առ Կարմիր ծովուն։ Զահի հարան Իսրայելացիքն, բայց հանդարտեցուցանէր զնոսա Մովսէս ասելովն՝ թէ "Տէր տայ պատերազմ ընդ ձեր"։ Այս կարկառ նա հրամանաւ Աստուծոյ զգաւազան իւր ի վերայ ծովուն, քանզի փառաւորել կամէր Աստուած ի Փարաւոն և յամենայն զօրս նորա. և հրեշտակն Տեառն որ երթայր առաջի Իսրայելի՝ չոգաւ զկնի նոցա, նոյնպէս և սիւն ամպոյն եմուտ ի մէջ բանակի Իսրայելացւոցն և ի մէջ բանակի Եգիպտացւոցն, և չկարէին խառնել նոքա ընդ միմեանս։ Իսկ և իսկ պատառեցաւ ջուրն, և հողմն արեւելից շնչեալ սաստկութեամբ զցայգն՝ ցամաքեցոյց զյատակս ծովուն։

Եւ մտին որդիքն Իսրայելի ընդ մէջ ծովուն ընդ ցամաք, և էր ջուրն իբրև պարիսպ ընդ աջմէ նոցա և ընդ ահեկէ։ Պնդեցան Եգիպտացիքն, մտին և նոքա զկնի նոցա կառօք և հեծելովք։ Իսկ յառաւօտին պահուն հայեցաւ Տէր սեամբ հրոյ և ամպոյ ի բանակն Եգիպտացւոց և խռովեաց զբանակն նոցա, խորտակեաց զանիւս կառաց նոցա և ընկէց զնոսա։ Ասեն Եգիպտացիքն, փախիցուք յերեսաց Իսրայելի զի Տէր պատերազմի վասն նոցա ընդ Եգիպտացիս։ — Բայց Մովսէս ձգեաց միւսանգամ զձեռն իւր ի վերայ ծովուն հրամանաւն Աստուծոյ՝ յորժամ անցեալ էր Իսրայելացւոցն յայնկոյս ծովուն, և դարձաւ ի վաղիւ անդր ջուրն այգուէն ի տեղի իւր և ընկղմեաց զԵգիպտացիսն ի փախստեան, ծածկեաց զկառս և զհեծեալս նոցա և զամենայն զօրութիւն Փարաւոնի, և ոչ մի ոք ապրեցաւ ի նոցանէ։ — Այսպէս փրկեաց Տէր յաւուր յայնմիկ զԻսրայէլ ի ձեռաց Եգիպտացւոցն. տեսին նոքա զդիակունս նոցա առ ափն ծովուն, և զձեռն մեծ զոր եցոյց Տէր ի վերայ Եգիպտացւոցն, և երկեաւ ժողովուրդն ի Տեառնէ, և հաւատացին յԱստուած և ի Մովսէս ծառայ նորա[1]։

## 105

Յայնժամ երգեաց Մովսէս և որդիքն Իսրայելի օրհնութիւն Աստուծոյ, որ է առաջին երգ պուետէից ի ծանուցելոց մեզ, յօրինեալ յառաջնոյ պուետէ ի Մովսիսէ, որով օրհնէ զմեծամեծսն և զզարմանագործս Աստուծոյ՝ բարձրական իմն և աստուածեղէն եռանդմամբ[2]։

1 Ելք ԺԴ։ 2 Ելք ԺԵ։

Յիշատակ եւ յաղթանակ էր առնել զայն Իսրայելացւոցն, քանզի մեծաւ պղանծեալք միայն ապրեցան: Յառաջագոյն իսկ ասացեալ էր Աստուած Մովսիսի՝ թէ փառաւորելոց է զանձն ի փարաւոն եւ ի զօրս նորա, զի ծանիցեն թէ նա է Տէր[1]: Խնդրէին ապա հրամանն Մովսիսի կարկառել զձեռն իւր, յետ յառաջագոյն քարոզելոյ Մովսիսի զփրկութեան Եգիպտացւոցն[2]: — Ընդ այս Մովսէս եւ պատուէր ջուրն եւ կայ իբրեւ պարիսպ կանգնեալ յերկուց կողմանց (ոչ որպէս ի ժամանակի նուազելոյ ջուրց ծովուն, զի յետ եւեթ խաղաղ յայնժամ ծովն), եւ հողմն արեւելից ցամաքեցոյց զյատակս ծովուն: Իսկ այն առժամայն այնչափ ինչ ժամանակս առեալ՝ ցորչափ անցցեն յայնկոյս Իսրայելացիքն, ապա իսկ եւ իսկ կարկառեալ պարտէ յետին ծովն՝ յորժամ միւսանգամ կարկառեաց Մովսէս զձեռն իւր, եւ թաղէ ծովն զԵգիպտացիսն ի մէջ անդնդադարձան ալեաց իւրոց[3]: Այլ եթէ կամիցի ոք յայսմ վայրի նուազութիւն ինչ եւ յորդութիւն ծովակին ջուրց զհետ հանապազ, հարկ է այնպիսւոյն եւ զայն եւս յանձն առնուլ թէ առժամայն Եգիպտացւոց անտեղեկացեալ եղէ իրեր այդպիսի, զոր գործ աւելի է յանդիմանելոյ: Նմին համաձայն բան մկրտութեան Պօղոսի Առաքելոյ՝[4] կայ պահի աւանդութիւն այնր անտեղեկական դիպաց ի մէջ ազգին Ձկնակերպաց որ առ Կարմիր ծովուն բնակէին. թող զկնդրութիւնս այլոց եւս մատենագրաց հեթանոսաց[5]:

## 106

Տարաւ Մովսէս զԻսրայելացիսն երեքօրեայ ճանապարհ ընդ անապատն Սուր. եւ ոչ գտանէին զերիս աւուրս ջուր, եւ իբրեւ հասին ի Մեռա, գտին ջուր այլ դառն: Տրտնջեալ յայնժամ ժողովուրդն, իսկ Մովսէս կարդաց առ Տէր, եւ եցոյց նմա Տէր փայտ, եւ արկ Մովսէս ի ջուրն եւ քաղցրացաւ ջուրն: Ապա հասին յԵղիմ ուր երկոտասան աղբիւրք էին եւ 70 ծառք արմաւենեաց. անդ բանակեցան եւ անտի չուեցին յանապատն Սին[6]:

Անդ տրտնջեցին Իսրայելացիքն վասն չգտանելոյ կերակուր: Խոստացաւ նոցա Տէր ի ձեռն Մովսիսի թէ տեղասցէ նոցա հաց յերկնից: Իսկ անդ երեւեցաւ փառքն Տեառն ամպով, եւ ասէ Տէր ցՄովսէս. "Լուայ զտրտունջ որդւոցդ Իսրայելի: Արդ խօսեաց ընդ դոսա եւ ասասցես. ընդ երեկս մսով կերիջիք, եւ ընդ առաւօտս հացիւ յագեսջիք. եւ ծանիջիք թէ ես եմ Տէր Աստուած ձեր,,: Ընդէն ի նմին աւուր ընդ երեկս եկն լորամարգի եւ ծածկեաց զբանակն[7]:

1 Ելք ԺԴ. 4, 17, 18:
2 Ելք ԺԴ. 13:
3 Ելք ԺԴ. 16, 21, 22, 26, 27—29:
4 Կորնթ. Ա. Ժ.:
5 Առ Եւսեբեայ Կեսարացւոյ՝ Պատրաստու. Աւետար. Գլ. Թ:
6 Ելք ԺԵ. 22—27. ԺԶ. 1:
7 Ելք ԺԶ. — 13:

Իսկ ընդ առաւօտն անկաւ ցօղ շուրջ զբանակաւն, եւ ընդ ցածնուլ ցօղոյն՝ անուսին ինչ ի վերայ երկրին նման եղեման, եւ տեսին որդիքն Իսրայելի ցմիմեանս «Մանհու», այս ինքն թէ՝ Զինչ է այս: Եւ Մովսէս ասէ ցնոսա, այդ է հացն զոր ետ ձեզ Տէր: Կոչեցին զնա Իսրայելացիքն Մանանա. էր այն իբրեւ զգինձ, գոյն նորա՝ սպիտակ, եւ համ նորա էր իբրեւ զխորիսխ մեղու եւ հալէր յարեւու[1]:

Միաբան իմն են նշանակացս այսոցիկ՝ նշանակք բնականն մանանայի որ ի Ջերմ աշխարհս ի բուսոց ինչ արտաքս ծորեալ իջանէ, կամ քրտնելով խիժն եւ ի հոսել գիշերոյն թանձրանալով՝ միաւանգամ ընդ հալել առաւօտին ցօղոյ եւ նա ընդ նմին հալի. եւ կամ արուեստիւ հանեն զնա, եւ այն՝ միայն յԱւգոստոս եւ ի Սեպտեմբեր ամսեան:

Իսկ զարմանալի Մանանայն (յորմէ այն մանանա առ զյորջորջումն) էութեամբ իմն այլակերպ է ի բնականէ անտի. ըստ հրամանին Մովսէսի պարտ էր ժողովել անտի իւրաքանչիւր ումեք աւուր աւուր այնչափ ինչ միայն որչափ ինքն եւ իւրքն բաւական էին ուտել. այս ինքն մի մի չափ իւրաքանչիւր ումեք. իսկ յաւուրն վեցերորդի ժողովել կրկին. եւ այն էին զարմանք զի որ առաւելն ժողովէր՝ ոչ առաւել ինչ ունէր, եւ որ պահէր ինչ ի նմանէ մնացորդ յայլ օր՝ եռայր ի նմա որդն, բայց միայն յաւուրն եւթներորդի՝ յորում ոչ իջանէր Մանանա, որպէս զչափ առեալ գիտացին անհնազանդքն յԻսրայելացւոց: Այսպէս ուտէին Իսրայելացիքն 40 ամ ամենայն ուրեք Մանանա. եւ էր այն նոցա փոխանակ հացի, որպիսի ինչ ոչ երեւի ի մանանայի անդ որ մեզ ծանօթ է[2]:

Առ յիշատակէ պահանջելի կերակրոյն՝ հրաման ետ Մովսէս Ահարոնի առնուլ չափ մի ի Մանանայէն եւ պահել[3]: Մանանայն համարեցաւ միշտ առակ օրինակի նուիրական խորհրդոյ հաղորդութեան (Ճշմարիտ երկնաւորն հացի) ըստ Քրիստոսի իսկ բանիցն[4]:

## 107

Խաղացին ի Սինն անապատէ ի Ռափիդիմ, ուր միւսանգամ տրտնջեցին վասն չգտանելոյ ջուր. սակայն հրաման ետ Տէր Մովսիսի հարկանել զաւազանաւն ի վերայ վիմին ի Քորէբ, եւ բղխեաց ջուր ի վիմէն. բայց տեղւոյն անուն կոչեցաւ Մասսա, Փորձութիւն[5]:

Յետ այնորիկ դիմեցին ի վերայ Իսրայելացւոցն Ամաղեկացիքն. պատուէր ետ Մովսէս պաշտօնէին իւրում Յեսուայ խաղալ ի

1 Ելից ԺԶ. 14, 15, 21, 31: Թուոց ԺԱ. 7—9:
2 Ելից ԺԶ. 16 — 30, 35: Տես եւ Երկր. օր. Ը. 3, 16:
3 Ելից ԺԶ. 32 — 34:
4 Յովհ. Զ. 31, 32, 33, 49, 50, 59: Տես եւ Իմաստ. ԺԶ. 20:
5 Ելից ԺԷ. — 7:

վերայ նոցա ընտիր ընտիր զօրքն, եւ ինքն եւ Հանդերձ Ահարոնիւ եւ Ովրաւ որդւովն Քաղեբայ (որ էր քեռայր նորա, որպէս կարծի) ի սար ելեալ, եւ ամբարձեալ զձեռս իւր կայր յաղօթս մինչեւ յաղթէր Յեսու. բայց իբրեւ իջուցանէր Մովսէս զձեռսն՝ զօրանային Ամաղեկացիքն. վասն այնորիկ իսկ Ահարոն եւ Ովր (Հովր, Հուր) Հաստատէին ի վեր զձեռս նորա մին աստի եւ միւս անտի մինչեւ ցմուտս արեւուն, յորժամ պարտեաց զնոսա ամենեւին Յեսու։

Անդէն պատուիրեցաւ յառաջագոյն ի Տեառնէ բնաջինջ առնել զյիշատակ Ամաղեկացւոցն։ Իսկ Մովսէս ուղղեաց սեղան եւ անուանեաց "Տէր ապաւէն իմ"[1]։ Յետ յաղթութեանն չուեցին յանապատն Սինայի յերրորդում ամսեան ելանելոյ նոցա յԵգիպտոսէ, եւ անդ բանակեցան[2]։

Եկն անդր Յոթոր աներ Մովսեսի յերկրէն Մադիամու տեսանել զՄովսէս, զի լուեալ էր զզարմանալի չուայն ժողովրդեանն Աստուծոյ. պատմեաց նմա Մովսէս մի ըստ միոջէ զգործսն Աստուծոյ եւ օրհնեաց Յոթոր զՏէր եւ մատոյց ողջակէզս Տեառն (կամ զի խոստովանէ քահանայ Աստուծոյ ճշմարիտ էր, եւ կամ՝ ի Մովսիսէ ուսեալ ի ժամանակի զի առ նմա կամ առ Հօր նորա բնակեալ էր Մովսէս)։ — Եւ իբրեւ ետես նա թէ չէ բաւական Մովսէս ինքնին միայն դատել զժողովուրդն, խրատ ետ նմա առնուլ արս ընտիրս ի ժողովրդենէ եւ կացուցանել զնոսա ի վերայ հազարաւորաց, հարիւրաւորաց, յիսնաւորաց եւ տասնաւորաց ժողովրդեանն զի դատեսցին զժողովուրդն (հազարապետս, հարիւրապետս, յիսնապետս, տասնապետս), եւ միայն յորս ինչ մեծամեծս ինքնին վճարել զդատաստանս։ Եւ անսաց Մովսէս խրատուն[3]։

## 108

Առ լերամբքն Սինայի ուր կայր դադարել արօտ բազում եւ աղբերս ջուրց եւ երկիր պտղաբեր՝ մնացին իբրեւ ամ մի (1500—1499), եւ անդ ընկալան Իսրայելացիքն օրէնս յԱստուծոյ։ Իսկ եւ իսկ յետ անդր հասանելոյ՝ ել Մովսէս ի գլուխ լերինն Սինայի եւ խօսեցաւ ընդ նմա Տէր երթալ ազդ առնել որդւոցն Իսրայելի թէ "Դուք ձեզէն տեսէք՝ որչափ ինչ արարի ընդ Եգիպտացիսն. եւ առի զձեզ իբրեւ ի վերայ թեւոց արծուոյ եւ յարեցի զձեզ առ իս։ Եւ արդ եթէ լսելով լուիջիք ձայնի իմում, եւ պահիցէք զուխտն իմ, եղիջիք դուք ինձ ժողովուրդ սեպհական յամենայն ազգաց, զի իմ է ամենայն երկիր. եւ դուք եղիջիք ինձ ի թագաւորութիւն, եւ ի քահանայութիւն եւ յազգ սուրբ"։

1 Ելք ժէ. 8—16։
2 Ելք ժթ. 1, 2։
3 Ելք ժը։ Տես Երկրորդ. օր. Ա. 10—17։

Այնուհետեւ Մովսէս առ ինքն զծերսն (զցեղապետսն եւ զդատաւո-րս) եւ խօսեցաւ առաջի նոցա զբանսն զայնոսիկ. եւ նոքա յանձն առին յօժարութեամբ ընդունել զօրէնսն Աստուծոյ: Ապա կարգեաց Մովսէս սրբել եւ պատրաստել զերիս աւուրս սրբու-պատրաստութեան: — Եւ յաւուրն երրորդի ընդ առաւօտն հնչիւն ահագին հատանէր ի լեռնէ անտի իբրեւ զձայն փողոց. եւ ամպ միգախառն մածեալ ունէր զլեառնն, եւ լինէր որոտումն եւ սաստիկ սաստիկ փայլատակունք ընթանային: Եւ ամենայն լեառնն Սինայի ծխէր իբրեւ զհնոց բորբոքեալ, քանզի իջեալ կայր Աստուած ի վերայ նորա հրով, եւ ահագին էր տեսիլ լերինն, քանզի հասանէին ձայնք փողոցն ի բաց յառաջեալք եւ սաստկա-ցեալք յոյժ:

Ապա կացոյց Մովսէս զժողովուրդն զատորոշել լերինն եւ պատուէր ետ մի մերձել այլ եւս յառաջ. ապա ել նա ընդ եղբօր իւրում Ահարոնի ի բարձրութիւն նոյն լերինն: Յետ այնորիկ այնպիսի ահագին եւ բարձրական տեսլեանցն՝ որովք պատշաճա-գոյնս յայտնի եւ ամենեցուն ծանօթ լինի աներեւոյթ Աստուա-ծութիւնն, քարոզեաց եւ յայտ արար (բերանամբ Մովսիսի) զբան զգլխաւոր օրէնսն կամ զտասնհրամանեան պատուիրանսն[1]:

## 109

Բայց ամենայն ժողովուրդն որ տեսանէր զփառսն Աստուծոյ եւ լսէր՝ զահեղ հարան, խուսեցան եւ կացին ի հեռաստանէ, եւ ա-սէին ցՄովսէս. «Դու խօսեաց ընդ մեզ՝ եւ լուիցուք. եւ մի խօ-սեսցի ընդ մեզ Աստուած, գուցէ մեռանիցիմք»: Սոսկալի թուէր նմա զիշխանութիւն օրէնսդրութեան: — Իսկ Մովսէս ասէր. «Քաջալերեցարուք. զի վասն փորձելոյ զձեզ եկն առ ձեզ Աս-տուած. որպէս զի լինիցի երկեւղ նորա ի ձեզ, զի մի մեղանչիցէք»: Ապա եմուտ Մովսէս ի մէջն եւ ի մառախուղն ուր էրն Աստուած:

Ընդ հրամանն այսր նմա Տէր նախ կանգնել սեղան եւ մատու-ցանել զոհս. ապա ընծայեցուցանէր ազգի ազգի օրէնս առ ի դիւրութիւն զգլխաւորն օրինաց. կարգեաց նա զտօն շաբաթուն եւ զերեքսին տօնսն զգլխաւորս, եւ խոստացաւ բարութիւնս վասն պատուիրանապահացն[2]:

Զայս ամենայն պատմեաց Մովսէս առաջի ժողովրդեանն յոր-ժամ դարձաւ ի լեռնէ անտի, եւ խոստացաւ ժողովուրդն պահել զամենայն: Իսկ Մովսէս գրեաց զբանս Տեառն ի մատեանի, շինեաց սեղան երկոտասան սեամբք ըստ թուոյ երկոտասան ցեղիցն, եւ ետ մատուցանել ողջակէզս ի ձեռն երիտասարդաց. ապա ընթեր-ցաւ նա զգիր ուխտին լու ի լու ժողովրդեանն, եւ ետ պատասխանի

1 Ելք ԺԹ. Ի.—17: 2 Ելք Ի. 18...—ԻԳ:

ժողովուրդն. «Զամենայն զոր խօսեցաւ Տէր՝ արասցուք եւ լուիցուք»: Եւ Մովսէս ցանեաց արիւն զսեղանովն եւ զժողովրդեամբն առ ի հաստատութիւն ուխտին:

Ապա եւ Մովսէս միւսանգամ հրամանաւ Աստուծոյ ի լեառն Սինայի ել եւ եղեւ աներեւոյթ յաչաց ժողովրդեանն, եւ մնաց անդ քառասուն տիւ եւ քառասուն գիշեր[1]: Ի ժամանակին յայնմիկ տայր նմա Տէր զօրէնս յօրինուածութեանց, այսինքն պատուէրս վասն կարգելոյ եւ յօրինելոյ պաշտամունս Աստուծոյ հրապարակաւ, վասն տապանակի ուխտին, վասն վրանին ժամու, վասն քահանայից եւ այլոց եւս նուիրակաց[2]: Եւ իբրեւ դադարեաց Աստուած ի խօսելոյ, ետ նա Մովսեսի երկուս տախտակս օրինաց քարեղէնս՝ գրեալս մատամբն Աստուծոյ[3]:

## 110

Բայց յոյժ յերկարագոյն թուեցաւ Իսրայելացւոյն՝ յամելն Մովսեսի. այսպէս համարէին թէ մեռաւ: Նմին իրի կուտեցան ի վերայ Ահարոնի եւ ասեն. «Արի եւ արա մեզ աստուածս՝ որ առաջնորդեսցեն մեզ»: Այրն աստուածապաշտ Ովր՝ թուի թէ վասն ընդդէմ դառնալոյ ժողովրդեանն խեռելոյ՝ սպանեալ լիցէ: — Իսկ Ահարոն զիջաւ առ ահին: Եւ նա ածել զգինդսն իւրեանց ոսկիս (զի թերեւս այնպիսի դժուարին խնդրով՝ դարձուսցէ զնոսա ի խորհրդոյ անտի[4]) եւ գործեալ կերպարանս ինչ՝ ըստ նմին գործեաց որթ ձուլածոյ, եւ բարբառ արձակեալ գոչեաց ժողովուրդն ուրախութեամբ. «Այս են աստուածք քո, Իսրայէլ, որ հանին զքեզ յԵգիպտոսէ». եւ կանգնեաց Ահարոն սեղան: Ի վաղիւ անդր մատուցին զոհս Իսրայելացիքն. ապա կերան եւ արբին եւ յարեան ի խաղալ[5]:

Պաշտօն որթոյն նմանութիւն իմն էր պաշտաման Ապիսայ կամ եզինջոյն, եւ որպէս Ապիսն նշանակ էր Ոսիրեայ եւ արեգական, որ պաշտօն առնուին յՈն եւ ի Մեմփիս, նոյնպէս եւ որթն Ահարոնի՝ նշանակ կալոց էր ճշմարտին Աստուծոյ, եւ լինել փոխանակ սեանն ամպոյն եւ հրոյ որ հանգուցեալ էին ի վերայ Սինայի, բայց ի դէպ է թէ բազմաց ոչ նշանակ լոկ այն եղեւ, այլ կուռք:

Ինքնին իսկ Տէր իմացոյց Մովսեսի ի լերինն թէ յանցեաւ ժողովուրդն, եւ սպառնայր ջնջել զնոսա. բայց մեղմացաւ մեծաւ պաղատանօք ծառային իւրոյ Մովսեսի: Էջ նա ի լեռնէ անտի եւ մօտ հասեալ ի բանակն՝ ետես եւ լուաւ զամպարշտութիւն նոցա, լի եղեւ սրտմտութեամբ, ընկէց ի ձեռաց զտախտակսն եւ խորտակեաց զնոսա. ապա առեալ խարանեաց մանր զորթն եւ

1 Ելից ԻԴ:
2 Ելից ԻԵ—ԼԱ:
3 Ելից ԼԱ. 18:
4 Աւգոս. եւ Թէոդ.:
5 Ելից ԼԲ. —6:

ցանեալ զփոշին ի վերայ ջրոցն՝ ետ ըմպել նոցա։ Յետ այնորիկ ի մի վայր գումարեաց զՂեւտացիսն, հրաման ետ վառել պատրաստել եւ զգլխաւորս յանցաւորացն անդէն յիւրեանց ազգականաց անխնայ կոտորել։ Եւ անկան յաւուր յայնմիկ 3000 այր յԻսրայէլէ ըստ Եբրայեցւոյն եւ ըստ Եօթանասնիցն, 23,000 այր՝ ըստ Հասարակաց օրինակին Լատինացւոց [1]։

## 111

Կանգնեաց այնուհետեւ Մովսէս վրան առանձինն արտաքոյ բանակին, յորոյ վերայ իջեալ նստէր սիւնն ամպեղէն յորժամ մտանէրն Մովսէս ի ներքս խօսել ընդ Տեառն. «Եւ խօսէր Տէր ընդ Մովսիսի դէմ յանդիման, որպէս ոք զի խօսիցի ընդ բարեկամի իւրում»։ Եւ եղեւ իսկ արժանի տեսանելոյ զփառս Աստուծոյ, այս ինքն զհանդերձեալ անցս մարմնաւորութեան Որդւոյն Աստուծոյ եւ զեկեղեցւոյ նորա։

Արար նա այլ եւս նոր տախտակս քարեղէնս հրամանաւն Աստուծոյ, եւ ել ի վաղիւ անդր ի գլուխն Սինայի։ — Անդ երեւեցաւ Տէր, եւ միւսանգամ պատուիրեաց հրամանս բազումս եւ գրեաց զօրէնս իւր ի տախտակսն նորա։ Եկաց Մովսէս դարձեալ զ40 տիւ եւ զ40 գիշեր ի վերայ լերինն Սինայի, ոչ եկեր եւ ոչ արբ։ Յորժամ էջ նա ի լեռնէ անտի՝ փառաւորեալ էին երեսք նորա եւ արկանէր նա քող զերեսօքն յորժամ խօսէր ընդ ժողովրդեանն [2]։

Եցոյց Մովսէս Իսրայէլացւոցն զամենայն զոր խօսեցեալ էր Աստուծոյ. ետ շինել զվրան ժամուն եւ կազմել զամենայն զկահ նորա [3]։ Իբրեւ կատարեցաւ ել ամենայն ի գլուխ՝ ծածկեաց սիւն ամպոյն եւ հրոյն զվրան ժամուն, զՍրբութիւն Իսրայէլացւոցն, եւ փառքն Տեառն լցին զտեղին։ Եւ այն ամպ նշան լինէր այնուհետեւ դադարելոյ եւ չուելոյ Իսրայէլացւոցն [4]։

Յետ պատուիրելոյ Տեառն ցՄովսէս զազգի ազգի ազգս պատարագաց եւ զօրինակ մատուցանելոյն եւ զկարեւոր ինչ իրս վասն նոցա [5], Ահարոն եւ որդիք նորա կարգեցան ի քահանայապետութիւն եւ ի քահանայութիւն հանդերձաւորութեամբ եւ օծանելով զնոսա իւղովն սրբով եւ պատարագաւն՝ որոյ արիւնն սրսկեցաւ զնոքօք [6]։ Յետ մատուցանելոյ Ահարոնի զիւր զառաջին պատարագս, ապա երեւեցան փառքն Աստուծոյ եւ մաշեցին զողջակէզն [7]։

Այն իսկ էր հուրն սրբութեան եւ նովին եւեթ պարտ էր վառել ի պաշտամանն։ Նմին իրի յորժամ յետոյ Նադաբ (Նա-

1 Ելք ԼԲ. 7—30։
2 Ելք ԼԳ. ԼԴ։
3 Ելք ԼԵ — Խ։
4 Ելք Խ. 33 — 36։ Թուոց. Թ. 15 — 23։
5 Ղեւտ. Ա — Է։
6 Ղեւտ. Ը։
7 Ղեւտ. Թ։

բաղ) եւ Աբիուդ երիցագոյն որդիք Ահարոնի հուր օտարամուտ արկին ի կիր, այրեցան ի հրոյ անտի որ ել ի Տեառնէ։ Եւ զի յետ այսց դիպացն անդէն օրէնք եդան թէ մի արբցեն քահանայքն զինի կամ օղի նախ քան զմուտ պաշտամանն իւրեանց՝ այսպիսի ինչ գոյ առնուլ ի միտ, թէ Նադաբն եւ Աբիուդ արբեալ լինիցեն[1]։

Յորժամ էինն տակաւին առ լերամբն Սինայի՝ ընկալաւ Մովսէս եւ զայն եւս հրամանս որ կան ի Ղեւտական գիրսն՝ վասն պէսպէս քաղաքային եւ աստուածպաշտութեան պարագից եւ սահմանադրութեանց[2]։

## 112

Ի սկզբան ամին երկրորդի ելանելոյ յԵգիպտոսէ՝ բաժանեցան Իսրայելացիքն ըստ Աստուծոյ հրամանին ի ցեղս եւ ի տոհմս, եւ եղեւ առաջին հանդէս համարոյ նոցա, եւ գտան արք պատերազմի 603,550։ Սոքա ամենեքեան երկոտասան ցեղք էին ըստ երկոտասան նահապետացն ցեղից։ Իսկ ցեղն երեքտասաներորդ Ղեւեայ՝ յետ լինելոյ նորա առանձինն հանդէս համարոյ գտաւ 22,300 այր, եւ բաժանեցաւ յերիս կարգս եւ իւրաքանչիւր կարգի սահմանեցաւ գործ առ սպաս պաշտամանն Աստուծոյ[3]։

Յետ կատարելոյ ժողովրդեանն ըստ Աստուծոյ հրամանին յամենայնն առաջնում զատոն Զատկին[4], եւ իբրու հանելոյ զպատրաստութիւն չուոյն, խաղացին յամենայնն երկրորդում ի Սինայէ յետ միոյ ամի, եւ չուեցին ընդ հիւսիսի յանապատն Փառանու, ուր առաջնորդէր նոցա Յոբաբ (որ եւ Յոթոր՝ ըստ ոմանց) աներն Մովսէսի ըստ խնդրոյն Մովսէսի[5]։ Յայնմ արշաւանի ձանձրացեալ Իսրայելացւոցն ի Մանանայէ սկսան ցանկանալ մսոյ եւ տրտնջել զՏեառնէ, եւ ընկալան պատուհաս հրոյ որ այրեաց զմասն մի բանակին[6]։ Իսկ Մովսէս ծանրացեալ ի բազմաթախանձ հոգոյ առաջնորդութեան ժողովրդեանն՝ համարձակեալ եցոյց առաջի Աստուծոյ թէ չկարէ ինքն միայն բաւական լինել ծանրութեան բեռինն։ — Ասէ յայնժամ Տէր ցՄովսէս ընտրել ի ծերոց ժողովրդեանն եւթանասուն այր եւ ժողովել զնոսա առ վրան ժամուն։ Իբրեւ ի գլուխ հան Մովսէս զհրամանս Աստուծոյ՝ էջ Տէր ամպով, եւ որպէս խոստացեալ էր յառաջագոյն՝ բաժանեաց ի հոգւոյ անտի Մովսէսի եւ ետ արանցն, եւ իսկ եւ իսկ վաղվաղակի երեւեցան արդիւնք հոգւոյն ի նոսա[7]։ Այսպէս առաջին խրատն Յեթորայ այժմ ուրեմն առ զօրութիւն եւ հաստատութիւն[8]։

1 Ղեւտ. Ժ։
2 Ղեւտ. ԺԱ — ԻԷ։
3 Թուոց. Ա — Դ։
4 Թուոց. Թ. 1—5։
5 Թուոց. Ժ։
6 Թուոց. ԺԱ. 1—6։
7 Թուոց. ԺԱ. 10—17, 24—30։
8 Տես Ելից ԺԸ. 13...։

## 113

Ամենազամայն ազդ արար Աստուած Իսրայէլացւոցն թէ վարեւ-տացէ նոցա միս ցյագ ի կերակուր ամսոյ միոջ, մինչեւ Մովսէսի իսկ զարմանալ, եւ ասել ցնա թէ ամենայն արջառ եւ ոչխար եւ ամենայն ձկունք ծովուն միանգամայն չեն բաւական յագեցուցանել զայսչափ ժողովուրդ[1]։

Բայց յարոյց Տէր հողմ ի ծովակողմն կուսէ եւ խաղացոյց լորամարգի բազում յոյժ որ թռչէին առ երկուս կանգունս յերկրէ, ապա անկան ի խոնարհ միոյ աւուր գնաց ճանապարհի շուրջ զբանակաւն։ Ժողովեաց ժողովուրդն զերկուս աւուրս եւ զմի գիշեր, եւ ապխտեցին յարեւու զթռչունսն (զոր ոմանք ի մեկնչաց մարախ համարին)[2]։ Բայց առ պատուհասի որկորստութեան նոցա եւ ցանկութեան՝ անկաւ ախտ ի վերայ նոցա, մինչեւ բազմաց մեռանել եւ անդէն թաղել, ուր ցանկացեալքն իսկ էին. եւ կոչեցաւ անունն գերեզմանք ցանկութեան[3]։

Յայտ իմն է թէ լորամարգին Արաբացւոց աշխարհին եւ ի հարաւակողմանն Եւրոպայ միահոյլ շարժեալ խաղան անթիւ բանակօք, եւ յորժամ ընդ ծով անցանեն, գունդագունդ անկեալ յուժոյ թօթափին ի ծովեզերսն։ Սակայն այս բնական իրք յայտնի նշան եւ զքանչելիք էին այնու՝ զի Աստուած զայն կարգէր եւ յառաջագոյն յայտ առնէր, եւ զի անսովորական իմն էր անչափ բազմութիւնն նոցա[4]։

## 114

Իբրեւ հասին Իսրայէլացիք յանապատն Փառանու՝ առաքեաց Մովսէս հրամանաւ Աստուծոյ երկոտասան լրտեսս մի մի յիւրաքանչիւր ցեղէ յերկիրն Քանանու։ Յորս էին Քաղէբ որդի Յեփոնեայ, եւ Ովսէա որդի Նաւեայ, հաւատարիմ պաշտօնեայ Մովսէսի, զոր Մովսէս Յեսու (Յիսուս) փրկիչ անուանեաց, զի նա սահմանեալ էր տանել զԻսրայէլացիսն յերկիրն աւետեաց։

Պատուէր տուաւ նոցա երթալ դիտել զերկիրն եւ զբնակիչս նորա։ Հասին նոքա մինչեւ ցՌոհոբ առ լեռնոտամբն Լիբանանու առ սահմանօքն Հիւսիսոյ։ Եւ ի դառնալն իւրեանց եկին ի հարաւոյ մինչեւ ցհին քաղաքն Քեբրոն եւ հասին մինչեւ ցՁորն ողկուզոյ (Նահալ Էսկող), ի հարաւոյ արեւմտից Երուսաղեմի։ Եւ հատին անտի ուռ որթոյ հանդերձ ողկուզով միով խաղողոյ, եւ բարձին զնա լծակօք արք երկու (նա եւ ցայժմ նոյնչափ ողկոյզք անդ գտանին ըստ վկայութեան նորոցն ճանապարհորդաց). ապա յետ քառասուն աւուրց դարձան յետս։

1 Թւոց. ԺԱ. 18—23։
2 Թւոց. ԺԱ. 31, 32։
3 Թւոց. ԺԱ. 33, 34։
4 Տես Ելից ԺԶ. 12, 13։

Գովել գովեցին լրտեսքն զպտղաբերութիւն երկրին Քանանու եւ ցուցին օրինակաւն, բայց ահագնացուցին իսկ զթիւ բնակչացն եւ զուժգնութիւն նոցա, եւ զամրութիւն քաղաքաց նոցա․ մինչեւ անդր ահագինս իսկ նկարէին զՀսկայազունսն (զԵնակայազունսն)։ Զուր ջանայր Քաղէբ հանդարտեցուցանել զժողովուրդն որոց զահի հարեալ էր ի բանից նոցա․ ժողովուրդն թեթեւամիտ բարձրանալ ձայնս եւ տրտնջել․ խորհէին իսկ դառնալ այսրէն յԵգիպտոս եւ կամէին քարկոծել զառաջնորդս չուոյն իւրեանց։ Իսկ Յեսու եւ Քաղէբ պատառեցին զհանդերձս իւրեանց առ նշանակի տրտմելոյ ընդ գործս նոցա, եւ խոստանային ժողովրդեանն թէ Տէր ածցէ զնոսա յերկիրն յայն գեղեցիկ եթէ կայցեն նոքա հաւատարիմք Տեառն, բայց Իսրայէլ բողոք բարձեալ աղաղակելով քարկոծանել զնոսա։

Յայնժամ առաջի յայտնեցաւ փառքն Տեառն ի վերայ խորանին վկայութեան եւ սպառնայր Աստուած Մովսէսի ջնջել զԻսրայէլ․ միջնորդեալ աղաչէր Մովսէս զՏէր ներել յանցանաց նոցա, եւ համարձակէր եւս ածել զնա ի գութ վասն պատուոյ եւ փառաց նորա։ Եւ ասէ Աստուած ցնա․ «Ներեցից դոցա ըստ բանի քում»․ բայց ապա երդուաւ ի ձեռն Մովսէսի Իսրայէլացւոցն, թէ ոչ ոք յայնցանէ որ ելին յԵգիպտոսէ եւ յետ այնչափ նշանացն խստապարանոց գտան՝ տեսանիցէ զերկիրն Քանանու, այլ նոքին ի քառասուն ամին զոր շրջեսցին յանապատին՝ անդէն անկցին, բայց միայն ի Յեսուայ եւ ի Քաղէբայ։ Եւ ապա հրամայէր դառնալ այսրէն յետս ի կողմն Կարմիր ծովուն [1]։

115

Իբրեւ ծանոյց Մովսէս Իսրայէլացւոցն զկամսն Աստուծոյ՝ տրտմեցան եւ սգացան յոյժ․ բայց փոխանակ հնազանդելոյ կամելոյ՝ ցուցին զանձինս կամաւ երթալ առնուլ զերկիրն։ Զուր խրատէր զնոսա Մովսէս եւ յառաջագոյն զգուշացոյց թէ պարտելոց են, զի չէ Տէր ընդ նոսա, բայց սակայն իբրեւ նոքա կուրացեալ խաղացին յառաջ ի կողմն լերինն՝ մինչ Մովսէս եկաց ի բանակին տապանակաւն։ Իսկ Ամաղեկացիքն եւ Քանանացիք որ բնակեալ էին ի լերինն՝ անկան ի վերայ Իսրայէլացւոցն, պարտեցին զնոսա եւ սատակեցին զհետ նոցա մինչեւ ցՀորմա (Հերմա) [2]։ Եւ յայսպէս հարկեալ Իսրայէլացւոցն՝ դարձան յանապատն Արաբացւոց, եւ անդ շրջեցան երեսուն եւ ութ ամ, մինչեւ ի չափ հասանէր մեծ եւս ազգ նոր եւ հին, եւ փոխանակէր ազգն հին։

Ի խաղալն իւրեանց գնային կարգաւ այսպէս․ ցեղն Յուդայ հանդերձ փոքր ցեղիւքն Իսաքարայ եւ Զաբուղոնի խաղային

1 Թուոց. ԺԴ. ԺԴ.    2 Թուոց. ԺԴ. 30—45.

յարաւոյ, ուր էին նոքա ցեղն Ռուբենի ընդ ցեղիցն Շմաւոնի եւ Գադայ. ապա ցեղն Ղեւեայ Սրբութեամբն. զհետ նոցա ցեղն Եփրեմի ընդ ցեղիցն Մանասէի եւ Բենիամինի, եւ յետոյ քան զամենեսեան ցեղն Դանայ ընդ ցեղիցն Ասերայ եւ Նեփթաղիմայ[1]:

Ի բանակի անդ կայր ի միջավայրի վրանն ուխտի, յարեւելից նորա կային քահանայքն եւ յարեւմտից Ղեւտացիք, շուրջ զնոքօք փռեցեալ ցեղքն, յարեւելից կողմանէ՝ առաջնոյն դասուն բանակին (Յուդայ), ի հարաւոյ կուսէ՝ դասուն երկրորդ (Ռուբէն), յարեւմտից՝ դասուն երրորդ (Եփրեմ), եւ ի հիւսիսոյ՝ դասուն չորրորդ (Դան)[2]: Ձգէր տարածանէր բանակն իբրեւ միոյ աւուր ճանապարհ չորեքկուսի, ունէր դրունս եւ թերեւս պատնէշ եւս եւ խրամս. այնպէս իմն կարգեալ եւ յօրինեալ էին վրանքն՝ որպէս զի մարթ էր անցանել ընդ մէջ նոցա. անդ էր տեղի մեծ վաճառաց Արաբացւոցն: Գտանէին կերակուր ի մշակութենէ երկրի, ի դարմանոյ խաշանց եւ անդեայց, ի ձկնորսութենէ, եւ կամ յաղգի ազգի մրգոց, մանաւանդ ի Մանանայէ (որ էր հացն օրըստօրէ). գոյր աղ լճութեանց, զջուր պեղելով հանէին, վասն մաքրութեան եւ կարգաւորութեան խնամ տանէին օրէնքն[3]: Բազում անգամ ըստ պիտոյից ժամանակին փոխեցաւ բանակն, եւ համարքն բանակետեղաց նոցա 47—50[4]:

## 116

Պէտք գիտել ի ժամանակին յայնմիկ զի Կորխ որ էր սերեալ յերկրորդ որդւոյն Ղեւեայ, որպէս Ահարոնն եւ Մովսէս ի Կահաթայ (քանզի հայր նորա էր Իսահար հօրեղբօրորդի Ամրամայ) հանդերձ Դաթանաւ, Աբիրոնիւ եւ Աւնանաւ որ ի ցեղէն Ռուբենի էին, եկաց հակառակ Մովսեսի եւ Ահարոնի, եւ երկերիւր յիսուն այր ի գլխաւորաց եւ յանուանեաց ժողովրդեանն յարեցան ի նոսա: Եւ որպէս Կորխ քահանայապետութեանն անձն եղեալ էր, այսպէս եւ Փռեցեալքն քահանայութեան թէպէտ անձկէին: Կուտեցան նոքա ի վերայ Մովսեսի եւ Ահարոնի եւ ասեն. «Ամենայն ժողովուրդն եւ ամենեքեան սուրբք են եւ Տէր ի միջի նոցա, եւ արդ ընդէր ծախացեալ էք (երկոքին դուք) ի վերայ ժողովրդեանդ Տեառն»: Յառաջնումն՝ խրատու եւ թելադրութեամբ կամէր ածել Մովսէս զնոսա ի կարգ, բայց նոքա առաւել եւս ամբարտաւանեալ ապստամբեցին եւ ոչ կամէին հնազանդել նմա: Ապա կոչեաց զնոսա Մովսէս ի վաղիւ անդր ելանել առաջի Տեառն բուրվառօքն իւրեանց. եկին նոքա յաւուրն երկրորդի եւ ամենայն Իսրայէլ ընդ նոսա առաջի խորանին վկայութեան,

1 Թուոց. Ժ. 18—28:
2 Թուոց. Ա. 51—53. Բ:
3 Թուոց. Ե. 2—4: Երկր. օր. ԻԳ. 10—14:
4 Թուոց. ԼԳ. 1—49:

զի ժողովեալ էր զնոսա Կորխայ ընդ հանդէպ խորանին Մովսիսի եւ Ահարոնի։ — Անդէն իսկ եւ իսկ երեւեցան յայտնապէս ամենեցուն փառքն Տեառն եւ հրամայեաց Տէր Մովսիսի եւ Ահարոնի ելանել ի բաց ի ժողովրդենէն զի ջնջեսցէ զամենեսեան։ Բայց ըստ աղաչելոյ նոցա զԱստուած՝ թոյլ ետ Աստուած Մովսէսի անջրպետեալ քերել ի բաց զգլխաւորս ապստամբութեանն ի միացելոց անտի։ Իբրեւ այն լինէր, ցուցանէր Մովսէս ժողովրդեանն թէ սատակելոց են ապստամբքն, եւ լինելոց է այն նշանակ թէ Տեառն առաքեալ է զնա. այն ինչ բանքն ի բերանի էին՝ պատառեցաւ երկիր եւ եկուլ զԿորխ, զԴաթան եւ զԱբիրոն եւ զատունս նոցա եւ զամենայն ինչս, եւ ել հուր ի Տեառնէ եւ այրեաց զերկերիւր եւ զյիսուն արսն, որ զխունկսն մատուցանէին։

Բայց ի վաղիւ անդր տրտնջել սկսան որդիքն Իսրայէլի զՄովսիսէ եւ զԱհարոնէ եւ ասեն, թէ դուք կոտորեցէք զժողովուրդն Տեառն, եւ կուտեցան ի մի վայր, մինչեւ դիմել Մովսէսի եւ Ահարոնի ի խորանն վկայութեան, զորս եւ ծածկեաց վաղվաղակի ամպն. եւ երեւեցան փառքն Տեառն եւ խօսեցաւ Տէր, թէ „Մեկնեցարուք ի միջոյ ժողովրդեանդ, եւ սատակեցից զդոսա միանգամայն„։ Պատուէր ետ Մովսէս եղբօր իւրում ձեռնել բուրվառն ի մէջ ժողովրդեանն՝ հաշտեցուցանել զնոսա ընդ Աստուծոյ, քանզի սկսեալ էին պատիժքն։ Արար Ահարոն որպէս ասաց Մովսէս, արկ խունկ վասն ժողովրդեանն եւ դադարեաց սատակումն։ Բայց որ ի հրոյն սատակեցան՝ էին 14,700 այր[1]։ — Այսպէս քահանայապետն Ահարոն լինէր առակ օրինակի միջնորդին Աստուծոյ եւ մարդկան՝ Քրիստոսի։

Վասն հաստատելոյ զիրաւունս քահանայութեան ի տան Ահարոնի, արար Տէր նշան նոր։ Հրամայեաց առ Մովսէս յԱստուծոյ գրել զանուանս երկոտասան իշխանաց ցեղիցն ի վերայ երկոտասան գաւազանաց չորացելոց, եւ ի վերայ գաւազանի ցեղին Ղեւեայ դրոշմել զանուն Ահարոնի, եւ դնել զնոսա առաջի տապանակի ուխտին։ Ի վաղիւ անդր դալարացեալ ծաղկեցաւ գաւազանն Ահարոնի եւ երեւեցոյց ընկոյզ, որպէս կանխագոյն ասացեալ էր Տեառն, եւ Մովսէս եցոյց ժողովրդեանն, եւ ապա եդ զնա ի պահեստ առաջի տապանակի ուխտին[2]։

## 117

Յամսեանն առաջնում (39երորդ տարւոյ) դարձան միւսանգամ Իսրայէլացիքն յանապատն Սին, եւ բանակեցան մօտ ի Կադէս. անդ վախճանեցաւ Մարիամ քոյր Մովսէսի եւ անդէն թաղեցաւ։

1 Թու. ԺԶ։ 2 Թու. ԺԷ։

## 118

Յարձակեցաւ ի վերայ Իսրայելացւոցն քանանացի Թագաւորն Արադայ, եւ պարտեցին զնա Իսրայելացիք Տեառն օգնականութեամբն, եւ քանդեցին զքաղաքս ի քաղաքաց նորա։ Այս շըրջեցան պատեցին զեզերամբն Եդովմայեցւոց եւ ելին ի Հոր լեռնէ ի կողմն Կարմիր ծովուն, եւ ձանձրացեալ ի դժուարութենէ ճանապարհին՝ տրտնջեցին զԱստուծոյ եւ զՄովսիսէ։

Յայնժամ առաքեաց Տէր ազգ ինչ օձից ի կերպ թունաւորաց որ վասն ջերմեցուցիչ հարուածոյն՝ կատարիչքն անուանեցան։ Աղաչեցին Իսրայելացիքն զՄովսէս լինել բարեխօս Աստուծոյ, եւ նա կաց յաղօթս վասն ժողովրդեանն։ Եւ հրաման ետ Աստուած Մովսիսի գործել օձ մի պղնձի եւ կանգնել զնա ի բարձր, զի ի հայել ի նա օձահարքն՝ բժշկեսցին։ Կատարեաց Մովսէս զհրամանն Աստուծոյ, եւ որ միանգամ հայէր ընդ օձն՝ առողջանայր[1]։ Այս օձ պղնձի համեմատեալ ընդ օձին որ ի դրախտին անդ մահ գործեաց՝ առակ օրինակի էր Աստուածորդւոյն՝ որ ի խաչին բարձրացաւ, եւ բժշկեաց ի հարուածոց օձին այնորիկ (մեղաց)[2]։ Յետոյ օձն պղնձի ի կուռս եղեւ Իսրայելացւոցն, եւ յայն սակս բեկ խորտակեցաւ[3]։

## 119

Այս ուրեմն հասին Իսրայելացիք ի ձոր մի մեծ ի վերայ սահմանաց Մովաբացւոցն, եւ անդ լինէր այնուհետեւ սկիզբն առնլոյ զարեւելակողմն երկրին Քանանու։ 1. Քանզի խնդրեցին նոքա ի Սեհոնէ արքայէ Ամորհացւոց անցանել ընդ երկիր նորա, համաձայն պայմանօքն որովք յԵդովմայեցւոցն խնդրեցին։ Բայց եւ Սեհոն չառ զայն յանձն, եւ խաղաց ընդ առաջ նոցա. այլ ի պարտութիւն մատնեալ առաջի նոցա ջնջեցաւ համօրէն ժողովրդեամբ իւրով։ Եւ առաւ ամենայն երկիրն Ամորհացւոց յԱռնոնէ գետոյ մինչեւ ցգետն Յաբոկ համայն գլխաւորն քաղաքաւ Եսեբոնիւ։ 2. Այս խաղացին Իսրայելացիքն ի վերայ թագաւորութեան Բասանու. ընդդէմ դարձաւ նոցա Ովգ արքայ Բասանացւոց, այլ հարաւ նոյնպէս եւ սպառեցաւ ազգն նորա. զսահմանս նորա ի Յաբոկ գետոյ մինչեւ ցՀերմոն՝ 60 ամուր ամուր քաղաքօք առին Իսրայելացիքն[4]։ 3. Զայս ամենայն երկիր ետ Մովսէս ցեղիցն Գադայ, Ռուբենի եւ կիսոյ ցեղին Մանասէի ի բաժին ժառանգութեան՝ համաձայն խոստմամբ օգնական լինելոյ եղբարց իւրեանց առնուլ զարեւմտակողմն Քանանու, բայց զընտանիս իւրեանց թողին նոքա անդ ի բաժնին իւրեանց զոր առին[5]։

1 Թուոց. ԻԱ. 1—9։
2 Տես Յովհ. Գ. 14, 15։
3 Տես Դ. Թագ. ԺԸ. 4։
4 Թուոց. ԻԱ. 21—35։ Տես Երկր. օր. Բ. 24—37. Գ. —12։
5 Թուոց. ԼԲ։ Երկր. օր. Գ. 12...։

# 120

Իբրեւ լուր եղեւ Բաղակայ արքային Մովաբացւոց վասն յաղթութեանցն Իսրայէլի, զահի հարաւ վասն թագաւորութեան իւրոյ, եւ ոչ ունէր արկանել ինչ զնոսա ի զօրութենէ կախարդանաց: Կամէր նա ածել զԲաղաամ զայրն գիւթ ի Միջագետաց պատարագօք զի եկեալ նզովիւք հեռացուսցէ զԻսրայէլ ի սահմանաց նորա: Չառ Բաղաամ զառաջինն յանձն ըղձանալ չար ինչ Իսրայէլացւոցն, զի արգելեալ էր այն նմա ի Տեառնէ. բայց շլացեալ եւ ի մեծամեծ եւս պատարագաց՝ ել ի ճանապարհ, ի մէջ եղեալ անսալոյ բանիցն Բաղակայ՝ հակառակ միւսանգամ զգուշացուցանելոյ զնա Տեառն:

Բայց հրեշտակ Տեառն ել եկաց ընդ առաջ իշոյն յորոյ վերայ նստեալ գայր Բաղաամ, եւ տեսեալ իշոյն զհրեշտակն՝ սկսաւ խուսափել. զոր հարկանէր զնա սաստիկ Բաղաամ, չկարէր խաղալ յառաջ քանզի արգել կայր նմա ընկրճեալ հրեշտակն, եւ ապա նստաւ անդէն էշն ընդ Բաղաամաւ: Բարկացաւ Բաղաամ եւ եհար զնա միւսանգամ. խօսել սկսաւ էշն եւ ամբաստանել թէ ընդէր հարկանիցէ: Ապա եբաց եւ Բաղաամ զհրեշտակն եւ անկաւ առաջի նորա: Իսկ սա կշտամբեալ յանդիմանեաց զթիւրութիւն Բաղաամու եւ միւսանգամ պատուիրեաց ոչ ինչ այլ ինչ խօսել բայց միայն զոր Տէրն ասիցէ նմա [1]: Թէ արդարեւ էշն բարբառեցաւ եւ ոչ եթէ պատրանք եւեթ եւ ցնորք մտացն Բաղաամու իրքն էին՝ յայտ է ի բանից առաքելոյն Պետրոսի [2]. «Քանզի յամօթ արար Աստուած սքանչելապէս զայրն ամբարտաւան որ ստամբակեալ հակառակ կայր նմա, եւ որպէս էշն՝ Աստուծոյ ամենազօրն զօրութեամբ զմարդկեղէն բարբառն ածէր զոր ինքն չիմանայր, ըստ նմին օրինակի եւ Բաղաամ ակամայ հակառակ յօժարութեանն իւրում ստիպեալ տագնապէր այժմ գովել եւ օրհնել զԻսրայէլացիսն:

«Քանզի իբրեւ եհաս Բաղաամ առ Բաղակ՝ մատոյց նա ի բարձաւանդակին Բահաղու եւթն զոհս զուարակաց եւ խոյոց յեւթն բագինս, զոր ետ կանգնել Բաղակայ, եւ անդէն արկ ի բերան նորա Տէր գեղեցիկ ինչ օրհնութիւն ի վերայ Իսրայէլի: Զայրացեալ Բաղակայ առ տարաւ զնա ի բարձաւանդակն Փասգայ (ի կատար կոփածոյին). անդ միւսանգամ մատոյց Բաղակ զոհս, բայց ոչ ինչ այլ ինչ կարաց խօսել զԻսրայէլէ բայց օրհնութիւն եւ յաղթութիւն: Երրորդ անգամ մատոյց Բաղաամ ի խնդրոյ Թագաւորին զոհս ի կատարին Փեգովրայ, բայց եւ անդ հարկեցաւ խօսել զոր ինչ Տէր ետ ի բերան նորա. եւ պատմեաց նա զյաղթութիւնս եւ զմեծութիւն Իսրայէլի, եւ հայե-

1 Թու. ԻԲ: 2 Բ. Պետ. Բ. 16:

ցեալ յառաջագոյն ժամանակին գուշակաց այսպէս. «Ծագեսցէ աստղն Յակոբայ եւ յարիցէ շառաւիղ (կամ այր) յԻսրայէլէ», որով յայտնի իսկ զՄեսիայէ ակնարկէ[1]։ Այսպէս մարգարէացաւ զաւակացն այլ եւ այլ ազգաց։ Այլ այնու իւիք օգուտ էր Բաղաամ ի սորոյն մարգարէից՝ զի սիրոյ ստոյգ մտաւան էին ընդ Հոգւոյն Աստուծոյ որ ի նմա բարբառէր[2]։ — Յետ այնորիկ դարձաւ տանն, եւ Բաղակ եւս գնաց այլքէն ի տեղի իւր[3]։

## 121

Բանակեցան Իսրայելացիքն ժամանակս ինչ ի դաշտավայրսն Մովաբու, եւ բազումք ի նոցանէ որձեցան յանդիմանս պաշտամանն Բեղփեգովրայ, որ զեղխապարծութեամբն պաշտէր[4]։ Այս գործ մոլորութեան նոցա գործեցաւ քան խրատուն Բաղաամու ի Մովաբացւոց եւ ի Մադիանացւոց վասն տկարացուցանելոյ եւ մեղկելոյ զԻսրայելացիսն[5], որ զանեղծեալս խորհրդոց «ուտել անպարկշտաց եւ ժլատս», յայտ առնէ[6]։ Յայնժամ հրամայեաց Տէր Մովսիսի ժողովել զգլխաւորս ժողովրդեանն եւ պատուէր տալ նոցա կոտորել զայնցանոսն։ Իսկ Փենեհէս որդի Եղիազարու իբրեւ ետես զԶամբրի զորդի իշխանի ուրուք Շմաւոնեանց զի ոչ համարեցաւ պատկառանս՝ ածել կացուցանել հրապարակատես՝ կին մի՝ դուստր մեծամեծացն Մադիանացւոց, զհետեւեալ նա ի տեղին անպարկշտութեան եւ ի բարկութեանն իւրում եհար զերկոսին զեղծանեալսն։ — Այս յԱստուծոյ ազդեցութենէ գործեցաւ. քանզի առժամայն իսկ եւ իսկ դադարեաց հարուածն (ժանտն) յորմէ այն ինչ անկեալ էին 24,000 ոգիք. եւ յայտ արար Տէր Փենեհեսեայ ի ձեռն Մովսիսի թէ հաճոյ եղեւ նմա գործն՝ «զի դարձոյց զբարկութիւնն Աստուծոյ յորդւոցն Իսրայելի», եւ խոստացաւ «ուխտ խաղաղութեան», հանդերձ «յաւիտենական քահանայութեամբ»[7]։ Ուստի եւ յետոյ բարձաւ քահանայութիւնն ի զաւակէ նորա, ի ժամանակի զի Հեղի որ յԻթամարայն էր՝ եկաց քահանայապետ. այլ Սադովկաւ դարձաւ միւսանգամ ի ցեղն Փենեհեսեայ եւ մնաց ի նմին ցեղի եւ յետ գերութեանն։

## 122

Յետ ընդունելոյ պատիժս վերջապարտիցն՝ հրամայեաց Տէր Մովսիսի եւ Եղիազարու առնել համարս համօրէն ամենայն Իսրայելի ի քսանամենից եւ ի վեր, եւ գտաւ համար երկոտասան

1 Տես Եսայ. ԺԱ. 1—3։
2 Մատթ. ԻԳ. 1, 2։
3 Թուոց. ԻԳ, ԻԴ։
4 Թուոց. ԻԵ. 1—2։
5 Թուոց. ԼԱ. 19։ Տես Յայտ. Բ. 14։
6 Տես Բ. Պետր. Բ. 15։ Յուդա. 11։
7 Թուոց. ԻԵ. 3—15։ Տես Սիրաք. ԽԵ. 28—30։

Դարձեալ յանձն առնէր Մովսէս զգործ բաժանման երկրին Քանանացւոց՝ Յեսուայ, Եղիազարայ քահանայապետի եւ իշխանաց տասն ցեղիցն մնացելոցն (բաց ի Ռուբինէ եւ ի Գադայ եւ ի կիսոյ ցեղէն Մանասէի). սահմանէր նա եւ զթիւ քաղաքացն Ղեւտացւոց եւ զհամար քաղաքացն ապաստանի եւ զնոցա բաժանմանն զօրինակ[1]: Ի կարգելն զերդս զայդոսիկ եւ զայլ եւս իրս յառաջ քան զայս՝ բազում եւ այլ օրէնս ընծայեցուցանէր կամ մեկնութիւնս օրինացն[2]:

## 124

«Խօսեցաւ Մովսէս ընդ ամենայն որդիսն Իսրայէլի, ըստ ամենայնի որպէս պատուիրեաց նմա Տէր առ նոսա»: Երկրորդէր նոցա զոր ինչ ի Սինայէ եւ այսր անցք անցեալ էին ընդ նոսա, եւ յուշ արկանէր նոցա զգործս այլ եւ այլ ազգացն եւ զաւանսն զկողմն արեւելից Յորդանանու՝ Աստուծոյ օգնականութեամբն[3]:

Յետ պատմութեանն այնորիկ՝ ապա տայր ժողովրդեանն զերկրորդ օրէնսդրութիւնն. քանզի երկրորդեաց նա զտասն հրամանսն եւ զմեծ ինչ մասն այլոց եւս օրինաց հանդերձ յաւելուածովք ինչ եւ փոփոխմամբք, եւ յաւել ի նոյնս այլ եւս հրամանս կամ մեկնութիւնս, հանդերձ գեղեցիկ գեղեցիկ թելադրութեամբք յառաքինութիւն եւ ի պահպանութիւն ուխտին[4]: «Ո՞վ իցէ, ասէ, ազգ մեծ՝ որոյ իցէ Աստուած մօտ ի նոսա. որպէս Տէր Աստուած մեր յամենայնի՝ որով կարդասցուք առ նա. եւ ո՞ր ազգ մեծ՝ որոյ իցեն իրաւունք եւ դատաստանք արդարք, ըստ ամենայն իրաւանցս այսոցիկ»[5]:

Եւ յետ այնորիկ ասէր. «Մարգարէ յեղբարց քոց իբրեւ զիս յարուսցէ քեզ Տէր Աստուած քո, նմա լուիջիք». զի Տէր իսկ ասաց ցիս «Մարգարէ յարուցից նոցա յեղբարց իւրեանց իբրեւ զքեզ, եւ տաց զպատգամս իմ ի բերան նորա, եւ խօսեսցի ընդ նոսա որպէս եւ պատուիրեցից նմա. եւ մարդ՝ որ ոչ լուիցէ զոր խօսիցի մարգարէն յանուն իմ, ես խնդրեցից զվրէժ ի նմանէ»[6]:

Ինքն իսկ Մովսէս մարգարէ էր ի բարձրագոյն կարգէ, նմին իրի եւ առակ օրինակի Քրիստոսի[7], եւ առհասարակ իսկ ծանօթ է՝ թէ զՄեսիայէ յայտ առնէ այն մարգարէութիւն[8]:

Ապա պատուէր ետ Մովսէս Իսրայելացւոցն զի յորժամ անցանիցեն ընդ Յորդանան՝ կանգնեսցեն ի լերինն Գեբաղ քարինս մեծամեծս բեւեռս, եւ գրեսցեն ի վերայ նոցա զբանս օրինացն. եւ շինեսցեն անդէն սեղան անտաշ վիմօք եւ մատուսցեն ի վերայ

1 Թու. ԼԴ, ԼԵ. — 15։
2 Թու. ԺԵ, ԺԸ, ԺԹ, ԻԸ — Լ, ԼԵ
16... ԻԷ. — 11. եւ ԼԶ։
3 Երկր. օր. Ա — Դ։
4 Երկր. օր. Դ — ԻԶ։
5 Երկր. օր. Դ. 7, 8։
6 Երկր. օր. ԺԸ. 15 — 19։
7 Թու. ԺԲ. 6 — 8։
8 Գործ. Գ. 22. Է. 37։

նորա պատարագս: — Յետ այնորիկ՝ եղանիցեն ազգ ի ցեղիցն Շմաւոնի, Ղեւեայ, Յուդայ, Իսաքարայ, Յովսեփու եւ Բենիամինի ի լեառն Գարիզին օրհնել զօրհնապահս, եւ ազգ ի ցեղիցն Ռուբենի, Գադայ, Ասերայ, Զաբուղոնի, Դանայ եւ Նեփթաղեմայ ի լեառն Գեբաղ անիծանել զօրհնազանցս, եւ պատասխանի տացէ ամենայն ժողովուրդն՝ Ամէն [1]:

Յառաջ մատուցեալ թելադիր լինէր Մովսէս ժողովրդեանն ի պահպանութիւն օրինաց՝ բարութեանցն խոստմամբք եւ սպառնալեօք պատժոց. խոստացաւ նոցա փրկութիւն, եթէ եւ յետ անիծիցն արժանի լինելոյ՝ զղջացեալ դարձցին առ Տէր ամենայն սրտիւք իւրեանց. ուսոյց նոցա թէ մերձ եւ պարտ է նոցա զօրէնսն պահել, եւ արար զբաւ բանիցն ասելով այսպէս. "Ունիմ ձեզ վկայ այսօր զերկինս եւ զերկիր. զկեանս եւ զմահ եդու առաջի երեսաց ձերոց, զօրհնութիւնս եւ զանէծս. եւ ընտրեա զկեանս, զի կեցցես դու եւ զաւակ քո. սիրել զՏէր Աստուած քո, եւ լսել ձայնի նորա, եւ ունել զնմանէ զամենայն աւուրս կենաց քոց" [2]:

Ապա յայտ արար նա նոցա թէ սահմանեաց Աստուած զՅեսու փոխանակ նորա ի զօրավարութիւն, եւ քաջալերեաց զՅեսու եւ զժողովուրդն յուսալ ի Տէր զի նա լինիցի նոցա առաջնորդ [3], եւ ինքնին Աստուած հաստատեաց զընտրութիւն Յեսուայ ի զօրավարութիւն ժողովրդեան իւրոյ [4]:

Մովսէս գրեաց եւ զերկրորդումն օրինացն (զերկրորդ օրէնսդրութիւնն) եւ հրամայեաց ընթեռնուլ զայն առաջի ժողովրդեանն եւթն եւթն ամ, զի գիտասցեն ամենեքին [5], եւ պահել զայն առ տապանակին [6]: Յօրինեաց Մովսէս եւ երգ մի հրամանաւ Աստուծոյ եւ ուսոյց որդւոցն Իսրայելի [7]: Բանք երգոյն են զգուշացուցիչ իմն մարգարէութիւն առ յապա ապստամբութեան Իսրայելացւոցն, եւ ողորմութեան եւ արդարութեան Աստուծոյն նոցա [8]:

## 125

Ապա հրամայեաց Տէր Մովսիսի ելանել ի լեառն Նաբաւ ի լերինն Աբարիմայ եւ տեսանել անտի զերկիրն աւետեաց եւ ապա անդէն մեռանել (յաւելուլ ի ժողովուրդ իւր) [9]: Յայնժամ խօսեցաւ Մովսէս զմարգարէական օրհնութիւն իւր ի վերայ ցեղիցն Իսրայելի, որ բազում ինչ նմանութիւն եւ կցորդութիւն ունի ընդ օրհնութեանն Յակոբու [10]: Ապա ել նա ի գլուխ Փասգա

1 Երկր. օր. ԻԷ, եւ ԻԸ. — 14:
2 Երկր. օր. ԻԸ. 15 ... — Լ. (19, 20):
3 Երկր. օր. ԼԱ. — 8:
4 Երկր. օր. ԼԱ. 14 — 15:
5 Երկր. օր. ԼԱ. 9 — 13:
6 Երկր. օր. ԼԱ. 26 ...:
7 Երկր. օր. ԼԱ. 16 ... 19 — 22:
8 Երկր. օր. ԼԲ. — 44, 45 — 47:
9 Երկր. օր. ԼԲ. 48 — 52:
10 Երկր. օր. ԼԳ:

աստուածպաշտութեանն զգուշ նորա, զորգունակ ամբաստանութիւնն նորա չհամբերող մնաց բանս հանապազեան, նա եւ զանձնասիրութիւն իւր նորա չառանուլին յանձն, քանզի մոլորութեամբ իմն այսպիսի ինչ ունէին ի մտի հաստատութեամբ՝ թէ միշտք եւ չարչարանք միշտ պատուհասք մեղաց են, ուստի եւ Յոբայն եւս չարչարանք պատիժք են եւ վասն այնորիկ ամբարիշտ ուրեմն է Յոբ։ Իսկ Յոբ ընդդէմ զատմնոյն ասաց բանիցառանոց նոցա եւ ջատագով լինէր արդարու-թեան եւ համբերութեան իւրում։ Յետոյ ասպետն Աստուած իսկ ինքնին եղ պաշտպանեալ Յոբայ, քաջալերեաց զնա հաստատել անպարտութեան իւրում՝ յօրինեալ զնկարագիր ամենազօր զօրու-թեան իւրոյ, իմաստութեան եւ բարութեան. յանդիմանեաց զգործ-բարեկամացն Յոբայ եւ հրամայեաց նոցա խնդրել զբարեխօսու-թիւն նորա։ — Ապա օրհնեաց Աստուած զՅոբ կրկին եւ եւս կենօք երկայնակեցուցն[1]։ Նա եւ առ Յոբայ գտանեմք զհաւատս նահապետացն եւ Մովսէսի առ լուսոյն ինչ ժամանակ[2], եւ յի-շէն զնա գիրք սուրբք մեծաւ գովութեամբ[3]։

Բ

Օրէնսդրութիւն Մովսէսի։

127

ԳԼԽԱՒՈՐ քան զամենայն յիշատակս զոր եթող մեզ զանձնէ Մովսէս՝ օրէնսդրութիւն նորա է, ծնունդն աստուածեղէն ազդե-ցութեան. չէր ինչ նա կարօտ՝ կարծիս իմն գործակցութեան աս-տուածութեանն ընծայեցուցանելոյ, որպէս այլք ի մեծամեծ օրէնսդրաց վասն հաւաստարիմ եւ հաստատուն զիւրեանց օրէնսն առնելոյ՝ կեղծաւորեցան։ Ինքնին իսկ որ մի միայն ճշմարիտ Աս-տուածն էր ի Սինայի գէմ յանդիման համօրէն ժողովրդեանն Իս-րայէլի ահագին եւ բարձրական տեսլեամբք զտասն հրամանսն իբրեւ զհիմն գլխաւոր օրէնս ընծայեցոյց. եւ ապա առաւել այլ եւս ինչ հրամանս եւ խրատս ի նոյնս ի ձեռն նորա յաւելոյր, եւ էր ցանց ի նմա աստուածեղէն ազդմն եւ երեւելի իմն օրինակաւ։

Հանդերձ նոքիմբք՝ առաջի ունէր Մովսէս զպարզական սովո-րութիւնս պաշտաման նահապետացն եւ տեղեակ էր կարգաց եւ յօրինուածութեանց տէրութեանն Եգիպտացւոց, որք յայնմ ժամանակի կատարելագոյնք քան զամենայն կարգս էին։ Այլ օրէնք նորա ոչ եթէ ամենայն միանգամայն ի միում ժամանակի յօ-րինեալ եղան, այլ մանաւանդ թէ ըստ պիտոյիցն հարկի, նմին իրի ոչ եթէ բովանդակութիւն ինչ փակեալ եւ սերտեալ է այն, այլ կարգաւ իմն կատարումն եւ յառաջադիմութիւն կայ ի նոսա,

1 Յոբ. Ա. — ԽԲ։
2 Յոբ. ԺԹ. 25 — 27. եւ յայլ տեղիս։
3 Տոբ. Բ. 12. ուր պատուէ ըստ Թարգ-մանութեան։ Եզեկ. ԺԴ. 14, 16, 18, 20։

շնար: 7. Մի՛ գողանար: 8. Մի՛ սուտ վկայութիւն վկայեր զընկերէ քումմէ: 9. Մի՛ ցանկանար կնոջ ընկերի քո: 10. Մի՛ ցանկանար տան ընկերի քոյ, եւ ոչ ամենայն նորա"[1]:

Իսկ ի յաջորդ պատուիրանաց՝ կէսք երկնաւորն եւ կէսք մեկնութիւն իմն են գլխաւոր օրինացն":

"Լուր Իսրայէլ, Տէր Աստուած մեր՝ Տէր մի է: Եւ սիրեսցես զՏէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ, եւ յամենայն անձնէ քումմէ, եւ յամենայն զօրութենէ քումմէ"[2]: "Սուրբ եղերուք, զի ես սուրբ եմ Տէր Աստուած ձեր: Եւ զշաբաթս իմ պահեսջիք եւ մի երթայցէք զհետ կռոց. եւ աստուածս ձուլածոյս մի առնիցէք ձեզ: Ես եմ Տէր Աստուած ձեր"[3]:

"Որ հարկանէ զհայր իւր կամ զմայր իւր... որ անիծանէ զնոսա՝ մեռցի"[4]: "Մի՛ ատեսցես զեղբայր քո ի մտի քում... մի խնդրեսցէ զվրէժ ձեռն քո... սիրեսցես զընկեր քո իբրեւ զանձն քո. ես եմ Տէր"[5]: "Մի՛ զլացցես զվարձս աղքատին՝ եւ կարօտելոյ յեղբարց քոց, կամ յեկաց քաղաքաց քոց: — Մի՛ խոտորեսցես զիրաւունս զեկին, եւ զորբոյ, եւ զայրւոյ. եւ մի գրաւեսցես զձորձս այրւոյն: — Եւ եթէ հնձեսցես զհունձս յանդի քում... եթէ կթեսցես զայգի քո... եթէ կթեսցես ձէթ, մի դարձցիս անդրէն պտղաքաղ առնել զհետ քո. եկին, որբոյ եւ այրւոյ եղիցի այն: Եւ յիշեսցես զի եւ դու ծառայ էիր յերկրին Եգիպտացւոց. վասն այնորիկ ես պատուիրեմ քեզ առնել զբանս զայս"[6]: "Կարասցես անտեսել զարջառ կամ զոչխար եղբօր քո մոլորեալս ի ճանապարհի... այլ դարձուցանելով դարձուսցես զնոսա եւ ածցես առ եղբայր քո. Նոյնպէս արասցես եւ զամենայն կորուստ եղբօր քոյ... զոր տեսանիցես զէշ եղբօր քո կամ զեզն նորա անկեալ ի ճանապարհի... այլ յարուցանելով յարուսցես"[7]:

## 129

Առաջին պաշտօնն Աստուծոյ ըստ օրինացն շքեղ եւ փառաւոր էր յոյժ. քանզի Հրեայքն վասն զի բիրտ ինչ եւ թերավարժ եւ երկրաւոր ժողովուրդ էին, առ սակաւ սակաւ միայն կարող էին ի մտաւորագոյն ինչ պաշտօն ընդելանել: Այսպէս եւ առաջին օրէնք յոյժ դիպող իմն էին զսէրն եւ զմեծարանս եւ զհպատակութիւն առ միայն ճշմարիտն Աստուած պահելոյ եւ աճեցուցանելոյ, եւ տօնուփութիւնքն այնորիկ նշանք իմն եւ օրինակք էին բարձրագոյն փրկութենագործ կարգացն եւ խորհրդոց կատարելագոյն պաշտամանն որ յետոյ գալոց էր[8]:

1 Ելից Ի. 1—17: Երկր. օր. Ե. 6—21:
2 Երկր. օր. Զ. 4, 5:
3 Ղեւտ. ԺԹ. 2—4:
4 Ելից ԻԱ. 15, 17:
5 Ղեւտ. ԺԹ. 17, 18:
6 Երկր. օր. ԻԴ. 14, 15, 17, 19—22:
7 Երկր. օր. ԻԲ. 1—4:
8 Տես Եբր. Թ. Ժ:

պարտ էր կատարել շաբաթ մի՝ պատարագօքն առհմանելովք, եւ ամենայն արու իսրայելացի պարտ էր երթալ ի տօնն[1]:

3. Հինգ աւուրքն յառաջ քան զվերջին տօնն էր տօնն մեծ քաւութեան, որ ապաշխարութեան եւ պահոց: Միայն յայնմ աւուր համարձակ էր քահանայապետին մտանել ի սրբութիւն սրբութեանցն[2] հաշտեցուցանել զժողովուրդն ընդ Աստուծոյ: Մատուցանէր նա խոյ մի պատարագ քաւութեան, եւ խոստովանութեամբ մեղաց եւ դնելով զձեռն՝ կուտէր իմն ի վերայ միւսոյ խոյոյն զմեղս ժողովրդեանն, ապա ածէին զխոյն յանապատ[3]: Ի նմին աւուր օրհնէր հրապարակաւ քահանայապետն զժողովուրդն եւ իշխանութիւն էր նմա յօրհնութեանն անուանել զանուանն Տեառն Եհովա[4]:

4. Այլ իսրայելացւոց այլ եւս տօնականն տօնք. ա. Ամ շաբաթ, առհասարակ հանգիստ երկրին, որ սկիզբն առնէր յօրէ յառաջնմէ ամսոյն եւթներորդի եւ կատարէր եւթն եւթն ամ: Որ ինչ երկիրն ինքնին բերէր՝ այն աղքատաց եւ անասնոց էր[5]. պարտ էր նոցա թողուլ զպարտս Իսրայելացւոցն (կամ յապաղել) եւ զընակ ծառայս եբրեանց հանել յազատութիւն[6]: բ. Ամ յոբելեան կատարէր յետ եւթն ամաց շաբաթուց, այս ինքն յետ 49 ամաց, սկիզբն առնէր յօրէ քաւութեանն, եւ կոչէր ամ թողութեան: Յոբելեան ամին բաց յիրաւանց եւ յազատութեանց ամին շաբաթուց՝ էին տօնականն եւս ազատութիւնք, այս ինքն թէ ամենայն ագարակ, այգի եւ այլ եւս նոյնպիսիք վաճառեալք կամ տուեալք ի վարձու անցանէին յառաջին ստացիչս եբրեանց եւ ամենայն պարտք ջնջէին[7]: Եւ այնպէս առնոյր երկիրն զկրկնուքն հանգիստ, եւ ի 50 ամաց միջէ լինէր վերստին իմն ծնունդ համօրէն տէրութեան:

5. Պատարագքն որ ի տօնսն յայտնաբէկ եւ առհասարակ իսկ ըստ օրինացն ի գաւթի անդ խորանին սրբոյ[8] մատչէին՝ բազում էին թուով եւ այլակերպք ի միմեանց, եւ բաժանեալ զատանէին ա. Ի զոհս որ յանասնոց անդեայց լինէին, եւ յողջակէզս՝ ի խաղաղականս եւ ի վասն մեղացն եւ ի վասն յանցանաց. բ. Յանարիւն պատարագս կամ ի կերակրոց եւ կամ յըմպելեաց, այս ինքն հաց տօնականն պատրաստեալ, մրգս ի դաշտաց եւ զինի[9] եւ խունկ որ ըստ օրէ[10]: Ի պաշտամանցն առվարութիւն հայէր յառաջ քան զամենայն եւ թլփատութիւնն[11], եւ ազգի ազգի սրբութիւնք լուացմամբ, եւ այլ եւս նոյնպիսիք[12]:

1 Ելից ԻԳ. 17: Ղեւտ. ԻԳ. 4—22: Թուոց. ԻԹ. 12—39:
2 Եբր. Թ. 7:
3 Ղեւտ. ԺԶ. ԻԳ. 27—32:
4 Թուոց. Զ. 23—27:
5 Ելից ԻԳ. 10, 11: Ղեւտ. ԻԵ. 1—7:
6 Երկր. օր. ԺԵ. 1—18:
7 Ղեւտ. ԻԵ. 8—55:
8 Երկր. օր. ԺԲ. 13—14:
9 Ղեւտ. Ա—Է: Թուոց. ԺԵ. 3—12:
10 Ելից Լ. 7...:
11 Ծննդ. ԺԷ. 10...:
12 Թուոց. ԺԹ: Ղեւտ. ԺԳ. եւ յայլ տեղիս:

## 131

Քահանայութիւնն յազգին իսկ հրամանաւ Աստուծոյ յանձն էր ցեղին Ղեւեայ եւ որբեալ էր Տեառն ցեղն ամենայն անդրանկաւ իւրով[1]։ Ահարոն առաջին քահանայապետ՝ եկաց իբրեւ գլուխ եկեղեցւոյ. պատիւ նորա ցկեանս՝ եւ անցանէր ի մերձաւոր ազգականութիւնն (բայց միայն ի տան նորա մինչեւ ցգերութիւնն)։ Մի եւեթ կին հրաման էր ունել քահանայապետին, եւ զայն՝ ի կուսանաց[2]։ Նմա եւ այլոց քահանայից առանձինն հանդերձ պատուիրեալ էր յօրինացն։ Նշանաւոր էր մանաւանդ վակասն կամ տախտակն լանջաց նորա որ էր կազմեալ յերկոտասան ականց պատուականաց ագուցելոց ոսկւով, անուամբ երկոտասան ցեղիցն. ի ներքին խորշի անդ կայր Ուրիմ եւ Թումիմ՝ վճռականն տուրք, զոր ի կիր արկանէր քահանայապետն յորժամ երեւելի ինչ խնդիր վճռման կամէր որոշել առաջի Աստուծոյ[3]։

Քահանայքն էին յորդւոց Եղիազարու եւ Իթամարայ որդւոյ Ահարոնի[4], եւ նուիրեցան հրապարակաւ որպէս զԱհարոն[5]։ Կատարէին նոքա զհանապազորդ պատարագսն եւ զպատարագս խնկոց[6], եւ զայլ եւս նոյնպիսիս. եւ նոքա էին վարժեալքն գիտութեամբք եւ ուսմամբք[7]։ — Յետոյ ուրեմն ի 24 դասակարգս բաժանեցան եւ կատարէին զպաշտամունսն Աստուծոյ փոխանակաւ կարգ ըստ կարգէ։

Ղեւտացիքն յերիս տոհմս բաժանեալ էին. Կահաթ, Գերսոն եւ Մերարի, եւ կատարէին զխոնարհագոյն պաշտամունսն առ տապանակին[8]։ Յետոյ ի 48 քաղաքս բաժանեցան[9] եւ առնէին զերախայրիս եւ զտասանորդս յամենայն պտղոց երկրին[10]։ "Տէր ինքնին էր բաժին եւ ժառանգութիւն նոցա ի մէջ որդւոցն Իսրայէլի"[11]։

## 132

Օրէնքն քաղաքայինք ընդ կրօնիցն օրինաց ճշդիւ աղխեալ եւ կցեալ էին, քանզի տէրութիւնն աստուածպետութիւն էր, եւ յամենայնի եւ ի բնաւի փայլէր իմաստութիւն եւ արդարութիւն։ 1. Ընտանութեան եւ ծնողացն իրք յոյժ իսկ պատուականագոյնք եւ մեծարոյք քան զամենայն այլոց ազգացն էին։ Ջանայր իսկ Մովսէս զբազմակնութիւնն եւ զբաժանումն ամուսնութեանց, զորս չկարէր ամենեւին բառնալ ի միջոյ իբրեւ հին ինչ եւ արմատացեալ չարաչար սովորութիւն՝ գոնեայ կարճել եւ

1 Թուոց. Գ. 5—13, 40—45։
2 Ղեւտ. ԻԱ։
3 Ելից ԻԸ։
4 Թուոց. Գ. 1—4։
5 Ելից ԻԹ։
6 Ելից Լ. 7, 8։ Թուոց. ԻԸ. 3—8։
7 Ղեւտ. ԺԳ. 2....։ Երկր. օր. ԺԷ. 8—11, 18։
8 Թուոց. Գ. 15—39. Դ։
9 Թուոց. ԼԵ. 2—7։
10 Թուոց. ԺԸ. 8—32։
11 Թուոց. ԺԸ. 20։

դժուարին գործել[1]: Թէպէտ եւ այր տանուտէր անարգել իւր իշխանութիւն ունէր յիւրում տանն, սակայն չունէր իշխանութիւն ի վերայ կենաց որդւոց իւրոց. եւ օրէնքն աստուածեղէնք զհօր մեծարանս պատուիրեն եւ զմօրն հաւասար հրամայեն[2]:

2. Այն բանք եւ զեղծութիւնք կամ զծառայութիւնք են, զոր չկարաց ամենեւին բառնալ ի միջոյ Մովսէս: Հրաման էր մի խրատութեամբ ընդ ծառայիցն գնալ, եւ որ գանգատէին՝ պատժէին[3]. ի շաբաթս եւ յաւուրս տօնից հանգիստ լինելոց էր նոցա[4]. պարտ էր կոչել զնոսա ընդ աղքատաց ի հացկերոյթ[5]. իսկ յեւթներորդ ամին յազատութիւն ելանէին ամենայն ծառայք եբրայեցիք[6]:

3. Վասն պարտապանաց փոյթ լեալ էր օրինաց հատուցել բազում օրէնս առ ի չանկանելոյ նոցա ամենեւին ի տնանկութիւն[7]. փոխատուանդ հրամանաւ ամին շաբաթոց եւ յոբելեան ամին: Ըստ նմին օրինակի եւ վասն այրեացն եւ որբոց փոյթ լեալ էր օրինաց[8]: Նա եւ վասն անասնոց գթութեամբ իմն փոյթ եղեւ օրինաց զի մի ոք իշխեսցէ չարչարել զնոսա, եւ թէ տացի նոցա կարեւոր հանգիստն[9]:

4. Արարակրոցն օրինաց եւ արգելլոյ պիղծն անասնոց եւ այլոց ինչ նոյնպիսեաց՝ բուն կէտ այն էր, խորշեցուցանել զԻսրայելացիսն ի պատեհութենէ զառածանելոյ ի պաշտօն կռոց եւ պահել զառողջութիւն[10]. ապա չէին այն օրէնք անմիտք կամ անօգուտք:

## 133

Յառաջնումն Մովսէս միայն էր դատաւոր. ապա կարգեաց նա խորհրդականութիւն ինչ ծերոց[11]. առ նա զխնդիրն ի հուսկ վերջին նուագի[12], եւ յետ մահուն առ քահանայապետն[13]: Յետ առնլոյ երկրին Քանանացւոց՝ յիւրաքանչիւր քաղաքի մի մի դատաւոր եկաց[14]: Վճիռքն կարճառօտ էին եւ առանց գրոյ[15]: Նա եւ լինէր որոշումն ի բերանոյ երկուց վկայից[16]. արկանէին եւ երդումն ի կիր[17]. եւ իսկ եւ իսկ կատարումն լինէր վճռոյն[18]:

Իբրեւ սկիզբն իմն պատժելոյ էր՝ վնաս ընդ վնասու հատուցանել[19], եւ երկեցուցանել[20]: Պատիժքն անդրադարձ իմն էին եւ

1 Ղեւտ. ԻԱ. 1, 13, 14: Երկր. օր. ԻԷ. 17. ԻԴ. 1 — ԻԴ. 1 — 5:
2 Ելից Ի. 12. ԻԱ. 15, 17: Երկր. օր. ԻԱ. 18 — 21:
3 Ղեւտ. ԻԵ. 39 — 53: Տես Ելից. ԻԱ. 20....:
4 Ելից Ի. 10:
5 Երկր. օր. ԺԶ. 11, 12:
6 Ելից ԻԱ. 2 — 11: Ղեւտ. ԻԵ. 54, 55:
7 Ելից ԻԲ. 25, 26: Երկր. օր. ԻԴ. 10 — 13:
8 Երկր. օր. ԺԴ. 29. ԺԶ. 11, 14. ԻԴ. 17 — 21:
9 Ելից ԻԳ. 12: Ղեւտ. ԻԲ. 27, 28. ԻԵ. 7: Երկր. օր. ԻԲ. 4, 6; 7. ԻԵ. 4:
10 Ղեւտ. ԺԱ: Երկր. օր. ԺԴ: Տես Ղեւտ. Գ:
11 Ելից ԺԲ. 13....: Թուոց. ԺԱ. 16, 17, 24, 25:
12 Թուոց. ԻԷ. — 11:
13 Երկր. օր. ԺԷ. 8 — 11:
14 Երկր. օր. ԺԶ. 18....:
15 Երկր. օր. ԻԵ. 1:
16 Երկր. օր. ԺԷ. 6... ԺԹ. 15:
17 Ելից ԻԲ. 8, 11: Թուոց. Ե. 11....:
18 Երկր. օր. ԺԳ. 9:
19 Ղեւտ. ԻԴ. 17 — 20:
20 Երկր. օր. ԺԷ. 13. ԺԹ. 20:

համեմատ յանցանացն։ ա. Պատիժ մահու՝ կամ սուր[1], կամ քարկոծումն[2]։ բ. Պատիժ մարմնոյ՝ հարուած գանի ոչ աւելի քան զ40[3]։ գ. Պատիժ տուգանաց արծաթոյ[4]։ դ. Եկեղեցական պատիժք՝ պատարագ վասն մեղաց եւ յանցանաց[5]. — յետոյ մուծան նզովք կամ մերժումն։

Յանցանք հակառակ աստուածպետութեանն պատժէին մահու, որպէս ամենայն իսկ ազգ կռապաշտութեան[6], ըղձութիւն, հմայութիւն, սուտ մարգարէութիւն[7], հայհոյութիւն Աստուծոյ[8], պղծել զշաբաթն[9], գիտութեամբ անցանել ըստ օրէնս արտաքինս[10]. դարձեալ՝ զհայր եւ զմայր անիծանել, շնութիւն, ազգապղծութիւն, անասնակութիւն հակառակ բնութեան[11], գիտելով սպանանել առ քինու եւ նենգութեան[12]։ Կարող էր սպանողն անկանել ի մի ի վեց քաղաքացն ապաստանաց, եւ յայնժամ ուրեմն յորժամ յանցաւոր գտանէր՝ տուեալ լինէր ի ձեռս մերձաւորի սպանելոյն, եւ նա ըստ հին ինչ չարաչար սովորութեան՝ առնոյր արեամբ զվրէժ իւր. ապա թէ առ չգիտանս զոք սպանեալ էր, կայր անդէն ի քաղաքին ապաստանաց մինչեւ շիջանէին իրաւունք այնորիկ որ խնդրէր զքէն սպանելոյն, այս ինքն մինչեւ ցմեռանել քահանայապետին, (իբրեւ այն թէ պարտ իցէ մերձաւորաց սպանելոյն մոռանալ այնուհետեւ զմահուանն ցաւոն՝ ի ժամանակի հասարակաց ցաւոցն եւ սգոյն)[13]։

Եւ վասն մարդասպանի սահմանեալ էր պատիժ մահու[14]։ Իսկ այլ ինչ ամենայն գողութիւն եւ վնաս ինչ պատժէր երկպատիկ հատուցմամբն. յետոյ՝ տային տուգանք մինչեւ ցչորեքպատիկն կամ ցհնգպատիկն[15]։ Իսկ սուտ վկայութեանն պատիժ՝ համեմատ էր յանցանացն զորմէ սուտ վկայութիւնն վկայէր[16]։

## Գ.

### Յեսու. — առնուլ երկրին Քանանացւոց. (1460 — 1456)։

### 134

**ՅԵՍՈՒ** (Յեսով, Յեշուա) պաշտօնեայ Մովսիսի յետ Մովսիսի վախճանին անց ի պաշտօնն զոր ետ նմա Մովսէս հրամանաւն Աստուծոյ[17], եւ յառնուլն իւրում հրամանն անցանելոյ ընդ Յորդանան՝ տուաւ նմա եւ խոստումն օգնական եւ ձեռնտու լինելոյ

1 Երկր. օր. ԺԳ. 15։
2 Երկր. օր. ԺԳ. 9, 10։
3 Ղեւտ. ԺԹ. 20։ Երկր. օր. ԻԵ. 2, 3։
4 Երկր. օր. ԻԲ. 19։
5 Ղեւտ. Դ, Ե։
6 Երկր. օր. ԺԷ. 2—5։
7 Ղեւտ. Ի. 27։ Երկր. օր. ԺԸ. 20։
8 Ղեւտ. ԻԴ. 16։
9 Թուոց. ԺԵ. 32—36։
10 Թուոց. ԺԵ. 30, 31։
11 Ղեւտ. Ի։
12 Երկր. օր. ԺԹ. 11։
13 Թուոց. ԼԵ. 10—29։
14 Ելից ԻԱ. 12։
15 Ելից ԻԲ. 1—15։
16 Երկր. օր. ԺԹ. 16—21։
17 Երկր. օր. ԼԱ. 3, 7։

նեա Աստուծոյ, թէ միայն հաւատարիմ օրինացն լինիցի (1460)։ Իսկ եւ իսկ զկարեւոր կարեւոր ինչ իբրու հրամայէր նա Իսրայելացւոցն, եւ նոքա խոստացան հնազանդ լինել յօժարութեամբ հրամանաց նորա[1]։ Վասն այնորիկ այսպէս վստահ ի նա եղեն՝ զի դիտէին զզօրն քաջութեան նորա յորժամ զօրավարն էր նա ի պատերազմունսն եւ յորժամ զհրեշտակութիւն լրտեսութեանն կատարեաց[2], եւ զնա միայն հանդերձ Քաղեբաւ ի բաց առ Տէր ի հաստատակաց սատակմանէն[3]։ Առաքեաց այնուհետեւ Յեսու լրտես յԵրիքով, զոր թաքուցեալ կնոջ ուրումն Ռահաբ անուն՝ դարձան անդրէն յաջողութեամբ եւ բերին զլուր թէ ամենեքին վհատեալ են եւ ի կոր կործանեալ բնակիչք կողմանցն[4]։

Ապա եկին Իսրայելացիքն գիշերի ի Սատիմայ եւ խաղացին յեզր Յորդանան գետոյ։ Խօսեցաւ Յեսու ընդ ժողովրդեանն. “Սրբեցարուք առ վաղիւ. զի վաղիւ արասցէ ձեզ Տէր սքանչելիս„։ Եւ ցքահանայսն ասէ. “Առէք զտապանակ ուխտին Տեառն, եւ գնացէք յառաջագոյն առաջի ժողովրդեանն„ եւ նոքա արարին նոյնպէս։ Բայց Տէր խօսեցաւ ընդ Յեսուայ եւ ասէ. “Յաւուր յայսմիկ սկիզբն արարից բարձրացուցանել զքեզ առաջի ամենայն որդւոցն Իսրայելի. զի ծանիցեն թէ որպէս էի ընդ Մովսիսի, նոյնպէս եղէց եւ ընդ քեզ„։— Իսկ Յեսու ասէ ցԻսրայելացիսն. “Այնու գիտասջիք եթէ Տէր կենդանի է ի ձեզ. եւ սատակելով սատակեսցէ յերեսաց ձերոց զՔանանացիսն... Ահաւասիկ տապանակ ուխտին Տեառն ամենայն երկրի անցանէ առաջի ձեր ընդ Յորդանան... եւ եղիցի իբրեւ մխիցեն ոտք քահանայիցն կրելեաց զտապանակ ուխտին Տեառն ամենայն երկրի ի ջուրն Յորդանանու, պակասեսցէ ջուրն որ իջանէ ի վերուստ, կացցէ իբրեւ զկարկառակոյտ մի„։

Որպէս ասացեալն էր յառաջագոյն Յեսու, նոյնպէս եւ եղեւ. իբրեւ մխեցան ոտք քահանայիցն ի ջուր գետոյն, եկաց ջուրն որ իջանէր ի վերուստ իբրեւ պարիսպ, եւ որ ի խոնարհն իջանէր ջուրն՝ էջ ի ծովն Աղտից։ Եւ այնպէս անց ամենայն ժողովուրդն ցամաքաւ յանդիման Երիքովի. իսկ քահանայքն կացին ի ցամաքի ի մէջ Յորդանանու մինչեւ անց յայնկոյս ամենայն ժողովուրդն[5]։

Վասն յիշատակի զարմանալի անցիցն՝ պատուէր ետ Յեսու հրամանաւն Աստուծոյ, առնուլ երկոտասան քարինս ի տեղւոջէն ուր քահանայքն հանդերձ տապանակաւն կային՝ եւ կանգնել յառաջնում բանակետեղ յայնկոյս գետոյն (ի Գաղգաղա), եւ այլ եւս երկոտասան քարինս անդէն ի Յորդանան ի նմին տեղւոջ ուր քահանայքն կային։ Եւ ապա հրաման ետ Յեսու քահանայիցն ելանել ի գետոյն, եւ անդէն ընթանայր ըստ սովորութեանն

1 Յես. Ա։
2 Եւծ ԺԳ. 9—13։ Թւ. ԺԴ. 9. ԺԴ. 6—9։
3 Թւ. ԺԴ. 30—38։
4 Յես. Բ։
5 Յես. Գ։

ջուրն ։ — Պատուէր ետ Յեսու ժողովրդեանն պատմել զաւակին իւրեանց զսքանչելիս առաջնորդութեանն Աստուծոյ[1] ։

# 135

Երբեւ լուան Քանանացիքն՝ մեծացաւ ահն եւ երկեւղն որ հասեալ էր առ նոսա յառաջ քան զԻսրայելացիսն ։ Իսկ սոքա հարին բանակ ի Գաղգաղա, եւ մնացին անդ բանակն ամս բազումս ։ — Ամենեքին յանապատի անդ ծնեալ էին եւ տակաւին առանց թլփատութեան էին ։ Այն սակս հրաման ետ Աստուած Յեսուայ թլփատութեամբն մուծանել զնոսա յուխտն իւր եւ այնպէս բառնալ զնախատինս Եգիպտացւոց . սմին իրի եւ տեղին Գաղգաղա կոչեցաւ, որ թարգմանի Յապաւել ։ — Եւ կատարեցին եւս զտօն զատկին ի սահմանս Երիքովի եւ կերան զառաջինն հաց ի ցորենոյ երկրին աւետեաց, իսկ Մանանայն դադարեաց յիջանելոյ քանզի չէին իսկ պէտք այնուհետեւ[2] ։

Երեւեցաւ այնուհետեւ Յեսուայ տեսիլ աստուածեղէն, յորում ասէր Տէր ցՅեսու . «Ահա ես տամ ի ձեռս քո զԵրիքով (զքաղաքն ամուր եւ անառիկ) եւ զթագաւորսն որ ի նմա, եւ զզօրաւորս զօրութեամբ ։ . . . Պատեսջիք զքաղաքն ամենայն արք պատերազմողք շուրջ զքաղաքաւ մի անգամ . այսպէս առնիցէք զվեց օր . եւ եւթն քահանայ առցեն զեւթնափողսն եղջերեայս յոբելեան առաջի տապանակին ։ Եւ յաւուրն եւթներորդի պատեսջիք զքաղաքն եւթն անգամ . եւ քահանայքն հարցեն զփողսն եղջերեայս ։ Եւ աղաղակեսցեն առհասարակ ամենայն ժողովուրդն . եւ յաղաղակելն նոցա կործանեսցին ինքնին պարիսպք քաղաքին ի ներքոյ նոցա . եւ մտցէ ամենայն ժողովուրդն դիմեալ իւրաքանչիւր հանդէպ երեսաց իւրոց ի քաղաքն»[3] ։

Ապա մեր պատրաստէր զամենայն Յեսու որպէս հրաման տուեալ էր նմա Աստուծոյ ։ Խաղային վառեալքն յառաջոյ տապանակին, իսկ ժողովուրդն զկնի ։ Եւ լինէր այսպէս զվեց օր . իսկ յաւուրն եւթներորդի յետ եւթներորդ անգամ դառնալոյ զքաղաքաւն՝ հրաման ետ Յեսու աղաղակել, մինչ դեռ անդադար փողքն հնչէին ։ Ընդ էն վաղվաղակի կործանեցան անկան պարիսպքն եւ յամենայն կողմանց մտին Իսրայելացիքն ի ներքս . ջնջեցին նոքա ըստ Յեսուայ հրամանին զամենայն բնակիչս նորա հանդերձ անասնովք, հրձիգ արարին եւ քանդեցին հիմնայատակ ։ Եդ Յեսու անէծս ի վերայ այնր՝ որ յանդգնիցի շինել միւսանգամ զԵրիքով[4] ։

Միայն Ռահաբ եւ տունն նորա խնայեցաւ, քանզի հիւրասիրութիւն եցոյց լրտեսացն եւ հաւատաց ի զօրութիւն Աստուծոյ

1 Յես . Դ ։ Տես Սաղմ . ճԺԳ . 1—9 ։
2 Յես . Ե ։
3 Յես . Ե . 13—16 ։
4 Յես . Զ . —21, 24, 26 ։

ծշմարտէ[1]. սոքա հաստատեալք ազգեցան[2]։ Ամուսնացաւ նա ընդ Սաղմոնի, որ էր ի ցեղէն Յուդայ. ի նմանէ սերեցաւ Բոոս, այրն Հռութայ, որոյ որդի Ովբէդ՝ հաւ էր Դաւթի[3]։

## 136

Ժողովէր այնուհետեւ Յեսու երեքհազար այր ի վերայ քաղաքին Գայեայ, բայց հարան արքն, եւ վհատեալ լուծան Իսրայէլացիք. յայնժամ անկաւ Յեսու զօրավար Տեառն առաջի Տեառն, քանզի երկնչէր յայնցանէ որ յետոյն կարէին լինել, բայց ծանոյց նմա Աստուած թէ մեղաւ Իսրայէլ եւ գողացեալ է յաւարէն զոր նուիրեաց նա Տեառն. այս գողութիւնն էր յանցանք արժանի մահու. ի մէջ գայր վիճակաւ, թէ Աքար ի ցեղէն Յուդայ գողացեալ է։ Խոստովան եղեւ Աքար զյանցանսն թէ գողացեալ թաքուցեալ է ընդ երկրաւ ոսկի, արծաթ եւ ամղան մի նկարէն (Եբր. ամղան բաբելացի). քարկոծեցաւ հանդերձ ամենայն տամբ իւրով (զի որպէս ի դէպ է՝ եւ նոքին էին իրազէտ գողութեանն), եւ ամենայն ինչք նորա հրոյ ճարակ եղեն ըստ Աստուծոյ հրամանին[4]։

Ապա խաղաց միւսանգամ Յեսու հրամանաւ Աստուծոյ ի վերայ Գայեայ, եւ պատրելով իմն զԳայեացիսն հան զնոսա ի քաղաքէն, առ զքաղաքն եւ զնոյն անցս անցոյց ընդ նա եւ ընդ քաղաքացիսն՝ որ ինչ անց ընդ Երիքով։ Եւ բաժանեցաւ աւարն։

Յետ այնորիկ շինեաց Յեսու սեղան Տեառն ի վերայ լերին Գեբաղայ, մատոյց պատարագս, ետ քանդակել զօրէնսն ի քարինս, եւ ի Գարիզին եւ ի Գեբաղ լեռնէ ետ գոչել բարձրաձայն՝ զօրէնսն հանդերձ օրհնութեամբն եւ նզովիւք, որպէս հրաման լեալ էր ի ձեռն Մովսիսի[5]։ Տեսեալ թագաւորացն Քանանացւոց զիրսն՝ որ ընդ Երիքով եւ ընդ Գայի անցին, միաբանեալ ի դաշն մտանէին։ Այլ ժողովուրդ մի Խեւացւոց՝ որոց սահման բնակութեան Գաբաւոն՝ միոյ աւուր գնաց ճանապարհի էր ի Գաղգաղայ, առաքեցին հրեշտակս առ Իսրայէլացիսն կեղծաւորեալ իբրեւ թէ ի հեռաւոր աշխարհէ գայցեն, եւ այնպէս եդին դաշինս ընդ Իսրայէլացւոցն, առ ապրելոյ ի հասարակաց սատակմանէն։ Բայց սակայն յետոյ յանձն առին լինել ծառայս եւ սպասաւորս խորանին վկայութեան[6]։

## 137

Աան հնազանդելոյ Գաբաւոնացւոցն կամաւ՝ առաւել եւս երկնչել սկսան Քանանացիք, քանզի Գաբաւոն քաղաք ամուր

1 Յես. Զ. 22. 23. 55։
2 Եբր. ԺԱ. 31։ Յակ. Բ. 25։
3 Մատթ. Ա. 5։
4 Յես. Է։
5 Յես. Ը։
6 Յես. Թ։

էր եւ անկեր առ Հզօրս: — Նմին իրի Ադոնիզեդեկ (Ադոնիսեդեզեկ) Թագաւոր Երուսաղեմի միաբանեալ ընդ այլոց չորից Թագաւորացն Ամորհացւոց՝ անկաւ ի վերայ Գաբաւոնացւոց, եւ պաշարեաց զքաղաքն նոցա: Խնդրեցին Գաբաւոնացիքն զօրաւիգն օգնականութեան ի Յեսուայ, եւ նա զօրացեալ ի Տեառնէ եհաս անկաւ յանկարծակի ի վերայ դաշնաւորացն. եւ մատնեաց զնոսա ամենեսին ի պարտութիւն: Եւ յորժամ փախչէինն առաջաց Տէր քարկոծ կարկտի (Թերեւս անկանել իմն կարկուտ ծանր յոյժ), եւ էին բազումք այնոքիկ որ ի կարկտէ անկան քան որ ի սրոյ Իսրայելացւոցն: Այսպէս խօսեցաւ Յեսու ընդ Տեառն եւ դարձաւ առնել յանդիման ամենայն Իսրայելի. «Կաց արեգակն ընդդէմ Գաբաւոնի եւ լուսին ընդդէմ ձորոյն Եղոնայ. եւ կացին արեգակն եւ լուսին ի կայի իւրեանց մինչեւ էառ Իսրայել վրէժ ի թշնամեաց իւրոց... եւ եկաց արեգակն (բառն՝ երկնի) ի մէջ երկնից...: Եւ ոչ եղեւ այսպիսի օր երկար ոչ յառաջ եւ ոչ յետոյ, յորժամ լուաւ Տէր ձայնի մարդոյ եւ պատերազմեցաւ խառն ընդ Իսրայելի»[1]: Նկարագրի միայն այսր անպաճոյճ պատմութեան զարդեամբքն դադարումն երկրի (արեգական) յայտ առնէ[2], ի ձեռն ամենազօրն զօրութեան այնր՝ որում տկարանայ եւ ոչ ինչ[3]:

Յետ զարմանալի յաղթութեանն վարէր յառաջ Յեսու զպատերազմ ընդ ցեղիցն Քանանացւոց յաջողութեամբ, մինչեւ յետ ամաց վեցից զմեծ մասն արեւմտեան երկրին Քանանացւոց առ եւ ընկճեաց զմնացեալս նոցա (1459—1454)[4]: Թիւ համարոյ Թագաւորացն պարտելոց էր երեսուն եւ մի[5]:

## 138

Թէպէտ եւ չեւ էին առեալ տակաւին ի բուռն ամենայն սահմանք երկրին Քանանացւոց՝ որ ի Մովսիսէ որոշեցան[6], եւ ոչ ամենեքին պարտեալք եւ ջնջեալք, քանզի դժուարին էր այն վասն ամուր ամուր քաղաքացն, սակայն բաժանել սկսաւ Յեսու հրամանաւ Աստուծոյ զամենայն երկիրն ի մէջ ցեղիցն երկոտասանեցունց, բովանդակեալ ի նոյն եւ զերկիրն որ տակաւին չէին նուաճեալ[7]: Հիմն բաժանմանն լինէր օրհնութիւնն Յակոբայ[8] եւ Մովսիսի[9], եւ հրամանքն Մովսիսի[10], զեանոյն եւ հողոյն

1 Յես. Ժ. 12—14:
2 Տես Սիրաք. ԽԶ. 5:
3 Ղուկ. Ա. 37: — Ծաղու իմն է զայս պատմութիւն իբրեւ հակառակ ինչ կոպեռնիկեան դրութեանն համարել: Չէր ինչ պէտս Յեսուայ այն գիտութիւն: Եւ եթէ գիտացեալ եւս էր թէ արեգակն կայ եւ երկիր շրջի, սակայն ի դէպ էր նմա ըստ այնց սովորական խօսից խօսել, ըստ որոց եւ մեք միշտն խօսիմք թէ մտանէ կամ ելանէ արեգակն, թէպէտ եւ գիտեմք թէ արեգակն կայ ի կայէն եւ երկիրս շրջի:
4 Յես. Ժ. ԺԱ:
5 Յես. ԺԲ:
6 Թուոց. ԼԴ. 3—12:
7 Յես. ԺԳ. — 6:
8 Ծնն. ԽԹ:
9 Երկր. օր. ԼԳ:
10 Թուոց. ԼԴ:

յարեւմտից ի Դան, ի հիւսիսոյ՝ յԵփրեմ եւ յարեւելից՝ ի Յոր-դանան գետ[1]։

Յառաջ քան զերիս ցեղսն զայնոսիկ առեալ էր զմնացեալ ժա-ռանգութեան իւրոյ՝ կէսն ցեղին Յովսեփայ։ (Դ) Եփրեմեանց սահ-մանք հասանէին յարեւելից ցգետն Յորդանան, ի հարաւոյ՝ առ Բենիամին եւ Դան, յարեւմտից՝ ի ծովն Միջին, եւ ի հիւսիսոյ բաժանեալ էր ի Մանասէէ ձորեղատաւն եղեգանց (Կանայ)[2]։ (Ե) Մանասէ (կէս ցեղին) կից էր ի հարաւոյ յԵփրեմ, ի հիւ-սիսոյ՝ յԻսաքար, եւ էր ի մէջ յարեւելից՝ Յորդանանու եւ յա-րեւմտից՝ ծովուն Միջնոյ[3]։

Յետ այնորիկ հրամայեաց Յեսու չափել զմնացեալ երկիրն եւ բաժանել վիճակաւ յեւթն մասունս վասն եւթն ցեղիցն մնա-ցելոց[4]։ (Զ) Իսաքար առ զհարթ վայրսն Եզրելոնայ. եւ էր սահ-մանն նորա ի մէջ Յորդանան գետոյ եւ ծովուն, ի մէջ Յովսեփու եւ Զաբուղոնի[5]։ (Է) Զաբուղոնի սահմանք կից էին ի հարաւոյ առ Իսաքար, ի հիւսիսոյ արեւելից՝ առ Նեփթաղիմ, եւ յա-րեւմտից՝ ի ծովն եւ առ Ասեր[6]։ (Ը) Նեփթաղիմ ա՛ռ զբաւն վերջին հիւսիսային կողմն աշխարհին Պաղեստինացւոց. ձգեալ տարածանէր յարեւելից մինչեւ ցաղբերան Յորդանանու, ի հա-րաւոյ՝ մինչեւ ցծովն Գեննեսարեթայ եւ ցԶաբուղոն, յարեւմտից՝ մինչեւ ցծովն, ի հիւսիսոյ՝ ցԼիբանան[7]։ (Թ) Ասեր ա՛ռ զերկիրն որ է ընդ երկայնութիւն ծովուն, ի Կարմեղոս լեռնէ մինչեւ ցՍի-դոն, եւ սահմանն նորա ի հարաւոյ արեւելից՝ Զաբուղոն եւ Նեփ-թաղիմ[8]։ Զցեղսն Բենիամինի եւ Շմաւոնի վաղ կարգեցաք։

Իսկ Յեսու ըստ ցանկութեանն իւրում եւ ըստ Աստուծոյ հրամանին ա՛ռ զԹամնաթ-Սարա ի լերինն Եփրեմայ ի ժառան-գութիւն[9]։

Ցեղն Ղեւեայ թէպէտ չառ իւր առանձինն բաժին երկրի, սակայն յամենայն սահմանաց ցեղիցն տուան նոցա քառասուն եւ ութ քաղաքաց սահմանք[10], յորոց վեց քաղաքք ապաստանաց էին, երեք յայսկոյս եւ երեք յայնկոյս Յորդանանու[11]։ Այսպէս ի գլուխ ել բաժանումն յամս ինչ, եւ եղեւ խաղաղութիւն յեր-կրին[12]։ Նմին իրի արձակէր Յեսու օրհնութեամբ եւ մեծա-ւարաւ զերկու եւ զկէս ցեղսն որոց բնակութիւն անկաւ յայն-կոյս Յորդանանու։ Ի դառնալ նոցա յերկիրն իւրեանց, կանգնե-ցին սեղան մեծ առ Յորդանանու։ Բայց զայս գործ՝ օտարութիւն ինն ի ճշմարիտ պաշտամանէն համարեցան ցեղքն մնացեալք, եւ առաքեցին առ նոսա հրեշտակս տրտնջել զիրացն. բայց նոքա յայտ

1 Յես. ԺԸ. 11—28։
2 Յես. ԺԶ։
3 Յես. ԺԷ. 7—13։
4 Յես. ԺԸ. —10։
5 Յես. ԺԹ. 17—23։
6 Յես. ԺԹ. 10—16։
7 Յես. ԺԹ. 32—39։
8 Յես. ԺԹ. 24—31։
9 Յես. ԺԹ. 49—51։
10 Յես. ԻԱ. — 42։
11 Յես. Ի. 7—9։
12 Յես. ԻԱ. 43—45։

տուքն էր[1]) մնա ի սատակմանն ուխտին ի միաբանութեան բանակին զոր խօսեցաւ Տէր, զի մի իցէ թէ ուրասցին նորա զնա:

Յետ այնորիկ արձակէր Յեսու զպատգամաւորսն զամենեսեան: Իսկ ինքն Յեսու "Ծառայ Տեառն,, մեռաւ 110 ամաց, եւ թաղեցաւ ի քաղաքին իւրում[2] (յամի իբրեւ 1450): Յիշատակ էր Յեսու անշարժն հաւատարմութեանն, եւ մեծամեծ նախանձու փառացն Աստուծոյ եւ աներկիւղութեանն զոր առնէր զպաշտպանութիւն, հանապազորդն վստահութեանն եւ սրբութեանն որում որ եւ ոչ ի ծերութեան նորա նուազեաց. ողջախոհք արժանի եղեւ Յեսու մեծել զպատերազմական վրիժուց արդարութեանն Աստուծոյ ընդ ազգացն որ արժանի եղեն բնաջինջ սատակմանն. պատուեաց զնա Աստուած անմոռանալի նշանօք, եւ զօրէն զնա դիւցազն գեղեցիկ[3]: Նուաճ իմն թէ եւ քահանայապետն Եղիազար ընդ նոյն ժամանակս մեռաւ. զնա յաջորդեաց նորին որդի Փենեհէս[4]:

Դ.

Ժամանակք Դատաւորաց. (1450—1100):

## 141

ՄՈՎՍԷՍ եւ Յեսու անմոռանալի իմն եւ արտաքոյ քան զհասարակաց կարգս առեալ ունէին պաշտօն եւ իշխանութիւն. յետ մահու նոցա պատիւ քահանայապետութեանն որ միշտ կայր անեղծ, էր առաջին եւ վերագոյն քան զամենայն պատիւ պաշտաման յաշխարհին: Ցեղքն սերընդեամբն իւրեանց եւ քարոզիչքն եւ աստուածեղէն պաշտամամբն՝ յօրինեալ կազմէին մի միայն ժողովուրդ, սակայն եւ իբրեւ տէրութիւնք ազատք ի միմեանց եւ ինքնօրէնք՝ քաղաքք էին, եւ առաջնորդէին նոցա գլխաւորք ցեղից եւ տանց իւրեանց, եւ ի Սելով առաջի տապանակին տանէին զեկեղեցական ժողովսն իւրեանց, իսկ ի Սիւքէմ զժողովրդական ժողովսն. նոցա առաջնորդ՝ քահանայքն էին, իսկ սոցա՝ գահերէցք ժողովոցն եւ պատգամաւորք իւրաքանչիւր ցեղից: — Ըստ տեսակին զոր օրինակ յառաջինսն յիշեցաք, չառաւ ամենայն երկիրն Քանանացւոց, այլ եւ ինչ ինչ մասն եւս միւսանգամ ի ձեռաց նոցա: Վասն այնորիկ յետ վախճանելոյ Յեսուայ հարցին Իսրայելացիք զՏէր թէ ո՞ մղեսցէ զպատերազմն հակառակ Քանանացւոցն: Եւ Տէր ետ պատասխանի. "Յուդա ելցէ, զի ետու զերկիրն ի ձեռս նորա,,: Յայն սակս ցեղն Յուդայ եղեւ դաշնաւոր ընդ ցեղին Շմաւոնի, եւ երկոքին խաղացին ի վերայ Քանանացւոցն եւ Փերեզացւոց, յաղթեցին նոցա, հարին եւ

1 Տես Ծնն. ԺԲ. 6, 7:
2 Յես. ԻԳ, ԻԴ:
3 Սիրաք ԽԶ. 1—10:
4 Յես. ԻԴ. 33:

կոտորեցին զբազումս ի նոցանէ եւ կտրեցին զծառս ձիթեաց եւ ոսից Երուսաղեմայ, զոր եւ ինքն իսկ Երուսաղեմի հասարակաց պատուհաս յանցանացն. քանզի եւ նորա զնոյն աղէտս անցուցեալ էր ընդ այլ 70 թագաւորս: Վանեցին մկանդեցին եւ հրձիգ արարին եւ զքաղաքն Երուսաղէմ: Ապա առին նոքա զքաղաքն Քեբրոն, ուր ջնջեաց Քաղէբ եւ կորոյս զԵնակեանն սկայազունս. բայց Գոթոնիէլ կրսեր եղբայր Քաղեբայ վասն առնլոյ զԿարիաթ-Սեփեր (ըստ մերոյն՝ Դաբիր), ընկալաւ ըստ խոստմանն Քաղեբայ զդուստր նորա Աքսա (Ասքա) կնութեան[1]: Երկոքին ցեղքն վանեալ մկանդեալ առնուին եւ այլ եւս բազում քաղաքս՝ եղեալ ապշաւանս բազումս, մնացուանդ զերանակողմամբ Յուդայ հանդերձ քաղաքօք ամուր ամուր վայրօք, եւ Տէր էր ընդ նոսա[2]:

## 142

Նա եւ միացեալ ցեղքն տային յաջողութեամբ պատերազմ ընդ Քանանացւոցն. բայց ոչ ջնջեցին նոքա զնոսա, այլ առնէին զնոսա իւրեանց հարկատուս[3]: Յայնժամ եկն պատգամաւոր մի Տեառն ի Գաղգաղայ եւ յանդիմանեաց զԻսրայէլացիսն վասն խնայելոյ նոցա ի մեղաւոր Քանանացիսն եւ ի հաշտութիւն նոցա: Սպառնացաւ նոցա Աստուած եւ ասէ. «Ոչ յաւելից այսուհետեւ սատակել զազգսն զայնոսիկ յերեսաց ձերոց, եղիցին նոքա ձեր թշնամիք եւ դիք նոցա եղիցին ձեզ ի գայթակղութիւն»[4]: Իսկ Իսրայէլացիքն լացին եւ մատուցին Տեառն պատարագս ի նմին տեղւոջ, այլ ոչ յերկարեցաւ զեղջն: Աստուածատուր գիրք զգլխաւոր պատմութիւն յաջորդ ժամանակիս նկարեն ի յաջորդ բանս:

«Ծառայեաց ժողովուրդն Տեառն զամենայն աւուրս Յեսուայ եւ զամենայն աւուրս ծերոցն, որ միանգամ երկայնակեացք եղեն ընդ Յեսուայ, որ գիտակ լինեալ էին ամենայն մեծամեծ գործոցն Տեառն զոր արար յԻսրայէլ: — Եւ իբրեւ վախճանեցաւ Յեսու ծառայ Տեառն, եւ ամենայն ազգն այն յաւելան առ հարս իւրեանց, յարեաւ այլ ազգ որ ոչ ճանաչէին զՏէր եւ ոչ զգործսն զոր արար ի մէջ Իսրայէլի[5]: Եւ արարին որդիքն Իսրայէլի չար առաջի Տեառն, եւ պաշտեցին զԲահաղիմ (այս ինքն զկուռս): Եւ թողին զՏէր Աստուած հարցն իւրեանց, եւ գնացին զհետ աստուածոց օտարաց, աստուածոց ազգացն որ շուրջ զնոքօք, եւ երկիր պագին նոցա, եւ բարկացուցին զՏէր: Եւ բարկացաւ սրտմտութեամբ Տէր՝ Իսրայէլի, եւ մատնեաց ի ձեռս աւարառուացն ... եւ ոչ կարացին կալ ընդդէմ թշնամեաց իւրեանց ... եւ նե-

1 Յես. Յես. ԺԵ. 13—19:
2 Դատ. Ա. —20:
3 Դատ. Ա. 21...:
4 Դատ. Բ. 1—5:
5 Յես. Յես. ԻԴ. 31. ըստ Հաւաքակ. օր. Լատ.:

ղեաց զնոսա յոյժ։ Նաեւ արդարեւ յարոյց նոցա Տէր դատաւորս, եւ էր Տէր ընդ դատաւորին, եւ փրկեաց զնոսա ի ձեռաց թշնամեաց նոցա զամենայն աւուրս դատաւորին. զի մխիթարեցաւ Տէր ի հեծութենէ նոցա յերեսաց պաշարողացն նոցա՝ որ չարչարէին զնոսա։ Նաեւ լինէր իբրեւ մեռանէր դատաւորն, դառնային միւսանգամ եղծանել առաւել քան զհարս իւրեանց, երթալ զհետ աստուածոց օտարաց, եւ պաշտել զնոսա ... եւ ոչ հատան ի խիստ ճանապարհաց իւրեանց„[1]։

Այսպէս միմեանց յաջորդէին ապստամբութիւն եւ ծառայութիւն, ապաշխարութիւն եւ փրկութիւն կամ յամենայն Իսրայէլի եւ կամ ի ցեղս ինչ նորա, եւ ըստ չափոյ ուխտազանցութեանն՝ նոյնչափ եւ յերկարագոյն եւ դժնդակագոյն նեղութիւնն լինէր։ Առաջին եւ գլխաւոր պատճառք յանցանելոյ նոցա՝ ամուսնութիւնքն էին, զոր հակառակ օրինացն առնէին Իսրայելացիք ընդ Քանանացւոցն, այնու զի նախ նոքին ի կռապաշտութիւն հրապուրէին, եւ ապա իսկ արժանի պատժոց լինէին թէ չբառնային ի միջոյ զազգն զայնոսիկ զապականեալս. եւ այնպէս վճիռքն եւ հրամանք Աստուծոյ երեւէին արդարացեալք[2]։

Որչափ յողդողդս եւ անհաստատս եւ հակառակս անձանց իւրեանց գործէին Իսրայելացիք ի ժամանակին յայնոսիկ՝ դոյնչափ գտանեմք զառաջնորդութիւնս Աստուծոյ հաստատունս եւ միաբանս միշտ բանից խոստմանցն իւրոց։ Ըստ այնմ զոր ընդ հայրս նոցա խօսեցեալ էր Աստուած՝ եւ ի ձեռն Մովսէսի եւ Յեսուայ յայտնապէս ցուցեալ, գտանեմք զԻսրայելացիսն իսկ եւ իսկ ի բարութեան եւ ի խաղաղութեան՝ յորժամ հաւատարիմ Աստուծոյ լինէին, եւ ամենայն ազգ չարեաց եւ տագնապ կուտէր ի վերայ նոցա՝ յորժամ ոչ ըստ Աստուծոյ կամացն գործէին։ Յայտնի նշմարի հանապազորդ ինչ ջան եւ հոգաբարձութիւն Աստուծոյ որ փութայ իմն զազգն կապել ընդ իւր առանձինն իմն եւ սեպհական հաղորդութեամբ նոցա ընդ նմա։

## 143

Ընդէն իսկզբան անիշխանութեան ժամանակիս այսորիկ (յորժամ քահանայապետ էր Փենեհէզ) գրգռեցաւ քաղաքային ինչ պատերազմ մետասան ցեղից ընդ ցեղին Բենիամինի։ Պատճառք պատերազմին եղեն չար ինչ գործք ոմանց ի բնակչացն Գաբաայ, յորոց լլկեալ սպանաւ կին առն միոյ ղեւտացւոյ որ ճանապարհ առնէր ընդ այն։ Քանզի չառին յանձն քաղաքացիքն տալ ի ձեռս զյանցաւորսն՝ խաղացին 400,000 արք պատերազմողք ի մետասան ցեղից որ ժողովեալ էին ի Մասեփա երթալ հարկանել

1 Դատ. Բ. Է...։ 2 Դատ. Գ.—Է։

Իսկ այն եւս ճշմարիտ թուի թէ վախճանեալ էր այն քաջ Գեդէոն (զոր դատաւորաց յիշէ գիրք[1], այլ առանց յիշելոյ զանուն նորա) ի ժամանակի յորժամ Աստուած զպատահարս պատժոց զոր տպաւորեաց նա Իսրայէլացւոցն՝ հան ի գլուխ յորժամ ապերասանեցին ի նմանէ, եւ ետ զնոսա ի ձեռս Քուսարսաթեմայ. (Քուսան Ռասաթայիմայ) արքային Միջագետաց, եւ ծառայեցին նմա ամս ութ: Ապա աղաղակեցին առ Տէր եւ նա յարոյց նոցա փրկիչ զԳոթոնիէլ զկրսեր եղբայր Քաղեբայ, որ ազատեաց զժողովուրդ իւր, եւ տիրեաց Իսրայէլի խաղաղութեամբ ամս 40 (1430—1390):

Բայց քանզի յետ նորա վախճանին կործանեցան միւսանգամ Իսրայէլացիք ի մեղս մեծամեծս, անկան դարձեալ ընդ լծով ծառայութեան Եգղոնայ արքայի Մովաբացւոց ամս ութեւտասն (յամի իբրեւ 1390): Իբրեւ դարձեալ կարդացին առ Տէր. յարոյց նոցա Աստուած փրկիչ զԱւովդ կամ զԱւդ. սա այսն նենգաթեամբ զթագաւորն եւ զայս յաղթեաց Մովաբացւոցն ի մեծի ճակատու, եւ շնորհեաց Իսրայէլացւոց երկայնժամանակեան խաղաղութիւն (յամէ իբրեւ 1370—1335): Յարձակել յարձակեցան յայնժամ եւ Փղշտացիքն, բայց մերժեցան ի Սամեգարայ (Սամգարայ) որ եհար ի նոցանէ մաճով արօրոյ՝ 600 այր[2]:

145

Յետ Աւովդայ վախճանելոյ միւսանգամ գործեցին չար Իսրայէլացիք առաջի Տեառն, եւ ի ծառայութիւն մատին Յաբինայ արքայի Քանանացւոց բնակելոյ ի հիւսիսակողմանն ամս 20 (1335—1315): Աղաղակեցին յայնժամ առ Տէր. բայց Դեբովրա կին մարգարէ, դատաւոր էր յայնժամ Իսրայէլի: Սա կոչեաց յանուն Աստուծոյ զԲարակ զայր ի Նեփթաղիմայ, զի նա առցէ մարտ պատերազմի 10,000 Նեփթաղիմացւովք եւ Զաբուղոնացւովք ընդ Սիսարայ զօրավարին Յաբինայ, որոյ կառք երկաթագիծք միայն 900 էին: Յանձն առ Բարակ թէ միայն եւ Դեբովրա գայցէ ընդ նմա ի պատերազմ: — Հաւանեցաւ Դեբովրա, բայց եւ զայն ծանոյց յառաջագոյն թէ ի ձեռն կնոջ անկանելոց է Սիսարա: Ելին երկոքին վառելովքն իւրեանց ի պատերազմ. եւ Սիսարա եւս ած զումարեաց ի մի վայր զամենայն զզօրս իւր. պատահեցան միմեանց ճակատքն առ հեղեղատին Կիսոնի: Բայց Տէր զարհուրեցոյց զՍիսարա, որպէս ասացեալ էր Դեբովրայ, եւ զզօրս նորա ի յարձակելն Բարակայ. փախեաւ հետիոտն Սիսարա եւ անկանէր ի վրանն Յայելայ կնոջ առն Կինեցւոյ: Ընկալաւ զնա կինն ուրախութեամբ, եւ ի ծարաւ նորա՝ արբոյց նմա կաթն. այլ

1 Սիրաք ԽԶ. 9—12:     2 Դատ. Գ. 8...:

Իբրեւ ներհեաց՝ եհար կինն ուսամբ զցից վրանին ընդ ծամելեան նորա եւ մեռաւ Միսարա։ — Թող լիցի եւ Աստուած գործոյն այնմիկ զի խոնարհեցուցէ զՅաբին, եւ զօրացոյց նա զԻսրայէլացիսն մինչեւ ջնջեցին նոքա զնա եւ զժողովուրդ նորա[1]։

Իսկ Դեբովրա եւ Բարակ երգեցին Տեառն փոխանակս ջերմեռանդն երգ գոհութեան, գեղեցիկ յոյժ։ — «Եւ դադարեաց երկիրն ամս քառասուն»[2]։

## 146

Հաւանութեան է թէ ի կատարած կոյս այսր խաղաղութեանն ժամանակի, յորժամ միւանգամ թողին Իսրայէլացիք զՏէր, դիպեցան անցք պատմութեանն Հռութայ, որ բովանդակեալ ունի զժամանակ երկոտասան ամաց (1280—1268). եւ զի ոչ միայն երեւելի ինչ այլ եւ ի խորատ եւս է՝ վասն այնորիկ պարտ է աստէն կարգել։

Եղիմելէք ոմն այր Իսրայէլացի, վասն սովոյն գաղթեալ էր յերկիրն Մովաբացւոց հանդերձ կանամբն իւրով Նոեմինաւ եւ երկուք որդւովք. անդ մեռաւ ոչ Եղիմելէք միայն, այլ եւ որդիք նորա Մաաղոն եւ Քելեղոն, որ առեալ էին իւրեանց կանայս մովաբացիս, եւ թողին զնոսա այրիս։ Յայնժամ ապա ել Նոեմին եւ չոգաւ ի հայրենի աշխարհն իւր ի Բեթղահէմ հանդերձ Հռութաւ նուոյն իւրով որ ոչ կամէր թողուլ զսկեսուրն իւր, եւ դարձաւ ի ճշմարիտ հաւատս Իսրայէլացւոցն. բայց աղքատ եւ կարօտ էին երկոքին[3]։

Վասն այնորիկ ջանայր Հռութ հասկաքաղ շրջելով պահել զանձն եւ զՆոեմին, եւ Աստուծոյ տնօրէնութեանն վարելով եկն նա յանդն Բոոսի առն մեծատան եւ աստուածապաշտի եւ ազգականին Եղիմելէքայ՝ որ էր ի զաւակէ Ահարոնայ։ Իբրեւ իմացաւ Բոոս թէ ո՞ ոք է Հռութ՝ եւ գիտաց թէ որպիսի սէր կալաւ նա առ Նոեմին՝ եցոյց առ նա սէր եւ առատութիւն, եւ այնպէս իմն յարգարեաց՝ զի միշտ իսկ տարցի հունձս բազումս ի տուն[4]։

Արդ հին իմն բարք էին Իսրայէլացւոցն եւ օրէնք զի ի մեռանել ուրուք անորդի, եղբայր նորա առնոյր զկին նորա զի ինքն մնացուսցէ զցեղն յառաջ[5]. վասն այնորիկ խորհեցաւ Նոեմին վաճառել զագարակն Եղիմելէքայ առ մերձաւորն քան զամենայն ազգականս Եղիմելէքայ, զի այնպէս՝ ամուսնասցի եւ Հռութ ընդ նմին, եւ ի մերձաւոր ազգականութենէ անտի ընտրեալ էր զԲոոս, քանզի գիտէր թէ սիրէ նա զՀռութ։ Բայց քանզի միւս եւս ոք առաւել մերձաւոր գոյր ազգականութեամբ՝ հան Բոոս զիրսն ի քննութիւն առաջի դրան քաղաքին յանդիման տասն ծերոց։ Ընդ

1 Դատ. Դ։
2 Դատ. Ե։
3 Հռութ. Ա։
4 Հռութ. Բ։
5 Երկր. օր. ԻԵ. 5....։

հրաժարեաց մերձաւորագոյնն ի ժառանգութենէ ազգականին, եւ առ զայն Բոոս գնոց, եւ յայտ արար թէ կամի առնել զՀռութ կնութեան. եւ օրհնեաց զնա ամենայն ժողովուրդն:

Առ Բոոս զՀռութ եւ ծնաւ նա նմա որդի Ովբէդ անուն. սա էր հայր Յեսսեայ որ հայրն էր Դաւթի[1]:

## 147

Իսկ Իսրայելացիք դարձեալ առնել չար առաջի Տեառն. յայնժամ մատնեցան ի ձեռս Մադիանացւոց, Ամաղեկացւոց եւ այլոց ազգաց Արաբացւոց, որ եւթն ամ ասպատակաւ աւերեցին զերկիրն, ապականեցին զհունձս երկրին, եւ արարին կապուտ կողոպուտ (1275—1268): Կարդացին Իսրայելացիքն առ Տէր ի նեղութեան իւրեանց: Եւ առաքեաց առ նոսա Տէր մարգարէ որ խրատեաց զնոսա: Ապա երեւեցաւ հրեշտակ Տեառն առ Գեդէոն որ ի ցեղէն Մանասէի եւ եցոյց նմա թէ փրկելոց է նա զԻսրայէլ. պատարագն զոր մատուցանէր Գեդէոն Տեառն, մաշեցաւ հրով իբրեւ հուպ ի նա լինէր հրեշտակին, առ ի նշանակելոյ զառաքումն նորա: Ընդէն ի նմին գիշերի հրաման ետ Տէր Գեդէոնի՝ կործանել զբագինն եւ զանտառն Բահաղու զոր պաշտէր հայր նորա, հատանել զփայտ նորա եւ մատուցանել ողջակէզ հրովն: Արար Գեդէոն զհրամանն գիշերի եւ կոչեցաւ նմա անուն յօրէն յայնմանէ՝ Յերոբաաղ:

Եւ զի Մադիանացիքն եւ դաշնաւորք նոցա խաղացին եւ հաւաքեալ բանակեցան ի ձորն Յեզրայելայ, ետ հնչեցուցանել Գեդէոն զփողն եւ ժողովեցան բազումք ի ցեղիցն Իսրայելացւոց: Եւ Գեդէոն աղաչեաց զՏէր զի տացէ նմա Տէր նշան, զի գիտասցէ թէ ի ձեռն նորա փրկելոց է զԻսրայելացիսն: Եւ ահա գեղմն՝ զոր տարածեալ էր Գեդէոն գիշերի ի դաշտին, գտաւ ընդ առաւօտն լի ցօղով, ուր ցամաքութիւն էր ի վերայ ամենայն երկրի, եւ ի վաղիւ անդր կրկնեցաւ նշանն բայց յետս ընդդէմ, զի թամկացաւ ամենայն երկիրն եւ մնաց գեղմն ցամաքեալ[2]:

Գումարեաց յայնժամ Գեդէոն ընդ առաջ թշնամեացն 32,000 արանց եւ բանակեցաւ առ Ջրով: Եւ ետ գոչել ի բանակին հրամանաւ Աստուծոյ թէ ամենեքին որ երկնչիցին՝ դարձցին ի տունս իւրեանց. եւ մնացին 10,000 այր միայն: Ի նոցանէ զատոյց Գեդէոն ըստ խրատուն Աստուծոյ՝ 300 այր որոց չէր արբեալ զջուրն՝ այլ լափեալ, եւ նոքին միայն սահմանեալ էին փրկել զԻսրայէլ, զի երեւեսցի օգնականութիւնն Աստուծոյ: Յերիս գունդս բաժանէր Գեդէոն զարսն որ ընդ նմա էին, եւ ետ իւրաքանչիւր մէն մի փող եւ սափոր դատարկ յորում թաքուցեալ կայր ջահ. եւ պատուէր տայր նոցա եւ ասէ. վաղվաղակի իբրեւ հասանիցէք ի բանակ

1 Հռութ. Գ, Դ: 2 Դատ. Զ:

յՍիւքեմ զազգականս մօրն իւրոյ եւ ի ձեռն նոցա զբնակիչսն Սիւքեմայ։ Նստան նոքա նմա արծաթ՝ որով վարձեցաւ արս սրիկայս եւ զարհուրեցուցիչս, եւ խողխողեաց նոքօք յԵփրա եւ անդ կոտորեաց զեւթանասուն եղբարս իւր ի վերայ վիմի միոջ (Յովաթամ միայն կրսեր քան զամենեսին ապրեցաւ)։ Ապա կացուցին զնա Սիկիմացիքն թագաւոր։ Իսկ Յովաթամ եցոյց Սիկիմացւոցն զանշնորհակալ միտս նոցա պատշաճ ինչ նմանութեամբ, եւ յայտ արար թէ հատանելոց են չարիք ի վերայ նոցա եւ Աբիմելէքայ։

Երիս ամս թագաւորեաց Աբիմելէք ի վերայ Իսրայէլի (1228 — 1225)։ Ապա ամաչեցին Սիկիմացիքն զի գործակից եւ կցորդ եղեն չարեաց թագաւորին իւրեանց։ Յետ անիծից արկին ձեռս ի գործս թշնամութեան, եւ յարեան նոքա ի վերայ թագաւորին։ Բայց յաղթեաց նոցա պատերազմաւ Աբիմելէք, ապա յարձակեցաւ ի Սիկիմ, քանդեաց զքաղաքն եւ այրեաց բազում մարդիկ՝ որ յաշտարակ ինչ ապաստանեալ էին։ Ապա պաշարեաց նա զամուրն Թեբեսա, առ զնա եւ այրեաց։ Եւ աստի եւս փախուցեալ անկան բնակիչքն յաշտարակ մի՝ զոր այրելն կամէր Աբիմելէք. բայց կին մի ընկէց երկանաքար ի վերայ, եւ խորտակեաց զգագաթն գլխոյ նորա, եւ հրաման ետ Աբիմելէք կապարճակրին իւրում ամենեւին իսկ սպանանել զնա։

«Եւ դարձոյց Աստուած զչարիսն Աբիմելէքայ ի գլուխ իւր՝ զոր արար հօր իւրում կոտորելով զեւթանասուն եղբարսն իւր»։ Ի վերայ վիմի սպանեալ էր զնոսա, եւ վէմ մի սպան զնա։ — Նոյնպէս եւ Սիկիմացիքն առին զհատուցումն իւրեանց. եւ հասին ի վերայ նոցա անէծքն Յովաթամայ[1]։

Յետ մահուն Աբիմելէքայ դատէր Թովղա՝ ազգական նորա զԻսրայէլացիսն ամս 23. նստէր նա ի Սամիր՝ ի լերինն Եփրեմայ։ — Իսկ Յայիր գաղաադացի առաջնորդէր 22 ամ յայնկոյս Յորդանանու եւ ունէր բազմամբոխ որդիս։ Հաւանութեան է թէ երկոքեան դատաւորքն ի միում ժամանակի կացին (յամէ իբրեւ 1225 — 1200)։ Զգործոց պատերազմաց նոցա չէ ինչ յայտ։ Յետ մահուն նոցա յազգս ազգս կռապաշտութեան կործանեցան Իսրայէլացիք, քանզի ծառայէին նոքա կռոց զրեթէ ամենայն ազգացն արուարձանեայց։ Յայնժամ մատնեաց զնոսա Տէր ի ձեռս Փղշտացւոց եւ Ամոնացւոց. նուաճեցին Ամոնացիք ոչ միայն զերկուս եւ զկէս ցեղին որ յայնկոյս Յորդանանու էին, այլ անցին եւ յայսկոյս գետոյն եւ արկին ի նեղ զցեղս արեւմտից կողման երկրին Գաղաադացւոց, եւ նեղեցաւ յոյժ Իսրայէլ ի նոցանէ ամս 18 (1200 — 1185)։ Խնէպէս եւ աղաղակեցին առ Տէր՝ այլ նա ոչ լուաւ նոցա մինչ չեւ ցուցեալ նոցա ատրջանս՝ հրաժարելով ի կռոցն պաշտամանէ։ Ի նմին ժամանակի բանակեալ էին Ամոնացիքն ի

1 Դատ. Թ.

Սակայն եւ զայս եւս նուազ յաղթեաց Յեփթայէ, եւ անկան յանիրաւ պատերազմի անդ 42,000 այր յԵփրեմեանցն. մեծ մասն նոցա կոտորեցաւ ի փախչելն ընդ Յորդանան։ — Վախճանեցաւ Յեփթայէ յետ դատելոյ զԻսրայէլ ամս (1185—1180)[1]։ Գովի նա վասն հաւատովքն ցուցանելոյ քաջութիւն[2]։

## 151

Զ Յեփթայէ յաջորդէր Աբեսան (Իբսան) որ եւեթ զամուսնութիւն 30 որդւոց իւրոց եւ 30 դստերաց, եւ միայն առաջնորդեաց ամս 7։ Ալյաղոն (Էղոն) նորին յաջորդ դատեաց ամս 10։ Աբդոնի որ զնա պայազատեաց ի դատաւորութեան՝ էին որդիք 40 եւ թոռունք 30, եւ առաջնորդեաց ամս 8[3]։ Կային նոքա դատաւորք յամէ 1180—1155։ Զգործոց նոցա չէք յիշատակեալ ինչ։

Բայց մեղան միւսանգամ Իսրայելացիք առաջի Տեառն, եւ մատնեցան 40 ամ ի ձեռս Փղշտացւոցն (յամէ 1155—1115), այս ինքն նեղեցան եւ լլկեցան ի նոցանէ[4]։ Ի ժամանակին յայնմիկ քահանայապետ էր Հեղի եւ յետոյ զիշխանութիւն դատաւորութեանն ի վերայ քահանայապետութեանն ընկալաւ։ Թուի թէ ի սկիզբն այսր անջրպետութեան ժամանակի անկանի ծնունդն Սամփսոնի եւ Սամուէլի։

Առ կնոջն Մանովեի առն դանացւոյ որ մինչեւ ցայնժամ ամուլ էր՝ երեւեցաւ հրեշտակ Տեառն եւ յայտ արար թէ ծնցի նմա որդի մի. պատուէր ետ նմա զգինի եւ օղի ոչ ըմպել եւ զգոյշ լինել ի կերակրոց պղծելոց յօրինացն, քանզի մանուկն զոր ծնանիցի՝ Նազարացի է, այս ինքն ուխտաւոր նուիրեալ Աստուծոյ անդստին յարգանդէ մօրն, ոչ ելցէ ածելի ի գլուխ նորա. քանզի նա սկսանելոց է փրկել զԻսրայէլ ի ձեռաց Փղշտացւոցն։ Աղաչեաց Մանովէ զՏէր զի միւսանգամ երեւեսցի այրն Աստուծոյ, զի ուսուսցէ նոցա զինչ պարտ իցէ առնել ընդ մանկանն աւետեաց։ Իսկ որպէս կամէին՝ երեւեցաւ միւսանգամ հրեշտակն եւ երկրորդէր առնն զնոյն հրամանս զոր կնոջն պատուիրեաց։ Իսկ իբրեւ կամէին առնել նմա ասպնջականութիւն՝ ետ նա պատասխանի՝ թէ ոչ իւր այլ Տեառն մատուսցի ողջակէզ. եւ իբրեւ բոցն ի վեր ծառանայր՝ բարձրացաւ եւ հրեշտակն եւ վերացաւ ի բարձունս։ Յայնժամ ի միտ առին թէ հրեշտակ Աստուծոյ էր այրն։

Իսկ ծնաւ կինն որդի եւ անուն կոչեաց Սամփսոն. աճեաց մանուկն եւ օրհնեաց զնա Տէր. եւ հոգի Տեառն սկսաւ լինել

1 Դատ. ԺԲ. — 7։
2 Եբր. ԺԱ. 32, 33։
3 Դատ. ԺԲ. 8—15։
4 Դատ. ԺԳ. 1։

ընդ նմա ի բանակին Դանայ, այս ինքն ի տեղւոջն ուր 600 արք ի Դանայ բանակեալ էին յորժամ երթային առնուլ զԼայիս[1]:

## 152

Հաճոյ թուեցաւ Սամփսոնի կոյս մի ի փղշտացւոց ի Թամնաթա եւ հաւանեցոյց նա զհայր եւ զմայր իւր երթալ առնուլ նմա ի տանէ զկոյսն: Իբրեւ մօտ եղեն ի քաղաքն՝ եկն ընդ առաջ նորա կորիւն մի առիւծու մռնչելով, այլ նա զօրացեալ հոգւով Տեառն պատառեաց զգազանն՝ իբրեւ ոք որ զուլ մի պատառիցէ, եւ եցոյց զառաջինն զնշանակ զօրութեան եւ ուժգնութեան իւրոյ: — Նա իբրեւ յետ ժամանակի ինչ ի վերայ անցանելոյ կամէր ածել զհարսնն այսրէն ի տուն իւր՝ եգիտ նա մեղր ի բերան առիւծուն եւ եկեր: Ի ժամանակի ուրախութեան հարսանեացն առեալ ի նոցունց պատճառս՝ արկ առեղծուած առաջի 30 երիտասարդացն վասն քաջութեանցն այնոցիկ, եւ խոստացաւ 30 պատմուճան թէ լուծցեն միայն զառեղծուածն: Զահի հարեալ կինն Սամփսոնի ի սպառնալեաց անտի փղշտացւոցն՝ որ չեղեն ձեռնհաս լուծանել, թախանձանօք իմացաւ զմիտս առեղծուածին եւ յայտնեաց տոհմակցաց իւրոց: Յայնժամ եհար Սամփսոն 30 այր փղշտացի յԱսկաղոն, եւ հանեալ զպատմուճանս նոցա ետ զինս լուծանելեաց առեղծուածին, ապա բարկացեալ եթող զկինն եւ դարձաւ ի գաւառ իւր[2]:

Սակայն մօտ ի ժամանակս հնձոց ցորենոյ դարձաւ այսրէն առ կին իւր, բայց եգիտ զնա լեալ այլում՝ առն: Յայնժամ ել գնաց անտի ի բաց սպառնալեօք, կալաւ 300 աղուէս (զոր բազումք ասեն իմանան՝ շնագայլ, չագալ), կապեաց զնոսա երկուս երկուս ձետ ընդ ձետ եւ եդ ջահս ի մէջ երկուց ձետոցն, վառեաց զջահսն եւ արձակեաց զաղուեսունսն յանդս փղշտացւոցն եւ արարին ապականութիւն մեծ: (Ասկզբանէ իսկ ի Պաղեստին բազում աղուեսունք կային[3], զոր հաստատեն եւ վկայութիւնք նորոցն ճանապարհորդաց. ամենեւին իսկ դիւրին է ըմբռնել զնոսա գունդ գունդ, եւ մինչեւ ցայսօր իսկ վնաս գործեն Արաբացիք թշնամեացն՝ այրելով զանդս նոցա:)

Բայց Սամփսոն ստէպ գործէր վնաս փղշտացւոցն. պարտեաց զնոսա մեծաւ յաղթութեամբ, եւ ինքն բնակէր յայրին Ետամայ ի ցեղին Շմաւոնի առ երի սահմանացն Դանայ: Իսկ փղշտացիքն ելին ի պատերազմ ի վերայ միոյ մարդոյ, բանակեցան զՅուդայիւ եւ խնդրէին տալ ի ձեռս զՍամփսոն: Յայնժամ 3000 այր ի Յուդայէ չոգան ի վերայ այրին Ետամեայ (առ երկիւղի փղշտացւոցն)՝ զի կալցին զՍամփսոն: Յանձն առ Սամփսոն զի կապեսցեն

1 Դատ. ԺԴ: 2 Դատ. ԺԴ: 3 Երգ. Բ. 15: Ողբ. Ե. 18:

նոքա զնա ձեռակապօք եւ հանիցեն զնա յայրէ անտի։ Ուրախու-թեամբ ընդառաջ ելին նորա Փղշտացիքն յորժամ տեսին զնա ի հեռաստանէ, բայց հոգի Տեառն էջ ի վերայ նորա եւ խզեցան կապանք նորա։ Առ նա ծնօտ մի իշոյ եւ եհար նովաւ 1000 այր ի Փղշտացւոց։ Այսպէս ել ի գլուխ խոստումն թէ «Մին ի ձէնջ հալածէ հազարս»[1]։ Իսկ Սամփսոն ընկէց զծնօտն ի ձեռանէ իւրմէ. եւ կոչեաց զտեղին Ռամաթ-Լեքի այս ինքն կոտորած ծնօտի։ Եւ իբրեւ ծարաւեալ պապակեցաւ յոյժ՝ կարդաց առ Տէր, եւ անդէն ել աղբեւր ընդ ծակ ծնօտին, կամ մանաւանդ՝ ել ջուր ի տեղւոջն որ առ անուն Ռամաթ-Լեքի (այս ինքն՝ աղբեւր ծնօտի)․ եւ իբրեւ արբ Սամփսոն՝ դարձաւ ոգի իւր առ ինքն եւ զօրացաւ[2]։

## 153

Թուի թէ յետ այնր ընտրեցաւ Սամփսոն դատաւոր Իսրայելի եւ դատեաց նա ամս 20[3]։ Յայտնի իսկ գործէր նա զամենայն գործս արութեան եւ քաջութեան իւրոյ հզաւոյն Աստուծոյ որ զնայն զօրացուցանէր։ Զանզի յայլ իրս տկար էր եւ անզօր իբրեւ զայլ մարդիկ, եւ հատեալ ի սէր կանանց, որով եւ անկաւ իսկ։

Ի միում նուագի մնաց ի Գազա ի քաղաքին Փղշտացւոց ըմբռնեալ յայնպիսի սիրոյ․ իբրեւ ազդ եղեւ բնակչացն թէ Սամփսոն անդ է՝ կալան զդուռն քաղաքին զի սպանցեն զնա յելանել նորա ի քաղաքէն։ Բայց նա յարեաւ զմէջ գիշերաւն եւ թափեաց զդրունս քաղաքին եւ բարձ տարաւ զնոսա ի վերայ ուսոց իւրոց ի Քեբրոն կոյս ի գլուխ լերին (10 ժամաւ հեռի ի Գազայ)։ Յետ այնորիկ սիրեաց նա զԴալիլա որ բնակէր ի ձորն Սորեկայ (Սորեկայ)։ Եկին առ նա իշխանքն Փղշտացւոց եւ կաշառեցին զնա ոսկւով զի իմասցի հնարիւք թէ յիւ իցէ զօրութիւն Սամփսոնի։ Երիցս խաբեաց Սամփսոն սուտ բանիւք՝ զնա եւ զՓղշտացիսն որ ի ծածուկ դարանեալ կային, եւ երիցս եցոյց զզօրութիւն ուժգնութեան իւրոյ։—Ապա ուրեմն ձանձրացեալ ի սաստիկ թախանձանացն՝ յայտնեաց նմա թէ Նազարացի է, եւ զօրութիւն նորա ի գիսակսն է՝ այս ինքն ի պահպանութեան ուխտին չկտրելոյ ղհերսն։ Եւ իբրեւ ննջեաց ի գիրկս նորա, եւ Դալիլա վերալ զեւթանեսին գիսակսն նորա, եւ մատնեաց ի ձեռս Փղշտացւոցն։ Նոքա կուրացուցին զնա եւ տարան ի Գազա շղթայիւք, եւ աղայր Սամփսոն աղեւր։ Մինչ դեռ յայնպիսի աղէտս կայր Սամփսոն՝ աճեցին վարսք նորա։ Իսկ իշխանք Փղշտացւոցն ժողովեցան ի մեհենին Դագոնայ մատուցանել պատարագ գոհութեան դիցն եւ առնել ուրախութիւն՝ զի մատնեաց նա զՍամփսոն ի ձեռս նոցա, եւ ամենայն ժողովուրդն օրհնէր զԴագոն։ Մ[ ]ասն առաւել զուրախու-

1 Երկր․ օր․ ԼԲ․ 30։ 2 Դատ․ ԺԵ։ 3 Դատ․ ԺԵ․ 20։

Թիւնն առնելոյ՝ ածին նոքա զՍամփսոն առաջի՝ զի արասցէ խաղ առաջի նոցա, եւ կացուցին զնա ի մէջ երկուց մեծամեծ սեանց յորոց վերայ հաստատեալ կայր շինուածն։ Եւ էին գրեթէ 3000 այր փղշտացի, յորս էին ամենայն մեծամեծք փղշտացւոցն։ Իսկ Սամփսոն կարդայ առ Տէր եւ ասէ. "Տէր Տէր զօրութեանց, յիշեա զիս, եւ զօրացո զիս զայս եւս մի նուագ Աստուած՝ եւ խնդրեցից զվրէժխնդրութիւն իմ փոխանակ երկուց աչաց իմոց յայլազգեաց աստի"։ Եւ բուռն եհար զերկուց սեանցն զմիոյն՝ աջովն եւ զմիւսմէն՝ ձախով եւ ասէ "Մեռցի անձն իմ ընդ այլազգիս"։ Եւ շարժեաց զսիւնսն զօրութեամբ, անկաւ տունն եւ սպան զամենեսին, որպէս զի ի մահուն իւրում առաւել սպան Սամփսոն քան ի կենդանութեանն։ Եկին հանին ազգականք նորա զդիակնն եւ թաղեցին պատուով[1]։ Կատարեաց Սամփսոն եւ ի մեռանելն՝ զգործն յոր ընտրեալ էր ի մանկութենէ, եւ վախճանեցաւ նահատակեալ հաւատովք (1120)[2]։

## 154

Յետ մահուն Սամփսոնի առ Հեղի յաջորդէ Իթամարայ ի վերայ քահանայապետութեանն պատուոյ եւ զիշխանութիւն դատաւորութեանն։—Ի սկիզբն ժամանակի քահանայապետութեան նորա պատահէ ծնունդն Սամուելի (յամի 1155)։ Այր յանուն Եղկանա ոմն ի ցեղէն Ղեւեայ յԱրիմաթեմ (ի Հռամաթ)։ էին նորա կանայք երկու՝ Աննա եւ Փեննանա։ Բայց Աննա ամուլ էր եւ վասն այնորիկ տրտմէր եւ տխրէր յոյժ։ Իբրեւ եկն նա երբեմն ընդ առն իւրում ի Սելով առ տապանակն Տեառն, կայր ջերմեռանդն յաղօթս, եւ դնէր ուխտ Տեառն նուիրել ի պաշտօն նորա զորդին եթէ տացէ նմա Աստուած, եւ ոչ հանել ածելի ի գլուխ նորա։ Մխիթարեալ յաղօթից իւրոց եւ ի բանից քահանայապետին՝ ել գնաց ի տաճարէն եւ ոչ տրտմէր այնուհետեւ վասն անզաւակութեանն։

Ծնաւ նա որդի զոր կոչեաց Սամուէլ, այս ինքն՝ ընկալեալ յԱստուծոյ։ Իբրեւ ի չափ հասանէր մանուկն՝ ած նա զնա ի Սելով ըստ ուխտին իւրում եւ նուիրեաց զՍամուէլ Տեառն[3]։ Ի նուիրելն իւրում զնա՝ բարբառեցաւ Աննա ջերմեռանդն երգ օրհնութեան եւ գոհութեան։ Ապա դարձաւ ընդ Եղկանայ ի տուն։ Բայց մնաց մանուկն ի Սելով, եւ կայր ի սպասու Տեառն առաջի քահանայապետին[4]։ Մեծացաւ եւ էր հաճոյ Աստուծոյ եւ մարդկան[5]։

Բայց Ոփնի եւ Փենեհէս որդիք Հեղեայ չար էին, եւ ի կատարել իւրեանց զպաշտամունս քահանայութեանն եւ ի մատուցա-

1 Դատ. ԺԶ։
2 Տես Եբր. ԺԱ. 32—34։
3 Ա. Թագ. Ա։
4 Ա. Թագ. Բ.—11։
5 Ա. Թագ. Բ. 18. 19, 26։

նելն զպատարագսն՝ գործէին անօրէնս եւ անխրատութիւն եւ լինէին գայթագղութիւն նոքօք ժողովրդեանն[1]։ Խրատել խրատէր զնոսա Հեղի բայց չլսէին նոքա ունկն, եւ Հեղի եւս ծեր էր եւ չկարէր արգելուլ զնոսա զօրութեամբ[2]։ Յայնժամ եկն այր Աստուծոյ առ Հեղի եւ յանդիմանեաց զնա՝ ցուցեալ թէ որպէս փառաւորեաց Տէր զցեղն նորա եւ զտոհմն եւ ընտրեաց ի քահանայութիւն, եւ խօսեցաւ բանս սաստկութեան եւ ասէ. Այսպէս ասէ Տէր... «Զփառաւորիչս իմ փառաւորեցից, եւ որ արհամարհէին զիս՝ անարգեսցին»։ Ապա յայտ արար յառաջագոյն զմահ երկուց որդւոցն Հեղեայ, եւ արար վախճան բանիցն ասելով. «Եւ յարուցից ինձ քահանայ հաւատարիմ. որ զամենայն ինչ ի սրտի իւրում եւ յանձին իւրում արասցէ. եւ շինեցից նմա տուն հաւատարիմ. եւ շրջեսցի առաջի օծելոյ իմոյ զամենայն աւուրս»[3]։

## 155

Յաւուր միում ննջէր Հեղի ի նուիրական բնակութեան իւրում եւ մանուկն Սամուէլ ոչ հեռի ի նմանէ առ տապանակին Աստուծոյ. լուաւ Սամուէլ ձայն որ կոչէր զնա յանուանէ։ Այսպէս համարեցաւ թէ քահանայապետն կոչիցէ զնա, ընթացաւ առ նա եւ ասէ՝ ահաւասիկ եմ։ Բայց Հեղի առաքեաց զնա երթալ ննջել ասելով թէ ոչ կոչեցի զքեզ։ Ննջեաց Սամուէլ, բայց կոչեցաւ երկիցս եւ երիցս, նոյնպէս եւ արար որպէս զառաջինն։ Իմացաւ յայնժամ Հեղի թէ Տէր կոչէ զմանուկն եւ ասէ. երթ ննջեա եւ յորժամ միւսանգամ կոչիցէ զքեզ ձայնն՝ ասա «Խօսեաց Տէր զի լուիցէ ծառայ քո». եւ կոչեաց իսկ Տէր միւսանգամ Սամուէլ Սամուէլ, եւ նա ետ պատասխանի որպէս հրամանն տուեալ էր նմա։ Յայնժամ յայտնեաց Տէր զպատիժս արդարութեան իւրոյ ի վերայ Հեղեայ եւ տանն նորա՝ վասն չարեաց որդւոց իւրոց եւ վասն անփոյթ առնելոյ նորա զնոքօք։ Ի վաղիւ անդր եհարց Հեղի զՍամուէլ ստիպելով վասն ամենայնի զոր խօսեցաւ Տէր։ Եւ պատմեաց Սամուէլ զամենայն։ Եւ Հեղի ետ պատասխանի հպատակութեամբ. «Արասցէ Տէր որ ինչ հաճոյ է առաջի նորա»։ Եւ Սամուէլ աճէր եւ մեծանայր եւ էր Տէր ընդ նմա, չանկանէր բան նորա ի գետին, այս ինքն ոչ մնայր առանց լնլոյ, եւ գիտաց ամենայն Իսրայէլ թէ Սամուէլ ճշմարիտ մարգարէ է Տեառն։ Եւ երեւեցաւ նմա Տէր ի Սելով միւսանգամ. քանզի անդ յայտնեաց նմա զանձն բանիւն իւրով։ Եւ սկսաւ Սամուէլ խրատել զամենայն Իսրայէլ[4]։

1 Ա. Թագ. Բ. 12—17, 22։
2 Ա. Թագ. Բ. 23—25։
3 Ա. Թագ. Բ. 27—36։
4 Ա. Թագ. Գ։

զետին միայն կործանեցաւ Դագոն՝ այլ եւ փշրեցաւ եւս մանր։ Նա եւ ի նմին ժամանակի բնակիչք քաղաքին եւ արուարձանեաց տեղեացն ախտիւ մարմնոյ եւ հարուածովք երկրի նեղէին։ Յայնժամ աղաչեցին Ազովտացիքն զիշխանսն զի հանցեն զտապանակն ի քաղաքէն իւրեանց։ Առին տարան հրամանաւ իշխանացն զտապանակն այսր անդր յերկրին Փղշտացւոց, բայց ուր եւ հասանէր՝ նոյնպիսի ախտք եւ հարուածք լինէին։ Նա եւ մնաց տապանակն ամիսս եւթն յերկրին Փղշտացւոց։

Կոչեցին իշխանքն զքուրմսն իւրեանց եւ զգէտս եւ հարցանէին թէ զինչ առնիցեն ընդ տապանակն Տեառն։ Նոքա ետուն խրատ՝ դնել ի նոր սայլի եւ լծել երկուս երինջս անդրանկածինս, որոց չիցէ լծեալ տակաւին, եւ զորթսն նոցա քեցել ի հետոց նոցա, եւ թողուլ գնալ նոցա ըստ հեշտի, եւ դնել միտ թէ ուղղիցին նոքա ընդ ճանապարհ մտիցն Բեթսամիւսայ՝ յիսրայէլ։ — Այսպիսի արգելիչ իմն պատրաստութեամբ յուսային նոքա յայտնի լինել՝ թէ Տեառն առաքեալ իցէ ի վերայ նոցա զհարուածսն՝ եթէ տապանակն ուղղեսցի ընդ այն ճանապարհ։ Արարին ըստ խրատուն, եւ չոգան երինջքն ընդ մի շաւիղ զճանապարհն Բեթսամիւսայ, եւ զհետ երթային նորա իշխանքն Փղշտացւոց մինչեւ ցգլուխս սահմանացն։

Իսկ Բեթսամիւսացիքն էին ի ժամանակին յայնմիկ զհնձովք ցորենոյ, եւ տեսին զի գայր անդուստ տապանակն Տեառն. եկն եկաց յանդի ուրեք, եւ կանգնեցին առ նովաւ վէմ մի մեծ, պատառեցին զփայտ սայլին, եւ զերինջսն հանին յողջակէզս։ Բայց Բեթսամիւսացիքն հայէին ընդ տապանակն քննասիրութեամբ առանց մեծարանաց (ըստ այլոց՝ հայեցան ի ներքս ի տապանակն), յայն սակս 70 այր ի մեծամեծաց եւ 50,000 ի ժողովրդենէ յանկարծակի մեռանէին. (ըստ այլում թարգմանութեան՝ ի 50,000 արանց անկան 70 այր։) Ապաքէն պիտոյ էին այնպիսի պատիժք վասն նորոգելոյ եւ հաստատելոյ զերկեւղ եւ զմեծարանս տապանակին Աստուծոյ։ Իսկ բնակիչքն Բեթսամիւսայ ահա առին եւ առաքեցին հրեշտակս ի Կարիաթարիմ զի եկեսցեն եւ հանցեն զտապանակն. եւ եղեւ իսկ[1]։

## 158

Որպէս հաւանութեան թուի, իսկ եւ իսկ յետ մեծի պարտութեանն կացուցին Իսրայելացիք զՍամուէլ՝ դատաւոր։ Նա խրատէր զժողովուրդն, յառաջ քան զամենայն ի բաց կալ ի կռոց, եւ Աստուծոյ միայնում կալ ի ծառայութեան, զի փրկեսցէ նա զձեզ ի ձեռաց Փղշտացւոցն։ Հնազանդեցան նոքա նմա եւ բարձին զկուռսն ի միջոյ. ապա ժողովեցան նոքա ըստ հրամանի նորա

1 Ա. Թագ. Ե, Զ։

ի Մասեփաթ (Թուի թէ վառեալ ի զէնս), եւ անդ եկաց Սամուէլ յաղօթս վասն նոցա։ Եւ հեղին նոքա ջուր առաջի Տեառն (իբրեւ նշանակ իմն հեղլոյ եւ սրբելոյ զսիրտս իւրեանց), պահեցին պահս եւ խոստովան եղեն թէ մեղան Տեառն։ Իբրեւ գիտացին Փղշտացիք՝ խաղացին գալ ի վերայ Իսրայելացւոց։ Արդ զահի հարեալ՝ աղաչէին զՍամուէլ չդադարել գոչել վասն նոցա առ Տէր։ Մինչ դեռ Սամուէլ մատուցանէր ողջակէզ (կամ քահանայ մի առ Սամուելայ՝ զենեալ կատարեաց զողջակէզն, քանզի ինքն Սամուէլ ղեւտացի լոկ էր), անտուստ մերձեցան Փղշտացիք ի պատերազմ, բայց զարհուրեցոյց Տէր զթշնամիսն ահեղ որոտալով, եւ խորտակեցան նոքա առաջի Իսրայելացւոց, եւ սոքա մտին զհետ նոցա մինչեւ ցԲեթքար (Բեթքոմը)։ Իսկ Սամուէլ կանգնեաց վէմ մի յիշատակ յաղթութեանն, եւ անուն կոչեաց տեղւոյն վէմ օգնականութեան։ Այսպէս խոնարհեցան Փղշտացիք եւ ոչ եւս անցին այնուհետեւ ընդ սահմանս Իսրայելի։ Ձեռն Տեառն էր ի վերայ նոցա եւ հան Իսրայէլ զքաղաքսն իւր ի ձեռաց նոցա յԱկկարոնէ մինչեւ ցԳեթ։

Իսկ Սամուէլ դատէր զԻսրայէլ զամենայն աւուրս կենաց իւրոց (ամս իբրեւ 20)։ Եւ երթայր ամ ըստ ամէ յերեսին գլխաւոր վայրսն՝ ի Բեթէլ, ի Գաղգաղա եւ ի Մասեփաթ, կատարէր զգործ դատաւորութեան իւրոյ. ի քաղաքին իւրում յԱրիմաթեմ շինեաց նա սեղան Տեառն։ — Բայց տապանակն կայր մնայր ի Կարիաթարիմ, եւ էին Իսրայելացիք ամս 20 ի խաղաղութեան, եւ յարեալ էին միայն յԱստուած՝ թերեւս ցորքան ժամանակս առաջնորդէր Սամուէլ[1]։

## 159

Իբրեւ ծերացեալ էր այնուհետեւ Սամուէլ (թերեւս առաւել ի դժուարութեանցն քան յամացն յաճախութենէ) կացոյց զորդիս իւր դատաւորս օգնականս իւր ի Բերսաբէէ՝ զՅովէլ եւ զԱբիա։ Այլ սոքա ոչ երթային ընդ ճանապարհս նորա, այլ հատանէին յագահութիւն, առնուին կաշառս, եւ թիւրէին զիրաւունս (գործէին անիրաւութեամբ)։ Յայնժամ ժողովեցան ծերքն յԱրիմաթեմ առ Սամուէլ. ցուցին նմա զծերութիւն նորա եւ զգնացս որդւոցն, եւ խնդրեցին զի կացուսցէ նոցա թագաւոր որ տիրեսցէ նոցա ըստ օրինակի ազգացն որ շուրջ զնոքօք էին։

Զար թուեցաւ այն Սամուելի զի ասացին թէ տուր մեզ թագաւոր զի դատեսցի զմեզ, եւ եկաց նա յաղօթս առ Տէր. բայց Տէր խօսեցաւ ընդ Սամուելի եւ ասէ. «Լուր ձայնի ժողովրդեանդ, որպէս եւ խօսեցան ընդ քեզ. զի ոչ եթէ զքեզ անարգեցին, այլ զիս մերժեցին չթագաւորել ի վերայ նոցա. ըստ ա-

1 Ա. Թագ. Է։

միայն գործոց զոր արարին ընդ իս՝ յօրէ յորմէ հանի զնոսա յԵգիպտոսէ մինչեւ ցայսօր, եւ թողին զիս եւ ծառայեցին աստուածոց օտարաց, նոյնպէս առնեն նոքա եւ ընդ քեզ»: Յայտ իմն առնի ի բանից այտի մխիթարութեանն զոր խօսեցաւ Տէր ընդ Սամուելի, թէ ոչ վասն փառասիրութեան ինչ չար թուէր այն Սամուելի, այլ վասն նախանձու փառացն Աստուծոյ:

Ապա եւ զայն հրաման ետ նմա Տէր, զի ցուցցէ նա ժողովրդեանն թէ որ իրաւունք լինելոց են թագաւորին (այս ինքն սովորութիւնք եւ սպաս): Նմին իրի յիշեցուցանէր Սամուէլ մի ըստ միոջէ պատգամաւորաց ժողովրդեանն թէ թագաւորն որ կալոց է նոցա՝ առցէ զորդիս ձեր ի սպասաւորութիւն պատերազմի, ի մշակութիւն եւ յայլ եւս պաշտամունս. զդստերս ձեր առցէ ի գործ արուեստի կանանց. առցէ նա զագնիւս յագարակաց եւ ի դաշտաց եւ յայլոց նոյնպիսեաց, եւ բաց ի նոցանէ առցէ եւ տասանորդս յամենայն ընչից ձերոց: Ապա զուր աղաղակեսջիք յերեսաց թագաւորին զոր ընտրեցէք, զի ոչ լուիցէ Տէր:— Մովսէս Աստուծոյ լուսաւորութեամբն հոգացեալ էր յառաջագոյն վասն օրինաց թագաւորի. չէր պարտ թագաւորի լինել այլազգի, չունել երիվարս աւելի քան զպէտսն եւ ոչ բազում կանայս. չժողովել մեծութիւն կարի յոյժ, գիտել քաջ զօրէնսն, պահել զնոսա առ իւր եւ խորհել ի նոսին, եւ ըստ նոցին գործել եւ իշխել, եւ ոչ թիւրել յօրինաց անտի, եւ կամ ամբառնալ զանձն իւր ի վերոյ քան զեղբարսն իւր[1]: Արդարեւ օտար իմն օրինակ իշխանութեան է այս, եւ այլակերպ յայնմանէ զոր այժմ Սամուէլ մարգարէութեամբ ցուցանէր, բայց սակայն կաց մնաց ի նմին միտս եւ ի խորհուրդս ժողովուրդն: Եւ ասեն. «Ոչ այդպէս է, այլ թագաւոր եղիցի ի վերայ մեր. եւ եղիցուք եւ մեք իբրեւ զայլ ազգս...»: Եւ հրամայեաց Տէր միւսանգամ Սամուելի անսալ նոցա եւ կացուցանել ի վերայ նոցա թագաւոր: Եւ ապա արձակեաց Սամուէլ զծերսն[2]:

## 160

Սաւուղ որդի Կիսեայ ի ցեղէ Բենիամինի եկն յԱրիմաթեմ Աստուծոյ այնպէս առաջնորդելով՝ հարցանել ցտեսանողն կամ ցմարգարէն Սամուէլ թէ ուր գտանիցեն էշք հօրն իւրոյ: Բայց յայտնեաց Տէր Սամուելի թէ առաքեսցէ նմա վաղիւ այր մի զոր օծցէ նա թագաւոր ի վերայ Իսրայելի, եւ նա ազատեսցէ զժողովուրդն ի ձեռաց Փղշտացւոց: Սամուէլ առ միւսանգամ ազդեցութիւն յԱստուծոյ թէ Սաւուղ է այրն, ընկալաւ զնա, եւ պատուեաց զնա ի հացի, եւ ետ նմա ի վաղիւ անդր առս երթալ ընդ նմա[3]:

1 Երկր. օր. ժէ. 14—20: 2 Ա. Թագ. Ը: 3 Ա. Թագ. Թ:

# Ժ

## Թագաւորութիւն — Անբաժին Թագաւորութիւն. (1090—970)։

### Ա. Սաւուղ (1092—1052)։

### 161

ՍԻՆԷՐ այնուհետեւ (1092) Իսրայէլ թագաւոր՝ տեղապահ Աստուծոյ՝ զՍաւուղ։ Բայց սակայն տեսանեմք զնա զի զպատուական գործ մշակութեան տակաւին ի կիր արկանէր առանց մեծատուպատուոյ թագաւորութեան իւրոյ, որպէս բարք իսկ էին անպաճոյճ ժամանակացն այնոցիկ։ Իբրեւ այն ինչ գայր յանդոյ՝ ազդ եղեւ նմա թէ Նաաս արքայ Ամոնացւոց յարձակեցաւ ի վերայ Յաբիս քաղաքի Գաղաադացւոց, եւ արկ զայն ի նեղ. յայն սակս աղաչէին բնակիչք քաղաքին զՍաւուղ լինել նոցա զօրաւիգն օգնականութեան։

Յայնժամ խաղաց ի վերայ նորա հոգի Տեառն, առ յօշեաց երկուս եզինս եւ առաքեաց շուրջանակի զկոտորսն կոչել զազգն գալ ի մարտ պատերազմի յիւր եւ ի Սամուելի անուն. եթէ ոք դանդաղեսցէ՝ արասցեն նմա որպէս եզանցն։ Եւ անկաւ ահ Տեառն ի վերայ ժողովրդեանն, եւ խրախուսեալ ելին իբրեւ զմի այր. էին միահամուռ 330,000 այր Իսրայէլացի։ Սրգօք խաղաց Սաւուղ ի վերայ Ամոնացւոցն, հար պարտեաց զնոսա եւ եհան զՅաբիսացիսն յազատութիւն։

Ապա ած Սամուէլ զժողովուրդն ի Գաղգաղա. անդ նորոգեցաւ միւսանգամ առհասարակ ընտրութիւնն Սաւուղայ, ընկալան զնա ի թագաւոր եւ մատեան պատարագ գոհութեան Տեառն։ Յետ այնորիկ խնդրեաց Սամուէլ ի ժողովրդենէ անտի վկայութիւն, թէ որպէս արդարութեամբ եւ առանց անձին ինչ շահու առաջնորդեաց նոցա, եւ ետուն հրապարակաւ զվկայութիւնն առաջի Տեառն եւ յանդիման թագաւորին։ Յուշ արկանէր նոցա Սամուէլ զանթիւ երախտիսն Աստուծոյ որ եղեն հարցն նոցա, եւ խրատեաց զնոսա եւ զթագաւորն երկնչել ի Տեառնէ, ծառայել նմա եւ հնազանդել, խոստացեալ թէ յայնժամ վերակացու լինիցի նոցա, ապա թէ ոչ՝ ձեռն նորա եղիցի հանապազ ի վերայ նոցա։

Յայտ արար Տէր զչախորժել իւր ընդ ընտրութիւն թագաւորութեան՝ որոտմամբն եւ անձրեւով զոր անդէն ի նմին ժամանակի տեղաց աղօթիւքն Սամուելի, զի անընդելական իմն էր ի ժամանակի հնձոցն այնպիսի ինչ։ Ընկաւ երկեւղ մեծ ի վերայ ժողովրդեանն որ գիտաց զյանցանել իւր եւ աղաչեաց զՍամուէլ զի կացցէ յաղօթս վասն նոցա առ Աստուած։ Իսկ նա քաջալերեաց զնոսա եւ խոստացաւ նոցա թէ ոչ Տէր եւ ոչ ինքն թողցէ

զազգն եւ զամենայն անասուն նորա (առ ի կատարելոյ զդատաստանն Աստուծոյ ի վերայ ազգացն չարաբարոյից եւ եղծելոց[1])։ Վառեալ պատրաստեաց Սաւուղ զօրս պատերազմողս եւ գումարեաց ի մի վայր 210,000 այր։ Խաղաց նոքօք ի վերայ Ամաղեկացւոցն, հար սատակեաց զնոսա չարաչար ի պարտութիւն, բայց խնայեաց ի թագաւոր նոցա Ագագ՝ զոր կալաւ ձեռբակալ եւ յընտիրս անասնոցն իբրեւ յաւար. եւ չարար սաստկաջինջ զժողովուրդն։ Փոխանակ գոհանալոյ զԱստուծոյ վասն յաղթութեանն՝ ամբարտաւանութեամբ դնէր շուք յաղթութեանն։ Ապա էջ ի Գաղգաղա եւ մատուցանէր անդ ողջակէզս։ Բայց յառաջ իսկ քան զայս եցոյց Տէր Սամուելի թէ չէ հաստատելոց զՍաւուղ ի թագաւորութեանն վասն անհնազանդութեանն։ Տրտմեցաւ յոյժ Սամուէլ եւ եկաց առաջի Տեառն զգիշերն ամենայն։ Յարուցեալ ընդ առաւօտն չոգաւ առ թագաւորն յանդիմանեաց զապախտաւորութիւն նորա։ Այնու իմն կամէր արդարանալ Սաւուղ թէ վասն զոհելոյ Տեառն պահեաց զընտիրս ի խաշանցն։ Իսկ Սամուէլ ետ պատասխանի եւ ասէ. Հաճո՞յ իցէ Տեառն ողջակէզ եւ զոհ առաւել քան զհնազանդութիւն։ "Ահա լաւ է ունկնդրութիւն քան զզոհ ընտիր։ Զի իբրեւ զմեղս հմայութեան է գիտնադարձութիւն եւ իբրեւ անօրէնութիւն կռապաշտութեան՝ չկամելն անսալ։ Զի արհամարհեցեր զբան Տեառն, արհամարհեսցէ զքեզ Տէր չլինել թագաւոր ի վերայ Իսրայելի։ — Պատառեաց Տէր զթագաւորութիւնդ ի ձեռաց քոց յԻսրայելէ այսօր. եւ տացէ զնա ընկերի քում լաւագունի քան զքեզ"։ Յետ ուրեմն հաւանեալ թախանձելոյ Սաւուղայ՝ մնաց անդ Սամուէլ մինչեւ կատարեաց Սաւուղ զերկիր պագանելն Տեառն։ Ապա եւ նա կատարել զդատաստանն Աստուծոյ ի վերայ Ագագայ, եւ յետ այնորիկ դարձաւ յԱրիմաթեմ. եւ յայնմ օրէ հետէ չետես նա այնուհետեւ զՍաւուղ, բայց սուգ ունէր ի վերայ նորա, զի մերժեալ էր զնա Տեառն[2]։

Թէպէտ եւ ծանեաւ Սամուէլ զարդարութիւն եւ զիրաւունս այնպէսն առնելոյ Աստուծոյ ընդ Սաւուղ, սակայն թուի թէ խստութիւնն իւր զոր բանի իմն եցոյց ի վերայ թագաւորին՝ ծանր թուեցաւ նմա։ "Քանզի ոչ միայն անդէն խնդրանէ սուգ առնույր ի վերայ նորա՝ այլ եւ եկաց եւս զնա ոչ սակաւ ժամանակս մինչեւ իբրեւ չհամբերեալ իմն Տեառն՝ ասէր ցնա. "Մինչեւ ցե՞րբ սուգ առեալ ունիս ի վերայ Սաւուղայ. եւ ես անարգեցի զնա չթագաւորել ի վերայ Իսրայելի"[3]։ Այնուհետեւ չկարէր Սամուէլ զանդրադէլ հնազանդելոյ, սակս թէ ոչ՝ եւ ինքն եւս լինէր արժանի պատժոց։

1 Տես Ելից ԺԷ. 14, 16։
2 Ա. Թագ. ԺԵ։
3 Ա. Թագ. ԺԶ. 1։

այսրէն յետս։ Իսկ Դաւիթ շրջէր յամուր վայրս, յանապատն Փառանու և Զիփայ, և չէր իսկ առանց պատճառանաց կասկածն նորա։

Քանզի ել միւսանգամ Սաւուղ զօրավարաւն իւրով Աբեններիւ և 3000 արամբք ընտրելովք ունել զԴաւիթ։ Ի գիշերի միում եմուտ Դաւիթ ընդ Աբեսսեայ զանխուլ ի բանակն թագաւորին մինչև ցխորան նորա։ Զգուշացոյց նա զԱբեսսա չսպանանել զօծեալն Տեառն, բայց զգեղարդն նորա և զկուժն առնուլ ընդ իւր, և դարձան երկոքին յիւրեանս և ոչ ոք իմացաւ ինչ։ Ձայնեաց Դաւիթ ի բարձրաւանդակ ինչ կողմայր Աբեններեայ և ամենայն զօրուն, յանդիմանէր զնոսա վասն չպահելոյ զզուշութեամբ զթագաւորն, և ցուցանէր նոցա զգեղարդն թագաւորին և զկուժն։ Ճանաչեաց Սաւուղ զբարբառն Դաւթի, միւսանգամ դարձաւ ի գութ, խոստովանեցաւ նմա օրհնութիւն և դարձաւ յետս։ Իսկ Դաւիթ վասն ապրելոյ այնուհետև ի դաւածոյ՝ գնաց միւսանգամ ի Գէթ, և ետ նմա Աքիս զքաղաքն Սիկելակ, և անտի ասպատակ եղեալ հարկանէր Դաւիթ զազգսն արուարձանեայս, զթշնամիս Փղշտացւոց[1]։

## 167

Ընդ նոյն ժամանակս այրն Աստուծոյ Սամուէլ էր վախճանեալ 97 ամաց յԱրիմաթեմ յամի իբրև 1055, և թաղեցաւ անդ և եղաց զնա ամենայն Իսրայէլ[2]։ Յորքան ժամանակս կենդանի էր Սամուէլ՝ նեցուկ և հաստատութիւն էր կրօնից և օրէնութեանն, և էր նա մի ի մեծամեծ մարգարէիցն և ի կարգի նշանաւորաց։ Ինքն Աստուած ի ձեռն Երեմիայ մարգարէի դնէ զնա համեմատ Մովսէսի[3], և այլ նմա գեղեցիկ դրուատիս ի ձեռն որդւոյն Սիրաքայ[4]։ Սամուէլ հաստատեաց և զդպրոցս մարգարէիցն, յորս մանկունք Հրէից կրթէին ի կրօնս, յօրէնսգիտութիւն, յարուեստ պուետիկից և յերգս, և ընծայէին ուսեալք և գիտունք. ամար էին նոքա յօրինել երգս աստուածպաշտութեան և նուագել նուագարանօք։ Ի նոցունց ելանէին բազում մարգարէքն կամ տեսանողք[5]։

Հաւանութեան է թէ ինքն Սամուէլ գրեաց զգիրս Դատաւորացն և զՀռութայ և զառաջին գիրս Թագաւորացն (մինչև ցԻԵ. գլուխ, այս ինքն բաց ի վերջին 7 գլխոց), վերնագիր նորա՝ որպէս և երկրորդ գրոցն Թագաւորաց, ըստ բնագրին է՝ Գիրք Սամուէլի։

1 Ա. Թագ. ԻԶ — ԻԷ։
2 Ա. Թագ. ԻԵ. 1։
3 Երեմ. ԺԵ. 1։
4 Սիրաք. ԽԶ. 16—23։
5 Ա. Թագ. Ժ. 5. ԺԹ. 20 և յայլ տեղիս։

էր առ Ռաբաթ-Ամմոնու, բայց սակայն առաքեաց կոչեաց զկինն եւ մեղաւ ընդ նմա։ — Վասն ազատելոյ ի վարմանացն՝ կոչեաց թագաւորն զՈւրիա յարքունիս իւր, ընկալաւ զնա սիրով առաւել-ջակամութեան. բայց Ուրիա՝ քանզի բարեպաշտօն եւ բուռն պատերազմող էր՝ ոչ գնաց ի տուն իւր, եւ այնպէս զառապակեցան հնարք թագաւորին։

Յայնժամ այլ իմն հնարս խնդրեաց Դաւիթ, կէս յախտանին ատատակութենէ, եւ կէս՝ ի հարկէ իսկ խրատուն զի զամօթն բարեքեցէ, մանաւանդ զի ըստ օրինացն՝ էր մահ պատուհասն[1]. առաքեաց նա զար-դարն Ուրիա յետս հանդերձ նենգաւոր գրով առ Յովաբ, եւ Յովաբ ըստ կամաց թագաւորին կացուցանէր զՈւրիա ի ծագնական տեղւոջ պատերազմին, եւ այնպէս սպանանէր Ուրիա։ Իսկ Դաւիթ յետ կատարելոյ աւուրց սգոյն առ զԲերսաբէէ կնութեան եւ ծնաւ նա նմա որդի։ Բայց գործն Դաւթի չար թուեցաւ Տեառն[2]։

Անցեալ քան զինն ամիս կայր ննջեալ թագաւորն ի քուն մեղաց իւրոց, ապա եկն եւ առաջի նորա Նաթան մարգարէ առաքեալ առ յԱստուծոյ, եւ նկարեաց պատշաճ ինչ նմանութեամբ զգործ նորա. յետ այնորիկ յանդիմանէր զնա վասն ապախտաւոր մահուցն եւ վասն կրկին ծանր յանցանացն. եցոյց նմա թէ վիշտք եւ նեղու-թիւնք հասանելոց են ի վերայ տան նորա, եւ անկանելոց են սրով ի տանէ նորա, եւ տեսանելոց է թշնամանեալ զկանայսն իւր։ Յայնժամ ասէ Դաւիթ. «Մեղայ առաջի Տեառն». եւ ետ նմա Նաթան պատասխանի. «Եւ Տէր անցոյց զքէւ զմեղս քո, եւ մի մեռցիս. բայց քանզի զայրացուցանելով զայրացուցեր զթշնամիս Տեառն բանիւդ այդուիկ, որդին քո զոր ծնանելոց է քեզ՝ մահու մեռցի»[3]։

## 175

Այսպէս ճշմարտութեամբ ապաշխարեալ Դաւթի՝ որ եւ զճշմա-րիտ ցաւսն յայտ արար՝ ԾԱ. սաղմոսիւն, թողան նմա մեղք իւր այլ ոչ պատուհաս մեղացն, եւ հարկ էր նմա լուծանել զպատուհասն բազ-մապատիկ վշտօք։ Սկիզբն նոցա էր մահ մանկանն որ ի մեղացն ծնաւ, որ վաղվաղակի իսկ եղ ի գլուխ, թէպէտ եւ շատ եկաց։ Բայց Բերսաբէէ ծնաւ նմա ընդ այնր միւս եւս որդի, եւ անուն կոչեցաւ նմա Սողոմոն. քանզի սիրեաց զնա Տէր (1030)։ Իսկ թա-գաւորն ետ զմանուկն ի ձեռս Նաթանայ մարգարէի զի կրթեսցի[4]։

Այլ հարուածք գժնդակագոյնք կարգ ըստ կարգէ ի վերայ դի-մէին. Ամոն (Ամնոն) երիցագոյն քան զամենայն որդիսն Դաւթի առ-ցանկութեանն բռնութեամբ՝ լլկեաց զհարազատ քոյր զԹամար։ Աբեսողոմ նորին եղբայր ոչ հանդուրժեալ՝ զայրացեալ ընդ կորն,

1 Ղեւտ. Ի. 10։
2 Բ. Թագ. ԺԱ։
3 Բ. Թագ. ԺԲ. — 14։
4 Բ. Թագ. ԺԲ. 15 — 25։

## 168

Իսկ Փղշտացիք կազմեցան եւ հասին առ[ա]ջ պատերազմ ընդ Իսրայելացիս. եկին եւ Իսրայելացիք եւ բանակեցան ճակատքն երկոքին ի Գեղբուա։ Իբրեւ ետես Սաւուղ զՓղշտացիսն՝ երկեաւ եւ զարհուրեցաւ յոյժ։ Եհարց նա զՏէր, այլ ոչ արար նմա պատասխանի Տէր երազովք կամ քահանայիւք կամ մարգարէիւք։ Այնուհետեւ հրամանաւ ետ Սաւուղ ծառայից իւրոց խնդրել կին մի վհուկ (որ երգիծեցուցանիցէ զմեռեալս), թէպէտ եւ ինքն իսկ յառաջին ժամանակին երարձ ի միջոյ զվհուկս եւ զգէտս յերկրէն, քանզի ձեռքին օրէնքն աստուածայինք[1]։

Իբրեւ գիտաց Սաւուղ թէ է կին մի վհուկ յԷնդոր (Էնդովր) մօտ ի բանակին իւր, ծպտեցաւ գնաց առ նա երկուք արամբք զգիշերի, եւ յետ երդմնեալ չառնել ինչ վնաս վհկին (քանզի երկընչէր կինն) խնդրեաց զի դիւթեսցէ եւ հանցէ ի մեռելոց զոգին Սամուելի։ Իբրեւ ետես կինն զՍամուէլ, ճչեաց եւ ասէ, Հի՞մ խաբեցեր զիս. Սաւուղ ես դու։ Հանդարտեցոյց զնա թագաւորն եւ եհարց թէ զո՞ տեսանիցէ։ Ի կերպարանացն զոր նկարագրեաց նմա կինն՝ ի միտ առ Սաւուղ թէ ինքն իսկ Սամուէլ է, եւ անկաւ ի վերայ երեսաց իւրոց յերկիր եւ եպագ նմա երկիր, այս ինքն պատուեաց զմարգարէն ըստ արժանեաց սրբութեանն։

Իբրեւ եհարց զնա Սամուէլ թէ ընդէր լլկեաց զնա ելանել, ետ պատասխանի Սաւուղ եթէ Փղշտացիք նեղեն զնա պատերազմաւ, վասն այնորիկ կոչեաց զնա զի հարցցէ զնա թէ զինչ արժան իցէ գործել։ Ետ Սամուէլ պատասխանի եւ ասէ. «Զի՞ հարցանես զիս, եւ Տէր հեռացաւ ի քէն եւ եղեւ ընդ ընկերի քում (եւ եղեւ թշնամի քո)։ Եւ արար ընդ քեզ Տէր, որպէս խօսեցաւ յիմ ձեռն։ Եւ պատառեսցէ Տէր զթագաւորութիւնդ ի ձեռաց քոց, եւ տացէ զդա ընկերի քում Դաւթի. զի ոչ լուար ձայնի Տեառն, եւ ոչ արարեր զցասմնութիւն բարկութեան նորա յԱմաղէկ. վասն այդր բանի արար քեզ Տէր յաւուր յայսմիկ։ Եւ մատնեսցէ Տէր զԻսրայէլ քեւ հանդերձ ի ձեռս այլազգեացն. եւ վաղիւ՝ դու եւ որդիք քո ընդ քեզ անկցին. եւ զբանակն Իսրայէլի տացէ Տէր ի ձեռս այլազգեացն»[2]։

Ի նկարագրական մտաց գրոց երեւի, թէ արդարեւ երեւեցաւ Սամուէլ. այլ ոչ եթէ կնոջն կոչելով զնա, քանզի մինչ չեւ իսկ սկսեալ վհկութեանն գործոյ՝ Սամուէլ երեւեցաւ եւ զարհուրեցոյց զնա. նա եւ ոչ առ աչօք ինչ պատրելով ոգւոյ չարի, այլ Աստուծոյ իսկ կամօք՝ զի զայս եւս վերջին խրատ յօժարեաց ընծայեցուցանել Սաւուղայ։ Այս մեկնութիւն անցանէ ըստ ամենայն կասկած եւ երկմտութիւն վկայութեամբ Հոգւոյն սրբոյ[3]։

1 Տես Ղեւտ. ԺԹ. 31. Ի. 6, 27։ 2 Ա. Թագ. ԻԸ. — 19։ 3 Սիրաք. ԽԶ. 23։

## 169

Զարհուրեալ էր եւ խռովեալ Սաւուղ յոյժ, հազիւ կարացին հաւանեցուցանել՝ ասելով ճաշակել ինչ կերակուր, եւ յետ այնորիկ անդէն ի գիշերին յայնմիկ դարձաւ նա ի բանակն[1]. Ի վաղիւ անդր գրգռեցաւ պատերազմն ի լերինն Գեղբուեայ. Հարեալ խորտակեցան Իսրայելացիք։ Սպանին Փղշտացիք զերիս որդիսն Սաւուղայ զՅովնաթան, զԱմինադաբ եւ զՄելքիսուէ. Ինքն եւս Սաւուղ վիրաւորեցաւ նետիւ եւ հրամայեաց կապարճակրին իւրում սպանանել զնա. Իսկ նա չառ յանձն կապարճակիրն, յայնժամ եդ Սաւուղ զսուսեր իւր եւ անկաւ ի վերայ նորա։ Եհատին զգլուխ նորա Փղշտացիք եւ զմարմին նորա կախեցին զպարսպաւացն Բեթսանայ. բայց քաջ եւ շնորհակալ բնակիչք Յաբիսայ առին զդիակունսն Սաւուղայ եւ որդւոց նորա գիշերի, այրեցին զնոսա եւ թաղեցին զոսկերս նոցա[2]։

Այս վախճանին կատարած էր Սաւուղայ՝ առաջնոյ ի թագաւորացն Իսրայելացւոց, որ վասն չարութեան գործոց իւրոց եւ ի բաց կալոյ յԱստուծոյ՝ մեռաւ[3]։ Թագաւորեաց նա ամս 40[4]. Թէպէտ եւ ոմանք ի մեկնչաց ասեն զնմանէ թագաւորեալ ամս 20, իսկ զՍամուելէ թէ առաջնորդեաց ամս 40[5], որպէս զի երկրորդ կիսոյ մասին ժամանակի առաջնորդութեանն Սամուելի՝ պատահել ի միասին ընդ թագաւորութեանն Սաւուղայ։ Մեք զսովորական համարոյն զհետ չոգաք։

Էր Սաւուղ այր պատերազմող քաջ, յաղթութեամբք իւրովք դարձոյց միանգամ զազատ իշխանութիւնն Իսրայելի. բայց աստուածպաշտութիւն նորա արտաքուստ իմն քաղաքականութեան էր եւ ոչ ի սրտէ հաւանութիւն. կամակածանք նորա եւ անձնակամ բարք՝ յանդգնութիւնս եւ յանիրաւութիւնս ածին զնա։

### Բ. Դաւիթ (1052—1012)։

## 170

Այն ինչ դարձեալ էր Դաւիթ ի Սիկելակ ի յաղթութենէ ընդ Ամաղեկացւոց պատերազմին[6], հասանէր առ նա յաւուրն երրորդի այր մի ամաղեկացի՝ տալ նմա զգոյժ պարտութեան զօրուն Իսրայելի եւ զմահուն Սաւուղայ եւ Յովնաթանու, եւ բերեալ ցուցանէր զնշանսն արքունի։ Իբրեւ լուաւ զայս Դաւիթ՝ պատառեաց ինքն եւ որ ընդ նմայն էին զձորձս իւրեանց, լացին եւ պահեցին մինչեւ ցերեկոյ։ Առ Դաւիթ զվրէժ մահուն Սաւուղայ յամաղեկացւոյ անտի որ խոստովան եղեւ թէ ինքն իսկ սպան

1 Ա. Թագ. ԻԸ. 20—25։
2 Ա. Թագ. ԼԱ։ Ա. Մնաց. Ժ.։
3 Ա. Մնաց. Ժ. 13, 14։
4 Գործ. ԺԳ. 21։
5 Տես Ա. Թագ. Է. 15։
6 Տես Ա. Թագ. Լ։

արար զնա կայան թագաւորութեան իւրոյ, եւ կոչեաց զանուն զայն՝ Քաղաք Դաւթի, բայց զքաղաքն ի գլխովին անուանեաց Երուսաղէմ՝ եւ արար զնա քաղաք գլխաւոր համօրէն արքայութեան իւրոյ[1]։

Յետ սակաւ ինչ ժամանակի ի վերայ անցանելոյ՝ խաղաց Դաւիթ 30,000 արամբք ընտրելովք ի Կարիաթարիմ եւ եբեր զտապանակն Աստուծոյ ի տանէն Ամինադաբայ, ուր էրն ցայնժամ․ եւ եդաւ առ ժամանակ մի ի տան Աբեդդարայ յԵրուսաղէմ։ Ապա յետ երից ամաց ի վերայ անցանելոյ՝ բերին զնա շքով, ամբոխիւ, ողջակիզօք, երգովք եւ տաւղօք ի լեառն Սիոն (1042)։ Ինքնին Դաւիթ զգեցեալ անպաճոյճ կաքաւէր առաջի տապանակին, եւ այնպէս ցուցանէր ամենայն ժողովրդեանն զճշմարիտ խոնարհութիւն իւր առաջի մեծին Աստուծոյ եւ լինէր նոցա օրինակ բարութեան։ Եդաւ տապանակն ի նոր վրանի եւ մնաց անդ զամենայն ժամանակս թագաւորութեանն Դաւթի[2]։

Յետ շինելոյ Դաւթի իւր ապարանս ի ձեռն ճարտարացն Փիւնիկեցւոց՝ զոր առաքեաց նմա Քիրամ արքայ Տիւրացւոց, ունէր ի միտ խորհուրդ բարեպաշտութեան շինել տաճար Տեառն (1041)․ այլ եցոյց Աստուած Նաթանայ մարգարէի թէ չէր կամք նորա զի Դաւիթ շինեսցէ նմա տուն, այլ որդի նորա շինեսցէ զնա եւ կամի Տէր հաստատել զաթոռ թագաւորութեան նորա յաւիտեան․ կամի Տէր լինել նմա հայր եւ նա եղիցի նմա որդի, եւ ոչ դարձուսցէ զողորմութիւն իւր ի նմանէ։ Զայս ամենայն եցոյց առաւօտուն՝ թագաւորին, եւ Դաւիթ զեղջոյց խոնարհեցոյց զանձն իւր, օրհնեաց եւ գոհացաւ զՏեառնէ[3]․ ի դէպ է թէ առ նա ի միտ թէ բանքն այնոքիկ հայէին եւ ի Մեսիա՝ որ էր ի զաւակէ նորա ըստ մարմնոյ[4]։

# 172

Իսկ եւ իսկ իբրեւ նստաւ նա յաթոռ թագաւորութեանն՝ յարեան Փղշտացիքն որ բնակեալ էին ցանցառ անդ ի ձորն Ռափայիմայ․ եհարց նա զՏէր, եւ ապա հար սատակեաց զնոսա։ Յետ այնորիկ յերկրորդում արշաւանին բանակեալ նստան միւսանգամ Փղշտացիքն ի ձորն Ռափայիմայ։ Իբրեւ հարց նա միւսանգամ զՏէր՝ հրաման ետ նմա Տէր պատել զթշնամեօքն, եւ յորժամ լուիցէ զշարշափիւն ծայրից թթենեացն (անտառին լալոնից), ճեպեսցէ իջցէ ի պատերազմ։ Այնպէս Դաւիթ եւ յաղթեաց Փղշտացւոցն եւ զայն նուաճ՝ յամի իբրեւ 1044 եւ 1043[5]։

Յետ ամաց ինչ (յամի իբրեւ 1040—1032) ըմբռնէր Դաւիթ ի բազում պատերազմունս յամենայն կողմանց եւ ելանէր յաղ-

1 Բ. Թագ. Ե. 4—10։ Ա. Մնաց. ԺԱ—9։
2 Բ. Թագ. Զ։ Ա. Մնաց. ԺԳ, ԺԵ. ԺԶ։
3 Բ. Թագ. Է։ Ա. Մնաց. ԺԷ։
4 Ղուկ. Ա. 33։ Տես Սաղմ. ՀԲ.
5 Բ. Թագ. Ե։ Ա. Մնաց. ԺԴ։

նեցանց յաղթութեանն, զի Արտաւան օգնական եւ պաշտպանականն էր նորա։ Նախ խոնարհեցոյց նա զՓղշտացիսն եւ հան ի նոցանէ զատհմանն Գեթայ։ Ապա վանեալ վկանդէր զՄովաբացիսն եւ առնէր զնոսա հարկատուս։ Յետ այնորիկ դիմէր ի վերայ Ադրաազարայ արքային Սուբայ Ասորւոց եւ պարտէր։ Թէպէտ եկին Ադրաազարայ թիկունք օգնականութեան յԱսորւոցն ի Դամասկոսէ՝ բայց եւ նոքա հարեալ խորտակեցան եւ մնացին ընդ վերադոյն իշխանութեամբ Դաւթի։ Ըստ նմին օրինակի ի պարտութիւն մատնէին եւ Եդովմայեցիքն եւ մտանէին ընդ հարկաւ[1]։

Անգքամ (կամ Հանոն) արքայ Ամոնացւոց ծաղր արար եւ թշնամանեաց զհրեշտակսն զոր առաքեաց առ նա Դաւիթ խաղաղութեամբ։ Եւ իբրեւ ետես թէ զայրացեալ ի պատերազմ կազմի Դաւիթ՝ դաշնաւոր եղեւ նա ընդ իշխանացն Ասորւոց. բայց Միջագետացն եւ Ամոնացիքն եւ Ասորիք երկիցս ի պարտութիւն մատնէին, եւ խոնարհեալ նուաճէին Ասորիք ընդ իշխանութեամբ Դաւթի[2]։ Իսկ ի յաջորդ արշաւանսն ընդ Ամոնացւոցն խաղաց Յովաբ սպարապետական յերկիրն նոցա, ապա եհաս առաջի Ռաբաթայ որ էր նոցա քաղաք գլխաւոր եւ պաշարեաց զնա ամմի. եհաս եւ Դաւիթ զօրօք յօգնականութիւն, առին նոքա զՌաբաթ եւ առ եւ աւար բազում, յորս էր եւ թագ թագաւորին մեծագին յոյժ յականց՝ յորում կային ակն պատուական, զոր յայնմ հետէ կրէր Դաւիթ. եւ ջնջեցին զբնակիչս քաղաքին յանխնայ։ Այսպէս եւ ընդ այլ եւս քաղաքս առնէին[3]։

Յետ պատերազմացն այնոցիկ՝ միւսանգամ մարտ պատերազմի ընդ Փղշտացւոցն գրգռէր. եւ ի պարտութիւն մատնէին Փղշտացիքն յերկուս եւս արշաւանսն[4]։ Այսպէս ահաւորն եւ սոսկալի լինէր Դաւիթ ամենայն ազգացն արուարձանեաց եւ հնազանդէր եւս զնոսա, եւ մեծացուցանէր զսահմանս թագաւորութեան իւրոյ յարեւելից կուսէ՝ ցգետն Եփրատ, ի հարաւոյ՝ մինչեւ ցհիւսիսակողմն Արաբիոյ, յարեւմտից՝ մօտ ի ծովն Միջերկրական, ի հիւսիսոյ՝ ցթագաւորութիւնն Դամասկոսի, որպէս զի հասանել չափոյ ընդարձակութեան երկրին Քանանացւոց, որ խոստացեալ էր նահապետացն[5]։

## 173

Ոչ մոռացաւ Դաւիթ ի մեծանալ իւրում զորդս առաջնոյ թագաւորին. հարցանէր խնդրէր հրապարակաւ թէ կայցէ ոք տակաւին ի տանէն Սաւուղայ, զի կարիցէ առնել նմա բարութիւն վասն բարեկամին իւրոյ Յովնաթանու։ Յայնժամ ազդ

1 Բ. Թագ. Ը։ Ա. Մնաց. ԺԸ։ Տես Գ. Թագ. ԺԱ. 15, 16։ Տես Ծնն. ԻԵ. 23։
2 Բ. Թագ. Ժ։ Ա. Մնաց. ԺԹ։
3 Բ. Թագ. ԺԲ. 26—31։ Ա. Մնաց. Ի.—3։
4 Ա. Մնաց. Ի. 4—7։ Բ. Թագ. ԻԱ. 15...։
5 Տես Ծնն. ԺԵ. 18։

յօգուտ որ յայսմիկ խոկ կատարիչ էր աստուածեղէն դատաստանացն, հանէր սուսեր ի վերայ Երուսաղէմի. անկաւ Դաւիթ յերկիր ընդ ծերոցն եւ աղաչէր թէ փոխանակ ժողովրդեանն հարցէ Տէր զնա եւ զտուն նորա:

Ի գալն դարձաւ Աստուած եւ հրաման ետ հրեշտակին զադարել ի կոտորածէն: Իսկ Գադ մարգարէ հրաման ետ Թագաւորին կանգնել սեղան Տեառն ի կալն Ոռնայ յեբուսացւոյ ուր կացեալ էր հրեշտակն: Եւ Դաւիթ գնոց զկալն եւ կատարեաց զհրամանն Աստուծոյ. մինչ դեռ մատուցանէր ողջակէզսն՝ էջ հուր յերկնից ի վերայ սեղանոյն եւ հաշտեցաւ Տէր[1]:

## 180

Այս ծերացաւ արդեն Դաւիթ եւ նուաղեալ անկաւ զօրութիւն նորա[2]: Բայց ուրախ լինէր նա յորդին իւր ի Սողոմոն զոր Տէր ինքնին ընտրեաց լինել ժառանգ թագաւորութեան նորա խոստացողութեամբ, եւ շինել տաճար Տեառն[3]. յայն սակս եւ Դաւիթ երդմամբ հաստատեաց Բերսաբեայ մօրն Սողոմոնի զթագաւորութիւնն[4], եւ յանձն արար Նաթանայ մարգարէի կրթել, եւ Նաթանայ անուանեալ էր զՍողոմոն սիրելի Տեառն (Յեդեդի)[5]:

Բայց Ադոնիա երիցագոյն յորդւոցն Դաւթի ծնեալ յԱգգիթայ՝ անձն եդեալ էր թագաւորութեանն: Արար նա իւր ըստ օրինակին Աբեսողոմայ որում նման էր գեղեցկութեամբն՝ երիվարս եւ կառս եւ անձնապահս: Եւ չթագոյց ինչ զխորհուրդս իւր. եւ հայրն նորա ծերունի անփոյթ ինչ առնէր: Եւ այնպէս ոչ միայն զՅովաբ սպարապետ եւ զԱբիաթար քահանայապետ արկ յինքն, այլ եւ զեղբարսն իւր եւ զմեծ մասն արանց աւագաց: Հրաւիրեաց զնոսա միանգամայն ի կոչունս ողջակիզաց, բայց զՍադովկ քահանայապետ, զՆաթան մարգարէ եւ զԲանեա զօրավար (եւ զմանուկն Սողոմոն) ոչ կոչեաց. քանզի չէին նոքա ընդ նմա ի բանի:

Այլ Նաթան խոհեմ եւ իսկ ազդ արար թագաւորին ի ձեռն Բերսաբեայ՝ զիրան զոր Ադոնիա գործեաց, եւ սակս հաստատեաց զբան Բերսաբեայ: Վասն այնորիկ միւսանգամ կրկնեաց Դաւիթ զերդումն իւր թէ Սողոմոն նստցէ յաթոռ նորա. եւ կոչել վաղվաղակի զՍադովկ եւ զԲանեա, եւ հրաման ետ նոցա եւ Նաթանայ նստուցանել վաղվաղակի զՍողոմոն ի վերայ ջորւոյ թագաւորին եւ հանդերձ անձնապահօք տանել յաղբեւրն Գեհոնի, անդ օծանել զնա եւ գոչել թէ կեցցէ արքայ: Եւ, եղեւ որպէս Դաւիթ կամեցաւ, եւ աղաղակեաց ամենայն ժողովուրդն՝ կեցցէ արքայ Սողոմոն:

1 Բ. Թագ. ԻԴ. 10...: Ա. Մնաց. ԻԱ. 7...:
2 Գ. Թագ. Ա. — 4:
3 Ա. Մնաց. ԻԲ. 9, 10:
4 Գ. Թագ. Ա. 16, 17:
5 Բ. Թագ. ԺԲ. 24, 25:

Իբրեւ լուաւ եղեւ Ադոնիայ եւ կոչնականաց նորա զհրամանն եղե-լոյ՝ զահի հարեան եւ ցրուեցան ի միմեանց։ Իսկ Ադոնիա փախեաւ ի սեղանն, որ էր առաջի խորան ապաստանի յանցաւորաց. Խոստա-ցաւ նմա Սողոմոն ների՛լ նմա եթէ կացցէ այնուհետեւ խաղաղու-թեամբ. յայնժամ մեծարեաց Ադոնիա զթագաւորութիւնն Սո-ղոմոնի եւ գնաց ի տուն իւր[1]։

## 181

Այս առաջ Դաւիթ ժողով մեծ արքայից իւրոց եւ գլխաւո-րաց ցեղիցն եւ իւրաքանչիւր տոհմից, երկոտասան զօրաւարաց, հազարապետաց եւ հարիւրապետաց, արանց քաջաց ի զօրուէն, եւ այլոց աւագաց եւ գործակալաց տանն արքունի եւ թագաւո-րութեանն։ Իբրեւ ամենեքին ի մի վայր եկեալ կային՝ մինչդեռ զանձն Դաւիթ եւ խօսեցաւ ընդ նոսա. Նախ յայտ արար նոցա թէ որպէս ի միտ եդեալ էր նորա եւ պատրաստեալ եւս էր նորա նիւթ՝ շինել տուն Տեառն, եւ թէ Տեառն իսկ յայտնեալ է նմա թէ ոչ նա այլ Սողոմոն զոր Տէրն ընտրեաց իւր որդի եւ կամեցաւ հայր լինել նորա, շինեսցէ զտունն զայն։ Այսպէս խրատեաց Դաւիթ զգլխաւորս ժողովրդեանն քննել զհրամանս Աստուծոյ եւ պահել, զի բարի լինիցի նոցա. ապա դարձեալ առ Սողոմոն ասէ. «Դու որդի Սողոմոն, որդի իմ, ծանիր զԱստուած հարցն քոց, եւ ծա-ռայեա նմա կատարեալ սրտիւ եւ մտօք կամաց քոց. վասն զի զամենայն սիրտս քննէ Տէր, եւ զամենայն խորհուրդս ճանաչէ. եթէ խնդրեսցես զնա՝ գտցի քեզ. եւ եթէ թողցես զնա՝ լքցէ զքեզ իսպառ»։

Խրատեաց, քաջալերեաց Դաւիթ զՍողոմոն արկանել ձեռն ի շինուած տաճարին, ետ նմա աւանդագիր ինչ զոր իւրն յօրի-նեալ էր, եւ եցոյց նմա զնիւթերսն ոսկւոյ եւ արծաթոյ եւ այլոց ազնուագոյն եւ անարգագոյն քարեղէն նիւթոց զոր պատրաստ-եալ էր ի յօրինուած տաճարին։ Ի նոյն յաւուրսն եւ ոչ սակաւ կամաւորական տուրք եւ ընծայք իշխանացն ազգաց. եւ ուրախ լինէին՝ քանզի կամաւ եւ յօժարութեամբ տային Տեառն։ — Զուար-ճացաւ եւ Դաւիթ եւ խօսեցաւ առաջի բազմութեանն աղօթս ինչ օրհնութեան եւ գոհութեան գեղեցիկս[2]։ Այսպէս երկիր պագին ամենեքին Տեառն եւ յաւուրն երկրորդի հազարս եւ բիւրս ողջա-կիզաց մատուցին։ Իսկ Սողոմոն եւ Սադովկ միւսանգամ հրապա-րակաւ օծան, մին ի թագաւորութիւն եւ միւսն ի քահանայա-պետութիւն։ Եւ Սողոմոն էր այնուհետեւ թագաւոր փոխանակ հօր իւրոյ Դաւթի, եւ ամենայն Իսրայէլ հնազանդ էր նմա[3]։

1 Գ. Թագ. Ա։ 2 Ա. Մնաց. ԻԹ. 10—19։ 3 Ա. Մնաց. ԻԲ, ԻԸ, ԻԹ։

## 182

Իսկ եւ մերձեցաւ ժամ մահուանն Դաւթի՝ կոչեաց զորդի իւր զՍողոմոն եւ ասէ ցնա. Ես երթամ զճանապարհ ամենայն երկրի. եւ դու զօրասցիս եւ եղիցես այր եւ պահեսցես զպահպանութիւն Տեառն Աստուծոյ քո, գնալ ի ճանապարհս նորա.... զի ի միտ առնուցուս զոր առնիցես,։ Յիշեցոյց նմա եւ զխոստումն Աստուծոյ թէ կացցէ զաւակ նորա յաթոռ թագաւորութեան՝ եթէ գնասցէ հաւատարմութեամբ ի ճանապարհսն Աստուծոյ. ապա ննջեաց Դաւիթ ընդ հարս իւր (ամաց 70իցն), թագաւորեալ ամս 40, եւ թաղեցաւ ի քաղաքին Դաւթի[1]։ Ա՛յ որ ի թագաւորաց այսպիսի փառաւոր եղեւ ի միջոց ժողովրդեան իւրոյ. ժամանակ թագաւորութեան նորա է ժամանակ մեծութեան եւ առհասարակ պայծառանաց Իսրայէլացւոց. Կամեցաւ աւարտեցուցանել զիշխանական ամբողջութիւն ազգին. Պատերազմ մղեաց ընդդէմ թշնամեաց եւ մերձաւոր պատերազմական յաղթութեամբ, բայց զօրաւոր նոցա կորոյս խորովի ընդհանուր բարբարոսաց. իսկ Դաւիթ արար զԻսրայէլ ազգ երեւելի եւ նշանաւոր, եւ արկ հիմն խաղաղական թագաւորութեան որդւոց իւրոց ի ձեռն յաղթութեանց իւրոց եւ աշխարհակալութեանց եւ աստուածածոյ։ — Ոչ միայն Յուդա եւ Իսրայէլ՝ յայսկոյս եւ յայնկոյս Յորդանանու, այլ եւ Մովաբ եւ Եդոմ, Ասորիք եւ Փղշտացիքն հնազանդեցան նմա. ունէր նա զօր պահապան ի հիւսիս եւ ի մեծամեծն Դամասկոս. Ամոնիք հպատակ եղեն նմա եւ Եդոմ հնազանդեաց նմա։ Եղեւ եւս ի կատարումն խոստմանն Աստուծոյ՝ թէ զաւակ նորա ժառանգեսցէ ի գետոյն Եգիպտոսի մինչեւ ցհեղեղատն Եփրատայ[2]։

Իսկ իւրն բուն սեպհական մեծութիւն հաստատեալ կայր ի հնազանդութեան նորա առ Աստուած եւ գնալոյ նորա միշտ առաջի Աստուծոյ. մեծ անկումն նորա՝ յետ դարձին նորա խոնարհութիւն մեծ գործեաց ի նմա եւ ջերմեռանդն սէր. ապա թէ ոչ յորոյ վերայ հաստատեալ կայր արդեաւք այն հաստատուն հպատակութիւն Դաւթի՝ որ այնպէս հոգւով ճշմարիտ աստուածպաշտութեան հանգէր այնչափ լցեալ էր որ ի վերայ նորա հանգին։

Երգք սաղմոսաց նորա զարդարութիւն ջերմեռանդն սրբոյն ցուցանեն եւ ընտրել հաւատոյն եւ զխոնարհութիւն. ցուցանեն նոքա թէ որպէս հայէր ի հեռաստանէ ի հանդերձեալ ժամանակն, ոչ միայն ի փրկութիւն ազգի որ ընտրեալ էր հանդերձեալ աշխարհի՝ այլ եւ ի յաւիտենական ամենահաւութիւն իւր ի հանդերձեալ աշխարհին։

Դաւիթ չափ եւ օրինակ էր աստուածպետական թագաւորի. այնպիսի իմն դիպօք եղ ի թագաւորութիւն զի կրթեցաւ իմն եւ

1 Գ. Թագ. Բ. — 11։ Ա. Մնաց. ԻԹ. 26 — 30։ 2 Ծնն. ԺԵ. 18։

## 184

Որպէս հաստատեցաւ Սողոմոն յաթոռ իւրում: Սիրեաց նա զՏէր եւ երթայր ի ճանապարհս հօր իւրոյ Դաւթի: Եւ նա յաւուր միում ընդ իշխանաց, ընդ զօրավարաց եւ ընդ ծերոցն Իսրայէլի ի բարձրաւանդակն Գաբաւոնի, ուր էր խորանն վկայութեան Մովսիսի եւ սեղանն ողջակիզաց (քանզի տապանակն յԵրուսաղէմ էր ի Նոր վրանի). անդ մատուցանէր հազար ողջակէզս:

Եւ երեւեցաւ Տէր նմա անդ յանուրջս եւ ասէ. “Խնդրեա յինէն զոր տաց քեզ„: Խնդրեաց Սողոմոն սիրտ հլութեան, իմաստութիւն եւ հանճար: Եւ ասէ Տէր ցնա. “Փոխանակ զի խնդրեցեր յինէն զբանդ զայդ, եւ ոչ խնդրեցեր քեզ աւուրս բազումս, եւ ոչ խնդրեցեր քեզ մեծութիւն, եւ ոչ խնդրեցեր զանձինս թշնամեաց քոց. այլ խնդրեցեր դու քեզ իմաստնանալ լսելոյ զիրաւունս, ահա արարի ըստ բանից քոց. ահա ետու քեզ սիրտ իմաստուն եւ հանճարեղ. իբրեւ զքեզ ոչ ոք եղեւ յառաջ քան զքեզ, եւ յետ քո ոչ ոք յարիցէ նման քեզ: Եւ զոր ոչ եւս խնդրեցեր՝ ետու քեզ, զմեծութիւն եւ զփառս, որպէս ոչ ոք եղեւ նման քեզ ի թագաւորս զամենայն աւուրս քո. եւ եթէ գնասցես ի ճանապարհս իմ... որպէս եւ գնաց Դաւիթ հայր քո, բազմացուցից եւ զաւուրս քո„:

Իսկ եւ իսկ եցոյց Սողոմոն զնշան առաւելութեան աստուածատուր իմաստութեանն: — Կանայք երկու որ ի միում տան բնակեալ էին՝ եկին առաջի նորա առեալ մանուկ մի առընդդեաց վարել առաջի նորա դատ: Երկոքին ծնեալ էին մանկունս նորոգ. մին ասէր թէ միւս կին զիւր մանուկն ի քնոյն ժամանակի ի վերայ անկեալ հեղձոյց, եւ բեր եդ փոխանակ կենդանի որդւոյ նորա զոր տարաւ: Իսկ միւսն պնդէր թէ ինքն է մայր որդւոյն կենդանւոյ: Եւ ոչ ոք ի նոցանէ կամէր զիջանել: Հրաման ետ թագաւորն հատանել ընդ մէջ զմանուկն եւ տալ իւրաքանչիւր զկէս նորա: Յայնժամ գոչեաց մայր մանկանն եւ ասէ. “Ոչ տէր՝ տուք նմա զմանուկն կենդանի՝ եւ մի սպանանէք զնա„: Իսկ միւսն կամէր զի բաժանեսցի. բայց Սողոմոն հրաման ետ այնմ տալ զմանուկն՝ յորում մայրութեան գութ եւ սիրտ երեւեցաւ: Եւ զարմացաւ ամենայն Իսրայէլ ընդ իմաստութիւն Աստուծոյ որ ի նմա էր[1]:

## 185

Իմաստութիւնն զոր ետ Աստուած Սողոմոնի՝ անցանէր զանցանէր զիմաստութեամբ ամենայն արեւելեայց, համօրէն Եգիպտացւոց եւ առհասարակ իսկ ամենայն արանց եւ ազգաց որ երեւ-

1 Գ. Թագ. Գ: Ա. Մնաց. Ա. — 13:

ելին էին յայնժամ իմաստութեամբ։ Խօսեցաւ նա 3000 առակս եւ օրհնութիւնս 1005 (ըստ Եւթանասնիցն՝ 5000). տեղեակ էր նա ուսման բնութեան եւ պատմութեան ամենայն ծառամբք եւ բաժանմամբք։ Զգեղեցիկ բարոյականն տեղեկութեանց նորա վկայ-են գիրք Առակաց եւ Ժողովողի եւ Զգօնութեանն, եւ զբարձրա-կան արուեստ պուեստութեան նորա ցուցանէ Երգ երգոցն։ Գային առ նա յամենայն ազգաց դրդեալք ի համբաւոյ իմաստութեան նորա տեսանել եւ լսել ի նմանէ[1]։ Շքեղ իմն եւ փառաւոր էր մանաւանդ գալուստ տիկնոջն Սաբայ (յԵրջանիկն Արաբիայ, ըստ ոմանց՝ ի Մերոէէ). եկն նա փորձել զիմաստութիւն նորա դժուա-րին խնդրովք կամ առակօք ըստ սովորութեան հնոց Ասիացւոց[2]. եւ առաւել գտեալ տիկնոջն քան զայն զոր լուաւ՝ զարմացաւ ընդ շինուածս Սողոմոնի եւ ընդ ամենայն յօրինուածութիւն նորա, եւ եթող պարգեւս մեծամեծս[3]։ Թագաւորէր Սողոմոն ի խոր խաղաղութեան՝ ոչ միայն ի վերայ համօրէն Իսրայէլի, այլ եւ ի վերայ նահանգացն յԵփրատ գետոյ մինչեւ ցսահմանակողմն Եգիպտոսի՝ զոր հնազանդեաց ընդ հարկաւ Դաւիթ։ Եւ Եդոմ եւս էր հնազանդ նմա։ Երկոտասան իշխանք վերակացու էին ա-զանոյն արքունի եւ լինէին խնամակալ համօրէն արքունեաց նորա փոխանակաւ ամիս յամսոյ[4]։

Արար Սողոմոն բարեկամութիւն ընդ Թագաւորին Եգիպ-տացւոց առեալ զդուստր նորա իւր կնութեան[5], եւ պաշտպա-նակս զքաղաքն Գազեր[6]։ Նորոգեաց զդաշնաւորութիւն հօր իւ-րոյ ընդ Քիրամայ արքայի Տիւրացւոց, եւ շնորհեաց նմա Քիրամ հարկանել եղեւնափայտս ի Լիբանանէ վասն շինուածոց իւրոց, եւ ետ նմա գործաւորս։ Եւ ինքն Սողոմոն կացոյց արս 150,000 կոտել զփայտն եւ տաշել զքարինսն[7]։

## 186

Յետ պատրաստութեանցն լինէր սկիզբն շինուածոյ տաճարին ի վերայ լերինն Մորիայ յամի 480երորդի յետ ելիցն յԵգիպտո-սէ. ի չորրորդ ամի թագաւորութեանն Սողոմոնի, եւ յետ եւթն ամաց կատարեցաւ շինուածն (1007—1000)։ Էր այն շինուած ինչ 60 կանգուն (գիրկ) յերկայնութիւն, 20 կանգուն ի լայնու-թիւն, եւ 30՝ ի բարձրութիւն, կազմեալ ի տաշածոյ քարանց. զերեքումբք կողմամբքն էին պահք երեքձեղունանեայք, ի սրա-հին որ յարեւելից կայր՝ էր դուռն մտանելոյ ի զաւիթ անդր։

1 Գ. Թագ. Դ. 29—34։
2 Առասպելէ եւ Քիրամ արքայ Տիւրացւոց (ըստ Դիոսի եւ Մենանդրեայ առ Եւսեբ. Քրոն. Ա. Տասն. էջ 175, 179) առաքէր առակս կամ առեղծուածս առ Սողոմոն՝ որպէս եւ սա առ նա։
3 Գ. Թագ. Ժ։ Բ. Մնաց. Թ։
4 Գ. Թագ. Դ։
5 Գ. Թագ. Գ. 1։
6 Գ. Թագ. Թ. 16։
7 Գ. Թագ. Ե։ Բ. Մնաց. Բ։

Ներքին կողմն տաճարին ամենեւին յեղեւնափայտից ծեփելոյ ոսկւով եւ զարդելոց ճարտարագործ արուեստիւ՝ բաժանեալ էր ի Սրբութիւն եւ ի Սրբութիւն սրբոց եւ դրամբ անջրպետեալ ի միմեանց: Իսկ ներքին յօրինուածութիւնն էր յօրինուածութիւն խորանին վկայութեան: Ամենայն համօրէն շինուածն պատեալ էր յերից կողմանց որմով ի տաշածոյ քարանց, իսկ ի հիւսիսոյ կողմանէ փանդղակապատ յեղեւնափայտից: Ընդ կայծն երկու սիւնք պղնձիք ճարտարագործք, մեծ աւազան լուանալոյ, ծովն պղնձի եւ սեղանն ողջակիզաց: Ի յառաջակողման անջրպետութեան տաճարին կայր սեղանն ոսկի, 10 սեղանք ոսկիք, 100 տաշտք ոսկիք, 10 աշտանակք ոսկիք: Եւ այլ եւս ամենայն սպասք եւ կահք յոսկւոյ էին[1]: Մեծաշուք փառաւորութիւն Սողոմոնեան տաճարին այնու յայտ առնի՝ զի երկրորդ տաճարն որ յետ կործանմանն նորա շինեցաւ՝ որպէս պատմի, չկարէր մտանել ի համեմատութիւն ընդ Սողոմոնեան տաճարին[2], ուր ամենայն իսկ պատմութիւնք հնոց ժամանակաց եւ զերկրորդ եւս տաճարն հռչակեալ զարմանալեօք արուեստի եւ փառաւորութեան եւ մեծութեան համարին:

## 187

Իբրեւ եւ շինուած տաճարին ի գլուխ՝ ժողովեաց արքայ Սողոմոն զամենայն իշխանս եւ զծերս Իսրայելի յԵրուսաղէմ՝ ի ժամանակի տօնից տաղաւարահարաց: Բարձին քահանայքն զտապանակն ուխտի, քահանայք եւ ղեւտացիք տանէին զխորանն վկայութեան եւ զսպաս Սրբութեան. առաջի երթայր Թագաւորն հանդերձ համօրէն բազմութեամբն Իսրայելի, եւ մատուցանէին անհամար ողջակէզս: Եդաւ տապանակն ի Սրբութեան սրբութեանցն ի ներքոյ թեւոց քերովբէիցն՝ զոր առեալ էր յօրինել Սողոմոն: Իբրեւ ելին քահանայքն զտապանակն՝ եւ դասք երգեցկացն հանդերձ նուագարանօք երգել սկսան թէ "Օրհնեցէք զՏէր զի յաւիտեան է ողորմ նորա", ելից յայնժամ ամպ մի՝ փառք Տեառն, զտունն Աստուծոյ: Եւ Սողոմոն բարբառեալ ասէր. "Տէր ասաց հովանի լինել մեգով. շինելով շինեցի քեզ տուն բնակութեան, հաստատութիւն աթոռոյ քում յաւիտեան": Եւ դարձաւ արքայ եւ օրհնեաց զամենայն ժողովուրդն Իսրայելի որ կայր ի գաւթի անդ:

Ապա եկն առաջի սեղանոյ Տեառն ի վերայ պղնձի բեմին եւ անկեալ ի ծունր՝ եկաց յաղօթս վասն սրբութեան նաւակատեաց տաճարին: Գոհացաւ զԱստուծոյ վասն զի ելից զխոստմունսն, եւ աղաչեաց զի լուիցէ Տէր աղօթից ժողովրդեան որ կայցեն նմա յաղօթս ի տաճարին: — Իբրեւ աղօթքն ի գլուխ ելին՝ օրհնեաց

1 Գ. Թագ. Զ, Է. 12 . . . : Բ. Մնաց. Գ, Դ: 2 Անգէ. Բ. 4:

միւսանգամ զժողովուրդն : Եւ անդէն ի կատարած աղօթիցն էջ հուր յերկնից եւ մաշեաց զողջակէզսն, եւ փառք Տեառն լցին զտաճարն : Յայնժամ անկան ի ծունր որդիքն Իսրայէլի ի վերայ երեսաց իւրեանց (քանզի ցայժմ յոտն կային), երկիր պագին եւ գոհացան զԱստուծոյ : Եւ զենան 22,000 եզինս եւ 120,000 ոչխարս յողջակէզ, եւ ձգեցան նաւակատիքն յաւուրս եւթն, եւ յետ այնորիկ կատարեցաւ եւթնօրեայ տօն տաղաւարահարացն . յութերորդում (ի 15երորդում) աւուր տօնին այնորիկ արձակեաց Սողոմոն զժողովուրդն : Եւ մեկնեցան նոքա օրհնելով զԹագաւորն ուրախութեամբ եւ ցնծութեամբ յիւրաքանչիւր տեղիս[1] :

## 188

Բաց ի տաճարէ անտի կառուցեաց Սողոմոն իւր ապարանս ի տաշածոյ քարանց՝ շքեղ եւ հոյակապ, որ յերեքտասան ամս եղ ի գլուխ : Երեք գլխաւոր մասունք էին շինուածոյն . ի միումն էր բնակութիւն նորա հանդերձ ատենիւն եւ սրահիւ, ուր նստէր Սողոմոն ի գահոյս իւր . երկրորդն բնակութիւն կնոջն եգիպտացւոյ, եւ երրորդն անուանեալ տուն անտառին Լիբանանու, քանզի ամենեւին յեղեւնափայտից շինեալ էր, եւ թուի թէ էր տուն զանձու մեծագին զինուց եւ անօթոց[2] :

Իբրեւ այսպէս կատարեցան մեծամեծք ի շինուածոցն Սողոմոնի, ապա երեւեցաւ Տէր երկրորդ անգամ Սողոմոնի եւ ասէ . «Լուայ ձայնի աղօթից քոց եւ պաղատանաց զոր պաղատեցար առաջի իմ, արարի քեզ ըստ ամենայն աղօթից քոց . սրբեցի զտունն զոր շինեցեր դնել զանուն իմ անդ յաւիտեան . եւ եղիցին աչք իմ եւ սիրտ իմ անդ զամենայն աւուրս» : Այլ կրկնեաց Աստուած Սողոմոնի զխոստմունսն իւր, բայց յաւելեալ սպառնալիս զգուշութեան ասէ . «Ապա թէ դառնալով դառնայցէք դուք եւ որդիք ձեր յինէն ... եւ երթայցէք եւ ծառայիցէք աստուածոց օտարաց եւ երկիր պագանիցէք նոցա, բարձից զԻսրայէլ յերկրէն զոր ետու նոցա, եւ զտունդ զայդ զոր սրբեցի անուան իմոյ՝ ընկեցից յերեսաց իմոց . եւ եղիցի Իսրայէլ յապականութիւն եւ ի խօսս ընդ ամենայն ժողովուրդս»[3] :

Յետ կատարելոյ Սողոմոնի զտաճարն եւ զապարանսն արքունի՝ ած պարիսպ շուրջ զԵրուսաղեմաւ եւ զայլովք քաղաքօք, եւ շինեաց մահարձանս եւ ամուրս կամ թէ հան զշինուած նոցա ի գլուխ . եւ յաճախեաց մթերեաց համբարս ցորենոյ վասն ժամանակաց սովու : Շինեաց նա քաղաքս բազումս յորս էին եւ Պաղմիրա (Տադմոր, Թէդմոր) եւ Բաղաաթ (Հելիոպոլիս, Արեգ քաղաք)

1 Գ. Թագ. Ը: Բ. Մնաց. Ե, Զ, Է. — 10:
2 Գ. Թագ. Է. — 12:
3 Գ. Թագ. Թ. — 9: Բ. Մնաց. Է. 11...:

յանապատի Ասորւոց, որոյ եւ աւերակքն նշմարին ցայսօր: (Զայս արար թերեւս վասն հաճոյ ինչ գործելոյ Քիրամայ արքայի Տիւրացւոց, որ այնպէս օգնական եղեւ նմա ի շինուած տաճարին եւ ապարանիցն:) Սոքիմբք արար յառաջադիմութիւն վաճառականութեան, այլ առաւել առնէր շահ վաճառականութեան շինելով տորմիղ նաւաց ի Գասիոնգաբեր եւ յԱյիլաթ յԻդումեացւոց աշխարհին, եւ առնէին նաւքն ընդ նաւացն Փիւնիկեցւոց մեծամեծ ճանապարհս եւ ածէին զգանձս կողմանց հեռաւորաց:

Այլ ոչ նորօք միայն այլ եւ ի հարկաց ազգաց ազգաց հնազանդելոց եւ յերեւելի պատարագաց եւ ի տրոց եւ ի հասից (որ յետոյ ծանրացան) աճեաց եւ մեծացաւ զօրութիւնն եւ փառաւորութիւն եւ մեծութիւնն Սողոմոնի: Ի պահպանութիւն զգուշութեան խաղաղութեանն պահէր զօրս ոչ սակաւ բազմութեամբ, եւ բաժանեաց զնոսա յամուր ամուր քաղաքս, եւ մեծ մասն նոցա յարանց Իսրայելացւոց էր[1]:

## 189

Այսպէս ի գլուխ բարձրութեանն փառաւորութեան եւ պարծանաց հասեալ կայր Սողոմոն. զարմանալի եւ սքանչելի էր նա ժամանակակցաց իւրոց՝ իմաստութեամբ եւ շահաւէտ կարգօք եւ յօրինուածութեամբք տէրութեան իւրոյ, առաջնորդութեամբ իւրով եւ մեծամեծ իրօք զոր սկսաւ եւ եհան ի գլուխ: Չէ մարթ կասկածել ինչ թէ արդեւք ի բարութեան եւ ի խաղաղութեան լեալ իցէ Իսրայէլ. քանզի յայտ առնեն գիրք եւ ասեն. "Իսկ Իսրայէլ եւ Յուդա բազում էր իբրեւ զաւազ առ եզր ծովու բազմութեամբ. ուտէին եւ ըմպէին եւ ուրախ լինէին ... եւ բնակեալ էր իւրաքանչիւր ոք վստահութեամբ ընդ որթով եւ ընդ թզենեաւ իւրով ... զամենայն աւուրս Սողոմոնի: — Իսկ յորդւոցն Իսրայելի ոչ ետ Սողոմոն ի հանդերձաւորութիւն, զի նոքա արք պատերազմողք էին"[2]: Այս ուրեմն ի բարութեան, ի խաղաղութեան եւ յազատութեան էին, այն՝ որում ցանկան եւ ջանան հասանել ամենայն ազգք, եւ վասն որոց գրգռին այնչափ խռովութիւնք:

Բայց սակայն անդէն ի վերայ Սողոմոնի եւ Իսրայելացւոցն յայտ եղեւ թէ երջանկութիւն մարդոյ եւ համօրէն իսկ ազգաց ոչ ի բարութեանց անտի միայն է: Զեղխութիւն որ վաճառականութեամբն ծնաւ եւ հաղորդութիւն կցորդութեան ընդ օտար եւ կռապաշտ ազգացն՝ մեղս եւ եղծումն կրօնիցն եւ բարուց Իսրայելացւոցն գործեաց, որ ի բնէ իսկ գետնաքարշք եւ երկրամախանձք էին, եւ մանաւանդ վնասեցաւ ինքն թագաւորն:

1 Գ. Թագ. Թ. 10 ... Ժ. 14 ...: Բ. 2 Գ Թագ. Դ. 20, 25. Թ. 22: Մնաց. Ը, Թ. 13 ...:

Ահագին անկումն Սողոմոնի ի վերջին ամս կենաց իւրոց թուի թէ ի խոտորելոյ նորա բազում անգամ յօրինացն՝ եղեւ։ Արար նա բազում երիվարս եւ հեծեալս եւ առնոյր իսկ զնոսա զնոց յԵգիպտոսէ. կուտեաց նա զանձս մեծամեծս եւ ամբարձ զանձն իւր անչափ փառաւորութեամբն եւ փափկակեաց բարեկեցիկ կենօք ի վերոյ քան զայլ մարդիկ. բայց այն ամենայն հակառակ էր յայտնական հրամանացն որ վասն առն թագաւորի գրեալ կայր յօրէնսն[1]։

Այլ որ չար քան զայն էր՝ կամէր իմն անցուցանել եւ կանանցաւն զայլ ամենայն թագաւորօք՝ արարեալ իւր 700 տիկնայս եւ 300 հարճս, հակառակ յայտնի իսկ հրամանաց չառնելոյ կանայս բազումս[2]։ Եւ երբեւս բազումք ի նոցանէ ի կանանց Քանանացւոց էին ընդ որոց արգելեալ էր հաղորդութիւնն՝ զի մի զեղծուցեալ ածիցեն ի կռապաշտութիւն[3]։ Այսպէս խնդրեաց եւ սիրեաց նա զվտանգ, եւ ի նմին կորեաւ։

Զի որ երբեմն այնպէս իմաստուն եւ հանճարեղ թագաւոր էր, եւ որ առաւել քան զամենայն իսրայելացի՝ զանհանճարութիւն եւ զգարշութիւն կռապաշտութեանն գիտէր, եւ զանմիտ ամպարշտութեանն այնորիկ յօրինեալ էր ճարտար զնկարագիրն[4], զեղծաւ մոլորեցաւ ի ձեռն կանանց իւրոց կռապաշտաց, ի բաց եկաց ի Տեառնէ, եւ շինեաց նա մեհեան եւ բագին գրեթէ ամենայն աստուածոց օտարաց, յորս խունկս եւ պատարագս մատչէին նոցա։ Նա եւ ի լերինն ձիթենեաց շինեցաւ մեհեան Մողոքայ։ Բայց անդէն ի նմին ժամանակի եւ զճշմարիտ Աստուածն Իսրայելի պաշտէր[5], այլ ոչ եթէ այն Աստուած միայն էր այնուհետեւ յԻսրայելի, այլ եւ բազում եւս աստուածք առ նմին պաշտօն առնուին։

Բայց բարկացեալ էր Տէր Սողոմոնի՝ զի դարձոյց զմիտս իւր յԱստուծոյն Իսրայելի։ Եւ խօսեցաւ նա ընդ նմա եւ ասէ. "Փոխանակ զի եղեւ այդ ընդ քեզ, եւ ոչ պահեցեր զհրամանս իմ եւ զպատուիրանս զոր պատուիրեցի քեզ, պատառելով պատառեցից զթագաւորութիւնդ ի ձեռանէ քումէ, եւ տաց զդա ծառայի քում. բայց ի քո աւուրս ոչ արարից զայն վասն Դաւթի հօր քո, այլ ի ձեռանէ որդւոյ քո առից զդա։ Սակայն... զաւազան մի տաց որդւոյ քում վասն Դաւթի ծառայի իմոյ, եւ վասն Երուսաղէմ քաղաքի զոր ընտրեցի"[6]։ Եւ քանզի Երուսաղէմ ի վերայ սահմանացն Յուդայ ի ցեղին Բենիամենի կայ, աստ երկոքին ցեղքն մի ցեղ հաշուին, որպէս եւք իրացն ցուցանեն։

1 Երկր. օր. ԺԷ. 16, 17, 20։
2 Երկր. օր. ԺԷ. 17։
3 Երկր. օր. Է. 3, 4։
4 Իմաստ. ԺԴ—ԺԵ։
5 Տես Բ. Մնաց. Ը. 12, 13։
6 Գ. Թագ. ԺԱ. — 13։

## 190

Ծառայն Սողոմոնի զոր աստուածեղէն հրամանն յիշէ, եւ որում սահմանեալ էր Աստուծոյ զիշխանութիւն տասն ցեղիցն՝ Յերոբովամ էր ի ցեղէն Եփրեմի: Վասն յաջողակութեան եւ ժրութեան կացուցեալ էր զնա արքայի ի վերակացութիւն կրկին ցեղին Յովսեփու: Երբեւ պատահեաց նմա երբեմն ի դաշտի Աքիա մարգարէ Սիղոնացի, պատառեաց զվերարկու իւր յերկոտասան կտորս եւ ասէ ցՅերոբովամ. Առ զտասն կտորսն քեզ զի այսպէս ասէ Տէր. "Ահա ես պատառեցից զթագաւորութիւնն ի ձեռաց Սողոմոնի, եւ տաց քեզ զտասն գաւազանսն... փոխանակ զի եթող զիս... եւ ոչ գնաց ի ճանապարհս իմ...: Եւ դու եղիցես թագաւոր ի վերայ Իսրայելի. եւ եղիցի եթէ պահեսցես զամենայն ինչ զոր ես պատուիրեմ քեզ... որպէս արար Դաւիթ ծառայն իմ, եւ եղէց ընդ քեզ եւ շինեցից քեզ տուն հաստատուն, որպէս շինեցի Դաւթի: Եւ չարչարեցից զզաւակն Դաւթի վասն այնորիկ. բայց ոչ զամենայն աւուրս" (որ զՄեսիայէ ակնարկէ): — Երբեւ կասկած առ Սողոմոն զՅերոբովամայ եւ խնդրէր սպանել զնա, նա եւ գնաց փախստեայ յԵգիպտոս[1]:

Սա եւ յարտաքին եւս թշնամեաց կրէր Սողոմոն հակառակութիւն ի վերջին ամս թագաւորութեան իւրոյ: ա. Հնազանդեալ էր Յովաբու զամենայն Եդոմ ընդ իշխանութեամբ արքային Դաւթի յետ բազում ճապաղիս արեան հանելոյ. բայց Ադադ (Ադեր) որդի վերջնոյ թագաւորին Եդովմայեցւոց ապրեալ էր փախստեայ յԵգիպտոս եւ սիրելի լեալ Փարաւոնի: Այժմ դարձաւ նա ի հայրենի աշխարհն իւր եւ յարեաւ հակառակ Սողոմոնի: — բ. Ռազոն երբեմն ծառայ լեալ Ադրաազարայ արքայի Սուբայ, կանգնեաց նոր թագաւորութիւն ի Դամասկոս: Երկոքին եւս միշտ թշնամութեամբ էին ընդ արքային Սողոմոնի[2]: Յայսմ ամենայնէ եւ այն իմն յայտ առնի թէ քաջութիւն պատերազմի նուազեալ էր յԻսրայելացւոցն՝ վասն մեղկութեանն նոցա եւ թուլութեանն:

"Մեռաւ Սողոմոն չեւ հասեալ ի 60 ամ կենաց իւրոց. եւ աւուրք զօրս թագաւորեաց նա յԵրուսաղէմ ի վերայ ամենայն Իսրայելի՝ ամք քառասուն. եւ թաղեցին զնա ի քաղաքի Դաւթի հօր իւրոյ: Եւ թագաւորեաց Ռոբովամ որդի նորա ընդ նորա"[3]: Թէպէտ եւ զանկումն Սողոմոնի յիշեն գիրք՝ սակայն զապաշխարութենէ լուռ են, բայց դատապարտեն ոչ[4]:

Հարցն կարծիք այլ եւ այլ են: Ոմանք կարծեն թէ ի գիրսն Ժողովողի գտանի փոփոխումն մտաց նորա[5], յորում եւ վայրա-

1 Գ. Թագ. ԺԱ. 26—40:
2 Գ. Թագ. ԺԱ. 14—25:
3 Գ. Թագ. ԺԱ. 41—43:
4 Սիրաք. ԽԷ. 14...:
5 Ժող. Ա. Բ...:

պետութիւն անմահութեան հոգւոյ յայտնապէս ընծայանայ[1]։ Այս գտանելոյ նորա շնորհս յԱստուծոյ՝ կայ ի գեղեցիկ խոստմանն զոր ետ Աստուած Դաւթի վասն Սողոմոնի ի ձեռն Նաթանայ մարգարէի. քանզի խոստանայ զի եթէ չարիս գործիցէ՝ ոչ պատժեսցէ զնա խստագոյնս եւ մի հեռի արասցէ ի նմանէ զողորմութիւն իւր[2]։

Ըստ Դաւթաւ եւ առաւել եւս առ Սողոմոնիւ ել ի գլուխ վախճան ինչ առաջնորդութեանցն Աստուծոյ. այս ինքն առնել զԻսրայէլ ամենեւին ի բարութեան. բայց ծանր անկումն Սողոմոնի յայտ արար եւ եցոյց թէ ոչ նա՝ այլ այլ ոք բարձրագոյն քան զնա է, զորմէ աստուածեղէն պատգամքն եւ խոստմունքն խօսին։— Եկեղեցի միշտ առակ օրինակի Քրիստոսի համարեցաւ զՍողոմոն. եւ կան իսկ ինչ մարգարէութիւնք որ եւ ի նա եւ յՈրդին Աստուծոյ միանգամայն հային. որպէս առաջին բանք մարգարէութեանն Նաթանայ զոր սակաւիկ ինչ յառաջագոյն ի մէջ բերաք, առեալ են եւ ի Մեսիա[3]. եւ ՀԱ. Սաղմոսն որ զՍողոմոնէ ասացեալ է՝ յայտնի իսկ ունի մարգարէութիւնս վասն Քրիստոսի։

## 191

Յետ վախճանին Սողոմոնի չոգաւ Ռոբովամ որդի նորա ի Սիւքէմ, ուր էր ժողովեալ Իսրայէլ կացուցանել զնա թագաւոր։ Իսկ Յերոբովամ որ դարձեալ էր յԵգիպտոսէ, յետ լսելոյ զլուր մահուն Սողոմոնի՝ եկն ել առաջի Ռոբովամայ ընդ ծերոցն Իսրայէլի. խնդրէին ծերքն դիւրութիւն ի ծանրութենէ անհնարին հարկացն, եւ ապա յանձն առնուին հնազանդել նմա։ Ռոբովամ թողեալ զխորհուրդ խորհրդականաց հօր իւրոյ, ամբարտաւանութեամբն եւ ցասմամբ ըստ խրատու մանկտւոյն խորհրդակցաց իւրոց՝ չառ զպայմանսն յանձն, եւ խստութեամբ արար պատասխանի ծերոցն. «Կրտսեր իմ ստուար է քան զմէջ հօր իմոյ. եւ արդ հայր իմ եդ ի վերայ ձեր անուր ծանր, եւ ես յաւելից յանուրն ձեր. հայր իմ խրատեաց զձեզ գանիւք, եւ ես խրատեցից զձեզ քքովք»։

Այնպէս եթող Տէր զՌոբովամ ի շլացութեան իւրում զի լցցին բանքն իւր։ Քանզի բարկացեալ ժողովրդեանն ասէ. «Զի՞նչ բաժին կայ մեր ընդ Դաւթի. պնդեաց ի բնակութիւնս քո Իսրայէլ. եւ արդ՝ դու արածեա զտունն Դաւթի»։ Թէպէտ եւ առաքեաց Ռոբովամ զԱդոնիրամ (զԱդուրամ) զհարկապետ իւր զի հանդարտեցուսցէ զամբոխն՝ բայց քարկոծեցաւ. եւ Ռոբովամ աճապարեաց դառնալ յԵրուսաղէմ։ Այնպէս բաժանեցաւ Իսրայէլ ի տանէն Դաւթի եւ յարեան կացին երկու թա-

1 Ժող. ԺԲ։ 2 Բ. Թագ. Է. 14, 15։ 3 Եբր. Ա. 5։

գաւորութիւնք՝ Յուդա եւ Իսրայէլ, եւ յետ այնորիկ ոչ միաբանեցին[1]։

Սպառնալիք լինէր բաժանմանն ոչ միայն գործ անմտութեանն Ռոբովամայ՝ այլ եւ նախանձ մեծի մասին ցեղիցն զոր նախանձէին ընդ Յուդա, որպէս անդէն յապստամբութեանն Սաբեայ յայտ եղեւ[2], եւ այն նախանձ մնացական գրգռեցաւ ի ձեռն Եփրեմեանցն[3]։ Զայսր բաժանման զհետ եկին պատերազմունք սաստիկ եւ սաստիկ յոյժ ի մէջ երկուց ազգակից թագաւորութեանց, որով եւ երկոցունց բնական զօրութիւնք տկարացան հակառակ արտաքին թշնամեաց զօրացելոց, եւ որպէս ի դէպ էր՝ այնու զի թագաւորք եւ ժողովուրդք երկոցունց եւս թագաւորութեանցն երթային եւ մոռանային զԱստուած, յետոյ ապա եհաս երկոցունց թագաւորութեանցն կործանումն իբրեւ լրումն աստուածեղէն դատաստանացն։

Զ.

Թագաւորութիւնն Իսրայէլի եւ Յուդայ (972—720)։

# 192

ՄԻՆՉ չեւ զերեւելի երեւելի դէպս երկոցունց թագաւորութեանցն պատմեալ՝ հայեսցուք նախ յերկոցունցն ընդարձակութիւն։

Թագաւորութիւնն Իսրայէլի կամ թագաւորութիւն տասն ցեղիցն բովանդակեալ ունէր զսահմանս ցեղիցն Ռուբինի եւ Գադայ, զերկուսին կէս ցեղոյն Մանասէի. դարձեալ՝ զցեղսն Եփրեմի, Դանայ, Իսաքարայ, Զաբուղոնի, Նեփթաղիմայ եւ Ասերայ։ Յարեւելից կայր առ եզր անապատին Արաբիոյ, ի հարաւոյ՝ առ Բենիամինի եւ թագաւորութեանն Յուդայ, յարեւմտից՝ առ ծովուն Միջնոյ, ի հիւսիսոյ՝ առ Լիբանոս լերամբ. գլխաւոր քաղաք նորա էր յառաջագոյն Սիւքեմ, եւ Թերսա եւս, յետոյ Սամարիա. ընդարձակութեամբ մեծ էր քան զՅուդա, բայց այլովք ամենեքումբք ի վայր էր քան զնա, եւ յառաջ քան զնա կործանեցաւ։

Թագաւորութիւնն Յուդայ կայր ոչ միայն ի ցեղիցն Յուդայ եւ Բենիամինի՝ այլ եւ ի կալուածոց ցեղին Շմաւոնի, որ ի սահմանսն Յուդայ էին։ Սահմանք նորա էին ի հարաւոյ՝ հեղեղատն Եգիպտոսի եւ երկիրն Եդովմայեցւոց, յարեւելից՝ ծովն Մեռեալ, յարեւմտից՝ ծովն Միջին եւ երկիրն Փղշտացւոց, ի հիւսիսոյ՝ թագաւորութիւնն Իսրայէլի։ Քաղաք գլխաւոր էր Երուսաղէմ, կայան ճշմարիտ պաշտամանն Աստուծոյ։ Ընտրութիւն ցեղիցն սակաւ սակաւ երթայր եւ անհետ լինէր յերկուսին թագաւորութիւնսն. նոյնպէս եւ քաղաքքն ղեւտացւոց խառնէին, եւ լինէր հաստատուն իմն բաժանումն ի մէջ Իսրայէլի եւ Յուդայ։

1 Գ. Թագ. ԺԲ. — 19։ Բ. Մնաց. Ժ։
2 Տես Բ. Թագ. Ի. 1, 2։
3 Տես Բ. Թագ. Բ. 8, 9։

## 193

Ռոբովամ (972—955) թէպէտ եւ ժողովեաց վաղվաղակի զամենայն արս պատերազմողս իւր զի պատերազմաւ հնազանդեցուսցէ զցեղսն ապստամբեալս բայց Տէր դարձոյց զմիտս նորա ի ձեռն Սամեայ մարգարէի, եւ ասէր թէ ի Տեառնէ եղեն իրքն, եւ հնազանդեցին թագաւորն եւ ժողովուրդն բանին Տեառն: Տայր անրացուցանել Ռոբովամ զքաղաքս բազումս զի յապահովէ իցէ յերեսաց Յերոբովամայ, եւ պնդէր զնոսա ամենայն պիտոյիւք: Զօրացաւ թագաւորութիւն նորա անցանելով ի նա մեծի մասին քահանայից եւ ղեւտացւոց ի թագաւորութենէն Իսրայելի, եւ բազում արանց Իսրայելացւոց, եւ ամս երիս գնային Ռոբովամ եւ ժողովուրդ նորա ի ճանապարհս Դաւթի եւ Սողոմոնի:

Թուի իսկ թէ բազմութիւն կանանց եւ հարճից (յորոց բազում մանկունք ծնան) եւ բարեկեցութիւնն ածին զՌոբովամ ի կործանումն որպէս զհայրն. քանզի նա եւ ժողովուրդ նորա թողին զօրէնս Տեառն եւ անկան ի կռապաշտութիւն եւ յանառակութիւն (970): Այլ չյամեցին պատիժք պատուհասիցն:

Ի հինգերորդում ամի թագաւորութեան Ռոբովամայ՝ եւ Սուսակիմ արքայ Եգիպտացւոց բազմաձեռն գնդաւ անկանել ի վերայ Յուդայ. առնոյր զամուր ամուր տեղիս եւ հասանէր առաջի Երուսաղեմի. ազդ առար Տէր Ռոբովամայ եւ ծերոցն ժողովելոց ի ձեռն Սամեայ մարգարէի՝ թէ մատնեաց զնոսա ի ձեռս Սուսակիմայ վասն մեղաց նոցա: Իբրեւ ստրջացան՝ մեղմացոյց Տէր զդատաստան իւր, եւ խոնարհեցոյց միայն ի ձեռն Եգիպտացւոցն եւ հնազանդեցոյց զնոսա: Նմին իրի առ Սուսակիմ զԵրուսաղէմ եւ դարձաւ զանձուք տաճարին եւ թագաւորին, բայց կալաւ ժամանակ ինչ իշխանութիւն ի վերայ Յուդայ (յամէ 967): Ռոբովամ զամենայն ժամանակս 17ամեայ թագաւորութեան իւրոյ տայր գրեթէ մշտ մարտ ընդ Յերոբովամայ, բայց չգիտեմք ինչ ճշդիւ զպատերազմացն, եւ թուի թէ Ռոբովամ մնաց ի չարիսն իւր[1]:

Աբիա նորին որդի եւ յաջորդ թագաւորեաց միայն երիս ամս (955—952), եւ գնաց ըստ մեղաց հօրն իւրոյ. բայց ողորմեցաւ Տէր վասն Դաւթի եւ ետ նմա բարութիւնս եւ յաղթութիւն: Ի պատերազմին զոր ընդ Յերոբովամայ տայր՝ կամէր հաւանեցուցանելով արկանել զԻսրայելացիսն յինքն. բայց իբրեւ Յերոբովամ պաշարեաց զնա երկպատիկ զօրօք՝ յաղթեաց նմա Աբիա մինչեւ չառնուլ այնուհետեւ Յերոբովամայ ոգի ի պարտութենէ անտի, եւ առնոյր Աբիա զբազումս ի քաղաքաց նորա: Եթող նա բազում որդիս. զնա յաջորդէր ի թագաւորութեանն նորին որդի Ասա[2]:

1 Գ. Թագ. ԺԲ. 21—24: Բ. Մնաց. ԺԱ, ԺԲ: Գ. Թագ. ԺԴ. 21—31:

2 Գ. Թագ. ԺԵ. 1—8: Բ. Մնաց. ԺԳ:

## 194

Յերոբովամ Բ. (972—950) ընտրեցաւ ի թագաւորութիւն Իսրայելի ի ցեղիցն տասանցունց, եւ եդ զաթոռ իւր ի Սիւքեմ։ Եւ քանզի երկնչէր թէ գուցէ յորժամ ըստ օրինացն երթիցէ ժողովուրդն ի տաճարն Երուսաղէմ, եւ լինիցի հասարակաց իմն պաշտօն աստուածպաշտութեան՝ թերեւս պատճառք իմն լինիցին հնազանդելոյ իւրոց միւսանգամ հաշտել ընդ տանն Դաւթի. նմին իրի եւս կանգնել ի հարաւային եւ ի հիւսիսային սահմանս թագաւորութեան իւրոյ ի Դան եւ ի Բեթէլ երկուս որթս ոսկիս (ըստ օրինակի Ապիսեայ Եգիպտացւոց), այլ որպէս հաւանութեան թուի, իբրեւ պատկերս Աստուծոյ ճշմարտի եւ ոչ աստուածոց հեթանոսաց, եւ արգել երթալ յԵրուսաղէմ։ Շինեաց նա եւ մեհեանս ի բարձրաւանդակս։ Այնուհետեւ մեծ մասն քահանայիցն եւ ղեւտացւոց չոքան ի թագաւորութիւնն Յուդայ. վասն այնորիկ կացուցանէր Յերոբովամ ըստ կամացն քուրմս նորոյ պաշտամանն իւրոյ. մատոյց նա զոհս եւ խունկս պաշտեաց զպաշտօն քահանայութեանն։

Մինչդեռ անդէն ի Բեթէլ արկանէր խունկ ձուլածոյին՝ եկն մարգարէ մի Տեառն եւ եցոյց նմա թէ քակելոց է սեղանն այն եւ փշրելոց պատկերն ի ձեռն Յովսիայ ի տանէն Դաւթի. եւ վասն յայտ լինելոյ թէ արդարեւ յԱստուծոյ առաքեալ է այրն՝ հերձաւ սեղանն եւ մոխիրն որ ի վերայ նորա էր՝ ցրուեցաւ։ Հրաման ետ Յերոբովամ ունել զմարգարէն. բայց ձեռնն զոր ձգեաց՝ գօսացաւ, եւ ոչ կարէր դարձուցանել յինքն, մինչեւ աղօթիւք առն Աստուծոյ դարձաւ ձեռնն ի կենդանութիւն։ Չեղեն ինչ խրատ Յերոբովամայ այն նշանքն, եւ ոչ տխուր մահ մարգարէին, զի չդադարեաց ի մեղանչելոյ։

Ապա իբրեւ խօթացաւ որդի նորա Աբիա, չոքաւ կին նորա առ Աքիա մարգարէ հարցանել վասն մանկանն առողջութեան։ Եցոյց նմա մարգարէն զապականութիւնն Յերոբովամայ, եւ պատմեաց նմա թէ ամենայն իսկ զաւակն Յերոբովամայ սատակելոց է բռնութեամբ։ Թէպէտ եւ Աբիա եւս մեռանելոց է, սակայն թաղելոց է պատուով, զի գտաւ ինչ ի նմա բարութիւն։ Եւ ընկալին արդիւնք՝ բանք մարգարէութեան անսասանողին։

Թագաւորեաց Յերոբովամ 22 ամ, եւ էր հանապազ պատերազմ ընդ նա եւ ընդ թագաւորսն Յուդայ։ Թուի թէ ի ցաւագին հիւանդութենէ վախճանեցաւ [1]։ Պաշտօն որթոյն եւ առ պայազատօք նորա տեւէր միշտ, որպէս կարգ պատմութեանն ցուցցէ, եւ անուանեալ կոչի այն՝ մեղք կամ ճանապարհք Յերոբովամայ [2]։

1 Գ. Թագ. ԺԲ. 20, 25—33. ԺԳ. ԺԴ. — 20։ Բ. Մնաց. ԺԳ։

2 Տես Գ. Թագ. ԺԵ. 34 եւ յայլ տեղիս։

Նադաբ կամ Նաբատ (950—949) նորին որդի եւ պայազատ գնաց զճանապարհս մեղաց նորա: Յերկրորդ ամի թագաւորութեան իւրոյ պաշարեաց նա զԳաբաթոն քաղաք Փղշտացւոց. անդ սպանաւ ի Բաասայ որ էր ի ցեղէն Իսաքարայ: Իբրեւ կալաւ Բաասա զիշխան թագաւորութեանն՝ կոտորեաց ջնջեաց զամենայն տոհմն Յերոբովամայ ըստ բանի Տեառն զոր խօսեցաւ Աքիա Սիլոնացի[1]:

## 195

Ասա (952—91?) փոխանակեալ էր զհայր իւր զԱբիա: Արար նա զհաճոյսն Տեառն որպէս Դաւիթ հայր նորա: Արտաքեաց նա զերկիրն ի կռապաշտութենէ եւ յանառակութենէ որ խառն էր ընդ նմա. ընկէց նա ի պատուոյ տիկնութեան զմայր իւր զՄաաքա որ առաջնորդ իմն լեալ էր կռապաշտութեանն, եւ ջնջեաց զամենայն նշանակս պաշտաման կռոց: Զառաջին տասն ամս խաղաղութեան իւրոյ ամրացոյց նա զքաղաքս իւր եւ կազմեաց զօրս հզօրս եւ կազմս սպառազինութեան: Ապա եկն ի վերայ նորա Զարեհ արքայ Եթէովպացւոց 1,000,000 պատերազմօղօք եւ 300 կառօք տալ պատերազմ ընդ նմա, եւ խաղայր հասանէր մինչեւ ցՄարեսա: Եւ ընդ առաջ նորա Ասա յուսացեալ յԱստուած եւ կարդալով զնա: Խորտակեաց Տէր զթշնամիսն եւ պարտեալ սատակեցան: Իսկ Ասա եւ ամենայն ամբոխն նորա դարձաւ մեծաւ աւարաւ այսրէն յաշխարհն իւր (942):

Ազարիա այր լի հոգւովն Աստուծոյ եկն ընդ առաջ Ասայ եւ ժողովրդեանն եւ զգուշացոյց զնոսա կալ նոյնպէս հաւատարիմ այսուհետեւ առ Աստուած: Յայնժամ ջնջեաց Ասա ամենեւին զամենայն պղծութիւն կռոց ի Յուդա եւ ի Բենիամին եւ ի քաղաքսն զոր առ նա ի լերինն Եփրեմի: Ժողովեաց նա զժողովուրդ իւր եւ զԻսրայէլացիսն որ դաղթեալ եկեալ էին յայլոց ցեղից. եւ ի հնգետասաներորդում ամի թագաւորութեան նորա մատուցին նոքա Տեառն ողջակէզս եւ հանին մասն յաւարէն, եւ երդմնի եդին պահել զուխտն որ ընդ նմա յամենայն սրտից իւրեանց: Եւ Տէր ետ նոցա խաղաղութիւն յերեսաց թշնամեաց իւրեանց ժամանակս ոչ սակաւ:

Իսկ Բաասայ նախանձեալ ընդ յաջողութիւնն Ասայի՝ ցուցանէր թշնամութիւն եւ ամրացուցանէր զՌամա քաղաք որ էր ի գլուխ սահմանացն, որով հատաւ հաղորդութիւն ի մէջ Յուդայ եւ Իսրայէլի: Յայնժամ եմուտ Ասա միւսանգամ ի դաշինս ընդ Բեն-Ադադայ Ա. արքային Ասորւոց՝ ընդ որում դաշնաւոր էր եւ հայր նորա, առաքեալ նմա զամենայն ոսկի եւ արծաթ որ մնացեալ էր ի տաճարին եւ յարքունիսն: Բեն-Ադադ (որդի

1 Գ. Թագ. ԺԵ. 25 — 31:

Ադերայ) եղ ասպատակ ի սահմանս Նեփթաղիմայ, առ քաղաքս բազումս, և այնպէս հարկ համարեցաւ Բաասայ ի բաց կալ ի խորհրդոյ իւրմէ (յամի 937)։ Այլ երբ Անանիա մարգարէ առ Ասա և յանդիմանեաց զնա վասն դնելոյ նորա դաշինս ընդ Ասորւոց փոխանակ յուսալոյ յԱստուած։ Չթուեցաւ հաճոյ Ասայի խրատն, և եդ ունել զմարգարէն. և առնէր այլ ևս բազում բռնութիւնս։ Ապա յայնմ հետէ չէր նմա խաղաղութիւն ընդ Բաասայ։ Յերկուս վերջին ամս թագաւորութեան իւրոյ կրէր Ասա ցաւս խստութեան, և առաւել ի բժիշկսն յուսայր քան յԱստուած։ Մեռաւ նա ի քառասներորդի առաջնորդի ամի թագաւորութեան իւրոյ, և թաղեցաւ մեծաւ պատուով[1]։ Զնա յաջորդեաց Յովսափատ։

## 196

Բաասա (949 — 927) որ սատակեաց զազգն Յերոբովամայ յԻսրայելէ՝ նստաւ ի Թերսա և տայր սաստիկ պատերազմ ընդ Ասայի։ Բայց չխրատեալ ի դատաստանացն Աստուծոյ որոց ինքն կատարիչ գտաւ՝ գնայր ի ճանապարհս առաջնոց աթոռակալաց իւրոց։ Յայնժամ եցոյց և նմա Յէու որդի մարգարէին Անանեայ ապառնալեօք զսատակումն համօրէն ազգատոհմին իւրոյ, ետ նա սպանանել զմարգարէն, և ինքն մեռաւ թագաւորեալ ամս 24։

Նորին որդի Եղա (927 — 926) որ ոչ լաւ ինչ քան զնա էր՝ անդէն յերկրորդում ամի թագաւորութեանն յորժամ ի գինիս էր ի հացի՝ սպանաւ ի զօրաւարէն իւրմէ Զամբրեայ. և յետ այնորիկ եհար Զամբրի զամենայն ազգատոհմն Բաասայ ըստ բանի Տեառն զոր խօսեցաւ Յէու։

Եւ իբրև լու եղև զօրուն որ էին առաջի Գաբաթոնի՝ որ ինչ անցք ի Թերսա անցին, կացուցին զԱմրի թագաւոր Իսրայելի (926 — 925)։ Խաղաց Ամրի վաղվաղակի ի վերայ Թերսայ, և իբրև չունէր Զամբրի ակն պաշտպանելոյ քաղաքին՝ հրձիգ արար զտունն արքունի և մեռաւ ինքն անդէն ի նմին ի մեղս իւր։ Թէպէտ և ընտրեաց յայնժամ մասն մի ժողովրդեանն զԹամնի ի թագաւորութիւն, բայց և նմա յաղթեաց Ամրի և թագաւորէր միայն (յամի իբրև 920)։ Յետ այնորիկ գնեաց Ամրի զլեառն Սամարիա և շինեաց անդ քաղաք անուն անուանակից, և արար քաղաք գլխաւոր թագաւորութեանն։ Բայց արար նա չարիս առաջի Տեառն առաւել քան զառաջինսն իւր և գնաց յամենայն ճանապարհս Յերոբովամայ մինչև մեռաւ թագաւորեալ ամս երկոտասան[2], թողեալ ժառանգ թագաւորութեանն զԱքաաբ։

1 Գ. Թագ. ԺԵ. 9 — 24։ Բ. Մնաց. ԺԳ — ԺԶ։

2 Գ. Թագ. ԺԵ. 27 — 34. ԺԶ. 1 — 28։

փառք անդ էր։ Ընկալաւ ամենայն ժողովուրդն ի վերայ երեսաց իւրոց եւ ասէ. Տէր է Աստուած։ Հրաման ետ նոցա Եղիա ունել զքուրմսն Բահաղու եւ կոտորել, եւ կատարեցաւ հրամանն։ Ապա խոստացաւ մարգարէն Աքաաբու թէ հասցէ անձրեւն որում ցանկացեալ են. եւ իբրեւ լուաւ նա զառատաձայն անձրեւին՝ փութացոյց զնա դառնալ ի տուն զի մի ըմբռնեսցէ զնա։ — Այսպէս ապրեցաւ Իսրայէլ ի հարուածոյ երկրին (յամի իբրեւ 905)[1]։

Այլ իբրեւ ազդ եղեւ Յեզաբելայ կոտորած քրմացն Բահաղու՝ բարկացաւ եւ երդուաւ ի դիսն իւր սպանանել նոյնպէս զԵղիա։ Իսկ Եղիա փախուցեալ գնաց յանապատն Արաբացւոց. անդ խռովեալ ցանկայր մահու առ ի չտեսանելոյ զչարիս ժողովրդեան իւրոյ, եւ ննջեաց ի քուն։ — Զարթոյց զնա հրեշտակ մի Աստուծոյ եւ զօրացոյց զնա սքանչելապէս կերակրով եւ ըմպելեօք, զի գնաց կերակրովն մարգարէն ըստ հրամանի հրեշտակին զ40 տիւ եւ զ40 գիշեր մինչեւ ցլեառն Քորէբ։

Անդ յայտնեցաւ նմա Աստուած ի հնչեւն մեղմ օդոյ, որ էր գեղեցիկ ինչ օրինակ ազնուութեան նորա, եւ ամբաստանաւն իմն յանդիմանութիւն Եղիայի վասն կարի սաստիկ նախանձուն նորին։ Իբրեւ եցոյց Եղիա Տեառն զվիշտս իւր՝ հրաման ետ նմա Տէր երթալ ի Դամասկոս եւ օծանել զԱզայէլ զծառայ Բեն-Ադադայ Բ. թագաւոր Ասորւոց, եւ զՅէու զորդի Նամեսայ (Ամեսայ)՝ թագաւոր Իսրայէլի։ Եւ զԵղիսէ (զԵղիշայ) զորդի Սափատայ կարգել մարգարէ փոխանակ իւր։ Իբրեւ էջ մարգարէն ի լեռնէ անտի՝ պատահեաց նա Եղիսէի, եւ արկ նա զվերարկուն ի վերայ նորա։ Եւ եղեւ հոգի Տեառն ի վերայ Եղիսէի եւ գնաց զհետ Եղիայի եւ եղեւ ընկեր նորա յայնմ հետէ[2]։

## 198

Յամի ութեւտասներորդի թագաւորութեանն Աքաաբու (յամի իբրեւ 897) ել ի վերայ նորա պատերազմաւ Բեն-Ադադ Բ. արքայ Ասորւոց որոյ էին 32 իշխանք հարկատուք ի զօրու նորա։ Յանդգնագոյնս իմն խնդրէր Բեն-Ադադ համարձակութեամբ զգանձս, զկանայս եւ զորդիս Աքաաբու. Աքաաբ վհատեալ հաւանեցաւ. բայց նա յաճախէր խնդրել մեծամեծս, եւ իբրեւ չառին յանձն՝ խաղաց եկն առաջի Սամարիայ. եւ պաշարեաց զքաղաքն։

Եկն այր մարգարէ եւ ցուցանէր Աքաաբու թէ կամ է Աստուծոյ տալ ի ձեռս նորա զմեծ զօր թշնամեացն ի ձեռն ծառայից իշխանացն Իսրայէլի, թէ միայն ինքն թագաւորն սկիզբն

1 Գ. Թագ. ԺԶ. 29... ԺԷ, ԺԸ...: Զերաշտութիւնն զայն որ ձգէր մինչեւ ի սահմանս Փիւնիկեցւոց առ Իթոբաղ թագաւորաւ՝ յիշէ եւ Մենանդրոս Եփեսացի առ Յովսեպոսի՝ Հնախ. Ագիանն Ա։

2 Գ. Թագ. ԺԹ։

տարածցէ պատերազմին. առաջ եղեն 232 կառապարձակներն. զհետ եղեն նոցա զօրքն Իսրայէլի 7000 այր։

Թէպէտ եւ հրաման տուեալ էր Բէն-Ադադայ ունել զնոսա կենդանւոյն, բայց փոխանակ նոցա փախեան այլքն նորա եւ ինքն Բէն-Ադադ այրձիւ մազապուր ընդ հեծելազօրուն, եւ արար Թագաւորն Իսրայէլի յաղթութիւն մեծ։

Ի գալ ամին միւսոյ խաղաց այլովք զօրօք Բէն-Ադադ եւ բանակեցաւ առ Ափեկաւ ի խոր Ասորիս, հաստատութեամբ ի մտի եղեալ յաղթել ի դաշտի, քանզի ասէր թէ աստուածք լերանց են աստուածքն Իսրայէլի։ Յանդիմանն նոցա բանակեալ նստէին Իսրայելացիքն բաժանեալ յերկուս գունդս սակաւաձեան յայծ, ուր նոքա ողողանէին իմն զերեսս երկրի։ Բայց մի աստուածային այր մի մարգարէ պատմէր յաղթութիւն Աքաաբու, զի ի միտ առցեն Ասորիքն թէ Աստուած է Տէր։ Յետ եւթն աւուրց հարկին Իսրայելացիքն ի ճակատու 100,000 ի թշնամեաց, եւ աւելի քան զ27,000 անկան ի ներքոյ պարսպացն Ափեկայ որ կործանեցան ի ի վերայ նոցա։ Բէն-Ադադ խոնարհեալ անկեալ ի փառաւորութիւն՝ խնդրէր յԱքաաբայ զոնէ զկենաց շնորհել. եւ Աքաաբ չարաչար իմն մարդասիրութիւն ցուցեալ՝ արար ընդ նմա դաշինս խաղաղութեան, զի խոստացաւ նմա Բէն-Ադադ զամենայն կողմանսն զոր առեալ էր՝ դարձուցանել յետս։ Ի վերայ հասանէր այր մարգարէ եւ պատմէր Աքաաբու ընդ այնր՝ պատուհաս պատրաստեալ յԱստուծոյ։ Իսկ Աքաաբ փոխանակ գոհանալոյ վասն յաղթութեանն զոր Տէր ետ նմա՝ արհամարհեաց զբանս նորա եւ դարձաւ մեկեզին ի Սամարիա[1]։

## 199

Մանաւանդ թէ յաւել չարիս ի վերայ չարեացն. իբրեւ կամեցաւ նա ընդարձակել զանդն դրախտին իւրոյ ի Յեզրայէլ՝ ցանկացաւ նա կալուածոց ժառանգութեան առն ուրումն որում Նաբովթ անուն էր. իբրեւ չառ յանձն տալ Նաբովթ զագարակն՝ վհատեցաւ եւ տրտմեցաւ։ Յեզաբէլ կին նորա եգիտ զնա իրացն. կացոյց սուտ վկայս զայրդարոյն Նաբովթայ որպէս թէ հայհոյեաց Նաբովթ զԱստուած եւ զարքայ, եւ այնպէս քարկոծ եղեւ այրն։

Եւ Աքաաբ երթայր առնուլ զանդն զոր արեամբն ստացաւ։ Ել յայնժամ եւ Եղիա մարգարէ ընդ առաջ նորա եւ ասէ. „Այսպէս ասէ Տէր. Դու սպաներ եւ ժառանգեցեր... ի տեղւոջ ուր լափեցին շունք եւ խոզք զարիւն Նաբովթայ, անդ լափեսցեն զարիւն քո„։ Ապա պատմեաց նա թէ եկեալ կայ առ կուրծս կործանումն տան նորա, զի արարէ Աստուած ընդ նա զոր ինչ արար

1 Գ. Թագ. Ի։

ընդ տունն Յերոբովամայ եւ ընդ տունն Բաասայ: Եւ զկնոջէ թագուհւոյն ասէ. “Շունք կերիցեն զնա առ պարսպաւն Յեզրայելի”:

Աքաաբ որ դրդեալ էր ի Յեզաբելայ եւ իբրեւ վաճառակուր եղեալ ի ձեռս նորա առնել չար առաջի Տեառն, ապաշխարս իմն ցուցանէր եւ խոնարհէր առաջի Տեառն: Իբրեւ ետես Տէր թէ երկեաւ յերեսաց իւրոց՝ յամեցոյց զպատուհաս իւր ի վերայ տանն Աքաաբու մինչեւ ցմահ նորա[1]: Բայց ոչ յերկարեաց կալ:

Բեն-Ադադ սակայն երդմամբն չկատարէր զպայմանս դաշանցն: Նմին իրի իսկ եդ ի մտի Աքաաբ արշաւել յերկիր նորա, եւ խնդրեաց թիկունս օգնականութեան ի Յովսափատայ արքայէ Յուդայ: Յանձն առ Յովսափատ, բայց նախ խնդրեաց զի հարցցէ Աքաաբ զՏէր: Չորեքհարիւր սուտ մարգարէք մարգարէանային դաշնաւորացն՝ յաղթութիւն. բայց Յովսափատ չհամարեցաւ զնոսա բաւական, եւ ասէ թէ պարտ է հարցանել զմարգարէ մի Տեառն: Յայնժամ ակամայ ուրեմն յանձն առ Աքաաբ առաքել կոչել զՄիքիա մարգարէ, քանզի համակ չարիս մարգարէանայր զնմանէ Միքիա: Եկն եւ առաջի Միքիա, եւ նախ յայտ արարեալ թէ խաբեալ պատրեալ է արքայ ի սուտ մարգարէիցն, մարգարէացաւ նմա թէ պարտեալ մեռանելոց է նա ի Ռամովթ:

Իսկ Աքաաբ եդ դնել զնա ի բանտի իբրեւ սուտ, եւ ելեալ չոգաւ ընդ Յովսափատու: Եւ բառ խորամանկ Յովսափատու ծպտեցաւ եւ եթող զհանդերձ թագաւորութեան իւրոյ զի մի ծանիցեն զնա. բայց չկարէր ապրել յաստուածեղէն դատաստանացն: Ոմն յաղեղնաւորաց թշնամեացն արձակեաց զնետ իւր խառն ի խուռն, եւ վիրաւորեաց ի մահ զԹագաւորն. Հրամանն ետ Աքաաբ կառավարին դառնալ փութանակի յետս, եւ ընդ երեկս մեռաւ: Ածաւ դիակն նորա ի Սամարիա. իսկ զկառսն լուացին յաւազանին եւ շունք եկեալ լակեցին զարիւն նորա ըստ բանին Տեառն[2]:

## 200

Ոքոզիա կամ Աքազիա (894—893) յաջորդէր զհայրն ոչ ի թագաւորութեանն միայն՝ այլ եւ ի կռապաշտութեանն, եւ զրգռեաց զբարկութիւն Աստուծոյ որպէս եւ Աքաաբ[3]: Երկրորդ ամի թագաւորութեան իւրոյ անկաւ նա ի վանդակապատէ վերնատանն իւրոյ եւ խօթացաւ: Յայնժամ առաքեաց նա առ Բահաղ Ճանճիկ (Բեեղ-Զեբուբ) աստուածն փղշտացւոց յԱկկարոն խնդրել թէ արդեւք ապաքինեսցի: Ել Եղիա մարգարէ հրամանաւ Աստուծոյ ընդ առաջ հրեշտակաց թագաւորին եւ ասէ. որովհետեւ առաքեաց Ոքոզիա առ Բահաղ Ճանճիկ հարցանել զնա, մեռանելոց է անդէն յախտի իւրում:

1 Գ. Թագ. ԻԱ: 2 Գ. Թագ. ԻԲ: 3 Գ. Թագ. ԻԲ. 40, 52—54:

Իսկ Թագաւորն իբրեւ խնդրեաց ի բանից անտի ծառայից իւրոց թէ Եղիա է այն՝ առաքեաց երիցս յիսնապետս ունել զմարգարէն։ Առաջին երկու գունդքն սպառեցան ի հրոյ որ անկաւ յերկնից ի վերայ նոցա, քանզի յանդգնագոյնս իմն եկին ի վերայ մարգարէին. իսկ յիսնապետն երրորդ եւ գունդն նորա եդ մեծարանս Եղիայի. յայնժամ չոգաւ Եղիա զհետ նորա հրամանաւ Աստուծոյ։ Միւսանգամ զնոյն բանս խօսեցաւ առաջի Ոքոզիայ թէ չէ ապաքինելոց յախտէն, եւ մեռաւ իսկ Թագաւորն ըստ բանին Տեառն զոր խօսեցաւ Եղիա, եւ պայազատեաց զնա եղբայր նորա Յովրամ, քանզի ինքն անորդի էր [1]։

## 201

Արդ հասեալ էր ժամանակ վերացուցանելոյ Տեառն զԵղիա շարժմամբ յերկինս, եւ գնաց Եղիա հրամանաւ Աստուծոյ յԵրիքով. երթայր ընդ նմա եւ հաւատարիմ աշակերտ նորա Եղիսէ, քանզի չկամէր թողուլ զնա։ Իբրեւ եհաս Եղիա յեզր Յորդանան գետոյ՝ բաժանեաց մաշկեկաւն զգետն, եւ անցին երկոքին յայնկոյս։ Ապա ասէ Եղիա ցԵղիսէ. «Խնդրեա զինչ արարից քեզ մինչ չեւ վերացեալ իցեմ ի քէն»։ Եւ Եղիսէ պատասխանի եւ ասէ. եղիցի կրկին ոգի քո ի վերայ իմ։ Նա եւս պատասխանի թէ դժուարինս խնդրեցեր. բայց յորժամ տեսցես զիս վերացեալ ի քէն՝ եղիցի զոր խնդրեցերդ։

Եւ մինչ դեռ երթային ի միասին եւ խօսէին՝ անդէն իջին կառք հրեղէնք եւ երիվարք հրեղէնք (թերեւս փայլուն ինչ ամպ ի նոյն կերպարանս), եւ բաժանեցան ի միմեանց, եւ վերացաւ Եղիա շարժմամբ եւ մրրկաւ յերկինս։ Իսկ Եղիսէ հայէր եւ աղաղակէր. «Հայր, հայր. կառքդ Իսրայելի եւ կառավար նորա»։ եւ այլ ոչ եւս ետես զնա։ Ապա առ նա զմաշկեակն Եղիայի, դարձաւ յափն Յորդանանու եւ բաժանեաց զգետն, որպէս արար Եղիա։ Իսկ մանկունք (աշակերտք) մարգարէիցն որ մնացեալ էին յայնկոյս գետոյն, ի միտ առին թէ անց հոգին Եղիայի ի վերայ Եղիսէի, եւ եդին նմա մեծարանս։ Բայց սակայն առաքեցին նոքա արս խնդրել զԵղիա, թէպէտ եւ հակառակ կայր այնմ Եղիսէ, այլ նա ոչ գտաւ [2]։

Զարմանալի վերացումն Եղիայի եւ զգալուստն նորա զի գալոց է երբեմն՝ հաստատեն բանք գրոց սրբոց, մանաւանդ գովութիւնն Յեսուայ որդւոյ Սիրաքայ [3]։ Երեւեցաւ Եղիա ընդ Մովսեսի յորժամ յայլակերպեալն եղեւ Քրիստոս [4], եւ ըստ կարծեաց Հարցն համարի նա ընդ Ենովքայ լինել յերկուց վկայից

1 Դ. Թագ. Ա։
2 Դ. Թագ. Բ. — 18։
3 Սիրաք ԽԸ. — 13։ Ա. Մակաբ. Բ. 58։ Տես Մաղաք. Դ. 5. 6։
4 Մատթ. ԺԷ. 3, 4. եւ այլուր։

անուն՝ որ երեւելոց են միւսանգամ յառաջ քան զկատարած աւուրց[1]:

## 202

Յովրամ արքայ Իսրայելի (893—881) Թէպէտ եւ պաշտէր զպատկերսն Յերոբովամայ, սակայն գոնեայ բարձ զպաշտօնն Բահաղու, զոր պաշտէին հարքն նորա:

Ընդէն ի ժամանակի Թագաւորութեան եղբօր իւրոյ Ոքոզիայ կացեալ էին ի նմանէ յետս Մովաբացիք որ հարկատու էին Իսրայելի. ի մտի եղեալ Յովրամայ հնազանդել զնոսա (յամի իբրեւ 892), արար իւր Թիկունս օգնականութեան զՅովսափատ, եւ անցին միաբան ընդ սահմանս Իդումայեցւոցն որ էին հարկատու Յովսափատայ, եւ Թագաւորն նոցա եկն ընդ նոսա ի պատերազմ: Յետ եւթն աւուրց պակասեաց նոցա ջուր. յայնժամ հարցին ըստ խրատու Յովսափատայ զԵղիսէէ մարգարէ: Հրաման ետ սա նոցա փորել ըստ բանին Աստուծոյ գուբս գուբս ի վերայ հեղեղատին ցամաքելոյ, ցուցեալ Թէ առանց հողմոյ կամ անձրեւաց լցցի հեղեղատն ջրով, եւ տացէ Աստուած զՄովաբացիսն ի ձեռս ձեր:

Եւ ընդ առաւօտն իբրեւ ծագեաց արեւ ի վերայ ջուրցն եւ երեւէր կարմրութիւն՝ համարեցան Մովաբացիք Թէ կռուեցան ուրեմն ընդ միմեանս Թագաւորքն եւ յարենէ նոցա ներկաւ հեղեղատն, եւ դիմեցին յառ եւ յաւար: Այլ սոքա անտի ի վերայ յարձակեալ հարին եւ խորտակեցին զնոսա իսպառ. աւար հարին զամենայն երկիր նոցա եւ զԹագաւորն նոցա անդէն ի գլխաւոր քաղաքին պաշարեցին: Յայնժամ զիւր որդին եւ զպայազատ Թագաւորութեան ի վերայ պարսպաց քաղաքին մատուցանէր ողջակէզ, զի ածցէ ի հաշտութիւն զդիսն. իբրեւ ետես զմոլեգնութիւնն՝ Իսրայէլ, Թող զպաշարումն եւ դարձաւ յետս[2]:

## 203

Ի ժամանակի զի ըստ Աստուծոյ իսկ ասելոյ՝ միայն 7000 այր գոյր յԻսրայելի որոց չէր կրկնեալ ծունր Բահաղու[3], ծաղկեալ պայծառանայր ի Թագաւորութեանն Յուդայ աստուածպաշտութիւն առ Յովսափատաւ որդւով եւ յաջորդաւ Ասայի (912—890): Այս Թագաւոր աստուածապաշտ երԹայր զճանապարհ հօրն իւրոյ Դաւթի: Եբարձ նա զմնացեալ կամ զնորոգեալ բարձունսն եւ զծառսն անտառախիտս՝ ընդ որովք զոհէին կռոց, եւ ջնջեաց առհասարակ զամենայն պղծութիւն կռոց: Եւ առաքեաց զիշխանս ժողովրդեանն հանդերձ քահանայիւք եւ ղեւտացւովք շրջել ընդ երկիրն ամենայն, եւ ընթեռնուլ առաջի ժողովրդեանն

1 Յայտ. ԺԱ. 3—13: 2 Դ. Թագ. Գ: 3 Գ. Թագ. ԺԹ. 18:

զդիրս օրինացն եւ ուսուցանել զնոսա։ Պատրաստեալ յօրինեաց զկարգս դատաստանացն, կարգեալ իւրաքանչիւր քաղաքի մի մի ատեան դատաստանաց, եւ զամենայն ատեանսն դատաստանաց կացոյց ընդ վերադոյն դատաստանաւ ատենին Երուսաղեմի։ Եւ բարւոքն տնտեսութեամբ եւ մեծարանօք որով մեծարէին զնա հնազանդեալք նորա՝ ժողովեաց նա բազում հասս յերկրէն, եւ Փղշտացիք եւս եւ Արաբացիք հարկանէին նմա հարկս։ Եւ այնպէս բաւական էր նա զօր բազմամբոխ ունել պատրաստական, եւ առնել զթագաւորութիւն իւր ահեղ եւ փառաւոր[1]։

Բայց այնու իմն վրիպեաց Յովսափատ, զի որդւոյ իւրում Յովրամայ ած կնութեան զԳոդողիա (զԱթաղիա) դուստր Աքաաբու եւ Յեզաբելայ, զթոռն Ամրեայ։ Եւ զայսր զհետ եկն նախարշաւան նորա ի վերայ Ասորւոցն խառն ընդ Աքաաբու (յամի իբրեւ 897)։ Մեռաւ Աքաաբ ի ճակատուն, իսկ Յովսափատ անկաւ ի վտանգ մահու, քանզի թշնամիքն համարեալ զնա զառաջինն թէ ինքն Աքաաբ իցէ՝ կուտեցան ի վերայ նորա, մինչեւ իմացան թէ չէ նա[2]։ Յանդիմանեցաւ նա եւ ի Յէուայ մարգարէէ[3]։

Սակայն արար Յովսափատ հաղորդութիւն վաճառականութեան ընդ Ոքոզիայ արքայի Իսրայելի տալեալ յօրինել տորմիղ նաւաց ի Գասիոնգաբեր. բայց ի միրկէ խորտակեցաւ, որպէս առացեալ էր նմա յառաջագոյն Եղիազար մարգարէ[4]։ Միւսանգամ հաւանեցաւ Յովսափատ Յովրամայ, ձեռն տալ նմա ի մարտ պատերազմի ընդ Մովաբացւոցն (յամի իբրեւ 892), եւ յաղթեցաւ պատերազմին[5]։ Բայց միաբանեցին այնուհետեւ Մովաբացիք ընդ Ամոնացւոց. յարեցան ընդ նոսա եւ Եդոմմայեցիք եւ միանգամայն դիմեցին մինչեւ ցԵնգադդի ի վերայ Յովսափատու։ Յանժամ կարդաց Յովսափատ եւ ամենայն ժողովուրդն նորա առ Տէր։ Ոզիէլ ղեւտացի մարգարէացաւ յաղթութիւն, եւ անկաւ թագաւորն եւ ամենայն ժողովուրդն յերկիր եւ երկիր պագին Տեառն։ Ի վաղիւ անդր խաղացին գնացին յանապատն Թեկուայ։ Քաջալերեաց զնոսա թագաւորն, կացոյց զերգեցիկսն առաջի զօրուն, եւ ետ նուագել զհարիւրորդ երեսներորդ հինգերորդ Սաղմոսն։ Ապա անկան ընդ միմեանս թշնամիքն եւ սպանեցին զիրեարս։ Զերիս աւուրս բաժանեցան հրեայք զաւար բանակին։ Ի չորրորդումն գոհացան զՏեառնէ։ Վասն այնորիկ կոչեցաւ տեղին Ձոր օրհնութեան. ապա դարձան ուրախութեամբ ի տունս իւրեանց։ Յայնմ հետէ ի խաղաղութեան էր Յովսափատ եւ մեռաւ 60 ամաց. զնա յաջորդեաց որդի նորա Յովրամ (յամի իբրեւ 890) ի թագաւորութեանն Յուդայ[6]։

1 Բ. Մնաց. ԺԷ, ԺԹ։
2 Բ. Մնաց. ԺԸ։
3 Բ. Մնաց. ԺԹ. 2, 3։
4 Բ. Մնաց. Ի. 35 — 37։ Տես Գ. Թագ. ԻԲ. 49 — 50։
5 Դ. Թագ. Գ։
6 Բ. Մնաց. Ի. — 34. ԻԱ. 1։

## 205

Ընդէն ի ժամանակի սոյն դէպ եղեւ զի Բէն-Ըդադ Բ. որ ոչ ունէր զշնորհական միտս զօրավարին իւրոյ, եւ պատերազմ ընդ Յովրամայ արքայի Իսրայելի (890)։ Բայց Եղիսէ դաստիարակացոյց զգործս նորա պատմեալ Յովրամայ զխաղմունթիւն եւ զպատրաստութիւն Ասորւոցն։ Իբրեւ զայն իմացաւ Բէն-Ըդադ՝ առաքեաց հեծեալս եւ կառս որք եկին պաշարեցին զԴովթայիմ մօտ ի Սամարիա՝ ուր բնակեալ էր մարգարէն, զի ածիցեն զնա ի բուռն։ Զահի հարեալ պատանեկին Եղիսէի պատմեաց նմա թէ գունդք եկեալ են. բայց Եղիսէ եկաց յաղօթս զի բացցին աչք պատանեկին, եւ բացան եւ ետես պատանեակն զի լի էր լեառնն հրեղէն կառօք եւ երիվարօք, զի յայտ լիցի թէ Տէր պաշտպանէ իւրոցն։ Աղաչեաց դարձեալ Եղիսէ զի հարցէ տէր շլացութեամբ զաչս Ասորւոցն. ապա մատոյց զանձն Եղիսէ առաջնորդ լինել նոցա եւ ած տարաւ զնոսա ի Սամարիա։ Անդ ուրեմն բացան աչք նոցա եւ ի միտ առին թէ ի գլխաւոր քաղաքի թշնամեաց են եւ անկեալ ի ձեռս նոցա։ Բայց ըստ պատուիրանին Եղիսէի չհասուցին ինչ նոցա վնաս. այլ մանաւանդ տուաւ նոցա ուտել եւ ապա դարձան խաղաղութեամբ յերկիրն իւրեանց։ Յայնմ ժամանակէ հետէ դադարեցին Ասորիք գնել ասպատակ յերկիրն Իսրայելի։

Բայց յետ սակաւ ինչ միոյ պաշարեաց Բէն-Ըդադ զՍամարիա ամենայն զօրօք իւրովք (885), եւ այնչափ սաստկացաւ սովն ի քաղաքին, զի գլուխ մի իշոյ վաճառէր 80 սկեղ արծաթոյ, եւ չափ ինչ աղբոյ աղաւնեաց՝ 5 արծաթոյ (որ ըստ այժմու դահեկանաց՝ առաջինն է 48—50 ֆլոր. եւ երկրորդն՝ 3 ֆլոր.), նա եւ կին մի եփեաց եւ եկեր զորդեակն իւր։ Զայս իբրեւ լուաւ Յովրամ, թէպէտ եւ պատառեաց առ տրտմութեանն զպատմուճան իւր, այլ երդուաւ տալ գլխատել զԵղիսէ, իբրեւ թէ նա ինչ պատճառք իցէ սովոյն։

Այլ գնաց թագաւորն ի տուն մարգարէին, եւ անդ միայն նմա հանդարտիկ՝ մարգարէն, եւ պատմեաց նմա թէ վաղիւ չաւասասէ իմն առատութիւն եւ յղփութիւն լինիցի, գրիւ մի նաշհւոյ լինիցի սկեղ միոյ (իբրեւ 1/8 ֆլոր.) եւ երկու գրիւ գարւոյ նոյնչափոյ։ Եւ ահա յաւուրն երկրորդի իբրեւ բորոտք ոմանք յուսահատ լեալ ի կենաց իւրեանց կամէին անցանել ի բանակն Ասորւոց՝ գտին թափուր ի մարդկանէ զբանակն։ Վասնզի զարհուրեցոյց Տէր զնոսա ի շաչիւն կառաց եւ ի բարբառ զօրու մեծի, մինչեւ թողուլ նոցա զամենայն կահ եւ կազմած եւ փախչել։ Եկին բերին բորոտքն աւետիս ի Սամարիա, եւ աւար առին Իսրայելացիքն զամենայն կահ եւ զգանձ բանակին, եւ եղ ի գլուխ բան մարգարէին[1]։

1 Դ. Թագ. Զ, Է։

Այսպէս դարձոյց միւսանգամ Եղիսէ զկինն Սոմնացի յագարս եւ ի տնացուածս իւր, եւ ինքն չոգաւ ի Դամասկոս: Ընդ յախտ անկեալ դնէր Բեն-Ադադ Բ. որ առաքեաց զծառայ իւր զԱզայէլ հարցանել զնա թէ ապաքինեսցի: Ետ պատասխանի մարգարէն եւ ասէ. երթ եւ ասա ցնա, թէ ողջասցիս: Բայց ծանոյց ինձ Տէր թէ մահու մեռանելոց է: Այսպէս հայեցաւ այրն Աստուծոյ յերեսն Ազայէլի եւ ելաց. եւ իբրեւ եհարց զնա Ազայէլ, եցոյց նմա թէ վասն չարեացն լոյ զոր առնելոց է Ազայէլ ի վերայ Իսրայէլի. քանզի թագաւոր լինելոց է Ասորւոցն:

Դարձաւ Ազայէլ յետս եւ պատմեաց տեառն իւրում թէ ողջասցի. որ եւ փութանակի զքանչելեօք ել ի գլուխ, որպէս հաւանութեան թուի: Այլ ի վաղիւ անդր հեղձոյց Ազայէլ մաքմանաւ (ընկողնով) թացելով զարքայ Բեն-Ադադ Բ. եւ թագաւորեաց փոխանակ նորա (յամի իբրեւ 890)[1]:

## 206

Իսկ ի Յուդա կացեալ էր թագաւոր Յովրամ (890—884) որդի աստուածապաշտն Յովսափատու. յետ լինելոյ սա երկու-բարձակից հօրն թագաւորութեան, որպէս հաւանութեանն թուի. Այնու իսկ սպառ սկիզբն առանձինն թագաւորութեան իւրոյ՝ զի եա կոտորել զվեց եղբարսն իւր, որոց զանձս բազումս եւ քաղաքս ինչ ամուրս թողեալ էր Յովսափատ, եւ զբազումս ի մեծամեծացն: Եւ գնաց նա ի ճանապարհս Աքաաբու կռապաշտի, զի դուստր նորա Գոդողիա էր նորա կնութեան:

Յայնժամ բերին նմա գիր մի գրեալ յԵղիայէ՝ զոր թերեւս ի կենդանութեան իւրում մարգարէութեամբ գրեաց Եղիա զի յետոյ երբեմն տացեն զնա Յովրամայ յորժամ ապստամբեսցէ ի Տեառնէ: Նշանակեալ կային ի գրի անդ պատիժքն Աստուծոյ ի վերայ Յովրամայ վասն կռապաշտութեանն նորա եւ անագորունութեան, եւ ամենեքին ելին ի գլուխ բանքն:

Քանզի նախ Եդովմայեցիքն նշկահեցին զնա եւ ընտրեցին իւրեանց թագաւոր ինքնորէն ազէկամի. Թէպէտ խաղաց ի վերայ նոցա Յովրամ եւ յաղթեաց, բայց նուաճել զնոսա միւսանգամ ոչ կարաց, այլ ելին նոքա յազատութիւն: Այսպէս յարեան Փղշտացիքն, եղեն դաշնաւոր ընդ Արաբացւոց, եւ ասպատակ եղեալ քանդէին եղծանէին զերկիրն Յուդայ. նա իջանեցին զաղ եւ ի վերայ Երուսաղեմի, աւարէին կապուտ կողոպուտ զապարանս թագաւորին, եւ խաղացին տարան զկանայս եւ զորդիս թագաւորին թողեալ միայն զկրտսերագոյն քան զամենեսին զՕքոզիա. քանզի ոչ կամէր Տէր թէ ջնջեսցի ամենեւին տունն Դաւթի:

1 Դ. Թագ. Ը. — 15:

Իբրեւ մտանէր Յէու ի Յեզրայէլ՝ հայէր Յեզաբէլ ծար-բեալ զաչս իւր եւ զարդարեալ զգլուխ իւր ընդ պատուհանն ի վե-րայ դրան քաղաքին, եւ գոչէր՝ Միջոյն իցէ Զամբրի տիրասպան։ Վաղվաղակի հրաման ետ Յէու երկուց ներքինեացն որ կային առ նմա արկանել զնա ի վայր։ Ընկեա Յեզաբէլ եւ կոխեցին զնա առաթուր երիվարքն։ Իբրեւ կեր եւ արբ Յէու՝ հրամայեաց նա թա-ղել զՅեզաբէլ, այլ ոչ գտին ի նմանէ բայց զգագաթն եւ զոտսն եւ զթաթս ձեռացն. եւ ասէ Յէու. այսպէս խօսեցաւ Տէր ի ձեռն Եղիայի ծառայի իւրոյ, թէ ի վիճակին Յեզրայելի կերիցեն շունք զմարմինս Յեզաբելայ. եւ եղիցի դին Յեզաբելայ իբրեւ աղբ ի վերայ երեսաց անդոյ վիճակին՝ զի մի լինիցի ասել, եթէ այս է Յե-զաբէլ [1]։

## 208

Յառաջ վարէր Յէու զահագին գործ իւր ջնջելոյ զտունն Աքաաբու. 70 որդիք էին Աքաաբու ի Սամարիա ընդ դայեկու-թեամբ ծերոցն։ Առաքեաց նոցա Յէու յղել նմա զգլուխս ար-քայորդւոցն. անսացին ծերքն եւ բերին զգլուխս նոցա ի Յեզրայէլ եւ անդ եդ զնոսա Յէու երկուս զրահանս առ դրան քաղա-քին։ Հրամայեաց Յէու եւ սպանին նոյնպէս զմնացեալ ազգա-կանս Աքաաբու ի Յեզրայէլ։ Ապա գնաց նա ի Սամարիա. զճա-նապարհայն պատահեաց ազգականացն Ոքոզիայ, զի գային ող-ջունել զՅովրամ եւ զկին նորա։ Ետ ունել զնոսա Յէու եւ կո-տորել. եւ էին նոքա ոգիք 42։

Ինքն Ոքոզիա փախուցեալ էր ի սպանմանէն Յովրամայ, եւ թաքուցեալ էր զանձն ի տան դրախտին։ Գտաւ նա ի Սամարիա եւ հարաւ հրամանաւ Յէուայ ի մահ անդէն ի կառսն իւրում, եւ մեռաւ նա ի Մակեդդով. թաղեցաւ նա ի գերեզմանի հարցն իւրոց քանզի թոռն էր Յովսափատայ (883)։ Եւ մնացեալքն յազ-գականաց նորա կոտորեցան։

Ապա կարծեցուցեալ Յէուայ թէ պատրաստէ տօն մեծ Բահա-ղու, հրաման ետ սպառնալեօք մահու ժողովել քրմաց եւ մար-գարէից եւ սպասաւորացն Բահաղու ի մեհեանն նորա, եւ ապա պատուէր ետ պաշարել զմեհեանն եւ կոտորել զնոսա ի ներքս. ապա ջնջեաց նա ամենեւին զպաշտօնն Բահաղու յԻսրայելէ։

Մինչեւ ցայն վայր Յէու իբրեւ գործի Աստուծոյ արդարու-թեանն գործէր, որպէս եւ ինքն գիտէր եւ յայտ առնէր. բայց սակայն չխրատեցաւ ինքն, եւ ի ժամանակի անդ թագաւորու-թեան իւրոյ (884—856) ոչ դադարեաց ի կռապաշտութենէն Յերոբովամու։ Թէպէտ եւ խոստացաւ նմա Տէր պահել զզաւակ նորա ի թագաւորութեան մինչեւ ցչորրորդ ազգ, քանզի կատա-

1 Դ. Թագ. Թ։

բեւաց զհրաման նորա զոր հրամայեաց ի վերայ Աքաաբու, բայց քանզի ոչ դադարէր Յէու ի մեղացն Յերոբովամայ՝ տանջեաց զնա Տէր եւ զժողովուրդ նորա ի ձեռն Ազայելի արքայի Ասորւոց, որ անցոյց զչարիսն ընդ երկիրն որ յայնկոյս Յորդանանու էր (ընդ Գաղաադ) որպէս տեսեալ էր յառաջագոյն Եղիսէ, եւ եհան զկողմանսն զայնոսիկ տակաւ ի թագաւորութենէն Իսրայելի: Իսկ զՅէու յաջորդէր որդի նորա Յովաքազ [1]:

## 209

Ընդ նոյն ժամանակս եւ ի թագաւորութեան Յուդայ նոյնպիսի խռովութիւնք լինէին: Զի յերբ Գոդողիա՝ դուստր Աքաաբու եւ Յեզաբելայ քոյր երկուց վերջին թագաւորացն Իսրայելի եւ այրի կին Յովրամայ եւ մայր Ոքոզիայ արքայի Յուդայ լուաւ զմահ որդւոյ իւրոյ՝ Ոքոզիայ, եւ խնդրէր ջնջել եւ կոտորել զտոհմն նոցա, ապա գրաւեաց կալաւ զաթոռ թագաւորութեանն, եւ թագաւորեաց յԵրուսաղէմ (883—877), եւ եմոյծ նա ի Յուդա զպաշտօնն Բահաղու:

Բայց Յովսաբեթ քոյր Ոքոզիայ եւ կին Յովիդայեայ քահանայապետի զառաջեւոր որդի եղբօր իւրոյ զՅովաս ապրեցոյց ի կոտորածէն Գոդողիայ, եւ սնանէր Յովաս վեց ամ գաղտ ի տաճարին:

Յամին եւթներորդի եցոյց Յովիդայէ զորդին՝ ամենից ի զօրավարացն, եւ սոքա շրջեցան ի սահմանսն Յուդայ, եւ կոչեցին զղեւտացիսն եւ զիշխանս ժողովրդեանն յԵրուսաղէմ: Եւ ի ժամադրի աւուրն (յաւուր շաբաթու) ասաց Յովիդայէ քահանայիցն եւ ղեւտացւոցն հանդերձ զօրավարօքն եւ անձնապահօք թէ զինչ անելոց իցեն, եւ վառեաց զնոսա զինուքն որ պահեալ կային ի տաճարին: Ապա տարաւ կացոյց զՅովաս ի տեղւոջն ուր կային թագաւորքն, եւ պսակեաց եւ օծ զնա թագաւոր ի վերայ Յուդայ:

Իբրեւ լուաւ Գոդողիա զձայն ուրախութեան ժողովրդեանն ընդ որում հնչէին խառն եւ ձայնք արուեստականաց եւ երթային եւ տօնականային ձայնքն, ածապարեաց երթալ ի տեղին, եւ իբրեւ ետես զմանուկ թագաւորն, գոչել սկսաւ եւ ասէ, դաւ է, դաւ է. բայց հրաման ետ վաղվաղակի քահանայապետն հանել զնա ի տաճարէն եւ սպանանել, եւ կատարեցին զօրավարքն զհրամանն եւ մեռաւ նա անդէն սրով:

Եւ արար վաղվաղակի Յովիդայէ ուխտ ի մէջ Տեառն եւ թագաւորին եւ ժողովրդեանն: Խոստացաւ թագաւորն եւ ժողովուրդն լինել այնուհետեւ Տեառն: Ապա կործանեաց ժողովուրդն զպաշտօնն Բահաղու եւ սպան զքուրմն նորա: Իսկ քա-

1 Դ. Թագ. Ժ: Բ. Մնաց. ԻԲ. 7—9:

հանդարտեալսն եւ մեծամեծքն ածին զժառանգական թագաւորութեան Դաւթի յազգականս թագաւորին նստուցանել յաթոռ հարցն իւրոց[1]։

## 210

“Յովաս (877—838) առնէր ուղղութիւն առաջի Տեառն ցորչափ կենդանի էր Յովիդայէ”։ Ընդ խնամակալութեամբ Յովիդայեայ եւ խրատու նորա նորոգեաց միաբանութեամբ զպաշտօն տաճարին, եւ նորոգել զշինուած տաճարին եւ ելից զպակասութիւն անօթոցն արքունեան, եւ կարգեաց հասս քահանայիցն (854)։ Իսկ Յովիդայէ մեռաւ ամաց 130, եւ վասն արժանեաց գործոց իւրոց թաղեցաւ ի շիրիմս թագաւորացն։

Բայց յետ այնորիկ ի փաղաքշանաց գլխաւորաց ժողովրդեանն առաջնորդեցաւ եւ զեղծաւ Յովաս։ Թողաւ լքաւ տաճարն Տեառն, եւ պաշտէին կուռս ի ներքոյ անտառախիտ ծառոց. զուր զգուշացուցանէին զնոսա մարգարէքն Տեառն։ Յայնժամ ելից հոգի Տեառն զԶաքարիա զորդի եւ զյաջորդ քահանայապետութեանն Յովիդայեայ եւ ասէ. ընդէր անցանէք դուք զհրամանս Տեառն։ Դուք թողէք զՏէր, եւ Տէր լքցէ զձեզ։ Բայց նոքա ժողովեցան եւ քարկոծ արարին զնա հրամանաւ թագաւորին ի գաւթի տաճարին։ Այսպէս մոռացաւ Յովաս զերախտիսն Յովիդայեայ եւ սպան զորդի նորա (840)։ Իսկ Զաքարիա ասէր ի մեռանելն իւրում թէ “Տեսցէ Տէր եւ խնդրեսցէ վրէժ”։

Եւ յետ սակաւուց ժամանակի հասին պատուհասք պատուհասիցն ի վերայ Հրէից կռապաշտից։ Ազայէլ արքայ Ասորւոց խաղաց զօրօք ի վերայ նոցա, առ նախ զԳէթ, ապա մերձեցաւ ի Հրէաստան եւ եհաս մինչեւ ցպարիսպն Երուսաղեմի, եւ եհար զբազումս ի մեծամեծացն (839)։ Եւ Յովաս արծաթ բազում եւ դարձոյց յետս զԱսորիսն, եւ հազիւ հազ թէ բաւական եղեն գանձք տան թագաւորին եւ տաճարին Տեառն։ Եւ ինքն եւս անկաւ յախտ ծանր, եւ ապա նենգ գործեալ սպանին զնա ի բանակին, եւ ոչ թաղեցաւ նա ի շիրիմս թագաւորացն։ Այսպէս առաւ ի նմանէ վրէժ արեանն Զաքարիայ։ Զնա յաջորդեաց Ամասիա[2]։

## 211

Յովաքազ (856—840) որդի եւ յաջորդ Յէուայ արքայի Իսրայելի ընթանայր ի մեղս առաջնոցն իւրոց. եւ մատնեաց զնա Տէր ի ձեռս Ազայելի եւ որդւոյ նորա ցորչափ ինքն կենդանի էր։ Գրեթէ ամենայն թագաւորութիւն նորա անկաւ ընդ իշխանութեամբ նոցա, եւ չմնաց ինչ առ նմա՝ բայց 50 հեծեալ եւ 10

1 Դ. Թագ. ԺԱ։ Բ. Մնաց. ԻԲ. 10    2 Դ. Թագ. ԺԲ։ Բ. Մնաց. ԻԴ։ — 12. ԻԴ։

կառք եւ 10,000 այր. զմնացեալսն ջնջեցին Ասորիք։ Յայնժամ դիմեաց Յովաքազ առ Տէր պաղատել, եւ ողորմեցաւ Տէր ի վերայ նեղութեանն Իսրայէլի եւ ետ նոցա փրկիչ որ թափեաց զնոսա ի ձեռաց Ասորւոցն. բայց սակայն ոչ դադարեցին նոքա ի մեղաց Յերոբովամայ, եւ տակաւին կայր անտառն ի Սամարիա։

Թուի թէ փրկիչն այն Յովաս էր որդի եւ յաջորդ Յովաքազայ (840—825)։ Անդէն ի սկզբան թագաւորութեան նորա խօթացաւ Եղիսէ ի մահ, եւ էջ թագաւորն տեսանել զնա, եւ արտասուեաց ի վերայ նորա զի մեկնելոց էր նա ի նմանէ։ Մարգարէացաւ նմա մարգարէն նշանակաւ նետիցն զոր ետ նմա արձակել՝ երեւելի յաղթութիւն ի վերայ Ասորւոց, եւ ապա մեռաւ վաղվաղակի։ Վերակացու եւ պահապան էր Տէր ծառային իւրոյ Եղիսէի, եւ պատժեաց երբեմն զմանկտին Բեթելայ որ ծիծաղէին զնովաւ[1]. նոյնպէս փառաւորեաց զնա եւ յետ վախճանի նորա, զի յետոյ յորժամ ընկեցին դի մի ի գերեզմանն Եղիսէի՝ անդէն կենդանացաւ մեռեալն, իբրեւ մերձեցաւ ի նա ոսկերք առնն Աստուծոյ[2]։

Ընդ նոյն ժամանակս էր վախճանեալ եւ Ազայէլ նեղիչն Իսրայէլի՝ թագաւորեալ ամս 50 (յամի իբրեւ 840), եւ զնա յաջորդէր Բեն-Ադադ Գ. նորին որդի։ Յայնժամ ողորմեցաւ Տէր ի վերայ Իսրայէլի վասն աստուածապաշտ նահապետացն. երիցս յաղթեաց Յովաս արքային Ասորւոց, եւ թափեաց ի նմանէ զքաղաքսն զոր հանեալ էր հօր նորա ի թագաւորութենէ Իսրայէլի[3]։ Յետ նշանաւոր յաղթութեանն զոր յաղթեաց Յովաս Ամասիայ արքայի Յուդայ՝ վախճանեցաւ[4]։

Յերոբովամ Բ. (825—784) նորին որդի գնաց իբրեւ զառաջինն իւր ի ճանապարհս Յերոբովամայ, բայց գթացեալ զնա Տէր առ ապրեցուցանելոյ զԻսրայելացիսն սակաւիկ մի ի նեղութենէ. քանզի ոչ միայն զայն կատարեաց Յերոբովամ զոր հայրն սկսաւ՝ հանեալ յԱսորւոցն զամենայն երկիրն զոր առեալ էին, եւ միւսանգամ նուաճեալ զառաջին սահմանսն մինչեւ ցգետն Եփրատ եւ ցծովն Մեռեալ, այլ եւ առ նա զթագաւորութիւնսն Եմաթայ եւ Դամասկոսի, եւ բարձրացոյց ի ժամանակի 41 ամաց թագաւորութեան իւրոյ զթագաւորութիւնն Իսրայէլի զայս վերջին նուագ։ Զնա յաջորդէր նորին որդի Զաքարիա[5]։

## 212

Թէպէտ եւ ի ժամանակէ անտի Սամուէլի խօսէր, յորդորէր, մխիթարէր կամ սպառնայր Տէր ի ձեռն արանց լուսաւո-

1 Դ. Թագ. Բ. 23—25։
2 Դ. Թագ. ԺԳ. 20, 21։ Տես Սիրաք ԽԸ. 13—15։
3 Դ. Թագ. ԺԳ։
4 Դ. Թագ. ԺԴ. 8—16։
5 Դ. Թագ. ԺԴ. 23—29։

բերելոյ՝ որ մարգարէք կամ տեսանողք կոչէին, ժողովրդեան իւրում եւ թագաւորաց նորա, զի պահեսցեն զճանապարհս իւր եւ կամ դարձցին ի նոյնս: Այլ առաւել իմն յաճախեցին նոքա անդադար ի բաժանմանէ թագաւորութեան՝ ի թագաւորութեանն Իսրայե-լի, քանզի առաւել իմն պիտոյ էին նոքա թագաւորութեանն այնմիկ. եւ ի մէջ մարգարէիցն այնոցիկ երեւելիք եւ նշանաւորք քան զամենեսին երեւեցան Եղիա եւ Եղիշէ։

Իսկ յորժամ Յերոբովամ Բ. թագաւորէր յԻսրայէլի եւ Ոզիա ի Յուդա, սկսաւ կարգ իմն այլոց մարգարէից, որոց վարդա-պետութիւնքն եւ մարգարէութիւնք զորս նշանօք հաստատէին՝ կամ նշանակեալ ի գիրս սուրբս, եւ բանք մարգարէութեան նոցա յերկուս ազգակից թագաւորութիւնսն հայէին եւ ապա զհանդեր-ձելոյ կենդանարարէ եւ զեկեղեցւոյ նորա սրբոյ յայտ առնէին, զլուսա-գոյն եւ զփառաւոր հանդերձեալ ժամանակէն՝ որ էր ամենակատարու-թիւն ամենայն ճշմարիտ աստուածպաշտաց։

Երիցագոյն քան զամենայն մարգարէս դպրական Յովնան է զաբուղոնացի յազգէ: Ի Նեփեղեա եւ մարգարէացաւ նա Յերոբովա-մայ Բ. յաղթութիւն[1], այլ բուն առաքումն նորա էր առ Նինուէ-ացիսն՝ առ փափկասուն բարեկեցիկ բնակիչս գլխաւոր քաղաքին Ասորեստանեայց թագաւորութեան, որ անդադար յամէ իբրեւ 800 զօրացաւ եւ հարստացաւ: Քարոզեաց Յովնան Նինուէացւոց զկործանումն նոցա, այլ քանզի դարձան յամենայն սրտէ իւրեանց՝ խնայեաց ի նոսա Աստուած եւ ի քաղաքն նոցա[2]։

Ովսէէ կամ Հօշա մարգարէ երեւեցաւ նոյնպէս ի թագաւո-րութեանն Իսրայէլի առ Յերոբովամաւ Բ., եւ բանք պատգամա-բերացն յԻսրայելացիս անդր մանաւանդ հայէին. բայց հոգին Աստուա-ծոյ հայեցոյց զնա եւ ի վերայ Յուդայ եւ ի փառաւոր ժամանակին Օծելոյն եւ եկեղեցւոյ նորա: Մարթ էր նմա տեսանել եւ զկոր-ծանումն թագաւորութեանն Իսրայէլի[3]։

Նոյն բանք են եւ զմարգարէութեանցն Ամովսայ որ էր հովիւ Թեկուացի ի Յուդա. մանաւանդ հայէին բանք մարգարէութեան նորա եւ յարուարձանեայ ազգս հեթանոսացն: Այլ քարոզէր նա մանաւանդ զմեծաւոր կործանումն թագաւորութեանն Իսրայէլի ուր ընդ յղփութեան եւ բարեկեցութեան եւ ապականութիւն վարուց եւ ամենայն ազգի ազգի անօրէնք յորդեալ էին[4]։

Սակաւուք յետոյ քան զնա եւ Միքիա մարգարէ մարգարէացի ի Յուդա. եւ նորա եւս բանք նոյնպէս զերկուց թագաւորու-թեանց են՝ լի մարգարէութեամբք եւ վասն Մեսիային[5]։

Վասն ժամանակին Յովելայ մարգարէի ազգի ազգի կարծիք են. հաւանութեան իմն թուի թէ ի թագաւորութենէ Յուդայ

1 Դ. Թագ. ԺԴ. 25։
2 Յովնան Ա—Դ։
3 Ովսէէ Ա—ԺԴ։
4 Ամովս Ա—Թ։
5 Միքիա Ա—Է։

առաջի Տեառն. խնդրեաց նա զՏէր ցորչափ կենդանի էր Զաքարիա ոմն մարգարէ Տեառն, եւ վասն այնորիկ ետ նմա Աստուած յաջողութիւն ի գործս նորա:

Թափեաց նա յԻդումենեցւոցն զնաւահանգիստն Եղաթ (Ելիաթ) եւ ամրացոյց զնա: Եւ նա պատերազմ ընդ Փղշտացւոցն եւ ընդ Արաբացւոց եւ Ամոնացւոց եւ յաջողեցաւ, եւ արար զնոսա հարկատուս: Վասնզի էին նորա զօրք սպառազէնք 300,000 այր, եւ տունք զինուց պնդեալք եւ ամուր քաղաքք եւ աշտարակք, եւ զբազումս եւս ի քաղաքաց ամրացուցանէր. երկրագործութեան եւ արհեստագործութեան փոյթ ի վերայ ունէր, եւ փորել ջրհորս եւ շինել աշտարակս պահապանաց հօտից:

Իբրեւ մեծացաւ եւ զօրացաւ՝ հպարտացաւ սիրտ նորա եւ կամէր իւր ի վերայ թագաւորութեանն պատուոյ յաւելուլ եւ զքահանայութեանն: Զուր ցուցանէին նմա Ազարիա քահանայապետ եւ այլ եւս 80 քահանայք, թէ պաշտամունք քահանայութեանն միայն տանն Ահարոնի տուան, եւ արգելեալ տաճարապետն զնա ելանել ի տեղւոջէն Սրբութեան: Այլ սրտմտեալ բարկացաւ Ոզիա եւ խօսեցաւ նոցա սպառնալիս, եւ առեալ ունէր ի ձեռին զբուրուառն: Յանկարծակի ել նիշ բորոտութեան ի ճակատուն անդէն ի տան Տեառն: Հեռացուցին զնա քահանայքն եւ մնաց բորոտեալ մինչեւ ցօր մահուան իւրոյ, եւ էր բնակեալ յառանձինն տան, եւ վասն բորոտութեանն թաղեցաւ ի դաշտի: Նորին յաջորդ Յովաթամ առաջնորդէր թագաւորութեանն ի ժամանակին յայնմիկ[1]:

Յովաթամ (759—743) 27 ամաց էր յորժամ առ զթագաւորութիւնն, եւ արար ուղղութիւն առաջի Տեառն իբրեւ զհայր իւր զՈզիա, այլ չեմուտ նա իբրեւ զնա բռնի ի տաճարն: Զամուրսն որ ի նմանէ շինեցան եւ նորոգեցան՝ պահեաց եւ բազմացոյց իսկ: Յաղթեաց նա եւ Ամոնացւոցն, եւ եդ ի վերայ նոցա հարկս բազում ամաց: "Զօրացաւ Յովաթամ, քանզի արար նա ուղիղ զճանապարհս իւր առաջի Տեառն": Բայց սկսան յայնժամ Ասորիքն եւ Իսրայելացիք սփռել ասպատակ ի սահմանս Յուդայ: Զնա պայազատեաց Աքազ[2]:

## 215

Աքազ (743—728) ոչ միայն ի ճանապարհս թագաւորացն Իսրայելի գնաց՝ այլ եւ եհայծ զպաշտօն Բահաղու, մատոյց զոհս կռոց ի բարձունս, եւ ի ներքոյ անտառախիտ ծառոց անցոյց զորդի իւր զբոցով առաջի Մողոքայ, եւ արար զամենայն պղծութիւն կռապաշտութեան:

1 Դ. Թագ. ԺԴ. 21, 22. ԺԵ. — 7: Բ. Մնաց. ԻԶ:

2 Դ. Թագ. ԺԵ. 32—38: Բ. Մնաց. ԻԷ:

Յայնժամ եկին հասին պատուհասք ի Տեառնէ. Փակէէ արքայ Իսրայէլի եղեւ դաշնաւոր ընդ Ռասինայ որ ամբարձ միանգամ զթագաւորութիւնն Ասորւոց, տալ պատերազմ ընդ Յուդայ: Եւ Ռասին զերեւելի նաւահանգիստն Եղաթ, եւ մերժեաց անտի զհրէայսն, եւ կամ խափանեալ տարաւ. իսկ Փակէէ յարձակեցաւ ի վերայ թագաւորութեանն Յուդայ, եւ սպան ի զօրուէն Աքազու 120,000 այր, այսպէս անկանել անդ սպանելոց ընդ երկիրն, եւ տարաւ գերի 200,000 այր եւ աւար բազում (742): Բայց եւ Ովդեդ մարգարէ ընդ առաջ նոցա, յանդիմանեաց զնոսա վասն խստութեանն զոր անցուցին ընդ եղբարս իւրեանց Յուդայեանս, եւ այնպէս ետ արձակել զգերիսն, քանզի օգնական եղեն նմա եւ անձինք յաղթութեանցն[1]: Ընդէն ի նմին ժամանակի աճեալ Եդոմայեցւոց եւ Փղշտացւոց զթշնամութիւն թագաւորութեանն Յուդայ՝ եկին ասպատակ Եդոմայեցիքն եւ տարան գերի բազում. իսկ Փղշտացիքն մեծացուցին զաւառս իւրեանց հարկանելով քաղաքս բազումս (յամի յառաջ 741)[2]:

## 216

Յաւուրս մեռանելոյ Ոզիայ արքայի (յառաջ 760) կոչեցաւ յԱստուածոյ մարգարէն մեծ Եսայի սկիզբն առնել պաշտամանն իւրոյ, զոր վարեաց նա ամս 50[3]: Էր նա որդի Ամովսայ զորմէ համարին լեալ որդի Յովասայ արքայի եւ եղբայր Ամասիայ: Առաջին մարգարէութիւնք նորա ճառեն զպատուհասն եւ զխրատս Յուդայ[4]:

Իբրեւ դաշնաւոր թագաւորքն Իսրայէլի եւ Ասորւոց կամէին գալ ի վերայ Երուսաղեմի, եւ խորհէին հանել ի թագաւորութենէ զտունն Դաւթի, հրաման ետ Տէր Եսայեայ մարգարէի ասել յառաջագոյն ցԱքազ թէ խորհուրդ երկոցունց թագաւորացն չէ եղանելոց ի գլուխ, եւ յետ վաթսուն եւ հինգ ամաց դադարեսցէ Իսրայէլ լինել ժողովուրդ: Եւ ետ Տէր խնդրել նշան, եւ ասէր ցնա Եսայի. "Ահա կոյս յղասցի եւ ծնցի որդի եւ կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ (ընդ մեզ Աստուած)"[5]:

Այս մարգարէութիւն նախ ակնարկէ զորդւոյ նորոյ կնոջն զոր ա՛ռ մարգարէն, եւ զփրկութենէ Յուդայ. այլ ըստ բարձրագոյն մտաց զՀանդերձելոյ Մեսիայէն, որպէս յաջորդ գլուխքն յայտնագոյն գործեն[6]:

Բայց Աքազ թերահաւատ լեալ խնդրէր իւր օգնականութիւն ի մարդկանէ. ողոքանօք իմն եւ խոնարհութեամբ եւ մեծամեծ պատարագօք յանկոյց յինքն զհզօր թագաւորն Ասորեստա-

1 Դ. Թագ. ԺԶ. — 6: Բ. Մնաց. ԻԸ. — 15:
2 Բ. Մնաց. ԻԸ. 16 — 19:
3 Եսայ. Զ. — 8:
4 Եսայ. Ա — Զ:
5 Եսայ. Է. — 16:
6 Եսայ. Է — Թ:

նեաց զԹագղաթփաղասար, մինչեւ գալ Թագղաթփաղասարայ եւ սպանանել զՌասոն եւ բարձեալ զԹագաւորութիւնն Ասորւոց խառնել ընդ Թագաւորութեան իւրում (740)։ Իսկ գնաց Աքազ առ նա ի Դամասկոս, թերեւս վասն շնորհակալ լինելոյ. զայսր չուեալ այն եկն զհետ՝ զի սփռեսցէ պաշտօն աստուածոցն Ասորւոց ի Յուդա. եւ Ուրիա քահանայապետ հլութեամբ իմն գնայր։ Իսկ յայն չափ իջքն հասին, մինչեւ փակել Սրբութեանն Տեառն, մինչ դեռ ի սրահսն եւ յայլ եւս բազում տեղիս կանգնեալ կային բագինք դիցն։

Ընդ նոյն ժամանակս խոնարհեցուցեալ էր արքայքն Ասորեստանեաց եւ զԹագաւորութիւնն Իսրայէլի. ամբարտաւանեալ այնուհետեւ ընդ յաղթողութիւնն, սպառնային եւ ի վերայ Աքազու, եւ Աքազ հազիւ ուրեմն մեծամեծ պատարագօք եւ տուրեւոր հարկօք առնոյր ի նմանէ խաղաղութիւն։

Բայց Աքազու կուրացեալ չզգաց յաղթութիւն յետ այնչափ վշտացն, այլ երթայր եւ յաճախէր զպաշտամունս կռոցն. քանզի խորհէր թէ յետոյ ուրեմն օգնեսցեն նմա աստուածքն իւր։ Մեռաւ նա եւ ոչ թաղեցաւ ի շիրիմս Թագաւորացն։ Զնա պայազատեաց նորին որդի Եզեկիա[1]։

## 217

Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ մօտ ի կործանումն հասեալ կայր Թագաւորութիւնն Իսրայէլի։ Լինեալ էր ժամանակ ինչ անտերընչութեան (784—770), յետ բառնութեան մահուան Յերոբովամայ Բ.[2], եւ ապա յետ երկոտասան ամաց յաջորդէր զհայրն Զաքարիա։ Արար եւ նա չար առաջի Տեառն եւ ոչ դադարեաց ի չարեացն Յերոբովամայ. այլ վաղվաղակի յետ վեց ամսոց դաւագործեալ սպանին զնա յանդիման ժողովրդեանն, եւ այնպէս սպառեցաւ տոհմն Յէուայ ի չորրորդ ազգի անդ ըստ բանին Տեառն։ Սեղղում որ սպանն զնա՝ առ զԹագաւորութիւնն, բայց եւ նա նոյնպէս սատակէր։

Քանզի հար զնա Մանայեմ ի Սամարիա եւ անց նստաւ յաթոռ Թագաւորութեանն (770—759)։ Առ նա վրէժս անագորունութեամբ ի բնակչաց քաղաքին Թերսայեցւոց որ աղխեցին նմա զդրունսն, եւ արար չար առաջի Տեառն որպէս զառաջինսն իւր։ Բայց Փուղա արքայ Ասորեստանեաց դիմեաց յերկիր նորա. առ նա ի նմանէ գնոց զխաղաղութիւնն եւ զբարեկամութիւն տուեալ 1000 տաղանդ արծաթոյ. նմին իրի արկ նա մարդահարկ ի վերայ ընչաւէտացն։ Փակիա որդի նորա (759—757) մեղաւ որպէս զառաջինսն, եւ հարին զնա յետ երկուց ամաց յապարանսն։

1 Դ. Թագ. ԺԶ: Բ. Մնաց. ԻԸ. 20...։ 2 Ամովս. Է. 11։

ղոյց թագաւորին, թէ Աստուած երկրին հանէ ի նոցանէ վրէժս, զի անփոյթ արարին պաշտել զնա։ Այնժամ յղեաց առ նոսա թագաւորն Ասորեստանեայց քահանայ մի ի գերելոց անտի որ չո-գաւ բնակեաց ի Բեթէլ ուսուցանել ժողովրդեանն զպաշտօն ճշմարտին Աստուծոյ։ Թէպէտ եւ պաշտէին նոքա այնուհե-տեւ զՏէր իբրեւ զԱստուած երկրին, բայց եւ զկուռս աստուծոց հայրենի աշխարհացն իւրեանց պահեցին, եւ այնպէս զթերակա-տար պաշտօնն Աստուծոյ խառնեցին ամենայն պղծութեամբք կռոցն պաշտաման։

Յետոյ ազգացն այնոցիկ զաւակունքն հասարակաց իսկ անուամբ Կութէացիք կոչեցան յանուանէ գաղթականացն Կութայ. այլ իբրեւ միւսանգամ շինեցաւ Սամարիա՝ Շամրոնացիք կամ Սամա-րացիք կոչեցան, եւ մնաց այն նոցա անուն յաղջաղջանաց[1]։

## Է

### Թագաւորութիւն Յուդայ (725—590)։

### 219

ՄԵՑ ամօք կանխագոյն քան զկործանումն թագաւորու-թեանն Իսրայէլի՝ Եզեկիա կամ Խիզկիա (726—699) առ զթա-գաւորութիւնն Յուդայ փոխանակեալ զԱքազ յետ լինելոյ բար-ձակից՝ ամս 2։ «Արար նա ուղղութիւն առաջի Տեառն որպէս արար հայր նորա Դաւիթ»։ Նախ նորոգէր զսպասաւորական պաշտօնն Աս-տուծոյ որ առ հարբն նորա բարձեալ էր ամենեւին ի միջոյ, եւ երաց նա միւսանգամ զտաճարն եւ ետ սրբել եւ նուիրել, եւ մատուցանէր երեւելի ողջակէզս պատարագաց։

Ապա առաքէր Եզեկիա հրեշտակս հրովարտակաւ ոչ միայն ընդ թագաւորութիւնն Յուդայ, այլ եւ ընդ թագաւորութիւնն Իսրայէլի, եւ հրաւիրէր զամենայն այր իսրայելացի ի տօն զատկին, թոյլատրէր լեալ նոցա դառնալ յամենայն որոց իւրեանց զի ցա-ծուսցեն յանձանց զզատուցմն Աստուծոյ։ Սակաւք միայն ի ցեղիցն Ասերայ եւ Մանասէի եւ Զաբուղոնի անսացին կոչմանն. բայց ա-մենայն Յուդա հնազանդեցաւ թագաւորին, եւ կատարեցաւ տօն զատկին յԵրուսաղէմ մեծաւ փառաւորութեամբ յաւուրս 14։

Ապա փոյթ տանէր Եզեկիա վասն տանելոյ հանապազորդ զպաշտօնն Աստուծոյ եւ վասն հասից քահանայիցն։ Եւ այնու-հետեւ ոչ միայն յամենայն սահմանս Յուդայ եւ Բենիամինի, այլ եւ ի սահմանսն Եփրեմի եւ Մանասէի ջնջեցաւ եղծաւ պաշ-տօն կռապաշտութեանն եւ զարշութիւնք նորա. ցրուեցան բագ-ինքն եւ ծառքն անտառախիտք, նա եւ օձն եւս պղնձի, քանզի պաշտէին զնա եւ երկիր պագանէին[2]։

1 Դ. Թագ. ԺԷ. 24...։ 2 Դ. Թագ. ԺԸ.—4։ Բ. Մնաց. ԻԹ—ԼԱ։

տառապկմամբ Ասորեստանեայցն, զոր բազումք ի մեծնչաց ժանտ հանմարին [1]:

## 221

Որպէս հաւանութեան իմն է՝ յառաջ քան զայն սքանչելիս խօթացաւ Եզեկիա ի մահ, եւ եկն առ նա Եսայի առնել հրամանաւ Աստուծոյ զի պատրաստեսցի ի մահ, քանզի չէ ապրանաց: Ապա յայնժամ յաղօթս թագաւորն էջ հաւատովք եւ եղաց առաջի Տեառն: Ապա եւ պատմեաց նմա Եսայի միւսանգամ թէ լուաւ Տէր աղօթից քոց. կամի զի կեցցես, եւ ելցես յաւուրն երրորդի ի տաճարն: Յաւել նա յաւուրս քո ամս հնգետասան, եւ կամի փրկել զքեզ եւ զԵրուսաղէմ ի ձեռաց Ասորեստանեայց:

Նոյն հրաման ետ մարգարէն եւ եդին պաղատիտս թզոյ ի վերայ վիրին Եզեկիայ: Իսկ Եզեկիա խնդրեաց նշան ինչ թէ արդարեւ ողջանալոց է. եւ ըստ նորա իսկ կամելոյ՝ դարձաւ ստուերն տասն աստիճանօք յետս ի վերայ ցուցչին արեւուն: Ընդէն ողջացաւ նա ի սահմանեալ աւուրն եւ խօսեցաւ շնորհակալ մտօք գեղեցիկ ինչ երգ օրհնութեան եւ գոհութեան [2]:

Ապաս բանն եւ ի Բաբելոն եւ լուաւ արքայ Մերովդաք Բաղադան եւ առաքեաց առ Եզեկիա հրեշտակութիւն լինել ուրախակից առողջութեանն. եկեալ էին հրեշտակքն եւ վասն անելոյ դաշնաւորութիւն հակառակ Ասորեստանեայցն: Պատրեալ իմն ի սիրոյ անտի նոցա՝ եցոյց նոցա Եզեկիա զամենայն գանձս իւր եւ զմեծութիւն՝ մեծապարծութեան իմն մտօք: Այլ Եսայի մարգարէ յանդիմանեաց զգործն նորա, եւ պատմեաց հրամանաւն Աստուծոյ թէ ամենայն գանձքն այնուհետեւ երթիցեն երբեմն ի Բաբելոն, եւ որդիք քո եղիցին ներքինիք ի տան թագաւորին:

Խոնարհութեամբ յանձն առ Եզեկիա զդատաստանն Աստուծոյ: Ասի թէ ի խաղաղութեան անցոյց նա զվերջին հնգետասան ամս կենաց իւրոց. շինեաց նա ջրմուղս եւ այլ եւս բազում շինուածս. սիրէր նա դարմանել այգիս եւ ագարակս եւ խաշինս: Ննջեցաւ նա մեծաւ պատուով եւ փառաւորութեամբ, եւ թագաւորեաց Մանասէ որդի նորա փոխանակ նորա [3]:

Յաւուրս նորա (յամի իբրեւ 714) մարգարէանայր Նաւում մարգարէ վասն Նինուէի [4]:

## 222

Յեբրայեցւոց անտի զոր տարաւ Սաղմանասար յետ քակելոյ զթագաւորութիւնն Իսրայելի, էր Տովբիթ ոմն անուն, այր բա-

1 Տես Բ. Թագ. ԻԴ. 15, 16: — Տես Դ. Թագ. ԺԸ. 13 — ԺԹ: Բ. Մնաց. ԼԲ. — 23: Եսայ. ԼԶ. ԼԷ:
2 Եսայ. ԼԸ. 10 — 20:
3 Դ. Թագ. Ի: Բ. Մնաց. ԼԲ. 24...: Եսայ. ԼԸ. ԼԹ: Տես Սիրաք ԽԸ. 19 — 25:
4 Նաւում Ա — Գ:

ընդպաշտօն յարգէ Նեփթաղիմայ, եւ նորա էր որդի Տուբիա (Տովբիթ) եւ կին Աննա: Ոչ խոտորեցաւ նա ի պաշտօն եւ ի պղծութիւն կռոց, այլ երթայր նա ի տաճարն Տեառն, եւ ցուցանէր զգործս սիրոյ առ եղբարսն իւր: Զնոյն առնէր նա եւ ի գերութեանն իւրում որչափ ինչ ձեռնհաս էր, եւ դարմանէր մանաւանդ զեղբարսն իւր, յորժամ նեղէր զնոսա յոյժ Սենեքերիմ: Նաեւ եւս խստացան վէճքն ի վերայ Իսրայելացւոցն յորժամ փախստեալ կորացաւ թագաւորն ի Տեառնէ առաջի Երուսաղեմի, քանզի զայրացեալ ընդ Իսրայելացիսն որ ի Նինուէ էին՝ հանէր Սենեքերիմ: Յայնմ ժամանակի եւ Տովբիթ հատանէր ի տանայս մահու, բայց ապրեցաւ նա ի տագնապէն յորժամ մեռանիցն Սենեքերիմ:

Եւ յետ սակաւ ինչ միոյ դէպք եւ պատահարք հասանէին կուրանալ աչաց նորա եւ անկանել յաղքատութիւն, եւ փոխանակ մխիթարութեանն ընդունել արհամարհանս եւ կշտամբութիւն ի բարեկամաց իւրոց եւ յազգականաց: Եւ ոչ յաղթահարեցաւ հաւատք նորա ի մէջ վշտացն, եւ յետ սակաւու ընկալաւ փառօք զվարձս հաւատոց իւրոց: Զի խորհէր համարեցաւ թէ մեռանելոց է՝ կոչեաց զորդի իւր զՏուբիա, որ էր նման նմա, եւ խօսեցաւ ընդ նմա բանս խրատու եւ թերահաւատութեան զգուշացիր յոյժ, զուգելով թէ որպիսի վարս ընծայեցուցանիցէ լինել հաճոյ Աստուծոյ. եւ պատուէր ետ նմա երթալ ի Հռագաւ (Հռագիս) ի Մարաստան առ Գաբայէլ անձն անուն, եւ անդ առնուլ ի նմանէ զպատուան զոր պարտի նա 10 քանքար արծաթոյ, եւ հրամայեաց խնդրել գտանել զոմն ընկեր ճանապարհաց իւրոց:

Յայնժամ ել ընդ առաջ Տուբիայ հրեշտակն Ռափայել ի կերպարանս գեղեցիկ երիտասարդի լինել ընկեր ճանապարհաց նորա, եւ ետ իւր անուն Ազարիա որդի մեծին Անանիայ, որք նշանակեն զօգնականութիւն եւ զշնորհսն Աստուծոյ: Ելին երկոքին ի ճանապարհ յետ յուղարկելոյ զնոսա հօրն եւ մօրն արտասուօք եւ օրհնութեամբք: Ի ճանապարհայն կալաւ Տուբիա ձուկն մի մեծ, եւ ըստ հրամանի հրեշտակին պահեաց նա զսիրտ ձկանն եւ զլեարդն եւ զլեղին, զի վարեսցին նոքօք ի պէտս ինչ կարեւորս: Այսպէս ասէ հրեշտակն ցնա թէ պարտ է մտանել առ Հռագուէլ ազգական նորա զի առցէ զՍառա զդուստր նորա զկնութիւն: Թէպէտ եւ յայտ արար նմա Տուբիա թէ լեալ է Սառա յառաջագոյն եւթն արանց եւ սպանեալ զնոսա այսոյ չարի. այլ սկսաւ պատմել նմա հրեշտակն թէ որպէս արժանի էին նոքա այնպիսի հարուածոյ վասն անկարգ խորհրդոց եւ գործոց իւրեանց, եւ խրատ ետ նմա միաբան աղօթիւք եւ բարւոք սրտիւ մտանել ի կարգ ամուսնութեանն, եւ զլեարդն եւ զսիրտ ձկանն դնել ի վերայ կայծակաց, եւ ծուխն որ ի նոցանէ ելանիցէ՝ հանիցէ զայսն չար:

Զհետ չոգւոյ Տուբիայ յամենայնի զխնամս հրեշտակին․ ամփոփ ընկալաւ զնա Ռագուէլ, անդէն ի հայցին սա զդուստր նորա զՍառա կնութեան։ Եդ զսիրտն եւ զլեարդ ձկանն ի վերայ կայծականց, որք էին ապաքէն նշանք Աստուծոյ պարգեւացն՝ որ շնորհեցան բարեպաշտան աղօթիւք եւ ժուժկալութեամբ փեսային եւ հարսին, եւ հանին զզօրութիւն այսոյն չարի։—Այսպէս Տուբիա եւ Սառա մնացին ողջանդամ, եւ կատարեցին յետ այնորիկ զուրախութիւն հարսանեացն։

Ընդ նոյն ժամանակս Տոբիթ հայր Տուբիայ եւ մանաւանդ կին նորա Աննա խռովեալ էին ընդ յամել որդւոյն, մինչեւ մխիթարեաց զնոսա գալուստն նորա. այլ առաւել եւս յաճախեաց ուրախութիւն նոցա, յորժամ մանուկն Տուբիա շփեաց զաչս հօրն լեղեաւ ձկանն եւ բժշկեաց Աստուած զկուրութիւն աչաց նորա ի ձեռն արտաքին դարմանոյն այնորիկ։ Տունն Տոբիթայ փառաւորեցին նախ զԱստուած, ապա զկէս ընչից բերելոց հանէին մանկանն այնմ որ ընկեր եղեալ էր Տուբիայ։ Բայց նա պատուէր ետ նոցա օրհնել զԱստուած առաւել քան զամենայն կենդանիս, եւ գործել գործս բարութեան։ Եւ յայտնեաց եւս նոցա թէ է ինքն հրեշտակն Ռափայէլ, միւսանգամ յորդորեաց զնոսա յօրհնութիւնս Աստուծոյ, եւ եղեւ ի նոցանէ աներեւոյթ։

Եւ օրհնեաց Տոբիթ զՏէր գեղեցիկ իւիք օրհնութեամբ, յորում կան եւ մարգարէութիւնք։ Եկեաց նա խաղաղութեամբ այլ եւս ամս 42, եւ մեռաւ ամաց 102 (յամի իբրեւ 663)։ Յառաջ քան զվախճանել իւր խրատեաց զորդի իւր զՏուբիա եւ զաւակն նորա երկնչել ի Տեառնէ, եւ խրատ ետ նոցա ելանել ի քաղաքէն Նինուէացւոց, զի առէր թէ մօտ է կործանումն նորա։ Եւ եղեւ իսկ այն յետ վախճանի կնոջն նորա Աննայի։— Իսկ Տուբիա ետես զթոռունս իւր մինչեւ ցհինգերորդ ազգ, եւ ընթանայր զաւակ նորա ի հաճոյս Աստուծոյ[1]։

Դարձցուք այսուհետեւ ի պատմութիւն թագաւորութեանն Յուդայ։

## 223

Մանասէ (699—644) էր ամաց երկոտասանից յորժամ նստաւ փոխանակ աստուածապաշտ հօրն իւրոյ Եզեկիայ, բայց ոչ գնաց զճանապարհս նորա. քանզի ոչ ոք ի թագաւորացն Յուդայ այնչափ յաճախեաց չարիս, որպէս զՄանասէ։ Կանգնեաց նա միւսանգամ զբարձունսն եւ զսեղանսն զոր բարձեալ էր Եզեկիա, ծառայեաց Բահաղու եւ տնկեաց անտառ պղծութեան կռոցն պաշտաման, երկիր եպագ նա ամենայն զօրութեանց երկնից, կանգնեաց նոցա սեղանս ի սրահս տաճարին, նա եւ անդէն ի տաճա-

1 Տոբ. Ա — ԺԴ։

րին կանգնեաց կուռս։ Ընդդէմ զօրէնս իւր գործեալ ի ձեռն Բաբելո-նեայ որ լի էր ամենայն պղծութեամբ անառակութեան եւ գռեհիկ մարդկան։ Վարէր ըղձութեամբք եւ դաւաճանութեամբք եւ կախարդութեամբք, եւ եհեղ յոյժ արիւն արդար, մոլորեցոյց նա զՅուդա եւ յանձնեցին ի կռապաշտութիւն եւս չար քան զազգսն զորս ջնջեաց Տէր յերեսաց որդւոցն Իսրայէլի։ Նա եւ նմա գրի սպանումն Եսայեայ մարգարէի[1]։

"Խօսեցաւ Տէր ի ձեռն ծառայից իւրոց մարգարէից եւ սպառնայր նոցա՝ անցուցանել զանգս Սամարիայ եւ ընդ Երուսաղէմ․ բայց ոչ թագաւորն եւ ոչ ժողովուրդն անսայր բանիցն։ Յայնժամ ած Տէր զիշխանս զօրու թագաւորին Ասորեստանեաց, եւ սոքա եկին տարան զՄանասէ շղթայիւք ի Բաբելոն,, որ էր յայնժամ ընդ իշխանութեամբ Ասորդանայ (Ասարադդոնայ), զոր կացուցեալ էր անդ հայր նորա Սենեքերիմ իբրեւ թագաւոր կամ շահապ փոխանակ ապստամբին Բելիբոսի (յամի իբրեւ 680)։

Յայսմ ամենայնէ դարձաւ ի միտս իւր Մանասէ․ "Դէ իբրեւ վտանգեցաւ, խնդրեաց զերեսս Տեառն Աստուծոյ իւրոյ, եւ խոնարհեցաւ յոյժ յերեսաց Աստուծոյ հարցն իւրոց։ Յաղօթս եկաց առ նա․ լուաւ Տէր գոչման նորա, եւ դարձոյց զնա յԵրուսաղէմ ի թագաւորութիւնն իւր․ եւ ծանեաւ Մանասէ, եթէ Տէր նա է Աստուած,,։ Գիրք ոչ զամ գերութեանն նորա յիշեն եւ ոչ զդարձին։ Թուի թէ գերութիւնն ի 22երորդ ամի թագաւորութեան նորա եղեւ (յամի իբրեւ 677), եւ եկաց ի գերութեան ամ մի, թէպէտ եւ այս երկմտութեան բան է։

Իբրեւ միւսանգամ նստաւ Մանասէ յաթոռ թագաւորութեան իւրոյ՝ եբարձ նա զպղծութիւն կռոցն, հաստատեաց միւսանգամ զպաշտօն ճշմարիտն Աստուծոյ, մատոյց նմա պատարագս գոհութեան եւ օրհնութեան, եւ հրամայեաց եւս հնազանդելոց իւրոց պաշտել զԱստուածն Իսրայէլի։ Ամրացոյց նա զքաղաքն Դաւթի, եւ եդ պահապանս յամուր ամուր քաղաքսն Յուդայ։ Եւ վախճանեցաւ նա թագաւորեալ ամս 55, եւ զնա յաջորդէր նորին որդի Ամոն[2]։ Ի ժամանակի երկարաձիգ թագաւորութեան նորա եղեւ պաշարումն Բետուղուայ (Բեթուղեայ) զոր յայսմ վայրի պատմեսցուք։

## 224

"Նաբուքոդոնոսոր (Ասորեստանեայն) այս ինքն Ասորդան՝ թագաւոր Ասորեստանեաց յետ պարտելոյ զԱրփաքսադ (զԴէիոկ կամ զԱփրաւորտ) զՄարաց, եւ նուաճելոյ ի ձեռն զօրավարին իւրոյ Հողոփեռնեայ նահանգս բազումս՝ դադարեաց յԵլամ,

1 Ջատագովութիւն Յուստինեայ առ Տրիփ․ ԽԸ․ 25 — 28։

2 Դ․ Թագ․ ԻԱ․ — 17։ Բ․ Մնաց․ ԼԳ․ — 20։

եւ անդ գումարեաց զամենայն զօրս զօրութեան իւրոյ[1] (յամի ի-բրեւ 656)։

Իբրեւ ազդ եղեւ այն բնակչաց Թագաւորութեանն Յուդայ՝ զահի հարան. քանզի եւ նոցա չէր յանձն առեալ հնազանդել նմա. բայց առնէին պատրաստութիւն ընդդէմ դառնալոյ նմա պատերազմաւ, եւ առաջնորդէր գործոյն Յովակիմ (Եղիակիմ) քահանայապետ. խոնարհեցուցանէին նոքա զանձինս պահօք եւ աղօթիւք, քուրձ զգենուին եւ կարդային առ Աստուած յամենայն սրտից իւրեանց[2]։ Իսկ Հողոփեռն ի ցասման լեալ՝ զի պատրաստեցան Հրեայքն ընդդէմ դառնալ նմա, կոչեաց նա զիշխանս Մովաբացւոցն եւ Ամոնացւոց զի տացեն նմա տեղեկութիւն վասն ազգին այնորիկ։ Աքիովր իշխան գլխաւոր Ամոնացւոցն կաց պատմեաց նմա կարճառօտ զպատմութիւն ժողովրդեանն Աստուծոյ, եւ զքանչելեացն զոր արար Տէր ի նոսա, եւ թէ որպէս եկին հասին չարիք ի վերայ նոցա՝ յորժամ ի բաց կացին նոքա յԱստուծոյն իւրեանց. եւ թէ արդ իսկ եկեալ են նոքա ի գերութենէ, զի դարձեալ են առ Աստուած սրտիւք իւրեանց։ Նմին իրի ետ նա խրատ Հողոփեռնեայ իմանալ նախ թէ արդեւք հաշտ իցեն Հրեայքն ընդ Աստուծոյ իւրեանց[3]։

Յայժմ ամենայնէ մարթ է ի միտ առնուլ թէ հնար էր Մանասէի արքայի լինել դարձեալ ի ժամանակին յայնմիկ ի գերութենէն իւրմէ, այլ ամենեւին զկապեալ ընդ ուղղութիւն իւր եւ ընդ ուղղութիւն թագաւորութեան իւրոյ՝ զառաջնորդութիւն հեռաւոր վայրացն ստորեալ էր յանձն Եղիակիմայ քահանայապետի. այս միաբան իմն է եւ խոստմանն որ կայ ի բանս Եսայեայ մարգարէի թէ տացէ Եղիակիմ իշխանութիւն մեծ ի Յուդա[4]։

## 225

Ահա վաղվաղակի Հողոփեռն 120,000 հետեւակօք եւ 22,000 հեծելազօրու եւ բազմամբոխ բազմութեամբ ազգաց ազգաց հնազանդելոց՝ առաջի Բետիղուայ որ էր քաղաք ամուր ցեղին Զաբուղոնի, եւ ետ ունել Հողոփեռն զջուրն յորմէ ըմպէին բնակիչք քաղաքին, մինչեւ առհասարակ վհատել անկանել եւ դնել խորհուրդ ի մտի մատնել զքաղաքն եթէ ի հինգ աւուրս չգայցէ ուստեք օգնականութիւն[5]։

Եւ եղեւ այն Յուդիթայ որ էր կին այրի, մանկամարդ բարենշան գեղեցիկ եւ մեծատուն, միանգամայն բարեպաշտօն եւ երկիւղած յԱստուծոյ. չթուեցաւ նմա հաճոյ կարճմտութիւն Բետիղուացւոցն. յորդորեաց զնոսա յապաշխարութիւն, եւ յուսալ

1 Յուդիթ Ա—Գ.
2 Յուդիթ Դ.
3 Յուդիթ Ե.
4 Եսայ. ԻԲ. 20—22.
5 Յուդիթ Զ. Է.

յաղթութիւն Աստուծոյ եւ խրատ եւս նոցա կալ յաղօթս, զի յաջողեսցէ Տէր զոր ինչ խորհեալ իցէ նա ի միտս։ Ապա եմուտ նա ի սենեակ իւր, եկաց յաղօթս առ Տէր յամենայն սրտէ իւրմէ, զի օգնական լիցի նմա կործանել զամբարտաւանեալն զՀողոփեռն, եւ յիշեցուցանէր նմա Տեառն թէ որպէս բազում անգամ եղեւ օգնական ժողովրդեան իւրում, եւ պաղատէր խոնարհութեամբ եւ հաւատովք[1]։

Ապա արկ զհանդերձս իւր զեւրեւ եւ զարդարեցաւ ամենայն զարդու իւրով, առ ընդ իւր զնաժիշտն իւր զԱբրա եւ զօրհնութիւնս ծերոցն Բեթուղուայ. Ել ընդ այգն ի քաղաքէն, եւ անցին գնա որպէս ինքն կամէր՝ ի բանակն Հողոփեռնեայ։ Ընդ էջն մտեալ առաջ ի գեղոյ նորա, լսէր յօժարութեամբ զբանս ողոքանաց նորա եւ զխոստումն յաղթութեանն ի վերայ Իսրայելացւոցն, որում ինքն Յուդիթ կամէր լինել առաջնորդ։ Հրաման ետ նմա Հողոփեռն մտանել եւ ելանել ի բանակէն որպէս ինքն կամիցի, եւ կատարել զաղօթս իւր եւ ուտել ի կերակրոյն զոր ընդ իւրն բերեալ էր։

Յաւուրն չորրորդի կոչեաց զնա Հողոփեռն ի հաց, առաջէն չարաչար մտօք. բայց Յուդիթ յուսացեալ ի Տէր եկն ի հացանդր. իսկ Հողոփեռն արբեալ ի սիրոյն եւ ի գինւոյն զոր առաւել անչափն արբ, ննջեաց եւ ի քուն եմուտ. եւ իբրեւ մեկնեցան մի ըստ միոջէ կոչնականքն, մնաց Յուդիթ միայն։ Մերձեցաւ նա յանկողին ի գահոյս նորա, առ զդաշոյնն յազդերէ նորա, կարդաց առ Տէր եւ հատեալ եբարձ զգլուխ նորա, եւ ետ զնա նաժշտին իւրում եւ այնպէս անց ընդ նմա անարգել ընդ բանակն Ասքեստանեաց[2]։

Փութացաւ Յուդիթ ի Բեթուղուա, պատմեաց քաղաքացեացն որ ժողովեցան շուրջ զնովաւ՝ զոր ինչ արար Տէր նովաւ, եւ եցոյց նոցա զգլուխն Հողոփեռնեայ։ Եւ ամենեքին օրհնեցին զՏէր եւ գովեցին զքաջութիւն Յուդթայ[3]։ Եւ ըստ խրատուն նորա կախեցին զգլուխն զպարսպաց քաղաքին, եւ ընդ այգն ընդ առաւօտն յարձակեցան ի քաղաքէն, քանզի խոստացաւ նոցա Յուդիթ թէ Տէր տացէ նոցա զօրութիւն տապաստ արկեալ փախնելոյ զթշնամիս իւրեանց։ Եւ եղեւ իսկ ըստ խրատուն նորա. իբրեւ լուան Ասքեստանեայք թէ սպանաւ Հողոփեռն՝ անկաւ ահ եւ երկեւղ ի վերայ նոցա, եւ եղեւ խռովութիւն ի բանակին, եւ անդէն հեծեալք դիմեալք ի փախուստ դարձան։ Ընդոստ Իսրայելացիքն յարձակեցին անկանէին ի վերայ նոցա, եւ բաժանեցաւ աւարն նոցա աւուրս 30։ Եւ տուաւ Յուդթայ բաժին մեծ յաւարէն, եւ գովութիւն եւ օրհնութիւն յամենայն Յուդայ[4]։

1 Յուդիթ Ը, Թ։
2 Յուդիթ Ժ—ԺԳ. — 12։
3 Յուդիթ ԺԳ։
4 Յուդիթ ԺԴ, ԺԵ։

Բայց Յուդիթ երգեաց Տեառն օրհնութիւն գեղեցիկ, եւ կախեաց ի տաճարին զզէնսն Հողոփեռնեայ։ Մեծացեալ պատուեցաւ նա յամենայն Իսրայէլէ ոչ միայն վասն գործոյն այնորիկ, այլ եւ վասն առաքինութեանցն իւրոց. Ծերացեալ մեռաւ նա 105 ամաց, եւ սուգ առին վասն մահու նորա աւուրս եւթն։ Յորչափ ժամանակս կենդանի էր Յուդիթ, ոչ ոք խռովեաց զխաղաղութիւնն Իսրայէլի, եւ օր յաղթութեանն այնորիկ եղեւ օր տարեկանաց[1]։

Այն իսկ իրք՝ եւ այն զի պարգեւանքն իսկ Հրէայքն վայելեցին ի խաղաղութեան ամս 50, վկայեն ճշմարտութեան պատմութեանն. բայց տատանել եւս մեկայ այնմ են թէ երկիւղածն յԱստուծոյ Յուդիթ գործի լեալ էր ազդեցութեանն Աստուծոյ, եւ լեալ էր զնա Աստուած զօրութեամբն իւրով կատարել զգործն մեծ՝ զազատութեանն Իսրայէլի ի ձեռաց Ասորեստանեայց։ Այլ թէ արդեւք ամենայն մանրակրկէն հնարից զոր նա եւ այլ եւս բազում հայրենասէրք յառաջ եւ յետոյ քան զնա արկին ի կիր՝ մաքրեալ իցէ ներելով լինել կամ թէ ընդ արդարացուցանել իսկ, այնր խնդրոյ լուծումն նմա միայն յանձն է որ զսիրտս եւ զերիկամունս քննէ, եւ յիւրաքանչիւր ումեք է պահանջէ համարս վասն գործոց իւրաքանչիւր, սակայն եւ ասանց տարակուսանաց յայտնի է այն ամենայն որ ի հոգեկիր մարդոց գործեցաւ։

Դարձցուք այսուհետեւ ի պատմութիւն թագաւորութեանն Յուդայ։

## 226

Ամոն (644—642) յաջորդէր զթագաւորութիւն հօրն իւրոյ Մանասէի, եւ զամենայն պղծութիւն կռապաշտութեան նորա, բայց զապաշխարութիւնն՝ ոչ. անդէն յետ երկուց ամաց՝ նենգ գործեալ սպանին զնա ի տան իւր, յորժամ էր ամաց քսան եւ չորից, եւ ոչ թաղեցաւ նա ի շիրիմս թագաւորացն։ Բայց եհար զսպանողս նորա ժողովուրդն, եւ կացուցին փոխանակ նորա զորդի նորա ութամեայ[2]։

Իսկ թէ ի ժամանակի մանկութեանն Յովսեայ (642—611) կռապաշտութիւնն որ միւսանգամ մուծեալ էր, փութանակի յաղթեաց եւ սփռեցաւ ընդ ամենայն Յուդայաստան։ Իսկ Յովսիա ի վեշտասաներորդ ամի հասակի իւրոյ սկսաւ խնդրել զԱստուած հօրն իւրոյ Դաւթի, եւ ի քսաներորդ ամին քակել սկսաւ մեծագործութեամբ զպղծութիւնս կռոցն յերկրէն Յուդայ (յամի իբրեւ 630)։ Բայց չհամարեալ զայն շատ եւ բաւական՝ նախանձեցաւ բառնալ զպաշտօն կռոցն եւ ի սահմանաց ցեղիցն Մանասէի եւ Եփրեմի, Զաբուղոնի եւ Նեփթաղիմայ, եւ ամենայն ու-

1 Յուդիթ ԺԶ։ 2 Դ. Թագ. ԻԱ. 18—26։ Բ. Մնաց. ԼԳ. 21—25։

րեք ջնջեցաւ կռապաշտութիւն եւ կատարեցան քուրմքն[1] ։ Քակեաց Յովսիա եւ զպաշտօն որթոյն Յերոբովամու ի Բեթէլ, եւ զոսկերս քրմացն ետ այրել ի վերայ սեղանոյն ըստ բանին Տեառն՝ զոր խօսեցաւ ի ձեռն մարգարէին յառաջ քան զ350 ամ ։ Իսկ զերեզման առն Աստուծոյ կաց մնաց անխախուտ[2] ։ Այլ առաւել դժնդակ քան էր կռապաշտութիւնն յԵրուսաղէմ. անդէն մօտ իսկ ի տաճարն գլխաւոր տեղի լեալ էր կռապաշտութեանն հանդերձ երեքումբք ընկերօքն, այս ինքն պղծութեամբ, սպանութեամբ եւ խաբէութեամբ զարշութեանցն Աստարովթայ, Քամովսայ եւ Մողոքայ՝ զորս եդեալ Սողոմոն ։ Ջնջեաց Յովսիա զամենայն ազգս կռապաշտութեանն ամենեւին ի միջոյ, եւ քակեաց զամենայն բարձունս, ուր թէպէտ եւ արկանէին խունկս ճշմարտին Աստուծոյ՝ այլ ոչ ըստ օրինացն, զորս եւ ոչ բարեպաշտօն թագաւորացն բարձեալ էր[3] ։

Յութեւտասներորդ ամի թագաւորութեան իւրոյ (յամի իբրեւ 624) ետ նորոգել եւ յարդարել Յովսիա զտաճարն ։ Իսկ ի նորոգելն եւ ի յարդարել՝ եգիտ Քեղկիա քահանայապետ զգիրն մատեան օրինացն Մովսեսի, զոր այր ոք բարեպաշտօն թերեւս ի ժամանակին Աքազու կամ Մանասէի եդեալ էր անդ ի պահեստի ։ Ընթերցաւ Քեղկիա զմատեանն ազնիւ առաջի թագաւորին. իբրեւ լուաւ թագաւորն զբանս մատենին՝ պատառեաց զպատմուճանս իւր, տրտմեալ թէ ցայժմ ոչ ըստ օրինացն կեցին կեանս ։

Ի լսել թագաւորին այնպիսի խորհրդով՝ առաքեաց զքահանայապետն եւ զայլս ամանս ընդ նմա՝ հարցանել զՏէր, քանզի երկնչէր ի ցասմանէ նորա վասն իւր եւ վասն ժողովրդեանն ։ Չոքան նոքա առ կին մարգարէ՝ Ողդան անուն, եւ սա ետ պատասխանի նոցա յանուն Տեառն եւ ասէ. Որովհետեւ եթող Յուդա զՏէր եւ ծառայեաց կռոց, ածցէ Տէր զամենայն չարիս ի վերայ Երուսաղեմի եւ բնակչաց նորա՝ որ ինչ միանգամ կայ սպառնացեալ օրինազանցաց. բայց Յովսիա՝ վասն զի խոնարհեցաւ եւ եցոյց ապաշխարութիւն՝ երթիցէ վախճանեալ խաղաղութեամբ առ հարս իւր ։

Իբրեւ լուաւ զայս ամենայն՝ թագաւորն, ժողովեաց զծերս երկրին, զքահանայս եւ զմարգարէս, եւ ժողովուրդ բազում եւ անթիւ ի տունն Աստուծոյ ։ Անդ ընթերցաւ նա առաջի նոցա զօրէնսն, եւ արար ուխտ առաջի Տեառն՝ թէ ամենեքին կեցցեն ըստ օրինացն Աստուծոյ, եւ եմուտ ժողովուրդն յուխտն եւ ոչ խոտորեցաւ մինչեւ կենդանի էր Յովսիա ։ Ապա ետ կատարել զտօն զատկին փառաւորութեամբ ամենեւին ըստ օրինացն, եւ մատուցան ողջակէզք բազումք ինքնակամ ։ Իսկ ի նմին ժամանակի կա-

1 Բ. Մնաց. ԼԴ. — 7 ։ Թագ. ԺԳ. 2 . . . ։
2 Դ. Թագ. ԻԳ. 15 — 20 ։ Տես Գ. 3 Դ. Թագ. ԻԳ. 4 — 14, 24, 25 ։

ցուցան եւ քահանայք եւ ղեւտացիք յիւրաքանչիւր պաշտամունս որ խափանեալ էին ի բազում ժամանակաց հետէ[1]։

## 227

Այսպէս Յովսիա յամենայն սրտէ իւրմէ եւ յամենայն զօրութենէ դարձաւ յօրէնս Տեառն, բայց սակայն ոչ դարձաւ բարկութիւն Տեառն ի Յուդայէ վասն մեղացն որովք զայրացոյց Մանասէ զՏէր[2]։ Զի իբրեւ Նեքաւով (Նեքով) արքայ Եգիպտացւոց խաղացեալ գայր ի վերայ արքային Ասորեստանեայց պատերազմել զԿարքեմիս, ել ընդդէմ նորա Յովսիա թերեւս իբրեւ դաշնաւոր հարկատու թագաւորին Ասորեստանեայց։

Առաքեաց Փարաւոն Նեքաւով առ Յովսիա. «Զի՞նչ կայ իմ եւ քո, արքայ Յուդայ, ոչ եմ եկեալ ի վերայ քո այսօր պատերազմ առնել, այլ ընդ այլում տան՝ տամ պատերազմ, եւ Աստուած ասաց փութալ ինձ անդր. զգոյշ լեր յԱստուծոյ, որ է ընդ իս. մի զուցէ սատակեսցէ զքեզ։ Եւ ոչ դարձոյց Յովսիա զերեսս իւր ի նմանէ, այլ պատերազմել ընդ նմա զօրացաւ, եւ ոչ լուաւ բանից Նեքաւովայ որ ի բերանոյ Տեառն, եւ եկն պատերազմել ի դաշտին Մակեդդովայ» (ի սահմանի ցեղին Մանասէի)։ Յայնժամ վիրաւորեցաւ Յովսիա յաղեղնաւորաց եւ եա հանել զինքն ի ճակատուէ եւ մեռաւ մինչ չեւ հասեալ յԵրուսաղէմ, եւ թաղեցաւ ի գերեզմանի հարցն իւրոց[3]։

Այսպէս վախճանեցաւ Յովսիա աստուածապաշտ 39 ամաց, եւ էր նա մի ի բուն լաւ թագաւորացն Յուդայ։ Չէ ինչ այն նմա ստգտանաց զի ոչ հաւատաց նա բանից հեթանոս թագաւորի, եթէ արդարեւ առաքեալ երեւեալ էր նմա յԱստուծոյ։ Տարաժամ մահ նորա պատիժք իմն էին, այլ ոչ եթէ վասն նորա ինչ, այլ վասն Հրէիցն որոց դատաստան հասեալ կայր։ — Ամենայն Երուսաղէմ եւ Յուդա լացին զնա. մեծ մարգարէն Երեմիա որ յամի իբրեւ 630 առաջ սկիզբն պաշտամանն իւրոյ՝ յօրինեաց ողբս ի վերայ Յովսիայ, եւ երգեցին զողբսն երգեցիկքն արք եւ կանայք[4]։ Այսպէս պատուեցին զյիշատակ թագաւորին այնորիկ՝ որ ի ժամանակի թագաւորութեանն իւրոյ շնորհեաց վերջին իմն շուք եւ փառաւորութիւն թագաւորութեանն Յուդայ եւ համօրէն իսկ ազգին, եւ ընդ նմա անց պայծառութիւնն այն յարիւնագոյն կործանութիւն երեկորոյ[5]։

Ի ժամանակի թագաւորութեան նորա մարգարէանայր Սոփոնիա մարգարէ (630—624) չարիս ի վերայ Յուդայ[6]։

1 Դ. Թագ. ԻԲ, ԻԳ. — 3։ Բ. ԼԵ. 20—24, 26—27։ Մնաց. ԼԴ. 8 ... ԼԵ — 19։

2 Տես Դ. Թագ. ԻԱ. 11—15 եւ ԻԳ. 25, 27։

3 Դ. Թագ. ԻԳ. 28—30։ Բ. Մնաց.

4 Բ. Մնաց. ԼԵ. 25։

5 Տես եւ Սիրաք ԽԹ. — 7։

6 Սոփոնիա Ա — Գ։

## 228

Յովաքազ (որ եւ Սեղղում եւս կոչէր)[1] երկրորդ (կամ չորրորդ) որդի Յովսիայ արքայի ընտրեցաւ թագաւոր ի ժողովրդենէ, զանց արարեալ զերէց եղբարբն նորա զԵղիակիմաւ (611)։ Այլ վասն զի Փարաւոն Նեքաւով յետ յաղթութեանն զոր յաղթեաց Յովսիայ՝ համարեցաւ զանձն իշխանի ի վերայ Հրէաստանի, եւ կամ զի Յովաքազ գիտեաց պատերազմաւ ի վերայ նորա, եւ կամ թերեւս երկոքին իսկ դիպեցան, արար զնա Նեքաւով ձերբակալ ի Ռեբղաթա (որ է յԵմաթ) յետ թագաւորելոյ նորա ամիսս երիս, եւ եւս տարեալ զնա յԵգիպտոս եւ անդ վախճանեցաւ։ Բայց եւ ի սակաւաժամանակեայ թագաւորութեանն իւրում արար Յովաքազ չար առաջի Տեառն։ Յայտ առնի այս եւ ի յանդիմանութենէ Երեմիայ մարգարէի զոր յանդիմանեաց զՍեղղում արքայ Յուդայ, եւ մարգարէացաւ նմա որ ինչ անցանելոց էր ընդ նա[2]։ Եդ Նեքաւով հարկս ի վերայ թագաւորութեանն Յուդայ եւ կացոյց զԵղիակիմ ի թագաւորութիւն, եւ փոխեաց զանուն նորա եւ եւս կոչեաց Յովակիմ[3]։

Եւ յամի իբրեւ 625 հաստատեաց Նաբուպաղասար քաղդէացի յաջողէ զԲաբելոնական-Քաղդէական թագաւորութիւնն, միաբանութեամբ ընդ Ակիաքսարայ Ա. արքայի Մարաց առեալ եւ կործանեալ զՆինուէ յետ երկուց ամաց պաշարմանն ի յորդեկն Դկղաթ գետոյ. յորում եւ Սարակոս կամ Քինալադան վերջին թագաւոր Ասորեստանեաց արկ հուր եւ այրեցաւ կանամբք եւ գանձուք (610 — 606)[4]։ Իսկ որդի Նաբուպաղասարայ՝ Նաբուքոդոնոսոր (կամ Նաբուքադնեսար) որ բարձակից հօրն լեալ էր՝ խաղաց ի վերայ Նեքաւովայ արքայի Եգիպտացւոց, յաղթեաց նմա ի Ճակատու առ Կարքեմիսաւ եւ հան ի նմանէ զամենայն կողմանսն զոր առեալ էր մինչեւ ցԵփրատ գետ (յամի իբրեւ 606)[5]։ Ապա խաղաց զայս առաջինն նուագ առաջի Երուսաղեմի։

Մեք դարձցուք ի պատմութիւն թագաւորութեանն Յուդայեանց որք ոչ խրատեցան որպէս ի կործանմանէ թագաւորութեանն Իսրայելի նոյնպէս եւ ոչ յանկմանէ թագաւորութեանն Ասորեստանեաց։

## 229

Յովակիմ (610 — 599) հարկատու Եգիպտացւոցն արար չար առաջի Տեառն իբրեւ զեղբայրն իւր։ Թէպէտ եւ ի սկզբան թա-

1 Ա. Մնաց. Գ. 15։
2 Երեմ. ԻԲ. — 2։
3 Դ. Թագ. ԻԳ. 30 — 34։ Բ. Մնաց. ԼԶ. — 4։ — Զէ անծանօթ այս յաղթութիւն Նեքաւովայ՝ Հերոդոտոսի (Բ. 159)՝ որ զՔաղաքն Երուսաղեմի կոչէ Կադիտիս (տես եւ Գ. 5). որպէս եւ ի վերայ արձանի գահերկանց Հրէից զտանելք գրեալ "Երուսաղէմ Քադուշա" այս ինքն Երուսաղէմ սուրբ. այսպէս ցայսօր Արաբացիք կոչեն՝ Էլ-Քուդս, (քաղաք) սուրբ։
4 Տես Նշաւամ Ա — Դ։ Մովսէս. Բ. 13 — 15։
5 Դ. Թագ. ԻԴ. 7։ Երեմ. ԽԶ. — 10։

գաւորութեան նորա բազում անգամ զգուշացոյց զնա Աստուած ի ձեռն Երեմիայի[1], եւ եցոյց նմա յառաջագոյն զ70ամեայ գերութիւն Հրէից[2]. բայց մօտ ի սպանումն եղեւ մարգարէն, եւ միւս եւս մարգարէ Ուրիա անուն սպանաւ հրամանաւ թագաւորին[3]:

Ի չորրորդ ամի թագաւորութեանն Յովակիմայ խաղաց Նաբուքոդոնոսոր ի վերայ Երուսաղեմի եւ արկ զնա ի շղթայս (յամի իբրեւ 606). բայց եգիտ Յովակիմ շնորհս առաջի Նաբուքոդոնոսորայ հպատակութեամբն, առ միւսանգամ զթագաւորութիւնն եւ էր նմա հնազանդ ամս երիս[4]:

Յամէ աստի յայսմանէ առնի սկիզբն համարելոյ ամաց գերութեանն Բաբելացւոց, քանզի անդէն ի ժամանակին յայնմիկ բազումք ի մեծամեծացն Հրէից ընդ որս եւ Դանիէլ էր՝ խաղխաղեցան գնացին ի գերութիւն[5]: Իսկ Երեմիա չդադարէր ի ժամանակին կշտամբել եւ քարոզել զպատիժս Աստուծոյ, զի որչափ ինչ ձեռնհաս իցէ՝ դարձուսցէ զխանդարումն Յուդայ: Գրեաց նա զմարգարէութիւնս իւր ի մատենի հրամանաւ Աստուծոյ եւ ետ ընթեռնուլ զնոսա հրապարակաւ ի ձեռն դպրացն իւրոց եւ Բարուքայ մարգարէի: Հրաման ետ Յովակիմ բերել առ ինքն զմատեանն, ընթերցան առաջի նորա էջս քանի մի, ապա պատառեաց նա զմատեանն եւ արկ ի կրակ: Իսկ Երեմիա ետ գրել միւսանգամ զմարգարէութիւնս իւր որպէս հրաման առեալ էր նմա Աստուծոյ[6]:

Յութերորդում ամի թագաւորութեան նորա (յամի իբրեւ 602) ապստամբեաց Յովակիմ միւսանգամ յարքայէ Բաբելացւոց. առաքեաց յայնժամ Նաբուքոդոնոսոր զօրս ի Քաղդէացւոց եւ յԱսորւոց, յորս յարեցան եւ Մովաբացիքն եւ Ամոնացիք. սոքա մտին ի Հրէաստան, քանդեցին եւ աւար առին զերկիրն վասն գարշութեանցն Մանասէի[7]: Եւ ըստ բանից Երեմիայ մարգարէի ըմբռնեցաւ յետ մահուան Յովակիմ. սպանին եւ ընկեցին առաջի դրանց Երուսաղեմի եւ քակեցան լուծան մարմինք նորա անթաղ (յամի իբրեւ 599)[8]: Իսկզբան թագաւորութեան նորա (յամէ իբրեւ 610—608) մարգարէանայր Ամբակում եւ պատմէր զպատժոցն զոր առաքելոց էր Աստուած ի ձեռն Քաղդէացւոցն[9]:

Յովաքիմ կամ Յեքոնիա որդի Յովակիմայ[10] թէպէտ եւ 18 ամաց էր այլ արար նա չար առաջի Տեառն որպէս զհայր իւր, եւ այնպէս համեալ պատրաստեցաւ նա դատաստանացն Աստուծոյ զոր մարգարէացաւ նմա Երեմիա[11]: Այսպէս իսկ կարծելի է թէ առանց հաւանութեան Նաբուքոդոնոսորայ նստաւ նա թագաւոր.

1 Երեմ. ԻԲ. 13—18:
2 Երեմ. ԻԵ:
3 Երեմ. ԻԶ:
4 Դ. Թագ. ԻԳ. 35—37. ԻԴ. 1: Բ. Մնաց. ԼԶ. 5—7: Դան. Ա. —2:
5 Դան. Ա. 2, 6:
6 Երեմ. ԼԶ:
7 Դ. Թագ. ԻԴ. 2—5:
8 Երեմ. ԻԲ. 18, 19. ԼԶ. 29, 30:
9 Ամբակում Ա—Գ:
10 Ա. Մնաց. Գ. 16, 17:
11 Երեմ. ԻԲ. 24—30:

վասն այնորիկ անդէն յետ երից ամսոց եհաս զօրն Քաղդէացւոց առաջի Երուսաղեմի, եւ ապա ինքն Նաբուքոդոնոսոր հասանէր ի բանակ անդր։ Եւ Յեքոնիա հանդերձ մարբն իւրով եւ զօրավարօքն եւ մեծամեծօք ել ի քաղաքէն եւ չոքաւ յանդիման նորա հնազանդութեամբ։ Բայց Նաբուքոդոնոսոր ետ տանել զնոսա հանդերձ այլովք երեւելեօք եւ յաջողակ արամբք ի հրէից՝ միահամուռ 10,000 այր՝ ի Բաբելոն, եւ ընդ նոսա զամենայն գանձս թագաւորին եւ տաճարին Տեառն, եւ կացոյց զՄաթանիա զհօրն եղբայր Յովաքիմայ (զորդի Յովսիայ) ի թագաւորութիւն եւ անուն կոչեաց նմա Սեդեկիա[1]։ Յետ կալոյ Յովաքիմայ 37 ամ ի տան բանտին ետ Եւիլմարովդաք արքայ Բաբելացւոց հանել զնա ի բանտէն, եւ ուտէր ի սեղանի թագաւորին. բայց մեռաւ նա անդէն արտաքոյ քան զհայրենի աշխարհն իւր[2]։

## 230

Սեդեկիա (599—588) արար չար առաջի Տեառն որպէս արարին եղբարք նորա եւ եղբօրորդին, եւ չեդ ունկն բանից Երեմիայ մարգարէի թէպէտ եւ տեսեալ եւս էր նորա աչօք իւրովք թէ կատարեցան դատաստանք պատուհասն զոր պատմէր նա ի վերայ եղբարցն իւրոց եւ եղբօրորդւոյն[3]։ Ինքն եւ մեծամեծք նորա եւ ժողովուրդն արարին գարշութիւնս եւ արհամարհեցին զպատգամաւորսն Աստուծոյ յորոց ձեռն խրատէր նա զնոսա։ Ապաստանեալ Սեդեկեայ յօգնականութիւն Եգիպտացւոցն[4] ապըստամբեաց յայտնապէս ի Նաբուքոդոնոսորայ եւ ոչ պահեաց զերդումն իւր[5]։

Դիմեաց յայնժամ Նաբուքոդոնոսոր զօրու ծանու ի վերայ Սեդեկեայ (յամի իբրեւ 590), առ զամուր ամուր քաղաքսն Յուդայ եւ պաշարեաց զԵրուսաղէմ ամիսս 18։ Ի ժամանակի անդ պաշարմանն երկրորդէր Երեմիա զկշտամբութիւնս իւր եւ զմարգարէութիւնս, եւ խրատ տայր հնազանդել Քաղդէացւոցն. եւ եթէ հնազանդեսջիք, ասէ, խնայեսցէ Տէր ի քաղաքն եւ ի թագաւորն։ Բայց վասն այնորիկ իսկ չարչարեցաւ եւ արկաւ ի բանտ[6]։

Ընտուսա սաստկացաւ եւ սովն ի քաղաքին, ապա յետոյ մտին ի քաղաքն Քաղդէացիքն, եւ փախեաւ Սեդեկիա գիշերի պատերազմողօքն ընդ դրախտն ի կողմն անապատին. բայց պնդեցան զհետ նորա Քաղդէացիքն, կալան զնա մօտ յԵրիքով եւ ածին ի Ռեբլաթա ուր էր յայնժամ Նաբուքոդոնոսոր։ Եւ նա կոտորել զորդիս նորա յանդիման նորա, եւ զնա կուրացոյց եւ արկ ի

1 Դ. Թագ. ԻԴ. 8 — 17։ Բ. Մնաց. ԼԶ. 9. 10։ Երեմ. ԻԴ. 1։
2 Դ. Թագ. ԻԵ. 27 — 30։
3 Տես Երեմ. ԻԷ, ԻԸ։
4 Եզեկ. ԺԷ։
5 Բ. Մնաց. ԼԶ. 11 — 16։ Դ. Թագ. ԻԴ. 18 — 20։
6 Երեմ. ԼԲ, ԼԴ, ԼԷ, ԼԸ։

առ նմա։ Ի փախչել անդր ապա սպանանել եւ այլ եւս 70 այր ի Հրէից որ գային մատուցանել Տեառն պատարագս, եւ ինքն փախեաւ 8 ընկերօք առ Ամոնացիսն։

Իսկ Հրեայքն քանզի երկնչէին իմն՝ զուցէ Նաբուքոդոնոսոր ի նոցանէ հանիցէ զվրէժ սպանման՝ ժողովեցան ի Բեթղահէմ եւ դիմեալ էր նոցա Յոհանան քաջ որդին Կարեայ, եւ խորհէին փախչել յԵգիպտոս[1]։ Այլ նախ եկին առ Երեմիա զի հարցցէ նա զՏէր եւ խոստացան անսալ բանից նորա։ Մարգարէացաւ նոցա Երեմիա թէ այս կամք է Աստուծոյ՝ մնալ նոցա ի Յուդայաստանի, եւ թէ վերակացու եղիցի նոցա Տէր. ապա թէ երթիցեն նոքա աստի՝ չարիք եւ մահ հասցեն ի վերայ նոցա։

Այլ ոչ լուան բանից նորա ցանկայքն եւ գլխաւորք ժողովրդեանն. այլ զմարգարէն թէ սուտ խօսի եւ թէ ի Բարուքայ դրդեալ այնպէս խօսեցաւ։ Եւ առին յիւրեանս զամենայն ժողովուրդն, յարեցաւ ի նոսա եւ Երեմիա եւս եւ Բարուք կամ առ բռնադատութեանն եւ կամ Աստուծոյ հրամանաւ, եւ երթեալ դադարեցին ի Տափնաս եւ յարուարձանս տեղւոյն Եգիպտոսի, ուր թագաւորէր ի ժամանակին Հոփրա (Ապրիէս)[2]։

Անդ մարգարէացաւ նոցա Երեմիա նշանակաւ ինչ զարշաւանսն Նաբուքոդոնոսորայ եւ զասպատակութիւնս երկրին Եգիպտացւոց եւ կռոցն մեհենից[3]։ Կարծեալ խրատէր զնոսա ի բաց կալ ի կռոցն պաշտամանէ, եւ իբրեւ ի նմին մնալ յամառեալ կային՝ եցոյց թէ մատնելոց են հանդերձ թագաւորաւն Հոփրեաւ[4]։ Ասի թէ վասն համարձակ եւ ազատաբերանն բարբառելոյ՝ սպանաւ անդ Երեմիա։ Ի հեռաստանէ իսկ գրով զգուշացուցեալ էր Երեմիա զժողովուրդն իւր ի Բաբելոն ի կռոցն պաշտամանէ, ցուցեալ նոցա եւ զժամանակն յորում դարձցին այտի յԵրուսաղէմ՝ զորոյ աւերածէն գրեաց եւ զգեղեցիկ ողբսն իւր։

## Բ.

### Գերութիւնն Բաբելոնացւոց (առ Նաբուքոդոնոսորաւ 600—560)։

### 232

ԱՅՍՊԷՍ լուր մարդկօրէն իմն կարծեալ վճարեալ էր վասն իսրայէլական ազգին. մերժեցան եղեն նոքա ի հայրենի աշխարհէն իւրեանց՝ ոչ մոռացեալ թէ այլ իմն պաշտօն յանձն է նոցա, այս ինքն՝ պահպանութիւն աստուածպաշտութեան յաշխարհի, եւ յիշելով միշտ՝ թէ ինքեանք իւրեանց յանցուածովք եւեթ վտարանդի զրկեցին դիւրութենէն կատարելոյ զպաշտօնն իւրեանց։ Երուսաղէմ եւ տաճարն Տեառն աճիւն եւ մոխիր լեալ կայր, եւ երկիրն նոցա անապատ եւ աւեր։ — Բայց սակայն նոքին իսկ

1 Դ. Թագ. ԻԵ. 22—26։ Երեմ. Խ, ԽԱ։
2 Երեմ. ԽԲ, ԽԳ. —7։
3 Երեմ. ԽԳ. 8—13։
4 Երեմ. ԽԴ, ԽԶ. 13...։

մարգարէութիւնքն որ պատմեցին նոցա զպատիժս պատուհասիցն այնոցիկ՝ եւ զայն եւս կանխագոյն հարազատեալ պատմէին թէ դարձցին այսրէն ի Հրէաստան եւ հասցեն նորոգ բարութեանց Աստուծոյ, թէ միայն ճշմարիտ ապաշխարութեամբ արժանի զանձինս կացուցանիցեն[1], եւ բարբառէին իմն ի միտս նոցա զցանկութիւն հայրենի աշխարհին իւրեանց եւ օրինացն։

Արդ պատմութեանն նոցա եւ պատմութեան Քաղդէացւոց թագաւորութեանն ի ժամանակի 70 ամաց գերութեանն՝ կախեալ կայ զիրաց մեծի մարգարէին Դանիելի՝ որ անդէն յառաջին ամս գերութեանն ածաւ վտարանդի ի Բաբելոն հանդերձ այլովք պատանեկօք մեծամեծացն։ Կարծի իմն թէ յարքունի ազգէ իցէ Դանիէլ։ Վարժեցաւ նա հանդերձ երիւք ընկերօք իւրովք Անանիաւ, Միսայելիւ եւ Ազարիաւ յուսմունս Քաղդէացւոցն կամ Քաւդեայց (որ ժողովք իմն քրմաց կամ գիտնոց Բաբելոնացւոցն էին). այլ վասն զի հաւատարիմ կային նոքա յօրէնսն եւ նոցա Աստուած կայտառութիւն մարմնոյ եւ զօրութիւն մտաց, եւ զԴանիէլ արժանի առնէր պարգեւաց՝ մեկնիչ տեսլեանց եւ երազոց լինելոյ։ Իբրեւ ամք երեք ի գլուխ ելին՝ հանին զնոսա դառաջեաւ թագաւորին որ եգիտ զնոսա իմաստնագոյնս քան զամենայն իմաստունս թագաւորութեան իւրոյ, եւ մինչ այնուհետեւ յիւրաքանչիւր գործակալութիւնս թագաւորութեանն[2]։

Անդէն ի ժամանակի երեցն ամաց (606—603) եցոյց բազում անգամ զիմաստութիւն իւր։ Թէպէտ եւ ժողովուրդն իսրայելական անկեալ էր ի քաղաքային իրաւանցն, բայց յանձանցն ազատութեանէ ոչ երբեք, եւ էին նոքա ի խաղաղութեան եւ ի բարութեան որչափ հնար էր իսրայելական ազգին արտաքոյ քան զերկիրն աւետեաց. բազումք ի նոցանէ եւ ի պատիւս եւ ի մեծութիւնս էին ի Բաբելոնի։

## 233

Մինչ ի սոցանէ էր եւ Յովակիմ, յորոյ ի տանն ժողովէին ծերք ժողովրդեանն եւ դատէին դատաւորքն, եւ առհասարակ իսկ ժողովէին բազումք ի Հրէից։ Ընտրեալ էին յայնժամ արք երկու ի համար ծերոցն դատաւորաց, անարժանաւորք պաշտամանն իւրեանց, որ եւ հայեան անարժան ցանկութեամբ ի Շուշան գեղեցիկ՝ որ կին լեալ էր Յովակիմայ, բարեպաշտօն եւ երկիւղած յԱստուծոյ, եւ հրապուրէին զնա բազում անգամ։ Ի միում աւուր իբրեւ իմացան թէ միայն կայ Շուշան ի դրախտի անդ իւրում՝ մտին կացին յանկարծակի առաջի նորա, եւ հրապուրէին ի գործ անարժանութեան, սպառնային ամբաստան լինել զնմանէ թէ մեղաւ ընդ առն երիտասարդի՝ եթէ չառնիցէ զկամս նոցա։

1 Երկր. օր. 3—6։ Երեմ. Լ. եւ այլուր։ 2 Դան. Ա։

Յոգւոց եհան Շուշան եւ ասէ. «Տագնապ է ինձ յամենայն կողմանց. եթէ զայդ գործեցից՝ մահ է ինձ. եւ եթէ ոչ գործեցից՝ չեմ ապրելոց ի ձեռաց ձերոց. բայց լաւ է ինձ չգործել զայդ եւ անկանել ի ձեռս ձեր, քան թէ մեղանչել առաջի Տեառն»: Ապա աղաղակեաց Շուշան ի ձայն մեծ. աղաղակեցին եւ երկոքին ծերքն ընդ նմին. ամբաստան եղեն զՇուշանայ [illegible] որ դիմեցին ընդ կողմն դրան բուրաստանին ի ներքս: Եւ ի վաղիւ անդր կրկնեցին զնոյն ամբաստանութիւն առաջի ժողովրդեանն. եւ իբրեւ կոչեցաւ Շուշան յատեանն ըստ ծերոցն խնդրելոյ՝ եդին նոքա ձեռս ի գլուխ նորա եւ վկայեցին. հաւատաց ժողովուրդն դատաւորացն եւ դատապարտեցաւ Շուշան ի մահ: Բայց Շուշան աղաղակեաց ի ձայն բարձր առ Աստուած կոչել զնա վկայ արդարութեան իւրոյ:

Եւ մինչ դեռ տանէին զնա սպանանել՝ զարթոյց Աստուած զհոգին սուրբ ի վերայ մանկանն Դանիէլի. աղաղակեաց Դանիէլ բարձրաբարբառ եւ ասէ՝ «Անպարտ եմ ես յարենէ դորա». եւ իբրեւ դարձաւ առ նա ամենայն ժողովուրդն՝ յայտ արար Դանիէլ թէ սուտ է վկայութիւնն, եւ դարձոյց զժողովուրդն անդրէն յատեանն, եւ նախ յանձն արար ժողովրդեանն զքննութիւնն: Մեկնեաց Դանիէլ զվկայսն երկոսին ի միմեանց եւ լուաւ բանից երկոցունցն ուրոյն, եւ չգտաւ միաբան վկայութիւն նոցա:

Յայնժամ ի միտ առ ժողովուրդն թէ արդար է Շուշան. «Օրհնեցին զԱստուած ի ձայն բարձր, որ ապրեցուցանէ զյուսացեալս իւր»: — Եւ ապա եղեն ամենեքեան հակառակ երկոցունց ծերոցն եւ եդին ի վերայ նոցա պատուհաս ըստ օրինացն որ սահմանեալ կային վասն զրպարտչացն[1]: Հաւանութիւն իմն է թէ քարկոծ եղեն[2]: Եւ ըստ հին ինչ աւանդութեան Աքիաբ եւ Սեդեկիա անուն էր նոցա, եւ հրամանաւ Նաբուքոդոնոսորայ այրեցան[3]: Օրհնեցին եւ ազգականք Շուշանայ օրհնեցին զՏէր. եւ Դանիէլ եղեւ մեծ առաջի ժողովրդեանն յօրէ յայնմանէ եւ անդր[4]:

[illegible]

Յերկրորդում ամի միահեծան թագաւորութեանն Նաբուքոդոնոսորայ (յամի իբրեւ 603) եսես երազ թագաւորն եւ զարհուրեցաւ ոգի նորա, բայց վերացաւ եւ բան երազոյն ի նմանէ յորժամ զարթեաւ: Նմին իրի խնդրէր նա յիմաստնոցն իւրոց եւ ի գիտաց ոչ միայն զերազն մեկնել այլ եւ զբան եւս երազոյն ցուցանել թէ զինչ էր. եւ թէպէտ եւ բազում ինչ խօսեցան սակայն ոչ շրջեցաւ թագաւորն ի մտաց իւրոց, այլ մանաւանդ ածին զնա ի սրտմտութիւն մինչեւ հրաման տալ նմա սպանանել զամենեսին զնոսա եթէ ոչ պատմեսցեն զերազն արքային:

1 Տես Երկր. օր. ԺԹ. 18—19:
2 Տես Ղեւտ. Ի. 10:
3 Տես Երեմ. ԻԹ. 21—23:
4 Դան. ԺԳ.:

Ապա եղեւ այն Դանիէլի եւ խնդրեաց իւր ժամ օր մի, եւ տուաւ նմա. կարդաց Դանիէլ յայնժամ առ Տէր հաւատովք եւ ընկերք նորա ընդ նմա։ Եւ ի գիշերին ի տեսլեան յայտնեցաւ նմա խորհուրդն եւ օրհնեաց նա զԱստուած։ Եւ Դանիէլ առաջի Թագաւորին եւ յայտ արար թէ զոր արքայ պահանջէ՝ ոչ է իմաստնոց եւ մոգուց, այլ միայն Աստուած որ յերկինս է՝ կարող է յայտնել զծածուկս, եւ նա է որ եցոյց արքայի որ ինչ լինելոց է յաւուրս յետինս։

Պատմութիւն երազոյն էր, զի տեսանէր արքայ պատկեր մի մեծ՝ որոյ գլուխ յոսկւոյ էր, լանջքն եւ բազուկք արծաթիք, մէջք նորա եւ բարձք պղնձիք եւ սրունքն երկաթիք, իսկ ոտքն՝ կէսն յերկաթոյ եւ կէսն ի խեցւոյ։ Հատաւ վէմ մի առանց ձեռին ի լեռնէ միոջէ եւ եհար զոտս պատկերին. եւ այնուհետեւ ամենայն մասունք պատկերին մանրեցան եւ եղեն իբրեւ զփոշի. իսկ վէմն եղեւ լեառն մեծ եւ ելից զամենայն երկիր։

Մեկնէր Դանիէլ զայն երազ ի վերայ չորից պետութեանց (Բաբելական–Ասորեստանեայն, Մարական–Պարսկական, Յունական–Մակեդոնական եւ Հռոմէական պետութեանց) ըստ ոսկի, արծաթի, պղնձի, երկաթի եւ խեցեղէն մասանց պատկերին։ Զորոց զամենեցունց զհետ գայցէ արքայութիւնն Մեսիայի՝ անկործանելի վիմին որ առանց ձեռին էջ խորտակեաց զամենայն պատկերն[1]։

Իբրեւ լուաւ զամենայն Նաբուքոդոնոսոր՝ անկաւ ի վերայ երեսաց եւ խոստովան եղեւ թէ Աստուածն նորա է Աստուած ճշմարիտ. արար մեծապատիւ մեծապարգեւ զԴանիէլ եւ կացոյց զնա ի վերայ ամենայն նախարարութեանցն եւ ի վերայ ամենայն իմաստնոցն Բաբելացւոց, եւ արար զնա առաջին քան զամենայն նախարարսն, եւ ըստ խնդրելոյ Դանիէլի կացոյց Թագաւորն եւ զընկերսն Դանիէլի ի վերայ մեծամեծ գործակալութեանց աշխարհին[2]։

235

Մեծութիւնն եւ ընդարձակութիւն որ ի մեկնութեան երազոյն ցուցաւ ի Դանիէլէ՝ մասամբ ինչ արդիւնք եղելոց իրաց էին, եւ մասամբ ինչ՝ մարգարէութիւն իրաց լինելոց տակաւին ի ձեռն Նաբուքոդոնոսորայ՝ զոր յայտնի իսկ առնել էր Աստուծոյ իբրեւ խարազան ի ձեռն պատուհասել զազգս երկրի։

Վասնզի յետ բառնալոյ նորա ամենեւին զթագաւորութիւնն Յուդայ (588)՝ չեւ ընդ երկար ուրեմն լինել գրաւեալ թագաւորութեանցն ընդ ջնջումն թագաւորութեանն այնորիկ։ Յետ մարտիւ պատերազմաւ զՍիդոն առնլոյ (590)՝ առնոյր եւ զհին Տիւ-

1 Տես վերագոյն էջ 48 — 49։ 2 Դան. Բ։

Արեղնազովք, եւ ամպեղէնք պատմուճանք մահու չխմեալ հայհոյու-
թիւն զԱստուծոյն զայնմանէ. զի ոչ գոյ այլ Աստուած որ կարող իցէ այնպէս փրկել։ Եւ հանէր նա հրովարտակ պատուել զգօրութիւն եւ զնշանս եւ զպատուհասս Բարձրելոյն[1]։

## 237

Ընդ այն ամենայն նշանք զօրութեան եւ մեծութեան Աստուծոյ զոր եսես Նաբուքոդոնոսոր՝ թուի թէ ոչ ինչ ուսեալ ազդեցութիւն ի նա գործեցին. այլ մնացեալ ի յաջողութեանցն հպարտացեալ ամբարհաւանեցաւ, եւ այնպէս ձգեաց յանձն զպատիժն Աստուծոյ. սակայն նախ զգուշացուցեալ խրատեցաւ նշանաւոր ինչ տեսլեամբ։

Տեսեալ նա յերազի ծառ բարձրաբերձ պտղալից եւ տերեւախիտ, որ բազում գազանաց լինէր բնակութիւն, եւ երամք ի նմանէ կերակրէին նոցա։ Ընդ զուարթուն մի իջանէր յերկնից եւ բարբառէր զօրութեամբ՝ թէ սահմաներ է ի խորհրդեան զուարթնոց եւ սրբոց հատանել զծառ եւ քշել զոստս, եւ զարմնն կապել շղթայիւք եւ թողուլ զի թացցի ի ցօղոյ երկնից եւթն ժամանակս, զի ի միտ առցէ ամենայն կենդանի թէ տիրէ Բարձրեալն ամենայն թագաւորութեանց, եւ ում կամի՝ տայ զնա։

Եհարց թագաւորն զԴանիէլ որ եւ Բաղտասարն կոչէր, եւ խնդրեաց ի նմանէ զմեկնութիւն տեսլեանն, զի գիտէր եթէ հոգի Աստուծոյ է ի նմա։ Եւ իբրեւ շատ տարակուսեաց թագաւորն՝ եցոյց նմա Դանիէլ թէ ինքն արքայ է ծառն, այլ խորհուրդն Աստուծոյ սահմաներ է հալածել արքայի ի միջոյ մարդկան, եւ լինել ընդ գազանս, խոտ ճարակել իբրեւ զարջառ, եւ կալ ընդ ցօղով երկնից ամս եւթն, մինչեւ ծանիցէ եւ ի միտ առցէ թէ տիրէ Բարձրեալն՝ թագաւորութեանց, եւ ում կամի՝ տայ։ Եւ խրատ ետ նմա քաւել զմեղս իւր ողորմութեամբ, թերեւս երկայնամիտ լիցի ի վերայ յանցանաց նորա Աստուած։

Բայց եւ ոչ յայսմ ամենայնէ եկն ի միտս թագաւորն. քանզի իբրեւ յետ տարեւոր ժամանակի ելեալ ի վերայ ապրոնականն դղեկին զոր ինքն ետ շինել հայեէր տեսանէր զԲաբելոն, ամբարտաւանեաց սիրտ նորա իբրեւ թէ Աստուած ոմն իցէ։ Եւ մինչ դեռ բանքն ի բերան էին թագաւորին՝ ձայն եղեւ յերկնից որ զնոյն բանս հրեշտակին որ ի տեսլեան երազոյն երեւեցաւ՝ կրկնորդէր։ Եւ ի նմին ժամանակի բանն կատարեցաւ. հալածեցաւ նա ի մարդկանէ եւ եղեւ իբրեւ զմի ի գազանաց վայրի։

Ընդ յետ կատարածի աւուրցն սահմանելոց դարձան միտք նորա առ ինքն, եկն յառաջին պատիւ թագաւորութեանն, որ-

1 Դան. Դ.

Աստուած զթագաւորութիւն քո՝ եւ վախճանեաց զնա. Թեկէլ, կշռեցաւ ի կշիռս՝ եւ գտաւ պակասեալ. Փարէս, բաժանեցաւ թագաւորութիւն քո՝ եւ տուաւ Մարաց եւ Պարսից,,: Շքեղացուցեալ զարդարեաց Բաղտասար զԴանիէլ եւ արար զնա երկրորդ իշխանութեամբն ի թագաւորութեան իւրում:—Բայց անդէն ի նմին գիշերի հարաւ Բաղտասար, եւ անց թագաւորութիւնն առ Դարեհ Մար[1]:

Քանզի Կիւրոս ի նմին գիշերի բացեալ զՋրադարձն՝ յերկոցունց կողմանց դիմեցին ի ներքս Պարսիկք եւ Մարք ի Բաբելոն եւ դէպ ուղիղ ի վերայ տանն արքունի. զգիշերապահսն որ ի գինւոջ էին՝ կոտորեցին առաջի դրանն: Լուաւ թագաւորն զաղմուկն, եւ ետ բանալ զդրունս արքունեաց իմանալ թէ զինչ իրք իցեն: Յանկարծ խուժեցին Պարսիկք ընդ դրունսն ի ներքս, եւ յարձակեալ ի վերայ թագաւորին՝ սպանին զնա եւ զայնոսիկ որ զնովաւ էին: Այսպէս առաւ Բաբելոն ըստ պատմութեան Հերոդոտայ եւ Քսենոփոնեայ, ընդ որոց միաբան է պատմութիւնն Դանիէլի եւ բանք մարգարէութեանցն (538)[2]:

## 239

Յետ ի գլուխ ելանելոյ կործանման թագաւորութեանն Քաղդէացւոց՝ Կիաքսար Բ. (Դարեհ Մար) հրաւիրեալ ի Կիւրոսէ եկն եդ զաթոռ թագաւորութեան իւրոյ ի Բաբելոն, որպէս հաւանութեան թուի՝ արարեալ եւ զԿիւրոս բարձակից թագաւորութեանն, որում եւ ետ եւս զդուստր իւր զԱմիտիս կնութեան: Այնուհետեւ չորեքին թագաւորութիւնքն՝ այս ինքն Պարսից, Մարաց, Ասորեստանեաց եւ Բաբելացւոց ընդ միմեանս յօդեալ՝ եղեն մի միահեծան տէրութիւն, որ ի ծովէն Միջնոյ հասանէր ցկողմանս Հնդկաց, բաժանեալ ի 120 նահանգս. ի վերայ իւրաքանչիւր նահանգացն մի մի նախարար, եւ նախարարքն ընդ իշխանութեամբ երից իշխանաց կային, յորոց մին եւ Դանիէլ էր: Բայց թագաւորն կամէր ամբառնալ զնա ի վերոյ քան զամենայն ընկերսն իւր վասն հոգւոյն եւ իմաստութեանն որ ի նմա էին:

Ընդ այն նախանձաբեկ եղեն իշխանքն, եւ զի չէին ձեռնհաս վնասելոյ, քանզի ոչինչ բիծ ի նմա գտանէին, յայն իմն ածին զթագաւորն զի հրաման տացէ թէ զաւուրս երեսուն մի ոք Աստուծոյ ումեք կամ մարդոյ կացցէ յաղօթս կամ խնդրեսցէ ինչ բայց միայն ի թագաւորէն, սահմանեալ պատիժ՝ արկանել զայնպիսին ի գուբ առիւծուց: Դանիէլ լսել լուաւ զօրէնսն՝ բայց ըստ սովորութեանն բացեալ զպատուհանս ապարանից իւրոց դարձու-

1 Դան. Ե. Է. — Եսայ. ԺԳ. ԺԴ. ԻԱ. ԽԷ. Երեմ.
2 Հերոդոտ. Ա. Քսենոփ. Կրթութ. Կիւր. ԺԱ. ԻԵ. Ծ.

ցեալ զերեսս ի կողմն Երուսաղեմի, կրկնեալ ծունր երկիր եպագ Աստուծոյ իւրում երկիցս յաւուրն: Զչարախօսքն նորա գիտեալ զիրսն՝ ամբաստան եղեն զնմանէ առաջի Թագաւորին. խնդրէ յա-մէր իմն եւ յապաղէր Թագաւորն՝ զայն յուղ առնէին նմա Թէ առանց եղծանելոյ են օրէնք Մարաց եւ Պարսից: Այս հրա-մայեաց Թագաւորն արկանել զԴանիէլ ի գուբն եւ զվէմ զբերան ետ կնքել մատանեաւ իւրով, զի գոնեայ ի չարչարանաց մարդկան զերծուցէ զԴանիէլ:

Բայց Դարեհի հատաւ քուն յաչացն, ոչ կեր եւ ոչ արբ, եւ վաղորդայն փութացեալ եհաս ի գուբ անդր առիւծուց եւ գոչէր խանդաղատանօք բարբառով. Դանիէլ, ծառայ Աստուծոյ կենդանւոյ. Աստուածն զոր դուն պաշտես յամենայն՝ նա փրկեաց զքեզ յառիւծուցն: Իսկ պատասխանի ներքուստ ի վեր Դանիէլ. Աստուած իմ առաքեաց զհրեշտակ իւր եւ եփակ զբերանս առիւ-ծուց եւ ոչ ապականեցին զիս՝ զի առաջի նորա ուղղութիւն գտաւ իմ, եւ առաջի քո, արքայ, յանցանս ինչ ոչ արարի:

Ուրախացաւ յոյժ իւր Դարեհ, հրամայեաց եւ հանել զԴա-նիէլ ի գբոյ անտի, եւ փոխանակ նորա զչարախօսսն նորա հան-դերձ կանամբք եւ որդւովք ի ներքս ընկենուլ: Այս ամենայն ազգաց իւրոց հրաման հանէր երկնչել յԱստուծոյն Դանիելի եւ դնել նմա պատիւ, զի նա է Աստուած կենդանի եւ կայ յաւի-տեանս. եւ արքայութիւն նորա ոչ եղծանի, եւ տէրութիւն նորա ցյաւիտեան. օգնական լինի եւ փրկէ, եւ առնէ նշանս յերկինս եւ յերկիր[1]:

Միւսում ի պատկերացն Բելայ առիթ էին մատուցանել Բա-բելացիքն օր ըստ օրէ դահճամունս կերակրոց եւ ըմպելեաց, զոր ուտէին ի ծածուկ 70 քուրմքն եւ ընտանիքն նոցա, եւ այսպէս իմն կարծեցուցանէին Թագաւորին Թէ կերն Բաղ Բէլ ուտիցէ զնոսա: Համոզեցոյց Դանիէլ զԹագաւորն վասն իրացն ստութեան. քանզի ետ նա ցանել ի մեհենին մոխիր եւ փակել ըստ սովորութեան զմեհեանն եւ դնել ի վերայ կնիք. եւ ի վաղիւ անդր ետես Թագաւորին զհետս ոտից քրմացն եւ զկանանց եւ զմանկանց նո-ցա՝ ի մուտ առ զխաւն եւ հրաման ետ կոտորել զամենայն զքուրմսն:

Իսկ դարձեալ վիշապ մի մեծամարմին՝ որում երկիր պագանէին բնակիչք քաղաքին Բաբելացւոց. զսա սպան Դանիէլ հրաման առեալ ի Թագաւորէն՝ տուեալ նմա ուտել դժուարին ինչ առ-հալել, եւ այնու եւս ետ առնուլ ի մետ Թագաւորին զանկարու-թիւն աստուածոցն իւրոց:

Այլ ժողովուրդն յայնժամ հակառակ Թագաւորին եւ բռնա-դատեաց զնա սպառնալեօք տալ ի ձեռս զԴանիէլ, զոր եւ արկին ի գուբ մի առիւծուց, ուր կային եւթն առեւծք սովականք եւ

1 Դան. Զ.

պարզելականք ի պաշտօնութենէ կերպարանաց իւրեանց։ Բայց Տէր պա-
հեաց զծառայն իւր ոչ միայն ի ժանեաց առիւծուցն ամենայն՝ այլ
եւ ած հրեշտակ մի առ նա զԱմբակում մարգարէ ի կողմանց Հրէ-
աստանի՝ բուռն հարեալ զհերաց գագաթան նորա, եւ երբ
կացոյց զնա ի վերայ գբոյ առիւծուցն հանդերձ կերակրովն զոր
պատրաստեալ էր մարգարէն, եւ այնպէս կերակրեալ Դանիէլ
ապրեցաւ եւ ի սովոյն մահուանէ։

Այլ կերպիւ եւս վեց աւուրց հայեցաւ թագաւորն տրտմու-
թեամբ ի գուբ անդր ի ներքս՝ եւ ետես զնա նստեալ ի մէջ առիւ-
ծուցն։ Աղաղակեաց ի ձայն բարձր եւ ասէ. «Մեծ ես Տէր Աս-
տուած Դանիէլի եւ չիք այլ որ բաց ի քէն»։ Եւ առնուլ զնա ի
վեր, եւ զմատնիչսն Դանիէլի հրամայեաց արկանել ի գուբն, եւ
անդէն յանդիման նորա գէշ գէշ պատառեցան ի գազանացն[1]։

Ոմանք զայս վերջին պատմութիւն ի ժամանակս Եւլմարու-
դաքայ որդւոյ Նաբուքոդոնոսորայ հանեն։

## 240

Այսպէս այս ամենայն վշտօք հանդերձ եղեւ Դանիէլի եւ յա-
ճախեաց մանաւանդ պատիւ փառաւորութեան նորա, եւ քաղա-
նաւն երեւէր նա յարեւելս վասն իմաստութեանն[2]։ Բայց ի պար-
գեւաց մեկնութեան երազոց՝ արժանի եղեւ նա յԱստուծոյ բա-
զում եւ այլ եւ այլ պատմութեանց եւ յայտնութեանց վասն
դիպաց դիպաց՝ որ կանուխ կամ անագան յաշխարհի դիպեցան,
եւ ամենեւին ճշգրիտ գտեալ եղեն ի դէպս։

Այսպէս նա ի տեսլեան կերպարանս իմն թեւաւոր առիւծու եւ
արջոյ որոյ երեք կողք կային, եւ թեւաւոր ընձու առ որում չորք
գլուխք պատշաճեալ, եւ գազանի իրիք չորրորդի որոյ ժանիք եր-
կաթի էին եւ եղջիւրք տասն. ընդ սոյն տեսլեամբ ետես նա զչոր-
րեսին թագաւորութիւնս, այս ինքն զԲաբելական-Ասորեստա-
նեայց զմիաւորեալ թագաւորութիւնն, զՄարաց եւ զՊարսից
զմիաւորեալն, զՄակեդոնական Յունաց թագաւորութիւնն եւ
զՀռոմայեցւոցն՝ որ զայլն ամենեսին եկուլ. եւ զփառս եւս նորա
յառաջագոյն նկարէ, հանդերձ կցորդութեամբն զոր ընդ թա-
գաւորութեան Քրիստոսի ունի[3]։ Այլով եւս տեսլեամբ ետես ի
կերպարանս խոյոյ որոյ երկու եղջիւրք էին՝ զի պարտեցի ի քօշէ
այծեաց՝ զմիտս պատերազմի երկրորդ եւ երրորդ թագաւորու-
թեանն ընդ միմեանս, եւ ի հինգ եղջիւրս քօշին զԱղեքսանդրոս
զՄեծն եւ զչորեսին թագաւորութիւնս որ յետ նորա կացին[4]։ Յե-
տոյ յայտնեաց նմա հրեշտակն Գաբրիէլ եւ զպատերազմունս զոր

1 Դան. ԺԴ։
2 Եզեկ. ԻԸ. 3։
3 Դան. Է։
4 Դան. Ը։

տալոց էին զօրաւորքն Աղեքսանդրի ընդ միմեանս, եւ զհալածանս Հրէիցն յԱնտիոքայ Եպիփանեայ որ է պատկեր կանխանկար Ներոնին[1] : Հոյակապ քան զամենայն յայտնութիւնս նորա՝ եւթանասուն եւթներորդաց յայտնութիւնն է (538) : Յորժամ Դանիէլ յետ առմանն Բաբելոնի յորում ժամանակի ընթեռնոյր էր զդարձ գերութեան Հրէիցն[2], աղաչէր յոյժ զՏէր վասն փրկութեանն, երեւեցաւ նմա Գաբրիէլ եւ խոստացաւ նմա թէ ոչ Հրեայք եւեթ այլ եւ ամենայն իսկ մարդկութիւն յետ եւթանասուն եւթներորդաց այս ինքն՝ 490 ամաց փրկելոց էր Օծելովն (Քրիստոսիւ)[3] : — Ու յետ բազում ժամանակի արդեամբք եղեն ի գլուխ խնդրուածք նորա վասն դարձի գերութեանն :

Քանզի Կիւաքսար Բ. կամ Դարեհ Մար՝ երկուք ամօք յետոյ քան զառն Բաբելոնի վախճանէր, եւ Կիւրոս լինէր միահեծան թագաւոր Պարսից եւ Մարաց տէրութեանն՝ յամի իբրեւ 536, եւ անդէն յառաջնումն ամին հանէր հրովարտակ դառնալոյ գերւոյն Հրէից յաշխարհն իւրեանց :

Յայս մեծանձնութիւն եկն Կիւրոս ընթերցեալ[4] զայն որ վասն նորա մարգարէութիւնք էին Եսայեայ[5] զոր եւ նմա իմանալ, որպէս ի դէպ է, Դանիէլ : Թէ եւս արդեւք ինքն Դանիէլ զարձակումն Հրէիցն եւ մխիթարեցաւ ընդ լրումն բանից Երեմիայ մարգարէի[6], այն չէ յայտ. զի առոյգ իմն թուի թէ անդէն յառաջնում ամի միահեծան թագաւորութեանն Կիւրոսի վախճանեցաւ Դանիէլ (536)[7] : Կացմնաց նա սուրբ եւ անարատ զամենայն երկայնակեաց կեանս իւր յարքունիս մեծազօր թագաւորաց, լեալ եւս կցորդ իշխանութեան նոցա : Աստուած իսկ ի գլխովին "այր ցանկալի" կոչէ զնա[8], եւ յարգեալ գովէ զնա ի ձեռն Եզեկիելի ժամանակակից մարգարէի որ հաւասար կացուցանէ զնա արանցն սրբոց՝ Նոյի եւ Յոբայ[9] :

Չէ յայտ թէ զգիրն որ յանուն Դանիէլի անուանի եւ մասամբ միով (Բ—Է) քաղդէացի լեզուաւ եւ միւսով մասամբ (Ը—ԺԲ) եբրայեցի լեզուաւ գրեալ կայ՝ ինքնին Դանիէլ այսպէս յօրինեալ եւ կարգեալ իցէ, եթէ այլ ոք յԻսրայելացւոց զիւրաքանչիւր հատածն՝ որ յառաջագոյն ուրոյն ուրոյն լեալ իցեն՝ ի մի մատեան ժողովեալ իցէ : — Իսկ մեւս եւս մասն գրոցն Դանիէլի (ԺԳ—ԺԴ) ի յոյն լեզու միայն կայ : — Յառաջնումն մասին (Ա—Զ) տիրէ նիւթ պատմական, յերկրորդումն (Է—ԺԲ) տիրեն մարգարէական կերպարանք : Ու ուրեք զտանեմք այնպէս ճշգիւ եւ ժամանակագրական սահմանօք ցուցեալ զհեռաւոր հանդերձեալսն որ-

1 Դան. Ժ. ԺԱ.
2 Երեմ. ԻԵ. 12. ԻԹ. 10.
3 Դան. Թ.
4 Յովսեփ. Նախն. պատմ. ԺԱ. 1.
5 Եսայ. ԽԴ. 23—28. ԽԵ. —6.
6 Երեմ. ԻԵ. 12. ԻԹ. 10.
7 Դան. Ա. 21. ըստ ընտիր. Զ. 28.
8 Դան. Ժ. 11, 19.
9 Եզեկ. ԺԴ. 14, 18, 20.

ղէս ի մարգարէութիւնսն Դանիէլի, եւ ոչ ուրեք այնպէս յայտնի ցուցեալ տեսանեմք զհամեմատութիւն հեթանոսական պատմութեան ընդ աստուածաշնչական իշխանութեանն Մեսիայի։

## §241

Դանիէլ որ եւս ի կենդանութեանն զսկիզբն Պարսկական - Մարական թագաւորութեանն առ Կիւրոսիւ՝ առանձինն տեսլեամբ մարգարէութեան եւս եւ զամենայն ընթացս եւ զկատարած այսր թագաւորութեան ի ժամանակս պայազատացն Կիւրոսի։ «Յարիցեն, ասէր նմա տեսիլն, երեք թագաւորք (այս ինքն՝ Կամբիւսէս, Զմերդիս, Դարեհ Վշտասպեանց), եւ չորրորդն (Քսերքսէս) մեծասցի մեծութիւն (ընչաւետութիւն) մեծ քան զամենեսեան, եւ յետ զօրանալոյ նորա ի մեծութեան (յընչաւետութեան) իւրում յարիցէ ի վերայ թագաւորութեանցն Յունաց։ Եւ (առ յաջորդօք նորա) յարիցէ թագաւոր հզօր (Աղեքսանդրոս) եւ տիրեսցէ տէրութեամբ բազմաւ, ... թագաւորութիւն նորա փշրեսցի եւ բաժանեսցի ի չորս հողմս երկնից»[1]։

Կիւրոս որ տիրեալ էր միահեծան յամէ 536 յետ մահուն Կիաքսարայ՝ առ եւ զՄարաստան իբրեւ պաշտօնական դստերն նորա (Ամիտեայ), եւ մոյծ զսովորութիւնս եւ զօրէնս եւ զպաշտամունս Մարաց (զմոգուցն)։ — Յետ 7 ամաց թագաւորութեան մեռանէր Կիւրոս իբրեւ 70 ամաց. այլ որպէս վասն ամաց մանկութեանն՝ նոյնպէս եւ վասն վախճանի նորա այլ եւ այլ իմն պատմութիւնք կան։ Ըստ Հերոդոտայ[2] անկաւ յարշաւանի ուրեք ի վերայ Մազքթաց որ բնակէին ի կողմանս ծովուն Կասպից. քանզի խորագոյն մխեցաւ յաշխարհն նոցա, եւ վասն այնորիկ պաշարեալ ի նոցանէ շուրջանակի՝ ի պարտութիւն մատնեցաւ. Տոմիրիս տիկին որ յաղթեացն իսկ՝ առ զգլուխ նորա եւ արկ զնա առ քինուն յաման լի արեամբ։ Իսկ Քսենոփոն պատմէ զնմանէ խաղաղութեամբ վախճանեալ[3] (յամի իբրեւ 529)։

Ի գործոց անտի անագորոյնութեան մարական-պարսկական զօրուն ի պատերազմի անդ ընդդէմ Բաբելացւոցն որ ըստ մարգարէութեանց պատմին[4], չմարթի զԿիւրոս իբրեւ զօրավար նոցա անագորոյն ոք ցուցանել, քանզի հակառակ իմն թուի մեզ եւ զգօն բարուցն՝ զոր առ Հրեայսն եցոյց, եւ ըստ իրաւանց պատերազմի այնց ժամանակաց չէր հնար եւ զգօն զօրավարի արգելուլ զգործ անագորոյնութեան զօրացն մոլեգնելոց։

1 Դան. ԺԱ. 2 — 5։
2 Հերոդոտ. Ա. 214։
3 Քսենոփ. Ը. 7։
4 Եսայ. ԺԳ. 15 — 18։ Երեմ. ԾԱ. 48. 56։

242

Կամբիւսէս (529 — 522) ըստ Հերոդոտոսի, որդի էր Նիտետի-սայ դստեր Հոփրայ Եգիպտացւոց թագաւորի. ըստ Կտեսիայ՝ որդի էր նա Ամիւտիսայ դստեր Աժդահակայ Մարաց թագաւորի։ — Պայազատեաց զհայրն ի բուն գլխաւոր թագաւորութեանն, իսկ եղբօր նորա կրսերոյ Զմերդեայ (որ եւ Տանիոքսարկէս) տուաւ Բակտրիա իբրեւ ուրոյն իմն իշխանութիւն բայց ընդ հպատակու-թեամբ երիցու եղբօրն։ Կամբիւսէս քանզի իբրեւ զԿիւրոս պա-տերազմասէր էր եւ վայրենի եւս եւ անագորոյն՝ ձեռն ի գործ ար-կանէր առնուլ ի սուր սուսերի զաշխարհն Ափրիկեցւոց։ Նախ յերկրէն Եգիպտացւոց առնէր սկիզբն։ Խաղացեալ հասանէր յա-ջողութեամբ ընդ անապատն Արաբացւոց, եւ առ Պեղուսեաւ ի պարտութիւն մատնեցան ի նմանէ Եգիպտացիքն որոց զօրավար՝ ինքն թագաւորն Փսամենիտէս էր. սա առեալ զմնացորդս զօրաց իւրոց՝ ամրանայր ի Մեմփիացւոց քաղաքին, ուր սպանին իսկ Եգիպտացիքն զայնոսիկ որ հրեշտակութեամբն առաքեալ էին առ նոսա։ Իբրեւ յետ սակաւ ինչ միոյ առաւ քաղաքն, 2000 այր յազ-նուական երիտասարդացն Եգիպտացւոց, յորս էր եւ ուստր Փսա-մենիտեայ՝ կոտորեցան, տալ ընդ սպանութեանն հրեշտակացն վրէժս։ Որպէս եւ ինքն իսկ Փսամենիտէս յորժամ նորոգ յապըս-տամբութիւն զԵգիպտացիսն գրգռէր՝ զնոյն կրեաց։ Այսպէս ան-կաւ հին աթոռ Փարաւոնացն, եւ Եգիպտոս նահանգ եղեւ Պար-սից (525). Լիբիա եւ Կիւրենէ ինքնակամ հնազանդեցին։

Կամէր այնուհետեւ Կամբիւսէս առնուլ զմեծատուն աշխարհն Եթովպացւոց։ Ի Թեբացւոց քաղաքէ անտի առաքեաց նա 30,000 այր ի վերայ Ամոնիայ, բայց ի կիզիչ եւ յաւազուտ անա-պատին սատակեցան։ Խաղացեալ երթայր ինքնին ի վերայ՝ ամե-նայն բանակաւն իւրով, բայց առ սովոյն աղետի դարձաւ այտրէն ի Մեմփիս։ Ընդ եւեթ զի ի ցնծութեան էր ժողովուրդն, թէ նոր Ապիս գտաւ։ Նա քանզի ի ցասման էր՝ ետ առնել զանաքեց զքուրմն եւ կոտորել զնոսա պատառ պատառ եւ ցանել ի մէջ ժողովրդեանն, իսկ զԱպիսն զոր ետ ածել առաջի՝ իւր իսկ ձե-ռամբ սպանանէր ծիծաղելով եւ զանմտութեամբն նոցա։

Վայրենագոյն բնութիւնն Կամբիւսեայ առաւել եւս յաճա-խեալ՝ անչափ գինուոյն՝ այնուհետեւ յանհնարին անագորունու-թիւնս հասաւ. ի բազմաց անտի զոր սպան՝ էին եւ եղբայր նորա Զմերդիս եւ քոյր նորա զոր սպան աքացի վասն արկանելոյ պատա-սուս ընդ մահ եղբօրն, եւ այլ եւս բազումք յանմեղաց։ Ապա լուեալ թէ ապստամբութիւն լինեալ է ի Շուշ քաղաքի՝ կամէր երթալ անդր. իբրեւ յերիւար կամէր ելանել՝ ինքն իւրով սուսե-րաւ խոցոտէր զզիստ իւր եւ մեռանէր անորդի (522)։ Իսկ առաջ-

նորոգք տպաւորութեանն էին մոգքն որոց կամեցեալ զՄագու միաանձնական առնել ի գլխաւորութիւն տէրութեան՝ զայր մի մոգ յազգէ Զոփինդաղաս անուն մատուցին ի բարձ թագաւորութեան, համարեալ համբաւ թէ Զմերդիս է որ վաղն սպանեալ էր, առեալ եւ թողութիւն հարկաց վասն երից ամաց. բայց անդէն ի նմին ամի յայտնեցաւ դաւն, եւ միաբանեցին եւթն գլխաւորք ի ցեղիցն Պարսից եւ զԶմերդիս սպանին անդէն ի սենեկի նորա միաբանութեամբ կանանցն:

## 243

Յետ այնորիկ ընտրեցին միաբանեալքն ի միջոյ իւրեանց զԴարեհ զնուսակալ Պարսկաստանի զորդի Վշտասպեայ ի տոհմէ Աքեմենեանց ի թագաւորութիւն (522—486). Դարեհ հաստատակոյն արար զկրաւանան իւր առնել կնութեան զերկուս ի դստերացն Կիւրոսի[1]: Նշոյլ նա զանձն արժանի աթոռոյն. քանզի նա է որ բուն կարգեալ յօրինեաց զպայման առաջնորդութեան թագաւորութեանն Պարսից. զի բաժանեաց նա զամենայն թագաւորութիւնն ի 20 նախարարութիւնս կամ կուսակալութիւնս ըստ բաժնի հարկաց՝ սահմանեալ թէ որչափ հասս իւրաքանչիւր տացէ, որով կուտեաց խակ զանձս բազումս յոյժ: Կարգէր եւ զիրս պատերազմի եւ զտեսչութիւն արքունեացն:

Յարեաւ ապստամբութիւն ինչ մեծ ի Բաբելոն քաղաքի, ձեռն արկ Դարեհ պաշարել զքաղաքն զայն ամուր. ամիս 20 զուր աշխատ եղեւ զօրականն, եւ հնարքն Կիւրոսի եղեն ի գործ, մինչեւ երկնչէին իսկ թէ անօթութեան դառնայցեն յետս եւ հանցին եւս ի նոցանէ բազում կողմանք: Յայնժամ Զոպիրոս ոմն պարսիկ յազգէ խնդրեաց հնար փրկութեան. ծայրատեաց նա զանձն եւ եկ գնաց ի Բաբելոն. անդ կարծեցուցանէր թէ ինքն թագաւորին այնպէս պատուհասեաց զնա. վստահ եղեն ի նա բնակիչք քաղաքին յետ հարկանելոյ նորա միանգամ եւ երկիցս զզօրսն արքունի դաշնակաւորս, մինչեւ կացուցանել եւս զնա զօրավար զօրաց իւրեանց: Դիւրաւ այնուհետեւ մատնեաց նա թագաւորին զքաղաքն (517—516): Եւ նա ընդ այնր զնախարարութիւն Բաբելացւոց հանդերձ ամենայն մտիւքն: Կործանեաց մեծամեծք քաղաքին եւ առաջնորդք ապստամբութեանն, եւ յայնմ հետէ լինէր սկիզբն՝ կործանմանն Բաբելոնի, զի մասն միամրակուռ պարըսպացն եւ ամենայն աշտարակք բրեալ քանդեցան[2]:

Կամէր այնուհետեւ Դարեհ տարածանել զիշխանութիւն իւր եւ արտաքոյ քան զսահմանս թագաւորութեան իւրոյ: Զա֊

1 Արձանագիրք սեպաձեւ գրոց որ յերէն զԴարեհ տան՝ «Արքայ Դարեհ որդի Վշտասպեայ, Աքեմենեան», ուր զՔսերքսեայ տան՝ «Արքայ Քսերքսէս որդի արքային Դարեհի, Աքեմենեան». որովք յայտնի ցուցանեն թէ Դարեհ Վշտասպեան է սկիզբն նորոյ երկք հարստութեան թագաւորացն Պարսից համեմատ պատմութեանցն Յունաց:

2 Տես Երեմ. ԾԱ. 58:

ռաջէին արշաւեալ ի վերայ ազգացն Սկիւթացւոց բնակելոց ի մէջ Տանայիս եւ Դանուբիոս գետոց, որ ստէպ սփռէին ասպատակ։ Անցեալ ընդ Հելլեսպոնտոս՝ հասանէր ի կողմանս Դանուբայ. այլ Սկիւթացիքն անտանելք եւ անշէնք՝ կանամբք եւ մանկտւով, զրաստուք եւ պաճարօքն միմեանց հանդարտութեամբ անցին եւս ի հիւսիսակողմանն՝ Մեայքն Դարեհիկ յանապատս անջինս։ Նմին իրի վտանգեալ ի հալածելոյ զնոսա զուր՝ հարկ համարեցաւ դառնալ այսրէն յետս ընդ նաւակամուրջն՝ զոր պահէին նմա Յոնքն եւ Եոլիացիք՝ յորժամ թելադրիր լինէին քակել Սկիւթացիքն։ Բայց Թրակիա եւ Մակեդոնիա նուաճեցաւ ընդ հարկաւ (513)։ Յետ ամաց ինչ սակաւ եւ առ հասանակողմն ընդկաց աշխարհին (509), եւ յայնմ հետէ թագաւորութիւնն Պարսից ձգէր ի Մակեդոնացւոց աշխարհէն մինչեւ ցՀնդիկս, եւ հասեալ էր ամենեւին ի ծայր մեծութեան իւրոյ՝ ուստի ընկենլոց էր զնա ազգ մի փոքր այլ զօրաւոր, այս ինքն Յունացն ազգ։

Ընդէն առ Դարեհիւ եւս երեւ սկիզբն մեծայաղթ պատերազմացն։ Պատճառք պատերազմացն նախ ապստամբութիւնն եղեւ զոր ապստամբեցին Յոնք որ յԱսիա էին՝ դառեալ օգնականութիւն յԱթենացւոց, եւ հրձիգ արարին զքաղաքն Սարդիացւոց։ Բայց ի պարտութիւն մատնեցան զաշնաւորքն, եւ Դարեհիկ զՄիղետոս քաղաք վաճառաշահ քանդեցին. յետ այնորիկ յարեաւ անմիաբանութիւն, Աթենացիք նաւարկեալ դարձան անդրէն յաշխարհն իւրեանց, ապա Յոնք միւսանգամ նուաճեցան (503—496)։

Յայնժամ զուամարեալ Դարեհ զօրս ի մարտ պատերազմի ի վերայ Յունաց աշխարհին վասն քինուն զոր ունէր. այլ առաջին ճակատն ընդունայն եղեւ վասն մրրկին (492). նոյնպէս երկրորդ ճակատն առ Մարաթոնիւ չյաջողեցաւ (490 Սեպտ. 29). եւ մինչ դեռ թագաւորն կազմէր խաղալ երրորդ անգամ՝ յետս կացին Եգիպտացիքն (488)։ Մեռաւ Դարեհ թողեալ ի պայազատութիւն զորդի կնոջն իւրոյ Ատոսայ։ Դարեհ էր թագաւոր լաւ՝ ի թագաւորացն Պարսից ի լաւաց։

„Զկիւրոս, զԿամբիւսէս եւ զԴարեհ՝ աստուածատուր գիրք խոյոյ նմանեցուցանեն, եւ նշանակեն զարշաւանս նոցա խեթկելմն խոյին ի չորեսին կողմանս աշխարհի[1]։

## 244

Քսերքսէս Ա. (486—465) անեալ եւ կրթեալ ի մէջ կանանց, այնչափ միայն ձեռնհաս էր՝ երեւեցուցանել արքունական իմն շքեղութիւն։ Եգիպտացիք ի նեղ անկեալ միւսանգամ մտին

1 Դան. Ը. 3, 4։

ի մօրէ՝ իւրմէ ի Պարիսատայ, եւ խաղացեալ զօրօք ի Բաբելոնիա օգնականութեամբ Յունաց, բայց առ Կունաքսաւ պարտեալ սպանաւ ի ճակատու (401)։ [illegible] զրգռեցաւ նոր պատերազմ ընդ Յունաց, յորում անկաւ ի տագնապ մեծ թագաւորութիւնն Պարսից (396—394)։ Բայց կաշառաւորեալ լեալ Յունաց եւ վասն նախանձընդդէմ եւս իւրեանց ընկերաց՝ եղան դաշինք խաղաղութեան ընդ Պարսից, դարձուցեալ այսրէն ի նոսա եւ զԱռաջակողմն եւս Ասիոյ եւ զԿիպրոս կղզի (387)։ Բայց երթայր հասանէր մօտ ի կործանումն թագաւորութիւնն առ Արտաշիսիւ՝ որում տիրէր ամենեւին մայրն իւր. մինչեւ վասն անտեղի շփոթութեանց թագաւորութեանն եւ տոհմին իւրոյ չժուժեալ մեռաւ։

Արտաշէս Գ. (Ոքոս, 358—337) նորին կրտսեր որդի արար զբաւ շփոթութեանց տոհմին բնաջինջ սատակեալ ի միում աւուր զմնացեալ տունն արքունի։ Ի լինել մեծի իրիք ապստամբութեան Փիւնիկեցւոց՝ որոց ձեռնտու էին Եգիպտացիքն, ամենեւին նուաճեցան երկոքին տէրութիւնքն բազում անհնարին անողորմութեամբք (356), եւ Եգիպտացւոց չեկաց այնուհետեւ բնիկ թագաւոր[1]։ Բագոաս ներքինի եգիպտացի յաղթէ՝ սպրդէ Արտաշիսի՝ նա զվրէժ զազգին իւրոյ եւ զսպանմանն Ապիսեայ ապականելով թունով զթագաւորն եւ զտոհմն նորա, եւ առաջնորդէր թագաւորութեանն յանուն Արշէսի կրտսերոյ քան զամենայն որդւոցն Արտաշիսի (337—334)։ Ապա եւ զսա եւս ընկէց ի թագաւորութենէն դեղով, եւ մատոյց ի բարձ զվերջին զաւակն Դարեհի Վշտասպեայ՝ զԿոդոմանոս։

Դարեհ Գ. Կոդոմանոս (334—330) լաւ քան զամենայն աթոռակալսն իւր, թէպէտ եւ ապրել ապրեցաւ ի դաւոյն Բագոայ՝ այնու զի կանխեաց բարձ զնա ի միջոյ, բայց չկարէր պահել զթագաւորութիւնն ի ձեռաց Յունաց, եւ նմին եւս վախճանեցաւ ի պատերազմին զոր ընդ Աղեքսանդրի տայր (330)։ (Տես զմանր հանգամանս պատմութեան Պարսից ի Գլ. ԺԹ. եւ Ի։)

## 245

### Հայաստան նահանգ Պարսից պետութեան (—330)

Հայաստան՝ կամ անդէն առ Տիգրանաւ որ օգնական էր Կիւրոսի՝ ի հաստատել նորա զպարսկական պետութիւնն, եւ կամ յետ այնորիկ՝ եղեւ մասն մի մեծատարած սահմանաց այնր պետութեան։ Զայս ի դէպ էր եւ ի լռել պատմութեանն՝ ի համեմատութենէ համօրէն հանգամանաց Ասիոյ առ պարսկայինն տէրութեամբն՝ խնդրել. սակայն եւ ժամանակակիցն Հերոդոտոս ի հաշուեւոր համարի անդ 20 բաժանմանց վասն հարկաց յոր բա-

1 Տես Եզեկ. Լ. 13.

քայ յերիւար[1]. քանզի եւ երիվարք արքայի նժոյգք առոյգք քան զնժոյգսն Մարաց հոգաբարձութեամբ նախարարի կողմանցն այսոցիկ բուծանէին յարօտս եւ ի նմանէ առաքէին յարքունիսն իբրեւ տուրս արքունի[2]։ Այսպիսիք նախարարութեան նորա էին ռոճ յափունսն Եփրատ գետոյ. ի վրանի նորա էին գահոյք արծաթիոտիւք, բաժակք, եւ առանձինն հացարարք եւ մատռուակք[3]։ Ի ժամանակի զի բիւրն Յունաց զօրավարութեամբ Քսենոփոնի աթենացւոյ անցանէր ընդ Արեւմտեան Հայաստան՝ առաքեաց առ նա Տերիբազ այր մի թարգման եւ դնէր ընդ նոսա դաշինս՝ առնուլ զպիտոյս իւրեանց, բայց ոչ էնս չապականել եւ չայրել հրձիգ։ Այլ իբրեւ զեղծանել իմն ընդունելութեանն սկսան՝ գունդ ժողովեալ խուճապեցոյց՝ հեռանալ նոցա յաշխարհէն փութանակի[4]։

Իսկ զզօրսն իւրեանց ժողովէին նախարարքն այնոքիկ մանաւանդ ի լեռնորդեայցն՝ ի Խաղտեաց, ի Տայոց, ի կողմանց ինչ Բասենոյ եւ ի Կորդուաց. զի թէպէտ եւ ապստամբ էին սոքա ի թագաւորէն Պարսից, ամրացեալք ի լերինս իւրեանց՝ յորս փութացեալ ելանէին կանամբք եւ մանկամբք յորժամ զօր ի վերայ հասանէր եւ չտային թոյլ մերձենալ զվէմս մեծամեծս ի վերուստ թաւալելով, սակայն ծառայէին վարձու ի զօրս թագաւորին Պարսից. քանզի եւ էին իսկ նոքա առանձինն զէն երկաթի, գլխանոց, վահան, նետք եւ աղեղունք յաղթք եւ անհեղեղք[5]։

Սակայն խաղաղասէր բնակիչք դաշտացն հնազանդեալ հարկաց եւ օրինաց պարապէին յանդէրգութիւն եւ ի մշակութիւն՝ վասն որոյ առանձինն իմն հոգ յանձն էր նախարարացն։ Իւրաքանչիւր գիւղից կամ աւանաց՝ աւանապետք կային անդրանկն ի նոցանէ, եւ առհասարակ նահապետական իմն կեանք էին նոցա։ Գեղեցիկ ընդունելութիւնն զոր մի ոմն յաւանապետաց անտի եցոյց բիւրուն Յունաց՝ հանդերձ հիւրասէր բարուքն նոցա եւ զանասական ծանօթութեանցն յառաջադիմութիւն ցուցանէ։

Իբրեւ հասանէին Յոյնք ձմերայնի յաւան մի յաւանացն՝ վաստակաբեկ ի յաճախ ձեանցն՝ ընդ որով բազում անգամ այր եւ գրաստք թաղէին, ընկալան զնոսա այր գեղջն։ Եւ եկն ընդ առաջ նոցա աւանապետն եւ դուստրն նորա՝ հարսն նորամուսն իննօրեայ՝ որոյ այր չէր անդ ի ժամուն զի ելեալ էր յորս նապաստակաց։ Գետնափոր իմն էին անկունք նոցա, եւ բերան էր նոցա իբրեւ ջրհորոյ, բայց ի ներքս էր ընդարձակութիւն, զդրունսն բանային գրաստուց միայն, այլ ինքեանք մարդիկն իջանէին եւ ելանէին ընդ սանդուղս։ Անդէն ի տունս անդ ի մէջ գոմոցն կային մակաղեալ այծ, ոչխար, կով, հաւ, եւ ամենայն իսկ պաճար բուծանէր ան-

1 Քսենոփ. Արշաւ. Կիւր. Գիրք Դ. Գլ. Դ։
2 Անդ Գլ. Ե։ Ստրաբ.։
3 Անդ Գլ. Դ։
4 Անդ։
5 Քսենոփ. Արշաւ. Կիւր. Գիրք Դ. Գլ. Ա. Բ. Գ. Զ. Χαλδαῖοι, Τάοχοι, Φασιανοί, Καρδοῦχοι.

դէն ի ներքս դալար խոտով։ Նոյն ի միւսում եւս կողման տանցն էին ցորեան եւ գարի եւ արմտիք եւ գինի ի գարւոյ լցեալ ի խառնարանսն՝ յորս եդեալ կային եղեգունք մանունք եւ մեծամեծք զորս ի բերան առեալ ծծէին. եւ էր ըմպելին այն հզօր եւ սաստիկ եթէ անապակ ոք ըմպէր, բայց քաղցր իմն էր սովորելոցն։ Սակայն այլազգ նոյնպէս ի գետնի գտեալ էր նոցա եւ գինիս հինս եւ անուշահոտս եւս, թող զազգի ազգի եւղոյն պատրաստութեան՝ որովք օծանէին ըստ յունական սովորութեանն իբրեւ աստիկեցի ձիթոյն իւրեանց. այս ինքն ծարպ խոզի, կնճիթ, եւղ մզեալ ի դառն նշոյ եւ ի բեւեկնոյ, եւ եւղք եւս անուշութեան ի նոցունց կազմեալք[1]։ Հան աւանապետեան ի սեղան նոցա միս գառանց, ուլուց, որթուց, հաւուց եւ խոզենի՝ հանդերձ հացիւ ի ցորենոյ կամ ի գարւոյ եւ գինւով։ Այլ նոցա ի պատուոյ հայ մանկտին՝ ընդ որոց ակնարկութեամբ եւեթ խօսէին, իսկ ընդ աւանապետին պարսիկ թարգմանաւ, որում եւ արարին յընտիր՝ առնուլ ի նոցանէ զինչ ինքն կամիցի իբրեւ երախտեացն փոխարէն։ Իսկ նա ոչ ինչ ընկալաւ, բայց միայն զի ուր ուրեք յիւրոց ազգականաց զոք ի բանակին գտանէր՝ առնոյր առ ինքն[2]։

Հայք որ ի բանակի Յունացն գտան՝ ի դէպ է թէ ախորժիկ էին՝ զօրս յարեկուցեալ էին ցայն վայր զճանապարհայն Յոյնք յինքեանս եւ կամէին տանել զնոսա յաշխարհն իւրեանց (թերեւս ի վաճառս գերեաց), որպէս տարան զորդի աւանապետին այնորիկ։ Վասնզի առ յետ ընդունելութեանն զոր եգոյց նոցա՝ յանձն առ առաջնորդ եւս լինել ճանապարհաց նոցա հանդերձ որդւովն։ Այլ Քերիսոփոս զօրավար առաջապահ գնդին համարեալ թէ թշնամութեան ինչ միտս տանի զնոսա ընդ անշէնս՝ յետ գժտութեանն զանալից եւս զծերունին առնէ. բայց եւ սա պացեալ ապրէր գիշերի՝ թողեալ ի տրտմութեան զպատանեակն Քսենոփոն զօրավար վերջապահ գնդին՝ որ գժտէր իսկ ընդ Քերիսոփեայ զի անգութ պահպանէր անդ ընդ առաջնորդ ճանապարհացն իւրեանց։ Բայց Եպիսթենէս ոմն զօրավար առ տարաւ զորդեակն նորա զհասակաչափ, դարմանեաց զնա ի տան իւրում ի Մակեդոնացւոց աշխարհին, եւ էր նա նորա մտերիմ եւ հաւատարիմ յոյժ[3]։

Այս հաստատողք պատմութեան որոց լուան իբրեւ փոքրեկն մերթ ընդ մերթ շողացեալ եւ իսկ եւ իսկ անհետ լինին՝ շատ եւ բաւական է զայն յայտ առնել՝ թէ առ 200ամեայ տէրութեամբն Պարսից՝ էր դար ոսկի անդորրութեան եւ մշակութեան Հայոց աշխարհին։ Այլ իսկ եւ իսկ յետ այնորիկ սկիզբն առին աղմուկք զինուց առ Վահէիւ՝ վերջին նախարարաւ յորժամ անստուար դիմեցին Յոյնք եւ Մակեդոնացիք (330)։

1 Քսենոփ. Նահանջ. Կիւր. Գիրք Դ. Գլ. Դ։ 2 Անդ Գլ. Ե։ 3 Անդ Գլ. Զ։

## 247

### Յօրինուած [1] պետութեան Պարսից:

1. Թագաւորն հանդերձ արքունեօքն էր կենդրոն ամենայն համօրէն տէրութեան Պարսից: — Յինն ցեղից անտի Պարսից [2] միայն երեքին զինուորական ցեղքն եղեն յառաջադէմ յիշխանութիւն, յորոց Պասարգադացն ցեղ՝ եւ ի նմանէ տոհմն Աքեմենեան տայր նոցա թագաւորս: Ի նոցունց ընտրէին պաշտօնեայք տէրութեանն եւ սատրապեսք եւ յանդիմանակացք թագաւորին: Որպէս առ աթոռովն Որմզդի բակ առեալ ունին բազմամբոխ հրեշտակք լուսոյ հանդերձ եւթն գլխաւորօք [3], նոյնպէս եւ զաթոռով թագաւորին կային բազմամբոխ արքունիք՝ ա. եւթն վերին խորհրդակիցք կամ պաշտօնեայք [4], եւ բ. խորհրդականութիւն ինչ քրմական ի մոգուցն տոհմէ (իբրեւ գասաւորք եւ նշանադէտք). գ. կարգ բարձրագոյն սպասաւորացն արքունի, որ բարեկամք, ազգականք, ծառայք արքայի կոչէին, եւ դ. դասակք սպասաւորացն խոնարհագունից՝ բաժանեալք ըստ տասնաւորաց, հարիւրաւորաց, սահմանեալք մեծաւ բազմութեամբ ի գործ մանր մանր ինչ սպասու, ե. հեծեալք յայլ եւ այլ ազգաց անթիւք եւ անհամարք, պահապանք առաջի դրանց ապարանիցն: — Օրիորդք յամենայն նահանգաց ընտրեալ՝ լնուին զտուն կանանց թագաւորին [5], յորոց մի մի միայն եւ այն յաճախ ի տոհմէ Աքեմենեանց՝ ընտրէր տիկնաց տիկին՝ առեալ թագ ի գլուխ [6]: Ներքինիք գլխաւորաւն իւրեանց մարդպետաւ՝ նոյնպէս ժողովեալք ի նահանգաց, էին իբրեւ պահապանք հոգաբարձուք դարմանոց նոցա [7], որք եւ բազում անգամ յետ ընտանութեամբն յառաջադէմ լինելոյ՝ տիրէին այնուհետեւ կամաց եւ կենաց թագաւորին:

Ի սեղան եւս թագաւորին պարտ եւ պատշաճ էր ելանել որ ինչ ազնիւ յիւրաքանչիւր նահանգս էր [8]: Ոչ ըմպէր նա այլ ջուր՝ բայց որ ի Քոասպ գետոյ (ի Շուշան նահանգի), զոր բազում սայլիւք յանօթս արծաթեղէնս ածէին զհետ նորա՝ եւ ի չուելն եւս նորա [9]. աղ սեղանոյ նորա գայր յանապատէ Ափրիկեցւոց աշխարհին ի մեհենէն Արամազդայ Ամոնի [10], գինի նորա ի Քաղիբոնէ Ասորւոց (Հալէպ) [11], ցորեան հացի նորա յԵւոլացւոց աշխարհէ [12], եւ այսպէս մի ըստ միոջէ: — Այն անթիւ սպասաւորք արքունեաց ուտէին յարքունուստ, այնպէս զի զօրհանապազ այր 15,000 ուտէին ի սեղանոյ թագաւորին, յորս անձնապահք եւեթ 10,000 էին:

Փոփոխէին արքունիքն (գարնայնի) յԵկբատանս, (ամառայնի) ի Շաւշ [13], եւ (աշնայնի եւ ձմեռայնի) ի Բաբիլոն [14]: Չուն նման ինչ էր պատերազմական բանակաց, նմին իրի խորհրդով չանցանէին ընդ երկիր ինչ անպտղաբեր, զի մի ամենեւին սպառեսցի բեր երկրին: Առ արքունեօքն կային դրախտք կամ (ըստ Պարսից) պարտէզք մեծատարածք [15] զի անդէն զօր ի հանգիստ անցանիցէ, եւ երբ փակեալ իցէ ի նմա: Քանզի մեծ ինչ զբօսանք թագաւորացն եւ մեծամեծացն էին՝ որսք ի պարտէզս

1 Organisme.
2 Տես վերագոյն էջ 85:
3 Տես վերագոյն էջ 160:
4 Բ. Եզր. Է. 14: Տես եւ Եսթեր. Ա. 14:
5 Եսթեր Բ. 23:
6 Տես Եսթեր Բ. 17. ԺԲ. 16:
7 Տես Եսթեր Բ. 3, 8 — 16:
8 Աթենէ. ի Դիոնէ հին մատենագրէ:
9 Հերոդ. Ա. 188:
10 Աթենէ. Բ:
11 Աթենէ. Ա:
12 Ստրաբ. ԺԵ:
13 Եսթեր Ա. 2:
14 Քսենոփ. Խրատ Կիւր. Դպր. Ը:
15 Եսթեր Է. 7:

տուեալ քան զայս ամենայն լսելին զգանձս թագաւորին ընծայքն կամ պատարագք. զի բաց հատուածակաց իմն ազատութեան արեւելից ոչ ոք ա-ռաջի մերձագոյն ուրուք քան զինքն՝ մնացական առաջի թագաւորի իշխէր առանց պատարագաց երեւել, ուր զի եւ մեծամեծք ազատութեան եւ նախարարք նոքիմբք հանդէպ ցանկալին լինել թագաւորին: Բայց ա-ռաւել յաւուրս ինչ անկից արեւելեան եւ մնացական բաց Պարսից ազատութեանն՝ յաւուր ծննդեան թագաւորին հերթիւ զերթիւ յամենայն կողմանց թագաւորութեանն պատարագացն յանձնութիւն[1]:

Այս ամենայն հաս եւ բեր երկրի էր միայն մասն գանձուն արքունի եւ մասն սեղանոյ թագաւորին եւ խանարհագոյն ստատուորաց արքու-նեացն, եւ այն իսկ մարձք էին ստատուորութեանն. եւ ոչ եթէ հա-տուածակաց ինչ գանձարան էր այն՝ ուստի ամենայն պաշտօնեայք տէրու-թեան առնուցուն վճարման:

Այն սակս վասն թոշակի զօրուն եւ ծախուց նախարարացն իւրա-քանչիւր նահանգք՝ յորս նոքայն էին, ուրոյն մասնակարարէին: Իսկ մե-ծամեծաց արքունեացն եւ բարեկամաց եւ ազգականաց թագաւորին՝ ինքն թագաւորն որ տէրն համարեալ էր համօրէն պետութեան՝ զա-ցանէր գիւղս ինչ կամ քաղաքս, մի կամ բազում՝ յորոց ամենայն հաս բաց չափոյն զոր կամէր, քանզի ճշգիւ զհամար ամենայնի ունէր առ իւր գրով թագաւորն. որպիսի ինչ՝ վասն գօտւոյ բամբիշանն սահմանեալ էր երկիր ինչ պաղաբեր միոյ աւուր գնաց ճանապարհի[2]. այսպէս եւ Թե-միստոկղի առաւ քաղաքն Մագնեսիա որ բերէր 50 տաղանդ վասն հա-ցի նորա, եւ Ղամփսակոս՝ վասն գինւոյ նորա, եւ Միուս՝ վասն ռոճկին[3]: Սակայն այն հաս մինչեւ ցկենաս էր եւ ապա դարձեալ անցանէր յար-քունիս, բաց ի սակաւուց ինչ զոր ժառանգութեամբ ունէին ի նախնեաց ոմանք ի մեծամեծացն Պարսից. եւ թուի թէ եւ հարկս ինչ հարկանէին թագաւորին որ զայնպիսի պարգեւսն ընկալեալ էին:

Դ. Զինուորական իշխանութիւնն որ յետոյ բազում ուրեք միաւորեցաւ՝ էր բաժանեալ ի քաղաքային իշխանութենէ նախարարացն վասն եր-կիւղի ապստամբութեան նոցա: Նախ իսկ ամենայն իսկ երկիր պե-տութեանն Պարսից բաց ի քաղաքային բաժանմանցն՝ ունէր եւ այլ ինչ բաժանումն՝ զինուորական նահանգաց[4] բաց տեղեաց ժողովելոյ կամ հանդիսի զօրացն: Քանզի վասն զօրականին որ ի գաւառս գաւառս կային՝ սահմանեալ էին տեղիք ինչ յոր ամի ամի ատենութիւն էր նոցա ժողովել, եւ բաց նոցին տեղեացն անուանէր եւ զօրականն, որպիսի ինչ Կաստողոս դաշտ յԱռաջաւորն Ասիոյ[5], Թիւմբրա յԱսորւոց աշխարհին[6], դաշտն Ալեքսան ի Կիլիկեցւոց աշխարհին[7]:

Զօրաժողով զօրացն եւ բաժանումն նոցա եւ կարգ հրամանատա-րաց նոցա 10երորդականն իմն կարգաւ լինէր. 10աւորաց, 100աւորաց, 1000աւորաց, 10,000աւորաց՝ կային գլխաւորք 10ապետք, 100ապետք, 1000ապետք, բիւրապետք:

Աչքիւ իմն տեսք էին զօրաց՝ ա. Բերդականաց կամ պահակապա-նաց[8], որոց առանձինն գործ էր պահպանութիւն բերդից եւ ամուր վայրաց, եւ չէր ինչ պիտոյ նոցա երեւել ի հանդէսս զօրաց. եւ բ. ի պահպանութիւն քաղաքաց իւրաքանչիւր նահանգի: Գլխաւոր մասն

1 Պղատոն:
2 Պղատոն: Տես եւ Աթենէ. ի Ա. Գ. 83:
3 Թուկիդ. Ա. 138: Նեպոս էջ 39:
4 Հերոդ. Ե. 102. անուանէ զնոսա օրէնս, Νομούς.
5 Քսենոփ. Ցնաբ.:
6 Անդ:
7 Հերոդ. Զ. 95:
8 Φρουράρχοι.

կեա (առ արշաւանաւն Քսերքսեայ)[1]: Դայր ժողովէր անդր զօր իւրաքանչիւր աշխարհաց առաջնորդեալ ի վերակացուաց անձնիւր ազգացն. բայց անդէն ի պատերազմի չէին ինքեանք վերակացուքն զօրավարք, այլ ի Պարսից եւեթ կային յայնժամ զօրավարքն[2]. քանզի այս իմն առաւելութիւն իրաւանց տիրող ազգին էր:

Ի միջին վայրի երթայր Թագաւորն եւ Պարսիկք ընդ նմա. որչափ խաղայր բանակն յառաջ, գոյնչափ յաւելեալ ի նոսա բնակչաց կողմանցն՝ առաւարանայր բազմութիւնն[3], մանաւանդ զի մեծ մասն ազգացն կանամբք եւ մանկամբ գային՝ թող զկահն հանդերձ բեռնակրօք գրաստուքն եւ շանցն երամակաւ[4]: Վաղագոյն կուտեալ համբարեալ էր ցորեան ի կողմանսն ընդ որ անցանէին, եւ այլ եւս նաւուք ածէին զհետ, մինչեւ փիւնիկեցւոցն եւ Եգիպտացւոց վաղագոյն ի ծովեզերսն Թրակացւոց եւ Մակեդոնացւոց ամբարել մթերս[5], եւ երբեմն հարկ իսկ լինէր Թագաւորին վասն պակասութեան ռոճկին յերկիս գաւառս զայն ամբաւ զօրս բաժանել[6]: Իսկ վասն Թագաւորին եւ որոց ընդ նմա էին՝ յառաջագոյն առհասարակ էին ճաշքն եւ ընթրիքն ածնէին բազմախորտիկք, մինչեւ նուազէին եւեթ գաւառականս քաղաքացն[7]: Թագաւորն եւ մեծամեծքն կային ընդ վրանօք, բայց զօրն կայր միշտ բացօթեայ, վասն որոյ եւ ազգի ազգի ախտքն իսկ ծնանէին ի նոսա[8]:

Նոյն յարժամ ի սահմանակողմն Թշնամեացն հասանէին՝ յայնժամ ուրեմն լինէր բաժանումն զօրուն ըստ իւրաքանչիւր ազգաց. եւ այնպէս հանդէս առնէր նոցա Ինքն Թագաւորն՝[9] ըստ միւրաւորաց որպէս էրն իսկ սովորութիւն Պարսից[10]: Ի համօրէն տիեզերական պատմութեան չէք օրինակ թէ այսչափ բազմութիւն (առ Քսերքսիւ 2½ միլիոն ըստ Հերոդոտոսի) եւ այնչափ այլ եւ այլ ազգք երբեք ի միում վայրի գումարեալ կայցեն, իւրաքանչիւր ըստ իւրեանց հանդերձից եւ զարդու: Երոդոտոս համարի 60 ազգ, յորոց կէսք ընդ ցամաք կամ հեծեալ կամ հետեւակ, եւ կէսք ընդ ծով գային ի մարտ պատերազմի: Եւ էր տեսանել զՀնդիկսն ի հանդերձս ասուիս, եւ զԵթովպացիսն ի մորթս առիւծուց, զԹուխ Չինակերսն ի Գեդրոսիացւոց աշխարհէ եւ զազգսն Թափառականս ի կողմանց Սկիւթացւոց, զվայրենի ազգսն որսորդաց, որպիսի ինչ՝ զՍագարտիացիս որք առանց պղնձի եւ երկաթի զինուց՝ մաշկեղէն փոկովք զԹշնամիսն իւրեանց իբրեւ ցանցս զոր սովոր էին որսոյ՝ ըմբռնէին, եւ անտուստ զՄարս եւ զԲակտրիացիս ի հանդերձս զարդու, զԼիբիացիս որ գային ի կառս պատերազմի եւ ի կառս ձգեալս ի չորից, եւ զԱրաբացիսն ի վերայ ուղտուց իւրեանց: Դարձեալ զնաւավարսն Փիւնիկեցւոց բազմամբոխ նաւամարտիկ նաւուք, եւ զՅոյնսն Ասիացիս ստիպեալս տագնապեալս խաղալ ի մարտ պատերազմի ի վերայ ազգակցացն իւրեանց:

Յազգի ազգի զինուց նոցա՝ ... Զէնք պաշտպանիչք կամ զրահք էին՝ տախտակերտ պղնձի կամ ի մորթոյ կարծրացելոյ. վահան զոր կրէին ձախու ձեռամբ՝ ի մորթոյ կամ ի փայտէ պատելոյ մորթով, դաշն ուրեք ի պղնձոյ, ածանէին եւս զնա հիւքն իւղով զի իցէ տեւական եւ լայերծ[11], եւ զգահ կրէին յերկուց մասանց՝ պահպանակք Թիկանց եւ լանջաց, ի

1 Հերոդ. Է. 26:
2 Անդ:
3 Հերոդ. Է. 110:
4 Հերոդ. Է. 187:
5 Հերոդ. Է. 25:
6 Հերոդ. Է. 121:
7 Հերոդ. Է. 119:
8 Հերոդ. Է. 118, 119:
9 Հերոդ. Է. 59—100:
10 Հերոդ. Դ. 87:
11 Տես Բ. Թագ. Ա. 21:

մորթոյ պատելոյ բազում անգամ անագիւ՝ դուն ուրեք արծնով։ Բ․ Զէնք մարտիչք էին՝ սուսեր հանդերձ պատեանիւք՝ պէսպէս ըստ չափոյ եւ ձեւոյ՝ յաղեղ աղեղք, նիզակ՝ ձող երկայն փայտակողէն սուր ինչ ծայրիւ երկաթեաւ․ աղեղն ի կակուղ փայտէ, դուն ուրեք ի պղնձոյ․ զմի ծայր նորա սուսեր պնդէին ի գետին եւ զմեւս ծայրն ձախու ձեռամբ ծռէին եւ աջու ձեռամբ զլարն (ի փոկոյ կամ ի ջլաց եզանց կամ ի մազէ ձորուց կամ ուղտուց) ձգէին․ նետքն աղեղնաձիգք էին յեղեգանէ կամ ի փայտէ երկաթի սլաքաւ ի ծայրսն՝ որ բազում անգամ մխեալ էին թունովք կամ կիզիչ ինչ նիւթով․ կապարճքն՝ աման նետից յուրանաձեւ էին կախեալ զթիկանց աղանցն․ պարսատիկք՝ որ էին չուանք լայնեալք ի միջոց վայրի՝ որովք արձակէին վէմս, գունդս կապարեայս կամ ջահս՝ անհնարին ուժգնութեամբ․ կառք գերանդաւորք՝ լծեալք յԲ, Գ, Դ եւ յԶ եւս երիվարաց։ Գ․ Զէնք պաշտպանեան՝ մանգաղեան, բազպանք որ էին մետաղեայք մետաղեղք ըստ նմանութեան աղեղանց, եւ արձակէին նոյնին ծանր ինչ իրս՝ հեռի իբրեւ երկուս փարսախս․ այլ աղբիւր եւ այլ եւս մեքենայքն որպէս խոյ, էշ, ագռաւ՝ որովք ծեծէին զորմունս քաղաքացն եւ ի ձեւոյ ծայրիցն առեալ են զանուանսն՝ ի Յունաց արկան ի կիր ընդդէմ նոցա։

## 248

### Աւերակք Պերսեպոլեայ։

Ի դաշտավայրին Մերդաշտայ ի հիւսիսոյ արեւելից Շիրազ քաղաքին՝ կան աւերակք արքունական քաղաքին Պերսեպոլեայ կամ Պասարգադայ․ մի միայն աւերակացն այնոցիկ են մնացորդք շինուածոցն ի տեղւոջն՝ Չիլ-Մինար (զորս յետինք նախշի Ռուստեմ կոչէին կարծեալ թէ նկարք քանդակացն զգործս քաջութեան Ռոստոմայ հին դիւցազին Պարսից[1] ցուցանիցեն), եւ մեւս եւս միայն մօտ առ նոսա՝ են շիրիմք թագաւորաց փորեալք ի ժայռս․ քանզի Պերսեպոլիս էր քաղաք գերեզմանաց թագաւորացն Պարսից որպէս, կանխագոյնն ասացաւ։

Աւերակք քաղաքին յեցեալ կան միով կողմամբն ի լեառն որ առ նմին կայ՝ յերիս դարիկոնս զատանին հարթեալս սանդղովք․ ամենայն որ ինչ ի հնոց ժամանակացն Պարսից շինեալ է՝ այն ի գեղեցիկ կճոյ անսափ լերինն է, իսկ որ յետոյ առ Սասանեանքն՝ ոչ նոյնպէս։ — Առաջին հոյակապ սանդուղք հանեն յառաջին դարիկոնն՝ եւ անդէն երանէ ապաքի մուտ չորեքկուսի՝ սեամբք յորոց ամենայն կան աւերակքն եւ երեւին իսկ ի վերայ նոցա առասպելական գազանք քանդակեալք՝ մեղջերի եւ մարդիկոր (մարդակեր[2])․ յորոց մին նշանակ ուժգնութեան եւ երագութեան, եւ միւսն պատերազմական քաջութեան եւ արքունական մտաց է։ Այլ եւս իմն նշանաւոր է դարիկոնն երկրորդ՝ յոր հանեն կրկին ինչ սանդուղք։ Յերկուց կողմանց սանդղոցն կան քանդակք երեւելիք․ ի ձախմէ՝ արք բազմամբոխ կուտեալ ասա անդ՝ յորոց կէսք արկեալ են հանդերձ մարական՝ լայն, եւ կէսք ագուցեալ պինդ զպարսիկ հանդերձն ի մարմին։ Ամենեքին զարդարեալք մեծապայծառ՝ քայռամանեակ ի պարանոցի, ապարանջանք ի բազուկս, գինդք յականջս, որովք յայտնի իսկ նշմարին իբրեւ բարեկամք արքայի։ Ունին նոքա գիտակս արուեստի, սուսեր յաջոյ աղգեր կամ աղեղն՝ ի պատեանս իւր․ ոմանք ունին բաժակ ի ձեռս (իբրեւ մատռուակք), այլք գաւազան խնձորաձեւն գլխովք ի ձեռս (իբրեւ ընտիրք անձնապահացն)[3]։

1 Տես Խոր․ Բ․ Գլ․ Ը․ եր 170։ Կաթողիկոս Հովհ․ 25․ եւ առ Եղիշէ․ Դ․ 21,
2 Μαρτίχορος. Զանգանկարագիր յօրինէ
3 Μελόφοροι.

6. Գուդրաշա, Կուդրաշա (Կորդուք)
7. Արմին (Արմէնք, Հայք)
8. Կատպատուկ (Կապադովկիա)
9. Սպարդ (Σάπειρες, 18երորդ նախար. Հերոդ.)
10. Հուժա, (Հուզք)

— Դարեհեայ՝

11. Ուխսանգա (Οὔξιοι)
12. Դրհանգա (Δράγγαι)

— Դարեհեայ՝ Արեւելեան նահանգք

13. Պարուատահ կամ Պուրուատայ (Παρυῆται)
14. Սագարտա (Σαγάρτιοι)
15. Պարթւա (Պարթեւք, Παρθυαῖοι)
16. Զարանկ (Ζαράγγαι)
17. Արագուա.
18. Բակտարիշ (Βάκτροι)
19. Սուգդ կամ Սոգդ (Σόγδοι)
20. Քուարազմիշ (կամ Կուարազմիշ, Χοράσμιοι)
21. Զատտագուշ (Σατταγύδαι)
22. Արախոտիշ (Ἀραχῶτοι)
23. Հինդու (Հնդիկք, Ἰνδοί)
24. Գադար (Γανδάριοι)
25. Սակա (Շակք, Σάκαι)
26. Մակ (Μύκοι)

Սեպաձեւ գիրն չարկանէ զամենայն ձայնաւորսն ի կիր, զի ուր զանգիտն լեզու ի գիրս Զրադաշտայ՝ կատարեալ հնչէ Ահուրամազդա (Էութիւն աստուածեղէն), արձանագիրն ասէ՝ Աւրմզդա, եւ այսպէս լինի մնալ այլապէս ընթեռնլոյ։ Իսկ Լասսէն զձայնաւոր նշանագիրսն զայնափիկ մուծեալ է ի համեմատութենէ հնչմանց անուանցն որ ի Զենդաւեստին գտանին, քանզի մեծ մասն անուանց նահանգացն այնոցիկ կան անդ։

Թիւ համարոյ նախարարութեանցս այսոցիկ յայնկոյս Եփրատայ՝ ցուցանէ թէ չէ ինչ աւելի քան զշարին՝ թիւ նախարարութեանցն զոր Եբրայեցւոց մատենագիրք համարին վասն սահմանաց համօրէն պետութեան յայնկոյս եւ յայսկոյս Եփրատայ, կամ "յԵթովպիացւոց մինչեւ ցՀնդիկս", այս ինքն ընդ ամենայն 127 նախարարութիւնք յետ Կամբիւսեայ եւ Դարեհի Վշտասպեանց[1], ուր յառաջ քան զաշխարհակալութիւնն նորա (առ Մարն Դարեհիւ) 120 եւեթ համարին[2]։ Նմին համառօտ՝ սակաւ յայտ է թիւ 20 նախարարութեանցն Հերոդոտայ[3], եթէ չկամիցիմք ըստ հարկաց իմն բաժանումն առնուլ զ20 բաժանմունսն զայնոսիկ, յորս ազգքն յիշին 60—70 ուրոյն ազգք թուեալք հակառակ աշխարհագրական կարգի։ Զնոյն եւ զհամարոյ նախարարութեանցն ի գլուխ է ասել՝ զոր Հեքէնն ժողովեալ ի Յունացն մատենագրաց վասն ժամանակին որ յառաջ քան զարշաւանն Աղեքսանդրի է, ընդ ամենայն իբրեւ 24 (բաց ի Հնդկաց եւ յԵգիպտացւոց), յորոց 12՝ յայսկոյս Եփրատայ իցէ (10 ի Փոքր Ասիա, 11երորդ՝ Ասորիք եւ Պաղեստին, 12երորդ Փիւնիկէ), եւ մնա եւս 12՝ յայնկոյս Եփրատայ։

1 Եսթեր. Ա. 1. Դ. 12. Ը. 9։ Յովսեփ. Նախն. Պատմ. ԺԱ. Գլ. Զ. 4։
2 Դան. Զ. 1։
3 Հերոդ. Գ. 89—95։

## ԺԲ.

### Հրէից իրք առ Պարսից Թագաւորօք (536—330)։

**249**

"ՅԱՌԱՋՆՈՒՄ ամին (միահեծան իշխանութեան) Կիւրոսի արքայի Պարսից յետ լնլոյ բանին Տեառն ի բերանոյ Երեմիայ մարգարէի, զարթոյց Տէր զհոգի Կիւրոսի արքայի Պարսից, եւ ետ հրաման պատուիրանի յամենայն թագաւորութեան իւրում եւ գրեաց առ ամենեսեան օրինակ զայս. այսպէս ասէ Կիւրոս թագաւոր Պարսից. զամենայն թագաւորութիւնս երկրի ետ ինձ Տէր Աստուած երկնից, եւ նա հրամայեաց ինձ առնել եւ շինել նմա տաճար յԵրուսաղէմ Հրէաստանի[1]։ Որ ոք ի ձէնջ յամենայն ժողովրդենէ նորա իցէ՝ Տէր Աստուած իւր եղիցի ընդ նմա, եւ ելցէ յԵրուսաղէմ Հրէաստանի եւ շինեսցէ զտուն Տեառն Աստուծոյ Իսրայելի. եւ ինքն Աստուած որ բնակեալ է յԵրուսաղէմ՝ եղիցի ընդ նմա։ Եւ զամենայն պատրաստութիւն իւր առցէ ընդ իւր, եւ տարցի ի տեղին յայն ուր ինքն բնակեսցէ. եւ առցէ այր ընդ իւր զամենայն կազմած իւր՝ որ ինչ եւ իցէ, արծաթեղէն եւ ոսկեղէն, եւ զայլ կահ եւ զանասուն՝ հանդերձ ընկերօք իւրեանց առցեն ընդ իւրեանս ի պատրաստութիւն տաճարին Տեառն Աստուծոյ յԵրուսաղէմ„[2]։

"Եւ յարեան իշխանք հայրապետաց որդւոցն Յուդայ եւ Բենիամինի, եւ քահանայքն եւ ղեւտացիք, եւ ամենեքեան՝ զորոց զարթոյց Տէր Աստուած զոգիս նոցա ելանել եւ շինել զտաճարն Տեառն Աստուծոյ յԵրուսաղէմ։ Եւ ամենեքեան որ շուրջ էին զնոքօք՝ օգնէին եւ զօրացուցանէին զձեռս նոցա՝ տալով արծաթ եւ ոսկի, եւ զկահ եւ զանասուն, եւ ընծայիւք եւ պատարագօք լցուցանէին զնոսա։ Եւ թագաւորն Կիւրոս ետ զսպաս տաճարին (5400 սպաս՝ ոսկի եւ արծաթի) ցՍանանասար (ց.Զօրաբաբել) Յուդայ„[3]։

Խաղացին ելին այնուհետեւ (536) արք իբրեւ 42,000 հանդերձ 7000 ծառայիւ եւ աղախնաւ. զօրավար էր նոցա ինքն Զօրաբաբել (որդի Սաղաթիելի եւ թոռն արքային Յեքոնիայ) եւ Յեսու քահանայապետ եւ այլ եւս գլխաւորք, հասանէին ի Հրէաստան. անդ սկսան շինել միւսանգամ։ Ապա ուրեմն ի ժամանակ տաղաւարահարացն ժողովեցան ամենեքին յԵրուսաղէմ, կանգնեցին զսեղան ողջակիզացն, եւ յայնմ հետէ օրըստօրէ մատուցէին զոհքն։ Արկին նոքա հիմն երկրորդ տաճարին նուագելով զՍաղմոսն ՃԼԵ. եւ ցնծացաւ ամենայն բազմութիւնն[4]։

1 Եսայ. ԽԴ. 28։
2 Բ. Մնաց. ԼԶ. 21—23։ Բ. Եզր. Ա—4. Ե. 13։
3 Բ. Եզր. Ա. 5—11։
4 Բ. Եզր. Բ. Գ։ Նեեմ. Է. 6... ԺԲ.—Թ։

Իսկ Շամրոնացիքն (Սամարացիք) որ յօրինեալ. կացին ի խառնելոյ հեթանոսական ազգացն ընդ Իսրայելացւոցն մնացելոց ի Թագաւորութենէ տասն ցեղիցն, եւ զճշմարիտ աստուածածանօթութիւն եւ զօրէնս Աստուծոյ ճշմարտի խանգարեցին սովորութեամբք որ կռապաշտութեան անկ էին, կամէին իւրն ունել մասն ի շինուած տաճարին, զի այնպէս ընդ բուն Իսրայելացիսն կարիցեն առնել միաբանութիւն հաղորդութեան: Բայց Զօրաբաբէլ, Յեսու եւ այլ եւս գլխաւորք ժողովրդեանն յիրաւի իսկ մերժեցին զնոսա իբրեւ մոլորեալս հաւատովք: Յայնժամ կաշառաբեկ արարին Շամրոնացիք զիշխանսն Պարսից եւ նոքօք հանդերձ ետուն գիրս ամբաստանութեան առ Կամբիւսէս (Արշաւիր կամ Ասուերոս) եւ առ սուտ Թագաւորն Զմերդիս (Արթասասթա), ասել թէ ազգ ապստամբ է ազգն Հրէից, եւ արգելին զշինուած տաճարին ամս 15՝ մինչեւ ցերկրորդ ամ Թագաւորութեան Դարեհի առաջնոյ[1] (535 — 520):

Ռանգի եւ Հրեայքն իսկ Թուլագոյնք եւ դանդաղագոյնք եղեն, եւ այնմ մանաւանդ դնէին միտ՝ շինել անձանց ապարանս քան հանել զգործ Տեառն ի գլուխ: Յայնժամ առաքեաց Աստուած զմարգարէսն Անգէ եւ Զաքարիա առ նոսա. որք ցուցին նոցա կշտամբելով զանփութութիւն նոցա, քաջալերեցին բանիւք բազմօք, խօսեցան աւետիս եւ ցուցին զառաւել պայծառութիւն առյապա ժամանակաց՝ նշանակեալ զգալստենէ Օծելոյն[2]: Զօրացեալ ի բանից մարգարէութեանցն՝ ձեռն ի գործ արկանէին Զօրաբաբէլ եւ Յեսու տանել յառաջ զշինուածն առաւել եւս փութով, եւ ի հարցանել զնոսա նախարարքն Պարսից՝ յիշեցուցին զհրամանն Կիւրոսի:

Եւ իբրեւ գտաւ ի գիրս յիշատակարանաց Թագաւորութեանն ամենեւին համեմատ բանից նոցա՝ հրաման հանէր Դարեհ ոչ միայն չարգելուլ զՀրէայսն ի շինուածոյ անտի՝ այլ եւ զամենայն պէտս պատարագացն տալ յարքունուստ, զի արասցեն աղօթս վասն կենաց Թագաւորին եւ որդւոց նորա: Ճշդիւ հանին ի գլուխ իշխանքն զհրաման Թագաւորին եւ փութանակի գործէին զգործն:

Ի վեցերորդ ամի Թագաւորութեանն Դարեհի Ա. կատարեցաւ շինուած տաճարին, եւ եղեն նաւակատիք ուրախութեամբ. ապա պահեցաւ առհասարակ պասեքն[3] յամի 515:

Մինչեւ ցեւթներորդ ամ Թագաւորութեան Արտաշէսի Առաջնոյ չյիշեն ինչ գիրք զիրացն Յուդայ, բայց անդէն իսկ ի նմին անջրպետութեան ժամանակի մեծ իմն անցք ընդ Հրէայս անցին: Այնր պատմութիւն անկ է կամ ժամանակի այսր Արտաշիսի Ա. կամ որ յառաջ քան զնա Թագաւորէր Քսերքսեայ Ա. նմին իրի իսկ է ի մէջ 483 — 474, կամ 462 — 453 ամաց: Վասն

1 Բ. Եզր Դ: 2 Անգէ Ա — Բ: Զաք. Ա — ԺԴ: 3 Բ. Եզր Ե, Զ:

1 23

երկոցունց եւս կարծեաց կան պատճառք ի մէջ։ — Մեք առաւել այժմ այնպէս համարեցուք թէ Ասուերոսն (կամ Արտաշէսն) զորոյ իցէ Քսերքսէս Ա.։

## 250

Ասուերոս յերրորդում ամի թագաւորութեան իւրոյ (իբրեւ 483) առնէր ուրախութիւն իշխանաց թագաւորութեան իւրոյ եւ յերկարեալ ձգեցան խնճոյքն աւուրս 180։ Յետ այնորիկ արար ուրախութիւն եւ ժողովրդեանն եւթն օր ի Շուշ քաղաքի ի դրախտն արքունի, եւ տիկինն Աստինէ (Վաշթի) առնէր ուրախութիւն կանանցն։ Իբրեւ ընդ գինւոյ եմուտ թագաւորն, առաւել քան զաւրութիւն Արեւելեայցն հրամայէր ածել զկին իւր առաջի՝ ցուցանել զգեղ նորա հնազանդելոցն։ Անշնամանս զիրսն համարեցաւ Աստինէ, եւ չառ յանձն երեւել. ի ցասման լեալ թագաւորն եհարց զմեծամեծս իւր թէ զինչ պարտ իցէ գործել. ասէ սպաս սպարեալ աւեն. ոչ եթէ զարքայի միայն ընդդէմ դարձաւ Աստինէ տիկնաց տիկին, այլ ամենայն իշխանաց եւ կուսակալաց արքայի. եթէ կամ իցէ եւ հաճոյ թուեսցի արքայի՝ անկցի նա ի տիկնութենէ իւրմէ, զի լինիցի նա օրինակ զգուշութեան հնազանդել կանանց՝ այրանցն իւրեանց։ — Հաճոյ թուեցաւ բանն՝ Ասուերոսայ եւ մերժեցաւ Աստինէ[1]։

Բայց ի դադարել թագաւորին ի բարկութենէ անտի՝ կարող էր զգործն Աստինեայ ըստ ճշմարիտ դատաստանաց առնուլ ի կշիռ, այլ կամ վասն զի չկարէր կոչել զնա յետս կամ զի չկամէր իսկ, յիշեցուցին նմա ընտրել այլ տիկին փոխանակ Աստինեայ, եւ նա առաքեաց ընդ ամենայն թագաւորութիւն իւր խնդրել աղջկունս կոյս գեղեցիկս։

Աստուծոյ իսկ այնպէս յարդարելով գտաւ ի մէջ նոցա Եսթեր Իսրայելացի յազգէ գեղեցիկ յոյժ, սան եւ դուստր եղբօրն Մուրդքէի՝ որոյ հայր հաւուն Կիս եկեալ էր ընդ արքայիւն Յեքոնիայ ի Բաբելոն։ — Եգիտ Եսթեր շնորհս առաջի թագաւորին, եւ յեւթներորդում ամի թագաւորութեան նորա առ զպատիւ տիկնութեան[2] (479)։ Յետ երից ամաց եհաս տագնապ մեծ ի վերայ Իսրայելացւոց։ Փառաւորեալ էր արքայի զՀաման ամաղեկացի յազգէ յարքունական տոհմէն Ագագայ, առաւել քան զամենայն իշխանս թագաւորութեան իւրոյ, եւ ամենեքին որ մտանէին եւ ելանէին յարքունեացն՝ դնէին նմա պատիւ երկրպագութեան։ Միայն Մուրդքէոս որ ի ժամանակէ անտի տիկնութեան սանուն իւրոյ իբրեւ յարքունիս իմն էր, չպագանէր նմա երկիր, զի այնպէս իմն թուեցաւ նմա թէ պաշտաման իմն երկրպագութիւն է այն։

1 Եսթ. Ա.     2 Եսթ. Բ.

Իբրեւ զայս զգաց ամբարտաւանն եւ հզօրն Համան՝ եդ ի մտի ոչ ի Մուրդքէէ միայն, այլ եւ ի համօրէն իսկ ազգէն Իսրայելացւոց ընդ որում ատելութեամբ իսկ էր՝ հանել վրէժս բարձեալ զնոսա հեռակողմս ի միջոյ (474)։

Յանձախեաց նա խօսել չարիս առաջի թագաւորին զազգէն զայնմանէ մինչեւ ած ի հաւան զթագաւորն. յետ այնորիկ զհրամանատական որչափ ինչ պիտոյ էր՝ յօրինեալ կնքեաց Համան մատանեաւ թագաւորին, եւ փութանակի հրեշտակս արձակէր ընդ ամենայն թագաւորութիւնն բնաջինջ սատակել զազգն հրէական[1]։

Իբրեւ լուան Հրեայք զհրամանն կոտորածին՝ մտին ի սուգ մեծ. բայց Մուրդքէ խօսեցաւ ընդ տիկնոջն Եսթերայ թէ այս իսկ պարտք են քո աղաչել զթագաւորն վասն փրկութեան ժողովրդեան քո՝ եւ քո իսկ կենաց վտանգաւ։ Պատուէր ետ Եսթեր զի պահեսցեն Հրեայք առհասարակ պահս, զնոյն եւ ինքն պահէր հանդերձ խոնարհութեամբ եւ յուսալից աղօթիւք. ապա զարդարեալ ամենայն զարդու տիկնութեանն, հակառակ իմն օրինականն հրամանացն եմուտ ի սենեակ թագաւորին, բայց սիրով ընկալաւ զնա թագաւորն, եւ հրաւիրեաց եւս Եսթեր զնա եւ զՀամանն ի կոչունս իւր[2]։ Բայց Արշաւիր անքուն հանէր զգիշերն ի գլուխ, նմին իրի ետ բերել եւ ընթեռնուլ առաջի զգիրս յիշատակարանաց թագաւորութեանն։ Ընդ յիշեցաւ դաւն զոր նիւթեցին երկու յիշխանաց անտի նորա սպանանել զնա, եւ թէ որպէս գուշակեաց Մուրդքէոս[3]։ Եհարց զՀամանն թագաւորն՝ զինչ արժան իցէ առնել առն զոր արքայ կամի փառաւորել։ Իսկ սիրելին արքայի Համան զմտաւ ածեալ թէ զիւրմէ իսկ անձնէ ասիցէ՝ ետ պատասխանի թէ պարտ է այնպիսում ագուցանել զպատմուճան թագաւորին, եւ մուծ ի մեծամեծացն տանել զնա ի վերայ երիվարի թագաւորին ընդ հրապարակս եւ քարոզ կարդալ թէ այսպէս եղիցի մարդոյ զոր արքայ կամի փառաւորել։ Յայնժամ հրամայեաց Արշաւիր Համանայ առնել Մուրդքէի զոր ինչ խրատն ետ[4]։

Այն ինչ յայտնեալ էր Համան ցիւրսն զամօթն իւր, կոչեցաւ ի կոչունսն Եսթերայ։ Իբրեւ անդէն ի կոչունսն էր՝ հրամայեաց թագաւորն Եսթերայ խնդրել իւրս ինչ զոր կամիցի. եցոյց սա նմա զխորհուրդ սատակմանն Հրէիցն՝ այս ինքն զիւրոյ ազգին, զոր Համանն խորհեցաւ, եւ աղաչեաց վասն կենաց ազգին։ — Բարկացաւ թագաւորն ի վերայ Համանայ, եւ իբրեւ ուսաւ ի սենեկապետացն ազդ արար թէ Համանայ պատրաստեալ է փայտ մեծ վասն Մուրդքէի, հրաման ետ թագաւորն կախել զՀամանն զփայտէն[5]։ Զգանձն Համանայ պարգեւեաց Եսթերայ թագաւորն,

1 Եսթ. Գ։
2 Եսթ. Դ, Ե. տես եւ ԺԳ, ԺԴ, ԺԵ։
3 Եսթ. Բ. 21—23. եւ ԺԲ։
4 Եսթ. Զ։
5 Եսթ. Է։

եւ զպատիւն նորա եւս Մուրդքէի։ Այլ խնդրեաց հրամանն Եսթեր զի գրեսցին հրովարտակք եւ տացի համարձակութիւն Հրէից պաշտպանել անձանց յերեսաց թշնամեաց եւ սպանանել զնոսա։

Գրեթէ յ13 աւուր ամսոյն երկոտասաներորդի՝ զոր սահմանեալ էր Համան վիճակաւ՝ յօր սատակման Հրէիցն, եղեւ սատակումն թշնամեաց նոցա. քանզի ոչ ոք իշխէր լինել նոցա ձեռնտու։ — Խրատու Մուրդքէի (որ է թերեւս, որպէս հաւանութեան թուի, մատենագիր գրոցն Եսթերայ) կարգեցաւ Փուրիմ, այս ինքն տօն վիճակաց առ յիշատակի սքանչելի փրկութեանն, եւ կատարեցաւ տօնն ուրախութեամբ աւուրս երկու[1]։

Նա եւ ցայսօր եւս Հրեայք յետ միօրեայ պահոց (ի մէջ Փետրուար եւ Մարտ ամսոց) կատարեն զնոյն տօն մեծաւ աղմկաւ եւ ուրախութեամբ աւուրս երկու։ Ի ժողովրդարանսն ընթեռնուն զգիրսն Եսթերայ, եւ քանիցս անգամ յիշէ անունն Համանայ՝ անհնարին աղաղակ եղեալ գոչեն, եւ սաստկանայ աղմուկն զմուրճսն բախելով։ Առնեն կոչունս, այլ բաշխեն եւս տուրս աղքատաց առատութեամբ։

## 251

Եթէ (հակառակ առաջնոյ կարծեացն) Արտաշէս Ա. (465—424) է Ահշաւիր թագաւոր զոր աստուածեղէն գիրք յիշեն՝ ապա հաւանութեան իմն է թէ Եսթեր իսկ լինել իցէ պատճառ հրամանին՝ զոր ետ Արտաշէս Ա. յեւթներորդ ամի թագաւորութեան իւրոյ (իբրեւ 458) Հրէիցն մնացելոց ի սահմանս թագաւորութեան իւրոյ, դառնալ ի Հրէաստան։ Գրեալ էր հրովարտակն առ Եզր քահանայ եւ դպիր օրինաց՝ որ էր ի զաւակէ քահանայապետին Սարայեայ, որում տայր իշխանութիւն թագաւորն զիրս աշխարհին Հրէաստանեաց յարդարել, ըստ Հրէիցն օրինաց։ Ետ նմա եւ ոսկի եւ արծաթ բազում, ետ համարձակութիւն ժողովել տուրս, եւ պատուիրեաց գանձապետաց իւրոց եւ այլոց եւս նոյնպիսեաց զկարեւոր կարեւոր պէտսն տալ նմա[2]։ Իսկ Եզր ժողովեաց իբրեւ 6000 այր իսրայելացի յայլ եւ այլ ցեղից, պահեաց ընդ նոսա պահս, զի զճանապարհայն պաշտպանեսցէ նոցա Աստուած, եւ եհաս նա յաջողութեամբ յԵրուսաղէմ եւ ետուն զգանձսն ի տաճար անդր, մատուցին պատարագս գոհութեան, եւ գտին յիշխանաց թագաւորին զամենայն որ պիտոյ ինչ էր[3]։ Կարեւոր իմն էր գալ Եզրայ յԵրուսաղէմ, զի սպրդեալ մտեալ էին ի Հրեայսն չարաչար սովորութիւնք. չար քան զամենայն այն էր զի հակառակ օրինացն առնոյին զդստերս Քանանացւոց կնութեան, նա եւ բազումք ի ղեւտացւոցն զնոյն գործէին։ Իբրեւ լուաւ զայս Եզր՝ սկսաւ լալ առաջի Տեառն

1 Եսթ. Ը, Թ, ԺԶ։ 2 Բ. Եզր Է։ 3 Բ. Եզր Ը։

փառն մեղացն այնոցիկ։ Ապա ժողովեալ զժողովուրդ երկրին եւ առ խոստումն յիսրայէլացւոցն թէ արձակեսցեն զկանայսն օտարոտիս. եւ որ ինչ կարեւոր ի դոյն գործ էր՝ կարգեալ յարդարեցաւ[1]։ Յայժ իսկ հաւանութեան է թէ Եզր է որ ժողովեալ ի մի վայր զգիրս սուրբս, եւ այնպէս եդ հիմն Կանոնի հնոց կտակարանաց։ — Նա գրեաց զԱ. գիրսն Եզրայ, թերեւս եւ զերկուս գիրս եւս Մնացորդացն։

## 252

Ի ժամանակի զի Եզր ի Հրէաստանի գործէր՝ էր եւ Նեեմի, որպէս թուի, յարքունական տոհմէն Դաւթի, յարքունիս Արտաշեսի Ա.։ Լուեալ նորա զրոյց թէ տակաւին չշինեցան պարիսպք Երուսաղեմի՝ զի լինէր տրտմութեամբ այրն ճշմարիտ իսրայելացի. լայր, պահէր, կայր յաղօթս առաջի Տեառն եւ յիշէր յուսով առաջի Աստուծոյ զխոստումն նորա[2]։ Իբրեւ եհարց զնա թագաւորն թէ զմէ տրտմեալ իցէ, ասաց յայտ զպատճառսն եւ սա հրաման եբերալոյ յաշխարհն իւր, եւ այն՝ իբրեւ կուսակալ ի 20երորդ ամի թագաւորութեանն Արտաշեսի (445)։

Հրամայեաց սկիզբն առնել շինուածոյն. այլ բազումք յիշխանաց թագաւորին որ ի տոհմից Քանանացւոց էին՝ սկսան արգել լինել[3]։ Յառաջնումն ծաղր եւ այպանութիւն միայն էր, նմին իրի չզանգաղեցաւ Նեեմի կարգեալ յօրինել զպատրաստութիւն գործոյն եւ զգործ պարսպին բաժանել այլ եւայլ ցեղիցն[4]։ Բայց իբրեւ տեսին իշխանքն թէ յառաջադէմ է գործն՝ կռեցին դաշինս ընդ բազմաց ի Քանանացւոցն արգելուլ բռնութեամբ զշինուածն։ Հրեայք կային յաղօթս եւ կարգէին պահապանս. իսկ Նեեմի հրամայեաց զի մասն մի ժողովրդեանն վառեալ կացցէ բախել ընդ թշնամեացն, եւ մնացեալքն ածեալ սուսեր ընդ մէջ գործեսցեն զգործն։ Ինքն իսկ Նեեմի առաջնորդէր ամենայնի ժրութեամբ, խոհեմութեամբ եւ զգուշութեամբ[5]։ Իսկ թշնամիքն որոց գլուխ Սանաբաղատ էր՝ ջանային այնուհետեւ նենգաւ առնուլ ի բուռն զՆեեմի կոչելով բարեկամօք գալ խօսել բերան ի բերան. բայց ապրեցաւ Նեեմի խոհեմութեամբն ի նենգութենէ նոցա։ Չդնէր նա նոցա միտ, վարէր առէջ յառաջ զգործն, եւ յետ 52 աւուրց եղ ի գլուխ շինուած պարըսպացն. մինչեւ նշմարել իսկ հակառակորդաց զԱստուծոյ գործակցութիւն[6]։ Նեեմի ետ կախել զդրունսն եւ կացոյց պահապանս ի վերայ[7]։

Ի տօնին տաղաւարահարաց ժողովեցաւ ամենայն ժողովուրդն յԵրուսաղէմ, եւ ըստ խնդրոյ նոցա ընթերցաւ Եզր զօրէնսն՝

1 Բ. Եզր Թ, Ժ։
2 Նեեմ Ա։
3 Նեեմ Բ։
4 Նեեմ Գ։
5 Նեեմ Դ։
6 Նեեմ Զ։
7 Նեեմ Է.—Ժ։

ունելով առընթեր արս երկոտասան յերեւելեացն։ Ի վաղիւ անդր մեկնեցաւ նոցա զգանս օրինաց։ Ապա կատարեցին զաւուրս ութ զատին տաղաւարահարաց։ Յետ աւուրն ութերորդի լինէր հրապարակաւ ապաշխարութիւն. խոստովան եղեւ ժողովուրդն զմեղս իւր եւ զհարցն իւրոց. չորից յաւուրն յայնմիկ լինէր ընթերցուած յօրինացն եւ աղօթք առ Տէր, եւ ղեւտացիքն եւս օրհնէին եւ գոհանային զԱստուծոյ եւ պատմէին զզանչելիս զօրութեանն եւ զմարդասիրութեան Աստուծոյ, եւ խոստովան լինէին զմեղս ամենայն ժողովրդեանն։ Ապա նորոգեցին միաբանութեամբ զուխտն որ ընդ Տեառն էր, եւ եդին երդմունս պահել զօրէնսն նորա։ Իշխանքն եւ քահանայք եւ ղեւտացիք հաստատեցան ուխտին[1]։

Եւ զի մեծ մասն Իսրայելացւոցն առաւել կամէր բնակել ի շէնս եւ գործել զերկիր եւ ոչ յԵրուսաղէմ քաղաքի, նմին իրի սահմանեցաւ զի տասներորդ մասն ժողովրդեանն բնակեսցէ յԵրուսաղէմ, եւ արկեալ վիճակս ընտրեցին թէ ովք բնակեսցեն ի նմա։ Որք ինքնակամքն հաստատեցան բնակել յԵրուսաղէմ՝ օրհնեցան յամենայն ժողովրդենէն[2]։

Ասան կատարման շինուածոյ պարսպացն եղեն նաւակատիք. կոչեցան ի նաւակատիս անդր ամենայն ղեւտացիք։ Նեեմի եւ Եզր եւ ամենայն իշխանք Յուդայ եւ երկու դասք երգեցկաց հանդերձ նուագարանօք շրջեցան զպարսպաւն. գնացին մտին ի տաճար անդր, մատուցին զոհս մեծամեծս եւ ուրախ եղեւ ամենայն ժողովուրդն յոյժ[3]։

## 253

Ի ժամանակի զի խախտեալ երթային ի Բաբիլոն Իսրայելացիքն՝ քահանայքն հրամանաւ Երեմիայի զնուիրական հուր սեղանոյն առեալ տարան թաքուցին ի խորշս խոր եւ անջուր ջրհորոյ։ Նեեմի առաքեաց ի թոռանց քահանայապետացն այնոցիկ երթալ ածել զհուրն. նոցա երթեալ գտանէին ջուր դանդաղամած թանձրացեալ։ Ապա ետ հրաման Նեեմի երթալ միոցաւ առնուլ եւ բերել։ Եւ իբրեւ ժամ եղեւ պատարագացն՝ հրաման ետ ցանել զայն ի վերայ փայտիցն եւ պատարագացն. եւ իբրեւ արեգակն շող ամպադոյն ի վերայ ծագեաց՝ բորբոքեցաւ բոց հրոյ մինչեւ զարմանալ ամենեցուն. եւ մինչ դեռ աղօթքն մատչէին՝ մաշեցան ողջակէզքն։ — Այսպէս հուրն սուրբ զարմանալապէս ծնաւ միւսանգամ ի ջրոյ անտի։ Իբրեւ բանք զարմանալեացն հասանէին ի թագաւորն՝ հրաման ետ քննել զիրսն եւ զտեղին շուրջ փակել, եւ տայր եւս պարգեւս. իսկ Նեեմիաս անուն եդ տեղւոյն՝ Նեփթար որ թարգմանեալ կոչի Մաքրութիւն[4]։

1 Նեեմ. Ը—Ժ.
2 Նեեմ. ԺԱ.
3 Նեեմ. ԺԲ.
4 Բ. Մակ. Ա. 19...

Ոչ միայն ի ներքոյ անուն Թշնամեացն Իսրայէլացւոց կրէր վիշտս Նեեմի, այլ եւ ի խստասրտութենէ մեծատանց ժողովրդեան իւրոյ: Զի ըստ հակառակ օրինացն Աստուծոյ, որ արգելեալ էր առնուլ տոկոսիս յազգէ Իսրայէլացւոյ[1], առնուին վաշխս անագորովութեամբ յեղբարց իւրեանց տնանկաց, մինչեւ ոչ միայն զարտս իւրեանց այլ եւ զազատութիւն որդւոց իւրեանց դնէին նոքա գրաւ ի ձեռս նոցա: Նեեմի նախանձախնդիր օրինացն յանդիմանէր զծերս եւ զգլխաւորս ժողովրդեանն վասն անագորոյն եւ անօրէն գործոյն, մինչեւ հաւանեցոյց զնոսա խոստանալ զգրաւսն եւ զտոկոսիս դարձուցանել յետս: — Եւ կարող իսկ էր նա պահանջել այնպէս՝ զի ինքնին իսկ լինէր օրինակ գեղեցիկ չխնդրելոյ զշահ անձին իւրոյ, զի եւ ոչ զօրինաւոր հասն առնոյր[2]:

Իբրեւ այսպէս երկոտասան ամ վարեաց Նեեմի զգործ կուսակալութեան իւրոյ՝ եւ գնաց նա միւսանգամ յարքունիս Թագաւորին (յամի իբրեւ 430), կամ վասն հրամանի հասանելոյ նմա ի Թագաւորէն եւ կամ վասն գործոց ինչ: Այլ յետ ժամանակի իրիք ի վերայ անցանելոյ (չէ յայտ թէ երբ)՝ դարձաւ այսրէն մարզպանութեամբ ի Հրէաստան, եւ այն ի դէպ ժամու զի բազում անկարգութիւնք սպրդեալ մտեալ էին:

Հաւանութեան իմն է թէ վախճանեալ էր Եզր, եւ Եղիաշիբայ քահանայապետի չէր նախանձաւորութիւն օրինաց որպէս ինչ կարեւոր էր. զի ոչ միայն ներեալ իմն էր բազմաց ի մեծամեծացն Իսրայէլացւոց փեսայանալ Տուբիայ ամմոնացւոյ որ նենգաւոր թշնամի ժողովրդեանն էր[3], այլ եւ եա եւս նմա տեղի բնակութեան ի տաճարի անդ: Դարձեալ չտային զեւտացւոցն զպատշաճ հասս իւրեանց, եւ զտօն շաբաթուն բազում իւիք լուծանէին: — Հանդերձ այլովք լինէին ամուսնութիւնք ընդ կանանցն հեթանոսաց հակառակ օրինացն:

Զօրութեամբ իմն դիմագրաւ լինէր Նեեմի եւ արգել իսկ աղդեամբք զնոսա. խրատէր, պատուհասէր եւ ածէր յուղղութիւն որչափ ինչ ձեռնհաս էր, մինչեւ յաղթեցաւ նմա բառնալ զանկարգութիւնսն[4]: — Սա է որ գրեաց եւ զերկրորդ գիրսն Եզրայ որ եւ Նեեմին կոչի, եւ թուի կեցեալ յերկարագոյնս, այնպէս զի ի վախճանելն նորա կատարեցան եւթն առաջին եւթներորդք Դանիելի: Առ նովաւ էր եւ Մաղաքիա մարգարէ վերջին ի մարգարէից հնոց կտակարանաց. բանք նորա առ Հրեայս են, եւ կշտամբէին զգնացս եւ զանշնորհակալ միտս նոցա, եւ կայ ի նոսա բազում ակնարկութիւն ի ժամանակն Մեսիայի եւ Նորոյ կտակարանաց[5]:

1 Տես Ղեւտ. ԻԵ. 36, 37: Բ. Օր. ԻԳ. 19, 20:
2 Նեեմ. Ե:
3 Նեեմ. Զ. 17—19:
4 Նեեմ. ԺԳ:
5 Մաղաք. Ա—Դ:

## 254

Եզր եւ Նեեմի զքաղաքային իրս Հրէից եւ զաստուածպաշտութեանն յօրինեալ կարգեցին միաբանգամ, եւ վասն պահպանութեան նոցա կարգեցին ատեան մի[1] ի ծերոց ժողովրդեանն — բայց մանաւանդ զդպրոցն կամ զժողովրդանոցն։ Ի սոսա ընթերցեալ լինէին օրէնք եւ մարգարէք եւ ընծայանայր նոցին մեկնութիւն եւ աղօթք կատարէին. այս լինէր ի միաշաբաթւոջ, ի հինգշաբաթւոջ եւ յաւուրն շաբաթու եւ յաւուրս տօնից։ Սաքինքք եւ կրթէր ժողովուրդն եւ առնոյր շինութիւն։

Թէպէտ եւ յետ վախճանին Նեեմեայ չգտանեմք զոք առանձինն կուսակալ ի Հրէաստանի, բայց Հրէաստան հանդերձ Սամարիաւ որպէս երկրորդին հանդերձ երկրաւն Ասորւոց համարեալ էր նախարարութիւն մի ի նախարարութեանցն Պարսից թագաւորութեան։ Թէպէտ եւ չերեւեցաւ երեւելի ոք մարգարէ, սակայն յայտնի իսկ ձեռն Աստուծոյ պահպանէր ժողովրդեան իւրում. զի ոչ միայն չնուաճեցան այնուհետեւ Իսրայելացիքն, այլ եւ զգուանօք եւս ունէին զնոսա, եւ այն մանաւանդ արժանի զարմանալոյ է՝ զի թէպէտ այնչափ օրինակք չարեաց շուրջ զնոքօք յածախեալ էին՝ նոքա չդարձան ի հասարակաց անպիտանութիւն եւ ի կռապաշտութիւն, եւ թուի իմն թէ յանձանց իսկ եւ յայլոց վերայ զփորձ առեալ զաստուածեղէն պատժոցն եւ զառաջնորդութեանցն՝ առաւ ուրեմն եղեն իմաստնագոյնք եւ լաւագոյնք։

Մերժեալ էր Նեեմեայ զորդի քահանայապետին Յովիդայեայ՝ զՄանասէ, զի հակառակ օրինացն առեալ էր նա կնութեան զդուստր Սանաբաղատայ կուսակալին Սամարացւոցն[2]. եւ զնոյն Մանասէ փախստեայ առ աներն իւր։ Սանաբաղատ առ սէրն Մանասէի առ հրաման ի Դարեհէ Բ. շինել տաճար ի վերայ Գարիզին լերին, եւ եդ անդ զՄանասէ ի քահանայապետութիւն։ Եւ յայնմհետէ էր Շամրացւոց տաճար առանձինն, եւ տեղի գլխաւոր պաշտամանն նոցա էր Սիւքեմ, որ մօտ էր ի տաճար անդր։ Յետ այսորիկ եւ ի Հրէից եւս բազումք վասն անօրէնութեանցն զոր հակառակ օրինացն ունէին եւ չառնուին յանձն հրաժարել՝ երթեալ խառնեցան ընդ Շամրացիսն։ Սոքա պահէին այնուհետեւ ճշդիւ զհարգս եղեալս յօրինացն. ընդունելի համարէին զհինգ գիրսն Մովսիսի (թերեւս եւ զգիրսն Յեսուայ), ունէին ակնկալութիւն Մեսիայի հանգոյն Հրէից, քանզի եւ ի գիրսն Մովսէսի կային այնր խոստմունք։ Նա ցայժմ իսկ յորժամ յաղօթս կան Շամրացիք՝ դառնան ի կողմն Գարիզին լերին։

Ի ժամանակս Ոքոսն Արտաշխսի ունէր զքահանայապետութիւնն Յովհան որդի Յովիդայեայ. սորա նախանձորդ էր նորին

1 Sanhedrium. 2 Նեեմ. ԺԳ. 28.

եղբայր Յեսու, եւ ձեռն տայր սմա Բագոգաս սիրելի Թագաւորին. բայց Յովհանան սպան զՅեսու յորժամ խօսէր նա ընդ նմա ի նուիրական տեղւոջ: Խաղաց եկն Բագոգաս յԵրուսաղէմ մեծաւ ցասմամբ, բռնութեամբ եմուտ ի տաճար անդր եւ արկ տոյժս տուգանաց ի վերայ՝ տալ եւթն ամ յիսուն դահեկան (իբրեւ 10 Թալեր) վասն ամենայն զոհի որ հրապարակաւ մատչէին: Բայց Հրեայքն այլովք ամենեքումբք պահէին զազատութիւն եւ զիրաւունս իւրեանց մինչեւ ցկործանել Թագաւորութեանն Պարսից ի Յունաց:

## 255

### Առանձին կեանք Ասիացւոց եւ առանձին Հրէից:

1. Մ՚ինչ չեւ լեալ էին շինութիւնք քաղաքաց եւ տէրութեանց, եւ յետոյ եւս՝ յորժամ մասն մի մարդկանն հաստատուն բնակութիւն կալաւ՝ պարապեալ մշակութեան երկրի, տակաւին բազում տոհմք եւ ազգք համօրէնք՝ որոց հովուական կեանք էին, եւ հօտիւք եւ անդէովք իւրեանց խաղային տեղւոջէ ի տեղի՝ շարժուն իմն յարկ բնակութեան ունէին՝ այս ինքն վրանս: Ցիցս բազումս 8 — 10 ոտն բարձրութեամբ՝ ի գետին ցցեալ երկայնաձեւ չորեքկուսի իմն ձեւով՝ ծածկոյթ հիւսեալ յասուէ կամ ի Թելից ինչ արմաւոց կամ ի մազէ այծից, կամ ի սաեւոյ ուղտու ի վերայ արկանէին, վարագուրօք յերիս բաժինս զվրանն անջրպետեալ. յառաջնումն էին ծառայքն եւ ընտանիք, յերկրորդումն հայրն հանդերձ որդւովքն, իսկ յերրորդումն՝ կանայք: Ամենայն իսկ կահ էր ծածկոյթ ինչ տարածեալ ի վերայ գետնոյն, բարձք փոխանակ աթոռոց, մաշկ ինչ բոլոր շուրջանակի՝ փոխանակ ընդ-սեղանոյ, պատառ եւ Թամբ ուղտու. յերրորդ սենեկի անդ վրանին էին ամանք կերակրոյ, տիկք կոգւոյ եւ ջրոյ, աղօրիք եւ այլ եւս նոյնպիսիք: Ջցցոց վրանին կախէին զհանդերձսն: Յորժամ բազմամբոխ տոհմն էր, բազում վրանք առ միմեանս խիտ առ խիտ հարեալ բանակ իմն լինէր. ամարայնի ըստ սովորութեան առ հեղեղատօք եւ աղբերակամբք, ձմերայնի՝ ի ներքին կողմանս անապատի եւ ի խորաձորս, կարգեալք առ միմեանս կամ շրջանակաւ եւ կամ ուղղորդ կարգաւ. իսկ վրան ցեղապետին անդ կայր կանգնեալ՝ յորժէ կուսէ մանաւանդ գան հիւրք եւ բարեկամք: Իւրաքանչիւր կապէր զգրաստ իւր առ խորանի իւրում, եւ անդէն կային ուղտք նորա զցայգ, եւ հօտ ոչխարացն եւ ուլուց՝ որոց ունէին պահպանութիւն զցայգ եւ զցերեկ հովիւքն՝ որք ածէին իսկ զնոսա ի տուն ընդ երեկս:

Նահապետք եւս Իսրայելացւոցն էին ազգ մի յազգաց աստի տուարածականաց, եւ զաւակն եւս նոցա Իսրայելացիքն կացին մնացին հովիւք յԵգիպտոս, եւ պահէին զվրանսն իւրեանց՝ բայց առ սակաւ սակաւ ուսան զշահ մշակութեան եւ հաստատուն տանց:

Մանաւանդ զի Թէպէտ եւ մեծ ինչ մասն ազգացն Քանանացւոց տակաւին ի վրանսն բնակէին հանգոյն Մադիանացւոցն, Ամաղեկացւոցն եւ այլոց ազգաց ազգաց Արաբացւոց եւ մանաւանդ ցեղիցն Սկիւթացւոց, սակայն եւ բազմաց ի ցեղից անտի Քանանացւոց (600) քաղաքք մեծամեծք եւ մանունք էին հանդերձ տամբք՝ հանգոյն բնակելոցն առ Նեղոս, Եփրատ, Տիգրիս եւ Գանգէս գետովք: Ի կիր արկանէին ի շէ-

նուած՝ աղիւս թրծուն, վէմս հատեալս ի լերանց, կիր կամ կուպր ի կապել, փայտ ի շինուած էր (Իսրայելացւոց) մանաւանդ մղաթզենի, իսկ մայր փայտ ի շինուած մեծամեծ ապարանից։ Զեւ տանցն Ասիացւոց չորեքկուսի իմն էր փակեալ՝ բակ ինչ ի միջի, յաճախ՝ մի եւեթ դստիկոն, իսկ տանց մեծատանցն՝ մանաւանդ ի քաղաքսն մեծամեծս որպէս ի Բաբիլոն, ի Թեբէս, բազում դստիկոնք էին [1]. բռեալ էին որմունքն, այլ մեծատանցն՝ գունեալ, որպէս ցայժմ երեւի։ Դուռնն արտաքին՝ յորոյ վերայ յաճախ գրեալ կայր բան ինչ յիշեցուցիչ, եւ էր միշտ փակեալ՝ հանէր ի փողոցէ անտի անդէն ի գաւիթն՝ յորոյ յերկաքին կողմանսն եդեալ կային կարգաւ խոնարհագոյն աթոռք. անտի ապա էր մտանել ի սրահն կամ ի բակն եւ ընդ այն ի ներքին սենեակսն։ Իսկ սենեկացն որմունք եւ առաստաղք էին կամ տախտակամած ի մայր փայտէ եւ կամ ի փղոսկրէ, կամ ի ճամուկս զարդարեալ. եւ յատակեալ կամ տախտակամած եւ կամ ի խայտ կճոյ եւ կամ մաւսիոնիւ։ Պատուհանք ըստ սովորութեան իմն ի բակ անդր հայէին, դուռ ուրեք ի փողոցս, եւ այն վանդակապատ՝ եւ ոչ ապակեով։ Մեծատանցն տունք ճաշակատեղ եւս առանձինն ունէին։ Իսկ ի միջի անդ չորեքկուսի բակին կայր աղբեւր կամ ջրհոր ջուրց ժողովելոց. շուրջ զբակիւն ի չորս կողմ տանն էին սրահք զարդարեալք սեամբք, եւ ի վերոյ քան զսրահսն զայնոսիկ յերկրորդ կամ յերրորդ դստիկոնսն՝ ճեմելիք։ Հարթ էին տանիք տանցն յատակեալ կաւով կամ թրծուն աղիւսով եւ պատեալ շուրջանակի խաղխաղօք, ընդ որս հայէին ի ճանապարհս. տանիքն էին տեղի ժողովելոյ եւ հանգստեան, բազում անգամ վրան եւս անդէն հարկանէին։

Կազմածք տանցն էին՝ բազմոցք կամ տապաստակք կարգաւ զորմովք սենեկացն բարձիւք եւ ծածկութիւ, յորոց վերայ ոտն զոտամբ արկեալ նստէին, խոնարհագոյն աթոռք, փոքր սեղանք եւ կանթեղք ազգի ազգի ձեւովք՝ ի միջին վայրի սենեկին, որք զամենայն գիշերն վառէին, օթոցք սփռեալք ի յատակս սենեկին։ Զմերայնի ի միջավայրի սենեկին բրտեայ անօթով եւ կամ ի խոր ինչ տեղւոջ արկանէին կրակ. յորժամ ամենեւին անցանէին կայծակունք հրոյն՝ թոնիր (կազմած ինչ չորեքկուսի ծածկեալ ի վերուստ) ի վերայ եդեալ եւ օթոց ի վերայ արկեալ արգելուին ի ներքս զջերմութիւնն։ Կահք էին՝ աղօրիք ձեռաց, անօթք բրտի, կուժ ջրոյ, սանք, դանակ, տարգալ, տիկք, բաժակ եւ այլ եւս նոյնպիսիք։

Գիւղք եւ քաղաքք (ի Պաղեստինացւոց աշխարհին) յօրինեալ էին ըստ յաճախ սովորութեան ի վերայ բլրոց. պարսպաւորք էին քաղաքքն եւ հանդերձ աշտարակօք, մի եւեթ դուռն էր նոցա ըստ յաճախ սովորութեան, ուրոյն իմն էր ի նմա տեղի վաճառացն ուր զօր ամենայն վաճառականք եւ ձեռագէտք ի հանութսն իւրեանց առ միմեանս նըստէին. երբեմն այն տեղի վաճառաց յատակեալ էր կճասալ քարակօք եւ ունէր փողս երկայնս, պատեալս սեամբք յամենայն կուսաց։ Դուռն քաղաքին եւ վայրն շուրջ զնովաւ՝ էր յարեւելեան քաղաքսն տեղի ժողովելոյ մարդկան եւ դատելոյ զժողովուրդն, խորհուրդ ինչ խորհելոյ վասն հասարակաց ինչ իրաց, տալոյ եւ առնլոյ, եւ տեսանելոյ զհանդէս խաղալկաց։ Քաղաքքն մեծամեծք, մանաւանդ թագաւորանիստքն՝ ընդարձակ յոյժ էին, քանզի բազում դրախտք մեծամեծք էին ի նոսա. աստստին յայտ առնի եւ մեծութիւնն Բաբիլոնի, Նինուէի, Եկբատա-

1 Հերոդ. Ա. 180։ Դիոդ. Սիկ. Ա. 45։

նացւոց, Թեբացւոց եւ այլոց նոյնպիսի քաղաքաց։ Սակայն յօրինուած քաղաքացն Պաղեստինացւոց որ ի վերայ բլրոց էին շինեալ՝ չմարթէր լինել ամենեւին ըստ հաւասար կանոնաց. նեղ եւ նուրբ էին փողոցքն եւ կամակոր։ Բայց յետ ժամանակաց Մակաբէացւոց զարդարեցան եւ գեղեցկացան քաղաքք նոքա ըստ ճարտարութեան Յունաց։ Առ Քրիստոսիւ կային ի Պաղեստինացւոց աշխարհին՝ վարժոցք, ասպարէզք մրցութեան, սրահք եւ թէատրոն։

2. Հանդերձք արեւելեայն պարզ իմն եւ անփոփոխ էին վասն միակերպ օդոյն խառնուածոյ. սակայն տաւարածականաց հանդերձք այլակերպ էին միշտ ի հանդերձից բնակչաց քաղաքացն, եւ սոցայն եւս այլակերպ ի գեղջն բնակչաց։

Տաւարածականքն արկանէին ըստ սովորութեան զանձամբք շապիկս տաւիս, զոր գօտեւոր հաստատէին զմիջովն իւրեանց, ի վերայ շապկին բաճկոն տաւի սպիտակ կամ ճամուկ, եւ գլխոյ ծածկոյթ՝ խոյր կարմիր կամ կտաւ երկայնաձեւ չորեքկուսի՝ պատատեալ։ Արկանէին կանայք արկանելի ինչ ի կտաւոյ լայն եւ ընդարձակ մուեթ գօտիով, եւ զգլխով քօղ որ զկէս երեսացն ծածկէր (փողանք)։ Իսկ Իսրայելացիքն սովորեալ էին յԵգիպտոսէ յօրինել հանդերձս յասուէ եւ ի կտաւոյ, այլ եւ այլս ըստ նիւթոյն, ըստ գունոյն եւ ըստ ձեւոյն վասն իւրաքանչիւր հասակի եւ սեռի, վասն մեծատանց եւ վասն այլ եւ այլ պաշտամանց։ Երեւելի գոյնք նիւթոց նոցա էին սպիտակ, ծիրանի, կարմիր եւ մթին կապուտակ, եւ գոյնազգոյն եւս։ Ցոյլին փայլուն՝ սպիտակ գունոյ եւ համարեալ էր այն ազնիւ եւ պատուական, բայց մեծագին քան զամենայն էր ծիրանի Փիւնիկեցւոցն։ Գլխաւոր մասն հանդերձիցն էր ներքին պատմուճանն կամ պարեգօտն որ էր սովորական հանդերձ ի քաղաքս յորժամ ի տան նստէին, ի բամբակէ կամ ի կտաւոյ՝ հանդերձ թեզանեօք եւ ընդարձակ յոյժ, զոր եւ գօտեւոր կամ կամարաւ ի կտաւոյ կամ յասուէ եւ կամ յարդուճոյ ածէին. ածեալ առ նմին թուր կամ նրան, արծաթ եւ այլ եւս ինչ կարեւորս. ի վերայ ներքին պատմուճանին արկանէին զարտաքին պատմուճանն կամ զվերարկուն յորժամ ելանէին արտաքս ի տանէ, որոյ այլ եւ այլ կերպարանք եւ նիւթ եւ երանգք էին։

Ոտք նոցա էին սանդալք փայտեղէնք կամ մաշկեղէնք կապեալք փոկովք ի ներքոյ ոտից (ուստի անուանեալ կոչեն Յոյնք ὑποδήματα). լուծանել զնոսա եւ կապել՝ ծառայից եւ աշակերտաց գործ էր։ Ի սենեակս էին բոկ. միայն՝ յորժամ արտաքս ի տանէ ելանէին՝ ագանէին զոսա։ Առանձինն իմն զարդ եւ ընտրութիւն ազատ մարդոյ ի ծառայէ համարեալ էին յարեւելս ի սկզբանէ՝ մօրուք. չէր իշխանութիւն արկանել ի նա ձեռն՝ բայց միայն համբուրելոյ վասն. հատանել զմօրուսն էր անհնարին անարգութիւն, իսկ դարման մօրուացն կարեւոր ինչ իրք համարեալ էին։ Իսկ Եբրայեցիքն եւ զհեր գլխոյ պատուական համարէին, թէպէտ եւ վիրայրին եւս (եթէ ուխտաւորք կամ նազարեցիք չէին), սակայն դարմանէին յոյժ եւ օծանէին որպէս զմօրուսն նոյնպէս եւ զվարսն իւղովք անուշիւք։ Իսկ կանայք առաւել եւս փոյթ ի վերայ ունէին գեղեցիկ զհեր գլխոյն յօրինել, եւ զխոպոպիս վարսիցն ակամբք պատուականօք, մարգարտով, ոսկւով եւ այլովք եւս նոյնպիսեօք զարդարել։

Հաւանութեան է թէ ի բուն առաջին ժամանակսն նախ՝ զհերս գլխոյ հիւսեալ կապէին, ապա կտաւով ինչ զգլուխն ծածկէին, մինչեւ

յետուստ եգաւ խոյր ի գլուխ՝ որք կամ աշտարականձեւ հարթ ի վերայ էին՝ որպիսի ինչ ունէին եւ թագաւորքն Պարսից [1], եւ կամ էին սուր ծայրիւ ի կերպարանս երեքանկիւնայ՝ որպիսի ինչ յայլ եւ այլ յիշատակարանս երեւի [2]: Սովորութիւնն պատելոյ կտաւ ինչ զգլխով՝ է քաջ ի բաց հին եւ յետ գերութեանն յաճախ եւ սովորական եւ ի մէջ Եբրայեցւոցն: Արեւելեայքն ոչ ի պաշտամանն Աստուծոյ եւ ոչ յողջոյն տալ բանային զգլուխս իւրեանց: Հանդերձք կանանց չէին այնչափ այլակերպ ի հանդերձից արանցն բայց երկայնութեամբ եւ նրբութեամբ եւ զարդու: Արտաքին պատմուճանն կամ վերարկու նոցա էր գեղեցաքարշ, սանդաղքն էին ի մորթոց գունեղաց. ի վերայ խուրծն իւրեանց արկանէին քող ցկէս երեսացն եւ երբեմն շղարշաձեւ եւ տարօշ ազգի ազգի նիւթով եւ զարդու: Եւ Մովսէս եւս թոյլ տայ կանանց միայն առաջի ազգականաց իւրեանց եւ աղախնաց երեւել առանց քողոյ: Սակայն առաւել համարձակութիւն էր ի գիւղս եւ ի մէջ առաւօտածականաց, եւ նմին հակառակ՝ յաճախ խստութիւն ի քաղաքսն: Սովորութիւն իսկ էր ի սկզբանէ Ասիացւոցն՝ առ հասարակ կրել մատանի ի մատունսն, որով ալքն արկանէին ձեռնագիր, քանզի փորեալ էր ի նմին անուն նոցա կամ վճիռ ինչ. մեւս եւս զարդ արանց էր գաւազանն, մանաւանդ առ Բաբելացւոցն: Իսկ կանանցն բազմազոյն մատանիք կամ օղք ի մատունսն, յականջս եւ ի քիթս էին. եւ էին նոքա յոսկւոյ, յարծաթոյ կամ յայլոց քրէական նիւթոց, յորս ընդելուզեալ էին եւ ականք պատուականք: Ապարանջանք ոսկիք, արծաթիք եւ ապակեղէնք եւ կշտապանակ էին բազում անգամ ոչ միայն զարդ կանանց այլ եւ արանց: Ճարմանդք ոսկիք կամ արծաթիք յոռս կապեալք ընդ միմեանս առատ անտի շղթայիւ վասն չափով իմն զքայլն փափախելոյ, եւ մանր ինչ կայթք կախեալ զնոցանէ զի ի ծեծելն հնչիւն ինչ արձակիցի: Զարդ իմն էին եւ յուռութուլունք՝ որպիսի ինչ թիթղունք ոսկիք կամ արծաթիք հանգերձ մոգական բանիւք եւ կամ քարտէզ ինչ գրեալ ի պարանոցսն կամ յականջսն, դարձեալ հայելի ի քրէական ինչ նիւթոյ ողորկելոյ եւ կամ շիշ անուշահոտութեան կախեալ զգումարտակէ պարանոցին: Ունէին բազում անգամ եւ պարկ ինչ առ իւրեանս վասն իրաց ինչ կարեւորաց եւ թաշկինակ զոր կամ ի գօտւոջն եւ կամ ի ձեռին իւրեանց ունէին: Չէր ինչ անծանօթ եւ կանանցն Եբրայեցւոց ծարիր եւ սնգոյր, որով զաչսն եւ զարտեւանունսն յօրինեալ կազմէին թուխս: Որպէս ի տանիցն ուրուք արկանէին հանդերձ ուրախութեան, նոյնպէս յորժամ ի սուգ էին՝ ագանէին հանդերձ սգոյ որ էր արկանելի ինչ ըստ նմանութեան պարկի զոր ածէին զմիջովք:

3. Ըմպաւութիւն իմն կերակրոց ի բուսականաց եւ յանասնոց մատուցանէ Ասիա. բայց վաղ իսկ ուրեմն սկիզբն եղեւ զենական կերակրոյն առաւել եւս ամոքել արուեստիւ: Յոյժ հին է վարելն անգանաւ եւ աղօրեօք վասն զարմոխ յալեւր փոխելոյ: Առ Մովսիսիւ սովորական իմն էին աղօրիք ձեռաց՝ յերկուց վիմաց որոց երկակատար իցէ երկու սան եւ թանձրութիւն կէս սան, ներքինն ի միջավայրի սակաւ ինչ բարձրագոյն, եւ հաստատեալ ի գետնի. իսկ վերինն շարժուն եւ փորեալ ի միջոցին. եւ դարձուցանէին զայն աղախինքն: Յետոյ մեծ եւս վէմս ըստ նմին ձեւոյ յօրինեալ դարձուցանէր էշ մի [3]: Եւ քանզի հանապազօր վասն աւուրն եւեթ եփէին զհացն նոյնպէս եւ վասն աւուրն

1 Եսթ. Ը. 15: 2 Դան. Գ. 21: 3 Մատթ. ԺԸ. 6:

զկարեւոր ալեւրն աղային: Զխմորն պատրաստեալ ի տաշտի՝ առեալ յօրինէին բոլորշի եւ եփէին. ի բուն ի հին ժամանակսն աղախինքն առանէին զայն գործն. այլ վաղ իսկ ի ժամանակսն Յովսեփայ յԵգիպտոս[1], եւ յետոյ եւ առ Իսրայելացւովքն բազում անգամ հրապարակաւ հացարարք կային[2]: Փոխանակ հնոցի եփէին ի գաղախի (նկան) եւ կամ ի տեղւոջ ուրեք խորելոյ եւ փորելոյ եւ յատակելոյ քարամբք, զոր նախ ջեռուցանէին հրով՝ առնուին ի բաց զկրակն եւ դնէին զխմորն ի ներքս եւ փակէին ի վերայ. եւ կամ դարձեալ ի վերայ խեցեղէն իրիք սափորոյ առանց յատակի, որոյ բարձրութիւն էր երեք ոտք, զոր եդեալ ի վերայ շարժուն ինչ պատուանդանի՝ հրով ներքուստ ի ներքս ջեռուցանէին եւ արտաքուստ ի սափոր անդր զխմորն կցէին, եւ կամ դարձեալ ի տապակի տարածեալ եփէին: Յոյժ հին է եւ վարելն ողիւ ի համեմել զկերակուր. Նմին հակառակ զկերակրոյ ձկանց սակաւ ինչ հետք գտանին: Սովորական իմն կերակուր էր մարախն. ցայժմ իսկ ցեղք ինչ Արաբացւոց ժողովեալ զնոսա տապակեալ կամ ցամաքեցուցեալ յարեւու՝ պահեն պարկս պարկս իբրեւ պաշար, եւ ցանեալ սակաւիկ ինչ աղ ի վերայ՝ ուտեն լցեալ նոքօք զձեռս իւրեանց: Սովորական եւ պատուական ըմպելի էր Եբրայեցւոցն՝ ջուրն. զգինի գործէին անուշահոտ զմուռովք. հանէին զինի կամ օղի յարմաւոյ, ի նռանէ կամ յարմաւաց: Պահէին զգինի որպէս եւ զջուր ի տիկս. յետոյ եղաւ սովորութիւն արկանել եւ ի կարաս (յամնօթս խեցեղէնս):

Գլխաւոր ժամանակ կերակրոյ Ասիացւոցն (որպէս եւ Յունաց եւ Հռոմայեցւոց) էր ընդ երեկս (ընթրիք), զմիջաւուրբք թեթեւ ինչ կերակուր (ճաշ): Եբրայեցիք յառաջ եւ յետոյ լուանային զձեռս, եւ յետուստ աղօթք եւս եւ օրհնութիւնք լինէին: Կահք եւ կարասիք սեղանոյ ամենեւին անպաճոյճ էին. զամենայն վճարէին ի վերայ օթոցի իրիք կամ մաշկի տարածելոյ ի վերայ երկրի, եւ մօտ առ միմեանս նստեալ, եւ ըստ յաճախ սովորութեան՝ իւրաքանչիւր ձեռօք իւրովք ի միոջէ սանէ ուտէին առանց դանակի, պատառաքաղի եւ մաղզմայ եւ այլոց նոյնպիսեաց, թէպէտ եւ մեծամեծք թուին վարեալ մերձնովքն, եւ փոխանակ նստելոյ՝ ընկողմանեալ բազմէին ի վերայ բարձից: Ի ժամ ընթրեացն առնուին ուրախութեան բանս ի մէջ, եւ արկանէին առեղծուածս. մանաւանդ բուրէին խունկք եւ լինէր օծումն եւ հնչէին նուագարանք եւ կամ երգէին երգեցիկք ի կանանց գերեաց:

Դ. Գերիք լինէին առհասարակ իրաւամբք պատերազմի, այնպէս զի ի ժամանակսն յայնոսիկ ազնիւ ինչ մասն աւարին՝ նոքա էին, եւ կամ ծննդեամբ՝ ի հարց եւ ի մարց գերեաց. որ ծննդեամբն էին՝ կոչէին ընդոծինք[3]: Վասն հանապազորդ պատերազմաց ազգաց ազգաց ընդ միմեանս, հինից ծովու եւ մարդագողի բազմացեալ էին յոյժ գերիք, եւ ի քաղաքսն մեծամեծս կայր առանձին տեղի վաճառոյ գերեաց, եւ մարդագին վաճառականք երթային գունդ գունդ զհետ զօրուն զի զգերիսն վաղվաղակի առցեն գնոց: Օրէնք Եբրայեցւոցն որ թոյլ իմն տուեալ էին ունել գերիս՝ վասն դժուարին լինելոյ խլել զայնպիսի հաստատուն սովորութիւնն՝ սահմանեալ էին գինս վասն իւրաքանչիւր հասակի եւ սեռի նոցա[4], եւ հրամայեն առնել նոցա հանգիստ, չտան տերանցն իշխանութիւն ի վերայ կենաց նոցա, եթէ խեղէր երբեք զնա

1 Ծնն. Խ. 2:
2 Ա. Թագ. Ը. 13: Ովսէէ Է. 4: Երեմ. ԼԷ. 20:
3 Ծնն. ԺԴ. 14…:
4 Ղեւտ. ԻԵ. 44…:

կենտանոցաւ, առաւիղ՝ ի ներքոյ ի ձեռն ոսկի՝ տամբուրի [1], քնար երեքկուսի տամբուրի (սանթուր) որ սովորական իմն էր մանաւանդ ի Բաբիլոն։ Նուագարանք հնչականք՝ փող հովուական յեւթնեղեգնեայ փողոց առ միմեանս յարելոց [2], սրինգ փայտեղէն, փող եղջերեայ՝ յեղջերէ եզանց զոր ի կիր արկանէին Եբրայեցիք ի ժամ պատերազմացն, սակաւ ինչ մեծագոյն էր քան զայն՝ շեփորն զոր արկանէին մանաւանդ ի տօնսն ի կիր։ (Նուագարանք բախելոյ էին՝ թմբուկ (Դէֆ) զոր աղջկունք հարկանէին կաքաւելով, ծնծղայ եւ քշոց։)

Պատուական համարէին Եբրայեցիք զամուսնութիւն, բազմութիւն որդւոց ցանկալի եւ պատուական էր ծնանելեացն, օր ծնընդոց նոցա էր օր տօնից. միայն մեծատունք ածէին տօնս մանկանն։ Ի բուն վաղ ժամանակաց՝ սովորութիւն էր անդէն ի ծնանել մանկանցն տալ նոցա անուն ինչ նշանակիչ իրաց. այլ յետոյ Եբրայեցիք յետ ութ աւուր ի թլփատութեանն տային անուն ուստերացն, իսկ դստերացն՝ յորժամ ի ստենէ հատանէին։ Յառաջին ամսն եւ ուստերքն եւ դստերք ի մարցն կրթէին. դստերքն մնային առ մարցն եւ ուսանէին ընտանեաւն ի գործս տանն, իսկ ուստերքն յետ հնգամեայ հասակի գային ի հոգաբարձութիւն հօրն որ կրթէր զնա ի հանգամանս գործոց, ի պատմութիւն եւ ի գիտութիւն օրինացն Մովսէսի. եթէ հայրն մեծատուն՝ չէր ձեռնհաս կրթել ինքնին՝ կարգէր ուսուցիչ մանկանն։ Այլ յետ գերութեանն Բաբելացւոց հրապարակաւ դպրոցք կային։

Սկսեալ արեւելեայց իսկզբանէ բանիւ բերանոյ աւանդէր աշակերտացն. եւ յետ գիւտի եւս նշանագրաց նոյնպէս յաճախէին առնել։ Կանխագոյն եւ հնագոյն է պատկերակերպն գիր՝ որպիսի ինչ Եգիպտացիքն ունէին եւ Մեքսիկացիքն, եւ սեպաձեւն գիր՝ որով Ասորեստանեայք եւ Պարսիկք վարէին ի յիշատակարանս կանգնելոց հրապարակաւ՝ որք ցայժմ ի համօրէն Վերինն Ասիա գտանին [3]. այս սեպաձեւ գիր՝ զոր մարթ է այժմ փոքր ի շատէ ընթեռնուլ օգնականութեամբ զանդիկ լեզուի գրոցն Զրադաշտայ՝ ամենեւին պարզ է՝ յօրինեալ յայլ եւ այլ կարգմանէ սեպաձեւն եւ կարանկիւնաձեւն կերպարանաց. մին մի նշանագիր է նշանագիր ուրեք, եւ ոչ նշանակիչ ողջոյն անուանն որպէս դիպի ի պատկերակերպն գրի։

Սակայն չէ ինչ կարի յետնագոյն ժամանակաւ գիւտ աղփաբետացն գրոյ կամ հնչմանց գրոյ՝ որ ի պատկերակերպ գրոյ թուի առեալ զծագումն. քանզի ձեւք աղփաբետացն միաբան իմն են մեծաւ մասամբ ընդ ձեւոյ իրացն՝ զոր անուանք աղփաբետացն նշանակեն։ Եւ սոյին իսկ աղփաբետացն կարգն եւ անուանքն՝ որ ի սեմական լեզուի անուանք նշանակիչք իրաց իրաց են, եւ բազում անգամ համեմատութիւն ինչ ընդ միմեանս ունին [4] յայտ առնեն թէ գիւտ աղփաբե-

1 Տես Յովսեպ. Նախն. պատմ. Է. 10։
2 Տես եւ առ Մովսէս. Հատ. Բ. ի յօր. Ղազարու։
3 Տես վերագոյն էջ 92 եւ 350։
4 Քանզի անուանք Յունացն աղփաբետաց Ալֆա, Բետա, Գամմա (ելեալ ի Գեմէլայ), Դելտա..., եւ այլոց եւս ազգաց որպէս եւ մասամբ իւրք՝ միայն, միայն ի սեմական բարբառս՝ մանաւանդ ի քաղդէացի կամ յեբրայեցի լեզու նշանակեն իրս՝ եւ կամ ցուցանեն ուրեք ուրեք զօկիրդն հնչման իրացն՝ զոր ցուցանեն ձեւքն նշանագրաց. Ալէֆ (ցուլ), Բէթ (տուն), Գիմէլ (ուղտ), Դալէթ (դուռն), Վաւ (ճանկ), Զային (զէն), Խեթ (պարկ ճանապարհի), Տէթ (օձ), Յօդ (ձեռն), Կաֆ (ափ), Լամէդ (խթան եզանց), Մէմ (ջուր), Նուն (ձուկն), Սամէք (թերեւս՝ ցից), Այն (ակն), Փէ (բերան), Ծադէ (բու), Քոֆ (ականջք), Րէշ (գլուխ), Շին (ատամն), Թաւ (նշանակէ՝ կատարել, վճարել)։ — Երեւի ի սոսին եւ կարգն զոր ունին առ միմեանս նշանագիրքն ըստ իրացն զոր նշանակեն. Խեթն՝ առ Զային, Նուն՝ առ Մէմ, Կաֆ՝ առ Յօդ, Փէ առ Այն, Քոֆ՝ առ Փէ, Շին՝ առ Րէշ, նոյնպէս

տացն ի սեմական ազգաց եղեւ։ Եւ այն եւս ամենեւին հաւանութեամբ է՝ թէ ի սեմականացն ազգաց հին Բաբելոնացիքն գտին[1] որ յառաջ քան զամենեսին ծաղկեցան[2], եւ առնուլ ուսուցաւ ընդ ամենայն արեւմտեան Ասիա, եւ ի ձեռն փիւնիկեցւոցն եհաս առ Յոյնս[3], եւ նոքօք յԵւրոպիացիս, ի Կելտս եւ յայլ եւս ազգս մի ըստ միոջէ, որպէս կայ իսկ տեսանել ի համեմատութենէ քաղդէական չորեքկուսի նշանագրաց Եբրայեցւոցն, Պաղմիրացւոցն, Սամարացւոցն, Եբրայեցւոցն ի վերայ հնոց դահեկանաց նոցա, փիւնիկեցւոցն՝ նոյնպէս ի վերայ դահեկանաց նոցա, եւ հնոց աղփաբետացն Յունաց, յորս ընթանայ նմանութիւն կարգաւ աստիճան յաստիճանէ։

Այլ իսկ ի ժամանակին Աբրահամու լինել էր սովորական աղփաբետացն գիր՝ յորժամ մուրհակք վաճառելոյ եւ գնելոյ նոքիմբք գրէին։ Սակայն միշտ իսկ դպրութիւնն եւ գիր կաց մնաց իբրեւ սամաձինն ստացուած տոհմի իւրեք, որպէս քրմացն՝ առ Եգիպտացւոց, Քաղդէացւոցն՝ առ Բաբելոնացւոց, մոգուցն՝ առ Մարաց եւ Պարսից. վասն ամենայն ղեկոյից արքունեաց եւ վաճառականաց կային դպիրք որ արձաթով գրէին թուղթս եւ մուրհակս։ Հինքն գրէին նախ ի վերայ մորթոց այծից եւ ուլուց, այս հինքն ի վերայ մագաղաթի, յետոյ ի վերայ պապիրոսի՝ պրտուոցն Եգիպտացւոց[4]։ Մագաղաթն պատեհ էր առ պլորել գաւազանաձեւ եւ կամ գալարել ի վերայ գլանաց[5], եւ բազում մատեանք առ միմեանս կցեալ զմիով գլանիւ պատատէին[6]. երբեմն երկայն եւ լայն էին յոյժ[7]։ Գրէին բազում անգամ ի կեղեւս ծառոց մանաւանդ ի տերեւս արմաւենեաց[8], ի վերայ կտաւոյ[9], եւ ի վերայ թրծուն աղիւսոյ մանաւանդ ի Բաբելոն[10]։ Գրէին գրչաւ ի պողպատէ, յակներաց եւ ի փայտէ[11] փորելով կամ քերելով[12] ի վերայ տախտակի պատելոյ մոմով, կցեալ երբեմն առ միմեանս երկուս տախտակս[13]։

Եբրայեցիք անդստին ի կանուխ ժամանակաց վայելեցին յօգուտ նշանագրացն գիւտի։ Յետ պատմական աւանդութեանց ազգին արկանելոյ ի ձեռն Մովսիսի ընդ գրով՝ կարգաւ անցքն ի գիր երեւեցին իւրք ազգին, եւ այնպէս եղ եկաց պատմութիւն ինչ որում չիք ինչ համեմատ առ հին ազգս։ Բանաստեղծութիւն նոցա որպէս եւ ամենայն Ասիացւոց ազատ իմն եւ բնական էր եւ ոչ արուեստական ինչ ըստ կանոնաց, քանզի չէ իսկ հիմն նորա չափ ոտանաւորաց, այլ կրկնումն՝ նոյն մտաց այլով բանիւք կամ փոխոխ համեմատութիւն անդրանից առ միմեանս[14]։

Ալէփ՝ առ Գիմել, Բէթ՝ առ Դալէթ, իսկ թուան իբրեւ լրումն կամ բովանդակութիւն աղփաբետաց։

1 Թէոփ. Անտիոք. առ Աւտող. Գ. 30. «Ոմանք զգիւտ աղփաբետաց Քաղդէացւոց համարեցան»։ — Արտաքին մատենագիրք որպէս Դիոդ. Սիկիլացի. Պլինիոս՝ Ասորեստանեաց կամ Ասորւոց ասեն, տակայն՝ նոքա չգիտեն ընտրել զհին զաւակին Բաբելոնացւոց պետութիւնն յԱսորեստանեաց պետութենէ, եւ զԱսորիքն անուն բազում անգամ փոխանակ Ասորեստանեաց արկանեն ի կիր. քանզի նոյն Դիոդոր է որ զՇամիրամայ պատմէ ասորեգրով կանգնել յիշատակարանս (Բ. 13)։

2 Տես վերագոյն էջ 113—114։

3 Հերոդ. Ե. 57, 58, 59. Բ. 145. եւ այլք բազումք։

4 Հերոդ. Ե. 58։

5 Volumina.

6 Երեմ. ԼԶ. 1, 2, 6, 14, 20, 21։ Եզեկ. Բ. 9. Գ. 2, 3։ Զաք. Ե. 1, 2։

7 Զաք. Ե. 2. ուր յիշի (ըստ բնագրին) մագաղաթ 20 կանգուն յերկայնութիւն եւ 10 ի լայնութիւն։

8 Պլին. բն. պատմ. ԺԳ. 11։

9 Հերոդ. Ե. 58։ Պլին. անդ եւ ցայժմ կան։

10 Պլին. բն. պատմ. Է. 56. եւ ցայժմ գտանին։

11 Երեմ. ԺԷ. 1։ Եսայ. Ը. 1։ Յոբ ԺԹ. 24։ Դիոդ. Լայերտ. Գ. ի Պղատ. Ե։

12 Յայն սակս եւ գրելն առ Յոյնս՝ ասի γράφειν, քերել. նոյն իրի եւ առ երկրորդ թարգմանիչս մեր գտանեմք բազում անգամ փոխանակ γραμματικός անուան եդեալ՝ քերական. տես ի Փիլոն. Թորգ.։

13 Զորս Յոյնք δέλτος (գուան, թեւ) կոչէին եւ զկցեալն՝ δέλτιον δίπτυχον։

14 Parallelismus.

Պիտոյութիւնք եւ արուեստք Ասիացւոց կացին միայն ի մանկութեան: Աքանչելի են մեծապայծառ շինուածք նոցա, եւ ի քանդակագործութեանն նոցա զարմանալի է տեւականութիւնն եւ այնպէս ողորկն գործել ի վերայ հաստաբեստ վիմաց. սակայն չունին ղմիախառն գեղեցկութիւնն եւ ոչ զպատշաճութիւն եւ զհաւասարաչափ չափս ազատամիտն Յունաց: Իսկ եթէ ընդ Յունացն համեմատեսցի ասիական-եբրայական բանաստեղծութիւնն՝ վասն կերպարանաց գեղեցկութեան, փափկութեան եւ մարդկեղէն իմն ազնուականութեան ստուածութեանն՝ պարտ է առնուլ վարդապետ զՅոյնս եւ զՀռոմայեցիս, մանաւանդ վասն ուսանելոյ թէ զինչ գեղեցիկ համառօտութիւնն է, թէ զինչ շքեղութիւնն առանց ուռելոց եւ զինչ վայելուչն առ այսպիսի նկարագիրս. այլ վասն զիմաստութիւն, զՁօրութիւն, զՄեծվայելչութիւնն, զամենայն բարձրականսն եւ ղանհասն Աստուածութեան յանդիման կացուցանելոյ՝ պուէտքն արեւելից եւ առաջինքն ի նոցանէ պուէտք հնոցն կռակարանաց՝ առաւել մեծատուն եւ առատ եւ անսպառ աղբերք են: Յայսպիսի նկարագիրս՝ Սիզիոս Իտալիկոս, Ովիդիոս, Վիրգիլիոս եւ Կզաւդիան՝ համեմատեալ ընդ Յովբայ, Մովսիսի, Եսայեայ եւ Դաւթի են իբրեւ շիթ մի առ համատարած ծովու: Զնոյն նոյնգունակ եւ զփիլիսոփայութենէ որ բովանդակեալ կայր ի կրօնս յայտնութեանն՝ ասելի է:

Սակայն՝ վասն զի այն ամենայն սերտիւ ընդ յայտնութեանն կապեալ էր, նախնի իրի առաւելութիւնք մատենագրութեան Հրէիցն՝ նոցին եւեթ առանձինն ստացուած էր, եւ անհաղորդական ինչ: Ամենայն ազգք Ասիոյ՝ յընտանեկան կեանսն իւրեանց թուլացեալք, կնատեալք, թմբրեալք անկարգ բազմակնութեանն սովորութեամբ, ի քաղաքային կեանսն ի ստրկութիւն եւ յանազատութիւն կործանեալ ընդ տիրապետական իշխանօքն Ասիոյ՝ վաղ մերժեալ էր արուական պնդութիւն եւ ձիգն մտաց եւ մարմնոյ: Այնպէս անցեալ իմն էր ասպարէզ գործելոյ Ասիացւոցն՝ յորժամ անտուստ ամբառնայր ազգ մի յեւրոպացւոց աշխարհին լի ազատ զօրութեամբ երիտասարդութեան, ժիր եւ գործօն ի գիտութեան իւրում եւ յարուեստի եւ ի քաղաքային կեանսն:

## ԺԹ

### Յոյնք (1800 — 340):

### Ա

Բուն հին ժամանակք. Գաղթականութիւնք. Սպարտա եւ Աթէնք. (Պելոպոնէս, Սողոն, Պիսիստրատեանք) — 500:

### 256

Ակնարկ. Չէր մարթ Յունաց պատմութեան ունել առաջին աղբիւրս՝ քան պատմութիւն Ասիացւոց որք յառաջ քան զնոսա ծաղկեցան՝ բազում անգամ ի Յունաց անուն մատենից իւր աղբիւրս, որպէս բազում անգամ նշմարեցաք: Բայց սակայն եւ ոչ գոյ իսկ կարօտութիւն յառաջին աղբիւրսն գիտելոյ՝ յորժամ այնչափ յորդ եւ առատ առհմային մատենագրութիւն Յունաց իցէ՝ մինչեւ կաղմել մասն ինչ մեծ պատմութեանն նոցա: Քանզի ոչ եթէ պատմագիրքն միայն՝ այլ եւ համօրէն իսկ ամբաւ եւ բազմապատիկ մատենագրութիւնն նոցա է աղբիւր պատմութեանն նոցա (տես ի խնդրոյ Գլ. Դ.): Վասն առաջին պատմական ժամանակաց՝ Հերոդոտոս Աղիկառնացի, վասն ժամանակաց Պելոպոնեսեան մարտին՝ Թուկիդիդէս, վասն ժամանակացն որ յետ այնորիկ են՝ Քսենոփոն ա-

առանձինն իմն կարեւոր են, որպէս վասն Մակեդոնական պատմութեան՝ Արիանոս: Ցոյցակ յաճախութեան եւ յայտնութեան տեղեկաց պարս եւ պարզան հա-մարիմք զանց առնել զկոչմանց տեղեաց պատմագրացն ի կարգի պատմութեանն Յունաց, որպէս եւ յետոյ ի Հռովմայեցւոցն, զի մի ծանրաբեռնի զմտաւեանս առնիցեմք:

ՅՈՒՆԱՑ աշխարհ փակեալ կայ յարեւելից եւ ի հարաւոյ Եգէական ծովովն, իսկ յարեւմտից փակէ զնա Յոնիական համա-տարածն. ի հիւսիսոյ բաժանեն զնա լերինք ի Մակեդոնացւոց եւ ի Իլիւրիկեցւոց աշխարհէն: Խորշքն եւ գոգքն եւ նաւահանգիստք որ զծովեզերօք Յունաց աշխարհին կան, եւ որ զնովաւ բազմա-բոլոր կղզիք են՝ յայտ իմն առնեն թէ յորդեալ ջուրցն այնպէս նրբեալ եւ անձկացեալ է ցամաքն. բայց նոքին պատեհ իմն եւ դիւրին գործեն զվաճառականութիւն եւ զերթեւեկ նաւաց: Շարք լերանց եւս յօրինեն ուրեք ուրեք կողմանս կողմանս բաժա-նեալս եւ ամրացեալս յամենայն կուսաց, որովք դիւրաւ իմն ծնա-նին այլ եւ այլ մանր մանր տէրութիւնք ինքնօրէնք առ միմեանս: Երկիրն պտղաբեր է, ոռոգեալ ի գետոց բազմաց, ամոքախառն օդն եւ երկինն պարզ եւ յստակ: Բաժանի Յունաց աշխարհ յերիս.

1. Հիւսիսային Յունաց աշխարհ ունի նահանգս՝ զԵպիրոս եւ զԹեսաղիա: ա. Եպիրոս է երկիր լեռնային՝ բնակեալ յայլ եւ այլ ցեղից եւ առաւել ի Պեղասգացւոց. կայ ի հիւսիսակողման նորա ի վերայ սահմանացն Մակեդոնացւոց՝ Դոդոնա յորում է տեղի պատգամաց Արամազդայ, երեւելի եւ պատուական հնու-թեամբն: բ. Թեսաղիա է երկիր փակեալ յայլ եւ այլ բազմաց Պինդոս լերանց, հանդերձ պտղաբեր հայթայթողմամբքն եւ պա-րարտ արօտիւք երիվարաց: Խաղայ ընդ նա հանդարտիկ Պենէոս գետ՝ յորոյ ափունս մօտ ի թափել նորա ի ծով՝ կայ հոյակապ եւ գեղեցիկ հովիտն Տեմպէ ի մէջ Ողիմպոս եւ Ոսսա լերանց: — Հարաւային տող լերանցն կոչի Ետա յորոց ստորոտն առըն-թեր գոգոյ ծովուն կայ ցամաք ինչ նեղ եւ նուրբ, եւ այն է միայն բնական անցք ի Թեսաղիայ՝ յԵլլադա: Այս իսկ է հոյակապ կապանն կամ դուռնն Թերմոպիւղեաց, երկուց ժամուց գնաց ճանապարհի:

2. Միջին Յունաց աշխարհ կամ Ելլադա՝ յարեւելս մինչեւ ցբարձունս Սունիոնի՝ է գծեալ Եռտա լերամբք, յորոց միջի նշա-նաւոր է յԱտտիկէստանի Պենտեղիկոն լեառն՝ կճովն, Հիւմետ-տոս՝ մեղու իւրով, Լաւրիոն՝ քրէական բովիւք: Այլ եւս բա-զուկ Եռտա լերանց ձգեալ յԵպիրոսէ այսր ընդ արեւելս հարաւոյ յօրինեն զլեռինսն համբաւաւորս ի պաշտաման կրօնիցն Յունաց իբրեւ բնակութիւն Մուսայից՝ զՊառնասոս, զՀեղիկոն եւ զԿի-թերոն: Մեծամեծք քան զամենայն գետսն են՝ Աքեղոոս եւ Կեփիսոս որ ի Կոպայիս ծովակ յանգի. առ քաղաքաւն Աթենա-ցւոց խաղայ Իղիսոս վտակ:

Ելլադա բաժանի ի յաջորդ նահանգս կամ տէրութիւնս. ա. Ատտիկէ՝ (որոյ բնակիչք առ Պեղոպոննեսացւոց կառուցին էին ոգիք 500,000, յորս 40,000 գերիքն էին) էր երկիր բլրաձեւ մեծատուն եւ առատաբեր ձիթենւոյ, թզոյ, մեղու, մարմոյ: Գլխաւոր քաղաք էր Աթէնք, որ էր երից ժամուց գնաց ճանապարհի, եւ ունէր առաջի՝ ի վերայ Մունիքեա ցամաքակղզւոյ՝ քաղաք նաւահանգիստ զՊիրէոս (որ հանգոյն հնագոյն Փալերոն նաւահանգստի կապէր ընդ քաղաքին Աթենացւոց երկուք երկայնաձիգ որմովք): — Եղեւսիս քաղաք՝ տեղի հռչակաւոր՝ ծածուկ խորհրդական պաշտամանց, անդր ի հոյակապ մեհեանն Դեմետրի հանէր նուիրական ճանապարհն՝ որ զարդարեալ էր բազմապատիկ յիշատակարանօք: — Տեղի ճակատու ի դաշտավայրին Մարաթոնայ: Դէմ յանդիման քաղաքին Աթենացւոց ի Սարոնեան ծովուն կայ կղզին բազմամարդի Եգինա երբեմն նաւարկութեամբ եւ ճարտարագործն արուեստիւ, յորում նախ դահեկանն հատաւ, եւ Սաղամին՝ նշանաւոր նաւամարտիւ կառուով: բ. Բէովտիա՝ երկիր պտղաբեր հանդերձ ցորենաշատ դաշտիւքն շուրջ զԿոպայիս ծովակաւ՝ որ ամարայնի գրեթէ ամենեւին ցամաքէր, եւ ի յորդելն՝ զջուրն գետնափոր ջրմղօք հանէին ի ծով: Ի գլուխ 14 բիովտացի քաղաքացն միաբանելոց ի դաշնաւորութիւն կայր քաղաքն եւթնդռնեան Թեբէք՝ Կադմեա դղեկաւ: Բիովտիա էր ասպարէզ բազմաց ի պատերազմացն՝ նմին իրի նշանաւոր են ճակատուք՝ Պղատէա առ Կիթերոն լերամբ (479), Դեղիոն առ Եւրիպեաւ (424), Կորոնէա (447 եւ 394), Դեւտրիք (371), Քերոնէա (338): գ. Փոկիս՝ մեհենազարդ քաղաքաւն Դեղփեաց առ լեռնոտամբն Պառնասեայ, որ կենդրոն իմն Յունաց աշխարհին՝ մանաւանդ թէ համօրէն իսկ երկրի համարեալ՝ պորտ երկրի կոչեցաւ, յորում կայրն շինուածք զարմանալիք եւ աղբեւր Մուսայից սրբիչ եւ քաւիչ ի մեղաց՝ Կաստաղիա անուն: դ. Դորիս եւ ե. Դոկրիս, զ. Ետողիա եւ է. Ակառնանիա: ը. Ընդ Մեգարիս՝ որոյ գլխաւոր քաղաք Մեգարա մօտ իմն ի ծովեզերքն կայ գայ հասանէ ոք ի պարանոցն[1] Կորընթոսի, որ կապէն իսկ զԵլլադա ընդ ցամաքակղզւոյն Պեղոպոննեսեայ:

3. Պեղոպոննեսոս է փակեալ ի չորից կողմանց ի ծովէ արտաքուստ՝ եւ ի ներքուստ ամենեւին լեռնային: Ի միջին վայրի ամբարձեալ կայ Արկադիա փակեալ շուրջանակի բարձրաբերձ լերամբք՝ յորոց գետք սփռին ընդ ամենայն Պեղոպոննեսոս. երբեմն ի նոցանէ են՝ Աղփեոս գետ խաղացեալ ընդ արեւմուտս եւ Եւրոտաս ընդ հարաւ: Արկադիա միջավայր համօրէն կղզւոյն ունէր բնակիչս բիրտս որոց գործ հովուութիւն էր եւ վարձկանութիւն ի գործ պատերազմի: — Իսկ այլ եւս սահմանք տէրութեանց ի Պե-

1 Isthme.

ղոպոնեսոս էին՝ ա. Աքայիա՝ առ Կորնթեան ծոցով ծովուն հանդերձ քաղաքօքն Պատրէ, Հեղիկէ՝ մեհենազարդ Պոսիդոնեայ՝ այլովք ևս 10 քաղաքօք որ ի բուն հին ժամանակին միաբանեալ էին ի դաշնաւորութիւն: Յարևելից նոցա կայր Սիկիոն բուն նախաւոր տեղի Յունացն արուեստից, և երկծովն կամ երկնաւահանգստեան Կորնթոս, ընչաւէտ և շքեղ, երևելի վաճառականութեամբ և արուեստիւ ճարտարութեան (ձուլելոյ պղնձ), և ամրացեալ դղեկաւն անուանելով՝ Ակառն Կորնթոսի: Յարևմտից հարաւոյ կայր փոքր ընկերհաշտութիւնն Փղիասեա՝ Փղիոս քաղաքաւ: բ. Արգողիս՝ գլխաւոր քաղաքաւն Արգոսիւ որոյ դղեակ էր Լարիսա ի ժամանակաց Պեղասգացւոցն, հանդերձ Միւկէնք և Տիրինթոս քաղաքօք համբաւելովք աւերակօք հսկայագործ շինուածոց իբրև նիստ արքունի՝ Ագամեմնոնեայ: գ. Լակոնիա՝ ամենեւին հարաւակողմն Պեղոպոնեսեայ բաժանեալ յերկուս սարաւանդս, երկիր լեռնային, սակաւ ինչ եւեթ դաշտ պտղաբեր կայ ի հովտի գետոյն Եւրոտայ: Քաղաք գլխաւոր է Սպարտա (Լակեդմոն) շինեալ բոլորաձև, 60,000 բնակչօք՝ յորս էին 8—9000 դորիացի քաղաքացիք: դ. Մեսսենիա երկիր պտղաբեր այլ ոչ բազմամարդի, որոյ հին դղեակ էր Իթոմէ, և ունէր քաղաք ծովեզերեայ զՊիւղոս (Նաւարին): ե. Եղիս նոյնպէս երկիր առատաբեր, որ նուիրական իմն համարեալ էր և չմղէր ի նմա մարտ պատերազմի: Երևելի քան զգլխաւոր քաղաքն նորա զԵղիս և զհին նիստն արքունի՝ Պիսա էր, քաղաքն և դաշտավայրն Ողիմպիա առ Աղփէոս գետով ուր ողիմպիական խաղքն լինէին, հանդերձ շքեղ մեհենաւն Արամազդայ յօրինելով դորիացի սեամբք, յորում կայր անդրի նորա յօրինեալ յոսկւոյ և ի փղոսկրէ, գլուխ ճարտարագործ յօրինուածոց քանդակագործութեան:

Նշանաւոր քան զամենայն կղզիսն են յարևելեան ծովեզերսն Եւբիա հանդերձ Երետրիա և Քաղկիս վաճառաշահ քաղաքօք: Քաղկիս զարմանալի ինչ կամրջօք կապէր ընդ Բիովտիայ: Յարևելից հիւսիսոյ կայ հեփեստեանն Լեմնոս նշանաւոր պաշտամամբքն Հեփեստեայ և դարբնովք զինուց, և ի հիւսիսոյ նորա Իմբրոս և Սամոթրակէ, գլխաւոր տեղիք հնոց խորհրդոց Կաբիրեան պաշտամանն: Կրետէ ի հարաւոյ Յունաց աշխարհին քանանացի կամ փիւնիկեցի բնակչօք, որոյ 100 քաղաքք էին առ Հոմերաւ: Կիպրոս ի հարաւոյ Փոքուն Ասիայ, գինեւէտ և առատաբեր անուշահոտ իւղոյ, փայտի և քրէական նիւթոց՝ ասորի և փիւնիկեցի բնակչօք, հռչակաւոր պաշտամամբքն Աստղկան (Աստարտեայ) ի Պափոս:

Բաց ի նոցանէ կան բազում ևս մանր մանր կղզիք, և երկքին կոյտքն կղզեաց՝ կղզիքն յոնիականք Կիկղադայքն, յորս նշանաւոր

է Պետրոս Մեհենադարդ Ապողոնեայ եւ ճարտարագործ բագնին տորա, առ որում հինգ հինգ ամ յամենայն նահանգացն Յունաց եկեալ պանդխտութեամբք՝[1] կատարէին խաղս. եւ Սպորադեանքն յԷգէական ծովուն, յորս կայ Տենեդոս մեծատուն բնակչօք, Նաքսոս գինեւէտ եւ պարարտ, Քիոս՝ առատաբեր գինւոյ, թզոյ եւ այլոց նոյնպիսեաց, եւ յառաջադէմ վաճառականութեամբ եւ արուեստիւ, Կոս՝ անուանի ծիրանի հանդերձիւքն. եւ անպտղաբեր փոքր ապառաժ կղզին Պատմոս որ առ Հռոմայեցւովք էր տեղի աքսորելոյ:

## 257

Սուղ իմն է սկիզբն պատմութեան Յունաց աշխարհին եւ ծածկեալ ընդ քօղով առասպելաց: Առաջին բնակիչք աշխարհին տերին ի Յաւանայ (Յոնիացիք), յԵղիսայ (Եղղենացիք), ի Դոդանիմայ (Դոդոնացիք Եպիրոսի), ի Քետիմայ (բնակիչք կղզեաց եւ ծովեզերեաց), որք են ի զաւակէն Յաբեթայ[2], եւ որպէս ի դէպ է, գաղթեցին անդր ի Փոքուէն Ասիայ: Բուն առաջին հին բնակիչք Յունաց աշխարհին յիշատակին Պեղասգացիքն, որ առաջնորդութեամբ Ինաքոսի եկին յաշխարհն Պեղոպոնեսացւոց յամի իբրեւ 1800, անդ յօրինեալ կազմեցան տէրութիւնքն Արգոսի եւ Սիկիոնի, որ տակաւ տարածեցան ընդ ցամաքակողմն ընդ այն, եւ ընդ Եղլադա անցեալ ձգեցան ի Թեսաղիա եւս եւ յԵպիրոս:

Էին նոքա ժողովուրդ խաղաղասէր, հողագործ. զարուեստից նոցա յայտ առնեն աւերակք հնոց քաղաքաց եւ արքունեաց, Մնացորդք ջրմղաց, թմբից, եւ մեծայաղթ որմոց ի Պեղոպոնեսոս յարինելոց առանց շաղախոյ ի կուտելոյ զմիմեամբք զվէմսն մեծամեծս տաշեալս չորեքկուսի: Էր նոցա պաշտօն բնութեան՝ դիցաբանութեամբ երկրական աստուածոց յորս առաջինք էին Դեմետրէ, Դիոնիսոս եւ Կաբիրք՝ իբրեւ զօրութիւնք աղդեցուցիչք եւ ծնուցիչք ի բնութեան: Ի Դոդոնա էր կաղնի նուիրեալ Զեւսն աստուածոյ. ըղձութիւնն լինէր անդ ոչ բանիւք այլ նշանօք, յորժամ ի շնչել օդոյն ի ծայրս նուիրական կաղնեացն՝ լինէր սօսաւիւն, եւ կամ ի կարկաջելն եւ ի դնդչել աղբերն որ բղխեալ ելանէր առ ստամբ ծառոցն: Դիցաբանութիւն Պեղասգացւոցն եղեւ հիմն դիւցաբանութեան Հելլենացւոց:

Ապա ուրեմն այս Հելլենացիք՝ հաւանութեան իմն է թէ ի կողմանցն Կովկասու եկին վտարանդի ի Փոկիս: Նեղեալ նոցա ի Ջուրց ինչ հեղեղէ (յամի իբրեւ 1550) դիմեցին ի վերայ Պեղասգացւոցն յաշխարհն Թեսաղացւոց, նուաճեցին զնոսա եւ բռնացան ի վերայ նոցա: Ի ցեղից անտի Հելլենացւոցն Եւոլացիք ձգեալ տարածեցան ի կողմանց Թեսաղացւոց յԱկառնանիա, յԷտողիա, ի

1 Θεωρία. 2 Ծնն. ժ. 2, 4, 5:

Փոկիս, ի Լոկրիս, ի Բիովտիա եւ յԱսիա: Դորիացիք նոյնպէս ի կողմանս Թեսաղացւոց՝ նեղեալ մեկնեցան ի Մակեդոնիա եւ ի Կրետէ: Յոնիացիք զրաւեցին կալան զԱտտիկէ եւ զՀիւսիսակողմն Պեղոպոնեսեայ: Աքայեցիք մտին յԱրգոս, ի Լակոնիա եւ ի Մեգարիս:

Յարկադիա եւեթ եւ յԷպիրոս կացին մնացին Պեղասգացիք, այլքն գնացին հատուածեալ կամ յԻտալիա կամ ի Կրետէ, յԱսիա եւ յայլ եւս կղզիս: Իսկ զի առ Գրեկոս Թագաւորաւ այն դիպեցաւ՝ անտի իսկ անուանեցան Գրեկք՝ Յոյնքն:

Զառաջին հրահանգս Հելլենացիք յօտարաց պատմին առեալ: Կեկրոփս մօտ ուրեմն յամի 1550 հանդերձ ընկերօք եկն հատուած ի ներքին Եգիպտոսէ՝ յԱտտիկէ, եւ շինեալ զամուրն Կեկրոպիա՝ արկ հիմն քաղաքին Աթենացւոց: Ի նմին ժամանակի եւ Կադմոս փիւնիկեցի յազգէ՝ զԿադմէա ի Բիովտացւոց աշխարհին շինէր, ուստի եղ եկաց քաղաքն Թեբայեցւոց. նա ուսոյց զարուեստ դպրութեան: Դանաւոս եգիպտացի յազգէ գաղթեաց յԱրգոլիս յամի իբրեւ 1500: Ի Պեղոպեայ որ ի Փռիւգացւոց մերժեալ եկն (յամի իբրեւ 1400)՝ անուանեցաւ Պեղոպոնեսոս՝ երկիրն, եւ տոհմն նորա տիրեաց անդ: Սոքա զգօնացուցին զբնակիչսն, մուծին զպաշտօն դիցն, զմշակութիւն երկրի եւ զբնակութիւն ի քաղաքս:

Դիւցազունքն որպիսիք են Հերակղէս, Պերսեւս, Թեսեւս եւ այլքն էին՝ զերծուցին զաշխարհն յաւազակաց եւ ի գազանաց վայրի, եւ յետոյ ուրեմն վասն արութեանցն իբրեւ կիսադիք առին պատիւ: — Մինովս Ա. Թագաւոր Կրետայ օրէնսդրութեամբն եւս քաջանուն երեւէր (յամի իբրեւ 1400). ի նմին ժամանակի հնչէին եւ երգք պուէտիցն որ հին քան զամենայն պուետսն են, Որփեայ, Լինոսի եւ Մուսէոսի:

Բայց առաւել քան զամենայն դիցապաշտութեանն պաշտօն հանդերձ անթիւ աստուածովքն եւ երկիւղիւն նոցա եւ արտաքին ինչ յօրինուածովք տօնից, երգոց, խաղուց եւ պարուց, եւ խորհուրդք ինչ ծածուկք՝ բազում ինչ նպաստ լինէին՝ տալով Յունաց ածել բարձրագոյն ինչ զմտաւ, եւ պատգամք եւս դիցն նոյնպէս գործէին ազդեցութիւն ի զգայուն սիրտս Յունացն: Բայց չէք գտանել առ նոսա կարգ ինչ քրմութեան որ ի վերայ ամենեցուն զօրացեալ տիրիցէ:

## 258

Ի զարթնուլ ոգւոյ արութեան եւ քաջութեան՝ վաղվաղակի դրդեցան յորդորեցան Յոյնք, եղեն համամիտք եւ համագործք առ ի լինելոյ դիմադարձ արտաքնոցն: Առաջին գործ արութեան նոցա

նաւարկութիւն արգիական նաւորդաց էր (յամի իբրեւ 1260). քաջք եւ առաքինիք հաւանեալ առաջնորդութեամբ Յասոնի Թեսաղացւոյ, մտեալ ի նաւն արգիական՝ նաւարկէին ի Կողքիս առ Եւքսինոս ծովու առնուլ զգեղմն ոսկի (նշանակ ընչաւէտութեան), եւ կրեցին զճանապարհայն բազում ինչ:

Վէան զնոյն նշանաւոր էր տրովական պատերազմն յամի իբրեւ 1200: Պարիս որդի Պրիամայ արքայի Տրովացւոց գտեալ էր ընդունելութիւն ի Մենեղաւոսէ արքայէ Սպարտացւոց, բայց յափշտակեաց նա զՀեղինէ զկին Մենեղաւոսի վասն գեղեցկութեանն. իբրեւ լուան Յոյնք՝ միաբանեցին ամենեքին երթալ խնդրել զվրէժն. իբրեւ 100,000 այր ելեալ ի վերայ 1200 նաւաց դէմ եդեալ փութային ի կողմանս Փոքուն Ասիայ: Բայց չէր դիւրին գործն. տասն ամ տեւեալ բաւէր պաշարումն ամուր քաղաքին Տրովացւոց. ի ժամանակին յայնմիկ յերկուց կողմանց դիւցազունք երեւեցան, որպէս Հեկտորն եւ Էնիաս, Աքիլլէս եւ բարեկամ նորա Պատրոկլոս, Ոդիսեւս արքայ Իթակայ, իմաստուն ծերունին Նեստոր եւ այլք: Ապա ուրեմն նենգութեամբ իմն (տալով պարգեւ քաղաքացեացն երիվար փայտեղէն՝ լի ի ներքուստ սպառազէն վառեալովք) առաւ եւ հրձիգ եղեւ քաղաքն. մեծ մասն բնակչացն կոտորեցաւ ի սուր սուսերի: Բայց եւ քանդիչքն չհասին յաջողութեան. զի կամ չհասին յաշխարհն իւրեանց, կամ յետ երկայնժամանակեան թափառականութեան ապա ուրեմն հասեալ գտին զանէրութիւնս իւրեանց եւ զընտանիս ցրուեալս եւ քայքայեալս եւ կամ օտարացեալս յիւրեանց. յարեան զժտութիւնք, վասն որոց ետուն ճակատ ընդ միմեանս, եւ իբրեւ այն ինչ դարձաւ այսրէն խաղաղութիւնն՝ այլ իմն դէպք եւ պատահարք ի վերայ հասին, որովք Պեղոպոնեսեան նահանգին յայլ իմն կերպարանս փոփոխեցաւ:

Այս ինքն է գաղթականութիւն Դորիացւոցն: Վասնզի Հերակղեանքն որ էին յորդւոցն Հերակլեայ՝ իբրեւ իրաւամբք իմն պահանջէին տիրել Պեղոպոնեսացւոց, եւ դաշնաւոր լեալ նոցա ընդ Դորիացւոց որ ի Թեսաղիա էին՝ կամէին այնուհետեւ կացուցանել զիրաւունս իւրեանց հակառակ Պեղոպիդեանցն. նմին իրի յամի իբրեւ 1100 մտին զինու ի Պեղոպոնեսոս եւ գրեթէ զամենայն իսկ կողմանսն վանեալ վկանդեալ առնուին: Տակաւ առին ի բուռն զթագաւորութիւնս Արգիացւոց, Մեսսենիացւոց, Լակոնիացւոց, Միկինեացւոց, Կորնթացւոց եւ Էլիացւոց: Աքայեցիքն ի նեղ անկեալ փախեան ի ծովեզերս հիւսիոյ եւ արկին հիմն տէրութեանն Աքայիայ: Իսկ Իոնիացիքն զառաջինն ի Թրակիա փախեան, ապա բնակեցան առ ծովեզերբն Փոքուն Ասիայ: Եւ մասն մի եւս Յոնիացւոց որ յԱտտիկէ ուրեմն փախեալ էին՝ չոքան նոյնպէս ի Փոքրն Ասիա յամի իբրեւ 1040: Ապա հասին անդր եւ Դորիացիքն որոց զՄեգարիս եւս գրաւեալ

կալեալ էր. այլքն չոքան վտարանդիք ի Կիպրոս եւ ի Հռոդոս կղզի յամի իբրեւ 1000։

Մինչեւ ցայժմ ի տէրութեան Յունաց ժառանգութեամբ որդի ի հօրէ գլխաւորք ցեղից, այս ինքն թագաւորք տիրէին, եւ էին նոքա զօրաւորք ի պատերազմի եւ դատաւորք ի խաղաղութեան. բայց առաջինք եւեթ ի մէջ ազնուականաց էին եւ ոչ եթէ տեարք, եւ չափաւորին հարկս սահմանեալս. իշխանութիւն նոցա բազում իւիք զքաջութենէ եւ զիմաստութենէ նոցա կայր կախեալ։ Ապա սակաւ սակաւ յամենայն իսկ սահմանս Յունաց բարձաւ թագաւորութիւնն (1100—900), եւ այնուհետեւ գրեթէ մի մի ի քաղաքաց էր տէրութիւն մի՝ որում առաջնորդէին ամենք ի քաղաքացեաց փոխանակաւ։ (Մասն մի պատմութեանցս ի ժամանակս առասպելացն անկանի. բայց զժամանակն ճշգրիտ որոշել դժուարին է)։

## 259

Սոյնպէս ի ժամանակէ աստի յայսմանէ (1100) սկիզբն լինէր բազմատարած գաղթականութեանցն Յունաց։

1. Եւոլեացիք, Յոնիացիք եւ Դորիացիք գաղթեցին ընդ երկայնութիւն արեւմտեան ծովեզերաց փոքուն Ասիոյ։ Եւոլեացիք, որոց գլխաւոր գաղթականութիւն էր ի Լեսբոս կղզւոջ Միտիլենէ քաղաքաւ՝ ստացան արկին հինգ այլոց եւս երկոտասան քաղաքաց (ի Միւսիա), յորս երեւելի քան զամենեսին Զմիւռնիա էր. թուի թէ եւ սոքա կապեալ էին ի մի դաշնաւորութիւն։

Յոնիացւոցն գաղթականութիւնք ի հարաւոյ նոցա եւս իմն երեւելի էին՝ նոյնպէս երկոտասան թուով, որք խառնեալ էին ի մի դաշնաւորութիւն. յորս նշանաւորք են Միլետոս՝ վաճառաշահ եւ նաւատորմաւոր, Եփեսոս՝ մեհենաւորն Արտեմեայ, Կողոփոն՝ վաճառաշահ նաւութիւն իւրով. Զմիւռնիա եւս Եւոլացւոցն՝ յարեցաւ ի նոսա, եւ գրաւեալ կալան զՍամոս եւ զՔիոս։ Մեհեանն Պոսիդոնեայ ի Միւկալէ՝ էր մեհեան դաշնաւորութեանն, ուր զհասարակաց տօն Պանիոնիոնեան[1] կատարէին, եւ խորհէին խորհուրդս։

Իսկ Դորիացւոցն գաղթականութիւնք ի խոնարհ քան զնոսա ի հարաւոյ՝ էին բաց նմին օրինակի վեց Դորիացի քաղաքք գաղթականաց միաւորեալք դաշնաւորութեամբ, յորս նշանաւորք Հալիկառնասոս եւ Կնիդոս էին, եւ բնակեցին եւս ի Հռոդոս եւ ի Կոս կղզիսն։ Մեհեան դաշնաւորութեան նոցա էր մեհեանն Ապողոնեայ ի վերայ ծովեզերացն ի Կնիդոս։

2. Ի Միլետոսէ ելին քաղաքք գաղթականաց իբրեւ 80՝ մեծաւ մասամբ առ Պոնտոսիւ եւ Եւքսինոս ծովու (ի վէջ

[1] Πανιώνιον.

անդ 800 եւ 600 ամաց)․ Աբիւդոս, Լամփսակոս, Պրիապոս (գլխաւոր տեղի պաշտամանցն Պրիապայ), Կիւզիկոս, Պերինթոս, Սինոպէ, Տրապեզունտ, Տանայիս առ անուանակից գետովն, Ողբիա, Ոդեսոս եւ այլք, որք առնէին վաճառաշահ մաշկովք, մորթովք, ասուով, քրէական նիւթովք զոր առնուին յազգաց ազգաց Սկիւթացւոց, եւ ձկամբք յաղեալովք։ Նուաղ ինչ նպաստ լինէին ի բարոյս եւ ի կրթութիւն բնակաց կողմանցն այնոցիկ, բայց մեծ մասն նոցա յետ ժամանակի ինչ ի վերայ անցանելոյ ի յղփութենէ անտի ի բարեկեցութիւն, ի զեղխութիւն եւ ի թմբրութիւն հասանն։ — Ըստ Եգէական ծովուն ի Թրակիա եւ ի Մակեդոնիա ի քաղաքէն Աթենացւոց եւ ի Կորնթոսէ եկին գաղթականութիւնքն Աբդերա, Քաղկիս, Ողինթոս, եւ Պոտիդէա։

3. Յետոյ (ի մէջ 750 եւ 650 ամացն) եղեն կացին գաղթականութիւնք յայլ եւ այլ ցեղից ի ներքին Իտալիա, որ անուանեալ կոչեցաւ Մեծ Յունաստան, որպէս Տարաս (Տարենտոն, ի Լակեդմոնացւոց), եւ ի սմանէ Հերակղէա եւ Բրունդուսիոն, Սիբարիս հռչակաւոր մեծութեամբն եւ բարեկեցութեամբ բնակչացն, Կրոտոն՝ նշանաւոր անպաճոյճ կենօք բնակչացն յորոց մէջ Պիւթագորաս հաստատեալ էր առաջնորդութիւն ինչ դաշնաւորութեան հանդերձ պարտուք՝ ունելոյ զամենայն ինչ հասարակաց, Կումիք ի Կամպանիա անուանի պատգամօք Սիբիլեայ, հին քան զամենայն գաղթականութիւնս ներքին Իտալիայ, ուստի եւ Պարթենոպէ (Նէապոլիս)։

Ի Սիկիլիացւոց աշխարհին՝ Մեսսինա էր քաղաք գաղթականութեան դորիացի Մեսսենիացւոցն․ այլ առաւել քան զամենայն եղեն երեւելի Սիրակուսք բաժանեալ ի հինգ մասունս երկուք նաւահանգստօք, գաղթականութիւն ի Կորնթացւոց, նշանաւոր՝ վաճառականութեամբ, նաւական զօրութեամբ եւ ընչաւէտութեամբ։ (Զպատմութիւն Սիրակուսացւոցն ընդ Կարքեդոնացւոցն պատմութեան՝ տեսցուք խառն ընդ իրս Հռոմայեցւոցն։)

Ի Յոնիացւոց (Փոկիացւոց) էր եւ գաղթականութիւնն Մասսիլիայ ի հարաւակողման Գաղղիայ, որ ձիթաստանեօքն եւ այգեստանեօք ծաղկեցուցեալ զերկիրն՝ առնէր վաճառաշահ ընդարձակ․ որպէս ի Սպանիացւոց աշխարհին Սագունտոն (ի Զակիւնթոսէ) երեւելի էր վաճառականութեամբ։ — Էր ի Դորիացւոց գաղթականութիւնն մեծ՝ Կիւրենէ յԱփրիկեցւոց աշխարհին, որ առնէր վաճառաշահ մեծ ընդ ցամաք եւ ընդ ծով ցորենով, գինւով, իւղով, քրքմով եւ ուպանաւ[1]։

Մեծ մասն գաղթականութեանցս այսոցիկ էին ինքնօրէնք աղեկամբ, այլ առ սակաւ սակաւ նուաճեցան ընդ հզօրագոյն տէրութեամբք։

1 Σίλφιον.

**260**

Սակայն Յոյնք յետ այսչափ ի միմեանց անջատելոյ եւ բաժանելոյ՝ միշտ իսկ զանձինս անբաժին իմն ժողովուրդ համարէին, եւ բազմապատիկ յօրինուածութիւնքն սնուցիչ եւ տածիչ լինէին այնպիսի հաստատակաց հայրենատէր մտաց, եւ գործէին ի միջի նոցա միութիւն եւ խափանէին զչարիսն որ ի բազում բաժանմանէ ի դէպ էր թէ ծնանէին։

1. Թէպէտ եւ լեզու նոցա յայլ եւ այլ բարբառս բաժանեալ էր (յատտիկեցի, ի յոնիացի, յեւոլացի), սակայն եւ այնպէս բաւական էին եւ լեզուովն իւրեանց՝ մի ազգ զանձինս ճանաչել. ամենայն իսկ ցեղք նոցա, եւ տոհմային բանաստեղծութիւն նոցա նովին լեզուաւ եւեթ վարէին։ Առաջին յիշատակարանք այսր արուեստի նոցա՝ երգքն Հոմերայ (1000) եւ պատմութիւն պաշարման Տրովայ (Իղիականն) որպէս եւ անցք Ոդիսեայ (Ոդիսականն) էին հասարակաց իմն ստացուած ամենայն համօրէն Հելլենացւոցն։

2. Խաղք հրապարակաւ՝ առ որս ամբոխ մեծ ժողովէին յամենայն իսկ աշխարհէն Յունաց, որպիսիք Փիւթեան, Իսթմեան, Նեմէական, Ողիմպական խաղքն էին։ Այլ անուանի եւ նշանաւոր քան զամենեսին եղեն Ողիմպիականքն՝ որ կարգեցան յԻփիտոսէ եղիացւոյ (յամի իբրեւ 888) եւ ապա յարդարեալ յօրինեցան։ Կատարէին խաղքն Ողիմպիականք ի չորրորդ չորրորդ ամի յՈղոմպիա, եւ յայն սակս թուականութիւն եւս այն համարեցաւ սկիզբն առեալ յամէ 776 յառաջ քան զՔր.։ Խաղքն կամ մրցութիւնք էին արշաւեցուցանել կառս (ի ձիարձակարանին), նետընկէց տէգընկէց լինել, ընկենուլ սկաւառակս, վազք, ընթանալ (ի ստադին կամ յասպարիզին՝ որ էր 600 ոտն), շրջանակել, կռփամարտիկ կռիւ եւ այլ եւս նոյնպիսիք։ Վարձք յաղթութեան էին պսակ յատոյ ձիթենեաց։ Յետոյ բերէին անդր հրապարակաւ զգործս վաստակոց իւրեանց արուեստագէտք եւ պուէտք եւ ճարտարախօսք եւ պատմագիրք (որպէս Հերոդոտոս զառաջին գիրս իւր) առնուլ փոխարէն պարծանս։

Ի դիմել անդր խուռնընթաց առհասարակ մարդկանն յամենայն կողմանց Յունաց աշխարհին ի հանդէս խաղուցն՝ կապէին իմն անձկագոյնս այլ եւ այլ ցեղք Յունաց ընդ միմեանս։

3. Ամփիկտիոնեան դաշնաւորութիւնն։ Ժողով ինչ էր այն որ կայր յերկու երկու պատգամաւորաց առաքելոց յ12 ցեղէց, որք երկիցս ի տարւոջ ի Դեղփիս կամ ի Թերմոպիւղիս գումարէին տեսանել զիրս յօրինուածութեանց կրօնից եւ զգժտութիւնս ի մէջ ցեղէց ցեղէց խաղաղութեամբ լուծանել, զյանցանս ինչ դատել եւ պատժել՝ եւ զինուք եւս եթէ այնպէս պէտք լինիցին։

4. Տեղիք պատգամաց։ Բազում էին տեղիք պատգամաց, այլ երեւելի մանաւանդ եկաց որ ի Դեղփիան առ Պառնասաւ էր։ Յամենայն երեւելի գործս՝ ամենայն աշխարհն Յունաց ընթանայր պատարագօք հարցանել խորհուրդ, եւ Փիւթիա կին քուրմ յոսկի երեքոտանւոյն փրփրալով տայր պատգամ պատասխանւոյ՝ մթին ինչ կամ երկդիմի բանիւք. բազում անգամ կաշառառեկ եւս լինէր։ — Հինգ գլխաւոր քուրմք էին անդ ընտրութեամբ ի պաշտաման, եւ այլ եւս բազմութիւն սպասաւորաց ի սպասաւորութիւն. էին նոցա անդք եւ ագարակք զոր գործէին գերիք կամ վարձկանք։ Պատարագօք եւ ձօնեօք յաճախեալ իմն էր մեծութիւնն եւ ընչաւէտութիւն։ Բուն մեհեանն էր ի տեղւոջ ուրեք փակելոյ որմովք յամենայն կողմանց, եւ ի ներքին կողմանս մեհենին՝ ոսկի անդրի Ապողոնեայ եւ յետոյ նորա փոսն՝ ուստի ելանէր գոլորշի ինչ որ ի կերպարանս մոլեգնութեան զվհուկ կինն հանէր։

5. Ընդ ամենայն յօրինուածութեանցս այսոցիկ գիրկընդխառն էն հասարակաց իմն կրօնք նոցա, զորմէ այլուր ընդ այլովք իմն հայեցուածիւ ճառեցաւ։ Աստուածք Յունացն երեւէին իբրեւ անդամք միոյ միայնոյ տան կամ ընտանեաց՝ մարդկեղէն առաւելութեամբք եւ տկարութեամբք, միայն բարձրագոյն ինչ իշխանութիւն եւ զօրութիւն ունելով։

Սկիզբն եւ գլուխ ամենայնի էր Ուրանոս, երկին, աստուած նախաւոր. նորին որդի Կռոնոս, ժամանակ, կլանէր սպառէր զորդիսն իւր։ Զեւս՝ որ ապրեցաւ ի ձեռաց նորա, եղեւ աստուած վերագոյն՝ աստուածոց եւ մարդկան, յետ զՏիտանեանսն եւ զՀսկայսն պատերազմաւ հարկանելոյ եւ տալոյ եղբարցն՝ Պղուտոնի կամ Հադեսայ զսանդարամետս, եւ Պոսիդոնի՝ զծով։ Ունէր նա յաստուածոց կանայս՝

Ա. Հերա՝ տիկին երկնից եւ ամենայն իսկ աստուածոց, ի սմանէ ուստերք՝

1. Արէս՝ աստուած պատերազմաց, կագոյ եւ կռուոյ.
2. Հեփեստոս՝ աստուած հրոյ եւ դարբնութեան։

Բ. Դիոնէ՝ յորմէ Ափրոդիտէ կամ Աստղիկ՝ աստուած գեղոյ եւ սիրոյ։

Գ. Մետիս՝ խորհրդականութիւն. ի սմանէ դուստր՝
Պաղղաս Աթենաս՝ աստուած արուեստից եւ գիտութեանց, քաղաքային յօրինուածոց, նմին իրի եւ պատկեր իսկ նորա (Պաղղադիոն) կայր ի բազումս ի քաղաքացն Յունաց. սաղաւարտեալ՝ վահան (Եգիդ) եւ նիզակ ի ձեռին. նուիրական էր նմա՝ ձիթենի, բու եւ աքաղաղ (նշանակք արթնութեան ուսմանց)։

Դ. Լետոյ կամ Լատոնա՝ գիշեր լուսաւորեալ աստեղօք. ի սմանէ եղեն երկուորեակք՝

1. Ապողոն՝ արեգակն, աստուած ըղձութեան (ի Դեղփիս), եւ երաժշտութեան, նմին իրի եւ առաջնորդ Մուսայից եւ աստուած աղեղնաւորութեան.
2. Արտեմիս՝ լուսին, աստուած աղեղնաւորութեան եւ որսոյ։

Ե. Թեմիս՝ իրաւունք, կապեալ աչօք, կշիռք եւ սուսեր ի ձեռս. եւ ի սմանէ դստերքն՝

1. Հովրայք՝ Դիկէ, Եւնոմիա, Իրենէ՝ արդարութիւն, կարգաւորութիւն, խաղաղութիւն.

2. Պարկք կամ Միւրայք՝ Կղոթոյ, Ղաքեսիս, Ատրոպոս. մին զիլն ունէր, միւսն յիլոյ անտի զթելն գործէր կարճ կամ երկայն, հարթ կամ դերբուկ, երրորդն հատանէր զթելն. Նշանակ ճակատագրի կենաց:

Զ. Մնեմոսինէ՝ ուշ յիշատակի, եւ դստերք ի նմանէ 9 Մուսայք՝

1. Կղիոյ՝ պատմութեան, մատեան գալարեալ եւ բացեալ ի ձեռին.

2. Եւտերպէ՝ երաժշտութեան, մի կամ երկու սրինգ ի ձեռին.

3. Մելպոմենէ՝ ողբերգութեան, քող արկեալ, շամփուր եւ դիմակ ողբերգուաց ի ձեռին, եւ օդք բարձրագոյնք յոտս.

4. Թաղիա՝ կատակերգութեան, ցուպ հովուաց եւ դիմակ կատակերգուաց ի ձեռին իւրում.

5. Տերփսիքորէ, կաքաւոյ, յարուցեալ յոտս՝ կաքաւաձեւ, քնար ի ձեռին.

6. Երատոյ՝ երգոց սիրոյ, տաւիղ եւ կնտնտոց փղոսկրեայ ի ձեռին.

7. Կալղիոպէ՝ վիպասանութեան. գրիչ, մագաղաթ եւ փող եւս ի ձեռին.

8. Պոլիհիւմնիա՝ ճարտարխօսութեան, զգեցեալ հանդերձ լայն, մատեան գալարեալ ի ձեռին. եւ ցուցիչ մատն ի բերանի իւրում.

9. Ուրանիա՝ աստեղագիտութեան, ի ձախում գունդ՝ զոր աջովն ցուցանէ, զաչսն ամբարձեալ յերկինս:

Այս են ողիմպական դիքն:

Իսկ երկրական դիքն որ առանձինն իմն Պեղասգացւոց էին՝ են.

1. Հադէս (Պղուտոն) աստուած սանդարամետաց եւ մեռելոց, եւ ընչաւետութեան իբրեւ տէր բովուց երկրի.

2. Հերմէս՝ զառաջինն աստուած մշակութեան եւ հովուութեան, այլ մանաւանդ՝ պատգամաւոր աստուածոց եւ մարդկան, աստուած տուրեւառիկ վաճառաց եւ լեզուաց կարեւորաց ի նոյն եւ մեկնութեան[1]. Նա տանէր զոգիսն ի սանդարամետս. թեւք յոտն եւ ի ձեռին գաւազան ոսկի՝ զորով գալարեալ կային օձք երկու[2]:

3. Դիոնիսոս (Բակքոս)՝ նշանակիչ զօրութեան երկրի զորթացելոյ. շահապետ այգեստանեաց.

4. Դեմետրէ՝ նշանակիչ բուսական ծննդականութեան երկրի որ զարմտիսն ածէ յառաջ եւ պտղաբեր զերկիր գործէ, աստուած մշակութեան, մայր Տրիպտողեմեայ՝ որ մշակութեան օրինացն եղեւ օրէնսդիր. ընդունի նա եւ զոգիս մեռելոցն ի գոգ իւր:

Ի պաշտամունսն Դիոնիսեայ եւ Դեմետրի խառն էին խորհուրդք ծածուկք: Նշանաւոր էին ի համօրէն Յունաց աշխարհին ամ ըստ ամէ տօնք Թեսմոփորեանք, այս ինքն տօն օրէնսդրութեան[3] Տրիպտողեմեայ, ի պատիւ մեծարանաց Դեմետրեայ, յորս կանայք առնականայք երթային յԵղեւսիս ընդ մեհենական ճանապարհն: — Նոյնպէս երեւելի էին մեծ եւ փոքր Եղեւսինեան խորհուրդքն յԱթէնս. միջամուխք խորհրդոցն համարեալ էին յստակագոյն խորհուրդս զաստուածութենէ, զառաքինութենէ եւ զանմահ կենաց ունել: Ինն աւուրք էին մեծի Եղեւսինեան

1 Ἑρμηνεία. 2 Κηρύκειον, Caduceus. 3 Θεσμοφόρια.

խորհրդոցն տօնին՝ յորս միջամտելքն առնէին մկրտութիւն ձեռաց ի ջուր նուիրական, ապա ի ջուրս ծովու, յետոյ զոհս ի պատիւ Պերսեփոնեայ, ապա լուցումն ջահուց, ապա տանէին զպատկեր Դիոնիսեայ բազմամբոխ յԵղեւսիս, եւ յետ միջամտելոյ խորհրդոցն լինելոյ՝ զոր երդմամբ խոստանային չհանել ի վեր՝ դարձուցանէին զայն յԱթէնս, ապա առնէին նորոգ միջամտելս խորհրդոց զայնոսիկ որ խնդրեալ էին յառաջնում աւուրն. յիններորդումն աւուր մատուցանէին նուէրս ընպելեաց՝ քուրմքն որք առաջնորդքն լինեալ էին ամենայնի ըստ չորից գլխաւոր կարգաց իւրեանց՝ Նուիրացոյցն [1] իբրեւ քրմապետ, Ջահակալն [2], Նուիրաքարոզն [3] եւ Սպասաւորն բագնին [4]:

Երկրական դիք Պեղասգացւոցն են եւ Կաբիրքն՝ իբրեւ առանձինն նշանակիչք այլ եւ այլ զօրութեանց երկրի:

Բաց ի սոցանէ ամենեցունց՝ կիսադից իմն դիւցազանց ցեղ սերեալ յԱրամազդայ՝ է իբրեւ շղթայ հաղորդութեան ի մէջ աստուածոցն եւ մարդկան. որպէս անցք իմն եւ հաղորդութիւն ի մէջ մարդկան եւ անասնոցն համարեալ էր միւս եւս խոնարհագոյն ցեղն աստուածոց՝ Սատիւրք եւ Փաւնայք, որք զմարդկան եւ զանասնոց սեպհականութիւնս միանգամայն ունէին: Հանդերձ սոքիմբք եւ ամենայն անշնչաւորն բնութիւն՝ անտառք եւ լերինք, դաշտք եւ արօտք, գետք եւ ծովակք ունէին բնակեալ յիւրեանս աստուածութիւնս ինչ խոնարհագոյնս՝ որ առհասարակ անուանեալ կոչէին Նիւմփայք:

## 261

Ի բազում ուրոյն տէրութեանց Յունաց աշխարհին որոց պատմութիւն չէ ինչ այնպէս պիտանացու եւ բազում ուրեք անյայտ, վաղ իսկ երկու եւեթ մեծացեալ՝ եղեն նշանաւոր, մինչեւ պատմութեան համօրէն աշխարհին կալեալ ի նոցա պատմութիւնն, որք եւ այլ եւ այլ բարս եւ նկարագիրս ունէին, մին իբրեւ դորիացի եւ միւսն իբրեւ յոնիացի:

Մին յերկուց անտի էր Սպարտա կամ Լակեդմոն առ Եւրոտաս գետով ի Պեղոպոնեսոս: Աստ միայն մնաց Թագաւորութիւնն, բայց բաժանեալ էր ի մէջ երկուց ժառանգական Թագաւորաց (Պրոկղիդեանց եւ Եգիդեանց) անդստին ի ժամանակէ զի տիրեցին Հերակլեանք՝ Լակոնացւոցն. անդ յօրինեցաւ նախ առաջին հաստատուն օրէնսդրութիւն:

Լիկուրգոս եղբայր վախճանելոյ Թագաւորին Պողիդեկտայ, որպէս պատմեն, չառ յանձն զԹագաւորութիւնն մեծանձնութեամբ եւ ոչ հաւանեցաւ առնուլ կնութեան զկին նորա այրի, եւ ջանայր լինել պաշտպան իրաւանց եղբօրորդւոյ իւրոյ Քարիղայոսի որ նորածին մանուկ էր՝ յերեսաց մօրն նորա. բայց դմին երի իսկ վասն նենգաւոր խորհրդոց կնոջն ստիպեալ ել գնաց վտարանդի ի հայրենի աշխարհէն: Իբրեւ տասն ամք ի վերայ անցանէին՝ դարձաւ այսրէն յետս, քանզի կոչեցին զնա քաղաքացիքն

1 Ἱεροφάντης. 2 Δᾳδοῦχος. 3 Ἱεροκήρυξ. 4 Ἐπιβώμιος.

վասն աղմկի իրիք որ ի տէրութեանն դիպեցաւ։ Լիկուրգոս բա-զում ինչ տեղեկութիւն եւ փորձ իրաց ուսեալ էր մանաւանդ ի Կրետէ, նմին իրի ձեռն արկ ի գործ ինչ մեծ, այս ինքն զերկիրս Սպարտիացւոց փոխել յազգ ազատ եւ հզօր եւ կիրթ ի ձեռն օրինաց (յամի իբրեւ 880), բայց նախ հարցեալ իմացաւ թէ հաւան իմն է ընդ այն դեղփեան պատգամն, զի այնպէս յապա-հովս իցէ վասն ընդունելութեանն։

Առաջնորդութիւնն յանձն եղեւ ծերակուտի, այս ինքն 28 խորհրդականաց կամ ծերոց (զոնեայ 60ամենից) եւ երկուց թա-գաւորացն, ուստի ընդ ամենայն էին ծերք երեսուն. յետոյ յա-ւելան եւ հինգ Պարետք վասն պահելոյ զհաւասարակշիռն կշեռս ի մէջ խորհրդականացն եւ թագաւորացն, որոց յետոյ իշխանու-թիւն էր եւ զթագաւորսն եւս կոչել ի պատասխանատուութիւն։ Թագաւորացն այսչափ եւեթ իշխանութիւն էր՝ սպարապետութիւն եւ քրմապետութիւն։ Ամենայն վճիռք մեծամեծք ի ծերակուտէն յօրինէին, եւ ապա ելանէին առաջի ժողովոց ժողովրդեանն՝ որոց եւ զծերսն իսկ ընտրեալ էր։

Սոյն զանկարգութիւնս որ ի հարստահարութենէ մեծա-տանցն եւ ի կարօտութենէ տնանկաց լինէին՝ ամենեւին արմատա-քի խլելոյ՝ կարգեաց Լիկուրգոս հաւասար իմն բաշխումն արարոց. ամենայն երկիր մշակութեան բաժանեցաւ յ39,000 բաժինս, մի մի բաժին յ82 օրավար գետին։ Որ բուն Սպարտիացիքն էին՝ ա-ռին 9000, իսկ հին բնակիչք Լակոնիայ որ Պերիիկացիքն կոչէին՝ 30,000 բաժին։ Առաջինքն տային վարել զկալուածս իւրեանց Հեղոտացն (գերեաց)։ Որ ի շէնսն բնակէին, տային եւ նոքա հարկս եւ գային ի պատերազմ. ինքեանք գործէին զերկիր իւրեանց եւ առնէին վաճառականութիւն։ Չէր ումեք համարձակ առնուլ գնոց կամ ժառանգել մեւս եւս երկրորդ կալուած։ Մերժեցան դահեկանք ոսկի եւ արծաթի եւ եդան ընդ այնր պղնձիք. չէր մարթ իրս ինչ շքոյ եւ բարեկեցութեան մուծանել ի Սպարտա։

Ի ժամադիր ժամու հրապարակաւ ուտէին արք միաբանու-թեամբ ի մեծամեծ սեղանոց՝[1] յորս գլխաւոր ինչ էր թան ինչ թթու եւ բաժակ մի գինի, եւ վասն ծախուցն տայր իւրաքանչիւր ոք ամիս յամսոյ հանգանակս։ Սպարտացի այր չիշխէր առնել մշա-կութիւն կամ ձեռագործ, զի զայն ամենայն գերեաց անկ էր վճարել, եւ յայն սակս իսկ անհնարին խստութեամբ ունէին զնո-սա։ Գործ առն ազատի այն էր՝ յորս երէոց ելանել եւ առնել կրթութիւն պատերազմի։ Այսպէս յօրինեցաւ ազգ ինչ դիւցա-զանց. քանզի ամենայն իսկ կրթութիւն ուստերաց եւ դստերաց յայն իմն հայէր, եւ մանկտին առաւել տէրութեան էր քան հօրն եւ մօրն, եւ կրթութիւն նոցա որ ի ձեռն հրապարակաւ կարգե-

1 Συσσιτία.

լոյն զարգացեալ կատարէր՝ էր կրթութիւն մարմնոյ մրցութեանց եւ խաղամբերութեանց. իսկ կրթութիւն մտաց նոցա էր ի խորամանկութիւն՝ նմին իրի հռչակաւոր իսկ էր նենգութիւն Սպարտացւոցն, որպէս եւ հզօր համառօտութիւն բանից նոցա, ուր ցնորք նոցա եւ հանճար չառնոյին հրահանգս: — Ամենեքին իսկ ի քաղաքի իբրեւ ի բանակի կէին, ուրախութեան ժամանակ էր ժամանակն պատերազմի՝ յոր երթային իսկ սրնգահար առաջի, զգեցեալ ամղան ծիրանի, եւ յառաջ քան զճակատն զարդարէին իբրեւ ի տօնական աւուր: Իբրեւ հան Լիկուրգոս զգործն ի գլուխ՝ երդմնեցոյց զգլխաւորս ժողովրդեանն պահել զօրէնս նորա մինչեւ ցդարձ գալստեան նորա այսրէն. ապա ել գնաց ի Սպարտացւոց աշխարհէն եւ ոչ ոք ուրեք գիտաց թէ որպէս կամ ուր վախճանեցաւ:

Զափ զօրութեան կրթութեան Սպարտացւոցն յայտնեցաւ նախ ի սաստիկ պատերազմունսն որ գրգռեցան նոցա ընդ Մեսսենիացւոց՝ վասն անիրաւութեանց երկուց կողմանցն: Առաջին պատերազմն յերկարէր 20 ամ (742—722), եւ լինէր ղրաւ յետ ծանր ծանր կռուոց՝ առումն Իթոմեայ որ էր դղեակ ամուր ի բարձրաւանդակի, եւ յետ այնորիկ եղեն Մեսսենիացիքն հարկատու Սպարտացւոցն: — Բայց յետ 40 ամաց միւսանգամ ի մարտ պատերազմի գրգռէին Մեսսենիացիքն (683—668), եւ կռուէին յուսահատութեամբ. բայց իբրեւ յետ 11ամեայ պաշարմանն անկաւ ամուրն նոցա Իրա՝ այնուհետեւ բարձաւ ազատութիւն Մեսսենիացւոցն: Մեսսենիացիք եղեն Հեղոտք. մասն մի նոցա ել գնաց ի Սիկիլիա եւ բնակեցան ի Զանկղէ՝ որ կից ի նոցա անուն կոչեցաւ Մեսսնա:

Յաջողութեամբ այսց պատերազմաց եւ այլոց եւս զոր ետուն ընդ դրացեաց (ընդ Արկադացւոց եւ Արգիացւոց) Սպարտացիքն՝ առին նոքա զյառաջահաս պատիւ Սպարապետութեան[1] ի մէջ դորիական ազգութեանցն. քանզի դաշնաւորութիւն իսկ էր համօրէն Պեղոպոննեսոս ընդ զօրավարութեամբ Սպարտացւոց՝ ի բաց հանեալ զԱրգիացիս եւ զԱքայեցիս:

## 262

Ընտանեգոյնս եւ զգօնագոյնս քան զսոսա կարգեալ յօրինեցան իւրք քաղաքքն Աթենացւոց: Ըստ Կեկրոպս (յամէ 1550) մեղմացոյց զառաջին վայրենութիւնն: Թեսեւս (իբրեւ 1250) դիւցազն մեծ եւ օրէնսդիր՝ արժանի եղեւ անուանելոյ երկրորդ հիմնիչ իշխանութեան Աթենացւոցն. բարձ նա զհին բաժանումն Ատտիկէացւոց յերկոտասան ժողովուրդս եւ զԱթէնս եդ մայր

1 Ἡγεμονία.

քաղաքաց համօրէն Ատտիկեցւոց աշխարհին: Առ իշխանութեամբն Կոդրոսի յարձակեցան Հերակղեանք կամ Դորիացիք յԱտտիկէ եւս: Պատմեն թէ պատգամ ի դիցն եղեւ թէ այն ազգ յաղթագոյն առցէ զյաղթութիւնն որոյ թագաւոր անկցի ի ճակատուն: Կոդրոս ած զմտաւ դնել զանձն ի վերայ ժողովրդեան իւրոյ: Ծպ-տեալ եմուտ ի ճգնական տեղի պատերազմին եւ անդէն անկաւ. իսրեւ ազդ լինէր Հերակղեանցն թէ Կոդրոս անկաւ, զահի հարեալ գնացին ի բաց:

Այնչափ մեծարոյ եւ պատուական համարեցան Աթենացիք զգործ թագաւորին իւրեանց՝ զի բարձին զպատիւ թագաւորութեան, եւ զՄեդոն զորդի որդին Կոդրեայ կացուցին իշխան ժառանգութեամբ (յամէ իբրեւ 1070): Յետ երեքտասան ցեղանս իշխանաց՝ սահմանեցաւ ժամանակ իշխանութեան նոցա 10 ամ (յամի իբրեւ 750), եւ յետոյ միանգամայն ի նմին ժամանակի կացին 9 իշխանք տարեւորք ընտրութեամբք (յամի իբրեւ 680), զի դիւրա- առնուցուն զառաջս անկարգութեան յորժամ զեղծիցին իշխանութեամբն:

Բայց եւ աստ եւս (որպէս ի Սպարտա) Ազնուականացն տէրութեամբ աղքատացաւ ժողովուրդն եւ բազում չարիք մեծամեծք: Վասն զորոյ ի միջոյ բառնալոյ կամէին օրէնս գրել, եւ յորդորեցին զիշխանն զԴրակոն յօրինել օրէնս (յամի 620), քանզի ցայն վայր սովորութեամբք նախնեաց վարէին. բայց օրէնք նորա խիստ էին յոյժ, եւ «գրեալ արեամբ» մինչեւ առաւել եւս բազմանալ զժտութեանց վասն նոցա: Կիւղոն եւ Մեգակղէս յորոց մին ի կողմն ժողովրդեանն էր եւ միւսն ի կողմն ազնուականաց ընդ միմեանս ելանէին հակառակութեամբ, եւ աղքատութիւնքն կարծեալք զորս կարգեաց Էպիմենիդէս կրետացի՝ ոչ ինչ այնպէս օգուտ գործեցին:

Ապա ուրեմն անց ի մէջ իմաստուն իշխանն Սողոն դնել օրէնս (յամի իբրեւ 594), որ վաղ իսկ երեւեալ էր քաջանուն ի պատերազմի եւ համբաւաւոր գիտութեամբ: Մեղմացոյց նա զխստութիւն պարտապանաց, քանզի զհասսն եւ զգինս դահեկանացն նուազեցոյց. զազատութիւն նոցա արար ի զգուշութեան եւ զբազումս ի մեծատանց հաւանեցոյց թողուլ զպարտսն կամ տալ ժամանակ, եւ ինքն եւս լինէր այնմ օրինակ: Զքաղաքացիսն ըստ ընչաւէտութեանն իւրեանց ի չորս Ջոկս կամ կարգս[1] բաժանէր վասն հարկացն, այնպէս զի ծանրութիւն հարկացն ի վերայ մեծատանցն կայցէ: Ամենայն իշխանութիւն տէրութեանն հաստատեալ կայր ի ժողովս ժողովրդեան: Խոնարհագոյն կարգ ժողովրդեանն ընտրէր ամ ըստ ամէ յերից բարձրագոյն կարգաց անտի 400, բայց յետոյ 500 այր քաղաքացի՝ յորոց յառնէր կայր Խորհրդականութիւնն[2]:

1 Φύλαι. 2 Βούλη.

Յայսմ խորհրդականութեանն ընտրանաւ յօրինէր այլ ինչ փոքր խորհրդականութիւն Գլխաւորաց վասն զերս ինչ որ անդէն առնպիցեն՝ վճարելոյ: Իշխանացն ինուՆց պարտ էր յամենայն երեւելի երեւելի իրս գումարել զխորհրդականութիւնն, եւ վճիռք սորա եղանէին առաջի ժողովոց ժողովրդեանն (յոր համարձակ էր եւ չորրորդին կարգի մտցանել մտանել): Ըմբռնապատանն որ էր ատեան մերապոյն քան զամենայն ատեանս՝ կայր յարանց արժանաւորաց կամ յիշխանաց անտի եղելոց ի պաշտամանէն իւրեանց. սա ունէր հսկողութիւն օրինացն եղելոց, ատնէր վճիռ մահու եւ անուշութիւն ի վերայ կրօնից, վարուց եւ կրթութեանս:— Յայտ յայտ է թէ օրինակ առաջնորդութեանն կարգելոյ ի Սողոնէ՝ է խառնեալ իշխանութիւն ազնուապետութեան եւ ռամկապետութեան:

Պարտ էր ամենայն քաղաքացւոյ յԱթէնս՝ ունել շահախնդիր ինչ կամ արուեստ, եւ չէր հարկ որդւոյն սնուցանել զհայրն ծերացեալ՝ եթէ սա անփոյթ արար ուսուցանել նմա ի մանկութեան արուեստ, քանզի եւ կրթութիւն մանկանց ի կամս եւ ի կարողութիւն ծնողացն աստատեալ էր: Մեծարոյ եւ պատուական էին անդ գիտութիւնք, բայց եւ դհրահանգաց մարմնոյ ունէին փոյթ ի մտի. ժիր եւ վարժ քաղաքացիս կամէր Սողոն եւ ոչ զօրականս եւեթ ունել ի աէրութեան իւրում: Իսկ զայս ամենայն կարգս յօրինեաց եդ՝ նա յԱթենացւոց խոստումն թէ պահեսցեն զնոսա 100 ամ ճշդիւ, եւ ել ճանապարհ անտի ընդ Եգիպտոս եւ ընդ Փոքր Ասիա, կամէր յետ 10 ամաց դառնալ այսրէն:

## 263

Բայց մինչ չեւ եկեալ նորա՝ միւսանգամ յարեան խռովութիւնք. խառնաղանճ ռամիկն կամէր հանել վրէժս ի մեծատանց, նմին իրի յօրինեցան կայծին երկու իմն կողմանք որպէս յառաջն. ի գլուխ աղքատացն կայր Պիսիստրատոս՝ որ ազգականն իսկ էր Սողոնի, ցանկացող իշխանութեան, գիտուն եւ աջողակ ի պործ, որ եւ նենգութեամբք եւ սողոքելով եմուտ ընդ միտ ամբոխին. թէպէտ եւ շատ ջանաց հակառակ նորա Սողոն՝ որ դարձեալ էր անդրէն յԱթէնս ի ժամանակին, սակայն Պիսիստրատոս նա ի բռունն գլխաւոր իշխանութիւնն յետ սակայ զժիջնարբրդ. Աթենացւոց քաղաքին ի ձեռն անձնապահացն՝ զորս ժողովեաց հաւանութեամբ ժողովրդեանն իբրեւ թէ ի պաշտպանութիւն անձին իւրոյ ի ձեռաց հակառակորդացն, եւ բարձանցայց զնոսա օր ըստ օրէ (յամի 561): Եւ զնաց այնուհետեւ Սողոն ի հայրենեացն եւ վախճանեցաւ յԿիպրոս. եղաց զնա եւ ղարդանցաւ ընդ նա ամենայն աշխարհն Յունաց:

Իսկ Պիսիստրատոս թէպէտ եւ ունէր առհասարակ պատերազմ առաջիկ ընդ հակառակորդաց իւրոց՝ որոց գլխաւոր էր տոհմի

Ալկմէոնեանց ընդ իշխանութեամբ Մեգակլեայ, եւ երկիցս եւս մերժեցաւ յետոյ (560—556, 552—538), բայց յետոյ ուժով յաղթեալ առ ի ձեռն զմիահեծան իշխանութիւնն (538): Հանդարտ եւ արդար եւ ուրախարար առաջնորդութիւն նորա եւս մոռանալ զայն թէ որով օրինակաւ զառաջնորդութիւնն առ. եւ մեռաւ նա ի պայծառ ծերութեան (528) թողեալ զտէրութիւնն ծաղկեալ եւ բարգաւաճեալ:

Հիպպիաս եւ Հիպպարքոս որդիք նորա պայազատեցին զնա ի միասին եւ երթային զճանապարհ նորա, զի ջանային զեղեցիկ զարդել զԱթէնս եւ կրթել զքաղաքացիսն: Անակրէոն եւ Սիմոնիդէս յԱթէնս կոչեցան, ի դրոյն Հոմերոսի տաղին ուսուցանել զմանկունս: Բայց զհակառակորդս միահեծան իշխանութեանն չկարէին հանել, որք եւ գտին իսկ ժամանակ ի դէպ կործանելոյ զիշխանութիւն նոցա (514):

Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ Հարմոդիոս եւ Արիստոգիտոն բարեկամք կարեւորք էին մեծանց յԱթէնս: Վասն Հարմոդեայ կրեաց նախատինս ինչ ի Հիպպարքեայ: Յայնժամ ի դաշն մտին բարեկամքն երկոքին՝ միաբանութեամբ սպանանել զանարժան իշխանաց (զբռնակալսն): Դարձ ի տօնի ինչ հրապարակական զՀիպպարքոս կարեցան սպանանել. բայց յաղթեալ անդ խոցեցաւ եւ Հարմոդիոս, եւ Արիստոգիտոն ձերբակալ եղեւ: Ամբաստանեաց Հիպպեայ զբարեկամաց նորա թէ ընդ մեզ միաբանեալ էին ի դաւն. զայն լուեալ Հիպպեայ՝ եւս կոտորել զնոսա եւ ապա զԱրիստոգիտոն եւս: Յայնմ հետէ արդեամբք իսկ բռնակալ եղեւ Հիպպիաս, եւ դունդք դունդք քաղաքացեաց՝ վասն սակաւ ինչ կասկածանաց կոտորէին. բայց նզովիւք վտարանդեցաւ կործանումն նորա:

Թէպէտ եւ բարեկամութիւն կայր ընդ Պարսից եւ ընդ Սպարտացւոց, բայց Ալկմէոնեանքն որ վտարանդի լեալ էին՝ կաշառեցին զպատգամս Դեղփեացւոց զաղաչարեալ զմեհեանն. քանիցս անգամ թէ հարցանէին ինչ Սպարտացիք՝ միշտ իսկ հրաման տայր պատգամն թէ զԱթէնս հանէք յազատութիւն: Ապա ուրեմն հաւանեցան Սպարտացիք խաղալ ի վերայ քաղաքին Աթենացւոց, ստիպեալ տագնապեցին զՀիպպիաս մինչեւ յանձն առնուլ դաշինս եւ թողուլ զիշխանութիւնն ի բաց. այնպէս եհ քաղաքն Աթենացւոց յազատութիւն (յամի նոյն 510). Հարմոդիոս եւ Արիստոգիտոն անդրիօք պատուեցան:

Կլիսթենէս Մեգակլեայ որդի առաջնորդէր այնուհետեւ տէրութեանն, եւ էր նա գլուխ կողման Ալկմէոնեանց կամ ռամկին հակառակ ազնուականացն՝ որոց գլխաւոր Իսագորաս: Կլիսթենէս ամենեւին իսկ յօրինեաց ռամկապետութիւն, քանզի փոխանակ չորիցն՝ ի 10 կարգս կամ ցեղս զժողովուրդն բաժանէր, եւ կարգէր

զխորհրդականութիւնն փոխանակ չորեքհարիւրոցն՝ ի 500 խորհրդականաց (առեալ յիւրաքանչիւր կարգաց կամ ջոկից՝ 50 խորհրդականս). զատաւորութիւնն եւ մեծ մասն պաշտամանց փոխանակ ընտրութեամբն տալոյ՝ լինէր առեալ վիճակաւ, զի ամենեցուն համարձակ իցէ այնմ հասանել: Նա՛ եւ զի պահիցի ազատութիւն ժողովրդեանն՝ եդ նա եւ զխեցեկայս վճիռն[1], այս ինքն՝ զի ամենեքին ի քաղաքացեաց ունէին իրաւունս գրելոյ ի վերայ խեցւոյ զանուն այնր՝ զորմէ համարէին թէ վտանգաւոր տէրութեանն իցէ, եւ աքսորել. վասն տասն ամաց վտարանդութեան պիտոյ էր 6000 խեցի:

Զուր ջանային այնուհետեւ Ազնուականքն՝ առաջնորդութեամբն Իսագորայ եւ օգնականութեամբ Սպարտացւոցն կործանել զռամկապետութիւնն՝ դարձուցանելով եւ զԿղիսթենէս միւանգամ յիշխանութիւն իւր. չյաջողեաց գործն, քանզի հարան Սպարտացիք, եւ Կղիսթենէս որպէս եւ Իսագորաս գնացին փախստեայ առ Պարսիկս (504):

Յայլ եւս ամենայն մանր տէրութիւնս Յունաց աշխարհին նոյն կարգք իրաց մի ըստ միոջէ զմիմեանս յաջորդեցին՝ որ ինչ յԱթէնս: — Ազնուականքն բարձին զթագաւորութիւնն ի միջոյ, եւ ընդ այնր անց կաց Ազնուապետութիւն՝ որ յետ սակաւ ինչ միոյ ի հարստահարութիւն ռամկին դարձաւ: Այլ քանզի զօրութիւն եւ կրթութիւն զինուց Ազնուականացն միայն էր, յայնժամ ուրեմն միայն յաղթէր նոցա ռամիկն՝ յորժամ ոմն փառասէր եւ ընչաւէտ այր յԱզնուականաց անտի ի բաց ելեալ՝ անցանէր ի գլուխ ռամկին իբրեւ Ռամկավար[2], առնոյր ի բուռն զմիջնաբերդ քաղաքին, եւ զազնուապետութիւնն կործանէր: Սակայն այնուհետեւ ռամկավարն դիւրաւ վտարէր յինքն զգերագոյն իշխանութիւնն՝ բազում անգամ ռամկին իսկ նմին օգնական լինելով: Այսպէս յ7 եւ ի 6 դարուն ելին կացին ի Յունաց աշխարհին միահեծան իշխանք՝ որ Բռնաւորքն իսկ կոչեցան, ոչ եթէ առ ի նշանակելոյ թէ բռնութիւն կամ անադորունութիւն ի կիր արկանէին, այլ թէ միահեծան տեարք կացին ի տէրութեանն՝ ուր յառաջն ռամկապետութիւն էր: Բազումք ի բռնաւորաց անտի այրք գիտունք եւ երեւելիք էին (որպէս Պիսիստրատոս յԱթէնս՝ նոյնպէս Պերիանդրոս մին յեւթն փիլիսոփայից ի Կորընթոս, եւ Պողիկրատէս ի Սամոս). գիտէին զառաջնորդութեանն արուեստ, զժողովուրդն՝ յորոյ ձեռն ամբարձան՝ զբաղեցուցանէին կանգնել հոյակապ շինուածս, էր նոցա մեծութիւն՝ որով զարուեստագէտս եւ զբանաստեղծս ձգէին յիւրեանս եւ ի գիտս յորդորէին, եւ ի փառաւոր արքունեաց նոցա ծաղկէին քաղաքք: Սակայն եւ այնպէս չերկարեաց բռնաւորացն իշխանութիւն. քանզի ոչ միայն Ազ-

1 Ὀστρακισμός. 2 Δημαγωγός.

նաւակալքն ջանային կործանել զնոսա՝ առեալ օգնական զՍպարտացիսն՝ որք միշտ իսկ Ազնուապետութեանն զօրաւիգն էին, այլ եւ որովք առաջնոցն բռնաւորաց մոռացեալ թէ որպիսի ինչ օրինակաւ եղեն հարքն նոցա յիշխանութիւնն՝ բռնանալ իմն եւ նեղել զժողովուրդն սկսան։ Յայն սակս եւ ժողովրդեանն առ ժամանակ մի միաբանեալ ընդ Ազնուականացն՝ զնոսա մերժէին եւ զառա թողուին թափուր յակնկալութենէն՝ այնու զի առաւել եւս այնու հետեւ զռամկապետութիւնն կամ զընկերհաշտութիւն հաստատէին։

## Բ

### Պատերազմ ընդ Պարսից. Սպարապետութիւն Աթենացւոց (492 — 431). (Միլտիադէս, Թեմիստոկլէս, Արիստիդէս, Կիմոն, Պերիկլէս)։

### 264

Ի ՁԵՌՆ մեծամեծ պատերազմացն Յունաց ընդ Պարսից պետութեանն՝ արկաւ հիմն մեծութեանն Յունաց։ Պատճառք գրգռելոյ պատերազմին՝ առաւել գաղթականութիւնք Յունացն եղեն, որք ի Կիւրոսէ հետէ անկեալ էին ընդ իշխանութեամբն Պարսից, ուր նոքա զնոյն տենչանս ազատութեան ունէին՝ զոր առհմանկիցքն իւրեանց ի բուն աշխարհին։ Սակայն ժամանակս բազումս հնազանդեալ ունէին զնոսա ի հարկի մեծամեծքն Յունաց՝ զորս կացուցանէին Պարսիկք ի քաղաքս քաղաքս իբրեւ իշխանս կամ բռնաւորս, եւ յայն սակս իսկ հաւատարիմք էին արքունեացն Պարսից։ Այլ մի ոմն ի նոցանէ էր եւ Հիստիէոս բռնաւոր Միղետեայ՝ որ կոչեցաւ ի վայելչութիւնս արքունեաց թագաւորին՝ ոչ միայն իբրեւ ի վարձս հաւատարմութեանն զի յարշաւանսն Սկիւթացւոց չետ թոյլ հատանել զնաւակամուրջն[1], այլ եւ վասն իրիք իրիք կասկածանաց։ Սակայն Հիստիէոս անկեալ գաղտ ի պատգամս ընդ ազգականին իւրում Արիստագորայ որ յաջորդն լեալ էր նորա՝ դրդեաց հան զՄիղետացիսն եւ զայլ եւս քաղաքս յոնիական գաղթականութեանն յապստամբութիւն՝ զի յետ զիւրաքանչիւր բռնաւորսն մերժելոյ թօթափեսցեն եւ զլուծ տէրութեանն Պարսից։ Սպարտացիք եւ Աթենացիք կոչեցան ի թիկունս օգնականութեան, այլ Աթենացիք միայն եւ Էրետրիացիք նաւամարտիկ տորմիղ 20 նաւաց՝ եղեն նպաստ ի կռիւ, քանզի եւ երկնչէին իսկ թէ Դարեհ կացուսցէ միւսանգամ յիշխանութիւն բռնաւորութեանն զՀիպպիաս որ յարքունիս նորա էր։ Զառաջինն յաջողեալ իմն իրքն թուէին, առաւ Սարդէ՝ քաղաք գլխաւոր Փոքուն Ասիոյ եւ հրձիգ եղեւ, եւ ապստամբութիւնն սփռեալ տարածեցաւ յամենայն աշխարհն Յոնիացւոց։ Սակայն վաղվաղակի եղեւ փոփոխումն իրացն. պարտեցան Յոյնք ի նաւամարտի

1 Տես վերագոյն եր. 338։

կտուի ոչ միայն վասն նուաղագոյն զօրութեանն իւրեանց՝ այլ եւ վասն չմիաբանութեանն. ի հիմանց բրեալ քանդեցաւ Միլետոս. յանցաւորք ի քաղաքացեացն խաղխաղեցան վարեցան ի գերութիւն. Արիստագորաս ի Թրակիա փախստեայ անկեալ՝ անդէն սպանաւ. ըմբռնեալ խաչեցաւ եւ Հիստիէոս՝ որ առաքեալ նուաճել զապստամբսն՝ եղեւ առաջնորդ նոցա ձախող պատերազմին (504—496): — Սակայն կայր Պարսից տակաւին սրտմտութիւն բարկութեան թագաւորին ի վերայ Աթենացւոցն, մանաւանդ թէ առաւել բորբոքեալ զցասումն Հիպպիաս: Նմին իրի յամենայն իսկ համօրէն աշխարհէն Յունաց վրէժք գործոյն պահանջելոց էին:

Նախ զՄարդոնիոս զօրավար իւր ի վերայ առաքէր Դարեհ տուեալ զօր ի ձեռն ընդ ծով եւ ընդ ցամաք (յամի 492): Այլ առաջի Աթոս լերանն ի մրրկէ խորտակեցաւ տորմիղ նաւուցն. եւ մասն մի հետեւակ զօրուն ի ցամաքի ի պատերազմէ ազգէն Թրակացւոց կոտորեցաւ, եւ մինչ չեւ տեւեալ Մարդոնեայ յայն այր՝ զօրօքն մնացելովք տագնապաւ փախստեայ յԱսիա անկանէր: — Ապա միւս եւս ահագին նաւամարտիկ տորմիղ նաւուց կազմէր թագաւորն. եւ մինչ դեռ ի պատրաստել կայր՝ առաքեալ քարոզս՝ խնդրէր հող եւ ջուր ի քաղաքացն Յունաց, իբրեւ նշանակ ինչ հնազանդութեան (491): Կղզիքն ամենայն եւ մեծ մասն կողմանցն Յունաց՝ հրամանացն անսացին. Սպարտացիք միայն եւ Աթենացիք իշխեցին մերժել զհրամանն, որք եւ հակառակ ազգացն իրաւանց զմին ի հրեշտակացն առեալ թաղեցին ընդ հողով եւ զմիւսն արկին ի ծով:

Ընդ այն բարկացեալ թագաւորին՝ առաքէր զԴատիս եւ զԱրտափեռն նաւօքն պատրաստելովք եւ սպարապետ ընդ նոսա զՀիպպիաս, երդեալ ածել ի խրատ զԱթենացիսն (490): Ի ճանապարհայն եղանէին պարսկականքն յԷւբիա. անկաւ Էրետրիա մատնութեամբ ի ձեռս թշնամեացն՝ որ յատակաց քանդեցին զքաղաքն եւ զբնակիչսն հանեալ վարեցին ի ներքին կողմանս Ասիացւոց աշխարհին. ապա քերեալ զկղզեաւն՝ հրով եւ ապականութեամբ եկին ելին ի ծովեզերսն Ատտիկէաստանի առաջնորդեալք ի Հիպպիայ, անտուստ սփռէին բազմահազար բանակք նոցա ի դաշտն Մարաթոնայ: Խուճապեալ Աթենացւոցն՝ տագնապաւ զզօրականս ի մի վայր գումարէին. առաքեցին շուրջանակի խնդրել օգնականութիւն, այլ ընդ վայր. Պղատէացիք միայն յղեցին 1000 այր. նա եւ Սպարտիացիքն որք դանդաղէին իմն՝ զի հին ինչ օրէնք կրօնից հրամայէր նոցա չտալ պատերազմ յառաջ քան զլրումն լուսնին՝ չհասին ի դէպ ժամուն:

Բայց Աթենացիք փութացեալ գնացին ի դաշտ անդր եւ բանակ հարեալ զետեղեցան, առաջնորդեալք ի 10 զօրավարաց:

Երեւելի եւ նշանաւոր ի նոցանէ էր Միլտիադէս՝ որ յառաջագոյն ի Քերսոնեսոս կացեալ էր բռնաւոր հնազանդեալ Պարսից, եւ լեալ ընդ նոսա ի սկիւթական արշաւանսն եւ տեղեակ էր բնութեան եւ պայմանի պատերազմին Պարսից։ Ած Միլտիադէս ի հաւան զԱթենացիսն զի ինքեանք նախ յարձակեսցին ի վերայ ի տեղւոջ որ ոչ պատեհ իցէ հեծելազօրու թշնամեացն. անդ 10,000 Աթենացիքն եւ 1000 Պղատէացիք ի ճակատու ընդ տասնապատիկ առաւելագոյն թշնամեացն՝ յետ ահագին եւ սաստիկ պատերազմին հանին ի գլուխ զմեծապայծառ յաղթութիւնն առ Մարաթոնաւ (29 Սեպտ. 490). ի մէջ բազմահազարս դիականցն անկեալ գտաւ եւ Հիպպիաս. իսկ Պարսիկք ելին փախստեայ ի նաւս իւրեանց։ Կամել կամեցան անկանել ի վերայ Աթենացւոց քաղաքին, քանզի սկսան նաւարկել փութանակի ի Սունիոն կոյս, բայց Միլտիադէս յառաջագոյն զգուշացեալ ընտիր ընտիր զօրօք մնայր նոցա առաջի քաղաքին. ուստի հարկ հասանէր Պարսից անօթալից կորակոր դառնալ յաշխարհն իւրեանց՝ թողեալ զկահ եւ զկազմած եւ զանօթ պատերազմին։

Լի եղեն ուրախութեամբ Աթենացիքն. զօրավարքն՝ միաբանոք Միլտիադեա մեծարոյ երեւէին եւ անդրեօք պատուէին. այլ չյերկարեաց Միլտիադէս վայելել ի պատիւսն։ Հաւանեցոյց նա զԱթենացիսն վառել նաւս եւ երթալ առնուլ զկղզիս Եգէական ծովուն որ հնազանդեալ էին Պարսից. բայց քանզի յոր գործ առաքեցաւն՝ չկարաց վճարել, եւ զի վէրս եւս ի Պարոս առ՝ ուր չոգաւ առնուլ զվրէժ թշնամանաց անձին իւրոյ, չարախօս կացին զնմանէ նախանձորդք նորա, մինչեւ նա գտաւ պատճառք վնասուն եւ չյաջողութեանն, եւ պարտաւորեցաւ ի տոյժս տուգանաց անհնարին յոյժ. եւ զի այնչափ ինչ տալ ոչ կարէր՝ արկաւ ի բանդ։ — Ընդ վախճանեցաւ յաղթողն մարաթոնական ճակատուն՝ ի վիրաց անտի զոր առ. բայց ազնուական որդին Կիմոն յիւրոց ծախուց առնէր դիահանութիւն պատուով։ Արդարեւ բազում իւիք նահատակեցաւ Միլտիադէս ի վերայ աշխարհին, բայց չէ մարթ առանց բամբասանաց թողուլ զնա վասն բռնութեանն եւս եւ ամբարտաւանութեանն։

Յետ նորա վախճանին ի կռիւ իմն կային արք երկու երեւելիք եւ քաջք՝ Արիստիդէս եւ Թեմիստոկղէս, լինել առաջին ի տէրութեանն։ Թեմիստոկղէս (զորոյ զքուն յաչացն հատանէին նշանք յաղթութեանն Միլտիադեայ) կամէր ըստ նմանութեանն Միլտիադեայ եւ զանձն բարձրացուցանել եւ զքաղաքն Աթենացւոց. եւ քանզի Արիստիդէս որ ոչն փաղաքշէր ամբոխին եւ ոչ ընդունէր ... 

տեղեկս մերժեալն փառաւորեալ խեցեկեայ վճռով (յամի 486)։ Թեմիստոկլէս այնուհետեւ էր այր բառ մնաց. եւ յօժարութեան ժողովրդեան՝ զի կամէին ամբառնալ ի վեր զԱթէնս մինչեւ ունել քաղաքին այնմիկ վերագոյն իմն իշխանութիւն ի վերայ ամենայն աշխարհին Յունաց. եւ քանզի նաւական զօրութեամբ եւեթ հնար էր այն Աթենացւոցն՝ յայն սակս իսկ խրատեաց դրդեաց Թեմիստոկլէս յաւելուլ շինել տարեկան նոր 100 նաւաց (յամի իբրեւ 484), մանաւանդ զի եւ յառաջագոյն իմն նշմարէր թէ տակաւին կայ մնայ տալ պատերազմ ընդ Պարսից։

## 265

Նոյն արդեամբք իսկ սկսեալ էր Դարեհ տանել անհնարին պատրաստութիւն պատերազմի, զոր մեռեալ յառաջ նորին որդի Քսերքսէս Ա. (յամի 486) դրդեալ եւ ի Յունաց անտի մերժելոց ի Մարդոնեայ. բայց առաւել էր պատրաստութիւն նորա քան զհօրն իւրոյ մինչեւ հասանել զօրացն ի միլիոնս քանի մի (բառ Հերոդոտայ) յազգաց ազգաց որոց թիւ աւելի քան զ60 էին, եւ նաւքն հանդերձ եւ զօր եւս նաւամարտիկ՝ ի վերայ 1200 պատերազմիկ նաւաց, եւ 3000 նաւաց բեռնաւորաց։

Խաղաց տորմիղ նաւացն ընդ կիրճ մինչ զոր եւս պեղել Քսերքսէս ընդ ծովեզերան որ առաջի կան լերինն Աթոսի՝ վասն հանելոյ պաշար զօրուն, եւ արկ նաւակամուրջ ի վերայ Հելլեսպոնտոս ծովու, ընդ որ անց անթիւ անհամար զօրն յաշխարհն Եւրոպացւոց, եւ յորդէր զերդոր ընդ Թրակիա եւ ընդ Մակեդոնիա ի կողմն Թեսաղացւոց՝ որ հնազանդեցին իսկ առանց արեան։ Զահի հարեալ Յունաց՝ յամենայն կողմանց առաքէին ինքնակամ հող եւ ջուր. մեծ մասն քաղաքացն չէին միաբանք ընդ միմեանս, եւ ոչ գայն գիտէին թէ զինչ գործիցեն. եւ Աթենացիք եւս եւ Սպարտացիք սկսան դեդեւել։

Յայնժամ անց ի մէջ Թեմիստոկլէս, միաբանեաց հաստատութեամբ զԱթենացիս եւ զՍպարտացիս, հաշտեցոյց զքաղաքս զժտեալս ընդ միմեանս, ած խառնեաց զգաղթականս ի դաշնաւորութիւնն, քաջալերեաց յորդորեաց զամենեսին։ Ըստ խրատու նորա Լեւոնիդաս թագաւոր Սպարտացւոց առեալ 8000 այր ի նահատակելոցն՝ երթեալ ունէր զկիրճս Թերմոպիւղեաց. իսկ տորմիղ (280) նաւացն կայր առ Արտեմիսեաւ, եւ հրամանատար նոցա Եւրիբիադէս սպարտացի եւ Թեմիստոկլէս։

Այն ինչ դաշնաւորքն Յունաց հասին ի կիրճսն՝ անդէն հասեալ բազմատարած բանակք Ասիացւոցն։ Զաւր ջանացան Ասիացիքն առնել ահարկու զքաջսն զայնոսիկ կամ շահել զնոսա, այլ հրաման եւ Քսերքսէս յարձակել ընդ կիրճն. զաւուրս երկուս

անկանէին հազարաւորք ի զօրաց նորա ի կռուի անդ. եւ զունդն եւս մատնենիկ 10,000 արանց չկարաց ունել զդէմ նոցա: Բայց այր ի Յունաց (Էփիալտէս) մատնութեամբ գիշերային զճանան մի զօրացն Պարսից անցոյց ընդ լեռնակողմն անկանել ի թիկանց ի վերայ Յունացն:

Յայնժամ փութանակի խորհուրդ խորհէին. 300 Սպարտա-ցիք եւ 700 Թեսպիացիք կենակամ նահատակեցան զօրավարու-թեամբ Լէոնիդայ. մնացեալքն առաքեցան յիւրաքանչիւր տե-ղիս, զի մի զուր մեռանիցին: Իսկ առաջինքն ի մահ պատրաստե-ցան. ի վաղիւ անդր սկսան խառնուրդքն. Լէոնիդաս եւ որ ընդ նմա քաջքն էին՝ անկան քաջութեամբ առ Թերմոպիւղեօք մին-չեւ ցայր մի (6 Յուլ. 480): Կանգնեցաւ շիրիմ ի վերայ նոցա ցուցանել անցաւորացն զտեղին յորում անկան:

Ի նմին ժամանակի 400 նաւք ի նաւաց Թշնամեացն առ Ար-տեմիսիաւ ի մրրկէ խորտակեցան. բայց տակաւին այնչափ բազում էր նաւական զօրութիւնն Պարսից, մինչեւ խորհել Եւրիբիա-դեայ եւ Պեղոպոնեսացւոցն դառնալ այտէն յետս եւ լքեալ թողուլ զԱթենացիսն: Բայց Թեմիստոկլէս արար կաշառօքն զգլխաւորս ի զօրավարացն եւ այնպէս յարձակեցան ի վերայ Թշնա-մեացն առ Արտեմիսիաւ եւ ընկղմեցին 30 նաւ. առաւել եւս եւս մրրկի՝ խորտակեցան նաւք 200. եւ ի միում եւս նաւազի յարձակեալ նոցա գիշերային ի վերայ նաւացն Յունաց՝ մեռանեցան բազում: Բայց Յոյնք՝ քանզի լուան զզոյժ պարտութեանն առ Թերմոպիւղեօք, դարձան փութանակի յետս ի Սաղամիս կղզի:

## 266

Յետ անցանելոյ ընդ Թերմոպիւղս անարգել՝ դիմեալ գային զաւնդք Ասիացւոցն ընդ Փոկիս, ընդ Դովրիս եւ ընդ Բէովտիա հասանել յԱտտիկէ. աւերէին զերկիրն եւ առնէին հրձիգ զքա-ղաքն Աթենացւոց յետ սպանանելոյ զծեր զօրականն որ մնացեալ էր անդ. քանզի յառաջագոյն ամենայն այր բաւական ի պատե-րազմ՝ ափոխեալ էր ի նաւս ըստ խրատուն Թեմիստոկլեայ՝ հաս-տատելոյ ի դեղփական պատգամացն, թէ փրկութիւն Աթենա-ցւոց ի "փայտեղէն պարիսպն" է: Իսկ կանայք եւ մանկունք եւ ամենայն ինչք Աթենացւոցն փոխեալ էին ի Սաղամիս, յԷգինա եւ ի Տրեզենէ:

Սակայն Յոյնք չէին տակաւին միաբան ի խորհուրդս իւրեանց. զի իբրեւ անտուստ զհետ մնալ զայր առջեւ նաւացն Պարսից ի Սարոնեան ծոց ծովուն՝ խորհուրդ միաբանեալ ի մտի եղին Պե-ղոպոնեսացիքն ի յանձնարարն գիշերին դառնալ յաշխարհն իւրեանց, եւ ձգել տանել զպարսպապատն ի ծոց Կորնթեան ծովուն:

Լեւտիքիդեայ սպարտացւոյ, յարձակել ի վերայ նաւացն Պարսից. բայց տորմիղ նաւացն Պարսից փութանակի գնաց ի Միկաղէ ի Յոնիացւոց աշխարհին. անդ ելին Պարսիկքն ի ցամաք եւ խառնեցան ընդ բուն իւրեանց զօրս որոց զօրավար էր ոմն Տիգրան. հասին անդր եւ Յոյնք, ահագին էր կատարած յունական սրոյն ի մէջ գնդացն նոցա խուճապելոց եւ տագնապելոց. յաղթեցին առին զբանակս նոցա եւ հրձիգ արարին զնաւս նոցա յաւուր յորում մղէր ճակատն առ Պղատեա։ Բուն պարծանք յաղթութեան եւ սաստ Աթենացւոցն էր եւ Միղեսացւոցն ապստամբելոց ի Պարսից։ Յետ կրկին յաղթութեանն դադարեաց յանուհետեւ արշաւան Պարսից ի վերայ Յունաց աշխարհին։ Այսպէս անհեղեղ թանձրութեանն յաղթեաց մտաւորութիւն։

267

Յետ ճակատուն Պղատեայ առնէին յառաջ դաշնաւորքն Յունաց զպատերազմն, իբր ոչ եթէ ի Պարսից ինչ յարձակումն կրեալ՝ այլ ինքեանք ի նոսա յարձակէին զի զազգակիցսն իւրեանց որ ի կողմանս Ասիացւոցն էին՝ հանիցեն յազատութիւն։ Սակայն պատերազմն այնուհետեւ ընդ ծով եւեթ էր։ Բայց քանզի Սպարտիացիքն ոչ զհրահանգս ծովային պատերազմին եւ ոչ նաւս բաւական ունէին, յայն սակս սակաւ հրամանատարութիւնն անցանէր առ Աթենացիսն՝ որոց եւ ի ժամանակի պատերազմացն այնպէս քաջութիւն եւ ազնուական միտս ցուցեալ էր։ Իսկ այս անցք ճեպեցան մատնութեամբն Պաւսանեայ արքայի Սպարտացւոց. զի սա թէպէտ եւ ցայն վայր ապարապետ էր նաւացն, եւ ընդ նորա հրամանատարութեամբ Արիստիդէս եւ Կիմոն ուստր Միղտիադեայ մերժեցին հանին զՊարսիկսն ի Կիպրոս կղզւոյ եւ ի Թրակիայ եւ առին զԲիւզանդիոն (յամի իբրեւ 471), սակայն անդէն յետ այնորիկ եմուտ նա ի դաշինս ընդ արքային Պարսից՝ զի Յունաց աշխարհ մտցէ ընդ վերագոյն իշխանութեամբ նորա եւ ինքն առցէ անարգել իւր իշխանութիւն ի վերայ աշխարհին Պեղոպոնեսացւոց (470)։ Կոչել կոչեցին զնա յետս Սպարտացիք՝ զի ընդ ոսկւոյն Պարսից առեալ էր եւ զբարս զեղխութեան նոցա, որովք ատելի իսկ առնէր Յունաց զտէրութիւն Սպարտիացւոցն՝ մինչեւ չկամել ումեք զինուորել ընդ հրամանաւ նորա, եւ յետ մատնութեանն յայտ գալոյ՝ ի մեհենի ուրեք յոր անկեալ էր՝ սպանին սովամահ. սակայն եւ այնպէս՝ այնչափ նուաղեալ անկեալ էր ճոխութիւն Սպարտիացւոցն՝ զի ինքեանք իսկ հարկ համարեցան հրաժարել ի դատարկ հրամանատարութենէ ծովային զօրութեանցն։

Մինչ դեռ Պաւսանիասն զզօրութիւն իշխանութեան հայրենի քաղաքին իւրոյ նուաղեցոյց հասոյց ի նկունութիւն՝ անտաւա

երկք զօրավարք Աթենացւոցն այլ եւ այլ բարուք եւ կարողութեամբք՝ լինէին բաղձօք նոյնատ ամբառնալ զքաղաքն Աթենացւոց ի բարձրութիւն։ Թեմիստոկլէս իմաստութեամբ եւ խորամանկութեամբ՝ ի շինել միւսանգամ քաղաքին Աթենացւոց՝ տայր ածել պարիսպ ամուր բարձրաբերձ մեծացուցանելով եւ զընդարձակութիւնն, եւ տայր յօրինել զմեծ եւ զփառաւոր նաւահանգիստն զՊիրէա՝ զոր յետոյ Կիմոն եւ Պերիկլէս երկու երկայնաձիգ պարսպօք ընդ քաղաքին կապեցին, եւ յաճախեալ բազմացոյց զնաւական զօրութիւն Աթենացւոցն։ Վասն այսր ամենայնի անհաշտ իւրն թշնամութիւն կալան ընդ նմա Սպարտացիքն որ ոչ կամէին ընդ ամրութիւն քաղաքին Աթենացւոց, եւ յայն տակս իսկ մատուցանէին զնմանէ ամբաստանութիւն թէ եւ նա կցորդ լեալ է մատնութեան խորհրդոցն Պաւսանեայ (469)։ Յասին ամբաստանիքն ի ժամանակի մի յաղթեալ իմն էր հակառակորդաց նորա յԱթէնս՝ տալ դատապարտել խեցեկեայ վճռով զայլն փախուսեր վասն 10 ամաց վտարանդութեան։ Երթայր նա այնուհետեւ հալածական փախստեայ յաշխարհն Արգացւոց յետ ընդ բազում վտանգսն անցանելոյ. ընկալաւ զնա Թագաւորն Պարսից պատուով եւ ետ նմա զհաս երից քաղաքաց ի փոքրն Ասիա (466). եւ ի միումն ի քաղաքաց անտի ի Մագնեսիա վախճանեցաւ տուեալ դեղ անձամբ անձին՝ վասն չկամելոյ լինել օգնական նուաճել զաշխարհն Յունաց, որպէս խնդրէր ի նմանէ Թագաւորն։

Որպէս Թեմիստոկլէս խորագիտութեամբ՝ նոյնպէս Արիստիդէս արդարութեամբ մեծացոյց զԱթենացիսն։ Վասն իրաւասէր մտաց նորա որ ծանօթ իմն ամենեցուն էր՝ վստահ եղեն կղզիք եւ ծովեզերեայ քաղաքք Յունաց (բաց ի Պեղոպոննեսեայ) առնել դաշնաւորութիւն ընդ Աթենացւոց եւ տալ արծաթ եւ նաւ վասն մատուցանելոյ յառաջ զպատերազմն։ Պատգամաւորք քաղաքացն գային ի Դելոս եւ անդ ուրեմն ի մեհենին պահէր արծաթ հանգանակին՝ զոր տային ամ ըստ ամէ քաղաքքն, եւ մերակացու ինքն Արիստիդէս էր. նոյնպէս եւ վասն առաջնորդութեան հասարակաց նաւամարտիկ նաւուց՝ սահմանեալ էր զօրավար աթենացի։ Այսպէս՝ ած Արիստիդէս Աթենացւոց զիշխանութիւն առաջապետութեանն (յամի իբրեւ 470)։ Այլ յետ սակաւ ինչ միոյ վախճանեցաւ Արիստիդէս՝ անինչ անստացուած, մինչեւ հասարակաց ծախուք քաղաքին թաղել, եւ դստերաց նորա ի հասարակաց ծախուց տանել օժիտ. եւ կանգնեցին նմա անդրի։

Արիստիդէս զքաղաքացւոց իրաւունսն եւ զառաւելութիւնս եւս եւ ամենեւին խառնաժողովն կարգի ժողովրդեանն, որով առ զվերջին իսկ կատարումն բռնակալութեան ռամկապետութիւնն, սակայն նախին արկաւ հիմն՝ իշխանութեան խառնաղանձ ամբոխին[1]։

1 Ὀχλοκράτεια.

Յետ նորա Կիմոն առեալ զառաջնորդութիւնն ի վերայ զօրաց դաշնաւորացն՝ արար երախտիս մեծամեծս զաւառին իւրում նաւական պատերազմօքն, եւ առ յինքն զժողովուրդն ընկերակցութեամբն եւ առատութեամբն։ Հան փարեաց նա զՊարսիկս ի Կարիայ եւ ի Լիկիայ, մտեալ եհաս ի կողմանս Պամփիւլիացւոց մինչեւ ցԵւրիմեդոն գետ՝ առ որով կատարեաց յաղթութիւն կրկին ընդ ծով եւ ընդ ցամաք (469), եւ զԽերսոնեսոս թափէր ի Պարսից (468), եւ մերժեաց համօրէն զՊարսիկսն ի ծովեզերայցն Թրակիայ՝ ուր եղին առաջ Աթենացիք զքաղաք գաղթականութեանն զԱմփիպոլիս։ Հալածեաց նա եւ զՍկիւռոս կղզի՝ ուստի զոսկերսն Թեսեւսեայ հանեալ բեր շքով յԱթէնս։ — Յետուստ ուրեմն 200 նաւուք խաղացեալ հասանէր ի Կիպրոս՝ ի ժամանակի զի յապստամբել կային Եգիպտացիքն ի Պարսից. անդ յաղթեաց նա պարսկական նաւացն՝ եւ առ ծովեզերբն Ասիոյ՝ ցամաքային զօրու նոցա. բայց ի պաշարման Կիտիոն քաղաքի ի Կիպրոս՝ առեալ վէրս վախճանեցաւ տարաժամ (450)։

Յետ յաղթութեանցն նորա եղեն դաշինք խաղաղութեան ընդ արքային Պարսից ընդ Արտաշիրի Ա. յորում առաւել փառաւորեցան Յոյնք, զի հաւանեցաւ նոցա Թագաւորն տալ ազատութիւն Յունաց որ ի Փոքր Ասիա էին։ Այսպէս զբաւ լինէր փառաւորութեամբ Յունացն 51ամեայ պարսկական պատերազմին (449)։

Թէպէտ եւ այս դաշինք Կիմոնեան խաղաղութեան ընդ արախուսանօք է ի պատմութեան, սակայն այն առանց տարակուսանաց է թէ յետ յաղթութեանցն Կիմոնի, մանաւանդ զոր առ Եւրիմեդոն գետովն կատարեաց՝ դադարեցին յերկար ժամանակ՝ Յունաց ընդ Պարսից պատերազմունքն։ Իսկ առանձին զխաղաղութիւն ընչից իւրոց արկանէր Կիմոն ի կիր ի ծախս շինուածոց քաղաքին Աթենացւոց, յորս էր Ակադեմիա (որ էր դպրատուն ինչ) եւ պրահն նկարամբք [1], մին անուանի լեալ Պողիգնոտիւ եւ մեւսն ստոյիկեան փիլիսոփայութեամբն։

## 268

Թէպէտ եւ յոյժ իսկ խանդաղով հայէին Սպարտացիք ընդ աճել զօրութեան եւ մեծութեան նախանձընդդէմ քաղաքին Աթենացւոց, սակայն պատերազմն զոր ընդ Արգոսի եւ ընդ այլոց պեղոպոնեսեան քաղաքացն ունէին, եւ մանաւանդ ահագին ապստամբութիւնն որով մեծ մասն Սպարտացւոց քաղաքին կործանեցաւ եւ Մեսսենիացիքն եւ Հեղոտք նովին զանեալ պարապ ապստամբեցին՝ ընկէին արգել եւ խափանիչ ելանելոյ նոցա պատերազմաւ ի վերայ Աթենացւոցն։ Նա մանաւանդ մինչեւ իսկ տկար

1 Στωά.

Աթենացւոց։ Դարձեալ՝ Սպարտացիք եւ Աթենացիք պահելոց էին իւրաքանչիւր զիւրեանց սպարապետութիւնն, իսկ այլոցն համարձակ էր կամօք իւրեանց յարել ի սոցա կամ ի նոցա սպարապետութիւն։

## 269

Պերիկղէս ողոմպիացի երեւելի քան զամենայն քաղաքագէտս ի ժամանակին իւրում եւ բանիբուն ճարտարախօս եւ զօրավար՝ յամէ ամի 461 (յորում Կիմոն աքսորեցաւ) էր գլխաւոր Աթենացւոցն, այլ յամի իբրեւ 444 (յետ պերսիկեան դաշանցն) առաջնորդութիւնն անց ամենեւին ի ձեռս նորա։ Թէպէտ եւ յազնուական տոհմէ էր եւ մեծատուն ի մեծատանց՝ սակայն ռամկապետութեան միտս ունէր։ Բարձ նա յԱրիոպագայ՝ զազնուապետական իրաւանցն առաւելութիւնս եւ դարձոյց ի լոկ ինչ անուան դատաստանաց։ Նորա խրատու եւ այն կարգեցաւ՝ զի ամենայն այր քաղաքացի յԱթենացւոցն, որ աղքատական իցէ եւ կամ ի ժողովս ժողովրդեան նստիցի՝ կամ ի զօրու եւ ի նաւամարտիկ նաւս՝ առցէ թոշակս. եւ ինքն եւս տայր տուրս առատութեամբ ամբոխին կարօտելոյ։ Զարդեցուցանէր նա զժողովուրդն շինուածովք, յորս էր Պարթենոն մեհեան Աթենայ մարմարապատ՝ զոր բարեկամն նորա Փիդիաս անզուգական զարդարեաց, եւ սրահք կճեայ սեամբք[1] եւ տաճար երգոց[2]. եւ ուրախ առնէր զամբոխն մեծաշուք փառաւորութեամբ տօնից եւ հանդիսիւք խաղալկաց։ Փոյթ ի վերայ ունէր արուեստի եւ գիտութեան. արք գիտունք եւ երեւելիք զառնէին ընդունելութիւն ի տան նորա, եւ ամենեցուն լինէր ձեռնտու յուսումն եւ ի հրահանգս կրթութեան։ Արծաթն որ կարեւոր էր յայս ամենայն՝ յորդէր յԱթէնս ի կղզեացն։ Սոփեստք եւ առաւել եւս սքանչելի ձիրք եւ առաքինութեամբք իւրովք կայց Միոց Պերիկղէս սիրելի ժողովրդեանն, եւ եղեւ իսկ ձեռնհաս օր ըստ օրէ յաճախելոյ զպատիւ եւ զմեծարանս իւր եւ պահելոյ նոյնպէս 40 ամ, ուր օրինակ առաջնորդութեան Աթենացւոցն ամենեւին դարձաւ յիշխանութիւն խառնապետն ռամկին. Թէպէտ եւ ամենեւին հասեալ էին նոքա միանգամայն ի ծայր եւ ի ծագ մասնաւոր կրթութեանն իւրեանց։

Բայց սակայն եւ յամբարտաւանութիւն իմն եւ ի ցանկութիւն տիրելոյ հասան Աթենացիք, յամէ ամի 470 յորժամ զսպարապետութիւն եւեթ եւ զմատակարարութիւն արկեղ դաշնաւորութեան ունէին։ Զի իբրեւ դժուարին լինէր մանր դաշնաւոր քաղաքացն տալ նաւս ըստ թուոյն սահմանելոյ՝ տային նոքա եւ ընդ այնր մեծամեծ գինս շինութեան նաւուց։ Աստանօր առեալ պատճառս Աթենացիքն սկսան տակաւ յաճախեալ բազմացուցանել զնուաճու-

1 Προπυλαία. 2 Ὠιδεῖον.

բեանց, եւ առաս զկղզիսն (զՆաքսոս, զԹասոս, զԷւբէա եւ զայլսն եւս մի քանի միոջէ) եւ զմեծր մասն ծովեզերեայ իշխանութեան առկանել ընդ իւրեանց իշխանութեամբ։ Անարգել իմն այնուհետեւ փոխէին զարկղ դաշնաւորութեանն ի Դելոսէ յԱթէնս յամի 461, եւ վարէին նոքին իբրեւ իւրեանց իսկ սեպհական ընչիւք ի զարդ եւ ի շինութիւն գեղեցկութեան քաղաքին իւրեանց։ Այսպէս ընդ դաշնաւորացն իւրեանց իբրեւ ընդ ազգաց հնազանդելոց գնային՝ նեղելով զնոսա անչափ տուրքս։ Վասն այսր ամենայնի՝ կասկածն իրաւացի եւ նախանձն յաճախեաց նոցա բազմաբախ թշնամիս՝ որոց գլուխ եկաց Սպարտա։ Ընդդէն յետ վախճանին Կիմոնեայ սկսան միւսանգամ նեղքին պժտութիւնքն, եւ ի 20ամեայ խռովութեան ժամանակին ամենայն իսկ համօրէն աշխարհն Յունաց յերկուս բաժինս անջատեցաւ. Թէպէտ եւ առ ժամանակ մի խաղաղութիւն էր՝ այլ սակաւ ինչ բարուրք բաւական էին տալու ի գրգռելոյ ընդ միմեանս եւ զհասարակաց հայրենի աշխարհն ի նեղութիւն եւ ի տագնապ մեծ արկանելոյ։

Գ.

Պեղոպոնեսեան պատերազմն (431—404). Սպարտական գերիշխանութիւն | Սպարտացւոց. — Սպարտական գերիշխանութիւն Թեբացւոց. Մակեդոնական պատերազմն — 338 (Աղեքսանդրոսի Պղատոնդրոս, Դեմոսթենէս)։

270

Այս ամենայն արդեամբք եղև ի գլուխ ի Պեղոպոնեսեացւոց պատերազմին, որ 27 ամ մղեցաւ ոչ ի մէջ ցեղից միայն, այլ եւ ընդդէմ առաջնորդութեանցն պայմանաց, քանզի գնացք Աթենացւոցն քակտիչ իմն եւ խռովիչ էին, իսկ Սպարտացւոցն խափանիչ եւ կարճիչ, այնպէս զի պատերազմն այն եդ աղդոյ վէրս ի վերայ բարուց եւ զօրութեանն Յունաց։

Պատճառք եւ բարուրք Պեղոպոնեսեացւոց պատերազմին էր գժտութիւն ինչ Կորկիւրացւոց ընդ Կորնթացւոց որոց գաղթականք էին Կորկիւրացիքն։ — Աթենացիք՝ Կորկիւրացւոցն ձեռնտու լեալ յաղթեցին Կորնթացւոց (432), իսկ Կորնթացիք դիմեցին առ Սպարտացիսն տրտնջելով զԱթենացւոցն, եւ վասն այնորիկ եւս՝ զի զՊոտիդէա զգաղթականութիւնն կորնթական հարկանէին պատերազմաւ յորժամ առ յուսացեալ ի Պեղոպոնեսեացիսն՝ չտայր հարկս Աթենացւոց։ Միւս եւս երրորդ ամբաստանութիւն նոցա այն էր՝ թէ զդորիացի տէրութիւնն Մեգարա՝ որ ի տուրեւառիկ վաճառաց ընդ Աթենացւոց եւեթ կեայր՝ մերժեցին Աթենացիք ի հաղորդութենէ նաւահանգստաց Ատտիկեայ իբրեւ ի պատիժ ապստամբելոյ նոցա ի նոցանէ։ Սպարտացիք սկսան սպառնալով իմն յորդորել զԱթենացիսն թողուլ զպաշարումն Պոտիդէայ,

տալ միանգամայն զազատութիւն կղզեաց եւ քաղաքաց զոր նուաճեցին, մանաւանդ զԻոնիացւոցն: Աթենացիք ետուն պատասխանի թէ պարտ է եւ Սպարտացւոցն զնոյն առնել, եւ թէ ոչ որ կարող է լինել Աթենացւոց հրամանատու: Այսու հետեւ երկոքին կողմանքն ընթացան ի զէնս եւ յօգնութիւն դաշնաւորաց իւրեանց: Ընդ Աթենացւոց միաբանեալ էին Թեսաղացիք, Ակառնանիացիք, կղզիքն Արքիպեղագոսի, Կորկիւրա, Զակինթոս, Քիոս, Սամոս եւ Լեսբոս, գաղթականութիւնքն որ էին յառաջակողմանն աշխարհին Ասիացւոց եւ ի Թրակիա եւ ի Մակեդոնիա: Ի կողմ Սպարտացւոց կային ամենայն Պեղոպոնեսացիք (բաց յԱրգիացւոց եւ յԱքայեցւոց) եւ յԱրտաքս՝ Բիովտիացիք, Փոկիս, Լոկրիս, Մեգարա եւ քաղաքք ինչ:

Յառաջին 10 ամն (431—422) յերկոցունց կողմանց քանդելով եւ աւերելով պատերազմն մղէր: Սպարտացիք ամ յամէ արշաւեալ յԱտտիկէ յարձակէին, ուր Աթենացիքն ըստ խրատուն Պերիկղեայ տային անդէն ի մէջ պարսպացն իւրեանց պաշտպանէին անձանց իւրեանց. բայց նաւուք եւս ամ յամէ ասպատակ եղեալ ապականէին զծովեզերսն Պեղոպոնեսացւոց: Այլ անդէն յերկրորդում ամի պատերազմին (430) եկն ժանտ ինչ անհնարին ի քաղաքին Աթենացւոց՝ զի խճողեալ էր մարդկամբ, քանզի զբազմութիւն շինականացն ամենայն ժողովեալ էր Պերիկղէս ի քաղաք անդր ի գործ պատերազմի. անկանէին հազարաւորք. ամենայն կարգք խանգարեցան եւ զայրացեալ ընկեցին զՊերիկղէս յիշխանութենէ: Թէպէտ եւ կոչեցին եւս զնա վաղվաղակի յետս՝ առնուլ միանգամայն զառաջնորդութիւնն ի բուռն, բայց յետ աշխարելոյ նորա զազգականս իւր եւ զորդիսն որ ընդ նոյն ժամանակս յախտէն վախճանեցան՝ ինքն եւս գնաց զհետ նոցա, եւ ընդ նմա անց գնաց փառաւորութիւն քաղաքին Աթենացւոց (429):

Ղեկին կացին յետ նորա ի խառնակութեան անդ ամբոխին ռամկավարք անձնասէրք՝ յորոց Կղէոն խաղախորդ գաւառ գոռոզագոյն քան զամենեսին: Առաջնորդութեամբ նորա առնէր պատերազմ առանց որոշելոյ՝ բազում անողորմութեամբ երկոցունց կողմանցն: Պղատէա՝ հաւատարիմ քան զամենայն դաշնաւոր քաղաքս Աթենացւոցն՝ առաւ եւ կործանեցաւ հիմնայատակ յետ սաստիկ կռուոյ, ամենայն այր պատերազմի կոտորեցաւ, կանայք եւ մանկունք ի գերութեան վարեցան: Բայց եւ Աթենացւոց յաջողեցաւ յետ սակաւ ինչ միոյ առնուլ զՊիւղոս (Նաւարին) եւ անդի օգնականութեամբ Մեսենիացւոցն եւ Հելոտաց փախուցելոց՝ ասպատակս աւերել սաստիկ զսահմանս Սպարտացւոցն: Զոր ջանային նոքա մերժել զնոսա. յետ մղելոյ զնոսա Աթենացւոցն՝ փակեցին 400 այր փաղանգ զերի յանապատ կղզւոյն Սփակտերիա (425):

Սոյն Կղէոն տուաւ պարծանս պատերազմի եւ ջանայր ամենայն զօրութեամբն արգելուլ զի մի դաշինք խաղաղութեան լինիցին։ Այլ երբեւ առ Դեղիոնիւ (յորում Սոկրատէս եւ Աղկիբիադէս զառաջինն առաքինացան) ամենեւին ի պարտութիւն մատնեցան Աթենացիք ի Բիովտացւոց, եւ զաղթականութիւնք նոցա ի Թրակիա չկարէին ունել զդէմ Բրասիդայ զօրավարի Սպարտացւոցն՝ տակաւ զօրացաւ կողմն ազնուականաց որ ընդ խաղաղութիւն կամէին, եւ գլուխ էր նոցա Նիկիաս մեծատունն եւ առատ։ Յայն սակս անդէն յետ յաղթութեան Սպարտացւոցն առ Ամփիպոլեաւ յորում Բրասիդաս անկաւ եւ Կղէոն ի փախստեան սպանաւ՝ եդան Նիկիական դաշինքն վասն 50 ամաց խաղաղութեան, պայման եդեալ՝ յերկուց կողմանց դարձուցանել զամենայն ի կարգն՝ որպէս էին յառաջ քան զպատերազմն (421)։

(Ի բազմագոյնս եւս յայլոց քաղաքաց Յունաց աշխարհին ընդ նոյն ժամանակս՝ մոլեգնեալ անկանէին ընդ միմեանս ազնուականացն եւ ռամկապետացն կողմանք. այլ ոչ ուրեք այնպէս ահագին եւ սոսկալի՝ որպէս ի Կորկիւրա, ուր ազգատոհմք ազնուականացն ամենեւին իսկ անհետ ջնջեցան. զի օգնականութեամբ Աթենացւոցն առ զնոսա ի բուռն ռամիկն, փակեցին զնոսա ի շինուածի ուրեք եւ ի վերուստ ի վայր քարկոծեալ սպանին։ — Ուր ուրեք յաղթէին Սպարտացիք՝ ազնուականք առնուին ի բուռն զիշխանութիւնն եւ պատժէին զհակառակորդսն իւրեանց մահու եւ վտարանդութեամբ. իսկ ուր Աթենացիքն տիրէին՝ անդ ռամկապետք առնուին զառաջնորդութիւնն եւ զնոյն անցս ընդ իւրեանց հակառակորդսն անցուցանէին։)

**271**

Սակայն չեղեն տեւական այն դաշինք խաղաղութեան։ Վասն այնորիկ՝ զի այն դաշինք կռեցան առանց հարցանելոյ զԿորնթացիսն, ի թշնամութիւն դարձան սոքա ընդ Սպարտացւոցն։ Մտին նոքա ի դաշինս ընդ Արգոսի, Եղիսայ եւ ընդ քաղաքաց ինչ Արկադացւոց՝ հանել զպարագլխութիւն Պեղոպոնեսացւոց աշխարհին ի ձեռաց Սպարտացւոցն։ Առաջին գործ առաջնորդութեան Աղկիբիադեայ էր՝ լինել նոցա ձեռնտու, զի այնպէս յանկուցեալ զնոսա ի կողմն Աթենացւոցն՝ առաւել իմն զօրութիւն իշխանութեան ունիցին ի Պեղոպոնեսոս Աթենացիքն։ Աղկիբիադէս քեռորդի Պերիկղեայ՝ պատանեակ 20ամեայ, կայտառ, հանճարեղ միտք, կրթեալ, ճարտարախօս քաջ եւ մեծատուն անհնարին՝ բաւական էր արդեւք վճարել զգործս Պերիկղեայ, եթէ էր նորա ընդ արտաքին եւ ներքին առաւելութեանցն այնոցիկ եւ ուղղագոյն խորհրդական հանդարտութիւն եւ սէր հայրենեաց՝ որ

զօրացեալ էր քան զնէր պարծանաց անձին իւրոյ։ Ընդէմ դատարկացաւ յոյսն զոր ունէր Աղկիբիադէս ի գժտութենէ անտի Պեղոպոնեսացւոցն՝ յորժամ յաղթեցին Սպարտացիք ի ճակատուն առ Մանտինեաւ (418)։

Յայլ իմն հնարս մտաբերէր այնուհետեւ Աղկիբիադէս. առ ի հաւան զԱթենացիսն երթալ առնուլ զՍիկիլիա, հաւանեցուցեալ նոցա թէ ձեռն տայցեն Սեգեստացւոց քաղաքին որ ի պատերազմի ուրեմն էր ընդ մեծազօր քաղաքին Սիրակուսացւոց, թէպէտ եւ հակառակ իմն խրատ տայր զօրավարն Նիկիաս եւ այլ եւս զօրավարք վարժք ի պատերազմ։ — Ինքն իսկ Աղկիբիադէս հանդերձ Նիկիաւ եւ Լամաքոսիւ առեալ տորմիղ նաւուց եւ զօրս՝ չոգաւ ի Սիկիլիա (415)։

Բայց այն ինչ սկսեալ անդ պատերազմին՝ Աղկիբիադէս յԱթէնս կոչեցաւ, գալ տալ պատասխանի ամբաստանութեանն որ զնմանէ էր, թէ զպատկերսն Հերմեայ յԱթէնս կործանեալ է։ Անսաց հրամանին. բայց զճանապարհայն պրծեալ գնաց ի Սպարտա, յանկոյց յինքն զժողովուրդն, եւ առ քինուն զոր ընդ Աթենացիսն ունէր՝ դրդեաց գրգռեաց զՍպարտացիսն քինել զօրաւիգն օգնականութեան Սիրակուսացւոցն։

Արգեամբք իսկ եղ զունդ մի զօրաւորութեամբ Գիւղիպպեայ նաւարկել ի Սիկիլիա, եւ փրկեաց զքաղաքն Սիրակուսացւոց (414)։ Թէպէտ եւ եհաս եւս Աթենացւոց զօրաւիգն օգնականութեան զօրաւորութեամբն Դեմոսթենեայ, բայց ամենեքին իսկ բեկան, առաւ տորմիղ նաւացն, անկաւ ի բուռն զօրն, զօրավարքն կոտորեցան եւ զօրականն իբրեւ զգերիս վաճառակուր եղեն կամ ի քարահատս առաքեցան. Նիկիաս եւ Դեմոսթենէս գլխատեցան ի Սիրակուսս (413)։

Այսպէս վատթարութեամբ գործն վճարեցաւ. ահ մեծ եւ երկեւղ էր յԱթէնս. ոչ զօրավար գոյր ի միջի եւ ոչ տորմիղ նաւուց, ժամ ի ժամ սպասէին Սպարտացւոցն գալոյ եւ զքաղաքն ջնջելոյ. մանաւանդ առաւել եւս զահի հարան, յորժամ Քիոս, Լեսբոս, Եւբիա եւ Միլետոս յետս կացին ի նոցանէ, զոր ապատիացի կալաւ զԴեկեղիա դղեակ յԱտտիկէ եւ արգել զամենայն երթեւեկ վաճառաց, ուր եւ Պարսիկք (առաջնորդութեամբ Տիսսափեռնեայ) ջանային միւսանգամ զքաղաքսն Յոնիացւոց առնել ընդ հարկաւ, եւ անամօթն Սպարտացիք մտին ընդ նոսա ի դաշինս առ վնասու հայրենի աշխարհին իւրեանց։ Նա եւ յԱթէնս եւս վնասակար խռովութիւնք գրգռեցան. զի կողմն ինչ սակաւապետութեան որոյ առաջնորդ Պիսանդրոս էր՝ ջանայր կործանել զսահմանադրութիւն ռամկապետութեանն։ Սակայն բանակաորք այնու զաւ՝ զի Աղկիբիադէս որ էր շունչ եւ ոգի գործոցն այնոցիկ, գժտեցաւ ընդ Սպարտացւոց. անկաւ փախստեայ առ

Պարսիկս եւ համոզեաց զնոսա չլինել այնուհետեւ ձեռնտու Սպարտացւոց (412)։ Վասն այնորիկ ողջ առին Աթենացիքն, եւ Թրասիբուլոս ոմն ի զօրավարաց նաւատորմղին նաւացն որ առ Սամոսիւ կային՝ եւս խորհուրդ կոչել զԱլկիբիադէս յետս։

Մինչ չեւ հասեալ նորա՝ առաքին Աթենացիքն յաղթութիւն երեւելի ի նաւամարտին կողմին առ Աբիդեաւ, եւ յետ սակաւ ինչ կատարեցին միւս եւս յաղթութիւն ի նմին վայրի օգնականութեամբ Ալկիբիադեայ (Յուլ. Սեպտ. 411)։ Ի գալ գարնանւոյն վանեալ վանէր Ալկիբիադէս զՊեղոպոննեսացիս եւ զՊարսիկս միաբանեալս ընդ նոսա առ Կիզիկեաւ, եւ առ զամենայն տորմիղ նաւացն Պեղոպոննեսացւոց (10 Մարտ 410)։ Նմին իրի միաբանեալ ձայնիւ ընդ հնազանդութեամբ Աթենացւոցն ամենայն կողմանքն որ ի բաց կացեալ էին ի նոցանէ. ապա եմուտ մեծաւ շքով Ալկիբիադէս յԱթէնս. արձանքն յորոց վերայ գրեալ կային յանցանք նորա՝ եղեն ընկեցիկ ի ծով, եւ էր նա միաբանեալ սիրելի ժողովրդեանն եւ կարգեցաւ սպարապետ զօրուն (408)։

Բայց չերկարեցաւ ուրախութիւնն։ Զի չկարաց Ալկիբիադէս ձգել ի կողմն Աթենացւոց զՊարսիկսն. այլ մանաւանդ թէ առաւել եւս պնդեցին նոքա զդաշնաւորութիւնն ընդ Սպարտացւոցն։ Յայն ատեն Կիւրոսն իսկ չոգաւ նաւուք հանդերձ առաջի Լիսանդրի. յորժամ հեռացեալ էր նա ի նաւաց անտի վասն կարեւոր ինչ իրիք՝ զերկրորդ զօրավար նաւացն եհար Լիսանդրոս սպարտացի (407)։ Վասն այնորիկ ընկեցաւ Ալկիբիադէս իբրեւ զօրավար թեթեւ մտօք, եւ ընտրեցան զօրավարք տասն, — որով անվրէպ իսկ խանգարի զօրն։ Իսկ Ալկիբիադէս չոգաւ ի Փոքր Ասիա։

Յայնմ հետէ արագ արագ սկսան վատթարել իրք Աթենացւոցն. թէպէտ եւ յաղթեցին առ Արգինուսեան կղզեօք եւ կալան զԿալլիկրատիդաս՝ որոյ տակաւին ինչ յառաջագոյն հարեալ էր զնոսա (406), բայց յետ յաղթութեանն այնորիկ կացին առաջի Եգոս Պոտամոսի առ Եղեսպոնտոս ծովու, եւ էին հանգուցեալ յանհոգս. յայնժամ յարձակեցաւ ի վերայ նոցա Լիսանդրոս եւ ի 180 նաւաց ապրեցաւ միայն Կոնոն 8 նաւուք (Դեկտ. 406)։ Ջնջեալ տապալեցաւ զօրութիւն Աթենացւոցն, եւ պահպանութիւն կամ աւեր քաղաքին նոցա ի կամս յաղթողացն էր։

## 272

Լիսանդրոս ի յաջորդ ամին հնազանդեաց նախ զամենայն դաշնաւորս Աթենացւոց, ապա նաւարկեալ հասանէր առաջի նաւահանգստին Պիրէայ, մինչ դեռ ի ցամաքը կուսէ պաշարէր զօրն զքաղաքն (405)։ Ապա ուրեմն առ սովոյն վտանգի սկսան աղաչել Աթենացիքն զի լինիցի խաղաղութիւն։ Տալ ետուն նոցա զխաղա-

ղութիւն, բայց այսպիսի ինչ պայման եդեալ թէ ամենայն նաւք պատերազմի տացին ի ձեռս բաց յերկոտասան նաւաց, ամուր արմունք նաւահանգստին կործանեսցին, եւ հրամանաւ եւեթ Սպարտիացւոցն կարիցեն տալ պատերազմ Աթենացիքն:

Առ վտանգի նեղութեանն յանձն առին Աթենացիք: Դուագօք սրնգահարաց ցնծութեամբ եւ ոտնհարութեամբ ի հիմանց քակեցան որմունքն, եւ իշխանութիւնն տուաւ ի ձեռս երեսուն արանց սակաւապետականաց՝ որք անուանեալ կոչեցան՝ 30 բռնաւորք, եւ ազգի ազգի բռնութեամբք հաստատեցին զիշխանութիւն իւրեանց ընդդէմ ռամկապետաց: Ապա խաղացին դաշնաւորքն իւրաքանչիւր յաշխարհ իւր, բայց թողին պահապանս սպարտիացիս (404): Յետ սակաւ ինչ միոյ Ալկիբիադէս ի բռնաւորացն հալածումն կրեալ ի Պարսկաստանի՝ ի ձեռն սպանողաց վախճանեցաւ, — անհետ եղեւ ընդ նմա վերջին յոյս Աթենացւոցն՝ ապրելոյ ի նեղութենէն:

Բայց սակայն գտաւ ոք փրկիչ ի բազմաց անտի որ վտարանդի մերժեալ էին յաշխարհէն, եւ էր Թրասիբուլոս. սա զփախուցեալսն ի մի վայր ժողովէր, առնոյր ի բուռն զՓիրէաս եւ յաղթեալ բռնաւորացն ի ճակատու՝ մտանէր յԱթէնս յետ հալածելոյ Սպարտիացւոցն նորոգել զպայման առաջնորդութեան Սոլոնի, եւ շնորհեալ անյիշութիւն յանցանաց՝ հաստատեցաւ կարգ եւ խաղաղութիւն ի քաղաքին (403): Այսպէս գտին Աթենացիք միւսանգամ զազատութիւնն, բայց առաջին մեծութիւնն եւ փառաւորութիւն չէր ի միջի, եւ ոչ դարձաւ իսկ երբեք: Թրասիբուլոս կեայր առանց իշխանութեան ի մէջ քաղաքացեացն որ շնորհակալութեամբ ունէին զնա:

## 273

Զօրապետութիւնն Սպարտիացւոց ուրախութեամբ ընկալաւ ամենայն աշխարհն Յունաց (404). բայց յետ սակաւ ինչ միոյ առաւել ծանրացաւ լուծ բիրտն Սպարտացւոց քան զիմաստուն եւ զկիրթ Աթենացւոցն: Եղեն նոքա սէգք եւ ամբարտաւանք. նեղէին զկղզիս եւ զքաղաքս ծովեզերեայս ծանր տուրօք. ամենայն ուրեք նենգութեամբ եւ բռնութեամբ զռամկապետութեան սահմանադրութիւնս բարձեալ՝ հաստատէին ազնուապետութիւն. ընչաւէտութիւնն որ անծանօթ էր նոցա՝ եմուտ յայնժամ եւ ապականեաց եղծ զբարս նոցա, նուաղեաց առաջին խստամբերութիւնն, եւ եղեն վաղվաղակի ամենեցուն ատելի եւ գարշելի: Դժին հակառակ Աթենացիք դարձան յանսանձ ռամկավարութենէ անտի, եւ կամէին ազնուականաց պետութեամբն առնել դարմանս չարեաց տէրութեանն: Այսպէս պատերազմն Պեղոպոննեսացւոց զհակառակութիւն այլակերպութեանն Սպարտիացւոց եւ Աթենացւոց նուաղեցոյց:

Նա եւ աղէրս Յունաց ընդ Պարսից փոփոխեցաւ պատերազմամն այնուիկ: Սպարտիացիք զօրաւիգն օգնականութեան լինէին Կիւրոսի Բ. կրտսերոյ մարտուցելոյ ընդ եղբօրն Արտաշիսի Բ. բայց Կիւրոս անկաւ ի ճակատուն, եւ միայն Քսենոփոն աթենացի ազատեաց զՍպարտիացիսն. զի ած նա զնոսա անվնաս յերեսաց ազգի ազգի վշտաց եւ նեղութեանց այսրէն յաշխարհն իւրեանց (401 — 400): Իսկ Արտաշէս խորհեալ առնուլ վրէժ կամէր միւսանգամ նուաճել զՅոյնս որ ի Փոքուն Ասիա էին (400): Սոքա խնդրեցին օգնականութիւն ի Սպարտիացւոցն. անդէն քաջն եւ խոստամբեր թագաւորն Սպարտիացւոց Ագեսիղաւոս (ընդ որում եւ Քսենոփոն էր) խորտակեաց զՊարսիկս մօտ ի Սարդս՝ խաղացեալ անցանէր ասպատակաւ ընդ Բիւթանիա եւ ընդ Փռիւգիա, մինչեւ դեդեւէր իսկ եւ աթոռ թագաւորութեանն Պարսից (396 — 394):

Բայց անդէն գրգռեցին միաբանեցին ոսկւոյ կաշառաւ զԿորնթացիս, զԹեբացիս եւ զԱրգիացիս, յորս յարեցան եւ Աթենացիք եւ Թեսաղացիք՝ ի մարտ պատերազմի ի վերայ Սպարտիացւոց: Այսպէս գրգռեցաւ միւս եւս պատերազմ ներքին. զոր ճեպեաց Լիսանդրոս ի Բէովտիա՝ սաստկութեամբ պատերազմի հանել զդաշնաւորութիւնն ի դերեւ. առ Հալիարտաւ անկաւ ի կենաց եւ ի յաղթութենէ: Յայն սակս Ագեսիղաւոս անդէն ի ժամանակի աշխարհակալութեանցն իւրոց կոչեցաւ յետս փութանակի (394): Ընդ Կորոնէաւ յաղթեցին Սպարտիացիք ի ցամաքի զօրավարութեամբն Ագեսիղայ, բայց ատորմիղ նաւաց նոցա առ Կնիդեաւ ի պարտութիւն մատնեցաւ ի նաւացն Աթենացւոց եւ Պարսից որոց զօրավար Կոնոն էր: Կոնոն առեալ արծաթ ի Պարսից շինեաց միւսանգամ զպարիսպս քաղաքին Աթենացւոց եւ յարոյց միւսանգամ զզօրութիւն նորա. ամենայն քաղաքք Ասիոյ եւ կղզիք մտին ընդ պաշտպանութեամբ Աթենացւոցն (յամի իբրեւ 393):

Այս ուրեմն վախճան լինէր այսր (կորընթական) պատերազմի՝ յորժամ Սպարտիացիք առ խանդաւորութեան եւ վասն անձանցն իսկ փրկութեան եղին զամօթալից դաշինսն խաղաղութեան ի ձեռն Անտալկիդայ ընդ Պարսից. թողին նոքա ի բաց զիրս Յունացն ասիացւոց՝ որք մտին միւսանգամ ընդ իշխանութեամբ Պարսից համերձ կղզեաւն Կիպրացւոց. բայց առին եւ ի նոցանէ խոստումն վասն ազատութեան Յունացն եւրոպացւոց, այնպէս զի իւրաքանչիւր տէրութիւն ուրոյն եւ առանձինն իցէ եւ ոչ ընդ իշխանութեամբ (387): (Զառաջինն յայսմ պատերազմի ստարին Աթենացիք սկիզբն վարելոյ վարձկան զօրաց. եւ յայնմ հետէ տակաւ սկսան քաղաքացիքն մոռանալ զհրահանգս զինուց, որով փութանակի իսկ զազատ սահմանադրութիւնն ետուն վտանգի:) Թեբէ եւ այնպիսի դաշամբք խաղաղութեան եղծաւ Ընկերա

ամենայն պտուղ երեւելի երեւելի յաղթութեանցն Յունաց. բայց չէր ինչ այն մեծասակար Սպարտացւոցն, զի էր իսկ մերձ նոցա իշխանութիւն վերադոյն ի վերայ համօրէն Յունաց աշխարհին, զոր վարէին իսկ մեծաւ անիրաւութեամբ։

## 274

Ընդէն ի խաղաղութեանն ժամանակի յարձակեցան Սպարտացիք ի վերայ քաղաքին Թեբացւոց լինել օգնական Սակաւապետացն ընդդէմ ռամկապետութեան, գրաւեցին կալան զամուրն Կադմէա եւ զերեւելիս ի քաղաքացւոց հանեալ մերժեցին ի բաց (382)։ Ի մերժելոցն մի ոմն եւ Պելոպիդաս էր՝ այր ազնուական. սա միաբանեցաւ ընդ այլոց արանց մետասանից ժողովելոց յԱթէնս ազատեցուցանել զքաղաքն. սպրդեալ մտին ի հանդերձս շինականաց ի քաղաքն եւ զգլխաւորս Սակաւապետացն ի հացի կոտորեցին. ստիպեցան այնուհետեւ պահապանքն Սպարտացւոց տալ ի ձեռս զամուրն, եւ կարգեցաւ ռամկապետութիւն նոր ի քաղաքին, այս ինքն երեք Բէովտարքք, երկուք ի նոցանէ էին Պելոպիդաս եւ նորին բարեկամ Եպամինոնդաս (378)։

Յետ այնորիկ տուեալ հանապազորդ պատերազմ ընդ Սպարտացւոց վասն քաղաքին պաշտպանելոյ, հաստատեաց ամրացոյց զիշխանութիւն քաղաքին Թեբացւոց ի վերայ Բէովտիայ, եւ զԱթենացիս եւս յարեցոյց յինքն (378—376)։ Ապա ուրեմն միջնորդ ի մէջ անկանելով Պարսից՝ լինէր առհասարակ խաղաղութիւն, զոր եւ ընկալան իսկ Յոյնք թէ միայն կայցեն մնայցեն ազատ՝ քաղաքքն Յունաց (372)։ Միայն քաղաքն Թեբացւոց չառնոյր յանձն զդաշինսն, չկամեցեալ լինել ընդ այլոցն իշխանութեամբ։

Եհաս իսկ եւ իսկ արքայ Սպարտացւոց Կղէոմբրոտոս 11,000 արամբ ի Բէովտիա. հազիւ հազ թէ 6000 այր կարէին հանել ընդ առաջ Թեբացիքն, բայց առաջնորդէր նոցա իմաստունն Եպամինոնդաս։ Առ Լեւկտրօք ընդ միմեանս բախէին ճակատքն երկոքին. յետ արեանց բազմաց առնոյր զյաղթութիւնն՝ սեպաձեւ ճակատն Թեբացւոց (որ էր գիւտ Պելոպիդայ) եւ Նուիրական գունդն ընտիր ընտիր արանց ջերմ բարեկամութեամբ ընդ միմեանս կապելոց (զոր էր հնարեալ Եպամինոնդայ). անկան պարծանք քաջութեան Սպարտացւոցն եւ յառաջահաս իշխանութիւնն սպարապետութեան (8 Յուլ. 371)։ Յառաջինն յայսմ ճակատու էին փախստեայ Սպարտացիքն, եւ այն այնչափ բազմութեամբ՝ զի Ագեսիղաւոս այրն վրէժխնդիր պահպանութեան հին օրինացն Սպարտացւոց՝ խրատ ետ զի "զայս նուագ ննջեսցեն օրէնքն„ (որ զփախստեայն հրամայէին համարել վատանշան եւ զրկեալ ի զէնուորութեան իրաւանց)։

Այս յորձանկէին անկանէին Եպամինոնդաս եւ Պելոպիդաս ի տաճկանս Պեղոպոննեսացւոց եւ բազումք եւս զայլն յարէին ի նոսա. հասանէին մօտ յանպարիսպ քաղաքն Սպարտիացւոց՝ որ ի 500 ամաց հետէ չէր տեսեալ առաջի իւր թշնամի. միայն արութիւնն ծերոյն Ագեսիղայ եւ պատրաստութիւն քաղաքացեացն հանդերձ կանամբք եւ մանկունովք՝ ապրեցուցին զՍպարտա, եւ խորեւ յԱթենացւոց եւս առաքեցան թիկունք օգնականութեան Սպարտիացւոցն՝ դարձան Թեբացիքն յետս՝ յետ աւեր եւ անապատ զերկիրն առնելոյ եւ զՄեսենէ միւսանգամ կանգնելոյ եւ տալոյ ի ձեռս զաւակի հնոցն Մեսսենիացւոց (369): Այնուհետեւ Պեղոպիդաս դնէր արշաւանս ի Թեսաղիա՝ կոչեցեալ ի ժողովրդենէն նեղելոյ ի բռնակալաց, եւ յետ լուծանելոյ զզօրութիւն աթոռակալութեան տան Թագաւորացն Մակեդոնիայ՝ առեալ տանէր ընդ իւր զարքայորդին զպատանին Փիլիպպոս եւ 30 պատանիս յազնուականացն Մակեդոնացւոց (368), սակայն յերկրորդումն արշաւանին անկաւ ի Թեսաղիա (364):

Բայց իմաստունն Եպամինոնդաս հանդարտութեամբ ջանայր հանել ի մեծութիւն զԹեբէս՝ սկիզբն արարեալ կազմելոյ իւրեանց զօրութիւն նաւական (365): Յայն սակս իսկ նախանձեալ գրգռեցաւ ընդ նոսա ամենայն աշխարհն Յունաց, մինչեւ ընդ Սպարտիացւոց միաբանեցին ի դաշնաւորութիւն Աթենացիքն՝ որք սակաւիկ մի ինչ յառաջագոյն օգնական լինէին Թեբացւոց՝ միաբանեալ Սպարտիացւոցն ընդ ծով եւ ընդ ցամաք ի ձեռն զօրավարացն իւրեանց Իփիկրատեայ, Քաբրիայ եւ Տիմոթեայ՝ որդւոյ Կոնոնի:

Իսկ Եպամինոնդաս զի կանխեսցէ յառաջ քան զթշնամիսն՝ դիմեաց ի Պեղոպոննէսոս, եւ կամէր ինքն ի վերայ Սպարտիացւոց քաղաքին յարձակել. երկրորդ անգամ փրկեցաւ քաղաքն ի ձեռն Ագեսիղայ որ 80 ամաց էր: Այս գնացին յԱրկադիա Թեբացիքն. անդ գրգռեցաւ սաստիկ մարտ պատերազմի առ Մանտինեաւ. եւ զայս եւս նուագ յաղթեցին Թեբացիք, բայց զինք յաղթութեանն էր Եպամինոնդաս, անկաւ նա ի ճակատուն քաջութեամբ հարեալ ի նետէ՝ զոր ետ հանել յետ զյաղթութիւնն լսելոյ (12 Յունի. 363). անկաւ ընդ նմա եւ առաջապետութիւն քաղաքին Թեբացւոց, որոյ սկիզբն լեալ էր յամէ 371: — Ի յաջորդ ամի պատերազմին այնորիկ վախճանէր եւ Ագեսիղաոս 80ամեայ, որ ետես զժամանակ ամենեւին բարձրանալոյ Սպարտիացւոցն եւ զամենեւին կործանելոյ:

### 275

Այնուհետեւ Թեբացւոց եւ Սպարտիացւոց եւ Աթենացւոց զրեթէ հաւասար ինքն ճոխութիւն էր, նա առաւել եւ ամենայն իսկ աշխարհն Յունաց մանր մանր ինչ տէրութեամբք անջատե-

լովք ի միմեանց՝ նման էր մարմնոյ քայքայելոյ փտտալատելոյ: Թէպէտ եւ Աթենացիք՝ վասն զի զկղզիսն ունէին եւ զօր եւս կրթեալ եւ վարժ զօրավարս, առաւելագոյն իմն էին քան զերկոսինան եւ սկիզբն առնէին նորոգ հաստահարելոյ զդաշնաւորսն, այլ յետ երեքամեայ պատերազմի (358—356) ստիպեցան տալ նոցա ազատութիւն, զի սպառնալ իմն սկսաւ Արտաշէս Գ․ արքայ Պարսից:

Բայց արդեամբք ոչ ի Պարսից ինչ այնչափ կայր երկեւղ ի վերայ, այլ ի կողմանց Մակեդոնացւոց: Զի ի տեսանել նոցա թէ աճէ զօրութիւն Մակեդոնացւոցն՝ փոխանակ գնելոյ անագան ուրեմն միաբանելոյ ընդ միմեանս, միւսանգամ դարձան Յոյնք ի 10ամեայ քաղաքային պատերազմ (356—346), որ Մեհենական կամ Փոկիական պատերազմն կոչի:

Փոկիացիք՝ որոց պատերազմ իմն էր ընդ Թեբայեցւոց, օգնականութիւն ի Սպարտացւոց գտեալ, արկին ձեռս ի գանձս մեհենին եւ նովին վարձեցան գունդս՝ ցրուեալ զսպասսն ոսկիս եւ զանազան որ անդ կային: Վճիռ ելեալ յԱմփիկտիոնաց յանձն եղեւ Թեբայեցւոց երթալ կշտամբել զՓոկիացիսն պատերազմաւ: Իբրեւ տկարացան իմն Թեբայեցիք եւ չէին ձեռնհաս ընդդէմ թշնամեացն՝ յետուստ ուրեմն կոչեցին զՓիլիպպոս թագաւոր Մակեդոնացւոց յօգնականութիւն պատերազմին:

Իսկ Փիլիպպոս յետ յերկարագոյնս ընդդէմ դառնալոյ նմա Աթենացւոցն՝ ապա յետ դաշանց եղելոց ընկալաւ համարձակութիւն մտանել յաշխարհն Յունաց (347), հան ի գլուխ զվճիռ Ամփիկտիոնացն, եւ զՓոկիացիս հանեալ ի միջոյ Ամփիկտիոնացն՝ ընկալաւ աթոռ եւ քուէ ի խորհրդեան նոցա: Այսպէս ինքեանք Յոյնքն հարթեցին զճանապարհն նուաճելոյ նոցա ընդ Մակեդոնացւովք (346), եւ նուաճեցան իսկ ամենեւին յամի 338:

Չէին այնուհետեւ բաւական Յոյնք խորտակել զլուծն իբեանց. եղծապարծ ապականութեամբ վարուց եւ թուլութեամբ եղեն յայնմ հետէ անարժան ազատութեանն՝ որ միայն առաքինութեամբ, յստակ եւ անպաճոյճ կենօք կայ ի հաստի: Թեբայեցիքն արբեցողք եւ որովայնապարարք էին: Աթենացիք՝ ի ցոփութիւն հատեալ եւ զհասս տէրութեանն ի դատարկ հանդէսս խաղալկացն ծախէին: Ի մէջ Սպարտացւոցն շահեալ տիրեալ էր ընչից անհաւասարութիւն, յորմէ հետէ (օրինօքն Եպիտադեայ 400—350) յայտ արարաւ թէ ինչք տէրութեանն իցեն այսուհետեւ սեպհական ինչք իւրաքանչիւր, եւ թէ համարձակ է իւրաքանչիւր ումեք զիւր ստացուած կամ զբաժին [1] ըստ կամաց տալ ժառանգութիւն կամ պարգեւ:— Մանաւանդ եղծաւ ամենայն սէր հայրենեաց եւ արութիւն քաջութեան, յորմէ հետէ սկիզբն եղեւ եւ յաճախեաց տակաւ սովորութիւն վարելոյ վարձկան զօրաց:

1 Κλῆρος.

Մատենագրութիւն եւ արուեստ Յունաց:

## 276

ԸՆԴ այսր պատմութեան քաղաքային կենաց որ առաւ ուրեմն ապաւէ՝ ընթանայ պատմութիւն մտաւոր կենաց նոցա, այս ինքն՝ ուսմանցն հրահանգք՝ որք խաղքանէ մինչեւ ցկատարած՝ էին գիրկընդխառն ընդ քաղաքային անցիցն Յունաց: Որպէս ի բնակութիւնս իւրեանց, ի ցեղս, ի պայմանս վարչութեան եւ ի բարս՝ նոյնպէս յարուեստս եւ ի շաւիղս մտածութեան յունական ոգւոյն՝ մեծ իմն այլակերպութիւն եւ պէսպէս գունակք նշմարին. այլ ամենեցուն հասարակաց եւ գրեթէ անհաղորդական իմն է խոլամտութիւն գեղեցկութեան, այն որ յանօթոյ անտի բերան մինչեւ ցՈղիմպիականն Հոմերայ՝ շողայ ի վերայ գործոց ձեռաց եւ մտաց նոցա: — Գեղեցկութիւնն՝ որ է միաւորութիւն տեսլականի [1] եւ իրականի [2], երկուս իմն մտաւոր կազմիչս ունի՝ զտեսիլն եւ զնմանութիւն նորա, որոց հարկ է ամենեւին ներսուի եւ խորագոյնս ի միմեանս երբեւ ոգի եւ մարմին ընդմտանել. մինչ զի եթէ մի մասնն, որպիսի ինչ՝ տեսիլն պակասիցէ, մնացեալ ինչ եւ անկենդան կայցէ առաջի, ապա թէ միւս մասնն՝ նմանութիւնն կամ զգալին՝ յայնժամ վերացեալ ինչ եւ խորհուրդ լոկ երեւի: Այսպէս երկոքին միաբանութեամբն՝ զգալին եւ մտաւորն ի ձեռագործի արուեստին արատին ի միմեանս խառն ընդմտանել. եւ որչափ յաջողիցի արուեստագիտին զտեսիլն զոր յանդիմանն կացուցանելոց իցէ՝ ի նմանութեանն եւ ի պատկերի նշմարեցուցանել եւ զերկոսին ի մի միութիւն կապել (որպէս այր քանդակագործ՝ որչափ կարիցէ աւելագոյն հիւսել ընդ մարմարիոնին զտեսիլ մտաց իւրոց), այնչափ գեղեցիկ իրքն լինիցին:

Այլ քանզի տեսիլքն յայլ եւ այլ իմն կերպարանս գան յերեւոյթ՝ ի բան կամ ի ձայն, ի գոյն, ի պղինձ կամ ի վէմ՝ առաջադրին առանձինն արուեստք առնուն ծագումն, այս ինքն՝ Բանաստեղծութիւն [3], Երաժշտութիւն [4], Նկարչութիւն [5], Պատկերագործութիւն [6] եւ Ճարտարապետութիւն [7]: Ի պատկերագործութեանն՝ արուեստն տակաւին ընդ բիրտ նիւթոյն ոգորի եւ գեղեցկութիւնն աւելի իմն ընդ դանդաղ զանգուածոյն կապեալ է, ուր ի նկարչութեան՝ նիւթն յազնուականագոյն փոխեալ է: Բայց եւ առ տակաւին ընդ երեւելի կերպարանացն կապեալ է. այլ երաժշտութիւն ի սահմանս լսելոյ ներքնոյ փոխէ զմեզ, զի նկարէ նա զխորագոյն շարժմունս ոգւոյն ձայնիւք՝ առանց որոշեալ ինչ կերպարանս

1 Idéal.
2 Réal.
3 Poésie.
4 Musique.
5 Peinture.
6 Plastique.
7 Architecture.

նոցին տալոյ: Իսկ զվերջինն եւ զբարձրագոյն աստիճան ունի բանաստեղծութիւնն. զի եթէ երաժշտութիւնն միայն զաւանց կերպարանաց զմիախառն զգայմունս ազդեցուցանէ, եւ նմին հակառակ գեղեցիկն արուեստք (պատկերագործութիւնն եւ նկարչութիւն) միայն զմիախառն կերպարանս երեւեցուցանեն, բանաստեղծութիւնն միաբանեալ ունի զերաժշտական զչափն հանդերձ նկարչական իմն եւ պատկերագործական նկարագրաւ:

## 277

### Բանաստեղծութիւն եւ Երաժշտութիւն:

Բանաստեղծութիւն բաժանի՝ 1. ի Վիպականն՝[1] յորում յանդիմանակացական[2] իրք՝ դէպք արտաքինք անցանեն ի հանդէսի, 2. ի Քնարականն՝[3] որ առաւել անձնական[4] իմն է, այնու զի զներքին ինչ զգացումն իւր ցուցանէ պուէտն՝ զուրախութիւնն կամ զցաւսն, 3. ի Թատերագործականն՝[5] որ զյանդիմանակացականութիւն Վիպականին եւ զանձնականութիւն Քնարականին ամփոփեալ ի միութիւն, այս ինքն՝ ցուցանելով զներքինն արտաքին դիմօք՝ ունի կատար բարձրութեան Բանաստեղծութեան:

ՎԻՊԱԿԱՆ բանաստեղծութիւն Յունաց: Թրակացի բանաստեղծութիւն հնոցն Գեղասացաց (առ Որփէաւ, Մուսէոսիւ, Պամփոսիւ, Եւմողպաւ) քնարական եւ կրօնական իմն երգք էին քրմաց, օրհնեալ նոքօք եւ կարգեալ զաստուածսն՝ մնացին ի խորհրդոցն ժամու: — Այլ յետ մերժելոյ Գեղասացացն՝ առ դիւցազանքն Յունաց սկիզբն առնոյր Վիպականն բանաստեղծութիւն. իշխանք եւ դիւցազունք փոյթ ի վերայ ունէին երաժշտութեան եւ երգոց. բանաստեղծք այսր անդր շրջէին եւ քնարիւ եւ երգովք զտօնս տարեկանաց մեծատուն թագաւորաց փառաւորէին եւ մեծարեալ պատուէին իբրեւ Մուսայից սիրելիք. մեծ իմն եւ արժանի նախանձու համարէին դիւցազունք՝ լինել հռչակեալ յերգս վիպասանաց:

1. Հոմերոս: Զարմն վիպական բանաստեղծութեան տարան զաղթականքն ի մայր երկրէ անտի իւրեանց ի Փոքր Ասիա. անդ ի գեղեցիկ երկրին ընդ պայծառ եւ ջինջ երկնիւ ի մէջ առեւտրից եւ զուարթագին բնակչացն յայնպիսի իմն կատարումն եհաս վիպական բանաստեղծութիւն՝ յոր ցայժմ չեղեւ հնար հասանելոյ: Ամենեւին բարձրագոյն կատար նորա Հոմերոս է (1000—950), ըստ զրուցաց՝ կոյր աչօք. այնչափ անյայտ են կեանք նորա, զի անդէն առ հնովք եւթն քաղաքք կռուէին թէ ինքեանք ծնեալ զնա: Այլ հաստատակաց իմն կարծիք են թէ ի Յոնիա գրեալ իցեն երգք նորա, զի անդր իմն ատագհական է նիւթ զրոցն նորա եւ չափն

1 Épique. 2 Objectif. 3 Lyrique. 4 Subjectif. 5 Dramatique.

(ստեղնեան վեցաչափի[1]), եւ թէ քաղաք ծննդեանն Հոմերայ կամ Քիոս լեալ իցէ, եւ կամ առաւել հաւանութեամբ՝ Զմիւռնիա: Սակայն ազգի ազգի կարծիք կան վասն ծագմանն եւ պահպանութեան գրոց նորա, այնու զի յայնժամ գիր եւ դպրութիւն ի Յունաց աշխարհին տակաւին անծանօթ էր. եւ յայն սակս իսկ յետուստ ուրեմն մարթ էր արկանել զնոսա ընդ գրով: — Ասեն (որպէս Վոլֆ փիլիսոփոս գերմանացի) զՀոմերական երգսն չհամարին միոյ միայնոյ մեծի պուետէի ծնունդ, այլ ծնունդս յոնիական ինչ դպրոցի երգեցկաց, որք ընդ դարս ինչ բերան ի բերանոյ աւանդեալ եւ ի հագներգուաց[2] այսր անդր շրջելոց ածեն ի նուագս, մինչեւ Պիսիստրատոս ետ ժողովել զնոսա եւ արկանել ընդ գրով: Սակայն այլք հայեցեալ ի միութիւն եւ ի միակերպն հաւասարութիւն գործոյն (մանաւանդ Ոդիսականին) չհաւանին յանձն թէ բազմաց գործ լեալ իցէ, եւ այնպէս կամ ըստ հնոցն հաւատան թէ այն ամենայն ի Հոմերայ է, եւ կամ ի Հոմերոսէ ուրեմն է զառաջինն յօրինեալ եւ յետոյ ի հագներգուաց անտի ի բերանոյ առանց գրոյ առեալ ի կիր, եւ այնպէս բաժանեալ եւ անջատեալ մասանցն՝ յետոյ ուրեմն ի Պիսիստրատեայ ի մի բովանդակութիւն ամփոփեցաւ: — Զայս վերջին կերպարանս զոր այժմ ունին երգքն Հոմերականք՝ ընկալան առ ժամանակօք Աղեքսանդրիական ուսմանց, մանաւանդ ի ձեռն Արիստարքեայ մեծի Քննչի: Գլխաւոր գործքն են Իլիականն եւ Ոդիսականն: Իսկ անուանեալ Պատերազմն գորտոց եւ մկանց[3] յորում նկարին կռիւք նոցա ի նմանութիւն պատերազմաց Յունացն եւ Տրովացւոցն դիւցազանց, եւ այլ եւս ինչ Օրհնութիւնք չհամարին գործք Հոմերայ, այլ առաջինն թուի լեալ գործ յոնիական դպրոցի պուետաց (յամի իբրեւ 500), եւ վերջինքն պատրաստութիւն ինչ որովք սկիզբն առնէին երգեցիկք ասելոյ հրապարակաւ զՀոմերական երգսն: — Երգքն Հոմերականք որ ի վերայ հրահանգաց Լիւկուրգեայ գործեցին ազդեցութիւն մեծ՝ անսպառ ինչ աղբեւր էին վասն արուեստի եւ բանաստեղծութեան Յունաց: Յետ անկանելոյ նոցա ընդ գրով՝ տպաւորեցան յուշ յիշատակի մատաղ մանկտւոյ, եւ լինէին զարթուցիչք տոհմային մտաց, սիրոյ հայրենեաց, կրօնից եւ խելամտութեան գեղեցկութեան. համարեալ էին Յունաց իբրեւ հայելի համօրէն տոհմային առանձնական սեպհականութեանն իւրեանց, դիւցազնական զօրութեան, որպէս եւ նենգութեան եւ խորամանկութեան: Յետինքս զարմանամբ ընդ յայտնութիւնն եւ ընդ կենդանի ճշմարտութիւն, ընդ միախառն չափակցութիւնն, ընդ պայծառութիւն արուեստական իմացութեան որ միաբանեալ է ընդ անպաճոյճ պարզութեան եւ ընդ յաճախութեան ցնորիցն զօրութեան:

1 Hexamètre dactylique. 2 Rhapsodes. 3 *Βατραχομυομαχία.*

Բովանդակութիւն գրոցն: Իլիականն սկիզբն առնու պատմութեամբն Աքիլլեայ: Աքիլլէս կրեալ անհնարին թշնամանս յԱգամեմնոնեայ՝ չկամեցեալ պատերազմել՝ մնայ անդէն ի նաւսն իւր մրմնջեալ ցասմամբ: Յայն սակս Տրովացիքն առաջնորդեալ ի Հեկտորայ զօրանան, հասեալ անկանին ի վերայ բանակի Յունաց (Աքայեցւոց, Դանայեցւոց) եւ արձակեն հուր ի նաւսն: Յայնժամ ապա թոյլ տայ Աքիլլէս բարեկամին իւրում Պատրոկղի իւրովք իսկ սպառազինութեամբք երթալ կռուել ընդ Տրովացւոց. յառաջնումն յաղթէ Պատրոկղոս, բայց յետոյ անկանի առաջի զօրութեանն Հեկտորայ՝ որ հանէ ի նմանէ զսպառազինութիւնն: Միջնորդ լեալ մօրն Աքիլլեայ որ էր Թետիս կիսաստուած ծովու՝ ընկալաւ Աքիլլէս մեւս եւս նոր սպառազինութիւն եւ վահան մի զարմանալի ի դարբնոցէն Հեփեստեայ. Նովին յարձակի անկանի մեծաւ քինու ի մէջ թշնամեացն, հարկանէ զՀեկտոր եւ զդիակն նորա կապեալ զկառաց իւրոց ընդ քարշ արկեալ ձգձգէ զշիրմաւն Պատրոկղեայ: Այլ իբրեւ ծերունի թագաւորն Պրիամոս զհատարակ գիշերաւ գայ ի վրան անդր Աքիլլեայ մեծաւ պատարագօք՝ առնուլ զնոյն զդիակնն որդւոյն սիրելւոյ, տայ յայնժամ զնա Աքիլլէս հօրն վշտացելոյ՝ զի թաղեսցի:

Ոդիսականն է զանցից, զվշտաց եւ զպատահմանց զոր կրեաց Ոդիսեւս ի դառնալ իւրում ի տուն յետ տրովական պատերազմին՝ յարեւմտեան ծովուն որ ոչ հարի ծանօթ էր, եւ յայն սակս ահագին եւ երկեցուցիչ մնաց: Վարեալ անկանի նա ի մերձ յարեւելեան ծովեզերսն Սիկիլիայ յերկիրն Կիկղոպայց, ուր միակնն Պոլեփեմոս որդի Պոսիդոնեայ վեց այր յընկերաց նորա եկուլ, եւ ինքն եւս Ոդիսեւս հանդերձ մնացելովք ընկերօքն հազիւ հազ խորէութեամբ յայրէ անտի սկային այնորիկ կարաց ապրանել՝ կուրացուցեալ զակն նորա զմին: Մեծ իրի իսկ ցասմամբ զհետ պնդեալ էր նորա Պոսիդոն. բայց օգնականութեամբ Եւողայ հողմոցն աստուածոյ՝ որ զձախող հողմսն կապեալ արկեալ ի տիկ եւ ի ձեռս նորա, եհաս մօտ յԻթակէ: Անդ բացին քննասէր ընկերքն նորա զտիկն, եւ այնպէս նաւքն միւսանգամ անդր քան զՍիկիլիա ցմարդակեր Լեստրիգոնսն երթեալ հասանէին: Միով եւեթ նաւու ապրեալ ելանէ Ոդիսեւս ի կղզի Կիրկեայ վհուկ կնոջ, անդ կայ ամ մի եւ իջանէ ի սանդարամետս հարցանել զմարգարէն Տիրեսիաս վասն դարձի իւրոյ ի հայրենիսն: Նա յայտ առնէ նմա թէ յառաջ քան զամենայն՝ պարտ եւ պատշաճ է խնայել եզանց եւ ոչխարացն նուիրելոց Հեղիոսի ի Տրինակրիա կղզւոջ (ի Սիկիլիա): Խորագիտութեամբ իմն յաջողի նմա անցանել զկղզեաւն յուշկապարկաց մոմով ծեփեալ զականջս ընկերացն եւ տուեալ կապել զինքն զկայմիւն. անց յաջողութեամբ եւ ընդ կիրճս ծովուն Սիկիլիացւոց, ուր աստի Սկիւղղա եւ անտի Քարիբդիս՝ ընդդէպ մարդակերք վեց այր յընկերաց նորա յափշտակեցին. բայց ապա բռնադատեցաւ յընկերացն ելանել ի Տրինակրիա, ուր ընկերքն զեզինսն Հեղիոսի պատառեցին եւ կերան եւ այնպէս նաւն ի փայլատականց փշրեցաւ եւ անօրէնքն այնոքիկ հեղձան ի ջուրսն: Ոդիսեւս միայն ապրեալ ի վերայ տախտակացն խորտակելոց ել յՈգիւգիա կղզի առ Կաղիփսոյ նիմփէ, որ հարաւ իսկ զսիրով նորա եւ խոստացաւ նմա անմահութիւն թէ միայն առ իւր մնասցէ: Բայց նա զանձուկ հայրենի աշխարհին եւ զիւրայոցն չկարէր հեղձուցանել. արտասուօք ցանկայր գոնեայ զծուխ ծխանաց Իթակայ տեսանել ի վեր ծառացեալ: Կաց մնաց նա անդ ամս եւթն. ապա բռնադատեցաւ Կաղիփսոյ

Հրամանաւ Արամազդայ արձակել զնա. շինէ Ոդիսեւս իւր նաւ, եւ մտեալ ի նա գնայ ի բաց. յետ ութեւտասն աւուրց աղբ. լինի Պոսիդո-նեայ եւ խորտակէ մանր զնաւն, իսկ Ոդիսեւս ելանէ մերկ ի ծովեզերսն երկրին Փէակացւոց (Կորկիւրայ), ուր գտանէ ժողովուրդ ինչ մեծատուն հանգիստ ի խնճոյս, յերգս նուագարանաց եւ ի կաքաւս. գտանէ զնա դուստր թագաւորին եւ տանել ածէ ի տուն հօր իւրոյ, եւ յետ ըն-դունելութեան տանին զնա յԻթակէ նաւաւք որ արագ քան զհողմս թռչեն: Անդ հասեալ յետ 20ամեայ պանդխտութեանն ի մնուրականաց կերպարանս՝ ազատեաց զտուն իւր յարանցն ամբարտաւանից որ կամէին առնուլ զհաւատարիմ կինն նորա զՊենեղոպէ կնութեան, բայց նա խո-րագիտութեամբ հեռացուցանէր զնոսա, որք եւ ստէպ խրախութեամբ սպառէին զինչս եւ զարարսն Ոդիսեայ: Քանզի Պենեղոպէ կարգեաց մրցութիւն նետաձիգ լինելոյ, զի որ յաղթիցէ՝ նմա լինիցի հարսն: Ընդ նոսա էր եւ մնուրականն՝ որ հասոյց ի նպատակ անդր աղեղամբն՝ զոր նա միայն կարող լարել, եւ օգնականութեամբ որդւոյն եւ ծերոյ ուրուք տան հովուի սպան զարան զայնոսիկ զամօրէնս:

2. Հեսիոդոս: Յետ Հոմերայ՝ դպրոց երգեցկաց Հոմե-րեանցն յօրինէր Վիպասանութիւնս[1] ըստ նոցին նմանութեան, առեալ նիւթ ի զրուցաց դիւցազանց տրովական պատերազմին (որպիսի ինչ՝ պատերազմն Աքիլլեայ ընդ Ամազոնաց՝ որ դշխոյիւ իւրեանց Պենթեսիլեաւ եկեալ էին ի թիկունս օգնականութեան Տրովացւոցն), եւ իբրեւ այն նիւթ սպառեցաւ՝ բուռն հարին այ-նուհետեւ անուանեալ Կիւկղեան բանաստեղծքն զայլոց իմն ա-ռասպելաց դիցն եւ դիւցազանց, զի եւ զնոսա նոյնպէս ըստ նմին չափոյ (վեցաչափ) ընծայեցուցանիցեն իբրեւ վէպս: Նա առանիկ եւ փիլիսոփայական իմն վարդապետութիւնք վասն սկզբան եւ ծագման աշխարհի առան ի նիւթ վիպական բանաստեղծութեան: Ի սմին «Դիւցածնութիւնն»[2] յեւողացի պուետէ ի Հեսիոդայ (850) է երեւելին եւ նշանաւորն, ուր յայլոց ինչ նոյնպիսի գոր-ծոց հատակոտորս եւեթ կամ յայտարարութիւն միայն այժմ ունիմք: Բաց ի «Դիւցածնութենէ» է նորա միւս եւս գործ՝ «Գործք եւ աւուրք»: — Հեսիոդոս յԱսկրա քաղաքէ առ լեռն-ոտամբն Հեղիկոնի իբրեւ 100 ամօք յետոյ քան զՀոմերոս՝ էր որպէս եւ նայն, գլուխ դպրոցի իւրք երգեցկաց ի Բիովտացւոց աշխարհին, յայն սակս եւ զերգս նորա չմարթի ոք միոյ ուրուք միայնոյ գործ հաշուել:

Յամեալ եւ հանդարտ վարդապետական բարբառ Հեսիոդեան բանաստեղծութեանն այնչափ հեռի է ի բարձրութենէ եւ ի ցնո-րից հոմերական Վիպացն՝ որչափ այլակերպ իմն է տխրադոյն եւ պղտորեալ հայեցուած մտաց բիովտացի պուետի զաշխարհաւ՝ ի զուարթագին կայտառութենէ կենաց յոնիացի երգեցկացն:

1 Épopée. 2 Théogonie.

նութեան Սպարտացւոց ի Մեսսենիացւոց պատերազմին[1], եւ նա զգգուէր երգովք իւրովք. եւ թուի թէ կաղութիւնն որ պատմի զնմանէ՝ այլաբանութիւն իմն է յայտարար աշխարհական չափոյ երգոց նորա. Սողոնին՝ որ ոչ միայն փիլիսոփայ եւ օրէնսդիր՝ այլ պոէտ եւս էր, եւ աշխարհանաց երգովք զհայրենակիցսն զարթոյց գրգռեաց առնուլ միւսանգամ զՍաղամին։ — 2. Բարոյական[2]. որպէս Թէոգնիս Մեգարացի որ յետ ի ռամկէն մերժելոյ իշխե- ազնուական եւ մեծատուն՝ չոգաւ ի Սիկիլիա եւ մխիթարէր զանձն աշխարհանաց առակօք, յորս յորդորէ զայր երիտասարդ զառաջին հին միտս եւ զմեծանձնութիւն դորիացի ազնուականացն ցեղից պահել եւ խորշել եւ մերժել ի ճանապարհաց անձնասէրն ռամկապետութեան։ Փոկիւղիդէս Միղեսացի որ յօրինէր վճիռ բարոյից ճշդիւ միա եղեալ շաւղաց մարդկեղէն կամացն։ Յատակաց բանաստեղծութիւն հայրին եւ արձանագիրք[3], յորս երեւելի էր Սիմոնիդէս Կէացի՝ հռչակաւոր արձանագրաւն ի վերայ շիրմի անկելոցն ի Թերմոպիւղէս։ — 3. Տենչական[4]. որպէս Միմներմոս Կողոփոնացի բնակեալ ի Զմիւռնիա, որ աշխարհէր զցաւս սիրոյն զելեգս՝ ընդ սրնգի. զնա յաջորդեցին Անտիմաքոս եւ Հերմեսիանաքս Կողոփոնացիք ժամանակակիցք Աղեքսանդրի։

Բ. Մեծավերջական կամ Հեգնական։ — 1. Արքիղոքոս Պարոսացի (700) համարի լեալ գտակ այսպիսի երգոց. Հիպպոնաքս Եփեսացի (500) լինէր գտակ կաղ մեծավերջ[5] չափոյ. զերկոցունց եւս պատմեն զայսպէս թէ կրեալ նոցա թշնամանս՝ այնպէս իմն նեղեցին հեգնութեամբքն իւրեանց զթշնամանիչսն, զի ստիպեցին սոցա անձանց առ չժուժալն. բայց եւ ինքեանք որպէս պատմի, դառնութեամբք եւ տրտնջմամբք միշտ անցուցանէին զաւուրս իւրեանց։ — 2. Սիմոնիդէս Սամիացի (650), որ եւ Ամորգինացին կոչի վասն յԱմորգոս գաղթելոյ՝ յօրինեաց բաց յայլոց հեգնութեանց՝ հեգնութիւն ինչ զկանանց յորմէ մնացեալ հատուածոյ ինչ. թէպէտ եւ բանք նորա եւ կարծիք զգաստականք են, սակայն յայտնի իսկ երեւի թէ իբրեւ դժնդակ քննիչ մարդկեղէն գործոց զյատութիւնսն եւեթ նշմարէ։ — 3. Ի սոյն ազգ բանաստեղծութեան հայրին եւ մեծավերջական առասպելք անասնոց՝ որք յանուն Եզովպայ ծառայի Փռիւգացւոյ (600) որ գտակ իսկ նոյին համարի՝ անուանեալ կոչեցան Եզովպական առասպելք։ Եզովպայ կեանք անծանօթ իմն են եւ մեծ մասն նորա նոյնպէս ի կարգս առասպելաց է։ Կարճ եւ կոզացեալ իմն հասակաւ ասի լեալ, եւ այլ եւ այլ տերանց իբրեւ գերի ի ծառայութեան կացեալ եւ յետոյ ուրեմն ի Դեղփիացւոց՝ զորս հեգնութեամբ առասպելացն թշնամանեալ իցէ՝ հարեալ ի մահ։ Առասպելքն որ ի նորա անուն կրեն՝

1 Տես վերագոյն եր. 397։
2 Gnomique.
3 Epigramme.
4 Érotique.
5 Choliambe.

թուքն յետուստ ուրեմն առ ժամանակօք ծնընդեանն Քրիստոսի ի կարգ եւ ի յարդարումն ածեալ՝ արկանելով ի կիր եւ զհին ինչ ժողովածոյս առասպելաց։ Բայց ամենեւին կատարեալ ժողովածոյք Եզովպեան առասպելացն ի 14երորդ դարու եղեւ։

Գ. Մըմընջական բանաստեղծութիւն կամ քնարական յանձուկ միտս՝ էր ամենեւին կապեալ ընդ երաժշտութեան եւ կաքաւոյ. եւ նկարագիր նորա է՝ պէսպէս այլակերպութիւն չափոյ, բաժանմունք դարձուածոց, եւ թիւ իմն եւ համար՝[1] պատշաճեալ յերգ եւ ի պար։ Դորիացի քնարականն զոր Դորիացիքն ի Պեղոպոնէսոս եւ ի Սիկիլիա ածին ի կատարումն՝ էր կապեալ մանաւանդ ընդ պաշտամանց Ապողոնեայ Դորիացւոց, յորոյ տօնաերգք գովութեանց[2] ընդ պարուց եւ օրհնութիւնք[3] հնչէին։ — 1. Աղկմանոս է գլուխ դորիացի պուետաց (640) ի Սարդիացւոց քաղաքէ, այլ բնակեալ նախ ի Սպարտա իբրեւ ծառայ եւ ապա ազատեալ. յերգսն նորա որ յօրէնս անդրադարձ դարձուածոց[4] հաստատեալ կան՝ երեւին պայծառագոյն քաղաքային եւ զգաստական կեանք Սպարտացւոց։ 2. Վաղ պայծառանայր եւ Ստեսիքորոս (600) ի Հիմերա ի Սիկիլիացւոց աշխարհին համբաւաւոր եւ յորդ եւ առատ երգովքն՝ յորս վիպականն նիւթք (դրուագք դիւցազանցն) ածեալ են յաջողութեամբք ի քնարական կերպարանս։ — Այլ ամենեւին կատարեալ երեւի մըմընջական բանաստեղծութիւն առ Եւողացւոց ի փոքրն Ասիա, ուր այն բանաստեղծութիւն ոչ այնչափ ընդ հրապարակաւն պաշտամանց, այլ ընդ ընկերական կենաց էր կապեալ։ Յեւողացի քնարականսն երեւելիք էին՝ — 3. Աղկէոս Միտիղենացի (600) անուանի ոչ միայն իբրեւ երգեցիկ այլ եւ պատերազմող քաջ ի մերում ազատութեանն Լեսբիացւոց. քանզի հակառակորդ էր Պիտտակոսի բռնաւորի Լեսբոս կղզւոյ, հարկ համարէր հեռանալ առ ժամանակ մի ի հայրենեաց անտի, մինչեւ հաշտեալ ընդ նմա՝ լինէր թողութիւն դառնալոյ այսրէն։ Երգք նորա մերթ զվշտաց աքսորանաց են եւ մերթ զուրախարար գինւոյ։ — 4. Սափփով Միտիղենացի (600) կին երգեցիկ համբաւեալ երգովք տենչանաց։ Ի սմանէ զատաւ Սափփեան չափ որպէս եւ ի նմանէ Աղկայեանն։ 5. Անակրէոն ի Տէոս քաղաքէ Յոնիացւոց (400) ի փառաւոր արքունիս Պողիկրատեայ բռնաւորի Սամիացւոց էր, եւ ապա կոչեցաւ յԱթէնս ի պիսիստրատեանն Հիպպարքեայ։ Սա է առաջին օրինակ տենչականն բանաստեղծութեան, այնու զի յերգսն իւր որ բազում իմն են եւ ազնիւ իմն բարբառով, գեղեցիկ ձեւովք եւ զանազան չափովք, համակ զվայելչութիւն կենաց եւ զուրախութիւն ցնծութեան յարգեալ գովէ։ Մեծ մասն Անակրէոնեան երգոցն զոր ցայժմ ունիմք՝ յորս ծեր այր հաւեալ

1 Rhythme. 2 Péan. 3 Hymne. 4 Antistrophe.

մթին իմն եւ չիմանալի զբանսն գործէին. յայն սակս եւ անդէն առ նախնեօք գրեցան վասն նոցին մեկնութիւնք:

Երաժշտականն եւ Կատակական՝ նորին գուսար՝ ընթանային կից ընդ քնարական բանաստեղծութեան: Երկոքին եւս գիրկընդխառն էին ընդ պաշտամանց եւ կրօնիցն Յունաց, այնու զի յամենայն իսկ տօնս երգք եւ կաքաւք պարաւորաց՝ երիտասարդաց եւ կուսանաց լինէին: Կրօնիցն պարք ծանրագոյն իմն էին իբրեւ չափով շարժելով շուրջ զբագնեօք. սակայն ըստ այլակերպութեան տօնիցն՝ եւ ձեւք կաքաւուցն էին՝ մինչեւ ցհապատական իսկ կաքաւսն որովք աստուածոցն եւ դիւցազանցն գործք նշանակէին: Հինքն Յունաց մեծ իմն զօրութիւն յորդորիչ, զգաստացուցիչ եւ կրթիչ համարէին երաժշտութեան (յայն սակս եւ օրէնադիրք Յունաց պատուիրէին վարել նովին առ ազնուագոյն զբարսն գործելոյ), նմին իրի ի դէպ է թէ եւ այս արուեստ ի բարձրագոյն իմն աստիճան կատարման էր հասեալ առ նոսա, թէպէտ եւ չիցեմք ինչ ճշդիւ տեղեակ մանր հանգամանացն: — Իսկ յօրինիչ յունական երաժշտութեան համարի Տերպանդրոս Լեսբացի, որ ի Սպարտա եւ յայլ եւս քաղաքսն Յունաց առ զյաղթութիւնն յերաժշտական մրցութիւնսն, եւ զքնարն չորեքաղի արար եւթնաղի: Հաւանութեան իմն է թէ նա սահմանեալ կարգեաց զհամեմատութիւն իւրաքանչիւր ազգաց ձայնիցն[1], որ յառաջին երեք եւեթ էին այս ինքն ծանր եւ տօնական դորիացին, շառաչուն եւ ցնորեցուցիչ փռիւգացին, եւ լիւդացին մեղմականութեամբն դարձուցիչ ի հեզութիւն. յորս յետոյ յաւելան յոնիականն թոյլ եւ կակուղ, եւ եւոլականն եռանդուն եւ առոյգ: — Յոյնք արկանէին մանաւանդ ի կիր նուագարանս աղեաց՝ զավէլն եւ զչնար[2] եւ սրինգ որ ի Լիւդիայ ածաւ ի Յունաց աշխարհ:

## 279

ՏԵՍԱԳՈՐԾԱԿԱՆ բանաստեղծութիւն: Առ ժամանակօքն Պերիկղեայ առ կատարումն բանագործականն: Սկիզբն նորա ի պաշտամանց անտի Դիոնիսեայ է, յորս ի սկզբանն քնարական երգս ի պատիւ Դիոնիսեայ կաքաւուք նուագէին, եւ ապա սակաւ եղեւ սովորութիւն զցուցեալսն երգովք՝ խօսիւք եւ գործովք եւս յանդիման կացուցանելոյ: Զթեսպիս Իկարիացւոյ ի ժամանակին Սողոնի ասեն նախ զայս արարեալ. քանզի սա իբրեւ մենախօսութիւն[3] մուծեալ պատմէր զառաջինն՝ զմի զոք իբրեւ խաղալիկ պատմել առասպել ինչ ի դիոնիսեան զրուցաց:

Ա. Ողբերգական բանագործութեան երեքին իշխանք առ Պարսից պատերազմօք եւ ի յաջորդ ժամանակսն ծաղկեալ պայծառանային. Էսքիւղոս, Սոփոկղէս եւ Եւրիպիդէս, որոց զէն

1 Ἁρμονία. 2 Barbiton. 3 Monologue.

Եւս առեալ էր ի պատերազմին Սալամինայ՝ յորում Էսքիւղոս 48ամենի կռուէր ի ճակատու, եւ Սոփոկլէս 18ամենի ի տօնի անդ յաղթութեան՝ էր ի պարու երիտասարդացն, իսկ Եւրիպի-դէս անդէն ի նմին աւուր ծնանէր։

1. Էսքիւղոս Աթենացի (525—456) յաւելեալ մեւս եւս խաղալիկ եդ զԵրկխօսութիւն[1], եւ այնպէս եղեւ բուն յօրինիչ ողբերգական արուեստին։ Եւթն հատուածս անդ գործոցն Էսքիւղեայ նշանաւոր հզօրագոյն ժամանակ պատերազմացն Պարսից, յորում խորհուրդք ազատութեան եւ հայրենեաց ի մեծամեծ գործս ածին զՅոյնս։ Ամենայն ուրեք եռանդուն իմն բանաստեղ-ծական եւ տօնական իմն բարբառ հնչէ, երկեւղ ի դից եւ ակնա-ծութիւն ի հին քաղաքային կարգաց։

Ի հատուածն զոր այժմ ունիմք՝ (քանզի թիւ գործոց նորա առի լեալ 70 կամ 90) երեքինս՝ "Ագամեմնոն„ (այս ինքն՝ դարձ նորա ի Տրովայ եւ սպանումն ի Կղիտեմնեստրայ եւ յԵգիսթեայ), "Քոյեփորք„ (վրէժխնդ-րութիւն մահուն Ոկրեստեայ հօր իւրոյ) եւ "Եւմենիդեանք„ (հալածումն Ոկրեստեայ յԷնդղայից եւ յետոյ ազատումն արձակել նորա վճռով Արիոպագեայ, որով այն մեծարոյ ատեան պաշտպանի ի թշնամեաց ռամկապետացն առաջնորդելոց ի Պերիկղեայ) ունին կապ ընդ միմեանս եւ կազմեն Եռեքխօսութիւն[2]։ "Պրոմեթեւս ի կապանս„ նկարէ զմեծական որովք տանջի տիտանեանն այն կապեալ շղթայիւք ի Կաւկասու յԱ-րամազդայ, վասն հրոյն զոր գողացեալ յառաւածոցն եա մարդկան։ Ի սմին պատահի մի բառ միջէ մարս պատերազմի՝ մարդկան յաւաղե-լոց յիւրեանց զօրութիւն ընդդէմ բարձրագոյն զօրութեան ճակա-տագրի նշանակելոյ ամենատերամբն Արամազդայ. Եւ առանց երկ-բայութեան է՝ թէ լուծումն իմն այսր հատածոյ բանաստեղծութեան կայցէ յայլում իմիք հատածի կորուսելոյ որ անուանեալ կոչի "Պրոմէ-թեւս ազատեալ„, յորում լեալ իցէ խորս վարդապետութեան եթէ այսպէս է կարգ աշխարհիս՝ հպատակել մարդկեղէն կամաց ընդ աս-տուածեղէն կամօք։ "Պարսիկք„ ցուցանեն զմեծամեծութիւն եւ զպար-ծանս բանաստեղծին ընդ այն՝ զի այնպէս յաղթութեանց զաւ եղեւ պատերազմացն Պարսից։ "Եւթնեքին ի վերայ Թեբայեցւոց„ ճառեն զկռուոյ եւ զսպանմանէ երկուց եղբարց թշնամացելոց ի Թեբայեցւոց քա-ղաքին, եւ "Որ պաշտպանութիւնն խնդրեն„ է զրոյց ինչ ի զրուցաց Դա-նաւոսի՝ որ 50 դստերօքն փախեաւ յԵգիպտոսէ, եւ յԱրգոս խնդրէր պաշտպանութիւն։ — Մեռաւ Էսքիւղոս ի Սիկիլիա յոր երթեալ առեն՝ առ արտմութեանն թէ ռամկապետութիւն յաղթեաց, եւ կամ զի յաղ-թեաց նմա Սոփոկլէս յողբերգութեանն մրցութեան։

2. Սոփոկլէս ի Կողոնոսէ մօտ յԱթէնս (456—405) եմուծ մեւս եւս երրորդ խաղալիկ հանդիսական եւ առաւել կարճեաց զպարաւորսն։ Էր նա ազնուական ծննդեամբն, մտաւոր եւ մար-մնաւոր առաւելութեամբ եւ կրթութեամբն եւ ուսմամբ թե-քեալ՝ հան զարուեստն բանաստեղծական ի կատարելն զեղեցկու-

1 Dialogue. 2 Trilogies.

անոր. Ճռուակաց տեսարանին ի Սիկիլիա[1] խրատելով դարձուցանել զմիտս Աթենացւոցն ի ցնորական խորհրդոց մեծամեծ ինչ իրս գործելոյ, ծաղր առնելով զանչափ եւ զբարձրական մտածութիւնս նոցա՝ ընկերհաշտութեամբ իւիք Թռչնոց[2] զոր առ ինքն աթենացիք անհանդարտք իցեն յօրինեալ ի վերայ օդոց։ — "Լիւսիստրատայն,, յայտ առնէ զցանկութիւն հասարակաց խաղաղութեան. յանմնայն իսկ ներկայ ժողովն կանայք փոյթ արարեալ հասարակաց իրաց, գրաւեն զմիջնաբերդն, պահանջեն իրաւունս ի ծերակուտէն եւ պնդեալք յանձառեալք ի միաբանութեան իւրեանց ընդդէմ արանց, տալ ուրեմն բանադատութեամբ վճիռ լինի խաղաղութեան։ — "Թեսմոփորիազուսքն,,[3] է հակառակ Եւրիպիդեայ որ համարեալ էր ատեցող կանանց, եւ յայն սակս դատապարտեցին զնա ի մահ այն կանայք վասն յաձախելոյ նորա նոցա թշնամանս։ Բայց ընդ քօղով պատմելոյ զԵւրիպիդէս եւ զԱգաթոն՝ ի մէջ բերէ Արիստոփանէս եւ զերգումն եւ զապականութիւն բարուց ազգին կանանց յԱթէնս։ — Ի "Գորտսն,, (405) յանձին Եւրիպիդեայ յանդիման կացուցանէ մոլար շաւիղ բանագործական բանաստեղծութեան համեմատութեամբ հնոյն, եւ միանգամայն ծաղր առնէ զանն՝ առնլոյ խառնաղանճ ամբոխին զիշխանութիւն ի ձեռս։ — "Եկկղեսիազուսքն,, (ժողով խորհրդեան կանանց), յորում կանայք զգեցեալ առնացի՝ առնեն ժողով ժողովրդեան եւ տան անդէն վճիռ՝ առնուլ զառաջնորդութիւն հասարակաց գործոց ի ձեռն, է հենգնութիւն անզօր եւ ապաժաման ոգւոյ ռամկապետութեանն նորոգելոյ, եւ միանգամայն՝ ծիծաղել զհամանմանդրութեամբ անէրութեանն Պղատոնի յորում ինչք եւ կանայք լինելոց էին հասարակաց։ — "Պղուտոս,, (ընչաւետութիւն, 388) վերջին հատուած Արիստոփանեայ կշտամբէ զԱթենացիսն վասն ագահութեանն նոցա եւ բարեկեցութեան եւ սիրելոյ զքերդն, եւ կացուցանէ նոցա օրինակ առաջի զհին պարզութիւնն եւ զխորուցն զգաստութիւն։

2. Միջին կատակերգութիւն եղ եկաց՝ յորժամ յետ դադարելոյ անարգել իշխանութեան ռամկապետութեանն՝ 30 բռնաւորքն արգելին զհամարձակ նշտամբանս կատակերգուացն, եւ լինէր այն առանց պարաւորաց՝ այնու զի ոչ ոք առնոյր այնուհետեւ յանձն տալ զծախսն։ Բաւական համարէին յայնմ հետէ կատակերգուքն զթերութիւնս դատել իրիք մարդկան միայն կամ ցանցելոց ինչ ժամանակաց իրս եւ կամ զմատենագիրս ընդ հենգն արկեալ ձաղել։ Ձեւն ողորկ էր եւ ընտիր, այլ բանակցութիւնն երկայնաձիգ իմն էր եւ բազում անգամ շատախօսութեամբ։ Երեւելիք ի միջին կատակերգուաց են՝ Անտիփանէս Ռոդացի (380), յորմէ բազում հատակոտորս ունիմք, — Անաքսանդրիդէս, Աղեքսիս Թուրիացի, — Տիմոկղէս՝ ժամանակակից Դեմոսթենեայ։

3. Նորն կատակերգութիւն ի ժամանակի միապետութեանն առ Աղեքսանդրիւ եւ նորին յաջորդօք ի մէջ գայր. քաղաքային հենգնութիւնք եւ թշնամանք ի բաց եղեն, եւ ծնունդ առանին կեանք հասարակաց՝ եւ համապարզորդեան դէպք ընտանեաց՝ որոց քաջ միտ դնէին պոետք։ Առաւելութիւն կամ քաջութիւն նո-

1 Տես վերագոյն եր 402։ 2 Νεφελοκοκκυγία. 3 Տես վերագոյն էջ 390։

րոյն կատակերգութեան էր՝ յօրինել քաջ նկարագիր վարուց եւ նշանակել զբարս մարդկան՝ յոր ոչ այնչափ ցնորք պիտոյ էին որչափ միտք ուշակալք եւ դիտողք։ Գլխաւոր դոյզն ինչ էր եւ առանց փոփոխութեան. համակ ի մէջ գան ի նորն կատակերգութեան՝ որոշեալ ինչ բարք, ծառայք խորամանգք եւ նենգաւորք, որդիք ստահակք, զինուորք պարծուկք եւ այլ եւս նոյնպիսիք։ Ընդ այսպիսի միակերպն նիւթոյ՝ էր եւ լեզու ռամիկ, ցածր բարբառ, եւ միօրինակ իմն եւ անկանոն չափ երգոց։ — Երեւելի քան զամենեսին գտաւ Մենանդրոս Աթենացի (342—290), մեծատուն առակօք եւ կանոնօք կենաց. սա է պատկեր եւ տիպ Տերենտեայ կատակերգուի հռոմայեցւոյ, որպէս երիցագոյն ժամանակակիցն նորա Փիղեմոն՝ եղեւ օրինակ Պղաւտեայ։ — Ի Դիփիղոսէ Սինոպացւոյ պատմի յօրինեալ 100 բանագործութիւնս՝ յորոց սակաւ ինչ հատակոտորս եւեթ ունիմք։

## 280

Գեղեցիկ արուեստք։

Որպէս առ Արեւելեայս՝ նոյնպէս եւ առ Յոյնս ի սկզբանն ուրեմն արուեստն սպասաւոր կրօնիցն էր. եւ յայտնի իսկ երեւի թէ եգիպտական արուեստն գործեալ իցէ ազդեցութիւն մեծ ի վերայ յունական արուեստի միջնորդաւ աշխարհին Կրետացւոց, Ռոդացւոց, Սամիացւոց՝ որ էին հին կայանք Յունացն անդրիանտագործութեան։ Սովորութիւն էր առ Յոյնս զճարտարաւ ոմամբ ժողովել յուսումն արուեստի, եւ այնպէս կազմել դպրոց ինչ՝ որով ապաքէն շահեալ տիրէր պայման եւ ոճ արուեստի ճարտարին այնորիկ։ Բուն առաջին հին անդրիք ի փայտէ էին՝ զորովք յետոյ սկսան պատել ոսկի կամ փղոսկր, եւ կամ նկարէին իսկ։ Սակաւիկ ինչ յետոյ՝ եւ արուեստ ձուլելոյ ի պղինձ, եւ յետ այնորիկ՝ քանդակել ի մարմարիոնի։ — Նշմին իսկ երեք գլխաւոր ժամանակք են արուեստիցն Յունաց։ — 1. Ժամանակն որ յառաջ քան զՊարսից պատերազմունսն է, յորում տիրէր ոճն Եգինական կամ հնոյն՝ որպէս ցայժմ ասացաւ, յորում նշանաւոր կացին մօտ ի ժամանակս պատերազմացն Պարսից՝ երեքին գլխաւորքն դպրոցաց, Կանաքոս՝ ի Սիկիոնի, Ագեղադաս՝ յԱրգոս, Օնատաս՝ յԵգինա. յեգինական դպրոցէ աստի են Եգինական պատկերքն ի մայրաքաղաքին Բաւիերացւոց։ — 2. Պերիկղեան ժամանակն մինչեւ ցկատարած պեղոպոնեսական պատերազմին, յորում տիրէր ոճն բարձրական, ի ձեռն Փիդիասայ Աթենացւոյ (430), Պողիկղետեայ Արգիացւոյ (420) եւ Միւրոնայ Եղեւկեցւոյ (430)։ — 3. Ժամանակն որ է յետ բարձման ազատութեանն Յունաց, նա եւ յետ մահուն իսկ Աղեքսանդրի, յորում

տակաւին փթթէր ամ՛ն գեղեցիկն՝ իբրեւ զծաղիկ աշխարհայնոյ ի ձեռն Պրաքսիտեղեայ Աթենացւոյ, Սկոպասայ Պարոսացւոյ եւ Լիւսիպպեայ Սիկիոնացւոյ (330)։ — Սակայն եւ յետ սոցա առ պայազատօքն Աղեքսանդրի թուի թէ անդրիանտագործութիւնն եղեւ երկայնակեաց քան զմատենագրութիւնն. բայց այս ինչ խոտիր ի միջի էր՝ զի յօղէին եւեթ զգործս առաջնոց ճարտարացն եւ ոչ եթէ նոր ինչ գիւտ ի մէջ բերէին. Թէպէտ եւ արուեստական ազնուականութիւնն չէր տակաւին կորուսեալ ի միջոյ եւ հաւասարէր իսկ առաջնոցն, որպէս ի գործոց անտի որ ցայժմ կան՝ եւ մեծ մասն նոցա ի ժամանակաց աստի է, յայտ արարեալ ցուցանի։

Հարկ գեղեցիկն արուեստից՝ որ են ճարտարապետութիւն, անդրիանտագործութիւն եւ նկարչութիւն, հիւսեալ իմն էր ընդ կենաց ժողովրդեանն Յունաց։ — Ի ճարտարապետութեան Յունաց շողայ հանճարաւորութիւն չափուց եւ միաբանութիւն անդամոցն մասանց, այնպէս զի իւրաքանչիւր շինուած կազմեալ յօրինիցէ գեղեցիկ ինչ բոլոր։ Գլխաւոր մասն կազմիչ Յունացն շինուածոց՝ են սիւնք, որոց երեք իմն ազգք են ըստ ընտրութեան խոյակացն, հզօրն եւ անպաճոյճ դորիացին, նուրբ յոնիացին՝ զանգրուորն ախաւեղագիւոք, եւ մեծաշուք բազմազարդ կորնթացին։ Սիւնքն արկանէին մանաւանդ ի կիր ի մուտս մեհենիցն եւ ի սրահս եւ ի ճեմելիս։ Այնու զի տունք բնակութեան հնոցն փոքր եւ անշուք իմն էին՝ զճարտարութիւն շինողութեանն Յոյնք ի մեծայ հասարակաց շինուածոց եւեթ կարող էին ցուցանել։ Այսպիսի շինուածք էին՝ Մեհեանքն (մեհեանն Աթենայ՝ Պարթենոն անուն յԱթէնս, մեհեանն Արտեմիդեայ յՄագնեսիա եւ յԱգրիգենտ, մեհեանն Հերայ յԱրգոս, մեհեանն Ապողոնեայ ի Փիգալիա յԱրկադացւոց աշխարհին, մեհեանն Դեմետրեայ յԷղեւսիս եւ այլ եւս մեհեանք), թատրոնքն եւ շիրիմք՝ յորս հռչակաւոր եւ նշանաւոր է շիրիմն Մաւսողեայ[1] արքայի Կարիացւոց յԱղեկառնասս, եւ այլ եւս նոյնպիսիք։ — Ի քանդակագործութեան կամ յանդրիանտագործութեան՝ ամենեւին ի գլուխ իսկ բարձրութեան երթեալ հասին Յոյնք, մինչ զի մնացորդք գործոց նոցա զոր ունիմք, կան մնան տակաւին իբրեւ չհասանելի օրինակք գեղեցկութեան։ Ի սոյն նպաստ լինէր նոցա մանաւանդ այն՝ զի ձեւք եւ կերպարանք անդամոց նոցա չէին փոփոխեալ նորաձեւ եւ անհեղեղ արկանելեօք, եւ զի տեսանէին առէպ ի հրահանգս անդբունամարտիկն կռուոց զմերկանդամս յայլ եւ այլ ձեւս եւ ի շարժմունս։ — Ի հռչակաւոր անդրիանտագործացն՝ Փիդիաս յօրինեաց զպատկեր Աթենայ, զգեղեցիկն քան զամենայն զարդս քաղաքին Աթենացւոց, եւ զանդրին Արամազդայ յՈղոմպիա՝ յորոյ դէմս երեւացն նստի, ասեն հինքն, երեւոյթ իմն "ամենազօր գօ-

1 Mausolée.

րութեան եւ ողորմութեան, մինչեւ դարձուցանել ոգւոյն ի մոռացօնս զվիշտս այսց կենաց»․ եւ չուստ իսկ համարէր որոյ չէր տեսեալ զայն անդրի՝ յառաջ քան զվախճան իւր․ Պողիւկղետոս նորին աշակերտ անուանի՝ յաղթ պատկերաւն Հերայ յԱրգոս, եւ անդրեաւ առն նիզակաւորի․ Միւրոն՝ հռչակեալ պատկերաւն Հերակղի եւ կովուն պղնձեաւ որ զորթ իւր դիեցուցանիցէ եւ անդրեաւ առն որ ձգիցէ սկաւառակ, —Պրաքսիտեղէս եւ Սկոպաս՝ նշանաւորք՝ պատկերօք Դիոնիսեայ եւ Ապողոնի․ Սկոպայ էր եւ Ապողոնն Քնարահար եւ կոյս ծափայքն աստուածոցն՝ որք զԱքիղղէս ածեն ի Լեւկա կղզի․ իսկ Լիւսիպպոս ճշդագոյն քան զամենայն ի գիտութեան կերպարանաց մարմնոյ՝ յօրինեաց զմեծայաղթ անդրին Արամազդայ ի Տարենտոն, զմեծարերձ զակայաղէն Հերակղէս ի Կորընթոս, զկառս արեգական լծեալս ի չորից, որոյ մանաւանդ երիվարքն էին համբաւաւոր, բայց առաւել քան զամենայն՝ անդրիքն Աղեքսանդրի։

Ի նկարչութեան պայծառանային Պողիգնոտոս Թասիացի (առ Պերիկղեաւ) որ նկարեաց յիրաց պատերազմացն Պարսից զսրահն[1] (որ Նկարէնն[2] անուանէր), Զեւքսիս Հերակղէացի ի մեծն Յունաստանի, Պառասիոս Եփեսացի (400), եւ առաւել քան զամենեսին Ապեղէս Կողոփոնացի՝ որ ընդ Լիւսիպպեայ սիրելի եղեն Աղեքսանդրի։ Հինքն մեծաւ զարմանալեօք յիշեն ի գործոց նորա զպատկերն Աղեքսանդրի՝ շանթ ի ձեռին, որպէս եւ զպատկերէ Աստղկանն որ ի ծովէ ելանիցէ (Անադիոմենէ), կամ զԱրտեմեայ ի մէջ կուսանաց՝ յորժամ զոհն մատուցանիցեն։

Երեւելիք եւ հռչակաւորք յանդրեաց որ ցայժմ կայցեն (որոց ոչ ժամանակն ինչ յայտ է եւ ոչ նա որ յօրինեացն), են յաջորդք՝ —1. Անդրիք եւ քանդակք Պարթենոնի (մեհենի դիցն Աթենայ) զորս յառաջ քան զ35 ամս ետ առնուլ Լորտ Էլճին եւ բերել ի բրիտանեան Մուզէոնն (Էլճինեան մարմարիոնք)։ —2. Ապողոնն Պելուետերայ։ — 3. Կոյտ անդրեացն Լաոկոնայ։ — 4. Աստուածամարտիկն օրհասական (երկոքին եւս ի Հռոմ են)։ — 5. Մեդիկեան Աստղիկն (ի Փլորենտիա), Գորկեզեան մարտիկն (ի Գաղղիա)։ — 6. Կոյտն անդրեաց՝ անուանեալ Փառնեզեան ցուլ (ի Նէապոլիս), եւ այլ եւս նոյնպիսիք։

Ի նկարուց կամ ի պատկերաց Յունաց չունիմք ինչ ամենեւին, բայց միայն յառասպելական կամ պատմական նկարուց ինչ որ ի վերայ բրուտեղէն անօթոցն Յունաց գտանիցին, եւ կամ ի վերայ աւերակաց հնոց ինչ շինուածոց (ի բաղանիսն Տիտոսի ի Հռոմ եւ մանաւանդ ի Ճամուկս որմոցն գտելոց ի Պոմպէի քաղաքի կործանելոյ սասանմամբ. — Ալտոպրանտինեան հարսանիք)։

1 Στοά. 2 Ποικίλη.

# 281

### Պատմագրութիւն եւ ճարտարխօսութիւն։

Պատմագրութիւնն եւս ի յոնիական գաղթականութեանց անտի ի փոքրն Ասիա՝ առ սկիզբն։ Այլ յառաջնումն՝ զգրոյս եւեթ զտոհմայինն ինչ գիտաց եւ զհաստատութեան իւրաքանչիւր քաղաքաց անյայտս եւ առասպելականս հարկանէին ի մատենի Բանագիրքն կամ Զրուցագիրք[1] (550—400)․ յորոց եւ հռչակաւորք կացին երեքին Միլեսացիքն՝ Դիոնիսիոս, Կադմոս եւ Հեկատէոս (յամի իբրեւ 500)՝ զորոյ այժմ զհատակոտորսն ունիմք, որպէս եւ զբազմաց զայլոց եւս բանագրաց (որպիսիք՝ Փերեկիդէս Լերոսացի, Ակուսիղաւոս Արգիացի, Հեղղանիկոս Միտիլենացի, Քարոն Լամփսակացի, Քսանթոս Լիւդացի)[2]։

1. Առաջին որ փոխանակ բանագրութեանն եդ զճշմարիտ պատմագրութիւնն եւ Հայր պատմութեան անուանեցաւ՝ է Հերոդոտոս յԱղիկառնասոս քաղաքէ Դորիացւոց (Ծն. 484)։ Յետ կորնչելոյ ազատութեան քաղաքին իւրոյ՝ եկաց նա ժամանակս ինչ ի Սամոս, եւ ապա առնէր ճանապարհ յԵգիպտոս, յԱսիա, ի կողմանս Պոնտոսի եւ ի Յունաց աշխարհ, յորս իւրովի իսկ աչօք եւ ի բանից բերանոյ գումարեաց նիւթ ի պատմութիւնն իւր՝ զոր գրեաց նա յ9 գիրս անուանեալս ըստ անուանց 9 Մուսայիցն (ի 44 ամի հասակին)․ իսկ ի ծերութեանն եկաց նա ի քաղաքին Թուրիացւոց յաշխարհի անդ Իտալիացւոց յոր երթեալ էր նա ընդ գաղթականութեան իմիք։ Գրեաց նա ի մատենի անդ յոնիական բարբառով (որ յայնժամ սովորական իմն էր վասն պատմութեան)՝ զմարտս պատերազմացն Յունաց ընդ Պարսից, սակայն ըստ պատեհի իմն խառնեաց ի նոյն եւ զհնագոյն անցս արեւելեան եւ յունական ազգաց։ Որչափ յաճախեցին պատմական քննութիւնք նորոց ժամանակաց վասն ծանօթութեան հին ազգաց, եւ որչափ եղեն խորամուխ յիրսն՝ դոյնչափ աճեցին մեծարոյ կարծիք զՀերոդոտոյ եւ անխածութիւն։ Վախճան ի մտի է նորա՝ ի գիրս անդ որ ամենեւին իսկ պարզութեամբ եւ հաւատարիմ սրտիւ վասն ժողովրդեանն գրեալ է՝ ցուցանել թէ որպէս սէր հայրենեաց եւ ազատութեան, կարգաւորութիւն, պայծառութիւն մտաց եւ սակաւապիտութիւն Յունաց յաղթեաց անաղատ մտաց, բիրտ ամբոխի եւ դատարկ շքեղութեանն Արեւելից։

2. Անտեան պատմութեանն Հերոդոտայ (յանթեռնուլ նորա առաջի բազմութեան յՈղոմպիական մրցանսն) վառեալ բորբոքեցին ի նախանձաւորութիւն եւ ի նմանութիւն զհայրենասէրն Թուկիդիդէս Աթենացի (470—402) ի զաւակէ տոհմի իրիք իշխանացն Թրակացւոց։ Սա ի ժամանակի պատերազմի իրիք Ամ-

1 Logographes.

2 Հաւաքք՝ ի Լիփսիա 1824։ Քրայցերի կամ Միւլլերի՝ Հատակոտորք հնաբան պատմագրաց Յունաց․ 1840։

փիպողեայ (այնու՝ զի համարեցան թէ վասն անագան հասանելոյ նորա առաւ քաղաքն ի Սպարտացւոց)՝ աքսորեցաւ եւ յաքսորանս անդ գրեաց "զՊատմութիւն Պեղոպոննեսական պատերազմին",: Բազում ինչ իրօք օտար կերպարանս ունի սա քան զՀերոդոտոս: Ըստ Հերոդոտայ ի մէջ գան պանծութեան միաք Յունաց վասն յաղթութեանցն, առ Թուկիդիդեայ՝ բարձրագոյն կրթութիւն եւ հրահանգք Աթենացւոց առ Պեղոպոննեսական կռուովն. եւ զոր օրինակ նա եւ զքանաստեղծական ինչ եւ զպարզական դիւրահաս լեզուն ժողովրդեանն բարբառի եւ զցնորս ընթեռնլեացն գրգռէ, նոյնպէս սա՝ խրոխտ բարբառով որ թուի ինչ անցանել եւ է ծանրաբեռնի իմաստիւք, եւ ծանրաշարժ թախանձեցուցիչ ոճովն ընդ կիրթ մասին ազգին խօսի եւ զքաղեցուցեալ պայապեցուցանէ մանաւանդ զխորհող միտս եւ զդիտող հանճար: Ի յօրինելն զնկարագիր արանցն որ ի հանդիսի անցանիցեն՝ ամենեւին խոր ինչ տեղեկութիւն մարդկեղէն բարոյիցն բնութեան ցուցանէ, եւ յատենախօսութիւնս անդ՝ զորս ուրեք ուրեք ի ներքս մուծանէ՝ որք եւ բազում ուրեք դժուարիմանք են վասն ազգի ազգի նուրբ հայեցմանցն՝ ճշդիւ ինչ եւ զատկաւ նկարէ զխորհուրդ, զծիրսն, զկամս եւ զպատճառս գործոց՝ զառանձինն ուրուք կամ զկողմանն իրիք կամ զանէրութեան: Կատարի պատմութիւն Թուկիդիդեայ ի 21երորդ ամի Պեղոպոննեսական պատերազմին. եւ է այն պատկեր եւ օրինակ նմանութեան՝ վասն պատմագրի որ կամիցի գրել պատճառախնդիրն օրինակաւ՝ հանդերձ արդեանց դիպօք եւ անաչառութեամբ:

3. Քսենոփոն (446—356) որ զկարգ պատմութեանն նորա մատոյց յառաջ մեծանուն եւ հռչակաւոր է լուսաւորութեամբ, փափկութեամբ եւ գեղեցկութեամբ ոճոյ՝ սակայն խորութեամբ մտածութեանց եւ պատմական հաւատարմութեամբ ի վայր քան զԹուկիդիդէս է: Թէպէտ եւ ինքն աթենացի է, սակայն միշտ յարգիչ եւ գովիչ Սպարտացւոց՝ մանաւանդ թագաւորին նոցա Ագեսիղայ՝ զորոյ եւ զվարսն եւս հարեալ է ի մատենի: Յայն սակս "Յունական պատմութիւնքն,, նորա յայտնի իսկ աչառութեամբ գրեալ են, եւ մանաւանդ զմեծ որեարն Թեբացւոց՝ զՊեղոպիդաս եւ զԷպամինոնդաս ձախող ինչ նկարէ: Պատմութիւն նորա կատարի պատերազմաւն Մանտինեայ (362): Գրեաց Քսենոփոն զՀրահանգս կամ զԽրատն Կիւրոսի[1] իբրեւ քաղաքային ինչ փիլիսոփայական վիպասանութիւն, յորում յանդիման կացուցանէ զԿիւրոս իբրեւ կատարեալ օրինակ առն թագաւորի, եւ զառաւելութիւն եւ զշահ միահեծան ինչ իշխանութեան իմաստութեամբ առաջնորդելոյ՝ վասն դնելոյ համեմատ խռովայոյզ ընկերհաշտութեանցն սահմանադրութեան իւրոցն տոհմակցաց:

1 Κυροῦ παιδεία.

Այս են երեք իշխանք պատմագրութեան։ — Ի պատմութենէ անտի Կսենոփոնի վասն Պարսից (եւ Հելլենաց) հատակոտորս ունիմք։ — Ճարտարախօսական ներբողեանք որ ի պատմագրութեան Թուկիդիդեայ եւ Քսենոփոնեայ երեւին՝ փոխանակ բանաստեղծական ներբողեանցն զոր Հերոդոտոս ունի, այն է հանգամանաց ժամանակին նոցա էր, զի ճարտարախօսութիւնն շահեալ տիրեալ էր յայնժամ ի տէրութեան իրս։

## 282

Ճարտարախօսութիւն անհրաժեշտ իմն էր ի ռամկապետական յօրինուածութիւնս անդ Յունաց. նմին իրի եւ երեւելի առաջնորդք հասարակաց իրաց՝ որպիսիք Թեմիստոկլէս, Պերիկլէս՝ էին եւ ատենախօսք։ Սակայն ճարտարախօսութիւն նոցա պարգեւ իմն բնութեան էր, եւ ճառք նոցա տացեալ ամի յամից ի ժամանակի անդ պիտոյիցն, եւ բանք նոցա՝ բնականք եւ պարզք եւ անպաճոյճք։ Այլ վաղվաղակի իբրեւ իշխանութիւնն տարածեցաւ մինչեւ ցհուսկ վերջին իսկ խոնարհագոյն կարգ ամբոխին, եւ այնուհետեւ բազմացան ատեանք եւ գործք որ հրապարակաւ աշխարհահաւաքս յայտնութեամբ լինէին, հարկ լինէր այնուհետեւ զբնածին պակասութիւն խօսողութեանն արուեստիւ լնուլ։ Ի մէջ անցանէին այնուհետեւ Սոփեստաքն մատակար իմն արուեստի վճռողութեան որով յերկուս եւս երեսս ցուցանէին զմի ինչ եւ արագ արագ շրջշրջմամբ ապշեցուցանէին իմն զլսելիսն։ Այսպէս խնդրանն Գորգիաս Սիկեղացի հանդերձ Հիպպիաւ, Պրոտագորաւ, Պրոդիկեաւ եւ այլովք բազմօք վաճառաշահ մեծ ի քաղաքի անդ Աթենացւոց առնէին արուեստին այնմիկ՝ որ կոչէր այնուհետեւ խօսողութիւն կամ Ճարտարախօսութիւն[1]։ Համբաւ շահուն ած ձգեալ այլ եւս այս ճարտարախօսս ի Սիկիլիացւոց եւ ի Յունին Իտալացւոց աշխարհէն՝ որ յայնժամ կայան իմն էր ճարտարախօսական արուեստին՝ ի քաղաք անդր Աթենացւոց։

Այնուհետեւ քան զամենայն ինչ առաւել ի հրահանգս էր յԱթէնս այն արուեստ, եւ ոչ յատեանս ունէր եւ ի հասարակաց իրս՝ այլ եւ յամենայն իսկ մատենս մատենագրութեան եղեւ միջամուխ ճարտարախօսութիւնն. յորդորութիւն՝ ի ձեւն Եւրիպիդեայ, ի պատմագրութիւն՝ ի ձեւն Թուկիդիդեայ. յայն սակս իսկ վերջին յունական մատենագրութիւնն ամենեւին իսկ ներկեալ է ճարտարախօսութեամբ։ — Երեւելիք յառաջնոց ճարտարախօսաց արդ են Անդոկիդէս († 400) եւ նորին ժամանակակից Անտիփոն վարդապետ Թուկիդիդեայ, եւ Լիւսիաս Սիրակուսացի որ յետ ի Պերիկլէայ յԱթէնս կոչեցեալ՝ չոգաւ (444) ի Թուրիս ի

1 ʻΡητορική.

Ստորինն Իսաղեա գործել կատարելագոյն զարուեստ իւր։ Ի բազում հարիւրաւորաց ճառից նորա զոր յօրինէր փոխ յԱթէնս՝ 32 եւեթ ճառս այժմ ունիմք։ Ի սմանէ առին սկիզբն ճառք ամենաժողով տօնից[1], եւ նովաւ սկսաւ արուեստագործ ճարտասանութիւն ի ճարտարխօսութեան։

1. Իսոկրատէս Աթենացի (436—338) է գլուխ այսր ատտիկութեան ոճոյ, լրութեան կազմածոյ շրջանաց[2] եւ քաղցրաձայնն բարբառոյ։ Ի 21 ճառիցն նորա երեւելի քան զամենայն է ճառն ամենաժողով տօնի՝ յորում յորդորէ զԱթենացիսն ի միաբանութիւն ընդ միմեանս եւ ի մարտ պատերազմի ընդ Պարսից, զոր ասեն թէ ի 10 ամս յօրինեաց. եւ է իսկ այն գործ ճարտարագործ վասն ոճոյն։ Իսոկրատէս (որպէս եւ Իսէոս աշակերտ Լիւսիայ եւ Իսոկրատայ) կարգեաց հրապարակաւ դպրոցս ճարտարխօսութեան կրթել ատեննախօսս վասն ատենից եւ ամենայն քաղաքային իրաց։ — Յետ պատերազմին Քերոնիայ առ վշտի կորստեան ազատութեանն Յունաց՝ արար զանձն սովամահ 98ամենի։

2. Դեմոսթենէս (ծն. 385) որ աշակերտեալ էր Իսոկրատայ, Իսեայ եւ Պղատոնի, համարի իմն իբրեւ ի ծայր արուեստին հասեալ։ Ի մանկութենէ ընդ խափանչաց բնութեանն մեծաւ ճգամբք կռուէր վասն զլեզուն եւ դժուարմունսն ի պատշաճ կրթութիւն ածելոյ։ Զարմանալի էր բեւեռել նորա յինքն զլսողսն եւ բորբոքել. կենդանութիւնն ի խօսելն, փոփոխս յաջորդել բանից ծանուց եւ բանից ծաղու, խօսք դառնիք եւ սուր իմն դարձուած։ Նշանաւոր են քաղաքային ճառք նորա, մանաւանդ 12 ճառքն ընդդէմ Փիլիպպեայ արքայի Մակեդոնացւոց[3], յորոց չորք անուանեալ կոչին Ողինթեանք, զի առքօք յորդորէր զԱթենացիսն պաշտպանել քաղաքացն որ կրէին յարձակումն ի թագաւորէ անտի, մանաւանդ Ողինթացւոցն։

3. Ընդ ուր Դեմոսթենէս հայրենասիրաց կուսակցին հասարակեալ էր, Էսքինէսն մեւս եւս ճարտարախօս ոչ ինչ ընդհատ ի Դեմոսթենեայ՝ էր ի կողմն Փիլիպպեայ՝ լեալ կաշառեալ ի նմանէ։ Վասն այնորիկ իսկ՝ յորժամ վճիռ եա քաղաքն Աթենացւոց տալ Դեմոսթենեայ պսակ ոսկի՝ քանզի նա էր որ ճարտարխօսութեամբ ածեալ էր ի հաւան առաքել թիկունս օգնականութեան ի Բիւզանդիոն, եւ այնպէս ազատեցուցեալ էր զքաղաքն ի պաշարմանէն Փիլիպպեայ, կամէր Էսքինէս շքեղ ճառիւք ի բաց դարձուցանել զվճիռն՝ ցուցեալ թէ չիք Դեմոսթենեայ վճարեալ ինչ։ Առ խօսեցաւ Դեմոսթենէս զանհամեմատ ճառն՝ անձին պաշտպանութեան «զՎասն պսակին»[4], որով այնչափ ի նեղ զհակառակորդն հասոյց՝ զի արկաւ նա ի պատիժս, եւ առ չժուժալ ամօթոյն ել գնաց հատուած ի Ռոդոս, ուր կարգեաց դպրոց ճար-

1 Πανηγυρικός. 2 Périodes. 3 Philippiques. 4 Περὶ τοῦ στεφάνου

տարիօսութեան (✝ 317)։ Ներիս ճառս անդ զոր ունիմք ի ճառից Նուբինեայ՝ երեւի ճարտարութիւն մեծ յօրինելոյ նկարագիր բարուց եւ կրից ոգւոյ։

Լեկուրգոս Աթենացի (ծն. 408) աշակերտ Իսոկրատայ եւ Հիւպերիդէս (✝ 322) էին գործակիցք Դեմոսթենեայ ընդդէմ Մակեդոնացւոց, եւ վերջինք ի 10 ատտիկեցի ճարտարախօսաց՝ զորոց զճառսն ժողովեալ են իմաստունք աղեքսանդրիական դպրոցին։

## 283

### Փիլիսոփայութիւն։

Փիլիսոփայութիւն Յունաց հնագոյն կամ յառաջ քան զՍոկրատէս։ — Յորժամ զարթիցէ մարդկեղէն ճանաչումն՝ սկսանի ոգին ի վիճակէ անտի զգացմանցն եւ երեւեցուցմանց շփոթ իմն զմիմեամբք անկելոց՝ հանել ի վեր զանձն եւ յինքն իմն գալ. եւ այս իսկ «դիտակցութիւն» է սկիզբն փիլիսոփայելոյ, որով մարդն գայ ի խելամտութիւն՝ ոչ միայն ի վերայ իրաց եւ համեմատութեանց որ «արտաքոյ քան զինքն» իցէ, այլ եւ շարժմանց եւ վիճակի անդէն ի ներքս «յինքեան»։ Մարդկեղէն միտք ի զարթնուլ անդ իւրեանց այսպէս՝ նախ զառաջինն արտաքին երեւութիցն կարգի եղեւ մտադիր, եւ զմտադրական զօրութիւնն իւր աշխատեցոյց ի խոյզ եւ ի քննութիւն «Բնութեան» (մարմնաւոր եւ շնչաւոր գոյացութեան)։ Այլ՝ ուր արեւելեանն ամենայն համօրէն մտածութեամբն ի Բնութիւն անդր մտեալ խորագոյն՝ անդէն մնաց ընկղմեալ եւ չկարաց ոգի նորա անջատել զանձն ի Բնութենէ անտի իբրեւ յիմէքէ որ դէմ ընդդէմ հակառակ ոգւոյն իցէ, նմին հակառակ՝ յոյնն շարժումն մտօք՝ ամբարձ զանձն ի վերոյ քան զԲնութիւնն, եւ ջանայր ընդմտանել ի նա թափանցանց եւ խելամտեալ տիրել նմա։ Այսն սակս հնագոյն փիլիսոփայութիւնն Յունաց է «Փիլիսոփայութիւն Բնութեան», քանզի ի դիտելոյ անտի զԲնութիւնն առ նա սկիզբն. ամենայն ջան եւ ճիգն նորա այս է՝ ի «բազմաւորութեան» երեւութից աշխարհի «զմիութիւնն» գտանել, ի մշտնջենաւորն «փոփոխման» զմնայունն», «յերեւութի» անդ՝ «զէականն եւ զերական հիմն նոցա»։ Ի լուծումն խնդրոյս այնորիկ ընդ երկուս իմն շաւիղս ընթանային. մին էր «Փիւսկեան», մտածութիւն Յոնիական փիլիսոփայութեան՝ որ ըմբռնէր զաշխարհս ըստ զգայականն երեւութից եւ խնդրէր գտանել զբուն նախաւոր հիմն իրաց, եւ միւս՝ «Բարդյական» դորիացի պիւթագորական դպրոցն՝ որ որոնէր զներքին հիմունս կարգաւ յառաջադէմ գալոյ մասանց աշխարհի, եւ թէ որպէս կան օրէնք եւ դաշնակաւորութիւն ըստ բաղդական իմն սահմանաց բարւոյ եւ չարի ի հիմնարկութեան աշխարհի։ Նորերոդ իմն ընթացք

էին փիլիսոփայական քննութեան Նշչեական դպրոցին՝ որ եդ իբրեւ մերադոյն քան զամենայն սկիզբն՝ զոտեալ «Էն կամ Գոյն» եւ «զմիութիւն»․ եւ «զԱստուած» եւ «զաշխարհ» ընկալեալ իբրեւ մի։ — Որպէս երկուքն այնոքիկ՝ «զբնական» եւ «զբարոյական» երեւս փիլիսոփայութեանն յօրինեն, նոյնպէս եւ Եղէականն՝ «զտրամաբանական»[1] երեսն։

## 284

1․ Յոնիական դպրոցն զայն իմն ունէր ի մտի՝ զի զերեւոյթսն որ ի Բնութեան լինիցին՝ մեկնիցէ ի ձեռն զօրութեանց եւ ստորհականութեանց նիւթոյն իւրոյ զգալւոյն։ Եւ այս երկու իմն օրինակաւ․ մի՝ «Զօրութենականն»[2] պատճառաւ, այսինքն՝ ընդունելով «նիւթ ինչ նախաւոր» (կամ զօրութիւն ինչ նախաւոր)՝ յորմէ ի ձեռն «թանձրանալոյ» եւ «նօսրանալոյ» աշխարհս երեւոթիւքն գոյացեալ տակաւ ի ձեւ եւ ի կերպարանս․ այնպէս՝ զի որ ինչ ի բնութեան «եղանիցի»՝ այն ի փոփոխմանէ իմիքէ այնր նախաւորն նիւթոյ կամ զօրութեան մեկնիցի։ Եւ միւս եւս «Մեքենական» պատճառաւ․ յորում համարէին իմն թէ ամենայն իրք ի նախաւոր իմիք միայնումն նիւթի բովանդակեալ կայցեն, եւ ի ձեռն «բաժանման» եւ «յօդման» յօրինիցին․ այնպէս՝ զի չընդունէին թէ բուն «եղանիցին» իրք ինչ կամ լինիցի փոփոխումն ստորհականութեանց, այլ զամենայն կամէին մեկնել ի փոփոխմանէ արտաքին համեմատութեանց ի միջոցի։

**Ա․ Փիւսիկեանք դինամիկականք։** — Թաղէս Միլետացի (630) անուանի իբրեւ քաղաքային առաջնորդ, աստեղագէտ եւ փիլիսոփայ՝ մի յեւթանցն փիլիսոփայից, համարի առաջնորդ Յոնիական դպրոցին՝ այսպիսի ինչ յառաջադրութեամբ թէ աշխարհս գայ ի յարդ եւ ի զարդ ի թերակատար ինչ սերմնականն վիճակէ խառնաւական բնութեան կամ «ի ջրոյ»։ — Նոյն նորին քաղաքակից Անաքսիմենէս (540) առաւել միտ եդեալ շնչաւորական գործունութեանն գտանելոյ ի նախաւոր նիւթի անդ՝ իբրեւ հիմն եւ սկիզբն եդ «զօդն»՝ որ երեւիցի ի փչման հողմոյ՝ իբրեւ ինքնաշարժ զօրութիւն, եւ ի տարբերութի անդ շնչոյ՝ իբրեւ պատճառք կենդանութեան։ Միաբանէ ընդ նմա եւ Դիոգինէս Ապողոնիացի (460) որ զօդս կազմիչ իմն ոգի դնէր։ — Փերեկիդէս Ասուրացի (540) եդ մի՝ գործօն սկիզբն «զեթեր» եւ միւս՝ կրական սկիզբն «զհող»․ երկոքեին միաբանեալ եւ կապեալ ընդ միմեանս ի «ժամանակի», յորում «Ամենայնն» կամ «Պան»[3] (տիեզերք) յօրինեալ կազմի։ — Հերակլիտոս Եփեսացի (500) այր ազնուական եւ ի կողմն ազնուապետութեան եւ սեւամաղձական խառնուածով,

1 Logique. 2 Dynamique. 3 Τὸ πᾶν.

ովես համեմատին ընդ տեսլեանց՝ որպէս երեւոյթ իրիք առ էու-
թիւն նորա, չճշմարիտն առ ճշմարիտն: Պատճառ ասէր՝ ամենայն
“էականացն„ եւ “եղականաց„ է Աստուած “բարձրագոյն տեսիլն
քան զամենայն տեսիլս„, որ յայլ ամենայն տեսիլսն կայ, եւ զայլ
ամենայն տեսիլսն բովանդակէ. եւ այսպէս երեւի առ Պղատոնի
գոյութիւն “միոյ միայնոյ„ բարձրեալ, ազատ, իմաստուն եւ առ-
գարն Աստուծոյ՝ իբրեւ հոգւոյ: Այլ զՏեսիլն Աստուծոյ յատա-
կութեամբ “առանց միջնորդի„ չմարթեն ըմբռնել միտքն մարդ-
կեղէնք, այլ ի պատկերսն նորա՝ այս ինքն ի Տեսիլսն ճշմարտու-
թեան, բարութեանն եւ գեղեցկութեան. եւ յայն սակս իսկ
ամենայն մտածութիւն եւ խղճք եւ գործ մարդոյն պարտի ի նոյնս
թեւակոխել: Քանզի հոգիք մարդկան յառաջագոյն յաշխարհի
անդ Տեսլեանց էին եւ հասանէին ի մի միւսանգամ անդր՝ եթէ ի
պանդխտութեանն ժամանակի ջանասցին նմանել կենաց այնր
աշխարհի՝ զարթուցանելով զյիշատակսն որ մոռացեալ են առ-
կայքն ի նոսա ի յառաջ կենաց անտի “յառաջգոյութեանն„[1] իւ-
րեանց: Իսկ եթէ երթայցէ ոգին զհետ ձգիչ զօրութեանն՝ որ
յաստուածեղէնն անտի անջատեալ ածէ զնա ի զգալի աշխարհն
երեւութից, այնպէս զի նախամեծար առնիցէ զէականն քան զէ-
ականն, զերկրականն քան զյաւիտենականն, զմարմնաւորն եւ զփո-
փոխումն շրջշրջման երեւութից՝ քան զմիութիւն տեսլեանցն աշ-
խարհին, անկանի ի թշուառ իմն կեանս պառակտութեան եւ յա-
ծութեան, որ յետ մահուն առնուլ եւս փառթարանաց. քանզի
ոգին որ ըմբռնեալ եւ ծանրացեալ իցէ զգալի աշխարհաւ՝ տառապել
եւս ընկղմի ի չէականն անդր եւ ի խոնարհագոյն մարմինս փոփոխի:
Այս յայն սակս իսկ կենաց մարդոյն վախճան համարի Պղատոն
“զնմանութիւնն Աստուծոյ որչափ ինչ հնար է„[2]. եւ զփիլիսո-
փայութիւն սահմանէ “Խոկումն մահու„[3]:

Համառօտեալ վարդապետութիւնն Պղատոնի ամփոփի ի յաջորդ
գլխաւոր յառաջադրութիւնս. 1. Աշխարհ ինչ տեսլեանց՝ որք
ամփոփեալ իցեն իբրեւ ի մի կէտ՝ զնախաւոր ինչ աստուածեղէն՝
էութեամբ անհաս մարդկեղէն մտաց: — 2. Երեւելի ինչ աշ-
խարհ ըստ պատկերի նմանութեան տեսլեանցն աշխարհի, այս ինքն
զգալի աշխարհս որ յօրինեալ է միախառն՝ գնդաձեւ, բոլորաձեւ
շարժմամբ, եւ ի կենդրոնի նորա շունչ ինչ իբրեւ ոգի նորա: —
3. Մարդն իբրեւ միջավայր եւ կենդրոն մահկանացու իրաց, որ
ըստ ոգւոյն պատշաճի տեսլեանցն աշխարհի, եւ ըստ մարմնոյն՝
զգալի աշխարհիս, զարդարեալ Բանաւորութեամբ կամ Բանիւ[4],
որ ձգնի առաջնորդել նմա ի վեր կոյս ընդ ճանապարհ առաքինու-
թեան, եւ ածի նա դարձեալ կիրս եւ զգայուն ցանկութիւնս որ

1 Préëxistence.
2 Ἐξομοίωσις τῷ Θεῷ κατὰ τὸ δυνατόν. ի Թէէտն:
3 Μελέτη θανάτου.
4 Λόγος.

դրդեն զնա ի զգալի իրս աշխարհի համարել զվախճան մարդկեղէն կենաց։ Միայն որք բարձրագոյն զգաստութեամբ վարուց անդադար նկրտին յԷութիւն անդր իւրաց՝ այս ինքն յաշխարհն տեսլեանց՝ նոքա են ճշմարիտ իմաստասէրքն, արքունական բնութիւնքն, եւ սոցա վայել է տիրել եւ իշխել երկրի ըստ քաղաքային կարծեաց Պղատոնի։

Վ՝ասն ժամանակի յօրինման եւ բաժանման գրոցն Պղատոնի պէսպէս կարծիք են։ Բնական քան զամենայն այն է՝ դնել երիս գլխաւոր ժամանակս։ — 1. Առ կենդանութեամբն Սոկրատայ եւ ըստ սոկրատական մտաց թուի յօրինեալ Պղատոնի զգիրս ինչ ի գրոցն՝ յորս գիտութիւնն առաջի դնի իբրեւ առաջին պայման առաքինութեան եւ յանդիմանին վարկպարազի տեղեկութիւնք սոփեստէիցն. այսպիսի իսկ են խօսքն՝ "Հիպպիաս կրսերն, Լիւսիս, Քարմիդէս, Ղաքէս, Պրոտագորաս, Եւթիդեմոս" եւ այլք։ — 2. Յետ մահուն Սոկրատայ եւ ի բնակել իւրում ի Մեգարա գրեաց Պղատոն, որպէս հաւանութեան է, զԳորգիաս, զԿրիտոն, զԵւթիփրոն, զԹէէտետոս եւ զայլս նոյնպիսիս, վասն ցուցանելոյ զհարկ "առաքինի ինչ վարուց" որոյ հիմն իցէ "ընտածին գիտութիւնն", եւ զանձնաւորութիւն Տեսլեանցն. որպէս գրեաց եւ զԿրատիղոս, զՍոփեստայս, զՊարմենիդէս՝ յորս ցուցանէ ընդդէմ Եղէատեանց զիրականութիւն Տեսլեանց եւ զընտրութիւն էութեան եւ երեւութի, միութեան եւ բազմութեան։ — 3. Իսկ ի գիրսն զոր գրեաց Պղատոն յետ իտալիական ճանապարհորդութեանն եւ տեղեկանալոյ պիւթագորեան փիլիսոփայութեանն՝ որոշէ նա զհամեմատութիւն մարդոյն՝ առ Տեսիլսն, եւ զՏեսլեանցն առ զգալի աշխարհս, այս ինքն ճառէ զնկատութենէ[1] մարդկեղէն ճանաչման եւ գործոց, եւ զվարդապետութենէ արարչութեան եւ կարգի երեւելի աշխարհիս. յայն սակս զՎիճողութենէ[2], զԲարոյականէ եւ զՓիւսկեան փիլիսոփայութենէ միանգամայն կան ի նոսա ճառք։ Ի սոյն կարգ հային կատարելագոյնքն քան զամենայն գիրս նորա՝ Փիղեբոս, Փեդոն, Խնճոյք, Փեդրոս, Քաղաքաւորութիւն, Տիմէոս, եւ Վասն օրինաց։ — "Վիճողութիւնն" է սկիզբն փիլիսոփայութեան ըստ Պղատոնի, այնու՝ զի բաժանէ, կապէ եւ ածէ ի կարգաւորութիւն զտեսիլսն՝ հանեալ զնոսա ի խառնակ հանգամանաց, եւ զատանէ ի միջոյ զգալի երեւութիցն զտեսիլսն որ ի վեր քան զզգայունս իցեն։ Ազգակից իմն ընդ նմին է ուսողութիւնն, այնու՝ զի աղերս եւ համեմատութիւն տեսլեանց առ երեւոյթսն, շարժից զօրութեանց՝ առ շարժումն՝ ի վերայ թուոյ եւ չափոյ հաստատեալ կայ։ — Բարոյականն ուսուցանէ զվախճանն կենաց՝ որ է խորտակել զզօրութիւն չարին ի բաց փարատելով զմոլորութիւնն ի ձեռն ծանօթութեան աստուածեղէն իրաց, եւ լինել միւսանգամ նման Աստուծոյ՝ ի ձեռն իմաստութեան եւ առաքինութեան։ Եւ որպէս ի Փեդրոսին ուսուցանէ՝ ոգիք մարդկան վաղվաղակի յետ արարչութեանն իւրեանց երթան հանդերձ աստուածովքն ի դաշտս ճշմարտութեան՝ ի կայան անդր տեսլեանց։ Ըստ չափոյ յիշմանն զոր անտի առեալ բերեն ընդ իւրեանս՝ սահմանեալ որոշի մարմինն եւ օրինակ կենացն զոր նոքա ընտրեն։ Յետ մահուն երթան ոգիքն ի տեղի անդր վարձուց կամ պատժոց, մինչեւ յետ 1000 ամաց կոչիցին այսրէն յետս ընտրել նոր ինչ

1 Théorie. 2 Dialectique.

եւ զայսու ձգտեալ՝ մտածութիւնն ընդ միմեանս համաձայնեալ ամենայն
գոլ ի միութիւն՝ եղեւ վարդապետութիւնն նորա Թագաւոր ի միութենէ
անուն որ սեղմեալ կայցէ զփիլիսոփայութիւն նորա ի մի ինչ բոլոր
բովանդակ։ — Այլ ոչ այսպէս Արիստոտելէս՝ որոյ գրեանն՝ Թէպէտ
եւ ըստ գեղեցկութեան ոճոյն յոյժ խոնարհագոյն քան զՊղատոնին են՝
բայց լուսաւորութեամբն եւ արութեամբ անցուցանեն զնովաւ. որպէս
եւ փիլիսոփայութիւնն սորա է առաջին ամենայն բովանդակեալ ի պատա-
մութեան փիլիսոփայութեան։

2. Արիստոտելէս։ — Զվարդապետութիւնն զամենեւին ընդդի-
մակաց Պղատոնի՝ առաջնորդին "Տեսլականութեան,,[1] յօրինէ նորին
աշակերտ Արիստոտելէս Ստագիրացի ի Մակեդոնիա (ծն. 384,
† 322) որ եկաց առաջնորդ "Իրականութեան,,[2]։ Եղանորն կամ
դպրոցն նորա անուանեալ կոչեցաւ Պերիպատետիկեան կամ Ճեմա-
կան, այնու զի ուսուցանէր Արիստոտելէս ճեմելով ընդ հովանաւորս
Լիկիոնի յԱԹէնս։ Ուր Պղատոն բարձրախորհուրդ եւ բանաստեղ-
ծական միտքն յանհերեւոյթ վայրս տեղեացն աշխարհի ելանէր, եւ
զփիլիսոփայութիւնն համարէր միայն իբրեւ միջնորդ ի յառակել
զմիտս եւ ջանալ ի բարձրագոյնսն եւ յերկնաւորականսն վերանա-
լոյ. նմին հակառակ Արիստոտելէս խուզիչ եւ "քննական,,[3] միտքն
կաց մնաց անդէն "յաշխարհի աստ երեւութից,,. ընԹանայր նա ի
մանաւորս անտի այս ինքն ի "Բնութենէ,, եւ ի "Փորձոյ,,[4] "յընդ-
հանրական,, անդր, եւ վախճան փիլիսոփայութեան համարէր
զճշմարտութիւնն յոր հասանիցէ ոք ի ձեռն գիտութեան։ Եւ պա-
ուրեմն՝ Տեսիլն որով սկսանի Պղատոն զքննութիւն իւր՝ է վերջ
եւ կնիք կամ ծայր քննութեանն Արիստոտելեայ։ Ուր նա զան-
ձինն կամ զյաւիտենական կաղապարս կամ յառաջատիպ օրինակս
իրաց դնէ իբրեւ ճշմարիտ էութիւնս իրացն այնոցիկ, եւ այնպէս
տեսիլքն այնոքիկ անդէն յիւրեանս առանց կախելոյ զմանաւորաց՝
ունին զիւրեանց էութիւն կամ գոյութիւն, Արիստոտելէս զնորին
հակառակն ի մանաւորս անդ զէութիւն իրացն դնէ եւ զընդհան-
րականն ի ձեռն մանաւորացն միայն ցուցանէ։ Պղատոն ամբառ-
նայ զանձն "ըստ բնութիւն ի վեր,, եւ յերկնաւորն վայրաց առնէ
զյանդիմանակաց եւ զնիւԹ փիլիսոփայութեան իւրոյ, ուր Արիս-
տոտելէս արկանէ ընդ քննաւէր միտս իւրովք զերկիր եւ զբնու-
Թիւն եւ զամենայն ինչ որ ի նմա կամ ի վերայ նորա է, զամե-
նայն նիւԹս գիտութեան առնէ ի կարգ, եւ լուսաւոր՝ աղխաղխեալ
հաւաքմամբք[5] հանէ ընդհանրական օրէնս։ Ուստի Պղատոն եւ
Արիստոտելէս դէմ ընդդէմ միմեանց յօրինեալ կազմեն զերկուս
մտաւոր մեծութիւնս հնոց ժամանակաց, յորոց երկոքին եւս
բարձրագոյնք, հաւասար կարեւոր եւ զոյգ պատուական եւ մեծա-
գին են. եւ են նոքա իբրեւ երկու բեւեռք կամ ընԹացք ըստ որս
ոչ անցին միտք խորհողք՝ ոչ ի հինսն եւ ոչ ի նորս. եւ զնոքիմբք

1 Idéalisme. 2 Réalisme. 3 Critique. 4 Empirie. 5 Conclusion.

շրջերոց. է միշտ՝ ամենայն իսկ ծիգն գառմներոյ փիլիսոփայութիւն՝ մարդկեղէն քննութեամբ[1]:

Բովանդակութիւն Բնաբանական յառաջադրութեանց նորա են յաջորդքս: — 1. Ամենայն ինչ որ կայ՝ ի նիւթոյ եւ ի կերպարանաց կայ, այս ինքն՝ յառաջձէ իմքէ եւ ի յօրինիչ իմն սկզբանէ. եւ զի նիւթն՝ որ անձամբ յանձնէ անխառն է, ընկեցէ ի յօրինուածն ի ձեռն կերպարանաց՝ հարկ է թէ գոյցէ մեւս եւս սկիզբն՝ այս ինքն շարժումն կամ պատճառ շարժիչ: — 2. Բայց քանզի ամենայն ինչ որ արդեամբք գոյ՝ կարօտ է պատճառի իմիք շարժչի՝ եթէ չկամիցիմք անեզր ինչ կարգ շարժիչ պատճառաց դնել՝ որով ապաքէն գիտութիւնն անհնարաւոր ինչ լինէր, հարկ է զի իցէ առաջին ինչ արձակ պատճառ՝ որ ինքն անշարժ լինելով յինքեան՝ զամենայնսն շարժիցէ: Իւ այս է Աստուած. ուստի Աստուած է "ամենեւին գործօնութիւն[2]", եւ յայն սակս ունի յինքեան յաւիտենական կենդանութիւն եւ բարութիւն եւ երանութիւն: Բայց համեմատութեամբ առ աշխարհ՝ չէ Աստուած արարիչ նորա, այլ յաւիտենական շարժիչ յաւիտենակից աշխարհի, վասն այսորիկ եւ աշխարհս մշտնջենաւորակից է ընդ Աստուծոյ: Բայց սակայն ոչ շարժէ նա զաշխարհս անդէն առանց միջնորդի ինքն ինքեամբ այլ ի ձեռն սահմանաւորն պատճառաց. ի պատճառաց աստի առաւել քան զամենայն մերձաւորագոյնք նմա՝ են մարմինքն երկնաւորք՝ զորոց շրջանակօքն է Աստուած, եւ յայն սակս իսկ արագագոյն քան զամենայն շրջշրջին, եւ միջնորդաւ սոցա գործէ Աստուած ազդեցութիւն ի վերայ երկրի եւ որոց ի վերայ նորա են: — 3. Իսկ ոգի մարդոյն, որ շարժիչն է մարմնոյն՝ այնու զի մարմինն չունի ամենեւին յինքենէ շարժումն՝ է ամբողջացուցիչ մասն կամ կերպարանք[3] մարմնոյն. երկու իմն մասունս ունի ոգին, մի՝ սնուցիչ ոգի, եւ մեւս՝ զգայուն ոգի. ինքն յինքեան ոգին բաժանի յիմացութիւն կրական եւ ուշակալ զգայական իրաց, եւ ի մեւս եւս յիմացութիւն գործօն եւ ուշակալ ընդհանրականաց. վերջինն է գումարութիւն Ցեղեանց, յաւիտենական եւ անմահ որպէս զԱստուած, նա աւանիկ՝ ինքնին իսկ մտածութիւնն Աստուծոյ է: Բայց որպէս աստաստին յայտնի իսկ երեւի՝ արիստոտեղեան վարդապետութիւնն չթողու ամենեւին տեղի անհատական անմահութեան ոգւոյ, քանզի գործօն իմացութիւնն այնու իմն անհատանայ, զի յանհատի անդ՝ զանհատական ճանաչումն, զուշ յիշատակի եւ զայլ եւս ինչ նոյնպիսիս առնու ի կրական մահկանացու իմացութենէ անտի. ապա յորժամ

1 Յայն սակս յիրաւի ի վաւերականեան պաշտօնատան ի Հռովմ ի նկարու անդ Ռափայէլի՝ որ է Դպրոցն աթենական, ձգէ Պղատոն զձեռն իւր յերկինս իբրեւ յաշխարհ անդր անեղծանց իւրոց, ուր Արիստոտելէս ցուցանէ զերկիր իբրեւ զասպարէզ քննութեանց իւրոց:

2 Ἐνέργεια.

3 Ἐντελέχεια.

սա ի մահուն եղծանի, չմնայ անհատական անմահութիւն ոգւոյ մարդոյն։ — Զհետ գայ համօրէն իսկ բովանդակածին Արիստոտելեայ եւ այն՝ զի գործական մասն փիլիսոփայութեան կարգեալ լիցէ առ տեսական անդ իբրեւ առ վախճան, ուր առ Պղատոնի յետս ընդդէմ Նորին հակառակն է։ Եւ առհասարակ իսկ բարոյական ուսումն Արիստոտելեայ՝ քաղաքային եւեթ հիմն ունի եւ առաքինութիւնն չէ ինչ աւելի քան զբարեբարոյ իմն քաղաքավարութիւն, եւ ոչ դիտեալ ի բարձրագոյն ինչ կամ յիմանալի կամ յաստուածեղէն ճշմարտութեանն զօրութենէ։ — Սակայն առաւել քան զամենայն զխորհականն կամ զվարդապետութիւնն օրինաց խորհելոյ հասոյց ի կատարումն, այնպէս՝ զի ամենայն յաջորդ դարք մինչեւ ցայսօր չկարացին էական ինչ ի նա յաւելուլ։

Արիստոտելէս առնէր ընտրութիւն ինչ ի մէջ աշակերտացն, որոյ ազդեցութիւն երեւի եւ ի վերայ գրոց Նորա։ Յառաջ քան զհասարակօր ուսուցանէր բուն մտերիմ եւ ծանօթ աշակերտացն՝ մուծանելով զնոսա ի խորագոյն խնդիրս փիլիսոփայութեան իւրոյ[1] ոչ ըստ ձեւոյ ճառից Սոփեստէիցն եւ ոչ ըստ ոճոյն Սոկրատեանց, այլ աղխաղխեալ բանիւք։ Իսկ յետ հասարակ աւուր ուսուցանէր խառն իմն ամբոխի լսելեաց կամ աշակերտաց՝ ռամիկ իմն ոճով, եւ բազում անգամ ըստ կարգի սովորութեան հնոցն խօսելով երկուց կամ բազմաց ընդ միմեանս[2]։ — Փիլիսոփայական գիրք Արիստոտելեայ (ըստ բաժանմանն Բուլէի) են յաջորդքս։ — **1**. Խորհական գրութիւնքն՝ որոց առհասարակ իմն անուն կոչի Գործարան[3]՝ յորում կան գիրք “Ստորոգութեանցն՝„ որ են գլխաւոր ըմբռնմունք համօրէն մարդկեղէն ծանօթութեան, գիրք “վասն մեկնութեան„ կամ վասն դատաստանաց. Առաջին եւ վերջին “վերլուծականքն„ այս ինքն՝ վարդապետութիւն վասն հաւաքմանց եւ գիտութեան. Խորհականն կամ վարդապետութիւնն “Վիճողութեան„ եւ գիրք վասն “Սոփեստական ձեռնարկութեանց„։ — **2**. Փիւսկեան գիրք Նորա են՝ “Փիւսկեան ունկնդրութիւնք„[4] գործ գլխաւոր վասն սկզբանց բնութեան՝ վասն միջոցի, ժամանակի եւ շարժման. վասն “երկնից„ այս ինքն վասն շարժման երկնաւոր մարմնոց. վասն “ծննդեան եւ ապականութեան„ եւ վասն “երեւութից օդոց„։ — **3**. Մասամբ միով ի բնական պատմութիւն եւ մասամբ դարձեալ ի մարդկախօսութիւն կամ ի հոգեխօսութիւն հային յաջորդքս. Պատմութիւն անասնոց, վասն հասարակաց շարժման անասնոց. վասն ոգւոյ, զգայութեան եւ զգալւոյ, վասն ուշոյ յիշատակի, վասն քնոյ եւ տքնութեան, վասն երազոց, վասն տեսլեանց ընդ քունն, վասն երկայնութեան եւ կարճութեան կենաց, վասն երիտասարդութեան եւ ծերութեան, վասն տալոյ շունչ եւ առնլոյ։ — **4**. Բնազանցական գործք Արիստոտելեայ՝ որք զբարձրագոյն սկզբանէ քան զամենայն սկզբունս՝ ճառեն, որ եւ առաջին փիլիսոփայութիւն կոչին յԱրիստոտելեայ. բարոյական գիրք Նորա՝ “Բարոյականն առ Նիկոմաքոս„ եւ “Մեծ բարոյականքն„ եւ “Քաղաքաւորութիւնն„՝ հանդերձ “Տնտեսականաւն„։ Հիմն տէրութեան կամ քաղաքային ընկերութեան՝ որ է ըստ Բարոյականին Արիս-

1 *Λόγοι ἐσωτερικοί.*

2 *Λόγοι ἐξωτερικοί, ἐγκύκλιοι, ἐν κοινῷ.*

3 **Organum.**

4 **Auscultationes physicae.**

առաւելական՝ չափ եւ կանոն մարդկեղէն առաքինութեանն, է ընտանիքն[1] որ հաստատեալ կայ երիւք համեմատութեամբք կարգեալովք ի բնութենէ՝ այս ինքն այր՝ առ կին, ծնողաց՝ առ որդիս, տեառն՝ առ ծառայն (գերին): Ընտանեաց կազմին տոհմք, ի տոհմից՝ ազգութիւնք կամ քաղաքք: Վախճան ամենայն կատարելագոյն քաղաքաւորութեան կամ քաղաքային կարգաց է երջանկութիւն ամենայն քաղաքացեաց. Եւ քանզի այն երջանկութիւն յառաքինութեան հաստատեալ կայ՝ հարկ է զի առաջին պարտք ազգութեանն իցէ ծնուցանել քաղաքային առաքինութիւնս: Առ ի զարգանալոյ եւ յառաջադէմ լինելոյ ազգութեան կամ քաղաքի՝ հարկ է զի շահ առանձինն ուրուք ուրուք՝ տացէ տեղի հասարակաց շահուն: Բայց այնու իմն մանաւանդ նշանաւոր են գիրք քաղաքաւորութեանն Արիստոտելեայ, զի անցուցանէ անդէն փիլիսոփան ի հանդիսի զամենայն օրինակս քաղաքային առաջնորդութեան զՅունաց եւ զայլոց՝ ըստ առաւելութեանցն եւ ըստ թերութեանցն, եւ զայս զպատճառս կործանմանն նոցա ընծայեցուցանէ, եւ զնոցա պահպանութեանն ցուցանէ, եւ յետ այնորիկ կարգէ ըստ իւրոցն կարծեաց օրինակ ինչ առաջնորդութեան կամ քաղաքաւորութեան հաստատեալ ի վերայ բանաւորութեան եւ փորձոյ, պահանջելով յառաջնորդաց անտի քաղաքաւորութեանն եւ ի քաղաքակցացն՝ առաքինութիւն զի յերկաց ծայրից ի "միջինն" յօժարեսցին: Եւ քաջ եւ լաւագոյն քան զամենայն օրինակս առաջնորդութեան կամ քաղաքաւորութեան համարի զխառնումն օրինակաց առաջնորդութեան, այնպէս՝ զի առաւելագոյն զօրութիւնն կամ կշիռն իցէ ի ձեռս միջնոյ կարգի մարդկանն (այս ինքն՝ սահմանադրական միահեծան տէրութիւն):

Արիստոտելէս ի մեռանել իւրում՝ զԹէոփրաստէս (ծն. ի Լեսբոս 370) զմտերիմ քան զամենայն աշակերտսն իւր կացոյց իւր յաջորդ ի Լիւկիոնին եւ ետ նա նմա զմեծ մատենադարանն իւր եւ զժողովածոյս բնական պատմութեան: Պատմի թէ 500 գրութիւնքն Արիստոտելեայ ի Թէոփրաստեայ անցին ի ձեռս առն ուրումն աթենացւոյ, եւ սորա եւս ժառանգք թաղեցին զգրեանն՝ զի ապրեցուսցեն ի ձեռաց Թագաւորին Պերգամացւոց որ հատեալ էր ի սէր գրոց, եւ թէ յետոյ ուրեմն ի ժամանակին Սուղղայ գտան մատեանքն եւ տպեցան:

## 288

Այլ եւս աշակերտք Սոկրատայ՝ Արիստիպպոս, Անտիսթենէս, Դիոգենէս եւ Եւկղիդէս: — Սոկրատէս կացուցեալ էր իբրեւ վախճան բարոյական փիլիսոփայութեան իւրոյ "զերջանկութիւն" եւ իբրեւ միջնորդ եւ ճանապարհ ի դոյն՝ զվարս "առաքինիս", եւ զջան առ նմանութիւն Աստուծոյ: Իսկ ի ձեռս աշակերտաց նորա այս վարդապետութիւն երջանկութեան առ այլ եւ այլ կերպարանս: — Մեծատուն եւ կրթեալ կենսասէրն Արիստիպպոս Կիւրենացի՝ որում յաջողեալ էր արկանել զանձամբ զուգակեան վայելչութեանն զմեծաշուք պատմուճանն եւ զխոշոր կրկնոցն փիլիսոփայութեան, ուսուցանէր թէ ախորժական ազդմունք՝ գլխաւոր

1 Famille.

բարութիւն են, եւ գործ այն է՝ զի զմտաւոր եւ զմարմնաւոր վայելս դք ընդ միմեանս միաբանիցէ այնպէս զի մի նոքիմբք ընդ կրիւք իմն անկանիցի: Այսպէս արկ նա հիմն Կիւրենական դպրոցին որ եդ իբրեւ վախճան կենաց զարուեստն վայելելոյ. եւ էր իսկ այն փիլիսոփայութիւն դիւրալուր մեծատանցն: Շրջեալ Արիստիպպեայ ի բազում տեղիս, եղեալ յարքունիս Դիոնիսեայ բռնաւորի եւ հաղորդեալ ընդ մեծատուն վաճառականաց յԵգինա եւ ի Կիւրենէ, սփռեաց զվարդապետութիւնն: Զայս սկիզբն վարդապետութեան Արիստիպպեայ թէ "պարտ եւ պատշաճ է խոնարհեցուցանել անձին զհանգամանս իրաց, եւ ոչ զանձն՝ հանգամանաց իրաց,, առ եւ մեւս ոմն աշակերտ Սոկրատայ՝ Անտիսթենէս, բայց զկէտս ընդդէմ վարդապետութիւնն ած անտի յառաջ: Զի ուր ընչաւէտն Արիստիպպոս ի վայելս կենացս յորդորէր, աղքատ եւ անինչ Աթենացին Անտիսթենէս՝ բարձրագոյն վախճան մարդկեղէն գործոց դնէր զդառնալն այսրէն ի բնական վիճակն, յանկարօտութիւն, ի սակաւապիտութիւն եւ ի ժուժկալութիւն: Եւ արդեամբք իսկ խստամբեր եւ սակաւապէտ կենօք իւրովք կամեցաւ ցուցանել թէ ներքին ազատութիւն հոգւոյ ձեռնհաս է մերժել յինքենէ իբրեւ աւելորդ ինչ՝ զարտաքին վայելսն. ծաղր իմն առնէր զմեծամեծօքն որ ի բարեկեցութիւն եւ ի գրգութիւն հատեալ իցեն, եւ յարդարէր զվարդապետութիւնն իւր մանաւանդ առ օտարսն, եւ պանդխտեալս ի քաղաքին Աթենացւոց: Բայց քանզի ոչ միայն զգեղխութիւն մեծատանցն արհամարհէր, այլ եւ զկրթութիւն եւ զքաղաքային վայելուչ վարս եւ զգնացս նոցա, յայն սակս ոմանք յաշակերտացն նորա սկսան անփոյթ առնել ոչ միայն զընկերական ձեւոց քաղաքականացեալ ժամանակին, այլ եւ զմտաւոր կրթութենէ որ ի ձեռն արուեստի եւ գիտութեան լինիցի, եւ զամենայն կարգս որ ի միաբան հաւանութենէ մարդկան հաստատեալ կայցեն: — Ամենեւին ի ծայր իսկ իրացն եհաս աշակերտն Անտիսթենեայ Դիոգենէս Սինոպացի (ծն. 414) որ յամենայն իսկ վայելից կենաց եւ յամենայն դիւրութեանց քաղաքականութեան հրաժարեալ՝ դիւցազնութիւն իմն ժուժկալութեան ցուցանէր. բայց անդէն ի կարասին իւրում որ էր տուն բնակութեան նորա՝ զարմացոյց զմեծն Աղեքսանդրոս ոչինչ կամելով առնուլ ի նմանէ բայց զարեւն զոր խափանէր սա՝ կացեալ առաջի տնկանն: Դպրոցն նոցա Կիւնիկեան անուանեալ ի վարժոցէն որոյ անուն Կիւնոսարգէս էր, յորում Անտիսթենէսն ուսուցանէր. եւ յայն սակս ակնարկելով իմն զանուն դպրոցին զԴիոգենէս՝ Կիոն (շուն) կարդային՝ վասն տառապեալ կենացն: Երբեմն փիլիսոփայական կրկնոցն Կիւնիկեան փիլիսոփայից պատուակ իմն էր անապարծութեան, բայց բազում անգամ ծածկեալ կայր ընդ նովին եւ մեծ ինչ դք անձն:

(Մէւս եւս երրորդ աշակերտ Սոկրատայ էր Էւկղիդէս Մեգարացի, հիմնիչ Մեգարացի դպրոցին։ Յորժամ Աթենացիքն արգելին Մեգարացւոց սպառնալեօք մահու չմտանել առն Մեգարացւոյ յԱթէնս՝ Էւկղիդէս հանապազօր գիշերայն զգեցեալ կանացի սքողեալ մտանէր ի տուն Սոկրատայ լսել զվարդապետութիւն նորա, եւ դառնայր յետս այգուն։ Էւկղիդէս խառնեաց «զբարոյական» փիլիսոփայութիւնն Սոկրատայ ընդ «էլէատական» փիլիսոփայութեանն Էղէատեանց. ուսուցանէր թէ «մի միայն բարութիւն» կայ, որ այլեւայլք եւ անփոփոխութեամբք բարութիւն կոչէ։ Բայց քանզի զՍոկրատեան Վիճողութիւնն կապեաց ընդ Էղէատեան ակերպատականութեան՝ արկ նա հիմն զբանախնդիր խնդրոցն եւ խաբեպատիր հաւաքմանց, որովք եղեւ մանաւանդ դպրոցն այն ոչինչ ընդհատ ի Սոփեստէից)։

## 289

Որպէս Կիւրենեական դպրոցն եղեւ մայր Էպիկուրեան դպրոցին, նոյնպէս Կիւնիկեանն՝ Ստոյիկեան դպրոցին յառաջին ժամանակս պայազատաց Աղեքսանդրի։ — Էպիկուրոս (ծնեալ ի Գարգետտոս Ատտիկէատանի, ուսեալ յԱթէնս եւ ուսուցանէր ի փոքրն Ասիա, † 269) առաւ փոփոխմամբ Կիւրենեական վարդապետութեան Արիստիպպեայ։ Ի փիլիսոփայութեանն իւրում զոր բաժանեալ էր ի Խորհական, Փիւսիկեան եւ Բարոյական՝ ուսուցանէր թէ ծանօթութիւն ճշմարտութեան միայն ի զգականական տպաւորութեանց առանձինն կամ զգալոյ մտաց կայ. չիք ինչ էութիւն ուրոյն եւ զատ ի նիւթոյ, իսկ նիւթն որպէս եւ ոգին եւ աստուածք իսկ ի դիպուածոյ խառնմանէ անբաժանելի մարմնոց կամ Անհատից եղեն կազմին. մարմնական զգայութեան՝ որպէս մարդկան նոյնպէս եւ աստուածոց՝ է երջանկութիւնն. աստուածոց երջանկութիւն այն է զի ի [illegible] եւ յաշխատանք գործոյ յօրինման աշխարհի եւ անհոգութեան ի բաց կայցեն (յայն սակս իսկ Էպիկուրոս չզնէ լինել աստուածոց ձեռնամուխ յիրս մարդկան), իսկ մարդկան երջանկութիւն՝ լինել ազատ յամենայն ցաւագին իրաց որ զմտացն հանգիստ խանգարեցեն։ Այս փիլիսոփայութիւն որ առաւելին առ Էպիկուրեայ աշնուազդն իւր կերպարանս ունէր՝ ապա յետոյ դարձաւ ի վարդապետութիւն բարեկեցութեան եւ հեշտականութեան, զի Էպիկուրոս զերջանկութիւնն ի բաւականութեան անձին առն իմաստնոյ դնէր, եւ զմտաւոր վայելուն իբրեւ անւաղանագոյնս եւ յարակագոյնս՝ նախամեծար քան զզգայականսն ունէր. բայց կարի նուրբ էր գիծն այն եւ դիւրին անցանել ընդ նա, եւ այնպէս եղեկաց վաղվաղակի զեղծ Էպիկուրեայութիւնն։ — Ստոյիկեան վարդապետութիւնն է ամենեւին դէմ ընդ դէմ հակառակ այնր թու-

## 291

### Առանձին կեանք Աթենացւոց¹:

Բայց մինչ չեւ թողեալ զՅոյնս՝ դիտեսցուք եւ զառանձին կեանս նոցա ի վերայ Աթենացւոցն:

Ընդ այգն ընդ առաւօտն ի խօսել հաւուն գային շինականքն հինցուցս ի բերան առեալ՝ ի քաղաք անդր բերել կերակուրս: Անդէն ի նմին ժամանակի բացեալ լինէին արուեստանոցք մեծաւ աղմկաւ, եւ փողոցք եւ հրապարակք լի լինէին մարդկաւ: Կէսք ի նոցանէ երթային ի առեւտրական գործս եւ կէսք ցրուէին գունդ գունդ յայլ եւ այլ տեղիս նստել ի դատաստան: Ժողովուրդն ունէր երկիցս յաւուրն, իսկ ատենադպիրքն մի եւեթ ընթրիս ունէին, բազումք սակաւիկ ինչ յառաջ քան զմուտս արեւու. յետ միջօրէի ննջէին սակաւիկ մի: Իսկ ի միջոցի ժամանակացն այնոցիկ, յառաւօտուն՝ յառաջ քան զհացարակոր եւ երեկոյին մինչ չեւ առեալ կերակուր՝ շրջէին զափամբք Իլիսոս գետոյ կամ շուրջ զքաղաքաւն՝ ուր օդն սուրբ էր եւ գեղեցիկ նայեացքն: Բայց անդին բազմամարդի քան զամենայն՝ էր հրապարակն վաճառաց: Անդ բազում անգամ լինէին ժողովք ժողովրդեան, անդ էր եւ Պրիտանիոնն եւ ատեանն առաջին իշխանաց, եւ կային ի հրապարակի անդ շուրջանակի կրպակք, վաճառանոցք իւղեփեցաց, արուեստանոցք ոսկերչաց եւ հանութք վարսավիրայից եւ այլոց եւս ճարտարութեանց տեղիք, եւ ի նմին վայրի ժողովեալ կային քննասէրքն եւ շատախօսք եւ դատարկամանուկք, որ զօրն ցերեկ խօսէին համօրէն զքաղաքային ինչ գիրաց եւ կամ քրքջէին եւ ծիծաղէին զարամբք ոմամբք, որ անձնեցուած իբրեւ ի կատակս լեալ էին: Բազումք ի քաղաքացեաց, որոց արտաքոյ քան զքաղաքն կալուածք էին՝ երթային անդր երիվարաւ այգուն եւ հրաման տային գործաւորացն, եւ բազում անգամ դառնային ընդ երեկս: Որս եւ մրցական հրահանգք մարմնոյ՝ զբօսանք իմն էին Աթենացւոց: Զանցանէր օր առանց բաղանեաց, եւ ըստ յաճախ սովորութեան երթային ի բաղանիս յառաջ քան զգլխաւոր կերակուրն. իսկ մեծատունք ունէին բաղանիս անդէն ի տունս իւրեանց, ուր աղքատքն՝ գնային ի հասարակաց լուացս, որ ձմերայնի տաքուէն եւս էր նոցա յերեսաց ցրտոյն: Յետ բաղանեաց ապա օծանէին անուշահոտ իւղովք:

Հանդերձ առն աթենացւոյ էր վտաւակ ինչ առանց թեզանեաց՝ որ հասանէր մինչեւ ցծունկս, եւ ի վերայ նորա արկանէին կրկնոց ինչ սպիտակ յասուէ, որ իբրեւ աղտեղէր՝ լուացեալ սպիտակացուցանէին զնա կաւճաւ: Ճարտար գիտէին Յոյնք զարկանելն զայն աշխողակութեամբ իմն եւ գեղեցիկ ածել զանձամբ, եւ ոչ դոյզն արուեստ զիրան համարէին, մինչեւ արժան համարել Պղուտարքեայ յիշել գովութեամբ զՊերիկղեայ թէ գեղեցիկս իմն զայն արկանէր: Մեծամեծացն առաւել հաճոյ էր հանդերձ ներկածոյ, մանաւանդ կարմիրն, ծիրանին եւ մանուշակագոյնն: Ձմերայնի ագանէին խոշոր ամրանս սարդիացիս լցեալս բամբակաւ: Հանդերձք ծաղկեալք միայն վասն դից եւ հանդիսական խաղալեաց ի բեմին եւ վասն վաւաշոտն եւ վատանշան մարդկան էին:

Կանայք յԱթէնս ներկանէին թուխ զյօնս եւ սպիտակ խառնեալ ընդ սնգուրի ծեփէին զայտս: Հիւսէին ծաղիկս ընդ վարսս իւրեանց եւ ցանէին փոշի դեղին զգլխով: Արկանելի ինչ ասուեայ ա-

1 Ամփոփեալ ի Բարթողինայ՝ Ճանապարհորդութիւնէ Պատանւոյն Անաքարսեայ յՅոյնս:

ռանց թեզանեաց եւ կտաւի արկանէին զանձամբ մինչեւ ցգարշապարս, որ ճարմանդաւ իւիք հաստատեալ էր ի վերայ միոյ յուսոցն, եւ լայն ինչ կամարաւ ամփոփեալ զլանջօք . յայնր վերայ ագանէին բաճկոնակ մի ամենեւին կարճ թեզանեօք, եւ յելանելն արտաքս ի տանէ արկանէին մեւս եւս վերարկու զուսովք իւրեանց եւ քող զգլխով : Ազգի ազգի հիւսք վարսից էին կանանցն աթենացւոց, եւ նոցին պէսպէս անուանք : Իսկ արք նախն հակառակ կարէին զհերսն կարճ եւ չէր ամենեւին նոցա սովորութիւն յօրինել ցցունս : Ի տօնս միայն կապէին պսակս ծաղկանց ի հերսն, նա աւանիկ եւ բազումք յառաջնորդաց անտի քաղաքին թեթեւ պսակս ոսկիս սովոր էին կապել ի գլուխս : Օծանէին Աթենացիք ի ժամ խրախուսթեանց, պատարագաց, հարսանեաց եւ այլոց եւս տօնից, իսկ զեղջուքն զամենայն օր : Յօրինէին իւղաթուրմ եւ զգահոյս եւ զկահ տանն : Բազմաց վասն իւրաքանչիւր մասանց մարմնոյ՝ ոտից, ձեռաց, յօնաց, վարսից եւ պարանոցի էր ուրոյն եւղ օծութեան : Եւ ատամանց եւս դեղ չէր ինչ անծանօթ կանանցն աթենացւոց : Կապէին քսուս մարգարտեղէնս, գինդս ոսկիս եւ օղս ադամանդեայս . բայց սակայն չանկանէին կանայք յանն յԱթէնս, այլ էին նոքա բնակեալ ի միում կողման տանն, յոր չէր համարձակ առն օտարի մտանել : Ի ժողովս արանց ոչ երեւէին, եւ ի գերեաց՝ աղախինք սպասաւորէին նոցա : Կայր յԱթէնս եւ բազմութիւն կանանց չկթելոց, որ ի բարեկեցիկ աշխարհաց Փոքուն Ասիոյ մանաւանդ ի Միղետեայ անդր եկեալ գածեցին ապականութիւն բարուց Աթենացւոցն :

Յորժամ ծնանէր ուստր ի տան առն աթենացւոյ՝ կախէին արտաքս պսակ ի ձիթենւոյ, ապա թէ դուստր՝ կախէին ասայն . մին՝ նշանակ մշակութեան էր եւ միւսն ժրութեան կանանց : Մանուկն նորածին լինէր եդեալ առ ոտս հօրն՝ առ ի նշանակելոյ թէ ունի նա իրաւունս ի վերայ կենաց եւ մահու որդւոյն : Եթէ ամբառնայր զնա ի վեր հայրն՝ նշանակ էր թէ կամի սնուցանել զնա, ապա թէ ոչ՝ արկանէին ի բաց զմանուկն . այլ այս դուն ուրեք դիպէր ի կրթեալ ժամանակս Աթենացւոցն : Յաւուրն եւթներորդի կամ ի տասներորդի առնէր կոչունս հայրն՝ ամենայն ազգականացն, եւ ի կոչունս անդ անուն կոչէր մանկանն, բայց դուն ուրեք ըստ հօրն անուան . այլ ընտրէին մանաւանդ զանուն միոյ ուրուք յերեւելեաց նախնեաց նորա, եւ վասն ճշդիւն ընտրելոյ յաւելուին ի վերայ թէ ոյր որդի իցէ, որպիսի ինչ՝ Կիմոն Միղտիադեայ : Ի մէջ առաջին եւ երրորդ ամի հասակի մանկանն տային գրել զնա ի դիւանի ուրեք՝ զի կարիցեն ցուցանել զնա քաղաքացի քաղաքին Աթենացւոց՝ որ պատիւ մեծ համարեալ էր . եւ ի գրելն պարտ եւ պատշաճ էր հօրն եւ մօրն երդմամբ հաստատել թէ որդի առն աթենացւոյ եւ կնոջ աթենացւոյ է մանուկն յօրինաւոր ամուսնութենէ : — Վաղ իսկ սկիզբն առնէին հրահանգք մանկանն . մի ոմն ի մանկավարժ եւ ի հաւատարիմ գերեաց լինէր կարգեալ ի հոգաբարձութիւն նորա, եւ նա տանէր զնա ի վարժոց հասարակաց՝ յուսանել կրթութեան մարմնոյ, երաժշտութեան եւ յետ այնորիկ մի ըստ միոջէ : Յութեւտասներորդ ամի հասակին գրեալ լինէր պատանեակն ի զինուորութիւն, ի փոքր ինչ մեհենի ի մէջ նուիրական բագնացն երդմնի լեալ՝ քաջութեամբ տալ պատերազմ, չթողուլ զիւր տեղին, եւ մեռանել ի վերայ հայրենի աշխարհին՝ թէ այնպէս ինչ պիտոյ լինիցի : Յետ 20 ամաց հասակի համարձակ էր նմա մտանել ի ժողովս ժողովրդեան եւ առնուլ պատիւ պաշտաման ի տէրութեանն :

Պարտէզք իսկ մոլորեցուցիչք էին երիտասարդացն Աթենացւոց՝ խաղք, անչափ մրցութիւնք, անհնարին ծախք վասն երիվարաց եւ շանց։ Բազումք վատնէին զհայրենի ժառանգութիւն իւրեանց միայն վասն մեծաշուք կառաց լծելոց, որովք փութային առնուլ յաղթութիւն յարշաւանս կառացն։

Շրջել կառօք յԱթէնս չէր այնպէս սովորութիւն ժամանակս բազումս. մեծամեծքն եւս երթային հետիոտս, եւ նշանակ անսովորական իսկ գրգռութեան էր՝ եթէ կառօք ոք կամ դեսպակօք երթեւեկէր։ Բայց տիկարքն տանէին զհետ իւրեանց զմի ի գերեացն աթոռով իւիք ծալելով, զի ի հրապարակի կամ այլուր կարիցեն նստել. արքն տանէին միշտ գաւազան ի ձեռս իւրեանց, եւ կանայք տային ունել հովանոցակ զգլխով։ Իսկ գիշերի երթային գերեօք տանմիք ջահ ի ձեռին, ապա թէ ոչ՝ լինէին աւազերծ ի ստահակաց, որպէս ստէպ դէպ լինէր։

Ի փողոցս Աթենացւոց լի էր ամենայն ինչ աղմկաւ, ժողովուրդն վարէր մղէր այր անդր, քարոզքն աղաղակելով տային պատուէրս կամ ծանուցանէին ինչ, մուրականք խափանէին զանցաւորսն. հեծեալք, սայլորդք, ջրաւորք, ձեռագէտք կահիւն իւրեանց բաւական էին խոչ իսկ եւ խութ ի վերայ ճանապարհացն լինել. եւ խաղալիկքն եւ որք զբարակսն ուսեալս կաքաւեցուցանէին՝ այնպէս խնուին զանցսն մինչեւ հազիւ մարթել անցանել ընդ այն։ Գլխաւոր պահակն ի հրապարակի անդ վաճառացն՝ էր ի Սկիւթացւոց անտի, որք այնպէս խեցբեկ զայն լեզու խօսէին՝ մինչեւ լսելեացն լի լինել ծաղու, որք եւ էին քաջք ի գինւոջ։

Որ վէրսն առեալ էին ի պատերազմի, եւ աղքատքն ի քաղաքացեաց որ վասն ծերութեան չէին բաւական յաշխատութիւն, առնուին օր ըստ օրէ առուրս ի հասարակաց արկեղէ։ Յամսագլուխս յօրինէին մեծատունքն սեղան ի կիցս ճանապարհացն ի պատիւ Հեկատեայ։ Ռամկավարքն որպիսի Պերիկղէս եւ Աղկիբիադէս՝ հրաւիրէին երբեմն եւ զամենայն իսկ զժողովուրդն ի հաց ի հարիւրզուարակեան զոհն Հեկատեայ [1]։

Տունքն յԱթէնս իբրեւ 10,000 թուով որոց մեծ մասն աննշանաւոր իսկ էին, երկձեղունեայք էին, վերին դստիկոնն վասն կանանց եւ խոնարհագոյնն՝ վասն արանց։ Պատուհանքն՝ կամ ծակք դատարկք էին եւ կամ արկեալ առագաստ առաջի, տանիքն հարթ՝ մինչեւ ճեմել ի վերայ նոցա։ Բազում տունք ի տանց ունէին ի թիկանց դրախտս, եւ բազումք գաւիթ ինչ առաջի՝ ընդ որ ուղղորդ հասանէր ոք ի դուռն տանն։ Բայց բուն ճարտարագործ շինուածքն՝ մեհենիցն եւ հասարակաց շինուածոց կազմածքն էին. սակայն առ սակաւ սակաւ սկսան եւ առաջնորդք տէրութեանն յօրինել ապարանս գեղեցիկս։

Տունք մեծատանցն զարդարեալ էին ի ներքուստ մեծաւ փառաւորութեամբ, քանզի մեծատունք առնէին անհնարին ծախս վասն գեղեցիկ կահու։ Սենեակք նոցա էին նկարեալ ճամիօք, ճաշատեղին նոցա էր ծածկեալ օթոցիւք, եւ սեղանքն [2] եւ գահոյք էին ի մայր կամ յեղեւին փայտէ, առ ոմանց պատեալ եւս ոսկիապատ կամ արծաթապատ եւ կամ փղոսկրով, բազում անգամ եւ ամենեւին իսկ փղոսկրեայ ոտիւք. եւ այն ամենայն արձակէր երիկունն առ լուսով ճրագացն՝ շողիւն։ Աթոռք նոցա յօրինէին ի Թեսաղիա, օթոցք անկողնոցն լցեալք փետրովք՝ ի Կորընթոս, բարձք՝ ի Կարքեդոն։ Իսկ վերին օթոցք անկողնոյն էին ծածկոյթ ինչ ծիրանի որոյ անհնարին գինք էին։ Առագաստք

1 Hécatombe. 2 Τρικλίνιον.

տանցն ամենեւին ի նաւըս նուէրս, եւ օթոցքն ի Բաբելոնէ ցուցանէին նկարեալ զՊարսիկս ի հանդերձս մաշկեղէնս, եւ գաղղիս տատասկլա-կանս ։ — Յորմէ հետէ Աղեքսանդրեան ծիրանի տարածանեաց նաւացն եւ փահանաւն ի փղոսկրէ եւ յոսկւոյ՝ եւ օրինակ բարեկեցութեան ի պատերազմի, նմանել սկսան նմա եւ մեծատունքն ։ Կայլին պաղպաղանք կամ գահոյք ի նաւս կախեալք փոկովք. նա եւ անդէն ի նաւան վարէին երբեմն ջերմ բաղանեօք, եւ ամենք ի զբօսավարաց սրընգահարս եւս եւ քնարահարս եւ վարձակս կաքաւիչս տանէին ընդ իւրեանս ։

Կերակուր Աթենացւոցն ըստ յաճախ սովորութեան չէր առկարբա-տութեամբ, բայց ի սեղանս մեծատանցն էր փառաւորութիւն՝ որպէս ի Սիկիլիա եւ ի Մոսքին Նուարքիս եւ յետոյ ի Հռոմ ։ Անօթք ոսկեղէնք եւ արծաթեղէնք ընդելուզեալք բազում անգամ ականիք պատուակա-նօք փայլեալ շողային ի վերայ սեղանոյն եւ ի վերայ մեծակաց սպա-սաւորական սեղանոյն. բազմութիւն եւ այլ եւ այլ գունակք համադա-մացն յայտ առնէին զառաւել ճարտարութենէ խոհակերութեանն ։ — Ջեռուցեալ եւ զենքերլս ձկանց զգլուխն եւեթ ուտէին, եւ զթիւ-նոս ձկան զլանջսն եւ զկղաձկան զթամբսն, եւ զայլ մասունս թո-ղուին կերակուր գերեացն ։ Զկունս յաղեալս եւ ապխտեալս, տապա-կեալս ձիթով ուտէին մեծաւ ախորժութեամբ ։ Եւ առ հասարակ խոլ վարէին Աթենացիք գեղեցիկ եւ յստակ իւղովն ձիթենեաց՝ որով յայ-օր երեւելի է Ատտիկէացւոցն՝ յամենայն կերակուրս իւրեանց. յաղէին զձիթապտուղն արկեալ յաղաջուր ։ Խեցգետինք, խեցեմորթք, գլը-ղաձեւ ձկունք եւ ոստրէք էին ազնիւք ի կերակուր ։ Եւ առաւել նոցա ծովն Եւքսինոս բազմութիւն յոյժ ձկանց առ յաղել ։ Տային ածել խնձոր յԵւբիայ, արմաւ ի Փիւնիկեցւոցանէ, սերկեւիլ ի Կորընթոսէ, նուշ ե-րեւելի ի Նաքսոս կղզւոյ ։ Միրգք Ատտիկէացւոցն ամենեւին քաղցր էին, եւ թուզն որ առաւ ելանէր՝ երթայր ցամաքեալ մինչեւ ցսեղան թագա-ւորին Պարսից ։ Սկիզբն լինէր սեղանոյ ի խեցեմորթից եւ ի ձկանց, ապա գային ամիճք, աքեացք խոզենի, լեարդ վայրենի խոզի, գլուխ գառանց, թռչունք ի տապակէ ջերմնջերմ ։ Երկրորդ կարգ կերակրոց էր որս երէ-ոց եւ ձկունք դդմնագիւտք, եւ յետոյ միրգք ։ Քաղցրք եւ պղն-կունակք էին ազգի ազգի յոյժ ։ Զբազմաց ի ձկանցն հանեալ զողնայարն՝ լնուին պէսպէս համեմանօք ։ Բազում ազգք էին գինւոյ, բայց մեծագին քան զամենայն՝ Քիացւոցն. իսկ արուեստն նենգելոյ խառնմամբ սովոր-կան իմն էր վաճառականացն գինւոյ ։

Օդիք եւս ոչ նստէին առ սեղանոյն՝ այլ ընկողմանէին ի վերայ բարձիցն. յայն սակս եւ սեղանքն առաջի նոցա ցածագոյնք էին ։ Իւրաքան-չիւր ի բազմականացն ունէր ի թիկանց իւրոց գերի մի ի գերեաց՝ ծա-ռայել նմա, զոր եւ առաքէր երբեմն տանել զմասն ինչ ի կերակրոյ անտի առ մի ոմն ի բարեկամաց իւրոց, քանզի այսպէս իսկ համարձա-կութիւն էր հիւրոցն ։ Յորժամ սեղանք ուրախութեան լինէին՝ ընտրէին վիճակաւ թագաւոր մի սեղանոյն այնմիկ (տաճարապետ) որ առաջնոր-դէր ամենայնի, կարգէր օրէնս ըմպելեաց, եւ երբեմն՝ եթէ յոյժ սակա-ւք ըմպէր՝ հեղուին զգինին ի գլուխն ։ Բազում անգամ լինէին եւ նուէրք ըմպելեաց վասն գից, եւ ապա լուացումն ձեռաց ։ Յետ լուացմանն անդէն յաճախէին եւ երգք ուրախութեան, եւ բազում անգամ չըշէր քնարն, զի իւրաքանչիւր ոք ի հիւրոց անտի երգ ինչ ածիցէ նովաւ ։ Սրընգահարք, կաքաւիչք եւ առեղծուածք եւ այլ եւս նոյնպիսիք զբաղեցուցանէին զնոսա ։ Տային ածել եւ ձեռնածուս՝ որ երթային

յափափխթերս կանգնեալ զոտն ի վեր, կամ փչէին հուր ի բերանոյ, եւ այլ եւս ինչ նոյնպիսի պատրանս երեւեցուցանէին։

Մեծատունքն զի մի միայնութեամբն ճանճրասցին յորժամ ի տան անդ իւրեանց միայն ուտիցեն (քանզի կանանցն նոցա եւ մանկանց չէր համարձակ ուտել ի միասին), ունէին սահմանեալ սեղանակիցս՝[1] որոց պարտ էր ի դէպ ժամուն գալ եւ զբօսուցանել զկոչնատէրն։ Եւ զի որք աղքատք մանաւանդ տային զանձինս յայն գործ՝ յայն սակս բազում անգամ լինէին նոքա ի ծաղր եւ ի կատակ կոչնատեարն եւ բարեկամաց նորա, բայց ազատութիւնն ուտելոյ յամենայնից սեղանոյ անտի համարեալ էր նոցա ընդ այնր հատուցումն. եւ մեծ չափ եւ արուեստ այն էր նոցա՝ ստորակայապատութեամբք եւ բեւր եւ ազգի ազգի իրօք ընդ միտ մտանել մեծատանն։ — Բազումք ունէին առ զբօսանս՝ եւ շուն, կապիկ, սիկեղացի աղաւնեակ, փասիան եւ սիրամարգ՝ որ էր մեծագին յոյժ։

Իւրաքանչիւր ի բազմամբոխ գերեաց կամ ծառայից անտի զոր աթենացի այր ունէր՝ ստորս սահմանեալ էր։ Ոմն սրբէր ճնշէր զսեղանն, միւս ոմն զանօթսն, զծրագակալսն եւ զայլ եւս նոյնպիսիս. ոմն գնող, ոմն խոհակեր, ոմն ծաղարար, ոմն հացեփեաց, եւ այսպէս մի ըստ միոջէ։ Իսկ ի շէնսն՝ հովուէին, մշակէին, որսային եւ կամ ձկնէին։ Փոյթ տանէին կրթութեան գերեացն. ունէին եւ թուխ եւս գերիս՝ զոր մեծաց գնոց իսկ գնէին։ Մեծամեծքն յելանելն ի տանէ՝ սիրէին տանել զհետ՝ երկուս ի գերեացն ի հանդերձս նորս, եւ կանայքն՝ նաժիշտս ի գերեաց։ Գերի մի յայսպիսի գերեաց էր գնոց՝ 12 մնասի (70 ֆլոր.), իսկ գերի՝ որ գիտէր ինչ ձեռագործ կամ արուեստ՝ արժէր 5—6 մնաս։ Չէր ինչ անսովորական լինել ի տան միում 50 գերեաց. մեծատունք աւելի եւս ունէին. նա եւ աղքատագոյնք իսկ ի քաղաքացեացն սովոր էին ունել գերի մի։ Իսկ որ կարի աղքատք էին՝ նոցա կինն եւ որդիքն վճարէին զաւանին գործս տանն։ Համեմատութիւն թուոյ ազատացն առ գերեաց յԱտտիկէատանի՝ էր իբրեւ 1 առ 3։ Ի հանդիսէ անտի որ սակաւիկ ինչ յառաջ քան զմահն Աղեքսանդրի եղեւ՝ յայտ է թէ բնակիչք Ատտիկեայ յայնժամ աւելի քան զ500,000 էին, յորոց 130,000՝ ազատքն էին, եւ 400,000 գերիք։ Երանի թէ Յոյնք որոց այնչափ սիրելի էր ազատութիւն՝ շնորհէին եւ այլոց զայն ազնուական բարութիւն՝ զոր միայն քրիստոնէութիւնն յետոյ դարձոյց նոցա իբրեւ բնածին ստացուած նոցա։

Քանզի տէրութիւնն Աթենացւոց՝ երախտաւորացն կանգնէր անդրի հրապարակաւ, յայն սակս սկսաւ ամենայն մարդ որ բաւական ինչս ունէր՝ կանգնել իւր անդրի յիշատակի. եւ ի կտակսն՝ իւրեանց ժառանգացն պարտս ի վերայ կապէին՝ կանգնել նոցա անդրիս։ Սակայն եւ յայսմ եւս անցին ըստ չափ, զի ոմանք յանդրեացն երկուց տաղանդաց (իբր 4000 ֆլոր.) գինք էին։ Զարդս ոսկիս եւ արծաթիս թողէին ընդ վախճանելոցն, եւ զաճիւնն երբեմն դնէին ոսկի սափորով, յայն սակս յաճախեալ էին եւ գերեզմանակրկիտք։ Զառնէ ումեք աթենացւոյ պատմի եւ զշունն եւս եւ զաքաղաղս թաղել մեծաշուք, եւ վասն նոցա առնել հաց եւ կանգնել նոցա յիշատակարանս հանդերձ գրով. թերեւս վասն ծաղր առնելոյ զամենայն իսկ յիշատակարանս անդրեաց։

1 Παράσιτοι, Հացկատակք։

## Մակեդոնացիք (800 — 336)․ Պետութիւն Աղեքսանդրի Մեծի (— 323)։

### 292

Ի ՀԱՐԱՒՈՅ լերանցն երկայնելոց յԱդրիական ծովէ մինչեւ ցԵւքսինոս ծով՝ որոց արեւելեան մասն Հեմոս (Պալքան) լերինքն կոչին՝ կան լեռնային նահանգքն՝ Իլիւրիկէ, Մակեդոնիա եւ Թրակիա՝ որք ի մէջ բարձրաբերձ լերանցն ունին դաշտս բազումս եւ պտղաբերս։ Կան սոքա ի հարաւոյ առ եզր Եգէական ծովուն՝ որ զՅունաց աշխարհ ի Փոքրն Ասիոյ բաժանէ, եւ ի ձեռն Պրոպոնտիս ծովու եւ գետաձեւ Բոսպորոսի հաղորդի ընդ Եւքսինոս (Հիւրընկալ) ծովու։ Երեւելիք քան զամենայն գետս կողմանցն են Հեբրոս, Ստրիմոն եւ Աքսիոս (Վարտար) գետք։ Գլխաւոր քաղաք Մակեդոնիայ էր Պեղղա՝ որ առ Փիլիպպիւ եւ Աղեքսանդրիւ առ զպատիւ Եդեսսայ նախնական դիւցազանցն քաղաքի։ Բնակիչք նորա չհամարէին Հելլենացիք, սակայն եւ գաղթականք յԱրգիացւոց բազում էին անդ, որոց եւ զառաջին քաղաքն շինեալ էր։

Յիշի լեալ զօրավար եւ գլխաւոր նոցա Կարանոս ոմն անուն (յամի իբրեւ 800) Հերակղեան․ կրէր նա պատկեր քօշի ի դրօշու իւրում, նմին իրի Յոյնք որ ի նա յարեալ էին՝ անուանեալ կոչեցան Եգեայք[1]։ Բուն հիմնիչ թագաւորութեանն թուի լեալ Պերդիկկաս յամի իբրեւ 730։ Նորին պայազատք մեծացուցին զսահմանս նորա տուեալ պատերազմ ընդ դրացիսն։

Անդստին յամէ 513 եղեն հարկատու Պարսից, բայց յաղթութեամբ Յունացն առ Պղատեաւ՝ ազատեցան եւ Մակեդոնացիք որոց ի ժամանակին տիրէր Աղեքսանդրոս Ա․ (479)։ Թէպէտ եւ յետ այնորիկ ահագին իմն դրացիք էին նոցա Թրակիացիքն եւ Աթենացիք, այլ նոքա պահեցին զազատութիւն իւրեանց եւ ի ժամանակի Պեղոպոնեսացւոց պատերազմին ջանայր խորամանգութեամբ Պերդիկկաս Բ․ (յամէ 454) տկարացուցանել իմն զՅոյնս միմեամբք։ Սա՝ եւ որ զնա յաջորդեաց Արքեղայոս (յամէ 413) ընդարձակեցին զթագաւորութիւնն։ Յետ Արքեղայ մեռանելոյ (400) յարեան խռովութիւնք եւ գժտութիւնք, մինչեւ ապա Ամիւնտաս Բ․ կալաւ զթագաւորութիւնն (390—370)։ Սորա եղեն որդիք երեք․ զԱղեքսանդրոս Բ․ սպան ոմն՝ կամեցեալ յիւր վարել զթագաւորութիւնն (368), բայց եւ զնա մերժեաց Պեղոպիդաս Թեբացի եւ մատոյց ի բարձ թագաւորութեան զՊերդիկկաս Գ․ (367), եւ

1 Տես Դան․ Ը․ 5։

զնորին եղբայր Փիլիպպոս առ տարաւ հանդերձ այլովք եւս որդւովք մեծամեծացն իբրեւ պատանդ ի քաղաքն Թեբայեցւոց:

Իսկ Փիլիպպոս խորամանկն եւ սուրն միտօք, եղեւ ախորժելի յոյժ ժողովրդեանն Թեբայեցւոց, ուսաւ արուեստս ճարտարութեան եւ զխոհեմութիւնս Եպամինոնդայ, միանգամայն եւ զյոռութիւնս եւս եւ զթուլութիւն Յունաց, եւ ծանեաւ զտկարութիւն նոցա: Յետ վախճանին Եպամինոնդայ եւ եղբօր իւրոյ Պերդիկկայ՝ աճապարեաց դառնալ ի Մակեդոնիա. անդ՝ իսկ եւ իսկ նստուցին զնա թագաւոր (յամի իբրեւ 360):

## 293

Փիլիպպոս Բ. (360—336) էր այր ոչ դոյզն միտօք, իմաստուն յոյժ առաջնորդութեան, այլ առանց հաւատարմութեան եւ հաստատութեան, յաջող եւ բախտաւոր, այլ անխիղճ եւ անփոյթ յընտրել իւրում զհնարս հասանելոյ յայն որ առաջին կայր: Սա էր հաստիչ եւ յօրինիչ մեծութեան Մակեդոնացւոց աշխարհին. առաջին փոյթ եւ հոգաբարձութիւն նորա ի վերայ զօրացն էր. նա ած ի կատարումն զփաղանգն՝ որ է գունդ ինչ հետեւակաց սպառազէն վառելոց, եւ էր ի խորութիւն 16 այր, եւ յերկայնութիւն ըստ ստուարութեանն 500 այր. Հինգ կարգք առաջակողմանն ունէին նիզակ երկայն, իսկ մնացեալքն պաշտպանէին նոցա ասպարաւն իւրեանց ի նետից թշնամեացն. եւ անյաղթական իմն համարեալ էին:

Փաղանգաւն այնուիկ հնազանդեաց նա կարգաւ զՊէոնիացիս, զԻլլիրիկեցիս եւ զԹրակիացիս, գրաւեաց զսահմանս Թեսաղացւոց, եւ այնպէս մեծացոյց զսահմանս թագաւորութեան իւրոյ: Իսկ հակառակ Յունացն արկանէր մանաւանդ նենգութիւն ի կիր քան եթէ զէնս, եւ այնու զինչ ուէտ քաղաքսն զաղթականութեանց զԱմփիպողիս, զՊիւդնա, զՊոտիդէա եւ զՈլիւնթոս այլ առ սակաւ սակաւ ընդ իշխանութեամբ իւրով, եւ շինէր մօտ յԱմփիպողիս ի կողմանս ոսկեհանաց զանուանակից քաղաքն Փիլիպպեցւոց (մինչեւ ցամն 348). եւ կաշառաբեկ առնէր զճարտարախօսն Յունաց զի հաճեսցեն եւ հանդարտեցուսցեն զմիտս քաղաքացեացն իւրեանց ի վերայ բանութեանցն զոր ինքն գործէր: Այն ինչ զՈլիւնթոս նուաճեալ եւ զինչս եւ զազատութիւն բնակչացն յափշտակեալ՝ կոչեցաւ նա ի Թեբայեցւոց ի վերայ Փոկիացւոցն. զայս հարկանէր Փիլիպպոս զԹեսաղիա որ միաբանեալ ի դաշն մտեալ էր ընդ Փոկիացւոցն, անց ընդ Թերմոպիւղիս, առաւ զսա Մեհենականս պատերազմին եւ ընկալեալ եղեւ ի դաշնաւորութիւն Ամփիկտիոնացն (346):

Այսպէս իբրեւ շղթայ իմն զմիմեանց կախէր զնենգութիւնսն առ ի հասանելոյ պատուոյ եւ փառաց: Դեմոսթենէս միայն էր

որ առնոյր ի միտ զվտանգն որ հասեալ կայր ի վերայ Յունաց աշխարհին, եւ առաւել ճարտարախօսութեամբն համակ զայն ցուցանէր թէ որպէս տագնապ առ կուրծս կայ. եւ արդ իսկ հաւանեցուցանելով՝ Աթենացիք եւ դաշնաւորքն նոցա Պարսիկք զօրավարութեամբն Փոկիոնի ապրեցուցին ի պաշարմանէ զՊերինթոս եւ զԲիւզանդիոն (340)։

Բայց զրգռեցաւ միւս եւս մեհենական պատերազմ։ Ղոկրացիք բնակեալք յԱմփիսսա կորեցին մասն մի ի նուիրական անդոց Դեղփեանն Ապողոնի եւ արարին արօրադիր։ Դատաստանաւն Ամփիկտիոնաց, յորում էր եւ Էսքինէս ճարտարախօս պատգամաւոր Աթենացւոցն՝ բայց կաշառեալ ի Փիլիպպեայ արկ տուգանս ի վերայ Ղոկրիացւոցն. եւ իբրեւ չառին տոքա յանձն՝ յանձն ապատեանն՝ Փիլիպպեայ իբրեւ հզօրագունի ի մէջ դաշնաւորացն՝ կատարել ի վերայ նոցա զվճիռն։ Հրաւիրեալ եկն Փիլիպպոս յաշխարհն Յունաց երկրորդ անգամ, առ եւ պատժեաց զԱմփիսսա, բայց կալաւ յանկարծ եւ զամուր քաղաքն զԷղատիա՝ որ դուռն իմն էր մտին Բէովտիայ եւ ամենայն իսկ Ատտիկայ։

Այս գործ բռնութեան իսկ եւ իսկ զարթոյց ու թափեցոյց զԱթենացիսն յանհոգ հանդարտութենէն, եւ հաւանեցան բանից հայրենասէրն Դեմոսթենեայ։ Իսկ իսկ Դեմոսթենէս միջնորդ ի մէջ անցեալ մուծանէր ի դաշն զԱթենացիսն ընդ Թեբացւոց։ Բայց բանակն որ այնպէս ճեպով ժողովեցաւ եւ առանց զօրավարաց քաջաց էր՝ չկարէր ունել դէմ զվարժ փաղանգին Մակեդոնացւոց. առ Քերոնիաւ պատերազմն զրգռեցաւ. անդէն անկաւ ամենայն նուիրական գունդն Թեբացւոց. ըմբռնեցան կամ անկան միահաղուռ 30,000 ի Յունաց, մնացեալքն եղեն փախստեայ կարակոր (338)։ Դեմոսթենէս՝ որ վասն դաշնաւորութեանն զոր եա առնել ի մէջ Թեբացւոց եւ Աթենացւոց՝ պսակեալ էր պսակաքաղաքացւոյ, յետ այսր պարտութեան հանեալ ի դատաստան ի ձեռն հակառակորդաց իւրոց, բայց ոչ միայն արձակեցաւ նա պատուով, այլ եւ նմա յանձն եղեւ խօսել ճառս գերեզմանաց ի վերայ անկելոցն առ Քերոնիաւ։ Այսպէս մի միայն պատերազմ արար զբաւ հին ազատութեան համօրէն աշխարհին Յունաց։

Սակայն Փիլիպպոս սիրով իմն եւ մեղմականութեամբ գնայր այնուհետեւ ընդ Յունաց, զի տակաւ ընդելուզանիցէ զնոսա ի ծառայութիւն Մակեդոնացւոցն։ Մանաւանդ զի խորհուրդ ի մտի ունէր Փիլիպպոս զի անցեալ ի գլուխ ամենայն յունական տէրութեանցն՝ արշաւեսցէ ի վերայ տէրութեանն Պարսից, եւ վասն նորին իսկ ժողովեաց նա ժողով տոհմային ի Կորնթոս խորհել վասն իրացն պատրաստութեան։ Անդ իսկ ընտրեալ էին զնա ամենեքին (բաց ի Սպարտացւոց) զօրավար ապարապետ պարսկական պատերազմին, եւ սահմանեալ՝ թէ որ քաղաք որչափ տացէ

էջէ զօրս՝ այլ յուսախաբութեան անդ հապաղեաց զատերն իւրոյ ի Պեղղայ՝ հար սպան զնա մի ոմն յանձնապահացն (Պաւսանիաս) վասն իրիք քինու (336)։ Սակայն եթող նա որդի մեծ քան զինքն։

## 294

Աղեքսանդրոս ի մանկութենէ ուսեալ եւ վարժեալ յանձնական հրահանգօք յԱրիստոտելեայ ի հոյակապ փիլիսոփայէ, ցանկացեալ էր փառաց եւ քաջանուանելոյ, մանաւանդ եւ գիտութեան, եւ անդէն ի մանուկ հասակին ցուցանէր իմն զճաճանչս մեծի մտաց իւրոց եւ քաջութեանն՝ յորժամ 18ամեայ առ Քերոնիա հարկանէր զնուիրական գունդն Թեբայեցւոց։ Իսկ ի քսաներորդ առաջներորդ ամի ել նստաւ յաթոռն Մակեդոնացւոց (336—323)։

Յառաջ քան զամենայն հարկանէր նախ դժուարին պատերազմ ընդ Թրակիացւոցն եւ ընդ Իլիւրիկեցւոց որ արշաւէին յաշխարհն իւր։ Այլ մինչ դեռ նա զայնու պատերազմօք էր մեծաւ յաջողութեամբ՝ անդէն յանկարծ սփռէր համբաւ սուտ ի Յոյնս աշխարհին թէ մեռաւ․ զի եղեն Յոյնք յուսով, համբառնային միաբանեալ զտանել զազատութիւնն։ Ի Պեղոպոնեսոս կազմ եւ պատրաստ լինէին․ յԱթէնս՝ եղեն ընդ բանս զրգռութեանն Դեմոսթենեայ, եւ ի Թեբէս կոտորեցին զմնան մի պահակապանացն Մակեդոնացւոց, եւ զմնացեալսն յարգել արկեալ պաշարէին ի դղեկին։ — Իբրեւ փութանակի հասանէր Աղեքսանդրոս, վանէր մկանդէր զքաղաքն Թեբայեցւոց՝ եւ (ըստ վճռոյ դատաստանաց այլոց բիովտիական քաղաքացն որ ոխութեամբ էին ընդ Թեբայեցւոցն) ի հիմանց բրեալ քանդէր զամենայն ապարանս եւ զտաճարս քաղաքին։ (Միայն ի տունն Պինդարեայ եւ ի մեհեանս խնայեցին։) Եւ կոտորեցաւ 6000 այր ի Թեբայեցւոց, եւ 30,000 վաճառաւոր եղեւ։ Զայն տեսեալ այլոցն եւս քաղաքաց Յունաց որ եւ յառաջագոյն իսկ գայթ ի գայթի էին՝ հնազանդեցին (335)։ Այլ յետ խաղաղութեանն այնորիկ՝ ատրջացաւ Աղեքսանդրոս եւ ներեաց մնացելոց Թեբայեցւոցն։ Թողութեամբն այնուիկ եւ սիրոյն ընտանութեամբն արկ յինքն զԱթենացիսն․ ուրեն առաքեցին առ-քա հրեշտակութեամբ առ Աղեքսանդրոս զՓոկիոն՝ "զառաջադրն ճառիցն Դեմոսթենեայ", զայն որ ասէր զԱթենացիսն ցնծացեալս ընդ մահն Փիլիպպեայ՝ թէ վատութեան է ուրախ լինել ընդ մահ թշնամւոյն, եւ դարձեալ յիմարութեան եւս՝ զի ի զօրուէն որ առ Քերոնիա եհար զմեզ՝ մի եւեթ զլուխ պակասեցաւ։ Ապա ետ ընտրել Աղեքսանդրոս զանձն սպարապետ պատերազմին Պարսից, որպէս արարն հայր նորա, եւ սկսաւ վաղվաղակի զմեծ արշաւանս պատերազմին Պարսից, թողեալ զԱնտիպատրոս կուսա-

կալ ի վերայ Յունաց աշխարհին, որ յաղթեաց իսկ մեծաւ քա-ջութեամբ փառաւորագոյն պատերազմին Սպարտացւոց (333 — 331) որք ապստամբեցին զօրավարութեամբ թագաւորին իւրեանց Ագիսայ Բ. ի ժամանակի զի Աղեքսանդրոս ի հեռաւոր աշխարհին Ա-սիացւոց ի բուռն ճգնական պատերազմունս էր:

## 295

Յարեաւ Աղեքսանդրոս գարնանի (յամին 334) անցանել ընդ Հելլեսպոնտոս քաջ եւ առաքինի գնդիւ 35,000 արանցն, որոց զօ-րավարք նոյնպէս քաջք եւ հռչակաւորք էին (Կղիտոս, Պարմենիոն, Հեփեստիոն, Կրատերոս, Պտղոմէոս, Անտիգոնոս եւ այլք): Մի-ջավայր եւ մարմին բանակին էր հետեւակազօրն փաղանգ ծանր՝ ի Մակեդոնացւոց եւ ի Յունաց. մակեդոնացի եւ թեսաղացի այրուձին՝ զկողմն ամրացուցանէր, ուր կրետացի եւ թրակացի պա-տուարքն եւ թեթեւ փաղանգք՝ էին երբեմն յառաջամարտիկք եւ կռուէք: Յանցանելն բանակին ընդ Հելլեսպոնտոս՝ ինքն Աղեքսան-դրոս նախ կոխեաց զցամաքն Ասիացւոցն, ապա անդէն ի սահմանս երկրին Տրովադացւոց տայր կատարել մրցութիւնս պատերազմականս եւ զոհս ի պատիւ մեծարանաց դիւցազանցն որ անդ անկեալ կային. ի դիւցազանց անտի զԱքիլլէս ունէր նա կենաց օրինակ, յայն սակս եւ զերգսն Հոմերեայ միշտ կրէր ընդ իւր: Այսպէս զարթուցանէր զՅոյնս ի յիշատակ տոհմային գործոցն եւ ի ցանկութիւն փա-ռաց եւ պարծանաց՝ ուր զՄակեդոնացիսն՝ իւր իսկ արութեամբ եւ շքեղ աջողակութեամբ գրգռէր:

Անդէն առ Գրանիկ գետով երեւեցաւ հանդէպ զօրացն, խորտակեցաւ բանակն Պարսից որ ի գետեզերին կամէին արգելուլ զանցսն՝ առաւելագոյն բազմութեամբն իւրեանց (334): Այն յաղ-թութիւն եբաց նմա զդուռն արեւելեան մասին համօրէն Փոքուն Ասիոյ մինչեւ ցլերինսն Տաւրոսի: Մեծ մասն յունական քաղա-քացն ինքնակամ տային ձեռս եւ գային ուրախութեամբ յողջոյն ազգակից թագաւորին՝ որ խոստանայր նոցա միւսանգամ զառա-ջին սահմանադրութիւնս ռամկապետութեանն հաստատել: Իսկ Լիւդացիք եւս եւ Կարիացիք եւ այլ ազգք մի ըստ միոջէ հնա-զանդէին, եւ թողոյր նոցա թագաւորն զիւրեանց ընտելական կարգսն: Ի Գորդիոն քաղաքի Փռիւգացւոց յետ զուր ջանալոյ՝ “ելոյծ սուսերաւն„ Աղեքսանդրոս զարուեստական կապս կառաց միոյ ուրուք ի հնոց թագաւորացն Փռիւգացւոց, զի պատմէր՝ պատգամ լեալ ի դիից թէ որ զկապն զայն լուծանիցէ՝ նա է տիրե-լոց Ասիոյ: Իսկ եւ իսկ յետ այնորիկ տագնապաւ ի լեռնակող-մանս Կիլիկեցւոցն հասանէր: Ընդ իբրեւ էջ նա ի Կիւդնոս գետ լուանալ՝ եւ խօթացեալ խօթութիւն ծանր, այլ ճարտարու-

թիւն Փիլիպպեայ բժշկի ապրեցոյց զնա փութանակի յախտէն, ի ժամանակի զի անդէն առ դուրս էին Պարսիկք։

Դարեհ Գ. Կոդոմանոս սկսեալ էր գումարել զօր հարստաբուռն իբրեւ 600,000 այր, չու առնէր հասանէր յաշխարհն Կիլիկեցւոց (333). առ Իսսաւ ուրեմն հասանէր առ ատ Աղեքսանդրոս եւ յաղթէր պատերազմին փաղանգաւն. եղանէր այնուհետեւ տագնապաւ փախստեայ ի ճակատուէ Դարեհ, թողեալ զկահ բանակին, եւ աւար ամբառ եւ գերի, յորս էր եւ մայրն Դարեհի (Սիսիկամբրիա), կինն եւ երկու դստերք եւ որդին մանուկ, զորս պահեաց Աղեքսանդրոս պատուով եւ անարատութեամբ՝ հակառակ հնոց աշխարհակալացն սովորութեան։

Աղեքսանդրի զՊարմենիոն ի Դամասկոս Ասորւոց յղեալ առնուլ ի բուռն զգանձն արքունի՝ ինքն զՓիւնիկաստան եւ զՊաղեստին պատրաստէր առնուլ՝ զի մի զերեւելի կողմանն զայնոսիկ թողցէ ի թիկանց իւրոց՝ թշնամի. եւ արար սկիզբն խաղալ ընդ երկայնութիւն ծովեզերացն։ — Վաղվաղակի ձեռս տայր Սիդոն, բայց Տիւրոս յուսացեալ յամրութիւն տեղւոյն՝ ընդդէմ դարձաւ։ Աղեքսանդրոս սկիզբն առնէր 7 ամսեայ (երկրորդ) երեւելի պաշարման Տիւրոսի՝ հող արկեալ անջրպետութեանն որ ընդ ցամաքն եւ ընդ կղզին էր, բախէր յաշտարակացն կանգնելոց՝ խոյովք եւ մանգղիոնօք զորմունսն, եւ ի ծովէ կուսէ նաւամարտիկ նաւուք Սիդոնացւոց եւ Կիպրացւոց յարգել արկանէր զկղզին։ Այլ ի ներքուստ Տիւրացիքն ազգի ազգի զինուք (ջերմաջերմն աւազով եւ այլովք եւս նոյնպիսեօք) վաստակաբեկ զթագաւորն առնէին։ Յայն սակս իսկ իբրեւ յետուստ ուրեմն առաւ՝ կործանեաց նա զնա յատակաց. սպանան յառման անդ՝ 8000 ի Տիւրացւոց, 3000 ի խաչ ելին, 30,000 վաճառականք եղեն (332)։ Ընթացք եւս համաշխարհական շահավաճառի փոխեցան անտի յԱղեքսանդրիա։ Սղբիմքը ամենեւին ի գլուխ ելին բանք մարգարէութեանցն[1]։

Իսկ դրացիք նոցա Հրեայք՝ վասն հաւատարիմ կալոյ առ թագաւոր անդր Պարսից, չառին յանձն տալ ձեռս յԱղեքսանդրոս, յորժամ առաքեաց նա նոցա հրեշտակս. վասն այնորիկ յետ զՏիւրոս առնլոյ, դիմեաց Աղեքսանդրոս ի վերայ Երուսաղեմացւոցն. եւ ընդ առաջ նորա Յադդոս քահանայապետ որպէս հրաման իսկ առեալ էր նորա ի տեսլեանն, հանդերձ դասու քահանայութեանն առեալ զիւրեւ գունդս գունդս ի քահանայից եւ ի ժողովրդեանէն։ Իբրեւ հայեցաւ Աղեքսանդրոս ընդ շքեղ տեսիլն եւ նախ ընդ քահանայապետն՝ յորոյ ի ճակատուն կայեալ կայր թիթեղն ոսկի, յորում կայր քանդակեալ անունն Աստուծոյ, անկաւ ի խոնարհ, երպագ երկիր, տայր եւ ողջոյն քահանայապետին։

1 Եզեկ. ԻԶ—ԻԸ.

Իբրեւ հարցին որ զնովաւն էին զարմացեալ՝ թէ ընդէր եպաղ երկիր քահանայապետին, նա ետ պատասխանի. ոչ թէ նմա ինչ այլ Աստուծոյն որոյ նա քահանայապետ է՝ պագի երկիր: Յետ այնորիկ կայր պատմէր թէ որպէս նոյն քահանայապետ էր որ ի տեսլեան երեւեցաւ նմա եւ քաջալերեաց զնա ելանել ի մարտ պատերազմի, եւ խոստացաւ թէ մատնեսցէ նմա Աստուած զթա- գաւորութիւնն Պարսից:

Ապա հանդերձ քահանայապետաւն եմուտ Աղեքսանդրոս ի քաղաք անդր, մատոյց պատարագս եւ ընթերցաւ զմարգարէու- թիւնսն Դանիէլի որ վասն նորա էին[1], եւ ետ նա հրաման Հրէից պահել զօրէնս իւրեանց եւ լինել ապահարկ յեւթներորդ եւթներորդ ամին: Այսպիսի իմն է պատմութիւն պատմագրին Հրէից Յովսեպայ, որ կարի իսկ հաւանութեան է, բայց մեք ի բաց թողուք զբազում անհաւատալի հանգամանս որ ի պատմու- թեան անդ խառն գտանէին:

## 296

Յետ կործանելոյ զԳազա եւ վարելոյ ընդ նմա խստութեամբ որպէս ընդ Տիւրոս՝ այնու զի յերկարագոյնս դիմակալ պաշար- մանն եղեւ, մեկնեցաւ Աղեքսանդրոս ի կողմանս Եգիպտացւոց: Ի Պեղուսիոն, յԱրեգ քաղաքի, ի Մեմփիս, ի Կանոպոս՝ փութալով ընկալան զնա ի ներքս եւ ոչ կարի ինչ հեռի ի Կանոպեայ մօտ ի բերան Նեղոս գետոյ առ ծովուն Միջնոյ դէմ յանդիման Փարոս կղզւոյ եդ զհիմն քաղաքին Աղեքսանդրացւոց (332), որ վաղվա- ղակի եղեւ կայան համաշխարհական վաճառականութեան:

Ապա ընթացաւ Աղեքսանդրոս ընդ անապատն Լիբէացւոց յԱմոնիոն ի մեհեան Արամազդայ Ամոնեայ, լսել զպատգամ դիցն. յետ բազում նեղութեանց եհաս անդր, եւ ի քրմաց անտի ըն- կալաւ, ասեն, ողջոյն իբրեւ որդի Արամազդայ, որով սկսաւ ամ- բարտաւանել: Դարձաւ միւսանգամ յԵգիպտոս եւ անդ հանէր զձմեռն ի զբօսս՝ կարգել եւ յօրինել զերս կողմանցն այնոցիկ, եւ հանել ի նոցանէ հարկ տարեկի:

Ի գալ գարնայնոյն դարձաւ Աղեքսանդրոս բազմացեալ բա- նակաւ ի Փիւնիկէ, եւ ընդ Ասորիս անցեալ ի Միջագետս դիմէր յԱսորեստան, անցանէր անաշխատ ընդ Արածանի եւ ընդ Դկղաթ գետ: Զուր իմն խոստանայր Դարեհ տալ նմա զամենայն կող- մանսն զոր ա՛ռ նա՝ մինչեւ ցԱրածանի, եւ զդուստրն տալ կնութեան եւ 10,000 քանքար եւս ի վերայ (21,000,000 ֆրկ.): Արհամարհանօք իմն ետ նմա պատասխանի Աղեքսանդրոս: Եդ ի մտի Դարեհ միւսանգամ փորձ փորձել առ Արբելաւ (Գաւգա-

1 Դան. Ը. 5—7:

մեղաւ), եւ Տեայր Մակեդոնացւոցն բազմամբոխ զօրօք։ Բայց ընդ վայր իմն կամեցին Պարսիկք յամենայն զօրութենէ իւրեանց. քանզի արտաքոյ պատերազմի Մակեդոնացւոցն յաղթեաց 20պատիկ բազմադոյն բանակին (1 Հոկտ. 331), եւ այնպէս անկաւ կործանեցաւ աթոռ թագաւորութեանն Պարսից։

Չգոյր չափ աւարին որ գտաւ ի քաղաքսն արքունականս ի Բաբիլոն, ի Շուշ եւ ի Պերսեպոլիս։ Մնացին ի Պերսեպոլիս Մակեդոնացիքն ի ժամանակի ձմերանւոյն. եւ ի միում նուագի յարբեալ ընդ գինւոյ եմուտ Աղեքսանդրոս՝ ինքնին ջահ ի ձեռն առեալ զպատուական սրահ վախճանելոց թագաւորացն Պարսից տանէր հրձիգ։

Իսկ Դարեհ զառաջինն փախեաւ յԷկբատանս ի Մարաստան, եւ առեալ զհարեւ մեւս եւս նոր գունդ, չոգաւ յետս ի Բակտրիա, ուր կամէր Տեալ Աղեքսանդրի։ Բայց Բեսոս շահապն նախապատրաստեալ կողմանցն՝ կալաւ ձերբակալ զթագաւորն եւ տանէր զնա ընդ իւր, արգելեալ ի կապս։ Իբրեւ լուաւ թէ Մակեդոնացիքն մերձանգամ դիմեալ գան ի վերայ՝ հար զԴարեհ վիրօք բազմօք եւ եթող զնա փախստեայ։ Մակեդոնացւոց եկեալ գտին զթագաւորն զի մերձ ի մահ էր, եւ հանդուցեալ զնա տարեալ ընծայել ջուր ցուրտ, եւ անդէն վախճանեցաւ աղէտական թագաւորն Դարեհ։ Աղեքսանդրոս եդ պատուել դիական վերջնոյ թագաւորին Պարսից եւ արդարութեամբ հատանէր վանէր զՎրկանս, զՊարթեւս, զԲակտրիացիս եւ զՍոգդիացիս. նմին իրի ընդունայն եղեն խորհուրդքն Բեսեայ որ թագաւորել կամէր, եւ իբրեւ անկաւ սա ի ձեռս նորա՝ ետ սպանանել զնա չարաչար ի խաչ հանեալ (329)։ ՅԱրեաց աշխարհին եւ յԱրաքոսիացւոց առ Կովկասեան լերամբք եւ առ Յաքսարտեաւ եւ յայլ եւս կողմանս տայր յօրինել ճանապարհս արքունի վասն կարգելոյ զնոսա հաղորդութեամբ ընդ այլոց աշխարհաց. շինեցան քաղաքք՝ Աղեքսանդրիա անուն, եւ ածան անդր գաղթականք ի բնակութիւն՝ զի զյունական հրահանգս տարածեսցեն ի մէջ բիրտ եւ վայրենի ազգաց, եւ լինիցին միջնորդք եւ հանգոյցք կապաւանաց տուրեւառիկ վաճառաց։

## 297

Յետ առնլոյ Աղեքսանդրի զմիահեծան տէրութիւնն Պարսից եւ լնլոյ ամենեւին զբանս մարգարէութեանն Դանիէլի[1], անդէն ձեռն ի գործ արկանէր առնուլ եւ զմեծատուն եւ զբազմամարդի աշխարհն Հնդկաց որ ի բազում թագաւորութիւնս բաժանեալ էր (328—326)։ Անց նա ընդ Ինդոս, Հիդասպ, Ակեսինէ եւ Հիդրաւոտ գետ. վանէր զպատերազմող բնակիչս աշ-

1 Դան. Ը. 5 — 7, 20, 21։

խարհին եւ յաղթէր ամենայն դժուարութեանց։ Բայց առ Հիւ-փասիս գետով դարձաւ յետս՝ յորժամ էր ի կէս ճանապարհին որ հանէր ի Գանգէս՝ զոր համարեցաւ կամ կարծեցոյց նա ծագ աշխարհիս, եւ խորհեցաւ անդ մտանել ի նաւ եւ դառնալ յետս։

Անդէն ի Բակտրիացւոց աշխարհէն հեռացան եւ ուծացան ի նմանէ զօրք նորա, զի առ նա զբարսն Պարսից, յամբարտաւանու-թիւն եւ ի մեծամտութիւն հասաւ[1]. գործեաց անագորոյնութիւն ի վերայ ջերմ բարեկամաց իւրոց. վասն կասկածանաց եւեթ սպան նենգութեամբ զծերունին Պարմենիոն, եւ սպանանել զնորին որ-դի Փիլոտաս, եւ յորժամ արբեալ էր՝ հար սպան զԿլիտոս որ առ Գրանիկ գետով ապրեցոյց զնա ի մահուանէ. թէպէտ անագան ապաշխարեաց՝ բայց չկարէր զղջմամբն ի կենդանութիւն զայրն դարձու-ցանել։ — Նմին իրի քրթմնջելով իմն չոգան զհետ նորա զօրականք ի Հնդիկս. ապա ուրեմն լքան վաստակեցան յարշաւանաց անտի. այնչափ բազմացաւ հակառակութիւնն եւ տարածեցաւ յամենե-սին՝ զի յետոյ ուրեմն հարկ համարէր անսալ կամաց նոցա։

Յետ մատուցանելոյ զոհս դիցն՝ սկսաւ դառնալ յետս։ Առ Հիւդասպ գետով շինեցաւ տորմիղ նաւաց, եւ մասն մի զօրուն հանդերձ Նէարքեաւ զօրավարաւ նոցա եմուտ ի նաւսն, եւ նա-ւարկէր երթալ մտանել յԱկեսինէ գետ, եւ անտի ընդ Խնդոս գետ՝ մտանել ի ծովն համատարած եւ ընդ ծոց ծովուն Պարսից մտել ի գետն Արածանի մինչեւ ի վեր ուրեմն ի Բաբելոն։ Իսկ ինքն Աղեքսանդրոս խաղայր յառաջ զգետեզերբն համակ պատե-րազմաւ, եւ ի խառնուրդս Ակեսինէ եւ Խնդոս գետոց տայր շինել մեւս եւս քաղաք Աղեքսանդրիա եւ մատուցանել զոհս մեծա-մեծս. ապա երթայր ընդ անապատ կողմանն Գեդրոսիացւոց եւ Կրմանաց զծովեզերբն, թէպէտ եւ առէպ զօրքն տառապէին, եւ հասանէր ի Պարսկաստան յետ սատակելոյ $^3/_4$ մասին զօրացն ի տապոյ աւազուտ վայրացն (325)։ Անտի արձակեաց զհին զօրա-կանսն առաջնորդութեամբ Կրատերայ՝ մեծապարգեւ ի հայրենի աշխարհն իւրեանց։ Ինքն արար դատաստան խստութեամբ ի վե-րայ կուսակալացն՝ որոց զՊարսիկսն նեղեալ եւ լքեալ էր։

## 298

Ապա յամէր Աղեքսանդրոս ի Շուշ քաղաքի ամ մի (324), եւ խորհէր վասն յօրինուածոյ եւ առաջնորդութեան մեծազօր թագաւորութեան իւրոյ որ ի Յոնիական ծովէ ձգէր մինչեւ ցՈվ-կիանոսն Հնդկաց, ի Սկիւթացւոց մինչեւ ցԵթովպիա։ Խոր-հէր իմն զՊարսիկսն եւ զՄակեդոնացիս, զԱրեւելեանն եւ զՀել-լենացին ընդ միմեանս խառնել եւ ձուլել զնոսա ի մի, եւ ինք-

1 Ա. Մակ. Ա. 3։

նին եւս անձամբ տայր օրինակ՝ առեալ զդուստր մի Դարեհի իւր կնութեան, որպէս առեալ էր յառաջ քան զայն ի Բակտրիացւոց աշխարհին զՕքսիարտէ զդուստր իշխանի աշխարհին. եւ 80 եւս այր ի զօրավարաց իւրոց ամուսնացոյց ընդ դստերացն Մարաց եւ Պարսից: — Ամենայն ոք ի զօրականէն որ զնոյն գործէր՝ գտանէր պարգեւս ի թագաւորէն: Առ նա 30,000 պատանեակս ի Պարսից ի զօրս իւր, եւ առհասարակ իսկ չառնէր ինչ ընտրութիւն հնոց եւ նորոց հնազանդելոց իւրոց:

Այսպիսի ինչ խորհուրդ ի մտի էր նորա զազգսն պարտեալս ընդ յաղթող ազգացն խառնել եւ մի ազգ միայն ի նոցունց յունական կրթութեամբ կազմել: Մեղմանայր զեջանէր ի սովորութիւնս Պարսից զի շահեսցի զնոսա. ըստ օրինակի թագաւորացն նոցա վարէր օրինօք արքունեաց, արկանէր զպատմուճանն արքունի եւ կապէր զապարօշն զճակատուն, եւ յաճախէր իւր սպասաւորս եւ աւագանի: Իսկ պէտ եւ ի Մակեդոնացւոց անտի՝ որոց չթուէր այն հաճոյ, գրգռեցին ապստամբութիւն, բայց նա ցածոյց զապստամբութիւնն իմաստուն խստութեամբն եւ հաստատութեամբ, եւ ապա ամենայն զօրուն տայր կոչունս հաշտութեան: Բայց այս ամենայն ոչ վասն քաղաքային արուեստի միայն էր, այլ եւ առ դուլթ արեւելեան շքեղութեան՝ զոր ուսաւ իսկ սիրել: Ողոքիչքն եւ մարդահաճոյք ապականեցին զսիրտ նորա եւ քեցեցին մերժեցին ի նմանէ զճշմարիտ եւ զպարեւախորժ խրատտուն՝ որպիսի ոք Կղիսթենէս փիլիսոփայ էր: Երկրպագութեամբ մատչէին առ նա. յարքունիսն նորա ի Բաբիլոն՝ զոր ընտրեալ էր լինել մայր քաղաքաց մեծայաղթ թագաւորութեան իւրոյ՝ առնէր զտօնս եւ ընթրիս զգնթրիս մղէին: Եփեստիոն սիրելի քան զամենայն բարեկամս նորա եւ զդայեկորդիս՝ վախճանէր ի շուայտութենէ փաշամամն կրեալ. յետ սակաւ թաղել զնա Աղեքսանդրի ի Բաբելոն ծախեալ 10,000 քանքար վասն դիահանութեանն՝ ինքն եւս Աղեքսանդրոս մինչ չեւ անցեալ սոյն վասն անչափն ըմպելոյ զգինի հզօր՝ անկաւ ի տենդ տապախտան եւ նովին վախճանեցաւ յ33երորդ ամի հասակի իւրոյ՝ յետ 12 ամաց եւ 8 ամսոց թագաւորութեան իւրոյ, անդէն ի ժամանակի՝ զի խորհէր դնել արշաւանս ի կողմանս Արաբացւոցն, եւ յետ այնորիկ խաղալ ի վերայ Կարքեդոնացւոցն, ապա ի Սպանիա, ապա յԻտալիա՝ եւ հասանել այսրէն յաշխարհն Յունաց (11 Յունիս 323)[1]:

Արշաւանօքն Աղեքսանդրի յունական կրթութիւն եւ եւրոպական ժրութիւն անց յարեւելս, եւ նմին հակառակ արեւելեան գանձք, թուլութիւն եւ գրգութիւն եգիտ մուտ ի Յունաց եւ ի Մակեդոնացւոց աշխարհ խանգարել անդ զզօրութիւնն բարոյա-

1 Տես Ա. Մակ. Ա. — 10. ուր ասէ զանց արարեալ զ8 ամսովքն զորս յելէ թագաւորութեան նորա համարէն 12. Ա.խան. Է. 27.

կան։ Յայն սակս այնուհետեւ փոքրն Ասիա եւ Եգիպտոս լինէր միջնավայր ամենայն մտաւոր ջանից եւ մտածողութեանց, ամենայն տուրեւառիկ շահավաճառաց եւ ճարտարութեան արուեստի, ուր բուն երկիրն Յունաց ծաղկել ծաղկէր տակաւին՝ այլ միայն աշնանային ծաղկօք արուեստին իւրոյ եւ յիշատակաց հնոյն գիտութեանց։ — Նա եւ գիտութիւն աշխարհաց եւ ազգաց ընդարձակեցաւ եւ ածաւ յուղղութիւն ի բազում մտաւորանացն. եւ արկաւ հիմն նորոյ իրիք ճարտարագոյն պատմագրական արուեստի, այնու զի ուսողական գիտութիւն արկաւ յայն ի կիր։ Սակայն զի յետ Հնդկաց արշաւանին՝ եղեւ տկարութիւնն վարելոյ փոքր, էր այն դառնալ միւսանգամ ի թանձրադանդաղ տկարութիւն արեւելեան պատերազմին։ Գաղթականութեանքն Յունաց որ ի վերայ հանօրէն Ասիոյ սփռեաց տարածեաց Աղեքսանդրոս՝ վաճառականութիւն եւ տուրեւառիկ փոփոխումն յայնկոյս իմն պայծառութիւն եւ յընդարձակ տարածութիւն եկին՝ յոր չեւ էր եկեալ յառաջ քան զայն։ Փորձական եւ գործական գիտութիւնք՝ առանձինն իսկ Աստղութիւն, Մեքենականութիւն եւ Բնական պատմութիւն՝ վասն որոց այնչափ ծախս ծախեաց Աղեքսանդրոս, յառաջադէմ եկին եւ նոր իմն կերպարանս ընկալան։ Նմին հակառակ արուեստն եւ գեղեցիկն մատենագրութիւն սկսաւ երթալ եւ իջանել աստիճան յաստիճանէ ի ծայրէ անտի կատարմանն իւրոյ, թէպէտ եւ երկոցունց եւս մտադիր եւ ուշակալ էր Աղեքսանդրոս, եւ սիրէր եւ ջանայր իսկ զճարտարս արուեստագիտացն, դուեստէիցն եւ մատենագրաց մեծամեծ վարձուք յորդորել եւ գրգռել։ Իսկ եւ իսկ սկսաւ երեւել ի վերայ արուեստից աղէցութիւն արեւելեան մտաց՝ որ զմեծայաղթն եւ զանհեթեթ եւեթ սիրէ (որպէս յայտ ի յաղթ անդրիոյ անտի Ռոդոսի է)։

## 299

Անդէն յետ մահուն Աղեքսանդրի սկսաւ քայքայել համախարհական տէրութիւն նորա իսկ եւ իսկ վաղվաղակի՝ որպէս յօրինեալն էր վաղվաղակի։ Թէպէտ եւ մինչ չեւ փախճանեալ նորա՝ բաժանեաց զարքայութիւն իւր զօրավարացն իւրոց դայեկորդւոց[1],

1 Զայս պատմութիւն գրոց սրբոց՝ (Ա. Մակ. Ա. 7) թէ մինչ չեւ մեռեալ՝ բաժանեաց Աղեքսանդրոս զթագաւորութիւն իւր զօրավարացն իւրոց երեւելեաց (թէպէտ եւ չէ յայտ թէ զանի՛ ինչ եւ որպիսի այն բաժանումն էր), չմարթի եղծանել այն՝ զի հինք ի պատմագրաց նմին հակառակ պատմեցին, որպէս թէ չկցէ առհմանեալ ինչ Աղեքսանդրոս ի մեռանելն, այլ ի հարցանել ցնա զօրավարացն թէ ո՛ լինիցի նորա ժառանգ՝ տուեալ իցէ Աղեքսանդրոս պատասխանի "Որ. լաւ ազքան զամենեսին իցէ"։ Քանզի թողեալ եւ զարեւելեան զօրացն որք ընդ առաջնում գրոց Մակաբայեցւոցն միայն զառանին, Կուրտիոս եւս (Ժ. 10) եւ Արիանոս (Ա. 1. Է. 27) յայտ առնեն թէ պէսպէս եւ այլ եւ այլ պատմութիւնք կան վասն վերջին բանից եւ գործոց Աղեքսանդրի. նա ուրեմն Կուրտիոս յայտնի իսկ յիշէ թէ "Ոմանք այսպէս կարծեցին թէ կտակաւ Աղեքսանդրի բաժանեցան նահանգքն"։ (Տես Յունար Բ. էջ 497)։

սակայն՝ չմիաբանեցին ընդ միմեանս զօրավարքն. եւ գրգռեցան անհնարին կռիւ եւ գժտութիւն, մինչ զի եւ զմարմինն Աղեքսանդրի թողին անթաղ աւուրս երեսուն, սակայն եւ սուգն մեծ էր վասն նորա։

Թէպէտ եւ այնուհետեւ իսկ կարգեցաւ զի Փիլիպպոս Արիդէոս խորթ եղբայր Աղեքսանդրի եւ ապուշ մտօք, եւ որդի Աղեքսանդրի Աղեքսանդրոս Դ. զոր ծնաւ Ռոքսանէ երկուք ամսօք յետոյ քան զմահն Աղեքսանդրի՝ թագաւորեսցեն ի միասին, եւ ընտրեցան իսկ թագաւորք կարգեալ նոցա խնամակալ զՊերդիկկաս որում աւանդեալ էր Աղեքսանդրոս զմատանին ի վախճանել իւրում, բայց չհասին նոքա երբեք առաջնորդելոյ անձանց. Փիլիպպոս սպանաւ յամի 311։

Ընդ նոյն ժամանակս զօրավարքն եւ կուսակալքն Աղեքսանդրի բաժանեալ էին զնահանգս թագաւորութեանն յիւրեանս. տիրէին նահանգացն արձակ իշխանութեամբ առանց անուանելոյ զանձինս թագաւորս. լինէին դաշնաւորք յօգնականութիւն միմեանց կամ ի թշնամութիւն. յետ վախճանի կամ սպանութեան միոյն կամ միւսոյն՝ նոր բաժանումն լինէր։ Գլխաւոր իմն ի նոցանէ եւ իբրեւ տեղակալ իշխանութեանն Աղեքսանդրի կացին մի ըստ միոջէ՝ նախ Պերդիկկաս, ապա յետ սպանանելոյ նորա յիւրոց զօրաց (321)՝ Անտիպատրոս որ մեռանելով զաթոռն ի Մակեդոնիա թողեալ այնու՝ զի զՊոլիսպերքոն զօրապարացեալն ծերութեամբ կացցէ պայազատ (319)՝ փութացոյց զկործանումն համաշխարհական տէրութեանն Աղեքսանդրի։ Կանգէ անդէն Անտիգոնոս եհաս ի մեծ զօրութիւն ի Փոքրն Ասիա; զի գանձուքն զոր առ ի բուռն ի Շուշ քաղաքի՝ յաճախեալ իւր զօր վարձկան՝ զինուորութիւնն Բաբելոնիայ հան նա ի ձեռաց դաշնաւորին իւրոյ Սելեւկեայ, եւ այնուհետեւ յայտնի իսկ ձգտէր պայազատ համաշխարհական թագաւորութեանն Աղեքսանդրի զանձն կացուցանել (316)։ Նմին իրի իսկ առ վշտին երեւելիք ի զօրավարացն՝ Պտղոմէոս (կուսակալ Եգիպտացւոց), Լիւսիմաքոս (կուսակալ Թրակացւոց), Կասանդրոս (կուսակալ Մակեդոնացւոց) եւ Սելեւկոս միաբանեցին ի մի դաշնաւորութիւն ընդդէմ Անտիգոնեայ եւ նորին որդւոյ Դեմետրեայ (որ յետոյ վասն առաւելոյ պաշարմանն՝ Պոլիորկետէս՝ Պաշարիչ յորջորջեցաւ)։

Աստանօր եղ պատերազմ երկայնաձիգ՝ յԱսիացւոց եւ ի Յունաց աշխարհին, յորում մերթ սոքա եւ մերթ նոքա յաղթէին. մինչեւ Անտիգոնոս՝ որ յետ յաղթութեանն Դեմետրի ի նաւամարտիկ պատերազմին առ Սալամիւ. Կիպրացւոց ի վերայ Պտղոմեայ՝ առ իւր անուն թագաւորի (306)՝ անկաւ 80ամեայ ի մեծ պատերազմին առ Իպսոսիւ, եւ փախեաւ Դեմետրիոս (301). եւ մնացին տէր Ասիացւոց աշխարհին չորեքին զօրավարքն՝ որք

վաղ՝ իսկ զհետ երթեալ օրինակին Անտիգոնեայ առեալ էին իւ-րեանց անուն թագաւորութեան։

Հրէաստան հանդերձ Փիւնիկէիւ եւ Խոյլ Ասորւովք յառաջ-նումն բաժանման անկաւ Լաւոմեդոնեայ (323). բայց անդէն յամի 320 Պտղոմէոս որ զկողմանս Եգիպտացւոց եւ զայլոց եւս աշխարհաց զրաւեալ ունէր՝ հան ի նմանէ զգաւառան զայնոսիկ։ Իբրեւ Հրեայք վասն երդմանն հաւատարիմ կալոյ չկամէին մտա-նել ընդ իշխանութեամբ Պտղոմեայ՝ եկն Պտղոմէոս առ զԵրուսա-ղէմ եւ 100,000 այր ի նոցանէ տարաւ յԵգիպտոս. անդ բա-ժանէր զնոսա ի քաղաքս քաղաքս, եւ ունէր զգուշանօք։ Յամէ-նեայ 314—311 պատերազմ էր Պտղոմեայ ընդ Անտիգոնեայ՝ որ ունէր զկողմանս Փոքուն Ասիոյ, բայց ի դաշինս խաղաղութեանն զոր կալեալ Պտղոմէոս ընդ նմա՝ յանձն առ թողուլ Անտիգոնեայ զերկրսն աշխարհն զայնոսիկ մինչեւ ցամն իբրեւ 301։

# 300

... Ի սմին ամի մեռցաւ առ Իփսուաւ ի Փռիւգացւոց աշխարհին երեւելին Միականն. եւ այնպէս յետ 22 ամաց սաստիկ պատերազմաց քննելոց եւ բազում երդմանց առելոց եւ բազում անագորու-թեանց զմիմեանս մերժելոյ զօրավարացն Աղեքսանդրի՝ յօրինեալ կայր մնայուն իմն բաժանումն կամ թէ հաստատութիւն վաղա-գոյն կանգնելոց գլխաւոր թագաւորութեանցն՝ որք եղեն ի մնա-ցեան տէրութենէն Աղեքսանդրի։

1. Պտղոմէոս որդի Լագեայ առ զԵգիպտոս հանդերձ Լի-բիաւ, Կիւրենեաւ եւ Արաբիաւ, առ յետոյ զՊաղեստին, զՓիւ-նիկէ եւ զԽոյլ Ասորիս, ստացաւ յայնր ամենայնի վերայ եւ զԿի-պրոս եւ զայլ եւս կղզիս։

2. Սելեւկոս կանգնեաց զթագաւորութիւն իւր ի Բաբիլոն յամի իբրեւ 312, ուստի սկսանի Սելեւկեանցն թուականութիւն. սահմանք թագաւորութեան նորա էին կողմանքն որ ի մէջ կան Եփրատ, Ինդոս եւ Աքսոս գետոց (յամի 307), յորս յաւելան եւ Ասորիք, Միջագետք, Հայոց աշխարհ եւ Կապադովկացւոց։

3. Լիւսիմաքոս ունէր զԹրակիա, առ եւ զԱռաջակողմն Ա-սիոյ մինչեւ ցՏաւրոս։

4. Կասանդրոս հզօր եւ անագորոյն որդին Անտիպատրեայ (✝ 319) շահեալ ունէր ընդ նմին զաշխարհն Յունաց եւ զՄա-կեդոնիա՝ զոր հան պատերազմաւ ի Պողիպերքոնեայ. ետ քարկոծել զՈղոմպիա զհզօր եւ զմեծամիտ մայրն Աղեքսանդրի, եւ յետ ամաց ինչ տայր սպանանել եւ զՌոքսանէ եւ զմանուկն նորա զԱղեքսան-դրոս Բ. (311), յետոյ եւս ուրեմն սպան ի հացի զ18ամեայ հարճոր-դին Աղեքսանդրի զՀերակղէս (309), եւ այսպէս սպառեցաւ արուա-կան զաւակ տանն Աղեքսանդրի։ — Որովք ճշգիւ լցան բանք մար-

գարէութեանն Դանիէլի։ Խոյն թեւաւոր ունէր չորս գլուխս [1]։ Իբրեւ քօշէն այծեաց ի զօրանալ իւրում խորտակեցաւ եղջեւրն մեծ՝ ելին այլ չորք եղջիւրք ի ներքոյ նորա [2]։ Թագաւորութիւն թագաւորին մեծի բաժանեսցի ի չորս հողմս, այլ ոչ ի զաւակս նորա, եւ ոչ զօրութեամբ որ հաւասար իցէ զօրութեան տէրութեանն նորա [3]։

Թագաւորութիւնն Լիւսիմաքեայ յետ 20 ամաց (յետ պարտութեան նորա եւ մահու) խառնեցաւ ի թագաւորութիւնն Սելեւկեանց (282), նմին իրի տօմարութիւն է երիս միայն գլխաւոր տէրութիւնս հաշուել։ Բայց ընդ այնր յարեան այլ մանր թագաւորութիւնք, (Պերգամոն, Բիւթանիա, Պափղագոնիա, Պոնտոս, Գամիրք, Փոքր եւ Մեծ Հայք)։ Իսկ թագաւորութիւնն Բակտրիացւոց (256 — 126) նուաճեցաւ ընդ հզօր տէրութեամբն Պարթեւաց։ — Զկարեւոր կարեւոր ինչ իրս միայն որ վասն այսց թագաւորութեանց իցեն՝ կայ կարգել ի յաջորդս։

## ԻԸ

Գլխաւոր թագաւորութիւնք Մակեդոնական մահեծան տէրութեանն. Մակեդոնիա, Ասորիք, Եգիպտոս (320 — 30)։

### 301

ՄԱԿԵԴՈՆԻԱ զառաջինն աստիճանաւ իւր առաջին համարեցաւ յերիս գլխաւոր թագաւորութիւնսն որ յետ Աղեքսանդրի յօրինեցան։ Անտիպատրոս զոր կացուցեալ էր Աղեքսանդրի կուսակալութեամբ ի վերայ Մակեդոնացւոց եւ Յունաց աշխարհին, անդէն իսկ եւ իսկ յետ մահուն Աղեքսանդրի ունէր տալ մարտ պատերազմի ընդ Յունաց, որ Լամիական պատերազմն կոչի։ — Համբաւ մահուն Աղեքսանդրի զառաջինն իբրեւ լուր ինչ առանց հաստատութեան հասանէր յԱթէնս. ցժողովուրդն թեթեւամիտ որ դարձաւ փաղփաղակի ի մոլեգին ուրախութիւն գրգռեալ մանաւանդ ի Դեմոսթենեայ եւ ի Հիպերիդեայ՝ ասէր Հանդարտն Փոկիոն. «Մի լինիք ուրախ տարաժամ, այլ նախ կացէք մնացէք իրացն ստուգելոյ. եթէ այսօր Աղեքսանդրոս մեռեալ է՝ է մեռեալ եւ վաղիւ եւ յետ վաղուին»։ Մեծ մասն միջին Յունաստանի եւ ազգք ինչ լեռնորդեայք յԷպիրոս եւ Էտոլեացիք միաբանեցին ընդ Աթենացիս. այսպէս զօրավար նոցա Լեւոսթենէս գումարեալ ի նոցանէ գունդ մի 30,000 արանց՝ կալաւ զանցս Թերմոպիւղեաց։ Թէպէտ եւ խորտակեցաւ զառաջինն Անտիպատրոս 13,000 հետեւակօքն եւ 600 հեծելովք, եւ անկաւ յամուր քաղաքն ի Լամիա եւ անդ պաշարեցաւ, բայց յետ անկանելոյ ի

1 Դան. Է. 6։ 2 Դան. Ը. 8, 21, 22։ 3 Դան. ԺԱ. 3, 4։

պաշարման անդ քաջին Լեւոսթենեայ եւ հատանելոյ Թեսալեանց օգնականութեան՝ ի ճակատու առ. Կրանոնաւ յաղթէր Անտիպատրոս, խաղացեալ հասանէր ի վերայ քաղաքին Աթենացւոց. նոքա անդէն ամրապատեցին առաքել զՓոկիոն եւ զայլս՝ աղօթելաւորս առ. Անտիպատրոս, յանձն առին տալ զծախս պատերազմին եւ թողուլ պահականս մակեդոնացիս ի քաղաքին, եւ զԴեմոսթենէս եւ զՀիպերիդէս տալ ի ձեռս: — Բայց նոքա վաղ փախուցեալ թաքուցեալ էին ի բաց. այլ խնդրակքն Անտիպատրեայ զՀիպերիդէս սպանին եւ զԴեմոսթենէս գտին մերձ ի մահ ի մեհենին Պոսիդոնեայ ի Կալաւրիա՝ յոր ապաւինեալ էր, եւ ապա անցաւ ի կենաց՝ առեալ դեղ (322): Սակայն եւ զգօնն Փոկիոն (աշակերտ Պղատոնի) որ այնուհետեւ ամենեւին ի գլուխ առաջնորդութեանն կայր պահպանութեամբ մակեդոնացի զօրուն՝ ի տիրել երբեմն խառնաղանջ ամբոխին առ. սակաւ մի ժամանակ՝ դատապարտեցաւ ըմպել դեղ մահու (317): Յայնմ հետէ առաջնորդէր ճարտարխօսութեամբն Դեմետրիոս Փաղերացի (աշակերտ Թէոփրաստեայ, ծն. 345) որ էր տածիչ արուեստից եւ գիտութեանց, բայց եղծ նա առաւել եւս զբարս Աթենացւոցն. ըստ թուոյ աւուրց տարւոյ կանգնեցին նմա անդրիս:

Իսկ Կասանդրոս որդի Անտիպատրեայ († 319) որ բարեկամ էր նորա՝ յետ տիրելոյ Մակեդոնիայ բռնութեան գործովք (316) անուանեցաւ թագաւոր Մակեդոնացւոց (302—301). բայց սորա եւս որդի Փիլիպպոս Ա. (298) վաղ մեռաւ (297), եւ նորին եղբարք Անտիպատրոս եւ Աղեքսանդրոս առ. իւրեանց իսկ յանցանաց բռնութեան մահուամբ վախճանեցան (յամի իրր 295):

Այնպէս Դեմետրիոս Ա. Պաշարիչ որդի Անտիգոնեայ, որում յետ պարտութեանն առ. Իփսոսաւ հնարիւք իմն յաջողեցաւ տիրել մեծի իսկ մասին աշխարհին Յունաց՝ եհաս աթոռոյ թագաւորութեանն Մակեդոնացւոց (294): Բայց անբարտաւանութեամբն եւ ցանկութեամբ զսահմանն մեծացուցանելոյ՝ կամէր միւսանգամ տիրել Ասիոյ, այլ անկաւ նա ի նեղ ի միաբան զօրութենէ Պտղոմեայ, Սելեւկեայ եւ Լիւսիմաքեայ՝ ի Փոքուն Ասիա. եւ զանձն ի ձեռս՝ խնդրեալ պաշտպանութիւն ի Սելեւկեայ որ եւ պահեաց իսկ զնա մարդասիրութեամբ մինչեւ ցմահ նորա՝ տալով նմա եւ զամենայն վայելս (287): Իսկ այնուհետեւ տիրէր Լիւսիմաքոս սահմանացն նորա (286), մինչեւ եւ սա ի ճակատու ուրեմն ընդ Սելեւկեայ ի կենաց եւ ի թագաւորութենէ անկանէր (282), եւ Սելեւկոս զԱռաջակողմն Ասիոյ (զսահմանս նորա) յիւրն արկանէր:

Բայց Թրակիա մնաց կից ի Մակեդոնիա, եւ Անտիգոնոս Ա. Գոնատաս որդի Դեմետրի՝ յետ տալոյ պատերազմ ընդ բազում նախանձորդաց թագաւորութեանն Մակեդոնացւոց (278—266),

տայս ուրեմն կարող խաղաղութեամբ զԹագաւորութիւնն Մակեդոնացւոց՝ որ ցայնվայր անապաստանայր իմն ի մարդկանէ, առեալ պատերազմօք եւ մնացանին արշաւանօքն Գաղղիացւոց կամ Գաղատացւոց՝ որք զամենայն երկիրն մինչեւ ցծոց ծովուն Կորնթացւոց ապականեցին, մինչեւ յետ սատակելոյ անթիւ հեծելոց ի նորհանգչի անդ Փոքուն Ասիոյ, որ ի նոցա անուն Գաղատիա կոչեցաւ: Սակայն կամէր ունել Անտիգոնոս իշխանութիւն եւ ի վերայ աշխարհին Յունաց (266—243):

Այլ յաշխարհի անդ Յունաց՝ փոփոխումն իմն լինել էր խորացն յետ երկուց երեւելի դաշնաւորութեանց քաղաքացն ընդմիմեանս: Ետոլիացւոց դաշնաւորութիւնն կազմեցաւ յամի իբրեւ 284 հակառակ բռնութեան Թագաւորացն Մակեդոնացւոց, եւ Աքայեցւոցն դաշնաւորութիւն (որ բարձեալ էր յամի իբրեւ 301) միւսանգամ նորոգեցաւ յամի իբրեւ 281: Աքայեցւոցն դաշնաւորութիւն երեւելի եղեւ՝ յորժամ Արատոս զհայրենի քաղաք իւր զՍիկիոն հան յազատութիւն եւ միաբանեաց ընդ դաշնաւորութեանն, եւ եղեւ զօրավար դաշնաւորութեանն եւ շունչ եւ ոգի նորա (251). յետ սակաւ ինչ միոյ Կորնթոս եւս եւ Մեգարա յաւելաւ ի դաշնաւորութիւնն (243), ապա Աթենացիք եւս (231):

Ընդ նոյն ժամանակս Ծերունին Անտիգոնոս Ա. որ Թշնամի եւ հակառակորդ էր դաշնաւորութեանցն այնոցիկ՝ վախճանեցաւ, եւ նորին որդի Դեմետրիոս Բ. (243—233) մատուցանէր յառաջ զպատերազմն որ ընդ դաշնաւորութեանցն էր, որպէս եւ Անտիգոնոս Գ. Դոսոն (233—221) նորին եղբայր: Այլ իբրեւ Աքայեցիքն ի մարտ պատերազմի ընդ Սպարտացւոց գրգռեցան (քանզի Սպարտա մինչեւ ցայնվայր պահէր զազատութիւնն), եւ չյաջողէր իմն պատերազմն՝ կոչեաց Արատոս յօգնականութիւն զԱնտիգոնոս, եւ այնպէս արկ միւսանգամ զանձն ընդ վերագոյն իշխանութեամբ Մակեդոնացւոցն (224):

Փիլիպպոս Գ. (221—179) որդի Դեմետրի Բ. պահեաց զիշխանութիւն ազատապետութեան իւրոյ ի վերայ Յունաց աշխարհին (Թէպէտ եւ յետ վախճանին Արատոսի 213, անց փոխանակ նորա քաջն եւ հմուտն պատերազմի Փիլոպիմէն). բայց բռնութեան եւ նենգութեանց Հռոմայեցւոցն չէր նա ձեռնհաս՝ լինելոյ դիմակալ: Նա պատերազմ ընդ Հռոմայեցւոցն, եւ չյաջողեալ՝ անկաւ ի բարձրութենէ իշխանութեան իւրոյ (198—197). աշխարհն Յունաց ազատութեան իմն անուամբ եմուտ ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոց (196), բայց տակաւին մեծն Փիլոպիմէն պաշտպանէր դաշնաւորութեանն Աքայեցւոց հակառակ Հռոմայեցւոցն, մինչեւ կալան զնա ապստամբքն ի Մեսսենէ եւ սպանին (183): Իսկ Փիլիպպոս Բ. մեռաւ սրտմտութեանն՝ զի սպան զորդի իւր զԴեմետր խաբեալ ի քսութենէն Պերսեայ (179):

Պերսեւս նորին որդի (179—166) ջանացեալ ազատել ի ձեռաց Հռոմայեցւոցն՝ վատթարեալ կործանեցաւ. պարտութիւն պատերազմին որ առ Պիւդնաւ եղեւ՝ արար վճար իրաց նորա եւ Մակեդոնացւոցն (168). Մեռաւ նա ի Հռոմ (166). աշխարհն Յունաց երթայր եւ առաւել հպատակէր Հռոմայեցւոցն, եւ յետոյ ամէն երկոքին եւս աշխարհքն եղեն կատարեալ նահանգք Հռոմայեցւոց յամի 148 եւ 146:

## 302

Սելեւկոս Ա. Նիկանոր (312—281) թէպէտ եւ ի մերձաւոր կողմանս Ասիացւոց եդ զթագաւորութիւն իւր, այլ գլխաւոր գաւառ էր նորա Ասորիք եւ քաղաք արքունական Անտիոքիա առ Որոնտէս գետով՝ որում ինքն իսկ արկ հիմն: Յառաջագոյն մայր քաղաքացն էր Սելեւկիա առ Տիգրիս գետով 8 մղոնաւ հեռի ի Բաբելոնէ, եւ յայնմ հետէ Բաբելոն փութանակի իսկ սկսաւ յապականութիւն կործանել, եւ յետ սակաւուց զնա Պարթեւացն պատերազմաւ՝ եղեւ բնակութիւն գազանաց վայրի [1]: Բաց յերկուց քաղաքաց անտի զայլ եւս բազում քաղաքս շինեաց Սելեւկոս, եւ Հրեայք կոչեցեալք ի նմանէ բնակեցին անդ, եւ սիրով ունէր զնոսա Սելեւկոս: Առնէր յառաջադէմ զվաճառականութիւն եւ զգիտութիւնս. այլ յետ մեծացուցանելոյ զթագաւորութիւն իւր՝ խառնեալ ի նոյն զթագաւորութիւնն Լիսիմաքեայ՝ նենգ գործեալ սպանին զնա: Համօրէն 72 նախարարութիւնք էին թագաւորութեան նորա, եւ ձգէր իշխանութիւն նորա յՀելլեսպոնտոսէ մինչեւ ցՀնդիկս:

Անտիոքոս Ա. Սոտեր (281—262) տակաւին պահէր ամբողջ զթագաւորութիւն հօրն իւրոյ, բայց զԲիւթանիա (որ եղ եկաց յամէ իբր 400) չկարաց նուաճել, եւ տէրութիւնն Պերգամեայ (յամէ 283) մեծացաւ՝ հանեալ սահմանս ի Սելեւկեանցն թագաւորութենէ: — Առ Թէոսն Անտիոքաւ Բ. (262—247) ապստամբեցին Պարթեւք (256) եւ Բակտրիա (254), եւ դժուարութիւնք ինչ ազգականութեանց եղեն պատճառք գրգռելոյ պատերազմի ընդ Եգիպտացիսն (260—252), եւ սպանաւ թագաւորն դեղեալ ի կնոջէն [2]: Սելեւկեանքն կոչէին թագաւորք հիւսիսոյ, իսկ Պտղոմեանքն թագաւորք հարաւոյ համեմատութեամբ Հրէաստանի:

Սելեւկոս Բ. Կալինիկոս (247—227) չյաջողեալ պատերազմին որ ընդ Եգիպտացւոցն էր՝ անկաւ ի նեղ մեծ (247—244) [3]. թագաւորութիւնք որ նորոգ յայտնեցեալ էին՝ մեծացան ի սահմանաց նորա, եւ ինքն մեռաւ ի գիպահուոջ առ Պարթեւս: — Սելեւկոս Գ. Կերաւնոս (227—224) սպանաւ վաղվաղակի եւ զնա յաջորդէր եղբայր նորա:

1 Եսայ. ԺԳ. 19—22: 2 Տես նաեւ Դան. ԺԱ. 5, 6: 3 Տես Դան. ԺԱ. 7—9:

Անտիոքոս Գ. Մեծն (224—187)։ Սա յետ նուաճելոյ զապստամբութիւնս որ ի Մարս եւ ի Պարսկաստանի գրգռեցան (220), յարձակէր ի վերայ Պտղոմեանցն եւ կատարէր եւս յաղթութիւնս, բայց առ Ռափիա անձնեւին իսկ մատնեցաւ ի պարտութիւն (219—217)[1]. նա եւ ի Պարթեւաց աշխարհէն եւ ի Վրկանից յետ պատերազմի իրիք յաջողակէս հրաժարեաց (210)։ Բայց եդ նա արշաւանս ի Հնդիկս (206). ապա միաբանեալ բախէր ի մարտ պատերազմի ընդ Եգիպտացւոցն, եւ եհաս որում ցանկացեալն էր. զի առ նա զԿոյլ Ասորիս, զՓիւնիկէ եւ զՊաղեստին (203—198)[2], եւ յետոյ զմասն մի Փոքուն Ասիոյ եւ զԹրակիա (197)։ Այլ վասն յաջողութեան իւր պատերազմին այնորիկ զժտեցաւ ինք ընդ Հռոմայեցւոցն. պարտութեամբն առ Մագնեսիա (190) անձնեւին բեկաւ զօրութիւն տէրութեանն Ասորւոց[3], եւ Ասիաջակողմն Ասիոյ մինչեւ ցՏաւրոս եղ ի ձեռաց նորա։ Հայք յետս կացեալ բաժանեցան։ Բռնութեան մահն Անտիոքայ (187) այլ եւ այլ օրինակաւ պատմի[4]։

Սելեւկոս Դ. Փիլոպատոր (187—176) վասն տկարութեանն թագաւորէր խաղաղութեամբ. քանզի արծաթ պիտոյ էր նմա՝ կամէր ի ձեռն Հեղիոդորայ առնուլ զգանձսն ի տաճարէն Երուսաղեմի, իսկ Հեղիոդորայ տուեալ նմա թոյն՝ ի կենաց արկանէր[5]։— Անտիոքոս Դ. Եպիփանէս (176—164) նորին եղբայր եղ ի բարձ թագաւորութեան փոխանակ եղբօրորդւոյն իւրոյ Դեմետրի. նենգութեամբ եւ պատերազմաւ յաղթեաց Եգիպտացւոց, եւ առնոյր իսկ զԵգիպտոս եթէ չէր Հռոմայեցւոյն պատուիրակօք հրաման տուեալ առնել խաղաղութիւն (171—168)։ Այնուհետեւ առնէր ակիզըն՝ զՀրեայսն վասն կրօնիցն հալածել դժնդակութեամբ, վասն որոյ եւ Հրեայք ապստամբեցին ի նմանէ (167). Ի խաղալ իւրում ի մարտ պատերազմի ի կողմանս Վերին Ասիացւոց՝ ուր կամէր զաղմուկն որ վասն կրօնիցն նորոգութեանց գրգռեցան՝ նուաճել, մեռաւ զճանապարհայն չարաչար[6]։

Մինչ դեռ տակաւին մանուկ էր Անտիոքոս Ե. Եւպատոր (164—161) նորին որդի եւ յաջորդ՝ հանէին Պարթեւք ի նմանէ զՄարաստան, զՊարսկաստան եւ զԲաբելոնիա. հօրեղբօրորդի նորա Դեմետրիոս սպան զնա եւ նստաւ փոխանակ նորա։ Յայնմ հետէ թագաւորութեան Սելեւկեանց սահմանք էին գրեթէ միայն Ասորիք եւ Փիւնիկաստան. քանզի եւ Հրեայք յետուստ ուրեմն եղին անձնեւին յազատութիւն (130)։

Ապաքէն 40 եւ աւելի եւս քաղաքօք՝ զորս թագաւորքն Սելեւկեանք շինեցին յԱսորւոց աշխարհին՝ մինչ իսկ յամենայնի յունական հրահանգք եւ յոյնութիւն յարեւելս։ Բայց տակաւին ի

1 Տես Դան. ԺԱ. 11, 12։
2 Տես Դան. ԺԱ. 13—16։
3 Տես Դան. ԺԱ. 18։
4 Տես Դան. ԺԱ. 19։
5 Տես Դան. ԺԱ. 20։
6 Տես Դան. ԺԱ. 21—45։

գաւորութիւնն ։ Նա եւ յետոյ յորժամ Պտղոմէոսն Զ. Փիղոմետոր (181 — 145), մանուկ որդի անպարտոյն թագաւորին այնուրիկ՝ միւսանգամ ի նոյնպիսի վտանգ անկանէր, երկրորդ անգամ հրամայէին Հռոմայեցիք զի լինիցի խաղաղութիւն (172—168)։

Այլ այնու Եգիպտոս կախեցաւ զՀռոմայեցւոց իշխանութենէ. անձանց առին նոքա զխնամս հասանելոյ վճռոյ յորժամ վասն պայազատութեան թագաւորութեանն յառաջագոյն խոկ յարուցեալ էր ամբարիշտն Պտղոմէոսի Է. Փիսկոն (145 — 117) գժտութեամբ հակառակ եղբօրն իւրոյ, եւ յայն սակս բաժանեալ էին Հռոմայեցիք երկոցունց զթագաւորութիւնն (162—145)։

Այլ քանզի հանապազորդ տեւէին գժտութիւնք ազգականացն Պտղոմեանցն՝ որ մի ըստ միոջէ յաջորդէին, արկին զնոսա Հռոմայեցիք յիւրեանց օգուտ ի կիր, նախ զԿիւրենական աշխարհն (յամի իբրեւ 84) արկին յիւրեանս, ապա զԿիպրոս (յամի իբրեւ 57), եւ յետոյ ուրեմն զամենայն աշխարհն Եգիպտացւոց (30)։

Այսպէս Եգիպտոս անդէն առ առաջնովք երեքումբք Պտղոմեանցն իբրեւ զմի դար կալաւ զօրութիւն եւ մեծութիւն երեւելի։ Անչափ եւ անհնարին ընչաւետութեամբն որ մթերէր նոցա ի յածախագոյն հարկաց զոր ի վերայ պտղաբեր երկրին արկանէին՝ եւ ի տուրեւառիկ վաճառականութենէն որում կարգեալ խոկ էին նաւական զօրութիւն մեծ ի պաշտպանութիւն՝ եղեւ Աղեքսանդրիա կեդրոն եւ միջավայր յունական հրահանգաց եւ դպրութեան, եւ կայան համաշխարհական վաճառականութեան։ Սակայն առքն որ զայս պայծառութիւն ածին ի մէջ՝ որպէս եւ տունն խոկ թագաւորին՝ օտարածինք էին, Յոյնք եւ Հրեայք։ Ազգն եգիպտական յամառեալ պնդեալ կայր ի խեռութեանն եւ յօտարատեցութեանն եւ յանզգայ մեռութեանն, եւ մնացեալ իմն ձգձգէր զշղթայս ծառայութեանն։ Այսու այնուիկ խոկ պայծառութիւն թագաւորութեանն Պտղոմեանց չէր ինչ տեւական, եւ էր ծաղիկ օտար՝ որոյ արմատք չարկին արմատս ի խոր յերկրին Եգիպտացւոց. մինչեւ յետ ապականման թագաւորացն հասանելոյ՝ եւ տիրելոյ յարքունիս նոցա անառակութեան եւ բարուցն ապականութեան՝ եղեւ աւար Հռոմայեցւոց թագաւորութիւնն այն։

## 304

### Աղեքսանդրիական հրահանգք եւ մատենագրութիւն։

Առ պայազատօքն Աղեքսանդրի՝ մտաւոր ծնունդքն հայէին կամ յողոքել իմն զովութիւնս արքունեաց թագաւորացն, կամ յուրախութիւն զուարթութեան մարդկան տեղերելոց ի գեղխութիւն եւ ի վայելս, եւ կամ ի կատարելութիւն գործական ինչ գիտութեանց որ ի շահ եւ ի պէտս իցեն։ — Յայն սակս պատ-

զարդարութիւն չունէր, այլ նմին հակառակ առ ժլատութեան զարծաթն զոր վասն պաշտպանութեան տային Հրեայք Պտղոմեանցն՝ առ յինքն 25 ամ: Յետոյ ուրեմն Պտղոմէոս Գ. (յամի իբրեւ 225) առաքեալ զԱթենիոն, զարծաթն վասն ամացն այնոցիկ պահանջէր ի բաց, սպառնացեալ թէ վարեցից զՀրեայսն յաշխարհէ անտի ի բաց եթէ այսուհետեւ չտայցեն ամ ըստ ամէ զարծաթն: Մեծ էր ահն այլ եւս իմն մեծ կուրութիւնն Ոնիայ որ չկամէր ամենեւին տալ ինչ ի դուրս: — Բայց Աստուած ապրեցոյց զՀրեայսն ի վարանացն ի ձեռն պատանեկին Յովսեփայ որ եղբօրորդի էր Ոնիայ: Սա իմաստութեամբն եւ քաղցր գնացիւք նախ զԱթենիոն հաշտեցոյց եւ ապա ի նորա ձեռն՝ զԹագաւորն, եւ առ յանձն հատուցանել զարծաթն: Այսպէս բաւական եղեւ նա բառնալ զպարտսն Ոնիայ:

Սիմոն Բ. (218 — 195) էր արժանի հաւուն իւրոյ. ընդդէմ դարձաւ նա համարձակութեամբ Պտղոմեայ Դ. եւ չեթող մտանել ի ներքին կողմն տաճարին, յորժամ Պտղոմէոսն յետ յաղթութեանն առ Ռափիա եկն յԵրուսաղէմ (217): Գտանեմք գեղեցիկ ինչ գովութիւն ի մատենին Յեսուայ Սիրաքայ զնմանէ կամ զՍիմոնէ Ա.[1]: Իսկ Թագաւորն ի ցասման լեալ՝ զամենայն Հրեայսն առ քինու յԱղեքսանդրացւոց քաղաքի անդ ի հրապարակի ածեալ կուտէր՝ զի արձակեալ զկոյսս փղացն ի վերայ՝ սատակեսցէ զնոսա: Այլ կամէր զՀրէաստան հրով եւ սրով ապականել: Այլ ի վերջին ժամու անդ եկեալ հասեալ նեղութեանն՝ մինչ դեռ Հրեայքն ջերմաջերմ առ Աստուած կարդային, երեւեալ հրեշտակաց ապրեցուցին զնոսա. եւ շրջեցաւ յանկարծակի խորհուրդ Թագաւորին, մինչեւ հաստատել նմա զառաջին իրաւունս նոցա եւ զազատութիւնս եւ նորս եւս ի վերայ առաջնոցն յաւելուլ:

306

Յետ մահու նորա (204), Անտիոքոս Գ. Մեծն Թագաւոր Ասորւոց առնոյր պատերազմաւ զաշխարհն Պաղեստինացւոց (203), եւ թէպէտ եւ Սկոպաս զօրավար Պտղոմեայ Ե. առ միուանգամ ի բուռն զերկիրն (յամի իբրեւ 200), այլ դարձեալ մերժեցաւ յնմա, եւ Հրեայքն յայնժամ ոչ միայն ինքնակամ հնազանդեցին Ասորւոցն, այլ եւ նպաստ եւս ի պատերազմին լինէին (188): Այսպէս անկաւ Հրէաստան ընդ տէրութեամբ Սեղեւկեանցն. արքայ Անտիոքոս վասն շնորհակալութեանն մեծամեծ պատարագս յԵրուսաղէմ տայր մատուցանել, ապահովի առնէր զաշխարհն եւ հաստատէր զամենայն իրաւունս եւ զազատութիւնս Հրէիցն:

1 Սիրաք Ծ. — 26.

Հրէայքն. վասն այսորիկ յետ յաղթութեանցն զոր կատարեաց յԵգիպտացւոց աշխարհին՝ խաղաց բարկութեամբ ի վերայ Երուսաղեմի. առ զքաղաքն եւ հրաման ետ կոտորել կամ վաճառել 80,000 ոգի՝ այր եւ կին, ծեր եւ տղայ: Առաջնորդութեամբն Մենելաւեայ մտանէր ի տաճարէ անտի զսպասսն զոսկի եւ զարծաթի, եւ տանէր ընդ իւր կապուտ կողոպուտ իբրեւ 1800 քանքար (170)[1]:

Ամս երկուս կրեցան Հրէայք ի կուսակալացն Փիղիպպեայ եւ Անդրոնիկոսի, եւ առաւել եւս յուղարկեալն Մենելաւեայ. ապա եկն Ապողոնիոս զօրավար 22,000 արամբք, հրաման առեալ զամենայն այր ի չափ հասեալ կոտորել եւ զկին եւ զմանկտի առնել վաճառակուր առաջի Երուսաղեմի: Եկեալ Ապողոնիոս դաւով իմն պատճառէր խաղաղութիւն. իբրեւ յաւուր շաբաթուց եգիտ զՀրէայսն դատարկացեալս (168), հրաման ետ կոտորել զնոսա, եւ մոլեգին իմն հրով եւ սրով զքաղաքն ապականէր: Ամրացուցանէր զմիջնաբերդն, դնէր պահապանս որ զամենայն անօրէնութիւն գործէին, եւ բռնութեամբ արգել զպաշտամունսն. յայնժամ փախստեայ եղանէին մնացորդք բնակչացն ի քաղաքէ անտի[2]:

Յետ սակաւ ինչ միոյ եհաս հրաման յԱնտիոքայ թէ ամենայն ազգք որ ընդ թագաւորութեամբ նորա են՝ զնոյն պաշտօն հարկ է թէ ունիցին, եւ առանձինն իմն հրաման ի վերայ արկանէր Հրէիցն հանդերձ մահու պատժովք՝ չմատուցանել պատարագս ի տաճարին, զշաբաթն եւ զայլ եւս տօնսն չպահել, ուտել խառնակ կերակուրս, եւ մատուցանել զոհս կռոց: — Զտաճարն Աստուծոյ հրամայէր դարձուցանել ի մեհեան Արամազդայ, նոյնպէս զտաճարն որ ի Գարիզին էր[3]: Այս եղեւ ի դրդելոյ եւ յաղաչելոյ Սամարացւոցն՝ որք ընդ հեթանոսաց անուացին կամաց թագաւորին. նա եւ ռամիկք ի Հրէից անտի խոնարհեցան ի կամս թագաւորին. պղծեցաւ տաճարն եւ օրն շաբաթուց եւ զոհեցան զոհք ի բագինս կռոց:

Բայց սակայն բազումք կացին մնացին հաստատուն, եւ կրեցին համբերութեամբ զհալածանսն նա եւ զմահ եւս ի վերայ օրինացն իւրեանց[4]: Յորոց էր մանաւանդ պատուական ծերունին եւ օրէնսուսոյց Եղիազարոս, որ չառ յանձն կեղծաւորել թէ զոհեաց կռոց, այլ լաւ համարեցաւ մեռանել ի վերայ օրինացն ուրախութեամբ եւ անփոփոխ մտօք[5]: Նոյնպէս քաջութեամբ նահատակեցան յԱնտիոք եղբարք եւթն հանդերձ մարբն իւրեանց յետ դժնդակ չարչարանաց՝ հայեցեալ ի յոյս յարութեանն. յետոյ

1 Տես Ա. Մակ. Ա. 17 — 29: Բ. Մակ. Ե. 11 — 21:
2 Ա. Մակ. Ա. 30—42: Բ. Մակ. Ե. 22—27:
3 Բ. Մակ. Զ. 1, 2:
4 Ա. Մակ. Ա. 43...: Բ. Մակ. Զ. 3—11:
5 Բ. Մակ. Զ. 18...:

եղ զօրավար զորդի իւր (զեղբօրորդ) զՅուդա որ անուանեալ կոչե-ցաւ Մակաբէ (քանզի ջախջախէր նա զԹշնամիս բազկաւ իւրով իբրեւ մրճով), այսպ մեռաւ Մատաթի (յամի 166). սուգ առ-ին նա աշխարհն ամենայն եւ թաղեցաւ ի Մոդիիմ[1]։

# 310

Յուդա Մակաբէ (166 — 160) «իբրեւ զկորիւն առիւծու որ մռնչէ յորս», ընթանայր ընդ ամենայն երկիրն ժողովեալ զիւ-րեւ 6000 այր իսրայելացի, ջնջէր սատակէր զանօրէնսն եւ բար-ձրացուցանէր զգլուխս այնոցիկ որ նեղեալ էին։ Թէպէտ եւ Ապո-ղոնիոս հարստաբուռն զօրօք հասանէր ի վերայ նորա, բայց պար-տեցաւ նա ի նմանէ եւ անկաւ ի ճակատուն։ Նոյն անցք անցին եւ ընդ Սերոն (կամ Նրէն) հրամանատար Ասորին Ասորւոց. քաջա-լերէր Յուդա զգունդն իւր, փախստեայ հանէր զԹշնամիսն եւ յետ երկուց յաղթութեանց ընթանայր առաջի նորա ահն եւ հոյն[2]։

Իբրեւ լուաւ Անտիոքոս զհրան Յուդայ՝ բարկացաւ, հրա-մայէր առնել զօրաժողով եւ պատրաստել գունդ բազում ան-հնարին. ինքնին իսկ ել գնաց յաշխարհն Պարսից եւ ի վերնա-կողմանսն Ասիայ ժողովել արծաթ յօգնականութիւն. իսկ զԼիւսի կացոյց ի վերայ իւրոցն արքունի եւ եթող առ նմա զկէս զօրացն, պատուէր առեալ ջնջել զհրեայսն։ Իսկ Լիւսի առա-քեաց գումարտակ 40,000 հետեւակաց եւ 7000 հեծելոց ի Հրէ-աստան, եւ զօրավար նոցա զՊտղոմէոս, զՆիկանովր եւ զԳորգի. որք եկեալ բանակեցան յԷմմաուս։

Յուդա եւ եղբարք նորա ժողովեցին զսակաւ գունդն իւրեանց առ Մասեփաւ, եւ պատրաստեցան ընդդէմ նոցա ի պատերազմ պահօք եւ աղօթիւք, ապա հարին բանակ յանդիման Թշնամեացն. իսկ Յուդա սակայ քաջալերէր զնոսա եւ մխիթարէր[3]։ Իբրեւ զգաստ եղեւ Յուդա թէ Գորգի ի գիշերին յարձակել առեալ զմասն մի զօրացն ել ի ճանապարհ՝ զի եկեալ յանկարծակի ան-կանիցի ի վերայ Յուդայեանցն, յայնժամ փութանակի ի վերայ դիմէր Յուդա Թշնամեացն եւ 3000 արամբք յաղթէր բազմամբոխ զօրացն՝ յուսացեալ յԱստուած։ Այսպ խաղայր ընդ առաջ Գոր-գեայ, իսկ Գորգի զահի հարեալ գնաց փախստեայ. Մնայր բա-նակին ոսկւով եւ արծաթով եւ պատուական հանդերձիւք աւար Իսրայելացւոցն։ Եւ դարձան դոքա յիւրաքանչիւր տեղիս, նուա-գելով զսաղմոսն ՃԼԵ[4]։

Լիւսի որ տրտմեալ էր յոյժ ընդ իրսն՝ դարձեալ ի գալ ամին միւսոյ (165) վարէր գունդ մի 60,000 արանց եւ 5000 հեծե-

1 Ա. Մակ. Բ. 31 — 70։
2 Ա. Մակ. Գ. — 26։ Բ. Մակ. Ը. — 7։
3 Ա. Մակ. Գ. 27...։
4 Ա. Մակ. Դ. — 25. Բ. Մակ. Ը. 8 — 29։

լոց, եւ ինքնին առեալ զզօրսն՝ հասանէր ի Հրէաստան: Նոյն ընդ առաջ նորա Յուդա 10,000 արամբք, եւ յետ կարդալոյ առ Տէր՝ յաղթեաց Լիւսեայ, եւ Լիւսի ամօթապարտեալ դարձաւ ապաքէն յԱնտիոք[1]:

# 311

Ապա խաղացին Յուդա եւ եղբարք նորա հանդերձ զօրօքն յԵրուսաղէմ եւ ի լեառն Սիոն, սրբեցին զտաճարն որ եղծեալ եւ ապականեալ էր, ուղղեցին սեղան, ետուն յօրինել նոր սպաս տաճարին. եւ կացուցին միաբանութեամբ զպաշտամունսն որպէս յառաջն, զորս եւ սկսան իսկ ի 25 Քասղեւ (Դեկտ.) ամսոյ կատարել տօն աւուրս 8, եւ կարգեցին առնել ամ ըստ ամէ տօն յիշատակի նորոգութեանն այնորիկ: Ամրացուցին նոքա զմիջնաբերդն Սիոն եւ կացուցին ի նմա զունդս ի պահպանութիւն[2]: Զհալածումն Հրէիցն եւ զպղծել տաճարին ի ձեռն Անտիոքայ՝ յառաջագոյն նշանակեաց Դանիէլ, եւ զքրքեալն եւս ճշգիւ եցոյց[3] (165):

Այլ իբրեւ տեսին ազգքն արտաքոյ թէ միաբանութեամբ նորոգեցաւ պաշտօն Հրէիցն եւ յառաջադէմ լինին, նախանձել սկսան եւ տալ եւս պատերազմ ընդ Հրէիցն: Այլ Յուդա եւ եղբարք նորա յաղթէին նոցա կարգաւ, յորոց էին եւ Իդումեացիքն՝ որոց զքաղաքս Համոնեանցն ի Յուդայեան ցեղէ առեալ զրաւեալ էր, եւ Ամոնացիքն: Թէպէտ եւ ընդ սոսա միաբանեցին եւ Ասորիք՝ որոց զօրավար էր Տիմոթէոս, բայց եւ նոքա եւս եկիցս ի պարտութիւն մատնեցան, եւ բազում քաղաքք առան ի նոցանէ (164)[4]:

Ընդ նոյն ժամանակս Անտիոքոս Դ. ի գնալ իւրում ընդ վերնագաւառսն Ասիոյ՝ ձեռն արկ առնել կապուտ կողոպուտ զմեծագանձ մեհեան դիցն Նանեայ յԵղիմայիս քաղաքի, բայց բնակիչքն զինուք եւ սպառազինօք մերժէին զնա ի բաց, եւ մի ոմն եւս ի զօրավարաց նորա անդէն անկաւ[5]: Ապա խաղացեալ երթայր ի կողմանս Բաբելացւոց. զճանապարհայն գուժկան հասանէր թէ ի պարտութիւն մատնեցան զօրավարք նորա որ եղեալ էին յերկրին Հրէաստանի. բարկացաւ Անտիոքոս, եդ ի մտի առնել զԵրուսաղէմ տեղի գերեզմանաց Հրէիցն: Այլ յանկարծակի խիթք ի փորն անկանէին, եւ մինչ դեռ սաստիկ անդադար ճեպէր ի ճանապարհ՝ դէպ եղեւ անկանել նմա ի կառաց անտի, եւ այնպէս սաստկացան տանջանք նորա: Այնչափ ախտն զայրացաւ՝ մինչեւ եռանդն որդանց բղխեալ սորել եւ փտել յանդամսն անկանել, եւ ի նեխոյն հոտոյ նեղել զօրացն: Յայնժամ սկսաւ բեկանել թքանել յամբարտաւան եւ ի հպարտութենէ միտաց իւրոց.

1 Ա. Մակ. Դ. 26—35:
2 Ա. Մակ. Դ. 36—61: Բ. Մակ. Ժ. —8:
3 Դան. Ը. 9—14, 23...:
4 Ա. Մակ. Ե: Բ. Մակ. Ը. 30...:
5 Տես Բ. Մակ. Ա. 13—16:

ռեալ. ի պարտութիւն մատնեցան որ ընդ Լիւսիաւն էին, անկան ի նոցանէ 12,000 եւ Լիւսիոս հանդերձ մնացորդօքն կորակոր փախուցեալ մազապուր լինէր։

Ի միտ առ Լիւսիաս թէ ձեռն հզօրին Աստուծոյ օգնական է Հրէից. յղեաց նոցա առնել հաշտութիւն. եւ թագաւորն եւս յանձն առ եւ շնորհեաց ազատութեամբ ունել զկրօնն եւ զամենայն իրաւունս, եւ հրեշտակքն եւս Հռովմայեցւոց միջնորդ ի մէջ անկանէին. եւ այնպէս լինէին դաշինք խաղաղութեան ըստ պայմանացն այնոցիկ[1]։

## 313

Բայց չէր տեւական խաղաղութիւնն. հրամանատարք կողմանցն այնոցիկ չտային խաղաղութիւն Հրէից. իսկ բնակիչք Յոպպէացւոց քաղաքին մատնութեամբ ընկղմեալ կորուսին 200 Հրեայս անմեղս. եւ Յամնիացիքն եւս խորհէին նենգութիւն։ Ելանէր յայնժամ Յուդա եւ անկանէր յանկարծակի ի վերայ, եւ զերկուց նաւահանգստաց եւս զնաւսն հրձիգ առնէր։ Ապա հարկանէր զՏիմոթէոս զօրավար եւ երկրորդ անգամ յաղթէր բազմութեան զօրաց նորա եւ առնոյր ի բուռն զկողմանսն Գաղաադու։ Յետ սակաւ ինչ միոյ կատարէր միւս եւս յաղթութիւն ի վերայ Գորգեայ կուսակալի եւ Իդումայեցւոցն։

Յետ այսր յաղթութեան՝ ի մէջ անկելոց Հրէիցն գտան ուլունք նուիրեալք դիցն որ հակառակ օրինացն էին[2]։ Յուդա առաքէր 12,000 դահեկանս յԵրուսաղէմ զի փոխան մեղաց անկելոցն մատուսցի պատարագ քաւութեան. որով եցոյց թէ հաւատայր նա յարութեան մեռելոց եւ տեղւոյ իրիք քաւութեան[3]։

Այլ տակաւին միջնաբերդն Ակռն ի ձեռս Ասորւոցն էր որ արգել իմն լինէին այնոցիկ որ ի տաճարն մտանէին։ Ձեռն արկ Յուդա պաշարել զԱկռն. յայնժամ փութացան բազումք ի Հրէից անտի ապստամբելոց յօրինացն առ թագաւոր անդր, եւ աղաչէին առաքել փութանակի զօրաւիգն օգնականութեան Երուսաղէմ։ Վասն այնորիկ Անտիոքոս Ե. եւ Լիւսիաս ժողովէին զօր բազում անհնարին 100,000 հետեւակաց, 20,000 առնեւձիոյ բազմութիւն, փիղս 32 եւ գերանդաւորս կառս 300 եւ խաղային ի վերայ Հրէաստանի։ Էր ընդ նոսա եւ Մենելաւոս, զի ի ձեռն նոցա խորհէր քահանայապետութեանն հասանել. այլ իբրեւ յայտ արար Լիւսիաս թէ նա է պատճառք ամենայն չարեաց որ լինէին յաշխարհի անդ՝ հրաման տայր թագաւորն սպանանել զանօրէնն Մենելաւոս, եւ ընկեցին զնա ի բարձունս աշտարակի միոջ ի մոխիրն որ յաշտարակի անդ էր, եւ այնպէս մոխրահեղձոյց վախճա-

1 Բ. Մակ. ԺԱ։
2 Տես Երկր. օր. Է. 25, 26։
3 Բ. Մակ. ԺԲ։

զօրս ի ձեռն նորա եւ Աղկիմեաւ հանդերձ արձակէր ի Հրէաստան։ Նախ կամէին նենգութեամբ խօսել ընդ Հրէայսն ի խաղաղութիւն։ Բայց Յուդաս եւ եղբարքն ոչինչ անսացին բանից նոցա. բայց բազումք ի քահանայից եւ յայլոց բարեպաշտաց ի ժողովրդենէ անտի գնացին առ նոսա ի բանակ անդր. նոքա կալան զվաթսունս ի նոցանէ եւ կոտորեցին կամ ընկեցին ի ջրհոր մի։ — Բայց Բակքիդ եւ Աղկիմոս չկարացին առնել ինչ Յուդայ եւ այնպէս դարձան յետս[1]։

Իսկ Աղկիմոս միւսանգամ յաճախէր խօսել ամբաստանութիւն զՅուդայէ՝ մինչեւ առաքէր Դեմետր զՆիկանովր հարուստ գնդաւ՝ պատուէր տուեալ ջնջել զՀրէայսն ի տեղւոջէն։ Եհաս Նիկանովր եւ յետ սակաւ ճակատ մի ընդ Դեսաունի՝ կռուոց մեծաւ դաշինս խաղաղութեան եւ առաւ բարեկամութիւն ընդ Մակաբայեցւոցն։ Զայրացաւ ընդ այն Աղկիմոս եւ երթեալ ամբաստան լինէր զՆիկանովրայ թէ [illegible] է իրաց արքունի[2]։

## 315

Թագաւորն դիւրահաւան պատուհասակոծ առնէր զՆիկանովր եւ տայր հրաման ածել զՅուդաս ձերբակալ ի քաղաքն Անտիոքացւոց։ Նիկանովր թէպէտ եւ ակամայ՝ սակայն փոյթ փորձէր մարթանօք զհրամանն կատարել. բայց Յուդաս զգուշացաւ ի նենգութենէ նորա, եւ ժողովեաց փաղփաղակի զիւրսն եւ զընտիր ընտիրս ի Հրէից։ Ապա յաղթեաց Նիկանովրայ, կոտորեաց ի զօրաց նորա 5000 այր, եւ Նիկանովր անկաւ փախստեայ յամուրն Սիոն։ Անտի գնաց զքահանայսն ի տաճար անդր, սաստէր նոցա տալ ի ձեռս փաղփաղակի զՅուդաս. իբրեւ նոքա երդմամբ հաստատեցին թէ չգիտեն զտեղին, ձգեաց Նիկանովր զձեռն իւր ի տաճար անդր եւ երդուաւ հարթյատակ առնել զտաճարն Աստուծոյ եւ փոխանակ նորա շինել մեհեան դիցն Դիոնիսեայ. զայս իբրեւ ասաց եւ գնաց ի բաց։ — Իսկ քահանայքն կարդային զօգնականութիւն Աստուծոյ կենդանւոյ ի վերայ սրբութեանցն նորա[3]։

Իբրեւ ազդ լինէր Նիկանովրայ թէ Յուդաս ի Շամրին է, խաղաց զհետ նորա՝ ի մտի եդեալ անկանել ի վերայ նորա յաւուր շաբաթու. խօսեցաւ նա հայհոյութիւն յԱստուած ամենազօր եւ կենդանի. եհաս բանակեցաւ զօրօքն մօտ ի Բեթորոն։ Այլ բանակեալ յանդիման նորա Յուդաս 3000աւն։ Մատուցանէր աղօթս ուրախութեամբ առ Աստուած եւ յորդորէր զզօրսն յուսալ յԱստուած հարցն իւրեանց, եւ պատմէր եւս նոցա երազ թէ որպէս քահանայապետն Ոնիա (Գ.) եւ ընդ նմա Երեմիա մարգարէ

1 Ա. Մակ. Է. — 25։ Բ. Մակ. ԺԴ. — 11։
2 Բ. Մակ. ԺԴ. 11 — 26։
3 Ա. Մակ. Է. 26 — 38։ Բ. Մակ. ԺԴ. 26 — 36։

երեւեցան՝ զի կային բարեխօս առ Աստուած վասն ժողովրդեանն, եւ թէ Երեմիա եւս նմա ձեռն ի ձեռն սուսեր մի ոսկեհանդերձ զի նովաւ հարցէ զթշնամիսն։

Քաջալերեալ ի բանից անտի եղեն ի մեծ հաստատութեամբ յարձակել ի թշնամիս անդր։ Իսկ եւ հայեցեալ տեսանէր Յուդա զպատրաստութիւն պատերազմի Ասորւոցն, զփղացն զանհնարին զազանութիւն, զձեռս յերկինս ամբարձեալ ի Տէր կարդայր։ Իսկ Ասորիքն ի գոչելն փողոյ եւ աղաղակաւ սկսան ի վերայ յարձակել, այլ Մակաբայեցիքն բազում աղօթիւք եւ խնդրուածովք. անդէն Նիկանովր ի սկզբան պատերազմին գտաւ անկեալ, եւ զօրքն ի փախուստ անձապարէին. իսկ Յուդա եւ որ ընդ նմա էին, զհետ անկեալ հարկանէին կոտորէին իբրեւ 35,000 այր, եւ յամենայն կողմանց ի վերայ դիմէր ժողովուրդն գալ կոտորել զթշնամիսն. Իսկ զգլուխն եւ զաջ ձեռն Նիկանովրայ ետ կախել Յուդա զպարսպացն յԵրուսաղէմ՝ զի տեսցեն Ասորիքն որ ի միջնաբերդին էին։ Ամենայն Երուսաղեմացիք օրհնէին եւ գովէին զԱստուած, եւ առնէին զօրն զայն տօն եւ կարգէին եւս կատարել ամ յամէ զտօն յաղթութեանն այնորիկ (յ13 Ադար՝ այս ինքն է Փեբրուար ամսոյ, 160) յառաջ քան զտօնն Պաւութեան[1]։

## 316

Գտեալ այնուհետեւ Յուդայի պարապ՝ առաքէր հրեշտակութիւն առ Հռոմայեցիսն, զի երթայք եւ ուխտէր ընդ նոսա համապատերազմանց նոցա։ Հրեշտակքն Հրէից եղեն առաջի ծերակուտին զբան դաշնաւորութեանն զոր կամէր Յուդա Մակաբէ եւ եղբարք նորա, եւ աղաչէին առնել բարեկամութիւն ընդ Հռոմայեցւոցն։ Հաճոյ թուեցաւ նոցա բանն, եւ եդին դաշինս պաշտպանութեան ընդ Հրէիցն, եւ բանք դաշանցն գրեցան ի տախտակս պղնձիս. եւ գրեցին եւս առ Դեմետր սպառնալով՝ մի նեղել այսուհետեւ զՀրեայսն[2]։ Բայց Դեմետր ընդ նոյն ժամանակս լուեալ զգոյժ պարտութեանն Նիկանովրայ՝ ընտիր ընտիրս զօրաց իւրոց 20,000 հետեւակ եւ 2000 հեծելազօր ի ձեռն տայր Բակքիդեայ եւ Աղկիմայ եւ առաքէր զնոսա ի Հրէաստան։ Էր ընդ առաջ նոցա Յուդա 3000աւ. բայց իբրեւ տեսին Յուդայեանքն զբազմութիւն գնդին Բակքիդեայ՝ թօթափեցան ի նմանէ եւ մնացին առ Յուդայի արք իբր 800։ Այլ զի հանդերձ համարձակեցաւ Յուդա յարձակել ի վերայ. յերկարէր պատերազմն զօրն ողջոյն, զաջ թեւն Բակքիդեայ ի փախուստ դարձուցանէր, բայց ձախակողմն թեւոյն զթիկամբքն անկանէր եւ այնպէս զՅուդա գնդաւն հանդերձ ի մէջ արկանէին, եւ յետ սաստիկ կռուոյ լինելոյ՝ անկանէր

1 Ա. Մակ. Է. 39 — 50։ Բ. Մակ. ԺԵ։ 2 Ա. Մակ. Ը։

Յուդաս փառաւոր անուամբ ի վերայ օրինացն իւրոց եւ հայրենեաց աշխարհին, իսկ սակաւաւորքն որ ապրեցան՝ դարձան ի փախուստ (160)։

Յովնաթան եւ Շմաւոն Թադէոսին տանին ի Մոդիիմ ի շիրիմս հարցն նորա եւ սուգ առ Իսրայէլ աւուրս բազումս, եւ սկսան խօսել եւ ասեն զիարդ անկաւ կործանեցաւ հզօրն փրկիչն Իսրայէլի [1]։ Իսկ յիրաւի իսկ՝ զի բաւական բղխեցին այնուհետեւ անօրէնքն եւ զօրացան, եւ ժողովուրդն վհատեալ ետ ձեռս ի Բաքքիդ. եւ Բաքքիդ ի ձեռն ապստանցն զոր կացոյց ի վերայ Հրէիցն՝ այր հալածել զնոսա եւ կացուցանէր պահապանս ի տեղիս տեղիս, զի կալցի զերկիրն յիշխանութեան իւրում [2]։

Այնուհետեւ եւ անօրէնն Եղկիմոս առնոյր ի բուռն զքահանայապետութիւնն եւ հրաման ետ զներքին պարիսպս սրահի տաճարին կործանել, Թերեւս վասն ընդ մեզ միանալոյ այնոցիկ որ պաշտպանիչն եղեն նմա։ Այլ այն ինչ սկիզբն առնէր գործոյն՝ հարաւ Եղկիմոս եւ քակեցան երակք նորա եւ մեռաւ մեծաւ տանջանօք [3]։

# 317

Ընդ նոյն ժամանակս ճշմարիտքն Իսրայէլացիք ընտրեցին զՅովնաթան իշխան եւ զօրավար Հրէից (160—143)· իսկ Յովնաթան եւ որ ընդ նմայն էին՝ փախեան յանապատն Թեկուեայ ապրել յերեսաց Բաքքիդեայ· Թէպէտ եւ ջանացաւ Բաքքիդ ըմբռնել զնա, բայց չեղեւ զամաղխա, եւ յորժամ սպանաւ ի նմանէ նենգութեամբ Յովհաննէս՝ առ Յովնաթան զվրէժ մահու եղբօր իւրոյ, եւ յաղթեաց եւս Բաքքիդեայ [4]։ Բայց Բաքքիդ յետ Եղկիմեայ մեռանելոյ դարձաւ գնալ ի տեղի իւր, եւ դադարեաց Հրէաստան խաղաղութեամբ ամս երկուս (160—158) [5]։

Յետ ամացն երկուց դրդեալ Բաքքիդեայ յարանց անօրինաց յազգէ անտի Հրէիցն, սկսաւ գաղտ եւ կամ յայտնութեամբ ջանալ կորուսանել զՅովնաթան. իբրեւ չեհաս որում կամէրն՝ հաւանեցաւ առնել ընդ նմա խաղաղութիւն եւ մեկնեցաւ յերկրէն Հրէաստանի՝ երդմամբ քերալ չդառնալ այսրէն յետս, եւ պահեաց իսկ զերդումնն։ Այնուհետեւ էր խաղաղութիւն յԻսրայէլի. Յովնաթան նստէր ի Մաքմաս եւ անդ դատէր զժողովուրդ իւր եւ կշտամբէր զանօրէնսն յԻսրայէլէ [6]։

Յամի հարիւրորդի յիսներորդի երրորդի եւ Աղեքսանդրոս Բաղաս որ ասէր զանձնէ թէ իցէ որդի Անտիոքայ Դ․ եւ գտեալ օգնականութիւն ի Հռոմայեցւոցն՝ յարեաւ հակառակ Դեմետրի Ա․ եւ առ ի բուռն զքաղաքն Պտղոմայեցւոց (զԱկկոյ)։ Յայնժամ

1 Ա․ Մակ․ Թ․ — 22։
2 Ա․ Մակ․ Թ․ 23 — 27․ 50 — 53։
3 Ա․ Մակ․ Թ․ 54 — 56։
4 Ա․ Մակ․ Թ․ 28 — 49։
5 Տե՛ս Ա․ Մակ․ Թ․ 57։
6 Ա․ Մակ․ Թ․ 58 — 73։

տամ նեղութեան ժամանակի եղեւ Դեմետր բարեկամ Յովնաթանու եւ հան զզօրսն յամրոցացն հրէաստանի եւ ի Սիոնէ եւս եւ ի Բեթսուրայ: Այլ Յովնաթան խնդրէր եւս հանել յԵրուսաղէմ եւ ամրացոյց զքաղաքն՝ անց ի կողմն Աղեքսանդրի, զի կացոյց զնա Աղեքսանդրոս ի վերայ քահանայապետութեանն եւ առաքեաց առ նա ծիրանի թագաւորութեան. մերժեաց Յովնաթան եւ զամենայն խոստմունսն Դեմետրի, քանզի չկարէր լինել վստահ ի նա:

Իսկ Աղեքսանդրոս Ա. տայր պատերազմ մեծ ընդ Դեմետրի յորում անկաւ իսկ Դեմետրիոս, եւ առ Աղեքսանդրոս զթագաւորութիւնն նորա (150—145), եւ վասն գործելոյ հաստատուն զպատիւ թագաւորութեան իւրոյ՝ առ նա կնութեան զԿղէոպատրա դուստր Պտղոմեայ Զ.: Ի ժամանակի հարսանեացն մեծապատիւ մեծապարգեւ մեծարէր Յովնաթան յերկուց թագաւորաց անտի[1]:

Իբրեւ անց ինչ ի վերայ ամացն՝ Դեմետրիոս որդի Դեմետրի Ա. եկանէր նաւուք ի կողմանս Կիլիկեցւոց գալ առնուլ ի բռունն զթագաւորութիւն հօր իւրոյ, եւ յարեցան իսկ բազումք ի նա. նա եւ Ապողոնիոս եւս որ կուսակալ էր Ստորին Ասորւոց եւ Պաղեստինացւոց, բայց յաղթէր նմա Յովնաթան (147), որ ի նմին արշաւանի հրձիգ արար զմեհեանն Դագոնայ յԱզովտոս եւ առ վարձս յաղթութեանն յԱղեքսանդրէ զքաղաքն Ակկարոն[2]:

## 318

Պտղոմեայ Զ. կոչեցեալ յԱղեքսանդրէ ի փեսայէ իւրմէ յօգնականութիւն պատերազմին որ ընդ Դեմետրեայ էր, եկն ծածուկ թշնամութեամբ մտօք՝ եւ առ զքաղաքսն Ասորւոց. ապա յայտնի իսկ եցոյց զթշնամութիւն մտաց իւրոց զոր ընդ Աղեքսանդրի ունէր, եւ մինչ դեռ չէր անդ Աղեքսանդրոս՝ կոչեաց առ ինքն զդուստր իւր զԿղէոպատրա եւ ետ զնա Դեմետրի կնութեան: Յետ այնորիկ երկոքին յաղթեցին միաբանութեամբ Աղեքսանդրի. Աղեքսանդրոս սպանաւ ի փախստեանն. Պտղոմէոս վախճանեցաւ ի վիրացն զոր էր առեալ ի պատերազմին, եւ զօրն պահապան զոր ի քաղաքսն կացուցեալ էր՝ կոտորեցաւ կամ մերժեցաւ ի բաց[3]:

Եւ յայսուհետեւ Դեմետրիոս Բ. Նիկատովր զառաջին նուագն (145—141) յաթոռ հօր իւրոյ. եդ նա դաշինս ընդ Յովնաթանայ. զի սկսեալ էր Յովնաթան պաշարել զամրոցն Սիոն, մեծացոյց զսահմանս իշխանութեան նորա տուեալ զԱփարիմ, զԼիդդա եւ զՌամա, եւ արար զամենայն Հրէաստան ազահարկ: Ընդ այնր խոստանայր նմա Յովնաթան 300 քանքար, եւ տա-

1 Ա. Մակ. Ժ. — 66: 2 Ա. Մակ. Ժ. 67—89: 3 Ա. Մակ. ԺԱ. — 18:

քեր 3000 այր ի Հրէից՝ ի գործ պատերազմի. ի ձեռն որոյ ցածոյց Դեմետր զապստամբութիւնն որ յԱնտիոք յարեաւ. բայց յամէր իւր ուխտականն հանել զպահապանս Ասորւոցն ի Հրէաստանէ՝ որպէս խոստացեալն էր[1]։

Նմին իրի յորժամ Տրիփոն սնոյց մանուկն զԱնտիոքոս զորդի Աղէքսանդրի կացուցանէր թագաւոր, յաղթէր Դեմետրիոսայ եւ առնոյր զԱնտիոք՝ յայնժամ եւ Յովնաթան անց ի կողմն Անտիոքայ Զ. Թէոյ (145—143), ընկալեալ խոստումն հաստատութեան ամենայն իրաւանց Հրէից, եւ եղեւ նա նմա ձեռնտու յաղթելոյ Դեմետրի եւ առնլոյ ամուրս բազումս[2]։ Ի նմին ժամանակի նորոգէր Յովնաթան եւ զդաշինս եղբօր իւրոյ ընդ Հռոմայեցւոց, եւ զդաշնաւորութիւնն ընդ Սպարտացւոց որ առ Ոնիաւ Ա. լեալ էր[3]։ Այսպէս կատարէր այլ եւս յաղթութիւնս ի վերայ զօրավարացն Դեմետրի, եւ յետ այնորիկ շինէր ամուրս բազումս մանաւանդ յԵրուսաղէմ[4]։

Բայց Տրիփոն խնդրէր կամէր թագ կապել, վասն այնորիկ եդ ի մտի բառնալ ի միջոյ զմանուկն Անտիոքոս։ Բայց քանզի ճանաչէր գիտէր թէ արգելք է այն Յովնաթանայ եւ չէ ընդունելոց զնա թագաւոր, լաւ այսպէս թուեցաւ նմա նախ բառնալ ի միջոյ զՅովնաթան, եւ ել զօրօք ի վերայ նորա։ Ելեալ եւ Յովնաթան ընդ առաջ նորա 40,000 ընտիր ընտիր զօրօք, համոզեաց զնա Տրիփոն արձակել ի բաց զզօրսն եւ գալ ընդ նմա ի Պտղոմայիս 10,000 արամբ. անդ կալաւ զնա ձերբակալ. զահի հարան եւ տրտմեցան յոյժ Հրեայքն եւ եղեւ սգութիւն մեծ հեթանոսացն[5] (143)։

## 319

Բայց Շմաւոն եղբայր Յուդայ եւ Յովնաթանայ կարգեալ էր յառաջագոյն ի թագաւորէն Անտիոքայ Զ. կուսակալ ի վերայ կողմանցն ծովեզերեայց եւ զօրավար. փութացաւ յայնժամ յԵրուսաղէմ, դրդեաց զսիրտ զազգն Հրէից եւ ընտրեցաւ ի նոցանէ առաջնորդ զօրացն (143—135)։ Գումարէր զզօրսն, երթէր ընդ առաջ Տրիփոնեայ որ պատրաստեալ գայր ի պատերազմ, բայց անկանէր Շմաւոն ի պատգամս ընդ նմա վասն արձակելոյ զՅովնաթան եւ առաքեաց եւս առ նա զորդիսն Յովնաթանու ի պատանդս։ Բայց ստեաց բանիցն Տրիփոն եւ չարձակեաց զՅովնաթան, եւ խաղայր յառաջ, այլ ամենայն ուրեք ընդ առաջ ելանէր նմա Շմաւոն եւ արգելոյր, եւ յետոյ ուրեմն եւս կոտորէր զՅովնաթան եւ զորդիսն նորա ի Բասկամա։ Իսկ առեալ Շմաւոն զոսկերս եղբօրն ի Մոդիմ եւ կանգնել ի վերայ շիրիմ գերեզմանի[6]։

1 Ա. Մակ. ԺԱ. 19—53։
2 Ա. Մակ. ԺԱ. 54—74։
3 Ա. Մակ. ԺԲ. —23։
4 Ա. Մակ. ԺԲ. 24—38։
5 Ա. Մակ. ԺԲ. 39—54։
6 Ա. Մակ. ԺԳ. —30։

Ընդ նոյն ժամանակս դարձեալ էր յետս Տրիփոն յԵգիպտոս եւ տուեալ ազատանել զմանուկն Անտիոքոս Զ․ եւ զթագաւորութիւնն յինքն վարեալ (143 — 139)։ Մինչ դեռ այն քինէր՝ խօսէր Շմաւոն պատգամաւորութեամբ ընդ Դեմետրի Բ․ որ միշտ եւս զօրացեալ ունէր զկողմն մի աշխարհին Ասորւոց։ Եւ Դեմետր դաշինս ընդ Շմաւոնեայ, յանձն առ նա լինել նմա իշխան ազգապետ եւ պարգեւս անհնարին ամենեւին։ Յետ սակաւ ինչ միոյ ետուն Ասորիքն ի ձեռս զամուրն Աքրոն․ եւ յետ սրբելոյ քաղաքին յամենայն պղծութենէ կռոցն պաշտաման՝ եմուտ ի ներքս Շմաւոն ուրախութեամբ, հաստատեաց տօն ամ յամէ առ յիշատակի կատարեալ ազատութեան երկրին Հրէաստանեաց (142)[1]։

Մինչ դեռ Դեմետր Բ․ ի պատերազմի ուրեմն էր ընդ Պարթեւաց եւ յաղթէր իմն ի սկզբանն, բայց յետոյ անկանէր ի ձեռս նոցա (141), Շմաւոն ի ժամանակի խաղաղութեանն յօրինէր եւ կարգէր զերս աշխարհին եւ բարձրացուցանէր զժողովուրդ իւր, նորոգէր զդաշինս խաղաղութեանն ընդ Հռոմայեցւոց եւ Սպարտացւոց, եւ ընդ այնր ամենայնի ընտրեցաւ յազգէ անտի իւրմէ ժառանգութեամբ իշխան եւ քահանայապետ (մինչեւ գայցէ ճշմարիտ մարգարէն)։ Եւ գրեցան բանքն ի տախտակս պղնձիս եւ եդան յերեւելի տեղւոջ ի մէջ սրբութեանցն (140)[2]։

## 320

Կամեցեալ Կղէոպատրայ ունել զոք օգնական ընդդէմ Տրիփոնի՝ ամուսնացաւ ընդ Անտիոքայ Սիդացւոյ որ էր եղբայր առն նորա։ Անտիոքոս ջանայր առնել իւր բարեկամ զՇմաւոն՝ հաստատեալ զամենայն իրաւունս եւ տուեալ իշխանութիւն՝ հատանելոյ դաշեկան առանձինն։ Ապա եկանէր նաւօք յԱսորիս, ուր գրեթէ ամենայն զօրն թօթափեալ ի Տրիփոնեայ՝ անկաւ յԱնտիոքոս որ պաշարեաց զքաղաքն Դովրայեցւոց։ Անդէն ի նմին ժամանակի զղջացաւ նա ընդ խոստմունսն մեծամեծս, զի մերժեաց նա զզօրսն զոր առաքեաց նմա Շմաւոն ի թիկունս օգնականութեան, առաքեաց զԱթենոբիոս բարեկամ իւր որ խօսեցաւ սպառնալեօք յԵրուսաղէմ, բայց եւ նմա Շմաւոն պատասխանի հաստատութեամբ։ Իսկ Տրիփոն փախեաւ ի Դովրայ յՊտղոմայիս եւ անտի յԱպամէա, ուր կալան զնա եւ սպանին կամ թէ ինքն իսկ զիւր անձն սպան (139)[3]։

Ընդ նոյն ժամանակս Կենդեբէոս զօրավար ծովեզերեայց Անտիոքայ Է․ Սիդացւոյ (139 — 131) հարկանէր զկողմանս Հրէաստանի[4], բայց Յուդա եւ Յովհան որդիքն Շմաւոնեայ բեկին զզօրու—

1 Ա․ Մակ․ ԺԴ․ 31 — 54։
2 Ա․ Մակ․ ԺԴ։
3 Ա․ Մակ․ ԺԵ․ — 38։
4 Ա․ Մակ․ ԺԵ․ 39 — 41։

թիւն նորա եւ մերժեցին զնա յաշխարհէն, եւ յետ այնորիկ էր խաղաղութիւն ամս երիս (138)[1] ։ Վասնզի Անտիոքոս երկնչէր [illegible] ի Հռոմայեցւոց որ միաբանեալ յայտ արարին թէ պաշտպանիչք եւ բարեկամք Հրէից են[2]։

Այսպէս շրջէր Շմաւոն (135) ի ծերութեանն ընդ Հրէաստան եւ ընդ նմա որդիք նորա Յուդա եւ Մատաթի, եւ յԵրիքով եկեալ ագանել առ փեսայն իւրում Պտղոմեայ․ անդ սպան զնա ի հացի Պտղոմէոս համանդերձ որդւովքն եւ որ ընդ նմա եկեալ էին, քանզի իշխանութեան իւրն ցանկացեալ էր Պտղոմէոս։ Այսպէս մեռաւ Շմաւոն, որ որպէս մեծ էր ի պատերազմի՝ նոյնպէս եւ ի խաղաղութեան․ էր նա ճրագ արիութեանն, հայր ժողովրդեանն եւ թ[illegible] թշնամեացն Իսրայէլի։ — Բայց որ սպանն զնա Պտղոմէոս՝ չեհաս որում ցանկացեալն էր․ զի որք առաքեցանն ի նմանէ առ Յովհան կրսեր որդի Շմաւոնեայ՝ ըմբռնեցան եւ սպանան, եւ Յովհան յաջորդէր զհայրն յիշխանութեան եւ ի քահանայապետութեան Հրէից[3]։ (Աստ սպառին գիրք Մակաբայեցւոց)։

# 321

Յովհաննէս որ անուանեալ կոչեցաւ Հիւրկանոս Ա․ (135—107), ի յարձակել ի վերայ նորա Անտիոքայ Է․ փախեաւ յԵրուսաղէմ․ այլ ընկալաւ զաղարումն պատերազմին, եւ յետ սակաւ ինչ միոյ եղեն դաշինք խաղաղութեան․ շնորհեցաւ Հրէից ազատութիւն օրինաց իւրեանց եւ քաղաքային իշխանութեան, եւ խոստացան Հրեայքն տալ հարկ ամ յամէ վասն քաղաքացն որ արտաքոյ քան զԵրուսաղէմ էին՝ 500 քանքար արծաթոյ եւ պատանդս․ հաստատեցաւ եւ դաշնաւորութիւն բարեկամութեան ի մէջ Ասորւոց ընդ Հրէից (134)։

Ըստ դաշնաւորութեանն խոկ այնորիկ գնաց Յովհաննէս Հիւրկանոս ընդ Անտիոքայ ի մարտ պատերազմի ի վերայ Պարթեւաց, յաջողութեամբ էր զառաջինն պատերազմն, այլ ի միում նուագի ի յարձակել ի վերայ թշնամեացն՝ ի պարտութիւն մատնեցան Ասորիքն եւ անկաւ ի ճակատուն Անտիոքոս Է․ (132 — 131)։ Ընդ նոյն ժամանակս փախուցեալ Դեմետր Բ․ ի բանտէ՝ առ միաբանեալ զթագաւորութիւն հօր իւրոյ (130 — 126), այլ յետ սակաւ ինչ ժամանակի զժտել սկսաւ ընդ Եգիպտացւոց, մինչեւ յետ չորից ամաց անկաւ ի պատերազմի որ ընդ նոցա էր։ Յայնմ հետէ չէին ձեռնհաս թագաւորքն Ասորւոց պահել զվերադոյն իշխանութիւն իւրեանց ի վերայ Հրէաստանեայցն, այլ մանաւանդ թէ յաջողութեամբ դարձեալ ի Պար-

1 Ա․ Մակ․ ԺԶ․ — 10։
2 Ա․ Մակ․ ԺԵ․ 15 — 24։
3 Ա․ Մակ․ ԺԶ․ 11 — 24։

թեւաց անուն Յովհան Հիւրկանոս՝ հան այնուհետեւ զաշխարհն ամենեւին յազատութիւն։

Նախ մեծացոյց զսահմանս իշխանութեանն Հրէից առեալ քաղաքս յԱսորւոց, յԱրաբացւոց եւ ի Փիւնիկեցւոց, եւ արար նոքօք յամրի եւ ի զգուշութեան զաշխարհն (130)։ Ի յաջորդ ամին խաղաց ի Շամրին, անդ առ զՍիւքէմ եւ զԳարիզին յա-րում եւ զտաճարն Շամրտացւոց աւերեալ քանդէր․ ապա չու առնէր գնայր ի վերայ Իդումեայեցւոցն, որոց զհարաւակողմն Հրէաստանի գրաւեալ էր, եւ բազում անգամ թշնամութեամբ գնացեալ ընդ Իսրայելացւոցն․ արկանէր զնոսա ի նեղ մեծ, հնազանդէր զնոսա հրէական թլփատութեանն եւ այնպէս յիւր ազգն խառնէր (129)։ Նորոգեալ Հիւրկանեայ զդաշնաւորութիւնն որ ընդ Հռովմայեցւոց էր՝ արար հաստատագոյն զստացուած կողմանցն զոր պատերազմաւն առ (127), եւ ամրացոյց զխաղաղութիւն աշխարհին։ Յետ ամաց ինչ գրգռեալ ի բնակչացն Սամարիայ եւ գնաց ի վերայ քաղաքին նոցա, (զոր նորոգն շինեալ էր Աղեքսանդրի մեծի) եւ յարգել արկեալ պաշարէր զքաղաքն։ Զաւր ջանայր բազում անգամ Անտիոքոս Թ․ Կիւզիկոս ապրեցուցանել զՍամարիա․ նկըն եւ զօրավարք նորա խորտակեցան, եւ յետոյ ուրեմն առաւ քաղաքն եւ քանդեցաւ (112)։

Յայնմհետէ խաղաղութեամբ վարէր Հիւրկանոս զսահմանս իշխանութեան իւրոյ որ բովանդակեալ ունէր զՀրէաստան, զԳալիլեա եւ զՍամարիա, եւ յետ 28 ամաց առաջնորդութեանն վախճանեալ առնէր զբաւ կարգի արանցն քաջաց Մակաբայեցւոց՝ որ այնչափ մեծամեծ նահատակութիւնս վասն օրինացն իւրեանց եւ հայրենի աշխարհին ցուցին, եւ էր նա նոյնպէս անպարտ վարուք իբրեւ զառաջինսն իւր († 107)։ Ոչ միայն զքաջութիւն Մակաբայեցւոցն զոր շնորհեալ էր նոցա Աստուծոյ, այլ եւ զշփոթութիւն եւ զաղմուկ թագաւորութեանն Սելեւկեանց ի կիր արկ աստուածեղէն անուշութիւնն առ հանելոյ զՀրէայսն ամենեւին յազատութիւն։ Բայց այն ինչ հասեալ Հրէիցն արտաքին ազատութեանն՝ ծնան հերձուածք եւ բաժինք առանձինն․ զեղծանել իմն սկսան Մակաբայեցիքն եւ կարգեցին ի վերայ առհմին իւրեանց եւ ի վերայ համօրէն ակերութեանն զպաշտօնս զաստուածանայցն Աստուծոյ։

## ԻԳ

### Հռոմայեցիք (753 — 1)։

Աղբիւրք․ Բուն հին հայրենի աղբիւրք պատմութեանն Հռոմայեցւոց՝ որպիսի ինչ են դիւանագիրքն (Fasti) եւ տարեգիրք (Annales) յոյժ իմն աղքատ են պատմութեամբ եւ թափուր ի մեծամեծ ինչ դիպաց։ Իսկ ի հնագոյն պատմագրաց նոցա՝ հատուկտորք եւեթ մնացեալ են։ — Վասն սկզբանց ժամանակաց Հռոմէական պատմութեանն՝ կարեւոր է Դիոնիսոս Հալիկառնացի (ց443)․ իսկ Լիւիոս, Պղուտարքոս, Պոլիբիոս, Դիոդոր Սիկիլացի, Ապպիանոս, Վելլէոս Պատերկուղոս, Փղորոս եւ այլ եւս նոյնպիսիք՝ են աղբիւրք քաջք վասն նորագոյն ժամանակաց Հռոմէական պատմութեանն։ Մանր եւս հանգամանք մատենագրաց այսոցիկ եւ նկարագիր նոցա ընծայեցի ի պատշաճ վայրի, ի պատմութեան Հռոմէական մատենագրութեանն՝ որ է գործեալ ընդարձակագոյն իմն աղբիւր հմտութեան վասն պատմութեանն Հռոմայեցւոց։ — Երեւելի եւ հռչակաւոր քան զամենայն պատմագիրս մերոց ժամանակաց՝ յայսմ մասին պատմութեան է Նիբուր գերմանացի՝ մատենիւն որոյ անուն է "Հռոմէական պատմութիւն"։

## Ա

### Բնակիչք Իտալիոյ, — շինուած Հռոմայ առ Թագաւորօք (753 — 510)։

## 322

ԱՇԽԱՐՀՆ Իտալիացւոց որ անուանեալ կոչի ի Յունաց Հեսպերիա՝ է ցամաքակղզի մեծ բաժանեալ ի Գաղղիացւոց աշխարհէ լերամբքն Ալպից, պատի զնովաւ ծովն Միջին եւ Ադրիական, եւ հատանեն զնա ընդ մէջ Ապենինեան լերինք։ Բաժանէր յերիս մասունս․ Վերին Իտալիա՝ յԱլպեան լերանց մինչեւ ցՌուբիկոն եւ ցՄակրա գետ․ Միջին կամ Բուն Իտալիա՝ ի գետոց անտի մինչեւ ցՍիլարոս (Սելէ) եւ ցՓրենտոյ (Ֆորտորէ), եւ Ստորին Իտալիա՝ ի նոցունց մինչեւ ցծայրն հարաւոյ։

Ա․ Վերին Իտալիա բովանդակեալ ունի զդաշտավայրսն զորս ընդ մէջ հատանէ Պադոս գետ։ Ի Գաղղիացի (Կեղտացի) բնակչացն իւրոց անուանեալ կոչէր Գաղղիա յայսկոյս Ալպեաց[1]։ Մօտ ի ծոց ծովուն Վենետացւոց բնակեալ էին Կառնացիք մեծատուն վաճառաշահ քաղաքաւն Ակուիլէա, եւ Վենետացիք՝ ծաղկեալ քաղաքօք Ադրիա, Պատաւիոն (անդէ ծննդեան Լիւեայ պատմագրի), Վերոնա (յորում նախ Էւգանեացիք՝ եւ ապա Կենոմանացիք բնակեցին եւ յետոյ եղեւ մեծատուն գաղթականութիւն ինչ Հռոմայեցւոց)։ — Ծովեզերն առ Տիւռենեան ծովուն կոչէր Լիգուրիա, եւ անուանի քան զամենայն քաղաքսն նորա էր Գենուա։ — Գաղղիացիքն որ առաւել զամենայն Վերին Իտալիա գրաւեցին կալան եւ զառաջին բնակիչսն զԷտրուսկացիսն վարեցին ի հարաւ կոյս՝ յայլ եւ այլ ցեղս բաժանէին։ Երեւելիքն ի նոցանէ ի հիւսիսային ափունս Պադոսի էին Ինսուբրիացիք զօռ պատերազմաւ՝ հանդերձ քաղաքաւն

1 Gallia Cisalpina.

իւրեանց Մեդիոլանօնիւ, Տաւրինացիք՝ ի կողմանն յորս յետոյ Օգոստոս շինեաց զՕգոստա Տաւրինացւոց (Թուրին), Սաղասացիք՝ վայրագ եւ յափշտակող բնակիչք Ալպից, եւ Կենոմանացիք հանդերձ քաղաքօքն՝ Բրիքսիա, Մանտուա (յոր մօտ էր Անդէս՝ տեղի ծննդեան Վիրգիլեայ). — եւ ի հիւսիսային եզերս գետոյն՝ բնակէին Բոյիացիք ի քաղաքսն Պարմա, Մուտինա (Մոտենա), Բոնոնիա (Պոլոնիա) եւ այլս, Լինգոնացիք՝ շուրջ զՌաւեննաւ: Իսկ ամենեւին ի հարաւոյ բնակէր գաղղիական ցեղն Սենոնացւոց որք ունէին զարեւելեան ծովեզերսն Ումբրիայ՝ մինչեւ մօտ իսկ զԱնկոնա, որք եւ հանեալ ի պատերազմունս էին ընդ Հռոմայեցւոց, եւ երեւելի քան զամենայն քաղաքս նոցա Սենոգաղիա էր:

Բ. Միջին Իտալիա ունէր — 1. զԷտրուրիա՝ յորում էին եւ 12 քաղաքք դաշնաւորութեանն Էտրուրիացւոց՝ Կորտոնա, Արրետիոն, Կղուսիոն, Պերուսիա յարեւելս հիւսիսոյ, Վոլատերրա, Վետուղոնիոն, Ռուսեղղէք, Վողսինիք յարեւմտա հարաւոյ, Տարկուինիք, Կերէ (կամ Ագիւղղա), Վէյք, Փաղերիք ի հարաւակողման: Երեւելիք քան զամենայն քաղաքս առ տէրութեամբն Հռոմայեցւոց էին դարձեալ Լունա (մօտ յայժմու Կառրարա) լեալ անուանի մարմարահանութիւքն. Պիսա բուն հին վաճառաշահ քաղաք առ Առնօ գետով. Փեսուղէք ի վերայ բլրոյ եւ Փղորենտիա ի հովտին Առնոայ: Ոչ ինչ կայր հեռի ի Սորակտեայ ի նուիրական լեռնէ կայր Փերոնիա քաղաք համբաւաւոր վաճառատեղեաւ եւ պաշտամամբք Փերոնիայ ծաղկական դիցն, որոյ անտառն հանդերձ մեհենիւք մօտ էր ի քաղաք անդր: Յետ երկայնաձիգ պատերազմաց հնազանդեալ Հռոմայեցւոց զ12 ամուր քաղաքսն զայնոսիկ՝ աւերեցին անդր գաղթականս եւ կարգեցին զերկիրն ընդ քաղաքին Հռոմայ պողոտայիւք, այսինքն Աւրեղեան, Կասիական, Փղամինեան ճանապարհօք: — 2. Ումբրիա, յորում կան աղբիւրքն Տիբերիս գետոյ եւ գետքն ծովեզերեայք՝ երեւելիք ի պատմութեան՝ Ռուբիկոն, Մետաւրոս եւ Սենա: Քաղաքք երեւելիք են հին շահաստանն Արիմինոն (Ռիմինի), Պիսաւրոն, Փանումփորտունէ հոյակապ մեհենիւ եւ պաշտամամբք, Սպոլետիոն, Ինտերամնա՝ (տեղի ծննդեան Տակիտեայ պատմագրի), Իգուվիոն՝ յորում են երեւելի աւերակքն մեհենին, ուր եւ ընդ կամարաւ գտան եւթն պղնձի Իգուվինեան տախտակքն ետրուրիացի արձանագրովք, Սարսինա (տեղի ծննդեան Պղաւտեայ կատակերգուի), եւ այլ եւս քաղաքք որք առ հասարակ ինքնօրէն քաղաքք կամ գաղթականք Հռոմայեցւոց էին: — 3. Պիկենոն, յորում երեւելի քան զամենայն քաղաքս էր քաղաքն ծովեզերեայ Անկոնա (որ է գրկաչափ) գաղթականութիւն Սիրակուսացւոց (394) երեւելի՝ արուեստանոցօք երանգոցն ծիրանեաց եւ շահաստան վաճառաց. իսկ այլ եւս քաղաքք

րիս մնացին։ — 1. Ապուլիա երկիր էր անտառովք կանաչազարդ, վարազուց եւ գայլոց. բնակիչքն էին ժողովուրդ խառնեալ ի պեղազգացի, հելլենացի եւ հին իտալացի ցեղից։ Ապուլիա ձգէր ի Ֆրենտոյ գետոյ մինչեւ ցծագս Յապիգիոնի (Գաբոյ տի Լեւգա). եւ բաժանի Ապուլիա ի Դաւնիա եւ ի Պեւկետիա՝ անջրպետեալ ի մէջ անկեալ Աւփիդոս (Օֆանդոյ) գետոյ, հանդերձ քաղաքօքն՝ Լուկերիա, Կաննէք, Վենուսիա (տեղի ծննդեան Հորատեայ), եւ ի Կալաբրիա կամ Մեսապիա՝ որ է ծայր ինչ երկիր յարեւելից կուսէ հանդերձ Բրունդուսիոնիւ եւ Տարենտոնիւ։ — 2. Լուկանիա ի մէջ Տիւռենական ծովուն եւ զոգոյ Տարենտեան ծովուն հանդերձ Պեստոն (կամ Պոսիդոնիա), Վելիա (Էլէա), Հերակղէա եւ այլովք քաղաքօք, երկիր էր խոխոմովք եւ ճարակաշատ վայրօք (նախին իրի եւ նշանաւոր էին եզինքն ապուլիացիք)։ — 3. Բրուտիոն (Կալաբրիա) ի Լաւոս (Լաինոյ) գետոյ մինչեւ ցծայր երկրին հարաւոյ՝ Կոսենտիա, Մամերտոն, Հռեգիոն (Ռեճճիոյ) եւ այլովք քաղաքօք։ — Այլ այսց ծովեզերեայց յունական քաղաքացն որք ի բարեկեցութիւն հասեալ էին՝ վաղ ուրեմն սկսան տիրել ազգքն հզօրք, բիւրք եւ պատերազմողք, մինչեւ եւ առքա անկան ընդ Հռոմայեցւովք՝ որք ի քաղաքսն նոցա մարդաթափս ի բնակչաց՝ ածին նստուցին գաղթականս։ — Մեծամեծ մնացորդք մեհենի ի Պեստոն, աւերակք սեանց հոյակապ շինուածոց, դրանց եւ որմոց, դրամք հատեալք գեղեցիկս եւ անօթք ճանկօք՝ տակաւին վկայ են յայնժամու մեծաշուք փառաւորութեան, մեծութեան եւ հրահանգաց յունական գաղթականութեանցն այնոցիկ։

Գ. Երեւելիք ի կղզեաց շուրջ զԻտալիաւ են՝ Սիկիլիա կամ Տրինակրիա (այս ինքն Եռեքծագեան, անուանեալ ի հնոց վասն ձեւոյն) համբարակ ցորենոյ վասն համօրէն Իտալիոյ, Սարդինիա, Կորսիկա եւ Մեղիտա (Մալդա). առա եւս որպէս եւ ի Ստորին Իտալիա բնակեալ էին մանաւանդ գաղթականութիւնքն Յունաց։

323

Ազգք բնակեալք ի Միջին Իտալիա յառաջ քան զտէրութիւնն Հռոմայեցւոց։ — Բնակիչք այսց կողմանց Իտալիոյ էին ի սկզբանէ գաղթականք ի Պեղազգացւոց (Տիւռենացիք) եւ դարձեալ ազգք այլլեռնածինք հովիւք եւ մշակք՝ յիբերիացի եւ ի գաղիացի ցեղից (Ումբրացիք, Վոլսկացիք եւ այլք), որք անուանեալ կոչէին Աբորիգինացիք իբրեւ ընտրելով յառաջնոցն։ Տիւռենեան Պեղազգացիքն՝ որ էին ժողովուրդ ծովակալ եւ կրթեալ՝ մերձան եւ կամ նուաճեցան յԵտրուսկացւոց կամ Տուսկիացւոց որք խառնեցեալ գային ի հարաւ կոյս ի կողմանցն Ալպեաց

(ի Յունաց)։ Նմին հակառակ ազգքն այդրէնածինք այլ եւ այլ անուամբք կացին մնացին ազատ մինչեւ անկան ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոց։ Միւս եւս երրորդ ցեղ էին Լատինացիք՝ ժողովուրդ խառնեալ ի Պելազգացի, յայդրէնածին եւ ի գաղթեալ ազգաց։ — Սիկանացիքն կամ Սիկուլացիք մերժեալք ի սոցանէ գաղթեցին նաւամբ միով ի Հարաւ եւ յետոյ բնակեցին ի Սիկիլիա՝ որ ի նոցա իսկ անուանն կոչեցաւ։

1. Էտրուսկացիքն բնակէին ի սահմանս այժմու Տոսկանայ մինչեւ ցեզերսն Տիբերիս գետոյ։ Փոխանորդեալ էին նոքա ի մի անրութիւն դաշնաւորութեան յ12 ազատ քաղաքաց յորս եւ կենդրոն էր Տարկուինիք։ Իւրաքանչիւր քաղաքաց առաջնորդք էին քրմական ցեղն ազնուականաց, որ էր վերակացու պաշտամանց եւ քաղաքային իրաց, եւ առաջի սորին էր պատասխանատու վասն ծառայից եւ պաշտպանուորաց՝[1] որք գործէին զերկիր մեհենից եւ զաւերանց իւրեանց։ Ցեղքն ազնուականաց[2] համօրէն քաղաքաց ընտրէին զգլխաւորն հասարակաց դաշնաւորութեանն, որոյ էր նշանակ իշխանութեան աթոռ փղոսկրեայ[3], պատմուճան ծիրանի եւ երկոտասան նուիրակք[4] հանդերձ խրձամբ եւ տապարաւ[5]։ — Միայն քրմականն ազնուականաց էր աւագահական գիտութիւն աստեղագիտութեան եւ բնութեան, յորոց վերայ իսկ հաստատեալ կային կրօնական պաշտամունք վերադոյն եւ խոնարհագոյն (12 աստուածոցն). եւ յայն սակս իսկ առաջնորդութեամբ քրմապետին մատչէին պատարագքն հանդերձ գուշակութեամբք. նա սահմանէր զաւուրս տօնից, զտարին կարգեալ յարդարէր եւ տայր օրէնս վասն իրաց պատերազմի եւ խաղաղութեան։ Կրօնք նոցա երկուաբական հաւատովք վասն ոգւոց բարեաց եւ չարաց, որպէս եւ լեզուն նոցա որ առանց ձայնաւոր գրոյ յաջմէ ի ձախ անդր ընթերցեալ լինէր՝ ցուցանէ թէ ծագումն նոցա յարեւելից է։ — Սկայագործ որմունքն Էտրուրիոյ եւ այլոց ազգաց, շիրիմն Պորսեննայ, աւերակք յաղթ շինուածոց մեհենացն, եւ մնացորդք անհեթեթ թմբոց, պղնձեայք, գեղանակերտ անօթք եւ այլ եւս նոյնպիսիք որ ցայժմ կան՝ յայտ արարեալ ցուցանեն զաջողակութիւն ճարտարապետութեան նոցա, որպէս եւ անհամար նկարէն անօթքն բրուտի եւ սափորք մանրոյ մետաղոյն որ ի մէջ գան՝ յայտ առնեն զճարտարութենէ արուեստին նոցա։ Հանդերձ նորիմբք եւ ի ձոյլ պղնձոյ եւ ի դարբնութեան քրէական նիւթոց երեւելի եւ համբաւաւոր էին. եւ յայն սակս հաւանութեան իսկ է թէ Հռոմայեցիք ի նոցանէն առին զնուագարանս պատերազմական երաժշտութեանն, որպէս եւ զկրթական ամփոփութիւնն իւրեանց,

1 Clientes.
2 Lucumones.
3 Sella curulis.
4 Lictores.
5 Fasces.

զմեծաշուք ձիւմն[1], զկրկէսն[2] եւ զխաղս սուսերամարտկաց[3] : — Էտրուսկեցիք ի բուն առաջին ժամանակին առնէին շահավաճառա-մեծ ընդ ծով, նաւարկութիւն եւ հէն ծովային : Ի գաղթականութեանց նոցա երեւելի քան զամենայն են ի կողմանս Հիւսիսոյ Փեսուլք, Փոպուլոնիա, Պիստորիա, Լուկկա, Լունա, Պիսա, եւ ի կողմանս հարաւոյ՝ Կապուա եւ Նոլա : — Առընթեր Էտրուսկեցւոց՝ բայց մղեալ իմն ի նոցանէ՝ բնակէին Ումբրացիք, որք եւ հանգոյն նոցա էին ուխտութիւն ինչ դաշնաւոր քաղաքաց, որոց գլխաւոր քաղաք Թուի լեալ՝ Ամերիա :

2. Ցեղքն Սաբելականք էին — ա. Սաբինացիք ազգք քաջ պատերազմող, արդար եւ սակաւապէտ. — բ. Սամնիտացիք, որ սիրէին զկեանս հովուութեան, զժրաջութիւն եւ զգործ պատերազմի, եւ զազատութիւն լաւ քան զամենայն ինչ համարէին. — գ. մանր մանր ինչ ազգք, որպէս՝ Պիկենդացիք, Մարսացիք (քաջ պատերազմողք), Վեստինացիք, Մառուկինացիք (որոց գլխաւոր քաղաք Տէատէ), Փրենտանացիք, Պելիգնացիք եւ Լուկանացիք : — Ամենայն Սաբելականն ցեղք էին ընդ ազնուապետական նահապետական իմն առաջնորդութեամբ, քանզի առաջնորդէին նոցա գլխաւորք ընտանեաց կամ ծերագոյնքն ի ցեղսն, եւ ի ժամանակս պատերազմաց հանդերձ պաշտպանաւորօքն իւրեանց մտանէին ընդ առաջնորդութեամբ զօրավարի ուրուք[4] : Սաստիկ փոյթ ի վերայ ունէին վասն ամուսնութեանն սրբութեան, եւ կատարէին իսկ զդաշինս ամուսնութեան առաջի աստուածոցն : Իսկ ուխտին նուիրական գարնայնոյ առաքէին գաղթականութիւնս, որովք նուաճէր ժողովուրդն բազմացեալ : Եւ զի ազգք շինականք եւ պատերազմողք էին՝ անպաճոյճ եւ զպարզ կեանս կէին եւ զդժուարութիւնս իւրեանց առաւել սրով եւ նիզակաւ լուծանէին քան իրաւամբք դատաստանաց : — Սոցին հակառակ Ոսկացիքն՝ որ էին ցեղ ինչ ազգակից Սաբելացւոց՝ մեծաւ մասամբ բնակէին ի քաղաքս, յաւանս եւ յամուր ամուր չէին. ի սոցանէ են Վոլսկացիք (որոց գլխաւոր քաղաքք են Անտիան եւ Սուեսսա Պոմետիա), Ռուտուլացիք, Աւսոնացիք, Էկուացիք, Աւրունկացիք : — Ընտանի իմն էին սոցա եւ սեպհական Ատելլանեան խաղքն հասարակականք՝ կաքաւուք եւ շարժմամբք :

3. Լատինացիք ազգք հզօրք ի հիւսիսոյ Տիբերիս գետոյ՝ բնակեալ էին յ30 քաղաքս որք միաբանեալ էին ի մի դաշնաւորութիւն՝ ունելով եւ ժողով խորհրդեան. ի քաղաքաց սոցա Ալբալոնգա (զորմէ ասեն իմն շինեալ Յուղոսի որդւոյ Էնեայ) զօրեայ ի ժամանակս պատերազմացն ունէր զյառաջահաս պատիւն : Զարգացեալ էր ի մէջ նոցա մշակութիւն եւ քաղաքային ազատու-

1 Triumphum. 2 Circus. 3 Gladiatores. 4 Imperator.

թիւն առանց պաշտպանութեան[1] եւ առանց զինուորական կամ քրմական ազնուականացն ճոխութեան։ Կապեալ էին սոքա ընդ միմեանս հասարակաց լեզուաւ, կրօնիւք, եւ հաւասարութեամբ իրաւանց, իրաւամբք քաղաքակից զուգութեան եւ փոխադարձ ամուսնութեամբք[2]։ Թէպէտ եւ իւրաքանչիւր ի քաղաքացն ունէր առանձինն ծերակոյտ՝ սակայն ամ յամէ լինէր ժողով հասարակաց առ Փերենտինեան աղբերբքն, եւ հասարակաց պատարագք մատչէին ի պատիւ Լատիականին Արամազդայ։

## 324

Հռոմ քաղաք իբրեւ ի սահմանի երեցունց գլխաւոր ցեղիցն եւ յերեցունց եւս առաւել կազմեալ՝ ի մի ամփոփեալ ունէր զկրօնս սոցա՝ որք իւիք իւիք այլակերպ էին ի միմեանց, սակայն բազում մասամբ ունէին ազգակցութիւն ընդ յունական դիւցաբանութեանն։

Ա. Ետրուսկացւոց երեւելի դիք էին՝ Տինա (Արամազդ)․ Կուպրա (կամ Կուփրիտոս կամ Կուպրիտոս կամ Կուպրաս) աստուած նիզակաւոր (Հերա), Մեներվա կամ Մինեբրուա (Աթենաս) դասակ որընդի եւ թմբկաց պատերազմի․ Վերտումնոս՝ յեղյեղուկ, ցուցիչ ժամանակաց տարւոյ եւ ազգի ազգի բերոց նոցա (որոյ տօն[3] ի Հոկտ. ամսեան)․ Մայր Մատուտա (ի Կերէ քաղաքի) մայր առաւօտու եւ աստուած ծննդեան․ Սումմանոս՝ տէր գիշերականն երկնի՝ փայլատակունք ի ձեռին նորա (որոյ էր մեհեան ի մեծ կրկէսին ի Հռոմ)․ Վոլտումնա՝ աստուած մեհենի դաշնաւորութեան երկոտասան քաղաքաց Ետրուսկացւոցն՝ ի Վոլսինիս․ Սեղտանս՝ աստուած անտառական յանտառն եղեւնափայտից ի Կերէ, եւ այլ եւս աստուածք։ — Ետրուսկացւոցն դիք յերկուս կարգս բաժանէին․ նախ 12 վերագոյն կամ ծածկեալ աստուածութիւնքն՝ որոց գործ եւ զօրութիւն միայն ի մեծամեծ ինչ շարժմունս բնութեան երեւիցի, եւ դարձեալ 12 խոնարհագոյն աստուածութիւնք[4] որ տիրիցեն այսոց յօրինուածոց աշխարհիս, եւ բաժանեալ են ի նոսա 12 ամիսք տարւոյն։— Առանձինն իմն են Ետրուսկացւոց եւ Պենատքն[5] (որ են տանեին աստուածք ծնուցիչք եւ սնուցիչք եւ յաւելիչք ստացուածոց), Լարքն[6] պաշտպանիչք եւ շահապետք վայրաց վայրաց կամ սահմանաց։ Չէր ինչ անօսր առ Ետրուսկացւոց եւ զոհ մարդագեն՝ զոր առնէին մանաւանդ ի գերեաց եւ յըմբռնելոց ի պատերազմի։ Ըղձութիւնքն նոցա որ մեծ իմն համարեալ էին յոյժ, քանզի ի Հռոմ եւ ի համօրէն իսկ Իտալիա ոչ ինչ գործ երեւելի վճարէր առանց նախ զդիսն հարցանելոյ նշանօք, էին՝ — ա․ Հաւագիտութիւն՝[7] որպէս յորժամ հաւահմայն[8] ի թռչելոյ կամ ի կանչելոյ հաւուց ինչ զհանդերձեալսն գուշակէր, սահմանեալ նորա յառաջագոյն կորածայր գաւազանաւն[9] թէ ընդ ո՛ր կողմն երկնից պարտ իցէ թռչել հաւուն՝ զի աջող իցէ, եւ թէ ընդ ո՛ր կողմն թռչել ձախող իցէ․ եւ կամ յուտելոյ անտի նուիրական աքաղաղացն մեկնութեամբ համարէին խմնեալ զհանդերձեալսն, եւ զայս առաւել ոչ եթէ քրմացն միայն անկ էր գիտել՝ այլ եւ ամենայն իսկ պատրիկաց

1 Clientela.
2 Connubium.
3 Vertumnalium.
4 Consentes.
5 Penates.
6 Lares.
7 Augurium.
8 Augur.
9 Liturus.

որ ի պատիւսն կամէին ելանել: — բ. Հմայութիւն փայլատականց[1], յորժամ հմայողք փայլատականց[2] մտադնէին առեալ նոցա վասն հաշտառնելոյ եւ կամ վասն խնամելոյ ի նոցունց զվճիռս աստուածոց. տեղիք հարեալք ի փայլատականց՝ սուրբ համարէին, եւ փակէին զնոսա շուրջանակի: — գ. Ընդերահմայութիւն[3], յորժամ ընդերահմայքն[4] ի փորոտեաց (ի սրտէ, ի լերդէ) անասնոցն զոր զոհէին՝ առնէին ըղձութիւնս[5] հանդերձելոց:

բ. Սաբինացւոց՝ ըղձութեան աստուած էր Սանկոս, իբրեւ աստուած ցեղին նոցա. իսկ Փերոնիա՝ աստուած դաշնաւորութեանն նոցա՝ որում մատուցանէին ծաղիկս եւ զերախայրիս հնձոց, եւ կատարէր տօն նորա ի նուիրական լերինն Սորակտէ: Երկու աստուածք պատերազմիկ էին պատերազմող ազգին Սաբինացւոց՝ Մարս եւ Կուիրինոս: Զմարս պատուէին զառաջինն իբրեւ ի պատկերի՝ ի վերայ վահանի իրիք եւ նիզակի: Մի ի պաշտամանց այսր Մարսեայ էր նուիրական գարունն[6] ցեղիցն Սաբելացւոց. այս ինքն՝ սովորութիւն էր սոցա զի ամենայն մարդ եւ անասուն որ ի սահմանեալ ինչ տարւոջ ծնանէին՝ լինէին ձօնեալ աստուածոցն, եւ ձօնեալքն ի մարդկանէ յետ 20 ամաց երթային անտի այլուր գաղթականութեամբ, եւ անասունքն անդէն յետ ձօնելոյն մատչէին պատարագ: Յայսպիսի գաղթականութեանց եղեն կացին Պիկենացիք եւ Հիրպինացիք (կոչեցեալք ի փայտփոր թռչնոյ[7] եւ ի գայլէ որ էին նուիրականք Մարսեայ): — Կուիրինոս էր հին ոք Սաբինացի աստուած սրոյ եւ մարտի, որ համարեցաւ նոյն ընդ Ռոմուլոսի:

գ. Լատինացւոցն աստուածոց՝ կէսք համեմատին աստուածոցն Յունաց եւ կէսք՝ առանձինն սեպհական են նոցա: Յառաջնոց անտի են՝ Յուպիտէր (Դիէսպատէր) հանդերձ կանամբն Յունոնիւ, եւ դիք ամենայն միջակականք՝ որպէս Տեղղուս (երկիր), Սատուռնոս (աստուած սերմանց) եւ նորին կին՝ Ոպս (ընչաւետութիւն). — իսկ ի վերջնոց են՝ երկդիմին Յանոս, աստուած դրանց, որոյ մեհեան ի Հռոմ յայնժամ միայն ի բաց էր՝ յորժամ էր պատերազմ ուրեք Հռոմայեցւոց. ընդ Յանոսի (Դիանոսի) կապեալ իմն է եւ Դիանա: Փաւնոս եւ Փաւնա անասնական աստուածք. Պիկոս եւ Պիղումնոս աստուածք մշակութեան եւ արմտեաց: — Բայց առաւել քան զամենայն պատուական էր Լատինացւոց (որպէս եւ Սաբինացւոց) Վեստա (Հեստիա) աստուած հրոյ եւ հաստատուն բնակութեան, յորոյ մեհենին ի Հռոմ այրէր հուր անշէջ, սպասաւորեալ ի կուսից քրմականաց՝[8] որք եւ համարեալ էին մեծարոյ յոյժ: — Փորտունա էր նոցա աստուած բախտի (ի Պրենեստէ եւ յԱնտիոն) յորմէ ելանէր պատգամ վիճակաւ արկելով, իսկ Փերենտինա էր աստուած դաշնաւորութեան համօրէն Լատինացւոց:

## 325

Հին իմն զրոյցք պատմեն թէ Նումիտոր թագաւոր Ալբալոնգա քաղաքի Լատինացւոց ի զաւակէ Էնեայ փախստեայ եկելոյ ի Տրովադայ, մերժեցաւ ի թագաւորութենէն ի ձեռն եղբօրն իւրոյ Ամուլեայ, եւ դուստրն Նումիտորայ՝ Ռեա Սիլվիա սափ-

1 Fulgurium.
2 Fulguratores.
3 Haruspicium.
4 Haruspices.
5 Divinatio.
6 Ver sacrum.
7 Picus.
8 Vestales.

պեցաւ պահել կուսութիւն ի մէջ Վեստեան կուսանացն. բայց սակայն ծնաւ նա երկուս մանկունս, որպէս ասէ աւանդելն՝ յԱրեայ ի դիցն պատերազմի։ Իսկ հօրեղբայրն եւ արգելուլ ի բանտի զաղջիկն եւ զմանկունսն ընկեցան ի գետն Տիբերիս ողողօքն, այլ իբրեւ էջ գետն ի յորդութենէ իւրմէ՝ մնացին մանկունքն ի ցամաքի։ Անդ, ասեն, մատակ գայլոյ դիեցուցանել կաթն մանկանցն. Փաւստուղոս հովիւ խաշանց թագաւորին եգիտ զնոսա, եւ տարեալ սնոյց զնոսա անուն եդեալ նոցա Ռոմուղոս եւ Ռեմոս։

Յետ սակաւ ինչ միոյ կրթէին նոքա յարութիւն եւ ի քաջութիւն կռուել ընդ գազանաց եւ աւազակաց, եւ յորժամ զժտութիւն ոք ընդ ումեք ունէր՝ ի մէջ անցեալ լինէին նոցա իրաւընտիրք։ Այլ իբրեւ իմացան զիրս ծննդեանն իւրեանց, յարեցուցին զբազումս յիւրեանս եւ երթեալ սպանին զԱմուղիոս եւ նստուցին միւսանգամ զՆումիտոր յաթոռ թագաւորութեանն։ Իսկ հաւն նոցա Նումիտոր վասն շնորհակալութեանն՝ ետ նոցա իշխանութիւն յայնմ վայրի ուր զհովուութեան կեանս կեցին՝ բնակել եւ շինել իւրեանց քաղաք։

Անդ առ Տիբերիս գետով եդին Ռոմուղոս եւ Ռեմոս եւ ընդ նոսա բազումք ի բնակչաց մօտաւոր կողմանցն զհիմն Հռոմ քաղաքի (753) զոր անուանէր Ռոմուղոս կից յիւր անունն՝ յորժամ յետ սակաւ ինչ միոյ զժտեալ ընդ եղբօր իւրում Ռեմայ վասն տէրութեանն՝ հար զնա եւ սպան եւ ինքն եկաց միայն տէր եւ իշխան քաղաքին (753—718)։

Վասն առաւարացուցանելոյ զբազմութիւն քաղաքացեացն յայտ արար Ռոմուղոս թէ քաղաքն իւր է տեղի ապաստանաց արանց փախստէից վասն որոցեւ պէտ իրաց. բայց ապա չգոյին կանայք ի միջի. խնդրեաց ծերակոյտն յազգացն արուարձանեաց, այլ ամենայն ուստեք մերժեցան արհամարհանօք պատգամաւորքն։ Յայնժամ խորհեցան Հռոմայեցիքն նենգութիւն եւ բռնութիւն ի կիր արկանել։ Կարգեցին հրապարակաւ խաղս կռուոյ ի պատիւ Նեպտունեայ, հրաւիրեցին ժողովեցին զբազումս յօտարաց. յայնմ վայրի իւրաքանչիւր յերիտասարդաց անտի հափափեցին մէն մի յաղջկանցն, իսկ հարք եւ մարք նոցա տրտմեալք եւ թաղծեալք դարձան ի փախուստ։

Թէպէտ եւ կամեցան ազգքն արուարձանեայք առնուլ պատերազմաւ զվրէժ թշնամանացն, այլ քանզի իւրաքանչիւր ազգ առանձինն ետ ընդ նոսա պատերազմ՝ խորտակեցան ամենքին, եւ Հռոմայեցիքն մեծացուցին զսահմանս իւրեանց ի քաղաքացն Կենինացւոց, Կրուստումիացւոց եւ Անտեմնատացւոց։ Առաւել մշտագին եւ դժուարին էր պատերազմն որ ընդ Սաբինացւոց էր, զոր յաղթեցին իսկ բազում անգամ զօրավարութեամբ թագաւորին իւրեանց Տատեայ, մինչեւ ի նեղ մեծ անկանել Հռոմայեցւոցն։

Իբրեւ այն ինչ կամէին մեծ ինչ պատերազմաւ բանալ՝ առնէին կանայքն զանձինս ի մէջ զօրացն մարտելոց եւ հաշտեցուցին զայրսն իւրեանց ընդ հարցն իւրեանց. այսպէս եղեն դաշինք խաղաղութեան ի միջի: Այսպիսի դաշամբք խառնեցան եղեն մի ժողովուրդ՝ Սաբինացիքն բնակեալք ի վերայ Կապիտոլեան բլրոյն ընդ Լատինացւոց բնակելոց ի Պաղատինեան բլրին եւ ընդ Էտրուսկացւոց բնակելոց ի Կելիոս բլրին. եւ սահմանեցաւ զի Տիտոս Տատիոս արքայ Սաբինացւոց ի Կուրէս քաղաքէ՝ թագաւորեսցէ միասին ընդ Ռոմուղեայ, եւ յետ նորա՝ ընտրեսցի փոխանակ մի անգամ լատինացի եւ միւս անգամ սաբինացի թագաւոր՝ ի ծերակուտէն ժողովելոյ ի գլխաւորաց ցեղիցն. եւ անուն եւս կոչելոց էր նոցա Կուիրիտեանք (ի Կուրէս քաղաքէ Սաբինացւոց):

Վասն նմանութեան քաղաքային եւ կրօնական յօրինուածոց երկուց կողմանցն՝ լինէր դիւրին ձուլել նոցա ի մի ժողովուրդ: Բայց Ռոմուղոս ցանկացող իշխանութեան՝ քանզի չկամէր ընդ բաժանեալ առաջնորդութիւնն, բարձ զՏատիոս ի միջոյ. այլ ինքն եւս յետ սակաւ ինչ ժամանակի դաւով սպանաւ ի ժամ մրրկի (718): Իսկ զժողովուրդն ցածուցին ի խռովութենէ կարծեցուցեալ թէ առ դիսն փոխեցաւ Ռոմուղոս, եւ թէ պարտ է դնել նմա պաշտօն իբրեւ աստուածոյ Կուիրինեայ:

**326**

Ընդստին յայսց ժամանակաց սկսան յօրինել ազգի ազգի բաժանմունք ժողովրդեանն:

1. Որպէս ի բնէ իսկ ի դէպ եւ պատշաճ էր՝ ի միաւորութենէ աստի երից ժողովրդոց ի մի հռոմէական ժողովուրդ՝ յօրինեալ կացին երեք բաժինք ժողովրդեան՝ որ անուանեալ կոչէին Ցեղք [1], այսինքն՝ լատինացի Հռամնայք [2], սաբինացի Տիտիայք [3] եւ էտրուսկացի Ղուկերք [4]: Իւրաքանչիւր Ցեղ ի ցեղից բաժանէր ի 10 Կուրիայս՝ [5] որք բազում ածուս կամ Տոհմս [6] ընդ իւրեամբք ունէին: Մ՛իայն որ յայսպիսի Տոհմից էին՝ [7] ունէին զիրաւունս կատարեալ քաղաքացւոյ եւ համարէին ի Պատրկացն [8] համարի: Գլխաւորն Ցեղի իւրիք անուանեալ կոչէր Ցեղապետ [9], իսկ գլխաւորն՝ Կուրիայ՝ Կուրիոն [10]: Արքն Կուրիայ՝ Կուրիականք [11] ունէին պաշտօն ինչ եւ իրաւունս առ միմեանս, առանձինն պաշտօն դիցապաշտութեան, եւ սրահ ժողովելոյ [12]: Որ ի միոջէ Տոհմէ էին՝ ունէին հասարակաց ինչ անուն տոհմի (որպէս Փաբիոս, Մետեղղոս, Կղաւդիոս)

1 Tribus.
2 Ramnes.
3 Tities.
4 Luceres.
5 Curia.
6 Gentes.
7 Gentilis.
8 Patricii.
9 Tribunus.
10 Curio.
11 Curiales.
12 Curia.

որ ձգէր եւ ի վերայ պաշտպանեաւորաց նոցա, իսկ վասն զանհատան ընտրելոյ՝ կոչէին յառաջադիր անուամբ (Գայիոս, Մարկոս, Տիտոս)։ Տոհմքն իւրաքանչիւր ունէին եւ աստուածս կամ դիւցազունս առանձինն՝ զորս հասարակաց զոհիւք յիւրեանց ի սեպհական նուիրական տեղիսն պատուէին, եւ դարձեալ՝ առանձինն տեղի գերեզմանաց։

2. Առընթեր այսպիսի ազատ քաղաքացեաց կային ի վաղ-ժամանակաց ի Հռոմ՝ որպէս եւ ի համօրէն Միջինն Իտալիա՝ կէս ազատք կամ Պաշտպանեաւորք՝ որք բաժանեալ իսկ էին իւրաքանչիւր Տոհմի. ի մէջ Տոհմիկացն կամ Պաշտպանչաց[1] եւ Պաշտպանեաւորաց նոցա՝ կային փոփոխ պարտիք եւ իրաւունք։ Պաշտպանչին մնայր յատենի խօսել փոխանակ պաշտպանեաւորին իւրոյ եւ լինել ջատագով գործոց եւ ընչից նորա. եւ ընդ այնր պաշտպանեաւորին անկ էր արծաթով լինել օգնական պաշտպանչին՝ եթէ դատապարտէր սա ի տուգանս կամ ձերբակալ լինէր ի պատերազմի ուրեք, երթալ ընդ նմա ի մարտ պատերազմի, եւ յայլ եւս նոյնպիսիս. յորժամ տայր նա զդստերսն արանց՝ անկ էր նմա տալ պաշտպանչին ընդ այնր տուրս։ Չէր համարձակ պաշտպանչին եւ պաշտպանեաւորին կալ միմեանց դատախազ կամ վկայ։ Իրաւունք Պաշտպանչութեանն անցանէր ժառանգութեամբ ի տանուտէր տանն[2]։

3. Սորոյն եւ զատ էին ի Պաշտպանեաւորաց սատի՝ Ռամիկքն[3] որք էին զառաջինն բնակիչք արուարձանեայ քաղաքաց նուաճելոց եւ խախտեալ փոխեալ էին ի Հռոմ. Թէպէտ եւ ազատ էին անձինք նոցա եւ ստացեալ ունէին փոքր ինչ ստացուածս, սակայն չունէին իրաւունս քաղաքացւոյ՝ որպէս պատրիկքն ունէին, ընդ որոց եւ ոչ ամուսնանալ իսկ կարէին։ — Նաց ի ստորանէ էին եւ Գերիք կամ Ծառայք եւ Ազատեալք[4]. Եթէ ազատութիւնն սոցա չլինէր հրապարակաւ՝ չառնոյր զիրաւունս ազատածնի[5], ապա թէ հրապարակաւ՝ յայնժամ մնայր յիրաւունս քաղաքացւոյ[6]։

4. Տէրութիւնն Հռոմայեցւոց կազմեալ էր ի Թագաւորէ, ի Ծերակուտէ, եւ ի Ժողովրդենէ[7] (այս ինքն ի համօրէն գումարութենէ պատրկաց)։ Իշխանութիւն Թագաւորին կախեալ էր ի կամաց Ծերակուտին եւ Ժողովրդեանն (ի ժողովսն) որ ընտրէինն իսկ զնա։ Իսկ եւ իսկ յետ ընտրութեանն առնոյր Թագաւորն նուիրումն քրմական[8], եւ յետ այնորիկ իշխէր իբրեւ Զօրավար[9] եւ վերին դատաւոր եւ կրէր զնշանս Թագաւորութեանն որ ածան յԷտրու-

1 Patroni.
2 Familia.
3 Plebei.
4 Liberti.
5 Ingenuus.
6 Civitas.
7 Populus.
8 Inauguratio.
9 Imperator.

քիւցւոյ: — Ծերակոյտն էր զառաջինն ժողով ինչ խորհրդեան[1] ընտրեալ ազատ կամօք Թագաւորին՝ որ եւ նստէր անդէն գահերէց, բայց պարտ էր նմա լսել զկարծիս ծերակուտին յամենայն իրս տէրութեանն: Ծերակոյտն իբրեւ Միայուն ինչ ատեան՝ էր հազորդ առաջնորդութեան տէրութեանն՝ մանաւանդ վճռոց խաղաղութեան եւ պատերազմի եւ օրէնսդրութեան: Թիւ սինկղիտիկոսացն առ Թագաւորօք յ200ոյ՝ յ300 փոխեցաւ: — Ժողովոց ժողովրդեանն[2] իրաւունք էին՝ ընտրութիւն Թագաւորին, ընդունելութիւն եւ բարձումն օրինաց, տալ վճիռ վասն խաղաղութեան եւ պատերազմի: Զհետ այսր առաջին բաժանման համօրէն բնակչաց քաղաքին՝ ի պատրիկս եւ ի ռամիկս՝ յետ ժամանակաց ի վերայ եկն որոշումն ըստ կարգաց՝ ի սինկղիտիկոսս, յասպետս (կամ հեծեալս) եւ ի ռամիկս: Առաջինքն երկոքին կրէին իբրեւ նշանակ որոշման՝ մատանի ոսկի եւ ի պարեգօտն[3] իւրեանց՝ կարեալ ծիրանի լայն՝ թէ սինկղիտիկոսք էին, եւ նեղ՝ եթէ ասպետք: Յայսմ հին կարգէ հեծելոց ելին կացին յետ ժամանակաց ի վերայ անցանելոյ՝ հեծեալքն կամ ասպետքն Հռոմայեցւոց մեծատունք՝ որք մաքսաւորքն[4]. իսկ կացին, եւ զհասարակաց ինչ շինուածս յանձն առնուին շինել միաբանութեամբ, եւ յետ Գրակքեանցն ընկալան եւ գործ դատաւորութեան:

## 327

Իսկ յետ մահուն Ռոմուղոսի ամս երկուս կռիւ էր Հռոմայեցւոց ընդ Սաբինացւոցն թէ յորմէ ազգէ կայցէ Թագաւորն, եւ ի նմին ժամանակի փոխանակաւ մի ոմն ի գլխաւորաց ցեղիցն վարէր զառաջնորդութիւնն, մինչեւ յետ ուստ ուրեմն ընտրէր Թագաւոր Նումա Պոմպիլիոս (716 — 679) փեսայ Տատեայ: Այրն խորհրդական եւ իմաստուն եւ խաղաղասէր հնարեցաւ զերկոսին կողմանսն ընդ միմեանս խառնել եւ դնել սանձ ժողովրդեան իւրում՝ կրօնիւք:

Նումա համարի առաջնորդ կրօնից տէրութեանն: Զի թէպէտ եւ վաղ իսկ գոյր այն առ Ռոմուղոսաւ, բայց Նումա փոյթ յանձին կալաւ շքեղ ինչ պաշտամունս դիցն հաստատել. շինեաց նա մեհեանս եւ բագինս, կացոյց ուխտ այլ եւ այլ կարգս քրմաց (ի դասուէ Պատրիկացն), տօնս բազումս եւ զոհս եւ շրջել հրապարակաւ եւ այլ եւս նոյնպիսիս: Նա եւ զգիր ժամանակաց եւ զտարեկանաց աղնուացոյց:

Իսկ վասն ուսուցանելոյ կանանց զզաստութիւն եւ զգուշութիւն՝ ընկալաւ նա զպաշտօն զգաստ դիցն Վեստայ նշանակաւ հրոյ, եւ կարգեաց ի պաշտօն եւ ի պահպանութիւն կրակին աղջկունս

1 Consilium. 2 Comitia. 3 Tunica. 4 Publicani.

հզօր որ ի մեծամեծ ևս պատիւս վայելէին, այլ միանգամայն բա-զում տոգաանք և պատիժք ի վերայ կային զերծելոցն: Ու Հա-սարակ ևս կրթեաց նա զազգն կանանց յամօթխածութիւն, ի զգաստութիւն և ի հաւատարմութիւն, և արդեամբք ևս յետ 230 ամաց ուրեմն եղև զառաջինն բաժանել առն ի կնոջէ: — Կարգելացն ևս զՖէտիալսն¹ որոց գործ այն էր՝ ծանուցանել զպատերազմունսն յօրժամ պատերազմք լինելոց էին, և կանգ-նելացն պատկերս Դից սահմանաց և հաւատարմութեան՝ արար յապահովս զիրաւունսն ազգաց և զստացուածս իւրաքանչիւր ուրուք. իսկ տօնքն Աստուածականաց սփոփանք իմն գերեաց լի-նէին: Վասն ցուցանելոյ մեծարոյ զօրէնսն իւր այսպէս իմն կար-ծեցոյց Նումա թէ վասն նոցին խօսակից լեալ իցէ ընդ Նիմփային Էգերիայ՝ որոյ անտառակն կայր ի Հարաւոյ Հռոմ քաղաքի:

Այսպէս մեծարոյ և պատուական երգոց Նումա զժողո-վուրդ իւր առաջի դրացեաց իւրոց, և հաստատեաց կեանս խա-ղաղութեան ի ժողովրդեանն. Հանգեան զէնք և սպառազէնք, մշակութիւն և արուեստ յառաջադէմ ընթանային: Ինքն մե-ռաւ ի պարարտ ծերութեան և սուգ առին վասն նորա ոչ Հռո-մայեցիք միայն, այլ և այլ ևս ազգք, և թաղեցաւ պատուով ի Յանիկուղոս լերինն: — Երկքին յաջորդ Թագաւորքն ընդար-ձակեցին զսահմանս փոքր քաղաքին, և ի վերայ առաջին երից բլրոցն (Պաղատինեայ, Կապիտողինեայ և Կեղիոսի) չորք ևս յաւելան (Աւենտինոս, Կուիրինաղիս, Վիմինաղիս և Էսկուի-ղինոս) յորոց Հռոմ Եւթնբլրեան քաղաքն կոչեցաւ:

## 328

Տուղղոս Ոստիլեոս (679—640) էր ամենևին աննման Նու-մայ. կարի յերկարաձիգ զխաղաղութիւնն համարեցաւ. նմին իրի վասն ոչ ինչ իրաց յայտ արար պատերազմ ի վերայ Ալբալոնգա քաղաքի: Դիմեցին հասին առ միմեանս ճակատքն երկոքին, և այն ինչ կամէին առնել սկիզբն պատերազմին՝ ի մէջ անցանէր Փուփփետիոս զօրավար Ալբալոնգայ և ասէ. արք ոմանք կռուի-ցին միայն ընդ միայն և այնու լիցի վճիռ թէ որ ազգ ընդ որոյ ազգի հնազանդութեամբ մնասցէ: Յանձն առ Տուղղոս և ընտրե-ցան պատերազմողքն:

Էին ի Հռոմայեցւոց անտի եղբարք երեք որ կոչեցան Ովրա-տեանք, և յԱլբալոնգայ նոյնպէս եղբարք երեք Կուրիատեանք: Ընկան երկուք յՈվրատեանցն, բայց երրորդն որոյ տակաւին չէր առեալ վէրս՝ յաղթեաց մի ըստ միոջէ երեցունցն Կուրիատեանց: Ալբանացիք մտին ի հարկէ ընդ իշխանութեամբն Հռոմայեցւոց,

1 Feciales.

բայց Փուփփետիոս խորհէր ի ծածուկ հանել յազատութիւն զԱլբանացիսն. գրգռէր զՖիդենացիս եւ զՎէյենցիս ի վե-րայ Հռոմայեցւոցն եւ խոստանայր ինքնին անցանել ի կողմն նոցա հանդերձ Ալբանացւովքն: Բայց Տուղղոս քաջութեամբն եւ զգուշութեամբ ընդունայն արար զամենայն խորհուրդս թշնա-մեացն. արար յաղթութիւն երեւելի ի վերայ դաշնաւորացն, ապա ետ սպանանել չարաչար եւ զնենգաւոր զօրավարն զՓուփփետիոս եւ զԱլբալոնգա քակել յատակաց. բնակիչքն նորին բնակել ի սահ-մանս Հռոմայ: Զորեքհարիւր ամք էին յորմէ հետէ հաստատեալ կայր քաղաքն այն պատուական՝ որ մայրն եւս լեալ էր քաղաքին Հռոմայեցւոց:

Զբաղեալ եւս Տուղղոս ի գործս պատերազմի մինչեւ յերկա-րագոյն ինչ հիւանդութիւն ի վերայ հասեալ՝ դարձոյց զնա առ-կաւելի ինչ ի հեզութիւն: Ասեն զնմանէ հանդերձ տամբն ի փայ-լատակմանց այրեալ (640):

## 329

Անկոս Մարտիոս (640—617) աշխուժական որդի դստերն Նու-մայ դարձոյց միւանգամ խաղաղութիւն յաշխարհն, եւ զդաշանց գիրսն որ առ Տուղղեաւ անփոյթ լեեալ էր, նորոգեաց. այսպէս ընթանայր նա ընդ ճանապարհ մօրեղբօր իւրոյ, բայց էր նա միան-գամայն եւ զօր պատերազմօղ եւ քաջ անհնարին:

Զի իբրեւ Լատինացիքն այսպէս եղին ի մտի թէ արդ ժամ է ասպերել ի ձեռաց Հռոմայեցւոցն եւ սկսան պատերազմ, յաղ-թեաց նոցա Անկոս, մանեաց մկանդեաց զքաղաքս ի քաղաքաց նոցա եւ խախտեալ տարաւ զբնակիչսն ի Հռոմ ի լեառն Աւեն-տինեան. ընդարձակեաց զսահմանս Հռոմայ՝ հասեալ երկիր ի Վէյիացւոց մինչեւ ցծովն, եւ շինեաց զնաւահանգիստն Ոստիայ առ բերանով Տիբերիս գետոյ: Ի Հռոմ խառնեաց զպալատն Յա-նիկուղոս սուրբեկեան կամրջաւն (որ էր առաջին կամուրջ) ընդ այլոց մասանց քաղաքին:

Սակայն մի խաղաղասէր եւ իմաստուն առաջնորդութեանն նորա էր ի Ղուկումոյ որդւոյ Դեմարատայ առն յունի՝ որ էր գաղթեալ ի Տարկուինեաց. իսկ Ղուկումոյ առ թագաւորու-թեամբն Անկոսի չուեալ ի Հռոմ հանդերձ կնաւ իւրով Տանա-կուիլաւ, եւ անդ ընչաւէտութեամբն եւ ընտանութեամբ եւ իմաստութեամբ եւ քաջութեամբ եղեւ ամենեցուն սիրելի, մին-չեւ ի մեռանել իւրում Անկոս կացոյց զնա խնամակալ երկուց որդւոց իւրոց: — Այլ յետ մահուն Անկեայ ինքն իսկ Ղուկումոյ մատոյց զանձն ի բարձ թագաւորութեան յանկուցեալ յինքն զծերակոյտ ժողովրդեանն, եւ անուանեցաւ Ղուկիոս Տարկուինիոս:

## 330

Դ. Տարկուինիոս Պրիսկոս (Երէցն, 617—578) հաստատեաց զիշխանութիւն իւր նուաճեալ զԼատինացիսն եւ կատարեալ յաղթութիւնս երեւելիս ի վերայ Սաբինացւոց եւ հզօր ազգին Էտրուսկացւոց:

Զմեծամեծ աւարն արկ Տարկուինիոս ի կիր ի զարդ եւ ի գեղեցկութիւն Հռոմ քաղաքի. փոխանակ խրամոյն՝ ած պարիսպ քարակոփ զքաղաքաւն՝ արկ զհիմն Կրկէսին մեծի (որ էր երկայն բոլորաձեւ ասպարէզ վասն արշաւեցուցանելոյ կառս եւ երիվարս) եւ զհոյակապ Կապիտողինին՝ զդղեկն մեհենին Արամազդայ ի կապիտողեան լերինն, եւ զառուսն աղբանոցաց եւ զգետնափոր կամարսն յօրինէր՝ ընդ որ ընթանայր աղտեղութիւն քաղաքին. կազմեաց եւ զՖորումն:

Տարկուինիոս սկսաւ նախ արկանել ի կիր զնշանակս թագաւորութեան (ըստ օրինի թագաւորացն Էտրուսկացւոց)՝ զաթոռն փղոսկրեայ, զերկոտասան նուիրակսն հանդերձ խրձամբք, կառս ոսկեզօծս լծեալս ի չորից եւ այլ եւս նոյնպիսիս: Եւ զծերակոյտն՝ որոյ թիւ 200 էր առ Ռոմուլոսիւ՝ յաւել եւ արար 300:

Սպանաւ Տարկուինիոս 80ամեայ (578) խրատու որդւոցն Անկեայ, քանզի ի միտ առին սոքա թէ կամի Տարկուինիոս տալ զթագաւորութիւնն՝ Սերուիոսի Տուղղիոսի փեսային իւրում, որ էր լատինացի յազգէ ի գերելոցն կամ թէ եկեալ հաստուած ի Տուսկիացւոց: Բայց իմաստութեամբն Տանակուիղայ՝ չհասին նոքա այնմ զոր խորհէին. զի ասէր Տանակուիղ ժողովրդեանն թէ կենդանի է տակաւին այր նորա եւ թէ զՍերուիոս կացոյց փոխանակ իւր մինչեւ ապաքինեսցի յախտէն. իսկ որդիքն Անկեայ գնացին փախըստեայ ի Հռոմայ:

## 331

Սերուիոս Տուղղիոս (578—534) մինչ դեռ տակաւին տեղապահն համարեալ էր՝ հաճոյ եղեւ ժողովրդեանն, մինչեւ յորժամ ծանուցաւ մահ թագաւորին ծերոյ՝ ընկալան զնա առանց իրիք հակառակութեան, թէպէտ եւ ոմանք գաղտ քրթմնջէին: Թագաւորեաց նա իմաստութեամբ եւ զՀռոմայեցիս արար գլուխ դաշնաւորութեան Լատինացւոց եւ այնպէս խաղաղութեամբ եւ սիրով շահեալ կալաւ զքաղաքսն Լատինի: Բանք դաշանցն փորեցան ի վերայ սեան ի մեհենին Անահտայ ի յոյն լեզու, եւ ժողովէին ամ ըստ ամէ պատգամաւորք քաղաքաց դաշնաւորութեանն ի նոյն մեհեան՝ զոր խորհրդովն Սերուիոսի շինեալ էին Լատինացիք խառն ընդ Հռոմայեցւոց անդէն ի Հռոմ քաղաքի՝ ի նշանակ միաբանութեան երկուց ազգացն եւ գլխաւոր լե-

նելոյ Հռովմայեցւոց : — Լինէր յայնմ հետէ եւ շինութիւն Վի-մինալեան եւ Եսկուիլինեան բլրոցն. եւ դահեկանս ի Հռոմ նախ նա եհան : Սա երկուս մեծամեծ յօրինուածս կարգէր : Նախ բաժանեաց նա զՌամիկն քաղաքին եւ արուարձանեայ տեղեաց ի 30 Ցեղս համդերձ իւրեանց սեպհական վերակացուօք եւ Ժողովովք[1] եւ կացոյց զսոսա իբրեւ դէմ ընդդէմ տոհմից Պատրիկացն եւ ժողովոց Կուրիայցն նոցա : Երկրորդ անգամ՝ զի բաժանեաց նա զամենայն բնակիչս տէրութեանն ըստ չափոյ ընչից իւրեանց[2] ի 5 Դասս[3] (յորոց առաջին Դասն՝ կոչէին Դասականք[4]) եւ զմի մի Դասն՝ զատեալ ի (193) Հարիւրաւորութիւնս[5]. եւ ըստ համեմատութեան այսր բաժանման էին եւ հարկքն եւ պաշտօն պատերազմի : Որքիմբք ընկալան մեծատունքն առաւելագոյն զօրութիւն՝ բայց միանգամայն եւ պարտս ծառայելոյ ի պատերազմի սպառազինութեամբ՝ անգատին յիւրեանց իսկ ծախուց եւ առանց վարձու : Միւս եւս վեցերորդ Դաս՝ անստացուածիցն[6] որք ազատ էին ի հարկաց եւ ի զինուորութենէ, բայց չունէին իշխանութիւն յիրս տէրութեանն : Կարգեաց նա տօն զոհից ըստ հնգից հնգից ամաց[7] յորում ամի լինէր աշխարհագիր եւ համար ընչից[8] : Ժողովք ըստ Հարիւրաւորութեանց համարէին բուն ճշմարիտ ժողովք ժողովրդեան :

Բայց այսպիսի փոփոխութեամբք՝ որովք ապաքէն դժերին էր տակաւ խառնել Ռամկին ընդ Պատրիկացն, ատելի եղեւ Տուղղիոս՝ Պատրիկաց, վասն որոյ եւ սպանաւ իսկ : Սերուիոս (որպէս պատմի) ջանացաւ զերկուս որդիսն Տարկուինեայ հաշտեցուցանել ընդ իւր՝ զերկուս դստերսն տուեալ նոցա կնութեան. բայց Լուկիոս որ վայրենագոյն էր բարուք՝ սպան զկին իւր զհեզն, իսկ Տուղղիա միւս եւս դուստր Տուղղեայ սպան զայր իւր զԱրունս զհեզն, եւ յետ այնորիկ զուգեցան ընդ միմեանս սպանողքն երկոքին նմանիք միմեանց : Զայս չհամարեալ բաւական՝ եղին նոքա ի մտի ընկենուլ զՍերուիոս ի թագաւորութենէ : Յարուցին ի ծերակուտէ անտի եւ ի ժողովրդենէ արս բազումս զրպարտութեամբք, կաշառօք եւ խոստմամբք ի վերայ թագաւորին : Եկն երեւեցաւ Լուկիոս Տարկուինիոս ի ծերակուտի անդ, նստաւ յաթոռն արքունի, եւ յորժամ մտանելն կամէր Սերուիոս ի ներքս, ընկէց զնա Լուկիոս ի քարակուռ աստիճանացն ի վայր եւ ետ սպանանել ամենեւին : Իսկ Տուղղիա ընթացաւ կառօք ի վերայ հօրն դիական՝ փութանակի հասանել տալ ի ծերակուտին ողջոյն առն իւրում :

1 Comitia tribus.
2 Census.
3 Classis.
4 Classici.
5 Centuria.
6 Proletarii, capite censi.
7 Lustrum.
8 Census.

## 332

Դ. Տարկուինիոս Սուպերբոս (Ամբարտաւանն, 534—509) իսկ եւ իսկ բառնայր զհաստատեալն ի Սերուիոսէ Տուլլեայ, եւ յետ յաղթութեանց տալոյ մարտ պատերազմի ընդ Լատինացւոց՝ առնելով զքաղաքն նոցա դնել դաշինս ընդ Հռոմայ, յորում քաղաքն Հռոմայեցւոց լինէր գլուխ քաղաքաց դաշնաւորութեանն Լատինացւոց։ Առնոյր մարտիւ պատերազմաւ եւ զմեծատուն քաղաքն Վոլսկացւոց զՍուեսսա Պոմետիա, եւ ջանայր ի ձեռն զաղթականութեանց զոր աստ անդ բնակեցուցանէր՝ տարածանել սփռել զիշխանութիւն Հռոմայեցւոց. քանզի այսպիսի գաղթականութեամբք ձգեալ տարածեալ առհասարակ ցեղն Լատինացի-Հռոմէական զլեզու իւր եւ զառհասարակն հանգամանս իւր ի վերայ համօրէն Իտալիոյ։ — Ստացաւ նա գնոց եւ զՍիբիլեան մատեանսն (գուշակածոյս հին ինչ պատգամաց) որ ի Կապիտոլինն եդան ի պահեստ, եւ բազում ինչ ազդեցութիւն ի վերայ պաշտամանց եւ քաղաքային կարգաց Հռոմայեցւոցն գործեցին։ Բաց ի բազում եւ ի մեծամեծ շինութեանց՝ հան նա ի գլուխ եւ զշինուած Կապիտոլինին՝ որ անկատարեալ հայէր ի դարաւանդաց ի խոնարհ ի վերայ Խորաձորոյ, եւ լինէր այն յետ այնորիկ տեղի պահեստի երեւելի երեւելի յիշատակարանաց տէրութեան եւ մեծագին ընծայից նուիրելոց, միջնակայր մեծամեծ գործոց եւ տօնից։

Բայց եւ սա սկսաւ լինել աւերիչ Պատրիկացն. քանզի յայն իմն ջանայր բազմութեամբ վարձկան զօրաց եւ դաշնաւորութեամբ արուարձանեայ քաղաքաց՝ զի բարձրացուսցէ զզօրութիւնն արքայական եւ զիւր զչափաւոր ընտրական թագաւորութիւն փոխեսցէ յանարգել եւ ի ժառանգական թագաւորութիւն։ Մանաւանդ զի որպէս բռնութեան իսկ գործովք զայլագոյն զծերակոյտն եւ զպատրիկան՝ նոյնպէս առաւել հարկօք նեղեաց զռամիկն. ապա սկսաւ բարբանջ կոտորել զայնպիսի զորոց կայր նորա կասկած ինչ ի միտս, նա եւ ոչ իւրոց ինչ ջերմոց զանդգայր։ Եղբօրորդի նորա Լուկիոս Յունիոս միայն մնաց կենդանի, զի անխօս պատճառեցաւ եւ յայն սակս իսկ Բրուտոս (անմիտ, անասուն) անուն առ։

Այլ յետոյ ուրեմն յորժամ Սեքստոս որդի Տարկուինեայ անկաւ ընդ Լուկրետիայ կնոջ հօրեղբօրորդւոյն իւրոյ Տարկուինեայ Կողղատինոսի, եւ Լուկրետիա չժուժեալ թշնամանաց ինքն զինքն սպան, զրգռեցաւ ապստամբութիւնն որ էր իսկ նիւթեալ ի բազում ժամանակաց հետէ. Բրուտոս որ անմիտն համարեալ էր՝ կոչեաց զազգն ամենայն ի վրէժխնդրութիւն եղեալ ի հրապարակ զդիակնն Լուկրետիայ, ինքն կայր գլուխ ապստամբութեանն եւ տայր առականել զդրունս Հռոմայ առաջի Տարկուինեայ։ Նա ջանացաւ թագաւորն բռնութեամբ կամ սիրով մտանել ի

ազնուականաց, եւ ի դէպ է թէ երկոքին ատելութիւնքն յետոյ ընդ միմեանս միաբանեցին հասարակաց իրաւամբք։ Իսկ անունդ եւ կեանք Ռոմուղոյ եւ Ռեմայ, եւ յափշտակութիւն դստերացն Սաբինացւոց առասպելք համարին։

Այլ եթէ հարկ իցէ զշինուած Հռոմ քաղաքին տալ ցեղին Կասկացւոց որք զՍիկիղիացիսն հնազանդեցին՝ իբրեւ հին բնակիչք կողմանցն այնոցիկ, գտանէ ոք թէ սկիզբն պատրիկացն լեալ իցէ ի 1000 կառկեան տանց հանդերձ 100 սենեկղիտիկոսօքն նոցա, եւ Կլիենտացիքն լեալ իցեն ռամիկքն կամ ժողովրդականք։ Միաբանելով ժողովրդեանն Լատինացւոց, այս ինքն ցեղին Ռամնեայց ընդ ցեղին Տիտեայց որ էին ի Սաբինացւոց ան-տի, հարկ եղեւ լինել կրկին թուոյ Կուրեայցն եւ Սենեկղիտիկոսացն։ Եւ իբրեւ յաւելաւ ի վերայ նոցա մեւս եւս ցեղ՝ Ղուկերքն թերեւս ի Տուսկիացւոց առհեալ, եղեն կացին այնուհետեւ 30 կուրիայք եւ 300 Սենեկղիտիկոսք։

Խնուի թէ յետ միաւորելոյ Հռոմայեցւոցն եւ Սաբինացւոց՝ կրկին իշխ լեալ իցէ թագաւորութիւնն ժամանակս ինչ. յետ այնորիկ փոխանակ աթոռակցութեանն՝ փոխանակաւ կացեալ իցեն թագաւորք յերկուց ազգացն։ Ի դէպ է թէ Ռոմուղոս առաջին (Ռամնացի) այնպէս հասարակաց երկուց ազգաց թագաւոր կացեալ իցէ։ Իսկ երկրորդն (Սաբինացի) հասարակաց թագաւոր՝ Նումա Պոմպիլիոս որ զպաշտամանս Լատինացւոցն եւ Սաբինացւոց եւ Եարուսկացւոց ի մի պաշտօն կրօնից ամփոփեալ կարգէր կրօնս Հռոմայեցւոց, եւ ետ հաստատել կարգաւն հաւատիւաց՝ որք ամենայն օրինաց եւ վճռոց եւ գործոց ակրութեանն նուիրական իշխ սրբութիւն շնորհէին։ Երրորդ հասարակաց (Ռամնացի) թագաւոր կայր Տուղղոս Ոստիղիոս որ առկ ի ներ զԱղբալոնգա. իսկ Անկոս Մարտիոս է դարձեալ ի Սաբինացւոց եւ նովաւ առ վախճան առաջին ժամանակի թագաւորութեան Հռոմայ, յորում փոխանակաւ յերկուց ազգաց կային թագաւորք, այնպէս զի զօրավորութեանն գործք մնացեալ ի լատինացի թագաւորսն երեւին, իսկ քրմապետութեանն՝ ի թագաւորսն սաբինացիս։ Երեք յետին թագաւորք ի Տուսկիացւոց ան-տի են, եւ կամ առաւելագոյն իշխ ունէին կցորդութիւն եւ հաղորդութիւն ընդ Տուսկիացւոցն. սոցա գործք այս ինքն շինուածք մեծամեծք եւ հոյակապք ամենեքին այլ իշխ նշմարանս կամ կերպարանս երեւեցուցանեն քան զգործս թագաւորացն առաջնոց։

## Բ

Հռոմ ի հասարակապետութեան ժամանակս. — Ներքին խռովութիւնք. — Արտաքին պատերազմունք. (510 — 133)։

## 334

Բայց սակայն ի վերայ նորոց ընկերհաշտութեանն Հռոմայեցւոց կայր մեայր պատերազմ հակառակութեան եւ ներքուստ եւ արտաքուստ։ Որդիք մեծամեծ պատրկացն ի Հռոմ առ դուլթ-բարեկեցութեանն զոր վայելէին յաքսորինսն Տարկուինեայ՝ եկին ի կողմն նորա։ Ընդ սոսա անկանէին գաղտ ի պատգամս արտաքինքն զի զՏարկուինիոս փրկեսցեն։ Այլ խորհուրդ դաւաճանութեան նոցա դուշակեցաւ (ի ձեռն գերւոյ թաքուցելոյ ի սրահի անդ

ժողովոյ նոցա), եւ որ յանցաւորն գտան՝ սատակեցան, եւ Բրուտոս դատապարտեաց ընդ նոսա եւ զերկուսին որդիս, եւ առ ոչ ինչ զհայրենի գութն համարեցաւ վասն հայրենեացն սիրոյ։ Կոլատինոս որ ոչ այնպէս հակառակ Տարկուինեայ երեւէր՝ աքսորեցաւ վտարանդի։

Ամրացաւ եւ առ հասարակութիւն կարգն նոր խառնեալ ի թիւ պատրկացն եւ ի ծերակոյտ անդր զերեւելիս երեւելիս ի ռամկաց ոգիս իբրեւ 300, եւ բաշխեալ զինչս թագաւորին ի մէջ քաղաքացեացն տնանկաց. եւ այս յայն սակս մանաւանդ պիտոյ էր, քանզի Տարկուինիոս յայտնի իսկ պատրաստութեամբ ճակատու կամէր գալ հասանել ի վերայ Հռոմայ։

Նախ նորին որդի Արունս մեռաւ ի սահմանս Հռոմայեցւոցն ընդ Վէյիացւոց եւ ընդ Տարկուինեանցն, այլ յԱրունս անտառին ի պարտութիւն մատնեալ անկանէր, բայց սակայն եւ Բրուտոս որ ի ճակատու անդ էր՝ անկաւ, հարեալ զմիմեանս Արունսայ եւ Բրուտեայ։ — Ապա Պորսենա արքայ կամ իշխան¹ Կղուսեան քաղաքի Էտրուսկացւոց յարդել արկեալ նեղէր զքաղաքն Հռոմայեցւոց բազմամբ գնդաւ, եւ առնոյր իսկ քաջ քաջ զքաղաքն եթէ Հորատիոս Կոկղէս չէր ի մէջն, քանզի սա միայն առանձինն երկու ընկերօք զրաւեաց կալաւ զեզր կամրջին, եւ իբրեւ կործեցաւ յետուստ նորա կամուրջն՝ անցեալ ի լող ընդ գետն Տիբերիս ի Հռոմ հասանէր։ — Այլ իբրեւ սովն ի քաղաքին սաստկացաւ՝ չոգաւ Մուկիոս ի բանակ թշնամեացն, զի զՊորսենա սպանեալ ազատեսցէ զՀռոմ. այլ փոխանակ Պորսենայ՝ հար սպան զնորին գաղտնեաց դպիր. իբրեւ ըմբռնեցաւ եւ սպառնային նմա սպանումն՝ եւ նա ինքնին զիւր ձեռն կարկառեալ ի խարոյկն եւ խանձատեալ՝ արհամարհէր իմն զմահն. զարմացաւ ընդ քաջութիւն առնն Հռոմայեցւոյն՝ Պորսենա, եւ եդ ընդ նոսա դաշինս խաղաղութեան. իսկ Մուկիոս առ անուն Սկեւոլա (ահեկեան). (509 — 508)։

Այլ այն իսկ զի ի գիրս դաշանց վաճառականութեան (509) Հռոմայեցւոց ընդ Կարքեդոնացւոց, Յունիոս Բրուտոս եւ Մարկոս Հորատիոս յիշատակին իբրեւ առաջին հիւպատք (պրետորք), արկանէ ընդ կասկածանօք զդէպս ինչ ի դիպաց պատմութեանս։ — Նմին իրի՝ ըստ յետնագոյն՝ բայց ըստ առաւել ճշգրտագոյն պատմութեան՝ առ Պորսենա զքաղաքն (բաց ի Կապիտոլինէ) եւ հաւանեցաւ դնել դաշինս խաղաղութեան ընդ Հռոմայեցւոցն այսպիսի ինչ օրինօք զի զերրորդ մասն երկրին թողցեն ի բաց եւ տացեն պատանդս յազնուականաց։

Այլ տակաւին չհանդարտէր Տարկուինիոս, եւ ազգս բազումս մի ըստ միոջէ ի մարտ պատերազմի ընդ Հռոմայեցւոց գրգռէր եւ

1 Lucumo.

յետոյ ուրեմն զԼատինացիսն կապէր ընդ իւր դաշնաւորութեամբ. Մինչեւ այսպէս ուրեմն առ Ռեգիլլոս ծովակաւ ահագին եւ սաստկագին պատերազմ Հռոմայեցւոց ընդ դաշնաւոր քաղաքացն Լատինացւոց զրգռեալ՝ յաղթեաց Հռոմայեցւոցն քաջութիւն. Երկու որդիք յորդւոց Տարկուինեայ անկան ի ճակատուն, իննսնամեայ անզաւակ ծերունին ի Կումս Կամպանացւոց փախստեայ անկանէր, ուր վախճանէր յետ սակաւ ինչ ժամանակի ի վերայ անցանելոյ: Այսպէս եւ ի գլուխ պարծանօք արտաքին պատերազմն ազատութեան յետ 14 ամաց (495): Յետ երից ամաց եղեն դաշինք Հռոմայեցւոց ընդ Լատինացւոց, յորս շնորհեցաւ Լատինացւոց լինել հաւասարս եւ հանդիսապատիւս ընդ Հռոմայեցւոց (493):

Ընդարձակ անդքն Տարկուինեայ որ առ Տիբերիս գետով էին՝ նուիրեցան դիցն պատերազմի եւ կոչեցաւ Մարտեան դաշտ[1] զոր ոչ վարէին մշակութեամբ, այլ կատարէին անդէն հրահանգս զինուց եւ լինէին ժողովք ժողովրդեան:

Ի ժամանակս պատերազմացն այնոցիկ եւ վասն առնլոյ զառաջս ձեռնասակար իշխանութեան ռամկին եւ մասամբ իսկ զպակասութիւն թագաւորութեան լնուլ՝ կարգեցաւ իշխանութիւն Դիկտատորացն, որ սովորական իսկ իշխանութիւն էր ի քաղաքսն Լատինացւոց: Ընտրեալ ի ժամանակի արտաքին կամ ներքին իրիք տագնապի կամ աղէտից ի վերայ հասելոց՝ յանձն լինէր իշխանութիւն վերագոյն քան զամենայն իշխանութիւն միում ումեք զամիս վեց եւ կոչէր նա Դիկտատոր. եւ էին օգնական իշխանութեան նորա 24 նուիրակք, եւ կարգէր նա ընդ իւրով իշխանութեամբ եւ Զօրավար մի հեծելոց[2]. առաջին Դիկտատոր եղեւ Տիտոս Լարտիոս Փլաւոս (յամի իբրեւ 500):

## 335

Ի ժամանակի այսոց պատերազմաց ազատութեան օգնական լինէր ռամիկն պատրիկացն՝ յամենայն զօրութենէ իւրմէ, եւ ընդ այնր պատրիկք բազում անգամ խոստանային դիւրութիւն պարտուց նոցա, եւ հիւպատոսն Վալերիոս Պուպլիկոլա (սիրող ժողովրդեան) եւս կարգեաց օրէնս ինչ շահաւորս ռամկացն: Այլ իսկ եւ իսկ իբրեւ զատ եղեւ պատերազմացն յետ մահուն Տարկուինեայ (495) չհայեցան պատրիկք յօրէնսն յայնոսիկ եւ ի խոստմունսն, եւ առանց խնայութեան կամէին կացուցանել զիրաւունսն իւրեանց: Պարտաւոր էր ռամիկն իբրեւ ստացիչ սեպհական ընչից՝ տալ հարկս վասն զինուց եւ զինուորել առանց վարձուց: Բայց ի չաջողելոյ եւս հնձոց՝ առաւելագոյն աղքատացաւ ժողովուրդն, նմին իրի առնոյին փոխ ի պատրիկացն՝ որք միայն էին ստացիչք հասարակաց երկրին: Եթէ ռամիկ ոք չվճարէր հատուցանել ի ժա-

1 Campus Martius. 2 Magister equitum.

մուն զինուորդին (10—12 առ. հարիւր), անկանէր ընդ իշխանու-թեամբ պարտատեառն ամենայն գոյք եւ անձամբ իսկ՝ երբեմն նորա ծառայ։ Երբեմն սաստկացաւ այս նեղութիւն եւ չգտանէին օրէնք ինչ ի միջի պաշտպանելոյ պարտապաններին ի ձեռաց պարտա-տեառնն, մինչ դեռ տակաւին արտաքոյ քաղաքին էր զօրն՝ յայնժամ 18,000 ի ռամկէն որ տաժանեալ էին ի մարտս պատե-րազմի՝ ապստամբեցին, եւ առաջնորդեալ ի Սիկինիոսէ Բեղղուտեայ՝ ելին ի բլուր մի որ Նուիրական լեառնն կոչէր առ Անիան գե-տով 12 ժամուք հեռի ի Հռոմայ՝ ի մտի եդեալ այլ քաղաք նոր շինել անդէն, եւ էին անդ չորս ամիս՝ կերակրեալ ի ծախուց մեծատանցն որոց կալուածք գոյին։ Այնուհետեւ երկեւղ եւ տրտմութիւն շահեալ տիրէր ամենայն ուրեք ի քաղաքին, եւ ապա ուրեմն առաքեցին աւագս ի լեառնն ածել զժողո-վուրդն ի հաւան զի դարձցին այսրէն ի քաղաքն։

Յաջողեցաւ հաւանեցուցանել զնոսա Մենենիոսի Ագրիպպայ առակաւ անդամոց ընդ որովայնի կռուելոյ, ցուցեալ զնոսա սոյն-պիսի երկպառակութեամբ, խոստացեալ թողուլ ժողովրդեանն զպարտսն (իսկ ըստ այլոց՝ շնորհեալ ազատութիւն անձանց նոցա ի բանտից), եւ զի կացցեն ատեանապահք տարեւորք ի միջոյ նոցա, որք էին յառաջնումն երկու միայն, ապա եղեն հինգ (յետոյ 30) զորս հազարապետս կամ ցեղապետս[1] կոչէին։ Չէր ոք իշխան միտել ձեռն ի նոսա, եւ էր նոցա իշխանութիւն՝ Արգելումն[2] բա-նիւ առնել դատարկ զվճիռ ծերակուտին. այսպիսիք նոցա հա-մարեալ էին անձինք սրբազանք։ Կարգեցան եւ երկու Ռամկաց Շինուածապետք[3], որոց գործ այն էր վասն ամբարաց եւ գնոց ցորենոյ ունել փոյթ յանձին, զի մի վաշխք եւ ծանրագնութիւն յաճախեսցի (493)։

## 336

Այնուհետեւ սկիզբն առնոյր երկայնժամանակեան հակառա-կութիւնն պատրկաց ընդ Ռամկացն որ յերկարեալ բաւէր դարս երկուս, եւ յետոյ ուրեմն յաղթէին Ռամիկքն։

Սկիզբն հակառակութեանն առիթ եղեւ որ էր յանփոյթ առ-նելոյ ժողովրդեանն զվար երկրին ի ժամանակի անդ խռովութեանցն. հարկ էր զցորեանն տալ ածել ի Սիկիլիայ։ Բայց իբրեւ խնդիր ինչ լինէր ի ծերակուտի անդ թէ որպէս կամ զիա՞րդ պարտ իցէ զցորեանն բաշխել, յայնժամ Մարկիոս ոմն երիտասարդ եւ սաստիկ բարուք՝ որ վասն զԿորիոլիս զքաղաք գլխաւոր Վոլսկա-ցւոցն կործանելոյ՝ Կորիոլանոս կոչէր, պահանջէր իբրեւ պայման շնորհմանն զի բարձցէ միանգամ ժողովուրդն զհազարապետսն որ ճոխացեալ ինչ էին. սկսաւ ընդ ռամկացն շինուածապետաց

1 Tribunus. 2 Veto. 3 Aediles.

իբրեւ իւրեանց ստացուած եւ տային գործել պաշտպանելոցն իւրեանց եւ ծառայից, եւ ոչ այնպէս ճշգիւ տային զտասանորդսն: Յայն սակս ռամիկն՝ որ փոքր ինչ միայն ազատ կալուածս ունէր, խնդրէր երբեք երբեք Օրէնս ագարակաց՝ [1] որովք տացի նոցա մասն մի հասարակաց երկրին զի վարեսցին նովաւ: Բայց քանիցս անգամ թէ ի մէջ գայր այն խնդիր՝ ընդդէմ դառնային պատրիկքն մեծաւ սաստկութեամբ: Եւ գործ զգուշութեան համարեցան տապանանել զհիւպատոսն Կասիոս, որ յաղթութեամբ մեծացեալ յառաջ զգանս իւր յորժամ զերկիր ինչ զոր ի Հեռնիկեցւոց թափեալ էին՝ ետ բաժանել ի մէջ պատրիկացն եւ ռամկաց. քանզի յետ կատարելոյ ամի հիւպատոսութեան նորա՝ առին տարան զնա բարկութեամբ պատրիկք եւ մեծաւ անիծիւք արկին զահավէժ ի Տարպէական վիմաց Կապիտոլինին. եւ տեղի տանն նորա մնաց անապատ: Եւ իբրեւ յետ ամաց ինչ ոմն ի հազարապետաց ժողովրդեանն ամբաստան լինէր զհիւպատոսացն թէ ոչ կատարեն ճշգիւ զԿասիական Օրէնսն (այս ինքն՝ զառաջարկութիւնն օրինաց)՝ գտաւ սպանեալ ի տան իւրում յառաջ քան զօր դատաստանին:

Եւ իբրեւ հասին ի վերայ օրէնք Պուբլեայի Վոլերոնի թէ ընտրութիւն հազարապետաց ժողովրդեան եւ շինուածապետաց նոցա միայն ի ռամկաց անտի ի ժողովս ցեղիցն ընտրեսցի վճռովք ռամկին[2], եւ ոչ ի ժողովս հարիւրաւորացն որպէս ցայնժամ լինէր (472), այնուհետեւ բաժանեցաւ ժողովուրդն Հռոմայեցւոց ի քաղաքի անդ իբրեւ յերկուս բանակս հակառակս միմեանց:

Անդէն այլ եւս հակառակութիւն բուսանէր: Պաշտօն դատաւորութեանն որ ըստ անգիր իրաւանց սովորութեան եւ աւանդութեան կատարէր՝ կայր մնայր միշտ ի ձեռս պատրիկացն՝ որք ըստ իւրեանց կարծեաց եւ բազում անգամ ըստ յօժարութեան կամաց իւրեանց վճարէին զատենայսն: Այս ուրեմն վասն առնելոյ զառաջս այնպիսի ինքնակամ գործոց եւ տեառնելոյ զընթացս իրաւանցն՝ կամեցան ռամիկքն ունել օրէնս գրով՝ որպէս առաջին արկանէր Տերենտիղոս Արսա (460). բայց պատրիկքն դառնային ընդդէմ բազում ժամանակս, այնու զի իրաւունք ցեղին իւրեանց նովին նուաղելոց էին: Անհնարին եւս սաստկացաւ հակառակութիւն եւ ատելութիւնն վասն իրացս այսոցիկ:

Ի սաստկանալ խռովութեանց վասն տերենտիղեան օրինացն այնորիկ՝ հարկ լինէր զհայր նորա զԿինկինատոս կոչել ի հիւպատոսութիւն. որ առաքեցանն ի ծերակուտէն՝ գտին զնա մաճ ի ձեռին ի փոքր անդի իւրում յայնկոյս Տիբերեայ: Հաստատեաց սա զխաղաղութիւն ի Հռոմ ոչ միայն զօրութեամբ այլ եւ իմաստութեամբ կարճեալ զժպրհութիւն հազարապետաց ժողովրդեանն, մինչեւ ի կատարել ամին իւրոյ (458) հաստատել եւս զնա կա-

1 Lex agraria. 2 Plebiscita.

մեր ժողովուրդն ի հիւպատոսութեանն, զոր հաստատեալ էր ար-գելք եւ ծերակուտին, թէ ոչ կինքն Կինկիննատոս աստակութեամբ դատնայր ընդդէմ:

Այլ յետ սակաւ ինչ միոյ հարկ լինէր կոչել զնա միւսանգամ յանդորր անուանի խաբեալ ի դիկտատորութիւն: Մինուկիոս հիւպատոս (456) գնաց ի վերայ Էկուացւոց ի պատերազմ. որքա պաշարեցին զնա ի մէջ երկուց լերանց, ուր կամ ի սովոյ եւ կամ ի սրոյ պարտ էր մեռանել. եհաս գոյժ ի Հռոմ եւ խռովեցաւ քաղաքն: Այլ գնաց Կինկիննատոս, եհաս յանկարծ ի վերայ, եւ գոչել ամենայն զօրացն, զի ամբողջ լեռն դարուսս նոցա պաշարեսցեն, սա առանի եւ նոքա անուն պաշարեցին զթշնամիսն: Ի պարտութիւն մտանեն Էկուացիք, եւ անցոյց զնոսա մի մի ընդ լծով (երկու նիզակք փարատեալք ի գետնի եւ ծայրք նոցա ի վերուստ կից ի միմեանս, նշանակ վերջին խոկ ստրկութեան): Բաշխեաց զաւարն զօրական-նին, եւ ինքն առանց հատուցման եւ փարձոց յետ 16 աւուրց դիկտատորութեան իւրոյ՝ դարձաւ ի խուղ իւր:

Դարձուցին զնա անուն երրորդ անգամ, քանզի միւսանգամ Սաբինացիք հաներ էին առաջնորդութեամբ Հերդոնիոսի ու-րումն առաջին պարապայ քաղաքին եւ առեալ ի բուռն զԿապի-տոլիոնն, բայց եւ ժողովուրդն չառնոյր յանձն երթալ ի պա-տերազմ: Եկեղեց եւ դիկտատորն Կինկիննատոս յաջողութեամբ զամենայն յաղթարեալ՝ մերժէր զթշնամիսն յաշխարհէն, սակայն եւ ծերակուտն եւս յանձն առեալ հաւանէր պայմանի ժողովր-դեանն, հինգ չափ յաւելուլ զթիւ հազարապետացն եւ առ նոցա իշխանութիւն կոչելոյ զհիւպատոսն ի դատաստան եւ զծե-րակուտն ժողովելոյ (457):

338

Նորա ուրեմն հաւանեցան պատրիկք եւ օրինացն Տերենտի-լեայ (յետ իբր 35 ամաց). արք երեք ի մինկղեսպանաց չոքան յաշ-խարհն Յունաց ի քաղաքն Աթենացւոց բերել օրէնս. այլ հա-ւանականագոյն եւս է թէ ի Մեծ Յունս առաքեալ իցեն (քանզի ոչ յօրէնսն իսկ կան նշանակք ազգակցութեան, եւ ոչ մատե-նագիր ոք ի Յունաց յիշէ). եւ դարձան յետ երկուց ամաց (454—452): Ընտրեցան կացին տասն պատրիկք յորոց մի ոք փո-խանակաւ աւուր աւուր կայր գլխաւոր եւ երկոտասան նախարարք առ նմա, եւ գործ յանձն եղեւ նոցա յօրինել պատշաճ պատշաճ օրէնս, եւ տուաւ նոցա իշխանութիւն առձակ, դադարեալ առ ժամն իշխանութեան հիւպատոսացն եւ հազարապետաց ժողովր-դեան: Զոր ինչ աշխատութեամբ շահեալ եւ առեալ էին՝ դրոշմեցին ի (10) տախտակս եւ եղին հրապարակաւ զի ամենեքին ուսանիցեն զնոցանէ դատաստան (451), եւ իբրեւ ինչ ինչ պակաս

իբրեւ իւրեանց ստացուած եւ տային գործել պաշտպանուողաց իւրեանց եւ ծառայից, եւ ոչ այնպէս ճշգրիւ տային զտասանորդսն։ Այն սակս ռամիկն՝ որ փոքր ինչ միայն ագարակ կալուածս ունէր, խնդրէր երբեք երբեք Օրէնս ագարակաց՝ [1] որովք տացի նոցա մասն մի հասարակաց երկրին զի վարեսցեն նովաւ։ Բայց քանիցս անգամ թէ ի մէջ գայր այն խնդիր՝ ընդդէմ գտանէին պատրիկքն մեծաւ սաստկութեամբ։ Նոյն գործ զգուշութեան համարեցան սպանանել զհիւպատոսն Կասիոս, որ յաջողութեամբ մտացն յառաջ զգանս իւր յորժամ զերկիր ինչ՝ զոր ի Հեռնիկեցւոց թափեալ էին՝ եւս բաժանել ի մէջ պատրիկացն եւ ռամկաց. քանզի յետ կատարելոյ ամի հիւպատոսութեան նորա՝ առին տարան զնա բամբասութեամբ պատրիկք եւ մեծաւ անիծիւք արկին զահավէժ ի Տարպէական վիմէն Կապիտողինին. եւ տեղի տանն նորա մնաց անապատ։ Նոյն իբրեւ յետ ամաց ինչ ոմն ի հասարակապետաց ժողովրդեանն ամբաստան լինէր զհիւպատոսացն թէ ոչ կատարեն ճշգրիւ զԿասիական Օրէնսն (այս ինքն՝ զգաւառակութիւնն օրինաց)՝ գտանեալ ի տան իւրում յառաջ քան զօր դատաստանին։

Նոյն իբրեւ հասին ի վերայ օրէնք Պուբլիոսի Վոլերոնի թէ ընտրութիւն հասարակապետաց ժողովրդեան եւ շինուածապետաց նոցա միայն ի ռամկաց անտի ի ժողովս ցեղիցն ընտրեսցի վճռովք ռամկին[2], եւ ոչ ի ժողովս հարիւրաւորացն որպէս ցայնժամ լինէր (472), այնուհետեւ բաժանեցաւ ժողովուրդն Հռովմայեցւոց ի քաղաքի անդ իբրեւ յերկուս բանակս հակառակս միմեանց։

Ընդէն այլ իմն հակառակութիւն բուսանէր։ Պաշտօն դատաւորութեանն որ ըստ անգիր իրաւանց սովորութեան եւ աւանդութեան կատարէր՝ կայր մնայր միշտ ի ձեռս պատրիկացն՝ որք ըստ իւրեանց կարծեաց եւ բազում անգամ ըստ յօժարութեան կամաց իւրեանց վճարէին զամենայն։ Ըստ ուրեմն վասն առնլոյ զառաջս այնպիսի ինքնակամ գործոց եւ տեսանելոյ զընթացս իրաւանցն՝ կամեցան ռամիկքն ունել օրէնս գրով՝ որպէս առաջի արկանէր Տերենտիղոս Արսա (460). բայց պատրիկքն դառնային ընդդէմ բազում ժամանակս, այնու զի իրաւունք ցեղին իւրեանց նոցին նուաճելոց էին։ Ընդհանուրն իմն սաստկացաւ հակառակութիւն եւ անհլութիւնն վասն խնդրոյս այսորիկ։

Ի սաստկանալ խռովութեանց վասն տերենտիղեան օրինացն այնորիկ՝ հարկ լինէր զհայր նորա զԿինկինատոս կոչել ի հիւպատոսութիւն. որ առաքեցանն ի ծերակուտէն՝ գտին զնա մաճ ի ձեռին ի փոքր անդի իւրում յայնկոյս Տիբերիայ։ Հաստատեաց սա զխաղաղութիւն ի Հռոմ ոչ միայն զօրութեամբ այլ եւ իմաստութեամբ կարծեալ զժպրհութիւն հասարակապետաց ժողովրդեանն, մինչեւ ի կատարել ամին իւրոյ (458) հաստատել իմն զնա կա-

1 Lex agraria.    2 Plebiscita.

մեր ժողովուրդն ի հիւպատոսութեանն, զոր հաստատեալ էր սո-վորք եւ ծերակուտին, թէ ոչ ինքն Կինկինատոս առաւելութեամբ զատնոյր ընդդէմ ։

Նոյն յետ սակաւ ինչ միոյ հարկ լինէր կոչել զնա միւսանգամ յանողոյ անուանի խաբէ ի դիկտատորութիւն ։ Մինուկիոս հիւպատոս (456) գնաց ի վերայ Եկուացւոց ի պատերազմ. առաջս պաշարեցին զնա ի մէջ երկուց լերանց, ուր կամ ի սովոյ եւ կամ ի սրոյ պարտ էր մեռանել. եհաս դոյժ ի Հռոմ եւ խռովեցաւ քաղաքն ։ Եւ գնաց Կինկինատոս, եհաս յանկարծ ի վերայ, եւ գոչել ամենայն զօրացն, զի ազդ լիցի զալուստ նոցա պաշարելոցն, առ սաստ եւ նոքա անտի պաշարեցին զթշնամիսն ։ Ի պարտութիւն մատնեցան Եկուացիք, եւ անցուց զնոսա մի մի ընդ լծով (երկու նիզակք փակեալք ի գետնին եւ ծայրք նոցա ի վերուստ կից ի միմեանս, նշանակ վերջին խոր ստրկութեան) ։ Բաշխեաց զաւարն զօրակա-նացն, եւ ինքն առանց հատուցման եւ փառաց յետ 16 աւուրց դիկտատորութեան իւրոյ՝ դարձաւ ի խուղ իւր ։

Դարձուցին զնա անտի երրորդ անգամ, քանզի միւսանգամ Սաբինացիք հաւեալ էին առաջնորդութեամբ Հերդոնիոսի ու-բումն առաջի տապարագ քաղաքին եւ առեալ ի բուռն զԿապի-տոլիոնն, բայց եւ ժողովուրդն չառնոյր յանձն երթալ ի պա-տերազմ ։ Եւ եկեալ եւ դիկտատորն Կինկինատոս յաջողութեամբ զամենայն յարդարեալ՝ մերժէր զթշնամիսն յաշխարհէն, ապա եւ ծերակոյտն եւս յանձն առեալ հաւանէր պայմանի ժողովըր-դեանն, հնգից չափ յաւելուլ զթիւ հազարապետացն եւ տալ նոցա իշխանութիւն կոչելոյ զհիւպատոսն ի դատաստան եւ զծե-րակուտին ժողովելոյ (457) ։

## 338

Նոյն ուրեմն հասանելոյն պատգամք եւ օրինացն Տերենտի-լեայ (յետ իբր 35 ամաց). առք երեք ի սենեկտորիկոսաց չոքան յաշ-խարհն Յունաց ի քաղաքն Աթենացւոց բերել օրէնս. այլ հա-ւանականագոյն եւս է թէ ի Մեծ Յոյնս առաքեալ իցեն (քանզի ոչ յօրէնսն իսկ կան նշանագիրք ազգակցութեան, եւ ոչ մատե-նագիր ոք ի Յունաց յիշէ). եւ դարձան յետ երկուց ամաց (454—452) ։ Ընտրեցան կացին տասն պատրիկք յորոց մի ոք փո-խանակաւ աւուր աւուր կայր գլխաւոր եւ երկոտասան նաւիրակք առ նմա, եւ գործ յանձն եղեւ նոցա յօրինել պատեհ պատեհ օրէնս, եւ տուաւ նոցա իշխանութիւն արձակ, դադարեալ առ ժամն իշխանութեան հիւպատոսացն եւ հազարապետաց ժողովըր-դեան ։ Զոր ինչ աշխատութեամբ շահեալ եւ առեալ էին՝ դրոշմեցին ի (10) տախտակս եւ եդին հրապարակաւ զի ամենեքին տեսցեն զնոցանէ զատաստան (451), եւ իբրեւ ինչ ինչ պակաս

տերաց խուլից՝ մնեաց զանուակ ի սկիզբ ամբոխման եւ այնի զնա տա-պատառ. անտի ընթացաւ մարտիկքն երկրորդ այս Բրուտոս ընդ մէջ քաղաքին կոչել զամենեսին յազատութիւն, մինչեւ եհաս ի զօրսն. ապստամբեցին զօրքն ի զօրավարաց իւրեանց, ծերակոյտն զոր ժողովեալ էր յայնժամ Ապպիոս զի պաշտպան նմա լինիցին՝ բանագնաց եղեւ առ զօրսն՝ հաստատել միաբանական զառաջինն օրի-նաւոր առաջնորդութեանն. ուրախութեամբ ընկալան զօրքն եւ ժո-ղովուրդն զբան ծերակուտին, մերժեցան այրքն տասնեքին յիշխա-նութենէ իւրեանց (449)։ Ապա ընտրեցան միւսանգամ 10 հա-զարապետքն ժողովրդեան եւ 2 պրետորքն կամ հիւպատք։ Իսկ Ապպիոս Կղաւդիոս անձին սպան ի բանտի, սպանաւ ընկեր նորա Ոպպիոս, այլքն աքսորեցան մշտնջենաւոր։ Բայց օրէնք երկոտա-սան տախտակացն մնացին ի հաստ եւ ի զօրութեան։

## 339

Բայց եւ ոչ զրկեալ օրէնսդրութեամբ եղեւ խաղաղութիւնն ցանկացեալ. քանզի որպէս յառաջին նախնեաց եւ յայնժամ ազնուա-կանութեանն առաջնորդութիւն եւ մասնակցութիւն էր ի ձեռս ազ-նուականաց ըստ օրինացն այնոցիկ, Թէպէտ եւ Ազնուականաց եւ Ռամկաց յայնմ հետէ յաճախագոյն եւս լինէին խառնուրդք. նախին իրի տեւէր յաճախ կռիւն եւ դժտութիւն։ Ռամիկքն երե-թայքն եւ յանդգնագոյնք եւ յաջողագոյնք լինէին, միանգամայն առեալ արկանէին ի կիր զհնարս սպառնալեացն՝ թէ չառնուլ պատե-րազմ, չերթալք ընդդէմ թշնամեաց։

Մինչեւ ի 445 ամի եւս հաստատել Կանուղէոս հազարապետ զի բարձցի ի միջոյ արգելումն ամուսնանալոյ պատրիկաց ընդ ռամ-կաց։ Միանգամայն եւ զայն խնդրէր թէ կարեսցեն եւ ռամիկք ընտրել եւ մտանել ի հիւպատոսութիւն. բայց ամս ութսուն համակ կռուէին Պատրիկք ի վերայ խնդրոյն այնորիկ եւ հնարէին իմն մանր մունր ինչ շնորհելով դարձուցանել զնոսա ի խորհրդոյ անտի։

Վասն իրի բազում անգամ բարձաւ պատիւ հիւպատոսութեան եւ կարգեցան (444) չորք (յամէ 404՝ վեց) զինուորական հազարա-պետք խառն ի պատրիկաց եւ ի ռամկաց, եւ ամենեւին նոյն իշ-խանութիւն էր նոցա զոր ինչ յառաջագոյն հիւպատքն ունէին։ Վասն զխառնումն առհմից քաղաքացեացն խափանելոյ՝ ընտրեցան կացին Համարակարք[1] երկու վասն 18 ամսոց (444) որք առնուին զհամար առհմիցն, եւ անդստին յամէ 404 համարեցան ընկերք եւ հաւասարք իշխանութեամբ ընդ զինուորական հազարապետաց. յե-տոյ եղեն նոքա միանգամայն քննիչք վարուց եւ գործոց։ — Զառա-

1 Censores.

ջինն յամի 406 հարկեցան Գաղղիկքն տալ ռամկացն վարձս կարգեալս եւ սահմանեալս, տեղս թէ ոչ՝ չէր մարթ ի գլուխ ելանել մեծամեծ գործոց պատերազմի զոր ի գլուխ հանին Հռոմայեցիք։ Իսկ յայնմ հետէ կարգեալ յարգարեցին կարգք եւ օրէնք զինուորութեանն Հռոմայեցւոց [1]։

Մինչ դեռ քաղաքացիքն անդէն ի ներքս յաշխարհին իւրեանց հաստատէին եւ ամրացուցանէին զազատութիւն իւրեանց, եւ արտաքուստ եւս ընդարձակեալ մեծացուցանէին զսահմանս իւրեանց, բազում անգամ Սաբինացւոց, Հեռնիկացւոց, Վոլկացւոց եւ Ետրուսկացւոց յաղթեալ՝ եղեւ Հռոմ հզօրագոյն քան զամենայն տէրութիւնս յիտալացւոց աշխարհին՝ 100 ամօք յետոյ քան զմերժումն Թագաւորացն։ Քան զամենայն սաստիկ եւ յերկարագոյն պատերազմ էր նոցա ընդ Վէյիացւոց քաղաքին. կարգեալ եւ սահմանեալ իմն էր պաշարումն քաղաքին եւ ձմերայնի եւս տեւէր վրանօք, սակայն եւ այնպէս տեւէր ամ տասն (404—395)։ Այս ուրեմն առ զնա յարձակմամբ եւ զօրծելով զօրավար Մարկոս Փուրիոս Կամիլլոս դիկտատոր, եւ եմուտ ձաղանօք չորիւք սպիտակօք ի Հռոմ։

Թէպէտ եւ կամէին այնուհետեւ բազումք ի Հռոմայեցւոց երթեալ բնակել ի քաղաքին Վէյիացւոց, բայց Կամիլլոս չայանձն էր զի մի բաժանումն այն միաւորական իւր տէրութեանն լինիցի. այլ վասն նորին իսկ ատելի եղեւ հասարակապետաց ժողովրդեանն, ամբաստան եղեն զնմանէ որպէս թէ խորեաց նա յաւարէն, եւ նա մեկնեցաւ գնաց յԱրդէա տրտմեալ ընդ ապատաւորութիւն քաղաքացւոց, եւ հասարակապետքն եդին ի վերայ նորա տուգանս։ Ոչ յետ բազում ինչ ժամանակի հարկ համարեցան Հռոմայեցիք կոչել զնա յետս։

## 340

Քանզի Սենոնեանն Գաղղիացիք՝ որ բնակեալ էին յայնկոյս լերանցն Ալպից ի հովիտն Պադոս գետոյ՝ յառաջ քան զ150 ամ, դիմեցին յամի 390 յԻտալիա, հասին մինչեւ ցԿղուսիոն եւ անդ խնդրէին իւրեանց վայր բնակութեան։ Զահի հարեալ բնակչացն՝ զՀռոմայեցիս աղաչէին վասն թիկանց օգնականութեան։ Հռոմայեցիք յորդորել սկսան զԳաղղիացիսն ի բաց կալ ի թշնա-

1 Երկոքին հիւպատոսք իւրաքանչիւր առրայ սովոր էին ունել 4 լեգէոնս որոց կային հազարապետք 24։ Լեգէոնն՝ որ էր 3—6000 այր՝ յօրինեալ կայր ի թեթեւվառելոց (velites), ի տիգաւորաց (hastati), ի յառաջնաւորաց (principes), եւ իւրաքանչիւր ի նոցանէ բաժանէր յայլ եւ այլ դասս։ Իւրաքանչիւր ի դասուց անտի գործեալ յայլ եւ այլ մասունս բաժանէր [manipulus, որ բովանդակէր 2 հարիւրաւորութիւնս (centurias), որոց գլխաւորք էին 2 հարիւրապետք (centuriones), 2 գնդապետք (uragi), 2 դրօշակիրք (signiferi]։ Յետ ժամանակաց իւր զի լեգէոն բաժանէին ի 10 վաշտս (cohortes), այնպէս զի մի վաշտ բովանդակեալ ունէր 8 հարիւրաւորութիւնս (կամ 4 manipulos)։

նութեան գործոց, եւ իբրեւ ոչ ինչ կարացին վճարել հրեշտակք Հռոմայեցւոցն, անցին կացին առաջ ի գլուխ գնդին եւ եառն քաջութեամբ պատերազմ ընդ Գաղղիացւոցն։ Վաղվաղակի առաքեցին հրեշտակութիւնս ի Հռոմ քաղաք, ցուցանել թէ հակառակ ազգացն իրաւանց գործեցին հրեշտակք Հռոմայեցւոցն, սակայն չեղեւ ինչ նոցա ընդ այնր հատուցումն ի Հռոմայեցւոցն։ Յայնժամ Բրեննոս զօրավար Գաղղիացւոցն յարձակէր ի վերայ Հռոմ քաղաքի, առ Ալլիա գետով անհնարին ի պարտութիւն մատնեցան Հռոմայեցիքն, անկան ի նոցանէ 40,000 այր եւ մնացեալքն վարատեալ ցրուեցան. մասն մի նոցա ի Կապիտողիոն անկաւ փախստեայ՝ մինչ դեռ յորժամ զհետ պնդեալ հասին Գաղղիացիքն յետ երից աւուրց՝ թափուր զքաղաքն գտանէին զոր եւ հուր հարեալ այրէին եւ կոտորէին զ80 ծերսն որք ի հրապարակի քաղաքին նստէին՝ կամեցեալ լինել զոհ քաղաքաթեան։ Ապա արգելեալ պաշարեցին զԿապիտողիոն ի մեծի եղեալ տառապել ի սովոյ զՀռոմայեցիսն (389)։

Յուշ եղեւ յայնժամ Հռոմայեցւոցն Կամիղղոս՝ որ եկեալ յԱրդէացւոց քաղաքէն կամէր անկանել ի վերայ թշնամեացն, եւ այրն աներկեւղ Պոնտիոս Կոմինիոս եդ զոգին ի բաժին եւ տարաւ առ նա զպատիւ Դիկտատորութեան։ — Թէպէտ յայնժամ Մանլիոս զերծոյց իսկ զԿապիտողիոն ի յարձակմանէ Գաղղիացւոցն, քանզի գտեալ նոցա ելս ինչ յանհնարոյց ժայռաւն՝ սկսան ելանել ընդ այն գիշերայն, եւ մինչ դեռ պահապանքն ի քուն կային՝ սագք նուիրականք Հերայ դիցն արարին աղաղակ մեծ, յորմէ զարթուցեալ Մանլիոսի եւ զօրականքն՝ հասեալ զնոսա զահավէժ ընդ զառ ի վայրն, սակայն յետ աւուրս ուրեմն տագնապեալ ի սովոյն կամեցան տալ զնոսա 1000 լիտր ոսկւոյ, զի երթիցեն ի բաց Գաղղիացիքն։ Բայց մինչ դեռ Բրեննոսն ի կշռել ոսկւոյն՝ դնէր զսուսեր իւր ի նժար անդր զի ծանրասցի կշիռն՝ անդէն հասանէր Կամիղղոս զօրօքն եւ կանգնեալ յաղթութիւն մեծ ի վերայ Գաղղիացւոցն՝ դարձուցանէր յետս զաւարն։ — Սակայն ընդ այս գործ յաղթութեան Հռոմայեցւոց յիրաւի է տարակուսել, եւ համարել զայն զրուցս պարծանաց միայն նոցա։

## 341

Յետ մեկնելոյ թշնամեացն ի բաց՝ այնչափ վհատեալ անկեալ էր ժողովուրդն, զի չկամէր այնուհետեւ շինել զքաղաքն այլ երթալ բնակել ի դատարկացեալ քաղաքն Վէիացւոց։ Մեծաւ աշխատութեամբ ուրեմն հաւանեցուցին Պատրիկքն մնալ անդէն. եւ զի մի միւսանգամ նոյնպիսի խորհուրդք ի մէջ դիցեն՝ հրաման տուաւ ժողովրդեանն քակել առնուլ առաղձ ի տանց քա-

ժամանակս ինչ իբրեւ սեպհական Պարթեւաց, մինչեւ յետոյ ուրեմն եւ զայն եւս կորզեին Երասխ ի միջոյ ռամիկն եւ եղեւ կատարեալ հաւասարութիւն երկոցունց եւս կողմանց՝ Պարթեւացն եւ Սուլլայ (302), եւ տէրութիւնն փոխեցաւ յազնուապետութենէ յինքներհաշտութիւն: Յայսմ հետէ առնու սկիզբն ժամանակն քաղաքային առաջնութեան եւ պատերազմական քաջութեան Հռոմայեցւոցն:

## 342

Յետ քաղաքացեացն միաբանութեան՝ որում կանգնեաց իսկ Կամիղղոս մեհեան սակաւիկ ինչ յառաջ քան զմախճանելն (365) եւ յետ ազատուելոյ իւրոց զինուորութեան եւ սպառազինութեան ի ձեռն Կամիղղեայ՝ զրգռեցաւ մարտ պատերազմի ընդ հզօր լեռնորդեայ ազգին Սամնիացւոց, որոյ սկիզբն եղեւ յամէ 343 եւ ընդ ժամանակս ժամանակս ընդ մէջ հատեալ՝ ապա յետ 50 ամաց հօրդեցաւ Հռոմայեցւոց նորոգ ճանապարհ առաջի՝ նուաճել զամենայն համօրէն Իտալիա:

Պատերազմունքն այնոքիկ եղեն միանգամայն գեղեցիկ վարժոցք արուեստի պատերազմաց, եւ ժամանակ ծաղկեալ քան զամենայն ժամանակս՝ քաջութեան Հռոմայեցւոցն: Ի վճռական եւ յանհնարին նեղութեան ժամանակի նուիրեալ զանձինս ի մահ՝ անկանէին խառն ի խուռն ի վերայ թշնամեացն եւ ինքեանք իսկ հիւպատոսն՝ առ սէր հայրենի աշխարհին, եւ նախ զրեթէ անյաղթական իմն Հռոմայեցիքն լինէին: Պատճառք Սամնիական պատերազմին այն էր՝ զի գիրգ եւ բարեկեցիկ բնակիչք Կապուայ եւ դաշտավայրացն Կամպանիոյ՝ չէին բաւական ունել զդէմ Սամնիացւոցն զիւրեանց տոհմակցաց, եւ անկան առ Հռոմայեցիսն զի օգնեսցեն սոքա նոցա: Զառաջինն չառին յանձն Հռոմայեցիքն օգնական լինել նոցա ընդդէմ Սամնիացւոցն ընդ որոց դաշնաւորք իսկ էին. այլ իբրեւ Կամպանացիքն ամենեքին տուին զանձինս ընդ պաշտպանութեամբ Հռոմայեցւոցն եւ յանձն առին զտէրութիւն իշխանութեան նոցա՝ խաղացին հասին Հռոմայեցիք հարին մեծաւ քաջութեամբ զՍամնիացիսն ի ճակատու անդ առ Սուեսուլ առ լեռնոտամբն Գաւրոսի (342), բայց յետ յերկարելոյ այսր առաջնոյ սամնիական պատերազմին երկուս եւս ամս՝ եդին օգտակար դաշինս խաղաղութեան ընդ Սամնիացւոցն, քանզի անհտուստ Լատինացիք որ ցայժմ դաշնաւորք էին նոցա՝ յետս կացին (340):

Վասնզի չկամէին յայնմ հետէ Լատինացիք թէ զլուխ դաշնաւորութեանն կայցէ միշտ Հռոմ, կամէին ամենեքին հաւասարել եւ ձուլեալ խառնել ի մի հռոմէական եւ լատինական տէրութիւնն, եւ պահանջէին ունել մասն ի ծերակուտին, հա-

տանել ի հիւպատոսութիւն եւ յայլ ամենայն պաշտամունս։ Յերկոցունց կողմանց մեծաւ դառնութեամբ պատերազմունքն մղէին՝ մինչեւ լինէր զբաւ հրացն յաղթութեամբն Հռոմայեցւոց ի ճակատուն առ Վեսուվաւ, յորում ասեն հիւպատոսն Դեկիոս Մուս նուիրեաց զանձն ի մահ. եւ յառաջ քան զճակատն զայն Մանլիոս Տորկուատոս (որդի միւսոյ Մանլեայ) տայր սպանանել զիւրուրոյն որդի՝ յետ պսակելոյ զնա առաջի զօրուն, վասն զի ճակատ ետ հակառակ հրամանի եւ յաղթեաց յառապատակի ումեք։ Այսպէս յերկիս ամն նուաճեցան ընդ հնազանդութեամբ Լատինացիք, քակեցաւ դաշնաւորութիւնն նոցա (337), մասն մի նոցա խախտեցաւ գաղթեաց ի սահմանս Հռոմայեցւոց։ Մասն մի քաղաքացն Լատինացւոց որ անձնուէին քաջութեամբն ընդդէմ դարձան (Արիկիա, Պեդոն, Լանուվիոն եւ Նոմենտոն)՝ ընկալան լատինական իրաւունս, այս ինքն՝ եղեւ նոցա համարձակութիւն ունել իւրեանց առանձինն գործակալս կամ մերձակացուս գործոց եւ զիրաւունս առն հռոմայեցւոյ՝ իւրք իւրք ամփոփմամբ, եւ ի զամն նոցա ի Հռոմ՝ իշխանութիւն էր նոցա մտանել ի ժողովսն. իսկ միւս եւս մասն քաղաքաց (որպէս քաղաքքն Կամպանիայ՝ Փորմիք, Կապուա, Կումիք, Սուեսսա եւ այլք) եղեն Ինքնօրէն քաղաքք [1] առանձինն ներքին առաջնորդութեամբ՝ այլ առանց իրաւանց Հռոմէական քաղաքացւոց. համարձակ էր նոցա բնակել ի Հռոմ, սակայն զօրականն ժողովեալ ի քաղաքացն Լատինացւոց չմտանէր այնուհետեւ ի հռոմէական լեգէոնսն, այլ ի կարգս զօրու դաշնաւորացն։ Յինքնօրէն քաղաքսն յայտնուիկ կայր Վերակացու [2] հռոմայեցի որ առաջնորդէր դատաստանաց ըստ հռոմէական իրաւանց։

Յետ սակաւ ինչ միոյ նոյնպիսի անցք անցանէին եւ ընդ Հեռնիկացիս, ընդ Եկուացիս եւ ընդ Վոլսկացիս՝ որք անցին ի կարգ Դաշնաւորացն [3] Հռոմայեցւոց, թէպէտ եւ առանձինն քաղաքք ինչ նոցա այլ եւ այլ իմն իրաւունս ունէին։ Ցռուկք նաւացն՝ զոր առին յաւարի յԱնտիոն քաղաքի Վոլսկացւոց՝ բերեալ եդան ի զարդ բեմին ատենախօսութեան [4] ի հռոմէական հրապարակին։

## 343

Ընդ յաջողութիւն Հռոմայեցւոցն նախանձեցան Սամնիտացիք. վասն դժտութեան իրիք սահմանաց եւ փոխելոյ զառաջին զհնաւորական գաղթականութիւնն ի Փրեգեղլէս քաղաք ի վերայ սահմանակողմանցն Սամնիտացւոց՝ զրգռեցաւ երկրորդ պատերազմն Սամնիտական (325), յոր միջամուխ էին եւ Կամպանացիք, Լուկանացիք եւ յունական քաղաքք Ստորին Իտալիայ։ Թէպէտ եւ յառաջին ամին յաջողէին Հռոմայեցիք՝ սակայն յամի իբրեւ 321

1 Municipia. 2 Praefectus. 3 Socii. 4 Rostra.

Հաւանութեան իմն թուի թէ յայնմ հետէ դառնային Հռովմայեցիք ի վերնակողմանսն Իտալիոյ տալ անդ պատերազմ, քանզի տակաւին անդէն չէին նուաճեալ Գաղղիացիքն, թէպէտ եւ բազում անգամ պատերազմաւ ի նեղ անկան (284—280), առաջին այլ իմն աւելագոյն երեւելի պատերազմ առաջի ընծայեցաւ նոցա, այս ինքն ընդ Կարքեդոնացւոց պատերազմն: — Յայն առ հարկ է նախ զիրս Կարքեդոնացւոցն եւ Սիկիլիացւոց առնուլ:

## 345

Դիդոյ կին Սիքեայ Տիւրացւոց թագաւորի, որպէս պատմութիւնն ասէ, փախուցեալ յերեսաց անագորոյն եղբօրն իւրոյ Պիգմաղիոնի որ սպան իսկ զայր նորա, եկն յԱփրիկէ առեալ ընդ իւր զգանձս եւ զհաւատարիմսն, եւ մօտ ի տեղին ուր այժմ Տունիս կայ՝ շինեաց դաստակերտ զԲիւրսա (880), եւ տակաւ աճեցեալ շուրջանակի դաստակերտն եղեւ Կարքեդոն որոյ երկու իմն նաւահանգիստք էին՝ մի վասն վաճառաշահ նաւուց եւ միւսն՝ վասն պատերազմիկ նաւացն, զոր եւ 440 յոնիացի սիւնք շուրջանակի պարզարկէին: Բնակիչք քաղաքին Պիւնացիք կամ Պունիկացիք եւս կոչէին ի Հռովմայեցւոց:

Զանխուլ աճեաց եւ մեծացաւ քաղաքն վաճառականութեամբ եւ բռնութեամբ զօրս հաստատէին ի Սարդինիա, եւ երեւ վաղվաղակի նշանաւոր. ընդարձակեաց զսահմանս իւր հնազանդեալ զբնակ ցեղս կողմանցն այնոցիկ իբրեւ հարկատուս, առեաց կապեաց յիւր դաշնաւորութիւն զայլ փիւնիկեցի գաղթականութիւնսն որ կային ի հիւսիսային ծովեզերս Ափրիկեցւոց աշխարհին՝ զՈւտիկա, զՀիպպոն, զԼեպտիս եւ զայլսն, եւ յետոյ ուրեմն տարածեցան սահմանք նորա ի տարաւանդէ անտի Կիւրենէ մինչեւ ցՍիւրտիս: Կալեալ այնուհետեւ զկղզեակն եւ զարեւմտեան կղզիսն, եւ առին իսկ ի բուռն զԲաղէարեանսն, զՍարդինիա եւ զԿորսիկա. իսկ զՍիկիլիա միով մասամբ եւեթ. առին նոքա եւ զԼանպարեան կղզիսն եւ զՄաղթեայ եւ կալան զմասն մի Սպանիացւոց աշխարհին:

Զայս ամենայն աշխարհակալութիւնս հանէին ի գլուխ (յամէ 550—480) բազմամբոխ նաւամարտիկ նաւուք եւ հարուստ զօրք զոր վարձէին յազգաց մեծի իրիք մասին Եւրոպայ (ի Գաղղիացւոց, յԻբերիացւոց, ի Լիգուրիացւոց): — Մինչեւ յայնկոյս իսկ ածանացն Հերակլեայ նաւարկէին Կարքեդոնացիք, մինչեւ ցԱնդաշ տարաւանդն եւ ցկղզին Բրիտանացւոց, եւ էին նոցա բովք բազումք եւ առուրեւտ վաճառաց եւ գաղթականք:

Իսկ օրինակ սահմանադրութեանն՝ յետ բառնալոյ զպատիւ թագաւորութեանն որ տակաւ ինչ ժամանակ միայն ձգեցաւ, աշխա-

կանոնց պետութիւն էր. ընտրէին ի մեծատուն տոհմից երկուս գործակալս իբրեւ վերադասս իշխանութեամբ քան զամենեսին, որ Սուփետքն կոչէին. առընթեր նոցա եւ ծերակոյտ մի, եւ ի ծերակուտէ անտի ընտրանաւ կայր ժողով ճդ ծերոց, ընդ իշխանութեամբ ժողովոյ ծերոցն կային զօրավարքն: Զիշխանսն ընտրէր ժողովուրդն եւ էր կցորդ օրէնսդրութեանն: Յետոյ ընտրեցան կացին 100 արքն վասն առնլոյ զառաջս առաւել իշխանութեան ազնուականացն, բայց եւ նոքա եւս զեղծան:—Այս իսկ է պատճէր մեծագոյն քաղաքին Կարքեդոնացւոց մինչեւ ցպատերազմունսն զոր ընդ Սիրակուսացւոց սկսան մղել (յամի իբրեւ 480):

## 346

Ի մէջ բազմամբոխ Յունաց գաղթականութեանցն քաղաքաց որ ի Սիկիլիա էին՝ երեւելի եւ փառաւոր քան զամենեսին եղեն Սիրակուսք քաղաք երկնաւահանգստեան հանգոյն Կորնթոսի՝ որոյ գաղթականութիւնն իսկ էր. եւ ամենայն իսկ համօրէն պատմութիւն կղզւոյն այնուհետեւ զՍիրակուսացւոց պատմութեամբ կայ կախեալ: Յառաջնումն ազատ ինչ առէրութիւն էր ընդ ազնուականաց իշխանութեամբ (735—484): Յետոյ եհաս իշխանութեան Գեղոն (484) եւ եղեւ երախտաւոր քաղաքին, առեալ պատերազմ ընդ Կարքեդոնացւոց՝ յորժամ սկսան նոքա զառաջինն նուաճել զամենայն Սիկիլիա, եւ կանգնէր յաղթութիւն ի վերայ Կարքեդոնացւոցն առ Հիմերաւ (480): Զնա պայազատէր եղբայր նորա Յերոն Ա. (477) որ ընդարձակեաց զսահմանս Սիրակուսացւոցն եւ ունէր յարքունիս իւրում ժողովեալ զերեւելի երեւելի բանաստեղծս Յունաց աշխարհին (զՊինդար, զԷսքիւղոս, զՍիմոնիդէս եւ զայլս). եւ զՅերոն յաջորդէր եղբայրն Թրասիբուղոս (467): Թրասիբուղոս վաղ ուրեմն (յամի 466) իբրեւ բռնաւոր մերժեցաւ, եւ մուծաւ ընկերահաւասարաց ռամկապետութեանն պայման (466—405): Յայսմ ժամանակի ամբարձան Սիրակուսացիք ի ծագ զօրութեան եւ մեծութեան, մանաւանդ յորժամ զԱգրիգենտ հնազանդեցին (446) եւ յաղթեցին մեծի արշաւանի Աթենացւոց (415—413):

Բայց յետ այնորիկ աջող համարեցան Կարքեդոնացիք միւսանգամ տալ պատերազմ ընդ Սիրակուսացւոց (յամէ 410), եւ յաջողէր եւս Կարքեդոնացւոցն. ուստի եւ բազում խռովութիւնք անդէն ի ներքս ի Սիրակուսացւոց քաղաքին լինէին, որով եղեւ մուտ բռնաւորն Դիոնիսոս Ա. բարձրագոյն իշխանութեանն հասանելոյ (405): Անդէն ի նմին ժամանակի եւ յետոյ եւս յորժամ միւսանգամ սկսաւ պատերազմն (396), վասն ժանտին միայն որ ի զօրս Կարքեդոնացւոցն անկաւ՝ ապրեցաւ քաղաքն

Սիրակուսացւոց: Նոյն ուրեմն յորժամ եղեն դաշինք խաղաղութեան ի միջի՝ սպանեալն երկոքին կողմանցն որ ինչ զրաւեալ ունէին, եւ Դիոնիսիոս Բ. յաջորդէր իշխանութեանն (368): Ըստ ջանիցն Դիոն խնամի նորա ուղղել զնա ի փափկութենէն եւ յանագորունութենէն ի ձեռն Պղատոնի, բայց զուր եւ ընդ վայր. յայն սակս խռովութիւն եւ անիշխանութիւն գտանէր մուտ ի Սիրակուսա, եւ այնպէս մօտ իմն յառնուլ լինէր ամենայն Սիկիլիա ի Կարքեդոնացւոցն (360 — 354): Բայց խնդրեցին Սիրակուսացիք թիկունս օգնականութեան ի Կորնթացւոց. առաքեցաւ Տիմոլեոն նաւատորմիղ նաւուք, եւ մերժեալ զԴիոնիսիոս եւ հալածեալ զԿարքեդոնացիսն առ Կրիմիսոս գետով ի կրկին ստրկութենէ ապրեցոյց զքաղաքն Սիրակուսացւոց, եւ յօրինէր միւսանգամ զպայման ընկերահաշտեաց ռամկավարութեանն (345 — 340):

Բայց սակայն ուրեմն յաջորդէր Ագաթոկղեայ որ բռնեալ լինէր՝ առնուլ զբարձրագոյն իշխանութիւնն ի բուռն օգնականութեամբ Կարքեդոնացւոց եւ սպանել եւս (317 — 289): Ընդ թշնամացեալ նորա ընդ նոսա՝ իբրեւ ի նեղ անկեալ պաշարեցաւ ի քաղաքին Սիրակուսացւոց՝ անցանէր զօրու յԱփրիկէ. եւ նա ահագին մարտ պատերազմի ընդ Կարքեդոնացւոց եւ արար յաղթութիւնս մեծամեծս, բայց վախճան պատերազմին օգուտ Կարքեդոնացւոցն եղեւ (311 — 306): Յետ սպանմանն Ագաթոկղեայ խռովութիւնք եւ դժուարութիւնք ի Սիկիլիա զօրանէին. զայսն հասանէին Կարքեդոնացիք առնուլ քաղաքին Սիրակուսացւոց: Յայնժամ կոչեցին Սիրակուսացիք զՊիւռոս ի թիկունս օգնականութեան. պաշարեաց Պիւռոս զԼիլիբէոն եւ կամէր պատերազմաւ անցանել յԱփրիկէ. բայց քանզի զամենայն իւր կողմն Սիկիլիացւոց զրաւեալ ունել խորհէր Պիւռոս՝ յայն սակս ատելի եղեւ Յունաց Սիկիլիացւոց որք եւ ստիպեցին զնա մեկնել անտի ի բաց (278 — 276):

Բայց սակայն յետ նորա մեկնելոյ միւսանգամ սկսան խռովութիւնքն, քանզի Մամերտացիքն՝ որ էին վարձկան զօրականք Կամպանիացւոց, յետ ունելոյ բռնութեամբ զդղեակն Մեսսանայ՝ կոտորելով զամենայն արու քաղաքին, սփռէին ասպատակ ընդ ամենայն Սիկիլիա: Յայն սակս ընտրեցին Սիրակուսացիք զՅերոն Բ. ի զաւակէն Գելոնի ի զօրավարութիւն (275) եւ ի թագաւորութիւն (270): Սա խաղաց ի վերայ Մամերտացւոցն եւ հար զնոսա եւ պաշարեաց զնոսա ի քաղաքին Մեսսանացւոց: Բայց Կարքեդոնացիք քանզի ոչ կամէին թէ զօրասցին Սիրակուսացիք, հասին կալան պատրանօք զդղեակն Մեսսանայ: Յայնժամ եւ Մամերտացիք դիմեցին առ Հռոմայեցիսն, որով եւ սկիզբն պատերազմին Պունիկեան:

զՀռոմայեցիսն, 2000 միայն ապրեցաւ ի նոցանէ, 500 այր հան-դերձ Ռեգուղեաւ եղեն ձերբակալ (255)։ Միւս եւս զօր հա-ւաքեալ նոյնպէս չկարաց ունել զդէմ Կարքեդոնացւոցն, եւ ի դառ-նալ նոցա այսրէն ի Սիկիլիէ՝ յ360 նաւաց անտի հազիւ հազ թէ 80 նաւք մնացին, եւ Մեսսանա միայն էր ի ձեռս նոցա։

Այսպէս միւանգամ լինէր յերկոցունց կողմանց հաստատակա-կշիռ կշիռ, եւ տեւէր մեծաւ դառնութեամբ պատերազմն (255)։ Սակայն Հռոմայեցիք յետ շինելոյ նաւաց իւրեանց՝ զամս բազում խորշէին ի նաւական պատերազմէ, եւ ի ծովային առ ծովային կամե-լոյ ի ցամաքի առ երկիւղի փղացն. բայց յետոյ Մետեղղոս յաղթա-կեալ ի Պանորմոսէ՝ յաղթեաց Ասդրուբաղայ եւ հան ի նմանէ զփիղսն ամենայն։ Այնուհետեւ կամէին միշտ երկաքին կողմանքն զրաւել զարեւմտեան ծայրս Սիկիլիոյ՝ այս Լիլէբն զԼիլիբէոն եւ զԴրե-պանոն, որոց պաշարապանէր Ամիլկար Բարկաս զօրավար Կարքե-դոնացւոց (յամէ 247)։ Կամեցան Կարքեդոնացիք զի խաղաղու-թիւն լինիցի, եւ առաքեցին վասն նորին խօսից զՌեգուղոս ի Հռոմ. բայց նա եցոյց Հռոմայեցւոցն թէ վնասակար է Հռո-մայեցւոց այն խաղաղութիւն. եւ յորժամ դարձաւ Ռեգուղոս ըստ խոստմանն՝ սպանին զնա Կարքեդոնացիք տանջանօք վասն խրա-տուն նորա (250)։ Իբրեւ տակաւին դեդեւէր յերկոցունց կողմանց յաղթութիւնն եւ նաւք Կարքեդոնացւոցն ափունքն առեալ աւա-րակ ի Սարդին Իտալիա՝ յօրինեցին Հռոմայեցիք միւս եւս ստր-միղ նաւաց ի տրոց ոմանց ոմանց եւ ի գանձուց մեհենիցն՝ նաւս 200 (յամի 242). ուրքջ եհար Լուտատիոս Կատտուղէս հիւպատոս զնաւս Կարքեդոնացւոցն առ Եգատեան կղզեօք, զմասն մի նոցա ծակո-տեալ ընկղմէր ի խորս, եւ զմասն մի գրաւեալ տանէր (241)։ Հանեալ զօրավար նաւացն հատանէր փախստեայ ի Կարքեդոն եւ դատապարտեալ մեռանէր. իսկ առ Ամիլկար ի Սիկիլիա առաքեն հրաման Կարքեդոնացիքն՝ առնել դաշինս խաղաղութեան։

Խոստացան Կարքեդոնացիք թողուլ ամենեւին զՍիկիլիա, տալ յետս զգերիսն եւ հատուցանել վասն ծախուց պատերազմին 2200 տաղանդ՝ ի ժամանակի տասն ամաց, բայց առժամայն հա-զար վաղվաղակի։ Իսկ Սիկիլիա բաժանեցաւ ի մէջ Հռոմայեցւոցն եւ Սիրակուսացւոց եւ այնպէս անկաւ ընդ բարձրագոյն իշխանու-թեամբն Հռոմայեցւոց. եւ եղեւ Սիկիլիա առաջին նահանգ[1] տէրութեանն Հռոմայեցւոց (238)։

## 348

Այսպէս եղեն Հռոմայեցիքն յանձնապաստանք ի պատերազմէ անտի նախանձորդէն իւրեանց, եւ պատրաստէին զանձինս յայլ եւս

1 Provincia.

դուցէ ի բանի է ընդ Թշնամւոյն եւ տուաւ ճակատ մի զօրաց նորա ի ձեռս Մինուկեայ Ռուփոսի՝ որ Թողեալ այնուհետեւ զերկբնեան յորս միշտն շրջէր Փաբիոս՝ անկաւ ի դարանս Աննիբաղայ, բայց Փաբիոս ի վերայ հասեալ ապրեցուցանէր զնա ի տագնապէն, եւ ի կատարել ամսոյն դնէր ի բաց զիշխանութիւն դիկտատորութեանն, եւ ընտրեցան փոխանակ նորա երկու հիւպատք՝ Տերենտիոս Վառ-ռոն եւ Էմիլիոս Պաւղոս, մին յանդուգն եւ միւսն զգուշաւոր, որ փոխանակաւ աւուր աւուր կային զօրավարք, Թէպէտ եւ հա-կառակ էր այսպիսի ընտրութեան Փաբիոս: Տերենտիոս հակառակ խրատուն Էմիլեայ որ զհետ երթայր հետոցն Փաբիոսի՝ բախէր փութանակի առ Կաննեաւ ընդ Աննիբաղայ. անկան ի Հռոմայեց-ւոց 40,000 հետեւակք, 2700 հեծեալ, 80 սենեկլետիկոսք հան-դերձ Պաւղոսն Էմիլեաւ, մնացեալքն եղեն ձերբակալ. ամենայն Սատրին Իտալիա յարեցաւ յԱննիբաղ: Յետ Կաննեան ճակա-տուն առաքեաց, ասեն, Աննիբաղ ի Կարքեդոն երիս սափորս՝ ոսկի օղոց հանելոց ի բազկաց անկելոցն ասպետաց՝ լինել վկայ յաղթու-թեանն: Սակայն չհամարեցաւ նա ի դէպ տկարացեալ զօրօքն անդէն խաղալ ի վերայ Հռոմայ՝ որպէս ասէին նմա խրատս:

Խռովեցաւ ժողովուրդն Հռոմայեցւոց. հազիւ հազ հանդարտ-եցուցին սենեկլետիկոսքն. առաքեցաւ խոհեմն զօրավարն Կլաւ-դիոս Մարկեղոս ի Կանուսիոն 10,000 փախստէիւքն եւ կոչեցաւ յետս Տերենտիոս: Ընդ առաջ ել նորա ծերակոյտն ամենայն՝ շնորհակալ լինել նմա զի չեղեւ յուսահատ ի փրկութենէ հա-սարակաց տէրութեանն. եւ ինքեանք եւս՝ յորժամ յետ այսր ճա-կատու առաքեաց Աննիբաղ զի դաշինք խաղաղութեան լինիցին՝ չետուն թոյլ հրեշտակացն մտանել ի քաղաք անդր, այլ բացուստ ի բաց տային պատասխանի Թէ ոչ լիցի խաղաղութիւն մինչ չեւ մեկնեալ Աննիբաղայ ի կողմանց Իտալիացւոց. եւ այս պնդու-թիւն եւ հաստատութիւն ապրեցոյց զՀռոմ:

Քանզի եւ Աննիբաղ տկարացեալ էր յայնչափ պատերազ-մաց եւ ի դնելոյ աստ անդ պահապանս, եւ ի բարեկեցիկ քաղաքի անդ Կապուացւոց յորում ձմերեալն էր՝ մեղկացան Թուլացան բիրտ զօրականքն. եւ մասն մի քաղաքացեաց իւրոց՝ որոց յանձն տարեալ էր ժողովուրդն Կարքեդոնացւոց առաքել զօրս ի Թի-կունս օգնականութեան՝ չառաքէին, նախանձեալք ընդ Աննիբաղ: Իսկ դաշնաւորութիւնքն զոր կռեաց Աննիբաղ ընդ Յերոնիմեայ նորոգ կացելոյ Թագաւորին Սիրակուսացւոց Թոռին Յերոնեայ (յամի 215), եւ ընդ Փիլիպպեայ Բ. արքայի Մակեդոնացւոց՝ չեղեն ինչ նմա օգուտ որպէս կարծէրն. քանզի Փիլիպպոս զբա-ղեալ իմն էր ի Յունաց աշխարհին եւ Յերոնիմոս անդէն յետ սա-կաւ ինչ միոյ սպանանէր: — Նմին հակառակ Հռոմայեցիք պատ-րաստեցան մեծաւ ժրութեամբ, եւ անդէն զարնայնի (215) հա-

նէին զօր ի մէջս պատերազմի: Յերկուս ճակատս յաղթէին Հռոմայեցիք՝ առ Նոլա քաղաքաւ զօրավարութեամբ Մարկեղեայ (215) եւ առ Բենեւենտաւ (214) զօրավարութեամբ Սեմպրոնեայ Գրակքեայ որ կարգեաց ի ճակատ զնորընծայ ծառայսն խոստացեալ նոցա ընդ այնր ազատութիւն:

Այնուհետեւ սկիզբն առնէին Հռոմայեցիք զքաղաքսն ապստամբեալս կշտամբել. անցեալ Մարկեղոս ի Սիկիլիա պաշարէր զՍիրակուսացիսն՝ որք զհնարիւքն Արքիմեդեայ յերկարագոյն եղեն դիմակալ, եւ հազիւ յետ երկուց ամաց առնոյր Մարկեղոս զքաղաքն (214—212): Եւ զեղեցիկ զեղեցիկ զարդք ճարտարացն փոխեցան անտի ի Հռոմ: Թէպէտ եւ Աննիբաղ ընդ այնր եւս առ զՏարենտոն եւ զյունական քաղաքս հարաւային ծովեզերացն՝ սակայն իբրեւ Հռոմայեցիք ի նեղ արկեալ պաշարեցին երկուք լեգէոնօք զԿապուա՝ փութացաւ Աննիբաղ հասանել առաջի դրանց Հռոմ քաղաքի, յուսացեալ թէ ի բաց կոչեսցեն Հռոմայեցիք ի պաշարմանէն՝ գալ փրկել զքաղաքն դայն գլխաւոր: Բայց մերժեցաւ Աննիբաղ յետս, եւ անյուսացեալ Կապուացիքն եւս առաւելուն վտանգի ետուն ձեռս ի Հռոմայեցիսն (211): [illegible]կոսք 27 արարին անձամբք անձանց եւ 53 ի նոցանէ անկան ի սուր դահճաց, քաղաքացիքն փոխեցան ի գերութիւն եւ ինչք նոցա տուան ի ձեռս օտարաց որ անդր գաղթեցին: Իսկ զանձք Կապուացւոցն փոխեցան ի Հռոմ, եւ բարձան ի նոցանէ ամենայն իրաւունք եւ տիրէին այնուհետեւ վերակացուք ի Հռոմայեցւոց: Յետ երկուց ամաց (209) առաւ եւ Տարենտոն, ուստի անտի Փաբիոս Մաքսիմոս 30,000 այր ի գերութիւն եւ 70,000 լիտր ոսկի եւ արծաթ յաւարի, բայց զանդրիս "դիցն ցասուցելոց„ եթող անդ Յունաց: Այն եւ հոյն Հռոմայեցւոց ընթանայր ընդ ամենայն Իտալիա եւ առնկալեալ դատնայքին միւսանգամ առ Հռոմայեցիս ազգքն ապստամբեալք: Իսկ իղձն Աննիբաղայ երթային եւ վատթարէին առ յաւէտ. թէպէտ եւ զՄարկեղոս (զսուսերն Հռոմայ) յետ բազում ճակատուց արկ ի դաշտն եւ սպան զնա ի կռուին առ Վենուսիա (208): Հայեցաւ Աննիբաղ ընդ զինակիցն նորա մեծաւ մեծարութեամբ եւ ետ այրել փայելուչս եւ առաքեաց զաճիւնն առ Հռոմայեցիսն:

## 351

Այնուհետեւ մի միայն յոյս Աննիբաղայ էր յաջողուածէ անտի Սպանիացւոց՝ քանզի թող էր զնա հայրենի աշխարհն իւր անշնորհակալութեամբ: Այս ի Սպանիա կռուէր Ասդրուբաղ ընդ Հռոմայեցւոց մերթ ուրեմն յաղթելով եւ մերթ նուաղ, եւ յետ պարտելոյ եւ անկանելոյ ի միում ճակատու երկուց եղբարցն Գ. Կն. Սկիպիոնաց՝ ածեաց Ասդրուբաղ ամենայն հարաւային կող-

## 353

Յայնժամ ակնդիր առաւել Հռոմայեցիք աշխարհակալութեանց յարեւելս եւ յաջողէր նոցա սքանչելապէս։

Առաջին թշնամի նոցա էր Փիլիպպոս Բ. արքայ Մակեդոնացւոց որ զօրաւիգն օգնականութեան լեալ էր Կարքեդոնացւոցն, նեղէր զԻլիւրիկեցիս եւ զՀռոդացիս եւ կամէր յայնմ հետէ հնազանդել զքաղաքն Աթենացւոց։ Իսկ Հռոմայեցւոց պատճառեալ՝ որպէս թէ կամիցին փրկիչ լինել Յունացն ազատութեան՝ յայտ առնէին Փիլիպպեայ թէ գալոց են ի վերայ նորա պատերազմաւ (200). յաղթութեամբ պատերազմին որ առ Կինոսկեփաղէօքն մերձեցաւ յերկրորդումն ամի ի ձեռն Կուինտեայ Փղամինեայ՝ զօրացան յոյժ Հռոմայեցիք (197)։ Յերկրորդում աւուր ճակատուն եկն եկաց Փիլիպպոս առաջի Փղամինիոսի, եւ եղեւ ապաստան ի շնորհս Հռոմայեցւոցն։ Այնպէս եղին նմա պայմանս խաղաղութեան ըստ նմանութեան պայմանացն որք ընդ Կարքեդոնացւոց եղան. սահման տուաւ Փիլիպպեայ՝ միայն աշխարհն Մակեդոնացւոց. ստիպեցաւ տալ յետս զնաւատորմիղ նաւաց իւրոց բաց ի 5 նաւուց, հատուցանել զծախս պատերազմին 1000 քանքար եւ թողուլ ազատ զՅունաց աշխարհ։ Փղամինիոս իսկ եւ իսկ երթայր յԻսթմեան խաղսն եւ քարոզել տայր ազդարարել թէ ազատեցան քաղաքքն Յունաց ի տուրց եւ ի հարկաց եւ ի պահանորդ զօրացն Մակեդոնացւոց. եղեւ անբաւ գոչիւն մեծ ուրախութեան։ — Բայց մնաց անդ զօր պահապան հռոմայեցի։

Ապա հրաման ետուն Հռոմայեցիք եւ Անտիոքայ Գ. Մեծի մեծազօր թագաւորի Ասորւոց, թողուլ ազատ զՅոյնս որ յԱսիացւոց աշխարհին էին եւ ի բաց գնալ յԵւրոպայ. բազում ամս ընդ պատգամաւորութիւնս հանէին. քանզի արքայ Անտիոքոս յօգնականութիւն յուսացեալ էր յԵտոլացւոցն եւ ի Մակեդոնացւոցն եւ ի գործակցութիւն Աննիբաղայ։ Բայց ջանային իսկ Հռոմայեցիք նենգութեամբ եւ քսութեամբ զԱննիբաղ՝ արգել լինել միաբանութեանն այնմիկ, եւ խնդրէին տալ ի ձեռս զԱննիբաղ (195) որ յետ փախչելոյ մազապուր յիւրմէ հայրենի աշխարհէ ի կողմանս Ասորւոց՝ յետուստ ուրեմն հաւանեցուցեալ էր զԱնտիոքոս տալ պատերազմ ընդ Հռոմայեցւոց (193) անդէն ի նոցա աշխարհին յԻտալիա։

Մինչեւ ցամն 191 ի նեղ անկեալ մերժեցաւ Անտիոքոս յաշխարհէն Յունաց։ Անտիոքոս հան զպահականութիւն իւր յամենայն ամուր քաղաքաց Փոքուն Ասիոյ (ի Լիւսիմաքեայ, ի Սեստոսէ եւ յԱբիւդոսէ) եւ երթայր ի քաղաքն Սարդիկացւոց։ Բայց անդէն ի վերայ սահմանացն Լիւդաստանի առ Մագնեսիա մօտ ի Սիպիւղոս լեառն հարին նմա Հռոմայեցիք, որոց զօրավար կայր Լու-

կիոս Սկիպիոն (առ որում կայր իբրեւ խորատու եղբայրն նորա Ափրիկեցին Սկիպիոն) եւ յաղթէր նմա Սկիպիոն Ասիատիկոս (190) . եւ առնոյր նա անուն Ասիացի։ Նախկին դաշինք խաղաղութեան ի մէջ եւ ի բաց թողոյր Անտիոքոս ի սահմանաց թագաւորութեան իւրոյ մինչեւ ց Տաւրոս, խոստանայր տալ 15,000 քանքար եւ մատնել ի ձեռս զԱննիբաղ։ Իսկ Աննիբաղ թէպէտ եւ փախստեամբ ապրեցաւ, այլ միշտ հալածեալ ի Հռոմայեցւոցն շրջէր թափառական, մինչեւ յետոյ իբրեւ յոյժ ի նեղ արկաւ առ թագաւորին Բիւթանիայ՝ դեղ առեալ անձամբ անձին առնէր անդէն ի նմին ամի յորում յաղթականն նորա Սկիպիոն մեռաւ վտարանդի ի Լիտեռնին Իտալիա՝ յոր մեկնեալ էր նա ինքնակամ վասն ապրելոյ ի ձեռաց թշնամեաց իւրոց (183)։ Յառաջ քան զայս ամենայն՝ եւ Էտոլացիք որ յետոյ կացեալ էին միանգամ՝ նուաճեցան ընդ լծով, եւ կրեցին պատիժ ծանրագոյն հարկօք պատերազմի (189)։

Զհանդի Պերսեւս որդի Փիլիպպեայ Բ. արքայի Մակեդոնացւոց առեալ նենգութեամբ սպանանել հօրն իւրոյ Փիլիպպեայ զեղբայր իւր զկրտսեր զԴեմետրիոս զպարերարոյն՝ խորհէր թօթափել զանձն ի լծոյ Հռոմայեցւոցն, գրգռեցաւ միւս եւս պատերազմ (172—168), եւ եղեւ գլուխ պատերազմին ճակատամարտին որ առ Պիւդնաւ եղեւ զօրաւարութեամբ Պաւղոսի Էմիլեայ եւ ձերբակալ եղեալ Պերսեւս՝ անկաւ ի թագաւորութենէ (168)։ Ի նմին ժամանակի եւ Անիկիոս յաղթէր Գենտիոսի արքայի Իլլիրիկեցւոց (167) եւ առաքանէր զԷպիրոս հրով եւ սրով։ Էրկոքին թագաւորք եղեն գաւառք ձաղանաց երկոցունցն յաղթողաց. Մակեդոնիա եւ Իլլիրիկէ յառաջնում եղեն ազատ անկախութիւնք ընդ խստագոյն պայմանօք, այլ յետ 20 ամաց յորժամ անոյ ոմն ի մէջ անել զանձնէ թէ որդի Պերսեայ իցէ, եւ ապստամբեցոյց զերկիրն՝ նուաճէին զնապատեայն զայն (զսուտ Փիլիպպոսն) Հռոմայեցիք ի ձեռն Մետեղլեայ, եւ այնպէս Մակեդոնիա Էպիրոսիւ հանդերձ լինէր նահանգ Հռոմայեցւոց եւ անուն նորա՝ Մակեդոնիա (148)։

## 354

Անցեալ էին 50ամեայ ժամանակք ի վերայ հնազանդութեան Կարքեդոնացւոց ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոցն, եւ զօրացաւ կալաւ ի Հռոմ խորհուրդ այնոցիկ՝ որ ասէին թէ ջնջել պարտ է եւ եղծանել զպետութիւն նոցա, զի բարձցի ախոյեանն ամենայն երկիւղ եւ կասկած. սոցա գլուխ էր մանաւանդ Պորկիոս Կատոն՝ որ յամենայն ճառսն իւր առէպ զնոյն կրկնէր[1]. իսկ գլուխ հակառակ կարծեացն՝ Սկիպիոն Նասիկա, որ հարկ համարէր կալ

1 Praeterea censeo Carthaginem esse delendam.

մնալ Կարքեդոնի, զի մի ի թուլութիւն կործանեսցին Հռոմայեցիք։ Մասինիսսա արքայ Նումիդացւոց իբրեւ գործի իմն լեալ Հռոմայեցւոցն՝ անդադար գործս թշնամութեան հակառակ Կարքեդոնացւոցն ցուցանէր, թէպէտ եւ բազում անգամ տրտունջս տային ի Հռոմ հասանէին՝ այլ զուր եւ վայրապար։ Այլ յորժամ նոր ինչ յարձակումն եհաս ի վերայ Կարքեդոնացւոց ի Մասինիսսայ՝ զինուք մղեցին զնա յետս (152), եւ ցուցին ի Հռոմ թէ ոչ ինչ հակառակ դաշանցն գործեցին։ Իսկ իբրեւ ինքնակամ կամեցաւ Ուտիկա հնազանդել Հռոմայեցւոց՝ յայնժամ պատեհ համարեալ Հռոմայեցւոց զժամն՝ վճիռ ետուն հիւպատքն թէ մնասցեն Հռոմայեցիք զօրօք յԱփրիկէ (149)։ Զահի հարեալ Կարքեդոնացւոցն յանձն առնէին զանձինս ծերակուտին տալ ընդ նոսա զինչ եւ կամիցի, եւ ետուն պատանդս 300 եւ զզէն եւ զզարդ իւրեանց ի բաց։

Յայսր վերայ՝ պահանջեցաւ ի նոցանէ ի բաց ելանել ի քաղաքէն եւ երթալ բնակել 80 վտաւան (երկուս մղոնս) հեռագոյն ի ծովեզերէն, եւ թոյլ տալ զի ի հիմանց քակեալ քանդեսցի Կարքեդոն։ Զայրացան զինեցան ընդ պահանջումն, ի յուսահատութիւն կործանեցան. ի մեծի եղեն միաբանութեամբ տալ պատերազմ կամ ի մահ կամ ի կեանս, եւ չուառացեալ իմն ջան եւ ճգնութիւն վասն պաշտպանութեան քաղաքին ցուցանէին յայսմ երրորդ Պունիական պատերազմի (149—146)։ Գլուխ եկաց Կարքեդոնացւոց՝ Ասդրուբաղ ոմն անուն. խցին առաւականեցին զդրունս քաղաքին, փակեցին զնաւահանգիստն ձգեալ շղթայս առաջի նորա։ Յօրինեցին զէնս նորոգ՝ անհնարին արագութեամբ. ամենայն ծեր եւ մանուկ գործէր ժիրաժիր, զտունսն քակէին վասն կազմելոյ նաւս ի գերանացն, ամենայն նիւթ քրէական ի քաղաքին ժողովեցաւ ի շինուած զինուց. ի տունս, ի հրապարակս եւ ի մեհեանս եւս հնչէր ուրագ եւ սալն. եւ կանայք տային զվարսսն իւրեանց՝ գործել լարս աղեղանց։ Այսպէս աւելի քան զամ մի եղեն զինակալ երկուց հիւպատաց, նա եւ յորժամ քաջն Սկիպիոն Էմիլիանոս (որդեգիր տանն Սկիպիոնեայ Ափրիկեցւոյ) անց ի գլուխ զօրուն Հռոմայեցւոց վհատելոցն եւ լքելոց, յերկարէին իրքն մինչեւ ցամ երկրորդ՝ յորում ամի բուռն ամենայն զօրութեամբն յարձակեցաւ Սկիպիոն Էմիլիանոս ի վերայ քաղաքին, եւ առ նովին ի բուռն։ Սկսաւ ահագին կոտորածն եւ տեւէր աւուրս 6, մինչեւ ցանկել հրդեհին ի քաղաքի անդ։ Յ700,000 բնակչացն հազիւ թէ 50,000 մնացին կենդանի որք եւ ի գերութեան վաճառեցան։ Յաճիւն դարձաւ Կարքեդոն այրեալ աւուրս 17, այն՝ որ 700 ամ դշխոյ եւ հրամանատար լեալ էր ծովու։ Սահմանք Կարքեդոնացւոցն եղեն նահանգ Հռոմայեցւոց, եւ անուն՝ Ափրիկէ (146), իսկ Սկիպիոն Էմիլիանոս առ իւր անուն՝ Կրտսերն Ափրիկեցի։

հու սկսան ունել ուշ քան հնազանդելոցն օգտութեան։ Պան- ձապահքն՝ որ էին ի մեծատուն ասպետաց անտի՝ իբրեւ մաքսա- պետք՝ խառատանային սահմանեալ ինչ չափ արծաթոյ տալ ի գանձ տէրութեան՝ եւ ընդ այնր ինքեանք հարկօք, տուրք եւ հասոյք յանխնայ հանէին արծաթ ի նահանգացն։ Թէպէտեւ կային օրէնք ինչ[1] որ տային իրաւունս նահանգացն ըմբերլոց մատուցանել ամբաս- տանութիւն զլեկչէն յետ կառավարելոյ անի պաշտամանն նորա, բայց սակայն քանզի դատաւորքն եւ սինկղիտիկոսք յընչաւէտ ազնուա- կանաց անտի էին՝ ըստ յաճախ իմն ամբաստանութեան արձակէին զնա անպատիժ զամբաստանեալսն եւ կամ ատենէին տակաւին ինչ տա- գանս եւեթ։

## Գ.

Ներքին խռովութիւնք։ — Ստրկաց պատերազմունք։ — Աշխարհակալութիւնք միջ- ցաքանցեալ իշխանութեանն (133—30)։

## 356

Ոչ աշխարհակալութեամբքն այնոքիւք եւ ոչ գանձուքն զոր տարին յաւարի, նա եւ ոչ յունական ուսմամբքն եւ հրահանգօք որ յայնմ հետէ յաճախեալ սկսան, լաւագոյնք ինչ եւ յաջողագոյնք հռոմայեցիքն եղեն. այլ նմին հակառակ վատթարեցան եւ ապա- կանեցան յոյժ վարք նոցա. տոհմք ինչ ի տոհմիցն առ սակաւ սակաւ դրեթէ զամենայն ինչ զշարժումն եւ զանշարժ ինչսն հայ- ցին յիւրեանս, եւ ի նոցունց յօրինեալ կային ազնուականք մե- ծատունք. ի նոցա ձեռս էր մենատիրապետութիւն պաշտամանցն, ուր մնացեալք յազնուականացն եւ մեծ մասն ժողովրդեանն ի նեղութեան կէին եւ ցանկային փոփոխութեան։ — Բարձեալ էր պատիւ, զօրութիւն եւ ազդեցութիւն ի ծերակուտէ, յօրինաց եւ ի կրօնից։

Յայնժամ խորհուրդ խորհեցաւ հազարապետն Տիբերիոս Գրակքոս (որդի Կոռնելիայ՝ դստեր մեծի Սկիպիոնի Ափրի- կեցւոյ) բառնալ ի միջոյ զչարիսն՝ զհին ինչ (Լիկինեան) ագա- րակաց օրէնս յառաջ մատուցեալ. ըստ օրինացն այնոցիկ չէր հան- րական քաղաքացւոյ ունել կալուած աւելի քան զ500 արտավար գետին (133)։ Բայց սաստիկ ընդդէմ դարձան մեծատունքն ա- ռար բանից նորա, որոց գլուխ էր Սկիպիոն Նասիկա, քանզի զվնաս համարէին նոքա ընչից իւրեանց. յետոյ ուրեմն յարձակեալ Գրակքոս խնդրէր, զի միւսանգամ կացցէ հազարապետ՝ հարին զնա եւ զըն- կերս նորա արս 300, եւ արկին զդիակն նորա ի Տիբերիս։

Յետ տասն ամաց ապա ի մէջ կրսեր եղբայր նորա Գայիոս Գրակքոս մատուցանել յառաջ զխորհուրդ եղբօրն, առաւել եւս սաստկութեամբ (123)։ Պահանջէր նա զի բաժանեսցի ամ

1 De repetundis (խնդրելոյ արծաթ յետս)։

ըստ ամէ երկիր՝ աղքատաց։ Արգելանէր նա առաւելն այլ ևս խորհուրդս մեծատանցս ագահութեանն, որովք առաւել ևս զայրացաւ խռովութիւնն։ Իսկ ծերակոյտն հնարիւք իմն ի ձեռն Գ. Լիւեայ Դրուսոսի հակառակորդի՝ յաչաց հանէր զնա ժողովրդեանն։ անդէն յուզեցաւ խռովութիւն մեծ, զինուք բախէին առեալ ընդ միմեանս կուսակիցք Գրակքոսի և Փուղւիոյ նորին բարեկամի և ծառայք մեծատանցն՝ առաջնորդութեամբ Ոպիմիոսի հիւպատի, որում տուեալ էր ի ծերակուտէն դիկտատորական իմն իշխանութիւն այսպիսի ինչ վճռով՝ թէ "Տեսցեն հիւպատոսք զի մի վնաս ինչ ընկերհաշտութեանն հասանիցէ"[1]։ Ի պարտութիւն մահուանցն Գրակքեանց, հարաւ Փուղւիոս և ընդ նմա 3000 այր, և ընկեցին եղեն դիականք նոցա ի Տիբերիս. Գրակքոս անկանէր փախստեայ յանտառ մի յայնկոյս գետոյն և հրամանն տայր ծառային մտեալ սուսեր ի լանջսն (121)։ — Նախկին ևս Սկիպիոն Ափրիկեցի ազգական Գրակքեանց սպանաւ։ Այսպէս որով և բառնի հասարակաց իշխանութիւն իւր ի ձեռաց ամբոխին՝ կողմնն ազնուականաց։

Ընդ նոյն ժամանակս ստիպեցին ընկալեալ հազարապետացն իշխանութիւն նստելոյ ի ծերակուտին և ցուցանելոյ զկարծիս իւրեանց (130), և հանաւ ևս ի ծերակուտէ անտի պաշտօն դատաւորութեանն։ — Բայց նոքին հակառակ օրէնքն ագարականաց ի բաց եղեալ այնուհետև և յետոյ բարձան իսկ ամենևին։

Մինչ դեռ ի Հռոմ այսպիսի գժտութիւնք էին՝ Մետեղղոս առ զկղզիսն Բաղէարեանս (123), և Փուղւիոս Փղակկոս զհարաւակողմն աշխարհին Գաղղիացւոց յայնկոյս Ալպեաց (122)։ Բայց անդէն ի միջոյ անտի գերեացն յառնէին ապստամբութիւնք, մանաւանդ ի Սիկիլիա. բարուցն ապականութիւն օրըստօրէ առնոյր աճումն, և ոչ եթէ ժողովրդեանն միայն՝ այլ և ծերակոյտն առնոյր կաշառս, և էր գնոց ամենայն ինչ. ծերակոյտն որ նուաճեաց զխռովութիւն Գրակքեանց՝ ոչ էր այն որ յաղթեաց Պիւռոսի և Աննիբաղայ՝ առաքինութեամբ խոհեմ և զօրութեամբ։ Չիք ինչ առաւել ահագին և առաւել անիրաւ յաչս քննողացն քան զվարչութիւն Հռոմայ յայսմ հետէ մինչև ցժամանակս Աւգոստեայ։

## 357

Միկիփսա որդի Մասինիսայ († 118) տուեալ էր յորդեգիրս զՅուգուրթա՝ պատանի քաջ և յանդուգն և մեծամիտ։ Ի մեռանել Միկիփսայ բաժանելոց էր թագաւորութիւնն Նումիդիացւոց ի մէջ սորա և երկուց հօրեղբօրորդւոցն Միկիփսայ՝ Հիեմփսաղայ և Ադերբաղայ. բայց քանզի զամենայն իսկ զթագաւորութիւնն

1 Videant consules ne quid respublica detrimenti capiat.

խառնակեալ էին դաշնաւորաց խորհրդոց որ յԻտալիկացւոց ու-խալհին էին՝ տալ իրաւունս քաղաքակից հաւասարութեան, բայց չէր պահեալ նոցա երբեք զխոստումն։ Իբրեւ սպանաւ հազարապետն Դրուսոս, որ լեալ էր ջատագով իրաւանց նոցա, խորհեցան առհասարակ ապստամբութիւն (91). կամէին իսկ զԻտալիա ի մի ազատ տէրութիւն փոփոխել, եւ Կորֆինիոն լինելոց էր գլխաւոր քաղաք, եւ անդ ընտրեցին 500 պատգամաւորս իբրեւ ծերակոյտ, 2 հիւպատոս եւ 12 պրետորս։ Գլխաւոր ազգք էին Մարսք եւ Սամնիացիք, նոյն իսկ եւ այս պատերազմ կոչի յանուն պատերազմ Մարսաց։ Յերկոցունց կողմանց սաստկութեամբ մղեցաւ պատերազմն, անկաւ 300,000 այր ի ճակատն (91 — 88)։ Այլ եղեւ վախճան պատերազմացն, տուեալ առսակաւ սակաւ իրաւունս քաղաքակից հաւասարութեան ամենայն դաշնաւորացն որ ի բաց թողուին զզէնս (88)։ Ի նորոց քաղաքացեաց անտի յօրինեալ կազմեցան 8 նոր ցեղք։ — Մարիոս եւ առաւել եւս Սուղղա եղեն քաջանուն ի պատերազմի անդ. Սուղղա առ հիւպատոսութիւն, եւ եղեւ անհնարին սիրելի հռոմայեցւոց, բայց անդէն առաջանային հռոմայեցւոց այլ եւս երկու թշնամիք, թէպէտ եւ հեռաւորք սակայն զօրաւորք զօրութեամբ այս ինքն՝ Միհրդատ եւ Տիգրան։

## 359

Առ Եւքսինեան ծովու կայր թագաւորութիւնն Պոնտացւոց, որոյ թագաւորք յիշէին անդստին յամէ իբրեւ 500, եւ սերեալ էին նոքա ի թագաւորացն Պարսից։ Յայնժամ տիրէր Պոնտացւոց Միհրդատ որ անուանեալ կոչի Մեծ, եւ բաց ի Պոնտացւոց աշխարհէն գրաւեալ ունէր եւ զԿապադովկիա, զՓռիւգիա, զՊափղագոնիա, զԳաղատիա եւ զԲիւթանիա, էր նա քաջ անհնարին, եւ իբրեւ զԱննիբաղ մշտնջենաւոր թշնամի հռոմայեցւոցն խաբեբայից՝ որոց լրտեսքն խոկացանէ իսկ զիտէին զնա. դիմակալ եղեւ նոցա ամս 30, եւ ոչ ընկճեցաւ ամենեւին ի նոցանէ։ — Դաշնաւոր էր նորա եւ խնամի՝ Տիգրան (կամ ուղղագոյն՝ Արտաշէս Բ. եւ յետ նորա Տիգրան) թագաւոր Հայոց որ յետոյ Արշակաց եւս եկաց թագաւոր (յամէ 85) փոխանակ արանցն ցե-տաց Սելեւկեանց։

Այս իբրեւ գրգռեցին հռոմայեցիք զՆիկոմեդէս Գ. արքայ Բիւթանացւոց անկանել ասպատակաւ ի վերայ երկրին Միհրդատայ՝ եւ այրն քաջ Միհրդատ ամենայն զօրութեամբ իւրով. գտեալ օգնականութիւն ի Տիգրանայ՝ յաղթեաց Բիւթանացւոցն եւ հռոմայեցւոց, եւ տիրեաց վաղվաղակի ամենայն կողմանց փոքուն Ասիոյ։ Այլ իբրեւ յայտ արարին նմա պատերազմ հռո-

մայեցիքն՝ անդէն եւ սպանանել յԱսիա 80,000 այր Հռոմայեցի իբրեւ պատասխանի բանից նոցա, եւ ընդ Թրակիա անցեալ՝ միջամուխ ի Յունաց աշխարհն հատանէր եւ հանէր զԱթենացիսն յապստամբութիւն (88), եւ սպառնայր իսկ ի վերայ աշխարհին Իտալացւոց:

Յայնժամ մեծ մասն Հռոմայեցւոցն ընտրեաց զՍուղղա հիւպատ ի զօրավարութիւն պատերազմին որ ընդ Միհրդատայ էր, եւ նա կամէր անդէն երթալ առ զօրսն որ ի Կամպանիա էին: — Այլ Մարիոս որ 70 ամաց էր յայնժամ, խանդացեալ ընդ նախանձորդն իւր՝ յանկոյց յինքն զնոր քաղաքացիսն Իտալացւոց եւ յարոյց խռովութիւն եւ ապստամբութիւն ի Հռոմ օգնականութեամբ Սուղպիկեայ հազարապետի, մինչեւ առեալ Սուղպիկեայ 3000 այր ի սուսերամարտկաց (զորս ինքն ծերակոյտ հակառակ ծերակուտի անուանէր)՝ բռնութեամբ եւ ընտրել սպարապետ զՄարիոս: Եւ Մարիոս հրապարակաւ այնուհետեւ տայր նոց զիրաւունս քաղաքակից հաւասարութեանն, եւ կազմէր պատրաստէր ի մարտ պատերազմի: Բայց Սուղղա աճապարեալ եհաս փութանակի ի բանակն. յանկոյց զլեգէոնսն յինքն, եւ յետ աւուրց ինչ սակաւուց ի վերայ անցանելոյ՝ թշնամաբար ի քաղաքն մտանէր: Քաղաքացի ընդ քաղաքացւոյ մարտ եդեալ կռուէր. բայց յետ աւուր ուրեմն յաղթեաց Սուղղա, Սուղպիկիոս ի փախստեանն սպանաւ, եւ մազապուր Մարիոս եւ անկաւ յԱփրիկէ: Յայնմ հետէ ընկալան պատրիկք զիրաւունսն իւրեանց յետս. բարձաւ օրէնսդրութիւն յայնցանէ՝ որոց իշխանութիւն ի ձեռս էր. միայն ի ժողովս հարիւրաւորացն լինելոց էին այնուհետեւ վճիռք, եւ յաւելացաւ ծերակոյտն 300 նոր սենկղիտիկոսօք: Գործելովն Սուղղայ ընտրեցան հիւպատոս Ոկտաւիոս եւ Կիննա: — Յետ այնորիկ խաղաց ի վերայ Միհրդատայ իբրեւ փոխանակ բդեշխի կամ անթիպատ (87):

Զաւատակն իւր արագութեամբ հատանէր առնոյր զամենայն քաղաքսն Յունաց, եւ յարձակմամբ մտանէր յԱթէնս եւ առնէր կոտորած մեծ. աւերանէր զշինուածս քաղաքին, զերկայնաձիգ որմունսն Պիրէոսի, զԱկադեմիայն, զԼիկիոնն եւ զայլ եւս նոյնպիսիս, եւ ի մեհեանսն եւս լինէր ձեռնամուխ. մինչեւ եւ զմեհեանն Դեղփացւոց առնէր կապուտ կողոպուտ ի վերջին ձօնեացն, եւ խաղայր անցանէր ընդ Մակեդոնիա եւ ընդ Թրակիա՝ ի Փոքրն Ասիա: — Յետ այնորիկ մերժեցաւ Միհրդատ յաշխարհէն Եւրոպացւոց՝ զկնի ճակատուց պատերազմին որ առ Քերոնեաւ եւ Որքոմենոս եղեն, եւ անդէն յԱսիա բազումք ի քաղաքաց նորա հրձիգ եղեն: Բայց վասն զխպացն որ նորոգ ի Հռոմ դիպեցան՝ հարկ համարեցաւ Սուղղա կնքել դաշինս խաղաղութեան, առեալ տուժս վասն պատերազմին 2000 տաղանդ (86):

## 360

Վասնզի ընդ նոյն ժամանակս Կիննա ջանայր մտանել ընդ միառամկին բազում ինչ օրէնս առաջի արկանելով, եւ յայն սակս իսկ մերժեցաւ յՕկտաւիայ որ էր ի կողմն ազնուականացն եւ փախեաւ էր կողմանս Կամպանիացւոց. անդ գումարեալ զօրաց հարուստ, կոչեաց զՄարիոս յետս, եւ երկոքին վաղվաղակի սաստկութեամբ հասանէին ի Հռովմ, եւ առնէին կոտորած անհնարին ազնուականացն, ընդ որս սպանաւ եւ Օկտաւիոս եւ Մարկոս Անտոնիոս ճարտարախօս հոյակապ (87): Իբրեւ զգաստ լինէր Սուղղա իւրացն անցելոց՝ եդ զդաշինսն եւ անդէն աճապարեալ դայր յԻտալիա: Մարիոս վաղվաղակի յետ ընտրութեանն եւթներորդ անգամ ի հիւպատոսութիւն՝ մեռաւ ջերմամբ վասն անչափ շուայտութեանն եւ տագնապելով յահէ անտի Սուղղայ (86): Իսկ Կիննա անդրէն մերոց զօրաց սպանաւ յաղմկի ուրեք, յորժամ լուանն թէ մօտ հասեալ է Սուղղա (84):

Վասնզի հասեալ իսկ էր Սուղղա յԻտալիա, եւ ի ձեռն պատանեկին Պոմպէի յաղթեալ 15 գնդաց մի ըստ միոջէ, եւ յետ այնորիկ եմուտ փառաւորութեամբ ի Հռովմ (83): Բայց եւ նա սկսաւ ցուցանել անագորոյնութիւն որպէս Մարիոսն: Ահագին եւ սոսկալի էին տարագրութիւնքն, եւ մանաւանդ որ ինչ առնէր՝ ընդ կասկածանօք էր. սպանողքն առնուին զվարձս սպանութեանն իւրեանց. խզեալ անկեալ էին ամենայն կապք եւ զօրք բնութեան: Եւ ընծայի թիւ համարոյ սպանելոցն 15 այրք երեւելիք որ երբեմն հիւպատոսքն կացեալ էին, 90 սինկղիտիկոսք, 2600 ասպետք, եւ քաղաքացիք առաւել քան զ100,000: Զդոյն չափ ընչիցն զոր դահիճքն յափշտակեցին: Վարձկան զօրն Սուղղայ իբրեւ 120,000 այր՝ կային յԵտրուրիա ծախուք Ետրուրիացւոցն. ի Հռովմ 10,000 այր ի գերեաց առ զիրաւունս քաղաքակից հռովմէութեան եւ զինչս այնոցիկ՝ որ տարագիրքն լեալ էին, զի լինիցին նորա իբրեւ անձնապահք, առեալ զնոսա ի պաշտպանաւորս, որք եւ ի նորա անուն կոչեցան Կոռնելեանք: Յետ այնորիկ եւ ընտրել զանձն ի դիկտատորութիւն մշտնջենաւոր, եւ յօրինեալ կարգէր զկարգս սահմանադրութեանն ըստ պատրիկացն կամաց, ըստ այնմ յօրինուածոյ ուստի այնչափ քաղաքային խռովութիւնքն եղեն: Հազարապետքն անդրէն յառաջին աննշանաւոր կերպարանս դարձան. թիւ սինկղիտիկոսացն էր 500, եւ հարկահանացն թիւ աճեցեալ եղեւ 20, իսկ հաւագիտացն եւ քրմապետացն 15, եւ ընկալաւ ծերակոյտն զգործ դատաւորութեան յետս եւ զիշխանութիւն տալոյ զպաշտամունս (81):

Նա յետ երկուց ամաց ի բաց եդ ինքնակամ զիշխանութիւն իւր, եւ ընտրեալ զհիւպատոս եւ ինքն գնաց ի գեւղ իւր (79).

բեալ. առնէին ձերբակալ զերեւելիս երեւելիս արս ի Հռովմայեցւոց, զի ընդ բազմապատիկ արծաթոյ տացեն զնոսա յետս: Յայն ամս ժողովուրդն Հռովմայեցւոց տայր յանձն Պոմպէի (Գաբինեան օրինօք) դիկտատորութիւն ի վերայ կղզեաց եւ ծովեզերաց ընդարձակ իմն եւ անարգել իշխանութեամբ (67): Պոմպէոս կազմեալ պատրաստեալ արծաթով, զօրու եւ նաւուք ջնջեաց սրբեաց յերիս ամիս զամենայն ծովն Միջերկրական ի հինից անտի, եւ անդէն յիւրեանց իսկ աշխարհին առ նա զամուր ամուր տեղիս եւ զքաղաքս նոցա, եւ ի հազարաւոր Հռովմայեցւոց գերելոց անտի զոր եգիտ առ նոսա՝ եդ գաղթականս ի Սոլէք քաղաքին Կիլիկեցւոց, որ յայնժամ հետէ Պոմպէապոլիս կոչեցաւ, վասն խափանելոյ զի մի միւսանգամ լինիցի սկիզբն հինից: — Այն ինչ ի գլուխ հանեալ Պոմպէի զպատերազմն հինից՝ անդէն յանձն եղեւ նմա Մանիլեան օրինօք հրամանատարութիւն (երկրորդ) պատերազմին ընդդէմ Միհրդատայ:

Քանզի Նիկոմեդէս Գ. Թողեալ էր կտակաւ զԹագաւորութիւն իւր Հռովմայեցւոց, բայց յարձակէր Միհրդատ հզօր գնդաւ ի Բիւթանիա (75): Լուկուղղոս զօրավար առ զառաջնորդութիւն պատերազմին, հար զօրավիգ նաւացն Միհրդատայ (73), եւ յետ յաղթութեանց ինչ՝ զԲիւթանիա եւ զՊոնտոս հնազանդէր (72—71). եւ Միհրդատ անկանէր փախստեայ առ Տիգրան Թագաւոր Հայոց (70): Բայց եւ անդ յաղթեաց Լուկուղղոս ի ճակատուն որ առ Տիգրանակերտաւ (69) եւ Արտաշատաւ (68) մերձ:

Բայց վասն բազում կռուածի զօրացն եւ դժկամակութեան նոցա չէր ինչ նմա հնար հանել ի գլուխ զպատերազմն, մանաւանդ զի եւ բարեկամք Պոմպէի ի ծերակուտին ջանային զի նմա տացի առաջնորդութիւն զօրուն. յայն ամս դարձաւ Լուկուղղոս ի համբաւաւոր բուրաստանս իւր եւ ի մեծագանձ ստացուածս իւր ի Հռովմ, (տարեալ ընդ իւր յՊոնտոսէ զառաջին տունկ հալքէ մրգոյ ի Կերասունս քաղաքէ Պոնտացւոց): Պոմպէոս այնուհետեւ առնոյր ըստ իւրում ցանկութեանն զպատերազմապետութիւնն հանդերձ մեծաւ իշխանութեամբ (67): Յետ միոյ յաղթութեանն առ Եփրատաւ՝ եդ Տիգրան դաշինս (66). իսկ Միհրդատ գնաց փախստեայ ի Բոսփորոս (65). եւ վասն ի ձեռաց Հռովմայեցւոցն ապրելոյ, քանզի իւր իսկ որդի Փառնակ յետս եկաց ի նմանէ՝ առնոյր զդեղն զոր միշտն կրէր առ իւր, բայց իբրեւ չզօրէր այն՝ վասն զի սովորեալ իմն էր ընդ այն՝ հրամայէր հարկանել միում յանձնապահացն. հրամանն եւս Պոմպէոս Թաղել զդիակն նորա ի շիրիմս Թագաւորացն Պոնտացւոց ի Սինոպ (63): Մնաց Տիգրանայ աշխարհն Հայոց Մեծաց, բայց Պոնտոս եւ Բիւթանիա հանդերձ Պափղագոնիաւ, Կիլիկիաւ եւ Պամփիւլիաւ; Ասորիք հանդերձ Փիւնիկեաւ՝ նահանգք եղեն Հռովմայեցւոց, եւ եղե-

զրկեալ թագաւորութեանն Սելեւկեանց. Պոմպէոս եհաս առանձինն թագաւոր. Փառնակ առ զՎոսպորոս մատնութեանն վարձս (63)։
Այս եւ ի Հրէաստանի բարձ Պոմպէոս զպատիւ թագաւորութեանն ի միջոյ։ Այսպէս կարգեալ եւ յարդարեալ զիրս Ասիացւոցն՝ եմուտ շքով եւ ձայնիւք ի Հռոմ, եւ վասն մեծարոյ զաւէրութիւն եւ զօրէնս առաջնորդութեանն հանդերձեալ՝ ընկալաւ գովութիւն եւ զյուղատիս խրաւամբք եւ սիրեցին զնա քաղուածք (61)։

## 362

Զգուշանէր արդեւք Պոմպէոս տեղի ձայնանաց իւրոց եթէ ընդ այն ժամանակս Մ. Տուղղիոս Կիկերոն հիւպատոն չարաբերութանէր զՀռոմ ի կործանմանէն։ Սա էր ի տոհմէ նոր ազնուականնաց[1] (ծն. 107), բայց տակաւ աշտիճան յաշտիճանէ եկն եհ ի հիւպատոսութիւն։ Ընդէն առ սորա հիւպատոսութեամբ Կատիլինաս այր ժանտ եւ չարագործ անհնարին՝ որ ի ժամանակի հալածանացն առ Սուղղաւ բազում ինչ անարգութեամբ էր գործեալ, եւ յայնմ հետէ երկիցս ջանացեալ հիւպատոսութեան հասանել, եւ իբրեւ ոչ որպէս կամէրն եղեւ՝ եդ խորհուրդ ի մահ զհիւպատոսն եւ զսինկղետիկոսն կոտորել եւ ապա զՀռոմ հրձիգ առնել. գումարեալ էր նա գունդ մի ի խորհրդակցաց իւրոց եւ ոչ զք էր որ զխտէր ինչ զխտանդէն որ մնա առ կուրծս կայր (64)։
Ա՛ռայն Կիկերոն զգաց զիրսն ի ձեռն Փուլուիայ կնոջ եւ որոտայր ի վերայ նորա ի ծերակուտին սաստիկ եւ ուժգին ճառիւք, մինչեւ ի դէպ համարեցաւ Կատիլինեայ խուսել ի քաղաքէ անտի։ Այլա եւս ունել Կիկերոն զոմանս ի մխտրայինցն ընդ նմա եւ սպանանել, եւ Պետրէիոս զօրավարն հարկանէր զԿատիլինեայ ի սաստիկ ճակատուն որ առ Պիստորիաւ գրգռեցաւ (63)։ Ա՛ռ Կիկերոն անուն պատուոյ՝ "Հայր հայրենեաց"[2]։ Այլ վասն այսր ամենայնի գրգռեցաւ ընդ նա նախանձ փառասիրացն՝ որ եւ ժողովրդեանն թերին ածէին։
Յորժամ յաղթութեամբ դարձաւ Պոմպէոս ի կողմանց Ասիացւոց՝ յամենայնի եւ ի բնաւի առաւելին քան զամենեսին նա երեւէր ի տէրութեանն, բայց կայր ինչ կողմն ի մէջ սինկղետիկոսացն հակառակ նորա, մանաւանդ Կատոն Կրտսերն Ուտիկացի՝ որ բարեկամ եւ նախանձայոյզ էր առաքինութեան եւ ազատութեան, մինչեւ ինչ ինչ ի բանից Պոմպէի չելանէր ի գլուխ։
Իսկ նախանձորդ նորա եւ ոսոխ էր Գայիոս Յուլիոս Կեսար՝ յազնուական տոհմէ, շքեղ կերպարանօք, մեծատուն, զօրաւոր մտօք եւ գործովք, մինչեւ զոյգ երեւելի էր ճարտարխօսութեամբ եւ մատենագրութեամբ՝ որպէս զօրավարութեամբն եւ զինուորու-

1 Homo novus. 2 Pater patriae.

թեանն. ուր անչափ առատութեամբն յարեցոյց զպատուամս ի ժողովրդեանն յինքն, առ նա իշխանութիւնս բաղդամս ի անէրութեանն, ապա չզբաւ պրետորութեամբ ի Սպանիա, անդ կացեալ զօրավար՝ Հնազանդեաց զկողմն մի աշխարհին որ տակաւին չեւ էր նուաճեալ. կարգէր յօրինէր, հաստատէր խաղաղութիւն եւ անդէն դառնայր փառօք եւ աւարաւ ի Հռոմ (62 — 60): Այն ինչ հակեալ էր Պոմպէոս եւ միաբանեալ լեալ ի կողմն այնորիկ որ ժողովրդեանն թեկն անձէին՝ եկն Կեսար եւ յայլ իմն կերպարանս զերանն շրջեաց:

## 363

Յանկարծ Կեսար յինքն զՊոմպէոս եւ զայրն մեծատուն զԿրասսոս, եւ երեքին մտին ի դաշն ընդ միմեանս լինել օգնականս իրերաց, եւ այնպէս եկաց իշխանութիւն տասնիցն Երիցն արանց կամ Եռապետութիւն (60): Այնուհետեւ օգնական եղեն Կեսարեայ երկոքին ընկերք նորա հասանել նմա հիւպատոսութեան (59): Իբրեւ հիւպատոսն եղեւ Կեսար՝ խորհուրդ ի մէջ արկանէր զերկիրս ինչ կալուածոց՝ աղքատաց ի քաղաքացեացն բաժանել, զի ածցէ զժողովուրդն զհետ իւր. իբրեւ ընդդէմ դարձաւ ծերակոյտն, ինքնին իւր իշխանութեամբ՝ Կրասեայ եւ Պոմպէի առնէր զգործն յանձն: Եւ այնպէս առ դիւրաւ զկուսակալութիւն երկուց աշխարհացն՝ Գաղիացւոց եւ Իլիւրիկեայ վասն հնգամենից ժամանակի, եւ եկն այնու պատճառաւ ժողովելոյ զհետ իւր զունդս:

Նա հաստատագոյն զկարեկանութիւն երից արանցն զօծելոյ՝ նա Կեսար զդուստր իւր զՅուլիա՝ Պոմպէի կնութեան, եւ ի ձեռն Կղոդեայ հասարակապետի մարթանօք զԿատոն եւ զԿիկերոն հեռացուցին (58): Թէպէտ եւ Կիկերոն կոչեցաւ այարէն վաղվաղակի յետս թելադրութեամբ Ադնոսի Միլոնի հասարակապետի ժողովրդեան, բայց Կատոնի եռամն պարապել առնաւ զԿիպրոս (57): Նա եւ յարժամ չէրն Կեսար ի Հռոմ՝ ամբարձ զբնկերան իւր ի պատիւ հիւպատոսութեան, եւ տուաւ ընդ այնր ձգեցին զիշխանութիւն կուսակալութեան նորա այլ եւս հնգամենից ժամանակ: Յետ այնորիկ առնոյր Պոմպէոս զկուսակալութիւնս Սպանիայ եւ Ափրիկեցւոց, իսկ Կրասոս զկուսակալութիւն Ասորւոց (56):

Կրասոս առ ագահութեամբ եւ փառասիրութեամբ եդ աշաւանս անձինն իշխանութեամբ ի վերայ հզօր անէրութեանն Պարթեւաց, որոց թագաւորութեան (հաստատելոյ յամի իբրեւ 256) սահմանք էին յԵփրատ գետոյ մինչեւ ցԱրածանի: Զամենայն հայն առնէր կապուտ կողոպուտ զմեհեանսն, նա եւ ոչ ի տաճար անգամ Աստուծոյ ճշմարտի յԵրուսաղէմ խնայէր, այլ անտի առեալ 8000 տաղանդ (54): Այլ իբրեւ շարժեալ իմն խաղայր յառաջ՝ զօրծեցին նմա խնամութեամբ դարան հրոյք եւ ա-

ւորն, ջնջէր զզօրս նորա եւ զնա հանէր հալածական ի Թագաւորութենէն, եւ գրէր ի Հռոմ Թէ Եկի, տեսի, յաղթեցի[1]: Իսկ ի յաջորդ ամին յաղթէր Կեսար կողմանն Պոմպէի եղելոյ յԱփրիկէ, վասն որոյ յետ ճակատուն առ Թափսաւ՝ յորում 50,000 զինականքն անկան եւ Կատոն անձին արար յՈւտիկա ստոյիկեան իմն հանդարտութեամբ, զՆումիդիա առնէ նահանգ Հռոմայեցւոցն (46), Սպանիա ամենեւին իսկ հնազանդեալ նուաճի (45), եւ այնպէս սպառի ջնջի ամենայն յոյս կողմանն ընկերհաշտութեան:

## 365

Դառնայր Կեսար ի Սպանիոյ ի Հռոմ իբրեւ տէր եւ հրամանատար տէրութեանն Հռոմայեցւոց, անդ ողջունէր իբրեւ Հայր Հայրենեաց, եւ ծերակոյտն կարգէր զնա դիկտատոր ցկեանս, իսկ ժողովուրդն՝ հազարապետ ժողովրդեան հանդերձ հոգաբարձութեամբ բարուց: Բայց ինքն Կեսար ջանայր զասպարական ձեւն պահել, զի հանդարտեցուսցէ զմիտս այնոցիկ որ ընդ ընկերահաշտեաց առաջնորդութիւն կամէին, փոյթ ի վերայ ունէր յանկուցանել յինքն զերեւելի երեւելի արս՝ մեծամեծելով զնոսա ի ծերակոյտ անդր (բազմացուցեալ զԹիւ սենատորիկոսացն իբրեւ 900) եւ շնորհելով պաշտամունս, զզօրականսն ածէր զիւրեւ պարգեւօք եւ կալուածովք, զամբոխ ժողովրդեանն՝ արծաթով եւ բաշխմամբ ցորենոյ, ընթրեօք եւ հանդիսիւք խաղալեաց. մեծանդամեայն առնուացուցանէր զօրէնս եւ զկարգս դատաստանաց, զվաճառաշահ եւ զմշակութիւն առնէր յառաջադէմ, եւ զարդարէր զքաղաքն մեհենօք, թէատրոնօք, հրապարակօք (որպիսի ինչ է հրապարակն Յուլեայ) եւ այլովք նշանաւորօք, եւ յօրինէր պողոտայս եւ ջրէջս, եւ էր մտադիր յառաջադիմութեան արուեստից եւ գիտութեանց, եւ ի նորա իսկ անուն անուանէր զիրն ամսեաց՝ Յուլիական, քանզի ինքն Յուլիոս Կեսար ի ձեռն Սոսիգենեայ աստեղագիտի աղեքսանդրացւոյ տայր գործել ուղղագոյն զհամար ամսեացն: Կարգէր զօրավար պարապետս, եւ անձն նորա նուիրական հրատարակեցաւ: Զարդարէր նա զՀռոմ գեղեցիկ շինուածովք. շինէր վերստին զԿարքեդոն եւ զԿորընթոս, կամէր եւ այլ բազում մեծամեծ ինչ իրս գործել, զոր եւ ոչ իսկ կատարել մարթէր: Եդեալ էր նա ի մտի առնուլ ի Պարթեւաց զվրէժ մահուն Կրասոսի, եւ զարեւելս ընդ արեւմտից ի մի տէրութիւն միաւորել: Նա խորհեցաւ եւ զմեծ խորհուրդն հնազանդելոյ զամենայն հիւսիսի ընդ Հռոմայեցւոց իշխանութեամբ, եւ պատրաստէր յարշաւանս յայնոսիկ:

Բայց հին բարեկամք ազատութեանն չկարէին մոռանալ զկործանումն առաջին կերպարանաց առաջնորդութեանն եւ ազատն

1 Veni, vidi, vici.

Կատոնի) որ եկուլ կայծակնաւոր հրոյ, եւ բազումք եւս ի պատերազմաց անտի նոյնպէս առնէին անձանց, եւ ճակատամարտքն առ Փիլիպպեաւք լինէր գերեզման ընկերհաշտութեան Հռոմայեցւոց (42): Վասնզի յայնմ հետէ ոչ վասն ազատութեան ինչ կռիւ էր այլ վասն տէրութեան եւ իշխելոյ:

Լինել միւս եւս նոր բաժանումն սահմանաց՝ առ Անտոնիոս զարեւելս տէրութեանն, Օկտաւիանոս զարեւմուտս, Լեպիդեայ տուաւ Ափրիկէ, Իտալիա էր հասարակաց (40): Բայց իբրեւ Լեպիդոս իւր առնուլ կամէր զՍիկիլիա, յանկարծ Օկտաւիանոս զզօրս նորա յինքն, եւ հարկ լինէր այնուհետեւ Լեպիդեայ ի բաց ելանել ի թուոյ արանցն երից, եւ մնացին արք երկու (37):

Սակայն արշաւանաց պատերազմացն զոր մղէր այնուհետեւ Անտոնիոս ընդ հզօր ազգացն Հայոց եւ Պարթեւաց եւ ընդ դրացեաց նոցա (36—34), եւ վասն յաղթութեանցն զոր յաղթէր Օկտաւիանոս ազգաց ազգաց բնակելոց ի Դալմատիա եւ ի Պաննոնիա (35—33), ոչ այնպէս վարժապետ զրգռեցաւ նախանձաւորութիւն նոցա ընդ միմեանս: Այլ իբրեւ Անտոնիոսն յԵգիպտոս ազգի ազգի անհարգութեանց տայր զանձն ընդ վաւաշանս դշխոյին Կղէոպատրայ, եւ զհռոմէական նահանգսն տայր պարգեւ նմա եւ երկուց որդւոց նորա, եւ զկին իւր զՕկտաւիա զգարեբարոյն զքոյր Օկտաւիանեայ մերժէր յետս, եւ նախիմբք առ-տեղի Հռոմայեցւոցն լինէր (33—32); անտ ուստ Օկտաւիանոս ընդ խմաստուն զօրավարի նաւաց իւրոց Ագրիպպայ յանկուցանէր յինքն զժողովուրդն Հռոմայեցւոց ազատութեամբ եւ խաղաղութեամբ, առնէր մեծապարգեւ զզօրականն բաժանմամբ անդաց եւ ագարակաց, եւ ունէր զօրս եւ նաւս համակ ի հրահանգս կրթութեան: Այսպէս արկանէր Օկտաւիանոս զհամբաւ վասն գործոցն Անտոնեայ խռովութեանց յիւր օգուտ ի կիր, եւ տայր ծերակուտին առնել վճիռ թէ անկեալ է ի պատուոյ իւրմէ Անտոնիոս, եւ յայտ արարեալ պատերազմ ընդ Կղէոպատրայ:

Արեւմուտք եւ արեւելք պատրաստէին ի մարտ պատերազմի ընդ միմեանս. յուսով տիրութեան Հռոմայեցւոց տայր Կղէոպատրա ուրախութեամբ՝ արծաթ եւ տորմիղ նաւաց. զրգռէր հոյակապ նաւամարտիկ կռիւն առ Ակտիոնիւ (31, 2 Սեպտեմբ.). ի կէս պատերազմին զնայր փախստեայ Կղէոպատրա եւ շամշեալն Անտոնիոս հասանէր տագնապաւ զհետ նորա. տորմիղ նաւացն, եւ յետոյ զօրն եւս ցամաքային որ առանց զօրավարի թողեալ լքեալ կայր՝ անց ի կողմն Օկտաւիանեայ յետ 7 աւուրց (31). Աճապարեաց Օկտաւիանոս զհետ նորա յԵգիպտոս եւ դիմեաց առաջի քաղաքին Աղեքսանդրացւոց. առաքէր Անտոնիոս պատգամ առ Օկտաւիանոս գալ ի մենամարտիկ կռիւ, եւ իբրեւ մերժեցաւ՝ հանեալ ճակատեցուցանէր զզօրսն, բայց եւ նոքա անցին ի

րիկեան (Հունգարիա, Կրօատիասլաւոնէն, Տիրոլ, Սալցպուրկ, Հարաւային Բաւարիա, Ստիրիա, Կարինթիա, Կրանիա, Աւստրիա եւ մասն մի Բաւարիայ) (15)։

# 369

Այսպէս տարածեցաւ կալաւ իշխանութիւնն Հռոմայ՝ գազանին չորրորդի որ էր ահեղ եւ զարմանալի եւ հզօր առաւել, եւ ժանիք նորա երկաթիք, ուտէր եւ մանրէր, եւ զմնացորդսն ոտիւք կոտորէր[1]։ Տարածեցաւ իշխանութիւնն այն ընդ գեղեցիկ թագաւորութիւնս Ասիոյ, ընդ գեղեցիկ կողմն քան զամենայն կողմանս Եւրոպայ, ընդ պտղաբերս քան զամենայն վայրս Ափրիկեայ։ Սահմանք էին իշխանութեանն Հռենոս եւ Դանուբ, Եփրատ եւ Անապատն Ասիոյ եւ Ափրիկեայ, ընդ ամենայն 25 նահանգք կայսերականք ընդ Հռոմայ ազգունական պորտայինք։

Իբրեւ զհուր որ ի քակելոյ եւ ի քայքայելոյ կեայ՝ պահէր զկենդանութիւն իւր Հռոմ ի ձեռն պատերազմացն զոր ընդ այլազգեացն տայր, եւ կլանէր իւր զնոսա, մինչ դեռ ինքն ի ներքս պառաւեալ եւ խաւթեալ էր։ — Մեծացաւ եւ զօրացաւ Հռոմ ոչ քաջութեամբ միայն այլ եւ նենգութեամբ եւ խաբէութեամբ, եւ շլացութեան իւր պատրանօքն՝ յոր ըմբռնեալ բազում անգամ ըստ արդար դատաստանացն Աստուծոյ գլխաւորք ազգացն եւ ժողովուրդք, մինչեւ թմրել իւր նոցա[2] առաջի առն միոջ կամ ազգի միոջ ցորքան ժամանակս կամէր կերն Աստուծոյ, զի յիմարութեամբ ժողովրդեանն եւ իշխանացն հաստատէ պատուհաս պատուհասից արդարութեան ի վերայ անօրէնութեանցն որ առ հասարակ շահեալ տիրեցեն։

Աշխարհակալքն ամբարտաւանք գործի ի ձեռս էին ամենակալին Աստուծոյ. ոչ այն գործ էր միայն նոցա՝ զթագաւորութիւնս կործանել, այլ եւ յանձնել զօրութեանն իւրեանց՝ սփռել հաւասար իւր կերպարանս սովորութեան եւ վարուց, որովք կողմանքն մարդաշատք երից մասանց աշխարհի մի թագաւորութիւն լինիցի, զի յորժամ եկեսցէ բանն փրկութեանն ի լրման ժամանակացն, փութանակի սփռեսցի ընդ երեսս երկրի։ — Իբրեւ այն կատարեցաւ, ապա անկաւ եւ Հռոմայեցւոց տէրութիւնն, որպէս առաջինքն քան զնա կործանեցան[3]։ Բայց Աստուած կամէր կանգնել յերկնից թագաւորութիւն մի որ ոչ ապականեսցի եւ որոյ տէրութիւնն ոչ անցցէ յազգ յայլ. մանրեսցէ եւ հոսեսցէ զամենայն թագաւորութիւնս եւ ինքն կացցէ յաւիտեան[4]։

1 Դան. Է. 7։
2 Երեմ. ԻԵ. 14 — 16։
3 Դան. Բ. 40 — 43։
4 Դան. Բ. 44, 45. անդ Է. 13, 14։

## 370

### Հռովմէական մատենագրութիւն։

Ա. Ի հաղորդութենէ անտի Հռովմայեցւոց ընդ Յունաց եղեւ բազում ինչ ազդեցութիւն ի մատենագրութիւն եւ ի կեանս Հռովմայեցւոց։ Զի գործածք յունական ճարտարացն եւ զարմանալի մատենագրական ծնունդք յունական մտաց՝ որք անձն ի Հռոմ ի քաղաքաց անտի վկանդելոց, զարթուցեալ քրքրեցին զմիտս եւ զյօժարութիւն ազնուագոյն իրիք մասին ազգին Հռովմայեցւոց։ Այս լաւագոյն մասն ազգին՝ որում գլուխ էին այրն երեւելիք Սկիպիոնքն երկոքին, Մարկելոս, Փղամինիոս եւ այլք՝ էին նպաստաւոր եւ վերակացու յունական իմաստութեան եւ քաղաքակրթութեան եւ արուեստի, ձեռն տային եւ պաշտպանէին զիմաստս Յունաց՝ բանաստեղծիցն նոցա եւ փիլիսոփայից, եւ ջանային ընդ ձեռակերտացն արուեստին՝ եւ զճարտարութիւն մտաց եւ զերպարտել ժողովրդեանն ածել զաղթականութեամբ ի Հռոմ։

1. Ի բանաստեղծութեան Հռովմայեցւոց՝ առաջին բանաստեղծական պուէտ համարի Լիւիոս Անդրոնիկոս յոյն այր՝ ազատանալի, որ եկն ընդ գերւոյն ի Տարենտոնէ առ Լիւիոս Սալինատոր եւ մնացեալ դաստիարակ որդւոց նորա՝ առ պարգեւ զազատութիւնն։ — Նեւիոս Կամպանիացի, որ զինուորեալ իւր յառաջնում Պունիկեան պատերազմին՝ էր բանաստեղծ եւ վիպասան. գրեաց զվիպասանութիւն Պունիկեան պատերազմին ըստ հին հուաղական չափոյ եւ կատակերգութիւնս ըստ յունական օրինակին. բայց վասն համարձակ զբօսու Հռովմայեցւոցն թշնամանելոյ՝ մատնէր ի պատիժս բանտի եւ վտարանդութեան։ — Էննիոս (✝ 169) յոյն Կալաբրիացի յազնուական տոհմէ, զինուորեալ ի յաղթութիւնս Հռովմայեցւոց եւ բարեկամ Սկիպիոնեայ երիցու՝ պատուեալ եւ ընկալեալ զիրաւունս հռովմէական քաղաքացւոյ. համբաւի յոյժ վիպասանութիւնն նորա վերջացեալ՝ անուանեալ Տարեգիրք[1], յորում զպատմութիւն Հռովմայեցւոցն նկարէ մինչեւ ցիւր ժամանակ՝ ըստ բանաստեղծութեան օրինի։ Դարձեալ մեւս եւս վիպասանութիւն՝ վասն գործոց եւ արութեանց Սկիպիոնեայ երիցու։ — Պակուվիոս նորին քեռորդի Բրունդուսիացի եւ Ակտիոս (ժամանակակից մանկութեանն Կիկերոնեայ) գրեցին ողբերգութիւնս եւ կատակերգութիւնս՝ ըստ ձեւոյ օրինակին Յունաց։ Յամենեցունց նոցա հազիւ հազ թէ սակաւ ինչ տողս այժմ ունիմք։

Նմին հակառակ ունիմք այժմ 20 հատուածս յԱստիոսէ Պղաւտոսէ (յառնէ անանկէ Ումբրիացւոյ ✝ 184)՝ որ եղեւ հայր հռոմէական կատակերգութեան. հատուածքն նորա թէպէտ եւ բազում մասամբք ըստ նմանութեան պուէտացն Յունաց՝ Դիփիղոսի եւ

1 Annales.

յերկրորդ Պունիկեան պատերազմէն մինչեւ ցխափել Մակեդոնիայ ի նուաճմանն Հռոմայեցւոց (148)։ Սակայն եւ ի մեծապայծ մատենէն սորա զառաջին 5 գիրսն եւեթ այժմ ողջ ունիմք, իսկ ի միւսցելոցն՝ հատուկտորս եւեթ։ Բայց է նա օրինակ եւ կաղապար այժմու նոր պատմագրութեան՝ պատճառախնդիր ոճոյն[1]։ Թէպէտ եւ չունի նա զյստակ ատտիկեցի լեզուն՝ սակայն է նորա ընդ այնր լուսաւորութիւն, սրութիւն մտաց, զատաստան առողջ, տեղեկութիւն քաղաքային եւ պատերազմական իրաց, անաչառութիւն եւ սէր մեծ ճշմարտութեան, որովք համարի նա մի ի բուն մեծամեծ մատենագրացն հնոց։

3. Փիլիսոփայութիւն՝ եւ ճարտասանութիւն կէս ընդ նմին անց ի Յունաց անտի ի Հռոմայեցիս. եւ տարածեցաւ ի նոսա մանաւանդ ճարտասանութիւնն, այնու զի կարեւոր էր այն վասն հրապարակախօսութեանց յոլովահաւաքաց ռամկավարութեան. Ստոյիկեան փիլիսոփայութիւնն մանաւանդ եգիտ ընդունելութիւն ի Հռոմ՝ ի ձեռն Պանետիոսի Հռոդացւոյ բարեկամի Սկիպիոնեանց, Լելիոսի եւ Պոլիբիոսի. քանզի գործական նկարագիր այդ փիլիսոփայութեան էր առաւել դիւրահաս գործականն Հռոմայեցւոց քան զակադեմական փիլիսոփայութիւնն Կառնէադայ որ տայր զանձն ի տեսութիւն[2], եւ տակաւ երթեալ մտանէր ի տարակուսութիւն, այնպէս զի Արկեսիղաս հիմնիչ միջին Ակադեմիայ՝ եկաց յուրաստ յամենայն ճշմարտութենէ. բայց Կառնէադէս այսպէս իմն մեղմացոյց զկարծիս նորա, թէ "վերջին սահմանք գիտութեան է նմանութիւն ճշմարտութեան, եւ որպէս եւ պատշաճ է շատանալ՝ թուելով զաստիճանս այնր նմանութեան ճշմարտութեան"։

Բայց քանզի ընդ յունական արուեստի եւ մատենագրութեան՝ մտանէր ի ներքս եւ փափկութիւն առանձին կենաց ի հանդերձս եւ ի կերակուրս եւ ի հասարակութիւնս կենաց, եւ երթային լքանէին անհետ հայրենատուր բարք եւ վարք անզգամօրէն, չափաւորութիւն եւ խստամբերութիւն, յայն սակս ել եկաց կողմն մի ի Հռոմ որոյ գլխաւոր էր Պորկիոս Կատոն՝ կալ ընդդէմ նորոգութեանցն այնոցիկ։ Լինէր Կատոն համբաւական եւ մեծաւ խստութեամբ հակառակելով ընդ այնպիսեացն՝ տայր մերժել հանել վտարանդի ի Հռոմայ զփիլիսոփայսն Յունաց (զԿառնէադէս ակադեմական, զԿրիտոլաոս պերիպատետիկեան եւ զԴիոգինէս ստոյիկեան). վարժոցք ճարտասանութեան փակեցան, Սկիպիոնքն իսկ եւ պաշտպանիչք բարուց եղեն պատուհասեալ, եւ եղան օրէնք հակառակ զեղխութեան եւ զարդուց, եւ նմին իսկ Կատոն գրէր գիրս վասն մշակութեան եւ վասն սկզբանց Հռոմայեցւոց՝ կամեցեալ ցուցանել զյստակութիւնն վարուց եւ զնա-

1 Տես վերագոյն եր. 4։ 2 Spéculation.

պատճոյձ կեանս առաքինոյն։ Բայց ստիպեալ այնու իսկ զի եւ Պլատոն ի ծերութեանն ժամանակի սկսաւ ուսանել յունարէն՝ յայտ առնէր թէ չէր եւ հնար այնպէս սերտիւ յարել ի հինն եւ ի հայրենաւորս, այլ նմին հակառակ յառաջադէմ լինել հռոմէական մատենագրութեան ընդ նոյն նորոգ ճանապարհ՝ հասանէր ի դարն ոսկի՝ զոր ցուցցէ յաջորդս։

## 371

Բ. Վասնզի առ Օգոստոսիւ եւ յառաջ իսկ քան զնա շահեալ տիրէր յունարէն լեզու եւ մատենագրութիւն ի Հռոմ. մինչեւ բազք իսկ եւ սովորութիւն լեալ էր մանկանց ազնուացն երթալ կրթել ի հռահանգս ճարտարախօսական դպրոցաց ի Յունաց աշխարհին եւ ի փոքրն Ասիա։ Օգոստոս եւ բարեկամք նորա Մեկենաս, Մեսսալա եւ Պոլիոն էին հմուտք մատենագրացն Յունաց՝ զորոց զմատեանն Օգոստոս ժողովեալ եդեալ էր ի մեծամ հասարակաց մատենադարանին ի Պաղատինեան բլրին, եւ առատութեամբն իւրեանց լինէին օգնական մտաւոր յառաջադիմութեանն. բայց մանաւանդ խաղաղութիւնն էր ձեռնտու յառաջման, քանզի Օգոստոս եւ պաշտօնեայք նորա առաջնորդեալ վարէին զներքին իրս աշխարհին, եւ հետեւոր պատերազմունքն վճարէին ի ձեռն խնարհագոյն զօրավարաց յանուն Օգոստեայ. եւ յայն սակս լինէր պարապ քաղաքացեացն տալ այնուհետեւ զանձինս ընթեռնուլ եւ ի գրել։

1. Իրաւագիտութիւն եւ ճարտարխօսութիւն առաւել քան զամենայն ածան ի կատարումն ի ձեռն Հռոմայեցւոց՝ վասն գործական մտաց նոցա եւ միութեան առ հրապարակական քաղաքային կեանս։ Ճարտարխօսութիւնն ամենեւին իսկ ընդմտեալ ի կեանս Հռոմայեցւոցն՝ համօրէն մատենագրութիւն նոցա արձակն եւ բանաստեղծականն՝ ներկաւ երանգօք ճարտարխօսութեան։ Իսկ իրաւագիտութիւնն թէպէտ եւ զկատարեալ յօրինումն ի ժամանակս կայսերացն ընկալաւ, բայց անդադար զժտութիւնք ռամկին ընդ պատրկաց եւտուն նոցա ճշդիւ ընտրել եւ որոշել զբանս իրաւանց, եւ յօրինել օրէնս։ Սերտիւ կապեալ էր ընդ զինուութեան քաղաքային իրաւանց՝ ճարտարխօսութիւնն, որ ի խառնակայոյզ ժամանակս ընկերհաշտութեանն եհաս ի ծայր բարձրութեան իւրոյ։ Նմին իրի հոյակապ ճարտարախօսք էին աղքն քաղաքագէտք Անտոնիոս եւ Լուկիոս Լիկինիոս որք ի Մարիոսեան զժտութիւնսն սպանան. հակառակորդքն ժողովրդեան որպէս Գրակքեանքն էին, խոտակէ՝ որպէս Հորտենսիոս էր, եւ նախանձորդն նորա Մարկոս Տուղղիոս Կիկերոն ութ ամօք կրսերագոյն քան զնա (Ծն. 107)։ Ի Հորտենսեայ սակաւ ինչ հատակոտորս ունիմք. բայց ի ճառսն Կիկերոնեայ զոր ունիմք մեծաւ յա-

ճոխութեանք՝ երեւի այն էր խօսողութեանք, գեղեցկաբան ճար-տարութեանք եւ արուեստիւ յանդիման կացուցանելոյ, բայց ճաշակօք, որովք մոգէր եւ բեւեռէր իւր յինքն զբազմութիւն լսողացն։ Զմեծ մասն ճառից իւրոց յետ խօսելոյ հրապարակա-ւորկանէր ընդ գրով՝ խառնելով զպարզն ածոյ փոխանորդ զօրու-թեան կենդանի բանիցն։

Յետ իրաւագիտութեանն եւ ճարտարխօսութեան առաւել քան զամենայն մտադիր էր Կիկերոն փիլիսոփայութեան։ Բայց չյօրինեաց նա նոր ինչ բովանդակած, այլ զընտրականութեան[1] զհետ երթեալ՝ յուզեալ քննեաց զամենայն բովանդակածս փիլի-սոփայիցն, եւ զիմաստութիւնն Յունաց արար դիւրահաս հայրե-նակցացն։ Բազում ժամանակս կայր նա տարակուսեալ թէ ո՛ր դպրոց նախամեծար քան զամենեսին առնիցէ, բայց առաւ յետոյ ի գործականն՝ ընտրէր զստոյիկեան փիլիսոփայութիւնն, եւ ի տե-սականն զմիջին կամ զերկրորդ Ակադեմիայն[2]։

Ի բուն երեւելի ճառից Կիկերոնի են յաջորդքս. ճառն "վասն Ռոսկեայ Ամերինացւոյ", զոր կամեցաւ արդարացուցանել յամբաստանու-թենէ սպանութեան. ճառքն "ընդդէմ Վեռեսայ", որ չարչարեալ էր զՍիկիլիացիսն ի ժամանակի անթիպատոսութեան իւրոյ. ճառն "վասն Մանիղեան օրինաց", որով առ Պոմպէոս զհրամանատարութիւն պատերազմին ընդդէմ Միհրդատայ. ճառք չորք "ընդդէմ Կատիղինայ". ճառն "վասն Մուրենայ", զոր կամէր արդարացուցանել յամբաստանու-թենէ՝ թէ յընտրութիւնսն կաշառաւ վարեցաւ. ճառն "վասն Արքիայ պուետի", զի յարուցեալ էր հակառակութիւն վասն նորա թէ չունի իրաւունս քաղաքացւոյ. սքանչելի ճառն "վասն Միղոնայ", յաղագս ամ-բաստանութիւն կրելոյ նորա թէ սպանեալ իցէ զԿղոդիոս ի վերայ Ապ-պեան ճանապարհին. ճառն "վասն Սեստիոսի", որ ջանացեալ էր նպաստ դառնալոյ Կիկերոնեայ յաքսորանացն՝ եւ ի կուսակցացն Կղոդեայ կրեալ ամբաստանութիւն. ճառն զոր ի ծերակուտին խօսեցաւ "վասն Մարկե-ղեայ", վասն դարձին յաքսորանաց. ճառն "վասն Դէոտարայ արքայի Գաղատացւոց զորմէ ամբաստանութիւն լեալ էր թէ սպանութիւն խորհեալ է զԿեսարեայ. իսկ 14 "Փիղիպեան ճառքն", ընդդէմ Անտո-նեայ՝ են պսակ ճարտարխօսութեանն Կիկերոնի։ — Ի "Հռետորական գրոցն", նորա յորս զարուեստ ճարտարխօսութեանն ուսուցանէ՝ են նշա-նաւոր յաջորդքս. 1. երեք "գիրք զճարտարախօսէ". 2. "Բրուտոս կամ վասն երեւելի ճարտարախօսաց". 3. "Ճարտարախօսն", որ է գրեալ առ Բրուտոս. 4. վասն քաջաց ճարտարախօսացն յորում զԱտտիկեցի ճար-տարխօսութիւնն նախամեծար քան զԱսիացի (յոյն) ճարտարխօսու-թիւնն առնէ։

Ի փիլիսոփայական գրոց նորա են երեւելի. գիրք "վասն ընկերհա-ւութեան", յորում ի հանդէսի անցուցեալ քննէ թէ ո՛ր կերպարանք առաջնորդութեան քաջ քան զամենայն իցէ, եւ համարի քաջ քան զամենայն զհռովմէական առաջնորդութիւնն որ յառաջ քան զժամանակս Գրակքեանցն էր. եւ վախճան գրոցն առնէ մեւս եւս ինչ գրովք որոյ անուն "Անուրջք Սկիպիոնեայ", յորում ցուցանէ զընդունայնութիւն ա-

1 Eclecticisme. 2 Տես վերագոյն եր 477։

մնոցն մարդկեղէն իրաց: "Ցուցկուղականն խնդիրքն,, որ են մտածութիւնք եւ կարծիք վասն մեծամեծ խնդրոց մարդոյն՝ զմահուանէ, զանմահութենէ, զէութենէ ոգւոյն, զաստուածոց եւ զդիւց նոյնպիսեաց: Ի խօսսն "վասն գլխաւորական բարութեան,, եւ "գլխաւորական չարեաց,, յանդիման կացուցանէ զկարծիս Յունացն փիլիսոփայից վասն ճշմարիտ երջանկութեան եւ վասն վախճանի կենաց՝ աւանց մուծանելոյ յանձնէ վճիռ ինչ ի ներքս: "Ցակադեմական խնդիրսն,, ճառէ զվարդապետութեանց Հին եւ Նոր Ակադեմիայ, եւ ի գիրսն "վասն բնութեան աստուածոց,,, "վասն ըղձութեան,, եւ "վասն ճակատագրի,, (որ ոչ ամբողջ է) տայ կարեւոր կարեւոր տեղեկութիւնս վասն կրօնական խորհրդոց ժամանակին իւրոյ: Գիրքն փոքրիկք՝ "Կատոն կամ վասն ծերութեան,, եւ "Լելիոս կամ վասն բարեկամութեան,, երեւելի են գեղեցկութեամբ բարբառոյն եւ պատշաճ յօրինմամբ: Ի պարտուց հատածի գրեաց զգիրսն "վասն պարտուց,, առ Մարկոս որդի իւր որ ուսանէր յԱթէնս, յորում ցուցանէ թէ որպէս պարտ իցէ վարել այր քաղաքացի յայլ եւ այլ հանգամանս քաղաքային կենաց, եւ լի է մտաւորն գեղեցիկ եւ զարմանալի բարոյական սկզբամբք:

Նաեւ ի սոցանէ կան Կիկերոնեայ թուղթք բազում յոյժ թուով՝ գրեալ առ բազումս՝ մանաւանդ առ բարեկամն իւր Պոմպոնիոս Ատտիկոս եւ առ Բրուտոս եւ առ եղբայր իւր Կուինտոս, յորս խառն են եւ թուղթք առ Կիկերոն: Այս թուղթք ոչ միայն ճարտարագրին նկարեն զներքին հանգամանս խառնակեալ ժամանակին այնորիկ՝ մինչեւ բազում անգամ աղբեւր են մեկնութեան պատմական ինչ դիպաց լինել, այլ եւ ցուցանեն զայրն հոյակապ զԿիկերոն ամենեւին ըստ ներքին բնութեանն. երեւի ի նոսա Կիկերոն տանուտէր հաւատարիմ տան իւրոյ, բարեկամ մտերիմ եւ ինքնաբաւ ընկեր առհմից ազնուականացն՝ որոց հաւասար ինքն կամէր լինել շքեղ տամբք ի գիւղս, մեծերովք գործոց ճարտարացն եւ բազմախորանիկ սեղանովք՝ որոց համեմք ինքն համարեալ էին բանք ճարտար մտաց եւ խօսք օգտակարք յուսումն. երեւի դարձեալ այր գործոյ, ժիր եւ վաստակաւոր, սակայն զփառս եւ զպատւիս պատիւ համարի նա ի վեր քան զամենայն ինչ. գովութիւն կամ ատգտանք որ յայլոց ի նա լինել իցեն՝ յուզեն եւ շարժեն զնա յոյժ, եւ ինքն առաւել ինքն քան զչափն հաճեալ ընդ ինքն՝ անձնսիրութեամբ լինի քարոզ ճարտարախօս՝ պարծանաց իւրոց. եւ համառօտ խօսիւ ասել՝ է լի ձիրիւք՝ այլ տաանց քաղաքացութեան եւ բարոյական հաստատութեան:

2. Ի պատմագրութեան յետ տարեգրութեանցն սկիզբն առնէին Հռոմայեցիք գրել պատմական յիշատակարանս՝ յորս նշանակէին զերեւելի երեւելի անցս գործոց քաղութեան արանց ամանց կամ զիրիք իրիք արշաւանաց պատերազմի: Այսպիսի մատեանս յօրինեցին Լուտատիոս Կատուղոս, (ընկեր Մարիոսի ի պատերազմին Կիմբրացւոց) Էմիլիոս Սկաւրոս այր սենեկապետիկոս (որ բազում ինչ վճարեաց ի պատերազմին Յուգուրթայ), Սուղղա եւ ապեան մեծատուն Տիտոս Պոմպոնիոս Ատտիկոս՝ բարեկամ Կեսարեայ եւ Կիկերոնի. ի սոցանէ սակաւ ինչ եւ կամ ոչինչ այժմ ունիմք. միայն յիշատակարանքն Յուլիոսի Կեսարեայ որ վասն գաղիական եւ քաղաքային պատերազմին են՝ կան պահին, եւ են գե-

եւ Յ՝ կիսով եւեթ), եւ համանէ պատմութիւն նորա մինչեւ ցվերջաւորութիւն Ցասն արանցն։ — Իսկ 500 մատեանքն Ցերենեայ Վարոնի (ԾՆ. 116) վասն այլ եւ այլ իրաց՝ մանաւանդ վասն հնութեանց Հռոմայեցւոցն՝ չեն ի միջի բաց յերից գրոց վասն մշակութեան եւ ի 6 դպրութեանց որ վասն հռոմայեցի լեզուի են (որք ի բնէ 24 դպրութիւնքն լեալ են)։

3. Հռոմէական բանաստեղծութիւն եհաս ի ծայր կատարելութեան ի ձեռն Վիրգիլեայ (+ 19), Որատեայ (+ 8) եւ Ովիդեայ (+ 17 յառ Քր.)։ Վիրգիլիոս Մարոն Անտեանն՝ ըստ օրինակի նմանութեան Հոմերայ նկարէ զանձն եւ զնեղութիւն ճանապարհորդութեան Էնեայ յառ կործանման քաղաքին Տրովացւոց, եւ զնաւարկել ի ծովեզերեան Լատինաց, եւ յառ այնորիկ կապէ ընդ նմին զհիմնարկութիւն քաղաքին Հռոմայ եւ զփառաւորութիւն Յուլեան ցեղին (Օգոստեայ) սերելոյ ի Յուլոսէ Էնեայ որդւոյ։ Զայս գործ որ գեղեցիկն է բազմաւորն, եւ ծիրղ նկարագրաց վայրաց եւ քաղցրահնչիւն՝ ըստ յօրինմանն, կամէր տակաւին ուղղել իւրք իւրք, այլ արգել զնա մահն տարաժամ։ Իսկ Էնէադականքն նորա որ ոչ ինչ ընդ հաւ քան զնոսա գեղեցիկ են՝ յօրինեալ են ըստ օրինակի նմանութեան Թէոկրիտեայ[1]. բայց քանզի չէր հնար նմա ըստ օրինակի Թէոկրիտեայ զբարբառ ռամկին արկանել ի նոսին ի կիր՝ այլ կրթեալ բարբառով յօրինէր զնկարագիր անպաճոյճ եւ զանապական կենաց հովուութեան՝ յայն սակս ի մէջ ձեւոյ եւ նիւթոյ Վիրգիլեան Էնէադականացն գոյացեալ հակասականութիւն ինն է. մանաւանդ զի եւ ազգն հռոմէական չգայր ինչ այնչափ զհրապոյրս խաղաղ հովուական կենացն։ Այլ նմին հակառակ՝ Մշակականք նորա ի 4 գիրս՝ ոչ միայն ըստ ձեւոյն է գործ ճարտարագործ անհամեմատ գեղեցիկ եւ արուեստական, այլ եւ նիւթն եւս է բուն ազգային եւ ըստ մտաց եւ յօժարութեան հռոմայեցւոց։ — Որատիոս Փղակկոս հզօրագոյն եւ յաջողակագոյն քան զնա՝ այլ ոչ յատուկ եւ պարզ իբրեւ զնա, էր այր կենցաղասէր եւ փիլիսոփոս ըստ վարդապետութեան Արիստիպպեայ[2]։ Մեկենաս՝ բարեկամ նորա եւ ձեռնտու եւս նմա ունել յերկիրն Սաբինացւոց, ուր գրէր զմեծ մասն Նուագացն իւրոց, (ըստ օրինակի նմանութեան Աղկեայ եւ Սափփոյ[3]), զհեղինակութիւնն եւ զբանաստեղծական թուղթսն։ — Ովիդիոս Նասոն էր թերեւս աջողագոյն քան զամենայն արուեստս Հռոմայեցւոց, բայց թեթեւամիտ քան զամենեսեան։ Էր նա յառաջագոյն կցորդ կենաց երեւելեաց գիտնոց ժամանակին իւրոյ, մինչեւ յանցանօք ինչ որ ոչ ծանօթ են՝ աքսորէր ի Սկիւթացւոց առ Պոնտոս ծովու, եւ անդէն զկեանսն վախճանէր։ Ծանօթք քան զամենայն գործս նորա են՝ Թուղթք կանանց դիւցազանցն, Այլակերպութիւնքն՝ յորս

1 Տես վերագոյն եր 475։ 2 Տես հատոր 288։ 3 Տես վերագոյն եր 416։

զկրօնական աւանդութիւնս Յունաց եւ Հռովմայեցւոց զարդարէ գեղեցիկ պատմութեամբք, եւ յետոյ զամենայն հանէ ի փառաւորութիւն Յուլեան ցեղին (Օգոստեայ), եւ «Ձրանսկանքն» նորա՝ այս ինքն Թուղթքն զոր ի Պոնտոսէ գրէր ի Հռոմ։

Յաշխարհանաց բանաստեղծութեան՝ նմանելով բանաստեղծիցն Աղեքսանդրացւոց՝ գրեցին Կատուղղոս (ծն. 86) Վերոնացի, Տիբուղղոս (ծն. 54), Պրոպերտիոս (ծն. 40)։

Ընդհանրական իմն նկարագիր ունին ընտրելն Հռովմայեցւոց բանաստեղծք՝ ի Յունացն բանաստեղծից այն է, զի ի գործս Հռովմայեցւոցն բանաստեղծից առաւել արժանի մտադրութեան է ձեւն քան եթէ նիւթն. քանզի Հռովմայեցիքն ամենեւին համեալ ի սէր ճարտարախօսութեան՝ մանաւանդ ուշ ունէին ողորկութեան եւ զարդու յօրինմանն, քաղցրաբարբառ հնչման բանիցն եւ դաշնակաւոր իմն չափոյ՝ քան եթէ խորութեան խոհից եւ սաստկութեան ցնորիցն եւ բարձրութեան խորհրդոցն։

4. Ի գեղեցիկ արուեստս ոչինչ առանձինն սեփհական բերին յառաջ Հռովմայեցիքն։ Ընդրիքն եւ նկարքն նոցա յօրինեալ էին ի ճարտարացն Յունաց։ Այլ նշմարն հասարակ երեւի մեծագործութիւն Հռովմայեցւոցն ի շինուածս իւրեանց, ի ջրմուղս, ի գետնափոր անցս, ի պողոտայս եւ յայլ եւս նոյնպիսիս։ Կանգնեցին նոքա բաղանիս, թէատրոնս եւ մեհեանս, յորոց մի եւ Ամենայնից մեհեանն[1] էր զոր Ագրիպպայն եռ շինել՝ որ է այժմ մի ի մեծամեծ զարդուց Հռոմ քաղաքի. եւ այնչափ կերպարանափոխ եղեւ քաղաքն այն՝ մինչեւ ասել Օգոստեայ թէ՝ Աղիւսեայ գտի զՀռոմ եւ թողում կճեայ։

## 372

### Բարք եւ առանձին կեանք Հռովմայեցւոց։

Ինչք եւ մեծութիւնք որ յետ Պունիկեան, Մակեդոնական եւ Ասորւոց պատերազմացն անցին ի Հռոմ՝ ամբաւ իմն եւ առանց չափոյ էին, եւ յայն սակս գործեցին փոփոխութիւն ի բարս եւ ի վարս Հռովմայեցւոցն։ Երեւելի տոհմք Հռովմայեցւոցն որ միանգամ լծեալ էին միջամտութս ի պատերազմունս եւ ի քաղաքային իրս իբրեւ զօրավարք կամ առաջնորդք՝ այնչափ կուտեցին մթերեցին զանձս, զի եւ վատնել խակ յանխնայ կարող էին։ Փոխեցին նոքա զփոքր տնկունս իւրեանց ի մեծամեծ ապարանս՝ գեղեցիկ գեղեցիկ բուրաստանօք. անդ ժողովեալ զետեղէին ընտիր ընտիր արձանս, անդրիս եւ պատկերս յափշտակեալս ուստեք ուստեք, զդոյզնագիւտ ինչ իրս յայլ եւ այլ աշխարհաց։ Գնէին իւրեանց անդաստանս մեծատարածս[2]. եւ կազմէին ամարանոցս[3] մեծաշուք փառաւորութեամբ։ Բայց մանաւանդ կենցաղք Հռովմայեցւոցն

1 Pantheon. 2 Latifundia. 3 Villa.

(առ որոց տալոյ համարձակութիւն էր նոցա քան առ Յունաց) ամենեքին ի ծայր զեղխութեանն հասեալ էին եւ ի զարդասիրիկ անձանս, եւ յորժամ Կատոնն չափ ինչ զալղուց եւ փառաւորութեան հանդերձից նոցա կամեցաւ դնել, արկանելով առաւելագոյն տուրս ի վերայ նոյնպիսի զարդուց՝ յուզեցին խռովութիւն մեծ, մինչեւ դադարեցուցանել յնա զօրէնսն։ Նուաճմամբք դասակք գերեաց լինէին զտունս նոցա. բիրտ եւ կիտով ինչ վարժեալ բնակիչք Սարդինիայ եւ Կորսիկայ էին դիւրագինք, եւ վաճէին զնոսա յանարգ սպասաւորութիւնս. ուր նմին հակառակ կիրթ եւ մեղկ Յոյնքն եւ Ասիացիք գնեալք մեծագնի՝ էին դպիրք, ընթերցիչք, դաստիարակք, հաշուապահք, եւ սպասաւորք տանց նոցա։ Վասն ժողովելոյ արծաթ ի դոյն՝ չէր մարթ ուշ ունել խրատուց եւ արդարութեան, եւ յայն սակս իսկ տեղի զկաշառաբերն լինելոյ, զծուլութենէ եւ զհարստահարութենէ մեծամեծացն Հռոմայեցւոց լինէին բանք։ Խոռոչ ինչ էր Հռոմ որ ոչ լնոյր գանձուք, եւ ընդ զեղխութեանն եւ վատնութեան տեղի երեւէր կարօտութիւն եւ չքաւորութիւն միանգամայն։

Ի մեծամեծաց անտի անց ապականութիւնն ի ժողովուրդ անդր։ Դրթայքն եւ անհոգ լինէին տակաւ այն հին անպաճոյճ կեանք եւ աշխատասէր վաստակք մշակութեան երկրի։ Այս նորագոյն Հռոմայեցիք քան զքաղաքային գործս առաւել նախամեծար ընտրէին զդիւրութեան կեանս, որ յետ վաստակոց ինչ ածէր վայելս եւ առատ բազում։ Եւ զինուորք յայն զօրավար ի զօրավարացն կամէին մանաւանդ յարել՝ որ զցանկութիւնսն նոցա լնոյր. եւ զօրավարն նոցա դարձեալ կարեւոր համարէր ձգել զնոսա զիւրեւ զի ի ժողովս քաղաքացեացն նպաստ լինիցին ամբառնալոյ նմա ի պատիւս եւ ի պաշտամունս, եւ յայն սակս իսկ անտես ինչ առնէին զօրավարքն զանկարգութեանց զօրացն։

. . . .

Հասարակաց խաղք եւս Հռոմայեցւոցն յայտ արարեալ ցուցանեն զնուազութիւն հրահանգաց մտաց նոցա։ Ուր հասարակաց խաղքն Յունաց էին խթան եւ գրգռիչ ի գործս մեծամեծս եւ յաղթութեան վաստակս, նմին հակառակ Հռոմայեցւոցն խաղք գազանամարտից եւ կռուոց սուսերամարտակաց էին միայն առ զբօսանս աչաց ի բռնագոյն եւ ի վայրենի իրս՝ որովք զուարճանայր ազգն այն զինուորական։

Ի խաղուց անտի որ ի կրկէսին լինէին՝ էին մանաւանդ սիրելի Հռոմայեցւոց կռիւք գազանացն եւ նաւամարտիկ կռիւ՝ որ լինէր յետ լնլոյ զկրկէսն ջրով։ Իսկ յամփիթէատրոնսն լինէր կռիւ սուսերամարտակաց։ Սուսերամարտիկքն կամ ի գերեաց եւ ի յանցաւորաց դատապարտելոց էին եւ կամ յայնցանէ որ ինքնակամ տային զանձինս զի վայելեսցեն աւուրս ինչ ի կերակուրսն սնուցիչս եւ առատս՝ զոր տային նոցա զի իցեն առաւել արիւնաշատք. եւ կայր իսկ հրապարակաւ մարտապարգար՝ որ կրթէր զնոսա եւ երբեմն ունէր հարիւրաւորս իսկ ի նոցանէ։ Յորժամ կամէր ոք ի ռամկավարացն տալ խաղս ժողովրդեանն կամ ի

ղաքին։ — Համօրէն տէրութեանն էին 18 նախարարութիւնք, եւ օրինակ առաջնորդութեանն միահեծան խառն ընդ ազնուապետութեան, զի կայր խորհրդականութիւն ինչ ի մեծամեծաց առընթեր թագաւորին։ — Իսկ քաղաքք յունական եւ մակեդոնական գաղթականութեանցն որ սփռեալ էին զրեթէ ընդ ամենայն ընդարձակութիւն պետութեանն՝ վայելէին բազում ժամանակս յազատութիւնս մեծամեծս եւ ի շնորհս, քանզի զգուանօք իսկ ունէին զնոսա յաճախ թագաւորքն Պարթեւաց վասն զաձուցանելոյ զխորհուրդս նոցա ի դրացի ազգակից թագաւորութենէն Սելեւկեանց. եւ յայն սակս իսկ ի դահեկանսն նոցա՝ զոր Յոյնք իսկ հատանէին՝ անուանս իւրեանց թագաւորքն անուն ե-բաղէր՝ Հելլենասէր կամ Յունասէր[1]։

## 374

Սակայն թագաւորքն Սելեւկեանք չէին տակաւին յուսահատ յաշխարհաց անտի, եւ ստէպ փորձ փորձէին ի ձեռն Յունաց զտանել մուտ եւ տիրել միւսանգամ կողմանցն։ Նոյն յայն սակս իսկ՝ Թէպէտ եւ վաղ պարտեալ էր Սելեւկոս Կաղինիկոս (238) եւ յետոյ Անտիոքոս Թէոս ի նեղ անկեալ՝ դնէր դաշինս խաղաղութեան (յամի իբրեւ 210) ընդ Արշակայ Գ., սակայն եւ այնպէս Դեմետր Բ. Նիկանովր հրաւիրեալ ստէպ ի Յունաց անտի, եւ զի զօր եւս պատրաստ էր նմա ընդդէմ Տրիփոնեայ՝ անցանէր (յամի 140) ընդ Եփրատ եւ ընդ Տիգրիս գետս, եւ առեալ իսկ ի նա զաւառս բազումս։ Իբրեւ զայն լսէր Արշակ Զ., առաքէր զօրավար ի վերայ՝ որ եկեալ հարկանէր զզօրս նորա եւ ածէր զնա ձերբակալ առաջի Արշակայ, եւ նա տայր արկանել զնա ի շղթայս[2]։ Թէպէտ եւ զառաջինն շղթայից զնա Արշակ այնպէս ի կապանս ընդ ամենայն նահանգան՝ որ ի նոյն անկեալ էին՝ այլ յետոյ պահէր զնա ի դիպարհւոջ թագաւորաբար տուեալ նմա կնութեան զդուստր իւր զՀռոդոգունէ։

Այլ իբրեւ եղբայր նորա Անտիոքոս Է. Սիդեցին գումարէր միւսանգամ վարժ զօրսն եւ հարկանէր յաղթութեամբ զՊարթեւս, եւ յարեցուցանէր յինքն զաւառս բազումս՝ յայնժամ եւ Արշակ Է. կամ Փրաատէս Բ. (136 — 127) խորամանկութեամբ արձակէր զԴեմետր Նիկանովր՝ զի ստիպեսցի Անտիոքոս դառնալ յետս յԱսորիս, պաշտպանել աթոռոյ իւրում յերեսաց Դեմետրի։ Այլ իբրեւ Անտիոքոսն (յամի 131) խորտակեցաւ պարտեալ սատակէր՝ զղջացեալ Արշակ զի արձակեաց զԴեմետր, եւ զուր [illegible] առաքէր զունդս հեծելոց զհետ՝ ըմբռնել զնա, քանզի վաղ հասեալ էր նա ի թագաւորութիւնն Ասորւոց։

1 Φιλέλληνος. 2 Ա. Մակ. ԺԴ. — 4.

աշխարհին. որպէս Արշամ անն անուն յԱրշամաշատ ի Ծոփաց աշխարհին (յամի իբրեւ 245), եւ Քսերքսէս մի այն ի պայազա-տաց նորա (170—160), որոց կան դահեկանքն ստորագրեալ ինչ խուռիւ Հայոց[1]: Յայսպիսում պառակտութեան եւ ի խառնա-կութեան ժամանակի դիւրաւ մտանէր մեծն քան զամենայն թա-գաւորս Պարթեւաց՝ Արշակ Զ. Թագաւոր զՀայաստան ի Սելեւ-կեանց՝ որպէս հաւանութեան թուի՝ յառաջ քան զպատերազմ զոր եռ Արշակ ընդ Դեմետրի Բ. յամէ 141[2]: Խորհեալ զան հաստատութեան տէրութեան իւրոյ[3] կարգէր նա աւրյն թա-գաւորութիւն ի Հայոց աշխարհին իբրեւ պատուար նախապա-րիսպ տէրութեան իւրոյ ի միջէ հարաւութենէ, եւ կարգէր զիւրոյոյն կրտսերագոյն եղբայր զՎաղարշակ Ա. ի թագաւորու-թիւն Հայոց մօտ ուրեմն յամի 150 — 145:

376

Վաղարշակ որ անձնեւքն ըստ եղբօրն մտաց էր՝ քաջու-թեամբ եւ իմաստութեամբ միանգամայն արկանէր զհիմունս տէրութեանն:

Մորփիւղիկէս անն ի պայազատացն Արշամայ ի թագաւորու-թեանն Ծոփաց՝ ժողովեալ զունդ ի Գաղիկացւոց, Պոնտացւոց, Փռիւգացւոց եւ Մաժաքացւոց, որ տակաւին միաբանեալ կային ընդ Սելեւկեանցն՝ հասանէր ի կողմանս արեւմտից հիւսիսոյ Հայ-աստան աշխարհին: Ժողովեալ կուտէր Վաղարշակ զօրս յայլ եւ այլ ցեղից բնակելոց ընդ երեսս աշխարհին՝ եւ զունդ զօրեալ խաղայր ի հարաւոյ ի վեր [illegible] տակաւ զզօրսն, ընդ գլխաւորութեամբ արանց քաջաց ցեղին իւրեանց, յորոց երեւելի մանաւանդ Բագարատ էր զՀրաչեայ գեռով առ Արշակին բերով բանակ հարեալ՝ առ որս բազումս հանէր ընդ հարկաւ զգազմութիւնն՝ որ մանաւանդ կերպ էր յառաջապատակութիւն քան ի Ճակատս եւ ի հնազանդութիւն առն ասպարապետի[4]. այս զօրագլուխ Ճակատն առ Կոզմնիաւ (ի Փոքր Հայս մօտ ի Սեբաս-տէ), եւ ի խառնուրդս առք քաջք ի զարմից Հայկայ եւ Սեն-քերիմայ ապրեցուցանէին զՎաղարշակ ի վտանգէ, եւ անկանի առ-տէիւ Մորփիւղիկէս ի մերձակահար կառուին (յամի իբրեւ 140)[5]: Այսպէս ձգէին սահմանք Հայոց թագաւորութեան յԵփրատ գետոյ մինչեւ ցծովն Կասպից, եւ ի Կուր գետոյ մինչեւ ցՄիջագետս Ասորւոց: Այս ուրեմն զէմ յանգիման քա-

1 Ա. Վիսկոնթեայ Պատկերագր. յուն. Յուլ. Բ. Գլ. ԺԲ. եւ Յոնս. ԺԶ. 1, 2: Ւոկ Խոր. Ա. Գլ. ԼԱ. էջ 127. առէ «Յայնմ ժամու (յԱղեքսանդրէ Մակեդոնացւոյ) մինչեւ ցթագաւորութիւնն Վաղարշակայ ի Հայս . . . չգտի թէ առնմեկ էհաւ. այլ զարամբ եղանէր տէրել աշխարհին»:

2 Տես Խոր. Բ. Գլ. Բ. էջ 155 եւ 156:

3 Խոր. Ա. Գլ. Ը. էջ 46:

4 Խոր. Բ. Գլ. Դ. էջ 158:

5 Խոր. Բ. Գլ. Ե:

զօրացն Սելեւկեանց՝ առհմնեցաւ Մծբին (կամ Անտիոքիա Միգդոնեան) նստոց թագաւորին, եւ մեծամեծք Տայոց աշխարհին կարգեցեալս հոծանց ամենայնիւ եւ որոց անդ լք։ — Դադարէր այնուհետեւ մերոց պատերազմի ի Մակեդոնացւոց անտի, եւ դառնայր Վաղարշակ ի նախկին յօրինուածութիւնս օրէնութեանն[1]։

Բայց զի ի վերայ առհմայն եւ հայրենատուր կարգաց եւ ժառանգական ազնուականութեան զանձնոյն կամէր ձեւել[2]՝ առաքեցաւ ի Մծբնայ Մար Աբաս Կատինա վարժ քաղդէացի եւ յոյն դպրով՝ քննել եւ բերել զպատմութիւնս ազգին ի դիւանէն որ ի Նինուէ էր. եւ մատեան պատմութեանն այնորիկ եղեւ առաջին զանձանն նորա, զորոյ եւ զհետս մի ի սոյնս հրամայէր դրոշմել[3]։

## 377

Զբնակիչսն ամենայն երկրին, որ իբրեւ ուրոյն ուրոյն առհմք կային բաժանեալք ի միմեանց՝ իւրաքանչիւր իւրն նախահայրենական առաջնորդութեամբ՝ ժողովէր Վաղարշակ զաթոռամն իւրով բաց յօրինուածութեան օրէնութեանն Պարթեւաց եւ Պարսից[4]։

Բաց այլ եւ այլ առհմից եւ նախահնգաց ի բազում՝ ի հարիւրաւոր՝ իսկ Նախարարութիւնս (կամ Ազատութիւնս) զերկիրն բաժանէր։ Նախարար (կամ իշխան, տէր, տանուտէր, նահապետ) մի եւեթ էր յիւրաքանչիւր նախարարական առհմի (ոչ միշտ ժառանգութեամբ), իսկ այլ եւս արք գլխաւորք ի տոհմի անդ՝ անուանեալ կոչէին Սեպուհք, եւ արք նախարարական առհմին՝ Տոհմիկք կամ Ազատանի, որոց իսպառ կային միջակութեամբ եւ զարմանիւք զատք զատք շնորհաբանեալ։ — Էր նախարարաց օրէնութիւն ի վերայ երկրին իւրեանց եւ գաւառութիւն ի վերայ բնակչացն, եւ որպէս հաւատութեան է՝ իրաւունք կենաց եւ մահու, եւ զունդք զօրաց՝ զոր ածէր իսկ նախարարն ի կոչ թագաւորին ընդ իւրովն զօրավարութեամբ։

Զկէսս ի նախարարութեանց անտի՝ առաւել անձկագոյնս կարգէր ընդ աթոռոյ իւրում թագաւորն իմաստուն վասն երախտեաց գլխաւորացն նոցա՝ զոր ի պատերազմին արարին։

1. Զ Շամբայ Բագարատ՝ ի զաւակէ Հրէից եկելոց առ Հրաչեայ ի Հայս՝ որ եւ ի սկզբանէ իսկ զարգարեանն Վաղարշակայ մատուցեալ էր ինքնակամ զանձն ի ծառայութիւն նորա խորագիտութեամբ[5] յետ կացուցանելոյ տանուտէր առհմին իւրոյ (Բագրատունեաց)՝ կացուցանէր ժառանգութեամբ յԱսպետութիւն, այս ինքն՝ լինել ազգաւ թագադիր ամենայն պայազատացն Արշակունեաց, մինչեւ չլինել իսկ օրէն ումեք թագ կապելոյ

1 Խոր. Բ. Գլ. Ե, Զ։
2 Տես Խոր. Ա. Գլ. Բ. էջ 48։
3 Խոր. Ա. Գլ. Ը։
4 Տես վերագոյն համար 347։
5 Խոր. Բ. Գլ. Գ. էջ 156։

զկնի երկուս յիշեցուցիչս գրեալ, յորոց մին զբարեկարգութենէ յուշ առնիցէ եւ միւսն զպատուհասից, առեալ առաջնումն անտարբեր համարձակութիւն ի բարկութեան արքայի եւ յանիրաւ հրամանսն՝ ի մէջ անցեալ զիրաւանց եւ զմարդասիրութենէ լինել թելադիր: — Զնոյն համարձակութիւն իրաւանց եւ արդարութեան վասն ամենայն աշխարհին խորհեալ՝ դատաւորս եւ իրաւարարս յարդարանս եւ ի քաղաքս եւ յաւանս մեծամեծս կարգէր՝ զի զօրութիւն արդարութեանն եւ ոչ բռնութիւն հարուածս առնիցէ լուծումն զժառութեանցն եւ հակառակութեանց [1], եւ առաւելին եւս ժողովէր „ամբաւ զրութիւն զխաղաց եւ զատառոց եւ խրատքանչիւր ուսմանց առաւելականութեանց եւ ամենայն իսկ հակառակութեանց եւ զաշանց եւ մնացուածոց որ ի սեպհական ազատութեան պայազատութիւն" [2], եւ մեծարէր այն ամենայն Պարսից (եւ յետոյ Յունաց եւս) զրոյ:

Ըստ այսմ Վասպուրական երբեւ առաջին Արծրունի թագաւոր Հայոց արկեալ զհիմունս ակրութեան ի մերոյ յօրինուածութեանցս այսոցիկ՝ Թովմայ պատմագրաւոյն հաստատել զնոսա ի խոր եւ մնայուն յարգելոյս (յամի երբեւ 124)[3]: — Ընդ նոյն ժամանակս կարգաւորութեան ընթանայր եւ Աշոտ Ա. († երր 111) նորին որդի անդրանիկ զոր առ կենդանութեամբն ունէր նա առ իւր ի Մծբին: Իսկ այլքն եւս ի բազմաց բանս ուսանելոյ Վասպուրականայ առաքեալ եւն բնակել ի գաւառն Հաշտենից, առհմանեալ նոցա յաւերուածս մեծաց ամենայն եւ ամենայն կարգելոց յարքունատառ, եւ այն լինէր առ յաւուր օրէնք ի մէջ Արծրունեացն՝ պայազատն թագաւորութեանն բնակել ընդ արքային, եւ այլոց ուսանելեաց եւ դասեալեաց զնոյն յամենայնէ կոգմանս Հաշտենից [4]. (Իսկ ի ժամանակին թագաւորութեանն Արտաւազդայ՝ եղբարքն սորա եւ քորք կարգեցան բառ նմին կարգի յԱրեւմուտս, առեալ յաւաղահարս պատիւ քան զթագաւորական Հաշտենից[5]): — Իսկ առկայն որ յետ այսոց թագաւորաց երեք թագաւորքն կացին (Արտաշէս, Տիգրան եւ Արտաւազդ) առաւել ցանկութեամբն աշխարհակալութեան յԹողքն արտաքոյ՝ զի այն կարգաւորութիւնք անցանիցեն ի կեանս եւ ի վարս ազգին. յայն սակս եւ աշխարհակալութիւնք նոցա թէպէտ եւ փառաւորք յոյժ եւ զարմանալիք՝ չեղեն իւրք անւականք, զի Հայաստան աշխարհ որ լինելոց էր մայր երկիր արտաքսին նահանգացն զրուելոց՝ չունէր զկարեւորն միութիւն ընդհանրական՝ յոր սկսանին ամփոփել երկու առաջին մեծամեծ թագաւորքն Հայոց:

1 Անդ էջ 174—175:
2 Խոր. Ա. Գլ. Գ. էջ 21:
3 Խոր. Բ. Գլ. Ը. էջ — 176:
4 Անդ էջ 175—176:
5 Խոր. Բ. Գլ. ԻԲ. էջ 202—203:

# 380

Արտաշէս Բ. (111 — 86) որ ի պատանեկութեանն էր սիրելի յոյժ հաւուն իւրում Վաղարշակայ յաջորդութիւն նորա ի Մըծբին, քանզի կայտառ իմն էր եւ հզօր[1], ամբառնեալ զթագաւորութիւնն Հայոց փոխանակ երկրորդական դասուն ի կարգ առաջութեան ի վերոյ քան զթագաւորութիւնն Պարթեւաց: Իսկ եւ իսկ տայր հատանել դրամ առանձինն զիւր պատկերն, քանզի իրաւունք դաշնականն հատանելոյ էր սեպհական իմն տէրութեան Պարթեւաց իբրեւ առաջագոյն աթոռոյ[2]. եւ տայր շինել իւր ապարանս ի Պարթեւաց աշխարհին, եւ այնպէս զԱրշականն կամ զԱրշակ Բ. կամ Թ. որ ի ժամանակին Թագաւորն էր յաշխարհի անդ՝ հպատակէր յիշխանութեանն իբրեւ ընդ իւրով ձեռամբ[3]:

Խաղաղաւոր այնուհետեւ Թագաւորն պատերազմաւէր ընդ արեւմուտս հանելով զօր անհնարին առնելով մարզաթափ զկողմն արեւելից եւ հիւսիսոյ աշխարհին իւրոյ. յանցս եւ յիջաւանս քարքառ մարդաթուի կարկառ՝ նշան բազմութեանն Թողոյր: Յետ դրդելոյ տախմիքն զամենայն Փոքրն Ասիա եւ ընդ նաւատորմիղ նաւուք զծովն Միջերկրական, եւ անցուցանելոյ զզօրսն յաշխարհն Յունաց եւ առնելոյ զգործս ճարտարացն Յունաց (զՄելիտոնեայ եւ զՆիփղինոսի Արտոացւոյ) ի յունական քաղաքացն Ասիոյ եւ յԵղլադայ՝ ինքն մեռանի ի փախստի յիւրոց զօրաց ի ժամանակի խաղաղութեան իւրեք եւ ազգի որ ոչ ծանօթ է[4]:

Սակայն յոյժ հաւանութեան իմն թուի թէ պատմութիւն այսր արշաւանին Արտաշիսի պարտ իցէ իմանալ այսպիսի ինչ օրինակաւ: — Արտաշէս Բ. միաբանեալ ընդ Միհրդատայ Զ. Եւպատորայ արքայի Պոնտացւոց դրուժ տուեալ իսկ էր զդուստր իւր զԱրտաշամա՝ կնութեան, արշաւեցին բազմաստուած բանակօք զամենայն զՓոքրն Ասիա, լցին նաւամարտիկ նաւուք զծովն Միջերկրական, անցին ընդ Թրակիա՝ ի Մակեդոնիա, ի Դոկերիս եւ յԷլլադա (88)՝ ի ժամանակի յոր Հռոմայեցիք այն ինչ ի գլուխ հանէին զփոխադարձ պատերազմն դաշնաւորաց եւ զՄարիոսեան եւ զՍուղղեան ազդկաւն էին. մինչեւ հասեալ Սուղղա պաշարէր (87) ի քաղաքին Աթենացւոց զհասարակաց զօրն Արտաշիսի եւ Միհրդատայ՝ որ առ սովին տագնապի Թողուին զքաղաքն, եւ յետ երկուց ձախող ճակատուց առ Քերովնեա եւ Որքոմենեա ընդդէմ Սուղղայ՝ անցանէին այսրէն յԱսիա եւ Հռոմայեցիք զհետ նոցա: Արտաշէս հարեալ յիւրոց զօրացն՝ ստիպէր Միհրդատ կալ դաշինս խաղաղութեան ընդ Սուղղայ (86)[5]: Այս դէպք են զոր վասն նորին ժամանակի պատմեն պատմագիրք Յունաց եւ

1 Խոր. Բ. Գլ. Ը. էջ 175:
2 Խոր. Բ. Գլ. ԺԱ. էջ 180:
3 Անդ:
4 Խոր. Բ. Գլ. ԺԲ, ԺԳ:
5 Տես վերագոյն տասնեւ մինն՝ էջ 552 — 553:

յանապատս անջրդի ընդ աւազուտն: Ընդ զօրք Թագաւորացն երկոցունց յանկարծակի ի վերայ անկանէին, եւ այսր անդր զառանայլին յետս խորտակեալ զմեան մի լէգէոնացն Հռոմայեցւոց. որդին Կրասեայ՝ Կրասոս խորտակեցաւ գումարտակաւն իւրով, եւ իբրեւ ետես Թէ ձերբակալ լինի՝ ինքնակամ ընդ սուր ելանէր եւ բազումք ի Հռոմայեցւոցն ընդ նմա: Եւ Պարթեւաց առեալ զգլուխն նորա՝ ցուցին հօրն որ դիմեալ գայր ի Թիկունս օգնականութեան:

Ուր այնուհետեւ քաջալերեալ զզօրսն իւր Կրասոս մեկնէր ի վաղիւ անտի ի Կարրէս կամ ի Խառան քաղաք Թողեալ 4000 վիրաւոր ի վերայ դաշտավայրացն: Հասանէր առաջի քաղաքին Սուրէն եւ առնոյր առ զԿրասոս եւ զնորին զօրավար զԿասսիոս ի բուռն, եւ յետոյ յորժամ Կրասոսեանքն գաղտ ի բաց ելեալ ի քաղաքէն անկանէին ի ճանապարհս ինչ անդէն՝ հասեալ պատէր զնոքօք Սուրէն, մինչեւ յետուստ սպանաւ Կրասոս եւ երեւելի զօրավարք նորա յորժամ երթային առ Սուրէն՝ պատրեալ յուսով հաշտութեանն զոր խոստանայր նա նոցա ի բանից Թագաւորացն: Ցրուեցան զօրք նոցա եւ սպանան իսկ բազումք ի փախստին, եւ գերին Հռոմայեցի անդէն բնակութիւն կալեալ՝ խառնեցաւ ընդ բնակչացն անուանութեամբ[1]. այծուէնշան դրօշք լէգէոնացն Հռոմայեցւոց պահեցան ի տունս նշանակի, մինչեւ յետ իբրեւ 30 ամաց առ Օգոստոսաւ դարձուցին ՊարԹեւքն յետս: Եւ ցան գանձք Տիգրանայ ի մեծութեանց անտի զոր Կրասոսն ժողովեալ էր ի տաճարէն Երուսաղեմացւոց եւ ի մեհենից ուստեք ուստեք[2]: Չէր կրեալ երբեք Հռոմայեցւոց այսպիսի պարտութիւն բայց միայն առ Կաննեաւ, եւ յայն սակս իսկ անմոռաց կային Հռոմայեցւոց մինչ Թշնամանք այսր ճակատու առ Խառանաւ (53):

## 386

Սոյն անձնապարեալ կալեալ էր Կասսիոս Միջագետաց զօրացն՝ զհողմանս Ասորւոց աշխարհին պահել ի զօրացն Տիգրանայ որ միանգամ կամէր առնուլ զաշխարհն ի բուռն, բայց բաւական եղեւ ունել զդէմ արշաւանին նորա Կասսիոս (52)[3]: Յայն սակս հարկ համարէր այնուհետեւ Տիգրան՝ վասն զի հիւանդացեալն էր եւ չկարէր անձամբ մտել ճակատ, շահել զսիրտ Արշակայ ԺԴ. (Որոդայ կամ Արտաշիզի ըստ Խորենացւոյն) արքային Պարթեւաց դարձուցեալ առ նա զզահերէց պատիւ Թագաւորութեանն, եւ դուստր մի ի դստերաց իւրոց տուեալ Բակրոյ արքայորդւոյն Արտաշիզի: Այսպէս առեալ ի Պարթեւաց զօր օգնական զօրավարութեամբ Բակրոյ, կազմէր բանակ հայազունդ՝ սպառազինեալ-

1 Սկզոնս. Գ. Ձ:   2 Տես եւ Խոր. Բ. Գլ. ԺԵ:   3 Խոր. Բ. Գլ. ԺԸ:

Այլ յետոյ ուրեմն Արտաւազդ զրգռեալ ի զօրացն Հայոց որ համակ ընդ պատերազմ յօժարէին, քանզի եւ Անտոնիոս զրաւեալ հաներ էր զՄիջագետս՝ գումարէր զօր ի կողմանց Ատրպատականի եւ լերանցն Կաւկասու հանդերձ Աղուանիւք եւ Վրօք, եւ մտեալ ի Միջագետս մերժէր հալածական զզօրսն Հռոմայեցւոց։ Մրմռեալ հասանէր Անտոնիոս ի կողմանց Եգիպտացւոց՝ զրգռեալ եւ ի Կղէոպատրայ, քանզի քէն պահէր սա վասն նենգութեան զոր կրեաց անուանակից հանին ի ձեռն Տիգրանայ ի Պտղոմայիս։ Խորտակի զօրն Հայոց առաջի Հռոմայեցւոցն եւ զթագաւորն ինքնին զլխովին զԱրտաւազդ առնէր Անտոնիոս ձերբակալ նենգութեամբ, եւ առեալ տանէր շղթայիւք պարգեւ Կղէոպատրայ՝ հանդերձ աւարաւ պատերազմին (33)։ Ընդ յետ ձաղելոյ զնա Անտոնեայ եւ բանտարգել կալանաց՝ գլխատեցաւ ի Կղէոպատրայ[1] (31)։

## 388

Ապա ուրեմն թագաւորեալ էր փոխանակ նորա Արշամ կամ Մանովայ (33—3) որդի Արտաշիսի եղբօր Տիգրանայ, քանզի զնա խոյս ընտրեցին զօրքն ի թագաւորութիւն յետ ձերբակալն լինելոյ Արտաւազդայ[2]։ Այլ որպէս սա նոյնպէս եւ նորին որդի եւ յաջորդ Աբգար՝ այնու զի խանձեալ իմն էր աշխարհն յայնչափ պատերազմաց, եւ չգտանէր օգնականութիւն ի Պարթեւաց[3]՝ չհամարձակէր տալ մեծ ինչ պատերազմ ընդ դրացեաց իւրոց, թէպէտ եւ բազմօք տային սոքա պատճառս ի դոյն։ Վասն զի Հերովդէս արքայ Հրէաստանի սիրելի Օգոստեայ՝ էր մեծ գժտութեամբ ընդ Արշամայ եւ Աբգարու, եւ առաքեալ լինէր Արշամ ի հրամանէն Օգոստեայ կատարել զկամսն Հերովդի, տուեալ բազմութիւն ապրանաց գործաւորաց՝ որովք լցեալ էր զհրապարակս քաղաքին Անտիոքացւոց յառաջելոց զնոսա Հերովդէս կճեալ յաստակօք[4]։

Այսպիսի իմն էին համգամանք իրաց աշխարհին՝ յորժամ Արշամ զառաջինն սկսաւ հարկանել հարկս Հռոմայեցւոց վասն կողմանց Միջագետաց, եւ յետ այնորիկ Աբգար (թագաւորեալ յամէ իբր 3 նախ քան զՔր.) սկսաւ տալ հարկս յամենայն իւր կողմանցն Հայոց աշխարհին[5] յորժամ եկին գործակալք Հռոմայեցւոցն վասն աշխարհագրական աշխարհհամարին բերեալ եւ զպատկերն Օգոստեայ զի կանգնեսցի ի մեհեանս Հայոց[6]։

1 Խոր. Բ. Գլ. ԻԲ. ԻԳ։
2 Խոր. Բ. Գլ. ԻԳ. 205—206։
3 Անդ էջ 206։
4 Խոր. Բ. Գլ. ԻԵ։
5 Տես Խոր. Բ. Գլ. ԻԴ. էջ 206։
6 Խոր. Բ. Գլ. ԻԶ. էջ 211։

# ԻՆ

## Հրէաստան ընդ տէրութեամբն Մակաբայեցւոց եւ Հերովդի (107—1):

### 389

ԸՆԴԷՆ ի վերջին ամս Յովհաննու Հիւրկանեայ Մակաբայեցւոյ (107), աղանդք Փարիսեցւոցն եւ Սադուկեցւոց ի կերպարանս իմն քաղաքային կուսակցութեան փոփոխեալ էին. ինքն եւս Հիւրկանոս ի փարիսեցւոց անտի (որք կամէին իմն զեկեղեցական իշխանութիւնն բաժանել ի տէրութեանն իշխանութենէ) անցեալ էր ի սադուկեցիսն. սոքա նորոգիչք էին, իսկ նոքա խիստք: Դարձ եւ պատշաճ է ճշգրիւ զհանգամանս երկոցունց գիտել, մինչ չեւ մտեալ ի պատմութիւն Մակաբայեցւոցն: ա. Փարիսեցիքն (բաժանեալք), եթէ զայժ իսկ անագանագոյն ժամանակն առնուցումք՝ առ ժամանակօք Մակաբայեցւոցն կացին. եւ ընդունէին բաց ի գրոց սրբոց եւ զաւանդութիւնսն բանիւ: Բայց չկացին նոքա ամենեւին յաւանդութեանն իբրեւ ի յայտնութեան Աստուծոյ, այլ յաճախէին այլասացիկ իմն մեկնութիւնս գրոց սրբոց եւ տառապեցուցիչ իմն պահպանութիւնս օրինաց եւ արտաքին իմն կերպարանս սրբութեան ի գործս իւրեանց: բ. Սադուկեցիքն ընդունէին միայն զգրով բանս Աստուծոյ ի գիրսն Մովսիսի. չգոյր առ նոսա ամենեւին միտք ինչ զԵկեղեցւոյ: Համարէին զմարդկեղէն կամսն ամենեւին ազատ, որպէս զչարն նոյնպէս եւ զբարին գործին մարդոյն զօրութեան: Յետոյ յուրաստ եղեն եւ ի յարութենէ մեռելոց եւ ի հատուցմանէ բարւոյ եւ չարի: Սոքա ըստ սովորութեան իմն ի կողմ արքունեաց էին, իսկ նոքա ի կողմն ժողովրդեանն. բայց երկոքին եւս կողմանքն երթային եւ զեղծանէին. սոքա ազդեցութեամբն իւրեանց գործեցին ապականութիւն տէրութեանն: գ. Կային եւ Եսսէացիք եւ Թերապեւտեանք որք զօրէնսն Մովսիսի ըստ բարձրագոյն իմն մտաց եւ կարծեաց իմանային, եւ յօրինեալ կազմէին իբրեւ կարգս իմն վանականաց. բարեպաշտօնք էին եւ անարատ վարուք, եւ չէին ինչ նոքա կողմն հակառակ այլոց:

Յովհաննու Հիւրկանեայ հինգ որդիք մնացին յետ մահուն: Երէցն Յուդա Արիստաբուղոս Ա. (107—106) առ զպատիւ թագաւորութեանն եւ արար բարձակից զերկրորդ եղբայր իւր զԱնտիգոնոս Ա. բայց զկրսերագոյն եղբարսն իւր ունէր ի դիպահաւջ, նոյնպէս եւ զմայր իւր զոր սպան սովամահ ի բանտի. քանզի հայր նորա սահմանեալ էր սմա զառաջնորդութիւն տէրութեանն: Եդաւ արշաւան ի վերայ Իտուրացւոց որ ցեղ ինչ էր Իսմայելացւոցն [1], որ ի Խոր Ասորիս բնակէին, եւ լինէր վասնաճեան պատերազմին հնազանդեալ զնոսա Անտիգոնեայ: Իբրեւ դարձաւ նա յԵրուսաղէմ՝ եմուտ վառեալ սպառազէն ի տաճարն, ուր անդէն զոտ

1 Ծնն. ԻԵ. 15:

տաղաւարահարացն կատարէին: Իսկ թշնամիքն նորա որոց գլխաւոր էր բամբիշնն Սողոմէ, իբրեւ չար ինչ գուշակեցին Արիստաբուղեայ, եւ նենգութեամբ յայն ած զերան Սողոմէ զի սպանա Անտիգոնոս: Զղջացաւ անագորոյնն Արիստաբուղոս, որ յախտանկեալ կեայ դնէր, այլ անազան ուրեմն էր զղջումն մինչեւ ի յուսահատութիւն դարձաւ, եւ մեռաւ նովին՝ մայրասպանողն եւ եղբայրասպանն թագաւորեալ ամ մի (106):

## 390

Սողոմէ որ կոչեցաւ եւ Աղեքսանդրա՝ հան այնուհետեւ զեղբայր Արիստաբուղայ ի բանտէ անտի եւ զերիցագոյնն ի նոցանէ զՅաննէոս Աղեքսանդրոս Ա. (106—79) կացոյց թագաւոր: Սա կամեցեալ անհրացուցանել զթագաւորութիւնն, որպէս հաւանութեան թուի, ամուսնացաւ ընդ Սողոմեայ, եւ սպան զեղբայր իւր զերկիրորդ վասն որոյ կասկած ի մտի էր, եւ խոհեմութեամբ վարէր զթագաւորութիւնն, կամեցեալ առնել աշխարհակալութիւն:

Նախ սկիզբն արար խաղալ ի պատերազմ ի վերայ Պտղոմայիս եւ Գազայ քաղաքաց. բայց ի պարտութիւն մատնեցաւ զօրն նորա ի Պտղոմեայ Թ. որքայէ Եգիպտացւոց զոր կոչեցեալ էր նոցա յօգնականութիւն, քանզի անկան ի զօրացն առ Ասափոս քաղաքաւ ի Յորդանան 30,000 այր (105): Այլ Կղէոպատրա մայր Պտղոմեայ քանզի թշնամութեամբ էր ընդ որդւոյն՝ մերժեաց հան զյաղթողն Պտղոմէոս յաշխարհէն եւ կռեաց դաշինս ընդ Աղեքսանդրի, եւ ապա դարձաւ այսրէն յետս յաշխարհն իւր, եւ այնպէս ապրեցաւ Հրէաստան միւսանգամ ի ձեռաց տերանցն օտարաց (103):

Ապա յառաջ մատուցանէր Աղեքսանդրոս զպատերազմն ընդ ազգացն սահմանակցաց. առ նա զԳադարա եւ զԱմաթուս յանբերդավոր աշխարհին Պաղեստինացւոց (100): Յետ այնորիկ պաշարեալ ամ մի զԳազա, առ զքաղաքն, կոտորեաց զբնակիչս նորա եւ բրեաց յատակս: Ապա դարձաւ յԵրուսաղէմ:

Ընդ յորժամ ի տօնի տաղաւարահարացն կատարէր զպաշտօն թագաւորութեան իւրոյ՝ կրեաց հրապարակաւ թշնամանս զրգռելով փարիսեցւոցն, եւ նա հան զվրէժ իւր սպանեալ 6000 այր: Ապա ելանէր միւսանգամ ի պատերազմ, յաղթէր Մովաբացւոց եւ Գաղաադացւոց, այլ ի պարտութիւն մատնեալ յԱրաբացւոց՝ դարձաւ փախստեայ յԵրուսաղէմ:

Յայնժամ յարեաւ ապստամբութիւն ի վերայ նորա եւ սկսաւ պատերազմ քաղաքային որ յերկարէր ամս 6 (92—86): Կոչեցին Հրեայք զԴեմետր Եւկերոս զորդի Անտիոքայ Ը. Գրիպեայ ի թիկունս օգնականութեան. յաղթեաց նա Աղեքսանդրի ի ճակատու, եւ մերժեաց ի լերինս: Բայց վասն չաջողութեան իսկ քա-

յԵրիքով, զի մեծ մասն զօրացն թօթափեցան ի Հիւրկանոսայ: Իսկ Արիստաբուղոս յԵրուսաղէմ եւ յետոյ արեամբ Հիւրկանոս հրաժարեցաւ ի տաճարին ի պատուոյ թագաւորութեանն եւ քահանայապետութեան, եւ ընդ այնր ընկալաւ խոստումն պահելոյ զինչս եւ զստացուածս իւր, զի կեցցէ պատուով առանց իշխանութեան (69):

## 392

Արիստաբուղոս Բ. (69—64) եհաս որում ցանկացեալն էր, բայց չհանդարտէին հակառակորդք նորա: Յորոց մի ոմն էր եւ Անտիպատրոս բարեկամ Հիւրկանեայ, որդի Անտիպայ, տան Եդոմայեցւոյ մեծատան եւ կուսակալի ի վերայ աշխարհին Իդումայեցւոց: Յայն չափ իրքն հասին զի անկաւ Հիւրկանոս առ Արետաս արքայ Ապառաժն Արաբիոյ, եւ Արետաս եկն ի պատերազմ վասն Հիւրկանեայ (66): Արիստաբուղոս յաղթեցաւ ի պատերազմի ուրեք, ապա պաշարեցաւ ի տաճարին եւ անկաւ ի նեղ մեծ (66—65):

Նմին իրի դիմեաց Արիստաբուղոս առ Սկաւրոս զօրավար Հռովմայեցւոց որ ի Խոր Ասորիս էր յայնժամ, եւ արծաթով ընկալաւ ի նմանէ օգնականութիւն, այնպէս զի Արետաս հարկէր հրամանաւ Հռովմայեցւոցն ի բաց գնալ: Պնդեցաւ զհետ նորա Արիստաբուղոս եւ պարտեաց զնա ի ճակատու: — Իսկ իբրեւ յետ սակաւ ինչ միոյ եկն Պոմպէոս ի Դամասկոս՝ ձեռն արկ լինել դատաւոր իրաւանց նոցա եւ կոչեաց զերկոսին առաջի իւր:

Իբրեւ եկին առաջի (64), եւ լուեալ Պոմպէոս երկոցունցն՝ միտէր ի կողմն Հիւրկանեայ, բայց թելադրէր լինել նոցա խաղաղութեամբ ընդ միմեանս գնալ, մինչեւ ինքն զկնի Արաբացւոցն կարգեսցէ: Բայց Արիստաբուղոս որ իմացաւ զխորհուրդն Պոմպէի՝ աճապարեաց դառնալ ի Հրէաստան եւ պատրաստեցաւ լինել դիմադարձ: Փութանակի զհետ հասանէր Պոմպէոս առաջի քաղաքին Երուսաղեմացւոց, առնոյր զքաղաքն եւ զԱրիստաբուղոս առնէր ձերբակալ: Պաշարեալ զտաճարն ամիս երիս՝ առ մեծակոտորածիւ, բայց պատուեցին զսրբութիւնն եւ խնայեցին: Այսպէս ազատութիւն Հրէաստանեայցն զոր այնչափ մեծաց գնոց գնեալ էին՝ կորեաւ գժտութեամբ երկուց եղբարց. կորոյս Երուսաղէմ զպարիսպս իւր, թագաւորութիւնն՝ զնոր սահմանս իւր, եւ ազգն՝ զազատութիւն իւր. քանզի Հիւրկանոս որ առ միւսանգամ զքահանայապետութիւնն՝ կալեալ իբրեւ իշխան հարկատու Հռովմայեցւոցն եւ հրաժարեալ էր յանուանէ թագաւորութեան: — Արիստաբուղոս հանդերձ որդւովքն իւրովք Աղեքսանդրիւ եւ Անտիգոնեաւ տարաւ ի շղթայս ի Հռոմ, եւ եղեւ նա եւ Անտիգոնոս զարդ փառաւորութեան յորժամ եկն Պոմպէոս ի ձեռնէ:

## 393

Մինչ դեռ Հիւրկանոսն (64—39) ընդ կրկին իշխանակալութեամբ Հռոմայեցւոցն եւ Անտիպատրեայ յանգործ դատարկութիւն հատեալ էր, եւ Անտիպատրոս երթայր եւ յարէր միշտ ի Հռոմայեցիսն, վասն ամենեւին մերժելոյ յիշխանութենէ զՄակաբայեցիս, բազում ինչ հնարս հնարէին Մակաբայեցիքն վասն զառաջին հանգամանս իւրացն միւսանգամ հաստատելոյ։ Աղեքսանդրոս Բ. եւ հայրն եւս նորա Արիստաբուղոս եկին ի Հրէաստան եւ զբազումս արկին յիւրեանս. այլ երկոքին եւս մի ըստ միոջէ ի պարտութիւն մատնեցան եւ եղեն անձնատուր (58—57)։ Թէպէտ եւ միւսանգամ փորձ փորձէր Աղեքսանդրոս Բ. եւ յաջողէր եւս ի սկզբանն, այլ յետոյ նոյնպէս չյաջողեալ ի վատթարութիւն կործանէր (56), եւ յետոյ ուրեմն եւ Աղեքսանդրոս եւ Արիստաբուղոս սպանան ի միաբանելոյն ընդ Պոմպէի (49)։

Յորժամ Յուլիոս Կեսար առաջին եղեւ ի տէրութեան Հռոմայեցւոցն՝ հաստատեաց զՀիւրկանոս յիշխանութեան իւրում եւ զԱնտիպատրոս կացոյց կողմնակալ Հրէաստանի (48)։ Սա տայր երիցու որդւոյ իւրում Փասայելայ զմարզպանութիւն Երուսաղեմի, իսկ Հերովդի կրսերոյ որդւոյն զմարզպանութիւն Գալիլեայ (45)։ Հերովդէս ամենեւին իսկ ինքնակամ գործէր զնա, եւ վասն այնորիկ իսկ կրեաց ամբաստանութիւն (48)։ Թէպէտ ել նա յատեան առաջի Հիւրկանեայ եւ խորհրդականացն, բայց քանզի զօրականօք վառելովք եկեալ էր՝ ըմբոստացաւ եւ դարձաւ յետս անվնաս։

Դա եւ յետ Կեսարեայ վախճանին (44) եւ մահու հօրն իւրոյ (43) ի ժամանակի խռովութեանցն յարուցելոց ի տէրութեանն Հռոմայեցւոց, եւ Հրէից եւս սաստիկ ատելութեամբ ընդ նմա լինելոյ՝ նա կաց մնաց հաստատուն յիշխանութեան իւրում. խառնէր բարեկամութիւն ընդ Անտոնեայ, եւ կացոյց զնա Անտոնիոս հանդերձ եղբարբն իւրով՝ չորրորդապետ Հրէաստանի։

Ապա եհաս այնուհետեւ ի վերայ Անտիգոնոս Բ. որդի Արիստաբուղեայ, եւ գտեալ օգնականութիւն ի Հայոց առ ի բուռն զքաղաքն Երուսաղեմացւոց (39). Հիւրկանոս եւ Փասայէլ ձերբակալ եղեն մատնութեամբ. եւ կտրել տուեալ Անտիգոնոս զականջսն Հիւրկանեայ, զի մի կարիցէ քահանայանալ. իսկ Փասայէլ անձամբ անձին արար զի մի այլք սպանցեն զնա. իսկ զՀիւրկանոս տարան ընդ իւրեանս Հայք։

Բայց Հերովդէս իւրով տամբն եւ Հիւրկանեայ եւ բազում միաբանելովք ընդ իւր ել փախստեայ եւ եհաս յաջողութեամբ ի Հռոմ։ Սիրով ընկալան զնա Անտոնիոս եւ Օկտաւիանոս, եւ ընտրեցաւ իսկ ի նոցանէ շքով՝ թագաւոր, եւ յայտ արարաւ թէ

Անտիգոնոս թշնամի է Հռովմայեցւոցն։ Յետ այնորիկ եկն եւ Հերովդէս ի Պտղոմայիս, գումարեաց անդ գունդ մի ի Հրէից եւ ի վարձկանաց, եգիտ զօրաւիգն օգնականութեան ի Հռովմայեցւոց, եւ յետ բազում պատերազմաց եւ առնլոյ քաղաքաց՝ խաղաց ի վերայ Երուսաղեմի. դիմադարձ լինէր քաղաքն ժամանակս բազումս մինչեւ յարձակեալ առին եւ արարին կոտորած մեծ (37)։

Անտիգոնոս Բ. ետ զանձն ի ձեռս զօրավարին Հռովմայեցւոց, իսկ Հերովդէս որ սակաւիկ ինչ յառաջագոյն ածեալ էր կնութեան զՄարիամնէ դուստր եղբօր նորա Աղեքսանդրի արքայի, հաւանեցոյց կաշառաւ զԱնտոնիոս զի տացէ սպանել զանարգ զթշուառականն Անտիգոնոս եւ այսպ գլխատեցաւ։ Այսպէս եղկութեամբ սպառեցաւ տէրութիւն ցեղին Մակաբայեցւոց կամ Ասմոնեանց, տեւեալ 130 ամ (37)։

394

Հերովդէս այլազգի (37—1) չունէր ինչ իրաւունս ամենեւին թագաւորութեանն. եւ անարգել իշխանութիւն թագաւորութեանն որ առաւ նմա ի Հռովմայեցւոց անտի՝ չէր ամենեւին միաբան ընդ վաղղապետութեան տէրութեանն Թագաւորին թագաւորաց եւ հրամանաց նորա ի վերայ ժողովրդեան նորա։ Նմին իսկ բարեպաշտքն եւ ազնուական մասն Հրէիցն հակառակ էր Հերովդի։ Հանդերձ նորին, քանզի անագորոնութեամբքն իւրովք եւ իշխանութեան ցանկութեամբ առեալ եւ զարշելի լեալ էր նարոց հնազանդելոց իւրոց, հարկ համարեցաւ այնուհետեւ հալածելովն զհակառակորդս իւր (զփարիսեցիսն) եւ ամենեւին ջնջելով զձեռ Մակաբայեցւոցն եւ յարելով հաստատութեամբ ի Հռովմայեցիս՝ առնել յապահովի եւ ի զգուշութեան զիշխանութիւն թագաւորութեան իւրոյ եւ զկեանս իւր, եւ լինել զգաստորի տուն զանձին իւրոյ։

Նախ անդէն ի սկզբան թագաւորութեան իւրոյ ետ կոտորել արս 45 ի յարելոցն յԱնտիգոնոս եւ զամենայն խորհրդականս Սանհեդրինին եւ զինչս եւ զարարս նոցա առնուլ յարքունիս։ Այսպէս կեղծաւորեալ հրաւիրէր ածէր զծերունին Հիւրկանոս որ կայր ի Պարթեւս խաղաղութեամբ. եւ էր ի պատիւ անդ ի մէջ Հրէիցն, եւ յայն սակս իսկ կարէր լինել նա նմա վտանգաւոր. եկն Հիւրկանոս յԵրուսաղէմ, յանձնեաց Հերովդէս նմա մեծարանս եւ բազում փառաւորութիւն, եւ այնպէս յարեցոյց զնա ամենեւին յինքն։ Նոյնպէս արար եւ ընդ Աղեքսանդրա ընդ այրի կին Աղեքսանդրի Բ. եւ ետ որդւոյ նորա Արիստաբուղեայ որ 17 ամաց էր՝ զքահանայապետութիւնն (35), քանզի Աղեքսանդրայ հաղորդութիւն եւ կցորդութիւն էր ընդ Անտոնիոսի։ Այլ տեսեալ

Հերովդի զորդեակն լինել Արիստաբուղեայ եւ զքնոյս նորա ի վայելչութեանն, կարկամեալ սկսաւ ընդ նմա, եւ հեղձուցանել զնա ի բաղանիսն (34)։ Այսպէս սպառեցաւ վերջին արու զաւակ Ասմոնեացւոցն յութեւտասներորդ ամի հասակի իւրոյ։ — Փոխանակ նորա եմուտ Անանայէլ ի Բաբելոնէ, զոր վաղ իսկ կոչուցեալ էր ինքնակամ ի պաշտօնմանն Հերովդէս։

Զառաջինն զլափ առ անօրինութեան Հերովդի այլն 80-ամեայ Հիւրկանոս, զոր վաղն կասկածանաց եւ սպանանել, յորժամ եկն երթալ առ Ոկտաւիանոս զօրավար Հռովմայեցւոց, զի խառնեալ էր ընդ նմա ընտանութիւն բարեկամութեան (30)։ Սպառնացուցանէր ի նմին ժամանակի եւ զհրամանն թէ սպանցեն եւ զկին իւր զՄարիամնէ եթէ չդարձցի ինքն այսրէն ի Հրէաստան։ Բայց զաղդ լեալ էր Մարիամնեայ հրամանն Հերովդի՝ եւ առնէր այնուհետեւ ամենեւին զպատմաւ իւրոյն, քանզի եւ չկարէր միշտ թագացանել զնոսա ի բնաւորէ անտի։ Ընդ այն ցասուցեալ իմն էր Հերովդէս, եւ առաւել եւս զրգռեալ էին զնա մայրն նորա Կիպրոս եւ քոյր նորա Սաղոմէ, որք ատելութեամբ էին ընդ Մարիամնեայ։ Այսպէս ուրեմն ամբաստան եղեւ Սաղոմէ զդշխոյն թէ խորհուրդ խորհեալ է տալ դեղ մահու Հերովդի։ Եւ ինքն եւս Հերովդէս ամբաստան լինէր զիւրմէ կնոջէն առաջի ատենին՝ ի մահ դատապարտեցաւ կինն, եւ թելադրութեամբ Սաղոմեայ եւ կատարել զդատակնիքն ի վերայ Մարիամնեայ, որ եւ մեռաւ իսկ համառտութեամբ մեծաւ (28)։ Զղջացաւ անդրադարձ Հերովդէս եւ անկաւ յախտ դժնդակ մինչեւ երկմտէին իսկ ընդ ապաքինութիւն նորա։ Ի ժամանակի հիւանդութեանն ջանայր Աղեքսանդրա առնուլ ի բուռն զերկուս դղեակս քաղաքին Երուսաղեմացւոց, զի որպէս ինքն ասէր, պահեսցէ զնոսա երկուց որդւոցն Հերովդի, այլ հրամանատարք բերդիցն չառնացին բանից նորա. իսկ եւ խնդացաւ Հերովդէս զանցս իրացն՝ եւ եւ զԱղեքսանդրա սպանանել (26). Մեռաւ նա ոչ այնպէս արդարութեամբ որպէս իւր քոյրն։

# 395

Մինչ դեռ Հերովդէս այնպէս զտուն եւ զառնս Մակաբայեցւոցն ջնջեալ սպառէր եւ լինէր ամենեւին բռնակալ, հնազանդ իմն եմուտ ընդ մեծ Ոկտաւիանոսի յետ յաղթութեան նորա, թէպէտ եւ ինքն յառաջագոյն միշտ ի կողմն Անտոնեայ լեալ էր, եւ այնպէս առաւելութեամբն Ոկտաւիանոսի առնոյր առ սակաւ սակաւ զտէրութիւն ամենայն աշխարհին Պաղեստինացւոց։ Եւ բաժանեցաւ յայնժամ ա. յայսոսիկ Յորդանանու՝ — Հրէաստան, որ էր հարաւակողմն ծովեզերեայ երկրին, — Սամարիա, միջին մասն, կէս հնոյ բաժնի ցեղին Յովսեփայ. — Գալիլեա, հիւսիսային կողմն, ի

մէջ Լիբանանու, Փիւնիկէայ, Ծովուն եւ Սամարիայ. — Բ. յայնկոյս Յորդանանու՝ Պերիա կամ երկիր Գաղաադացւոց, հարաւային մասն՝ ի մէջ Յորդանան, Յաբոկ, Առնոնի գետոց եւ ծովուն Աղտից. Իտուրէա (Գաւղանիտիս), յարեւելս Յորդանան գետոյ եւ ծովուն Գենեսարեթայ մինչեւ ցՀերմոն. Բատանէա, մասն մի Բասանու, Տրաքոնիտիս. երկիր ինչ լեռնային յարեւելս Գաւղանիտեայ, յարեւմուտս անապատին Արաբացւոց: Աւրանիտիս ի մէջ Յորդանանու, Դամասկոսի եւ անապատին Արաբիոյ: — Տիրէր Հերովդէս եւ Իդումեայ, եւ երկոցունց եւս աշխարհացն իբրեւ թագաւոր ազատ ի հարկաց: Արար յաղթութիւնս մեծամեծս ի վերայ Արաբացւոց, եւ արար զնոսա ընդ տէրութեամբ իւրով:

Հերովդէս գիտացեալ թէ պաշտպան կայ նմա կայսր Հռոմայեցւոց, չառնէր ինչ փոյթ զդժկամակութեանն Աստուծոյ եւ զօրհնացն նորա, այլ փոխանակ նորա ջանայր ամենայն հնարիւք հաճոյ լինել աստուածոյ իւրում երկրաւորի, այս ինքն Կեսարին Օգոստեայ, եւ ի վերայ այնչափ բռնութեանցն իւրոց եւ թշնամութեան հակառակ աւանդիցն կարգաց եւ յօրինուածութեանց՝ ժողովրդեան այնուհետեւ զհեթանոսութեան եւս բարս եւ զսովորութիւնս մուծանել ի Հրեայսն որ այնպէս նախանձաւոր էին սովորութեանց իւրեանց: Շինէր նա յԵրուսաղէմ թէատրոն եւ ամփիթէատրոն, յորս ի պատիւ կայսերն ցուցանէր տեսիլս մարտից եւ վիպասանութեանց, արշաւանս երիվարաց, եւ տեսիլ գազանամարտից, եւ այնպէս ամենեւին զրգռեցաւ զկծեցաւ իրաւունք ժողովրդեանն:

Զայսր ամենայնի զհետ եկին դաւաճանութիւնք վասն կենաց նորա, ի մէջ եկեալ յայտնեցան եւ պատժեցան բազում անգթութեամբ, բայց նոքիմբք առաւել եւս զարշեցաւ ի նմանէ ամբոխն, եւ վտանգ առ կուրծս երեւէր: Յայնժամ վասն զգուշութեան անձին իւրոյ ամուր ամուր տեղիս յաշխարհին յօրինէր եւ պնդէր պաշարաւ եւ զինուք: Բայց առաւել քան զամենայն ջանայր զարդարել եւ ամրացուցանել զքաղաքն Սամարիա, որ շինեալ էր միւսանգամ. ամրացոյց եւ մեծացոյց զԱշտարակն Ստրատոնեայ որ առ Միջնոյ ծովուն կայր, եւ անուն կոչեաց առաջնոյն Սեբաստէ եւ երկրորդին Կեսարիա, զերկոսին եւս ի պատիւ Օգոստեայ: Նա եւ բազում մեհեանս Օգոստեայ կանգնէր (25...):

Վասն մասամբ իւիք ընդ Հրէիցն հաշտելոյ եւ միանգամայն զիւր իսկ միտս հաճելոյ գեղեցիկ գեղեցիկ շինուածովք, եւ որպէս ինքն ակն ունէր՝ յաւիտենական ինչ յիշատակարան անձին կանգնելոյ, խորհուրդ ի միտ արկանէր զտաճարն Երուսաղեմացւոց ի հիմանց բրել եւ միւսանգամ գեղեցիկ շինել. եւ վասն մերժելոյ ի մտաց Հրէիցն զկասկածն թէ գուցէ բարուրք իմն իցեն

այն վասն զղջացմանն նոցա ամենեւին ի մէջոյ բառնալոյ՝ խոստա-
ցաւ նոցա մասունս եւեթ քակել զտաճարն եւ ըստ մասանցն շի-
նել: Հաւանեցան Հրեայք ընդ շինուածն եւ սկսաւ իսկ յամի 19, թէպէտ եւ բուն տաճարին յերկուս ամս կանգնեցաւ, բայց ամենեւին կատարումն եղեւ ի 46 ամն՝ ձգեալ եւ յետ մահու նորա[1]: Բայց այն շքեղ կազմած տաճարին մնաց իսկ նորոգումն իմն երկրորդ տաճարին Համարի եւ ոչ երրորդ շինութիւն:

## 396

Հերովդի էին երկու որդիք ի Մարիամնեայ, Աղեքսանդրոս եւ Արիստաբուղոս, որք վասն հանդոյ կայսերն լինելոյ առաքեալ էին ի Հերովդէ ի Հռոմ կրթել անդէն. ի դառնալ նոցա այսրէն (16) կրթութեամբն իւրեանց եւ բարուք գնացիւք սիրելի եւ մեծարոյ ժողովրդեանն եղեն: Բայց Սաղոմէ զայրացաւ ընդ իրսն զի երկընչէր թէ գուցէ խնդրեսցեն պատանեակքն զվրէժ մահու մօրն իւրեանց, եւ թէպէտ եւ Արիստաբուղոս ած կնութեան զդուստր նորա զԲերենիկէ, բայց սակայն Սաղոմէ ամենայն զօրութեամբն ջանայր բառնալ ի մէջոյ զպատանեակսն: Գտեալ նորա պատճառս ի բանից նոցա զոր ըստ մանկութեան իմն բարուց առանց խորհրդոյ խօսեցան, մատուցանէր զնոցանէ քսութիւն առ հայրն նոցա. վասն այնորիկ եւ Հերովդէս կոչեաց յարքունիս իւր զԱնտիպատրոս, զոր ծնեալ էր նա յառաջնոյ կնոջէն իւրմէ Դորեայ, եւ զմայրն եւս նորա ընդ նմա, եւ ամենայն իւիք մեծարոյ քան զայլսն զԱնտիպատրոս առնէր, մինչեւ ամենեցուն իսկ իմանալ թէ Անտիպատրոս սահմանեալ է լինել պայազատ թագաւորութեանն, եւ որպէս ի դէպ է, առաւել զայրացան եւ գժեցան որդիքն Մարիամնեայ, եւ զօրացաւ գժտութիւնն ի տան թագաւորին:

Թէպէտ եւ որ ուղիղն խորհէին, որպէս եւ Կայսրն իսկ ի գլխովին՝ ջանային հաշտեցուցանել զՀերովդէս ընդ Աղեքսանդրի եւ Արիստաբուղեայ, բայց Սաղոմէ եւ եղբայր նորա Փերորաս եւ Անտիպատրոս չդադարէին միւսանգամ զնոցն բորբոքել, եւ յետ բազում նենգութեանց այպա արկան արքայորդիքն ի բանտ եւ առաւ ի նոցանէ խոստովանութիւն թէ խորհեալ էին նոքա երթալ փախստեայ առ Արքեղայոս արքայ Կապադովկացւոց: Յայնժամ Հերովդէս որ զամենայնէ կասկածէր, հաստատուն եւ ճշմարիտ զամենայն առաջին ամբաստանութիւնսն համարեցաւ, եւ եցոյց Կայսերն:

Օգոստոս զկուսակալ կողմանցն Ասորւոց կացոյց լինել նոցա դատաւոր եւ խրատընտիր ի Բերիտոս. իսկ Հերովդէս բաց յայլոց

1 Տես Յովհ. Բ. 20:

անդէն տացէ կոտորել զնոսա, զի յետ մահու նորա սուգ առցէ երկիրն ամենայն։ Անկեալ ամենեւին ի յուսահատութիւն ահագին՝ զուր ջանայր խնդրել զանձն ապահովել։

Մինչ դեռ անդէն դժոխք ի կուրծս էին՝ անց 70ամեայ բռնաւորն ի յաւիտենականութիւն յերեսներորդ եւթներորդ ամի թագաւորութեան իւրոյ։ (Հրաման ազատութեանն չել ի գլուխ. թագաւորութիւն նորա որ ի մէջ որդւոցն բաժանեցաւ՝ անց տակաւ ի Հռոմայեցիս։)

Կամեցեալ մեծամեծ ձրիւք մտացի ընդ որոց խառն էր քաջութիւն սրտի՝ «Մեծ» կոչեցաւ Հերովդէս, այլ անդէն ի գահոյանդ թագաւորութեան իւրոյ ծառայ եւ ստրուկ էր ախտից իւրոց։ Աշխարհին ի նմա երեք տիրապետութիւնք աշխարհաւէրն մտաց՝ ազգի խաբէութեան, սպանութեան եւ անառակութեան, յանչափ առատութեան իւրեանց — այլ առաւել յայտնագոյն եւ լուսաւորագոյն երեւին ի կեանս նորա եւ ի մահուան եւ ի պատմութեան տոհմին նորա՝ ճանապարհք արդարութեան Աստուծոյ։

Մինչ չեւ մեռեալ նորա ի գերեզմանի՝ զարհուրեցաւ նա յերեւաց նորածին թագաւորին Հրէից։ — Ի ծննդեանն այնր աստուածային թագաւորի որոյ թագաւորութիւն չէր յայսմ աշխարհէ՝ այլ իւր նոր ժամանակ սկսանի — այնուհետեւ ինչ ժամանակ՝ զոր նախահայրքն եւ մարգարէք եւ աստուածապաշտք հնոցն կտակարանաց յառաջագոյն տեսին եւ կանխագոյն կարապետեալ պատմեցին, ցանկացան եւ նմին անկն կալան — ժամանակ շնորհաց եւ կենաց, ժամանակ փրկութեան համօրէն ազգի մարդկութեան։

| Նախ քան զՔր. | ՄԻՆՉԵՒ ՑԿԻՒՐՈՍ | | | |
|---|---|---|---|---|
| | ԵԲՐԱՅԵՑԻՔ | ՅՈՅՆՔ | ՄԱԿԵԴՈՆԱՑԻՔ | ՀՌՈՄԱՅԵՑԻՔ |
| 2200 | Եբեր | Յաւան | Քետիմ | |
| 1990 | Աբրահամ | | | |
| 1890 | Սահակ | | | |
| 1830 | Յակոբ | | | |
| 1800 | ԺԲ. Նահապետք | Պելասգացիք՝ Ինաքոս, Հելլենք | | |
| 1740 | Յովսէփ | | | |
| 1550 | Մովսէս | Կեկրոպս, Կադմոս Դանաւոս | | |
| 1500 | | | | |
| 1495 | Օրէնսդրութիւն | | | |
| 1400 | Յեսու, Դատաւորք — 1100 | Մինոս, Պելոպս | | |
| 1300 | | Թեսեւս, Արգոնաւորդք | | |
| 1200 | | Տրովական պատ. | | |
| 1100 | Թագաւորութիւն անբաժին Սաւուղ | Հերակլիդեանք սկիզբն գաղթականութեանց Յունաց | | Ենէաս |
| 1050 | Դաւիթ | Կոդրոս, Իշխանք | | |
| 1010 | Սողոմոն | Հոմերոս | | |
| | Թագ. բաժանեալ Յուդայ եւ Իսրայ. | | | |
| 970 | Ռոբովամ, Յերոբովամ | | | |
| 900 | Յովսափատ, Աքաաբ | | | |
| 880 | | Լիկուրգոս | | |
| 800 | | | Կարանոս | |
| 776 | | Ա. Ողոմպիադ. | | |
| 753 | | | | Ռոմուղոս, Ռոմոս |
| 730 | | | Պերդիկկաս Ա. | շինութիւն Հռոմայ |
| 720 | Վախճան թագ. Իսրայ. գերութիւն Ասորեստանեաց առ Սաղմանասարաւ | Ա. եւ Բ. Մեսսենեան պատերազմ (742—722, 683—668) | | Նումա Պոմպիլիոս |
| 679 | | | | Տուղղոս Ոստիլիոս |
| 678 | | | Արգէոս | |
| 640 | | | Փիլիպպոս Ա. | Անկոս Մարտիոս |
| 617 | | | | Ղ. Տարկուինիոս Պրիսկոս |
| 606 | Սկիզբն 70ամեայ գերութեանն Բաբելացւոց առ Նաբուքոդոնոսորաւ | | | |
| 602 | | Դրակոն | Եւրոպոս | |
| 594 | | Սողոն | | |
| 588 | Սեդեկիա, վախճան թագաւորութեանն Յուդայ | | | |
| 578 | | Պիւթեանն եւ Իսթմեան խաղք | | Սերուիոս Տուղղիոս |
| 576 | | | Ալկետաս | |
| 561 | | Պիսիստրատոս, Ոսկի դար Աթենացւոց | | |
| 547 | | | Ամինտաս Ա. | |
| 534 | | | | Ղ. Տարկուինիոս |
| 528 | | Հիպպարքոս եւ Հիպպիաս | | Սուպերբոս, վախճան թագաւորու. |
| 512 | | | | Ընկերհաշաւութիւն Բրուտոս |

39 *

## ՄԻՆՉԵՒ ՅԱՂԵՔՍԱՆԴՐՈՍ

| Թուական Ք. | ՅՈՅՆՔ | ՄԱԿԵԴՈՆԱՑԻՔ | ՀՌՈՄԱՅԵՑԻՔ |
|---|---|---|---|
| 510 | Հիպպիաս | (498) Աղեքսանդրոս Ա. | Ընկերհասարակութիւն |
| 493 | Սպարապետու. Աթէն. | | |
| 490 | Ճակատ առ. Մարաթոն. | | Սկիզբն ներքին գժտու- |
| 480 | Ճակատ առ. Սաղամինա | | թեանց |
| 479 | Ճակատ առ. Պղատեաւ | | |
| 454 | | Պերդիկկաս Բ. | Իշխ 10 ատենակալաց — |
| 431 | Պեղոպոնեսեան պատ. | | 450 |
| 404 | Սպարապետութ. Սպար- | | |
| 390 | տացւոց — 371 | Արգէոս Բ. | Արշաւանք Գաղղիացւոց |
| 371 | Ճակատ առ. Ղեւկտրեաք | Ամիւնտաս Բ. | |
| 369 | | Աղեքսանդրոս Բ. | |
| 363 | Ճակատ առ. Մանտինեաւ | (365) Պերդիկկաս Գ. | |
| 360 | | Փիլիպպոս Բ. | Սամնիտեան պատե- |
| 356 | Ա. Մեհենական պատ. | | րազմ — 290 |
| 339 | Բ. Մեհենական պատ. | (336) Աղեքս. Գ. Մեծ | |

## ՄԻՆՉԵՒ ՅՔՐԻՍՏՈՍ

| Թուական Ք. | ՀՌՈՄԱՅԵՑԻՔ | ՀԱՅՔ | ՀՐԵԱՅՔ |
|---|---|---|---|
| 332 | Կատարեալ հաւասա- | (323) Կուսակալք Մա- | (331) Ոնիա Ա. |
| 300 | րութիւն ռամկաց | կեդոնացւոց | Սիմոն Ա. Արդար |
| 280 | Պիւռոս յԻտալիա — 275 | | |
| 272 | Տարենտոն նուաճի | | |
| 264 | Ա. Պունիկեան պ. — 241 | | |
| 218 | Բ. Պունիկեան պ. — 201 | | (250) Ոնիա Բ. |
| 217 | Ճակատ առ. Տրասիմե-նեաւ | | Սիմոն Բ. |
| 216 | Ճակատ առ. Կաննեաք | | |
| 201 | Ճակատ առ. Զամա | | (195) Ոնիա Գ. |
| 190 | Ճակ. առ. Մագնեսիաւ | | |
| 168 | Ճակատ առ. Պիւդնաւ | | (167) Մատաթի. |
| 166 | | | Յուդա Մակաբէ |
| 149 | Գ. Պունիկեան պ. — 146 | Վաղարշակ Ա. | Յովնաթան |
| 133 | Գրակքեան յուզմունք | | (143) Շմաւոն |
| 124 | | Արշակ Ա. | |
| 118 | Յուգուրթեան պատ. | | (135) Հիւրկանոս Ա. |
| 111 | | Արտաշէս Ա. | (107) Արիստաբուղոս Ա. |
| 88 | Ա. Միհրդատեան պատ. | Արշաւանք Արտաշիսի | (106) Աղեքսանդրոս Ա. |
| 86 | —67 | Տիգրան Բ. | (79) Աղեքսանդրա |
| 75 | Բ. Միհրդատեան պատ. | Արշաւանք ի Պաղեստին | (71) Հիւրկանոս Բ. |
| 69 | —66 | Ճակատ առ. Տիգրանա-կերտաւ | Արիստաբուղոս Բ. |
| 64 | | Դաշինք ընդ Պոմպէի | Հիւրկանոս Բ. վերստին |
| 63 | Դաւն Կատիլինեայ | | |
| 60 | Ա. Եռապետութիւն | | |
| 53 | | Ճակատ առ. Խառանաւ | |
| 43 | Բ. Եռապետութիւն | Արշաւանք Բարզափրանայ | (39) Անտիգոնոս Բ. |
| 37 | | | Հերովդէս † 1 Ընջումն ցեղին Մակաբայեցւոց |
| 36 | | Արշամ | |
| 30 | Ոկտաւիանոս միահեծան | | |
| 3 | | Աբգար | |

| Նախ Քր. | Գ. ՏԱԽՏԱԿ ԺԱՄԱՆԱԿԱԿՑԱԿԱՆ | | | |
|---|---|---|---|---|
| | ԹԱԳԱՒՈՐՔ | | ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՄԱՐԳԱՐԷՔ | |
| | ՅՈՒԴԱՅ | ԻՍՐԱՅԵԼԻ | | |
| 1092 | Սաւուղ | | | |
| | Յեբուսթէ † 1045 | | | |
| 1052 | Դաւիթ | | | |
| 1012 | Սողոմոն | | | |
| 972 | Ռոբովամ | Յերոբովամ Ա. | | |
| 955 | Աբիա | | | |
| 952 | Ասա | | | |
| 950 | | Նաբատ | | |
| 949 | | Բաասա | | |
| 627 | | Եղա | | |
| 926 | | Զամբրի, Ամրի<br>Թամնի | | |
| 915 | | Աքաաբ | | |
| 912 | Յովսափատ | | 912 | Եղիա — 896 |
| 894 | | Ոքոզիա | 908 | Եղիսէ |
| 893 | | Յովրամ | | |
| 890 | Յովրամ | | | |
| 884 | Ոքոզիա | Յէու | | |
| 883 | Գոդողիա | | | |
| 877 | Յովաս | | | |
| 856 | | Յովաքազ | | |
| 840 | | Յովաս | | |
| 838 | Ամասիա | | | † 840 |
| 825 | | Յերոբովամ Բ. | 830 | Յովնան — . . . |
| 810 | Ոզիա | | | |
| 784 | | Անաէրընչութիւն | 790 | Ովսէէ — 720 |
| 770 | | Զաքարիա | | Ամովս — |
| | | Սեղղում | | Յովէլ° |
| | | Մանայեմ | | |
| 759 | Յովաթամ | Փակէիա | 759 | Եսայի — 714 |
| 757 | | Փակէէ | 759 | Միքիա — 720 |
| 743 | Աքազ | | | |
| 737 | | Անաէրընչութիւն | | |
| 726 | Եզեկիա | Ովսէէ | | |
| 720 | | Վախճան թագաւորութեան Իսրայելի | 714 | Նաւում — . . .<br>(Յովէլ° |
| 699 | Մանասէ | | | |
| 644 | Ամոն | | 630 | Սոփոնիա |
| 642 | Յովսիա | | 628 | Երեմիա — 570<br>Բարուք † 576 |
| 611 | Յովաքազ | | | |
| 610 | Յովակիմ | | 610 | Ամբակում |
| 599 | Յովաքիմ կամ Յեքոնիա | | 600 | Դանիէլ — 536 |
| 599 | Սեդեկիա | | 595 | Եզեկիէլ — 5 . . |
| 588 | Վախճան թագաւորութեան Յուդայ | | 590 | Աբդիու |

# Ի. ՑԱԽՑԱԿ ԱԶԳԱՀԱՄԱՐԱԿԱՆ

## Տոհմ Թագաւորաց Պարսից.

Աքեմենէս կացեալ յամի իբրեւ 875.

Պերոսեւս.
|
Կիւրոս.
Կամբիւսէս. ամուսին Մանդանէ դստեր Աժդահակայ.
|
Կիւրոս Մեծ Թագաւոր $\frac{560}{556}$ — 529. ամուս. Ատոսսա, դուստր Կիաքսարայ Բ.

Կամբիւսէս, Թագ. † 522. 3 ամուսինք. (2 քորք).

Զմերդիս † 522.
* * *
Սփենդադատ Թագ. իբրեւ Զմերդիս, † 522.

Կամբիւսէս.
|
Վշտասպ.

Դարեհ Ա. Թագաւոր † 486. Արտաւան. Արտափեռն.
ամուս. Ատոսսա, այրի կին Կամբիւսեայ.

Արտաբարզան. Աքեմենէս. Քսերքսես Ա. Թագ. † 465.
ամուս. Ամեստրիս.

Դարեհ † 465. Արտաշէս Ա. Երկայնաբազուկ, Թագաւոր † 424.
2 ամուսինք.

Քսերքսես Բ. Թագ. † 425. Սոգդիանոս Թագ. † 423. Դարեհ Բ. Հարճորդի. Թագ.
ամուս. քոյրն իւր † 404.

Արտաշէս Բ. Ուշեղ, Թագ. † 362. Կիւրոս Բ. Կրտսերն, Թագ. † 401.
բազում ամուսինք (2 դստերք).

Դարեհ † 362. Արտաշէս Գ. Ոխոս, Թագ. † 338. Արամենէս = Սիսիդամբիս.

Արշէս, Թագ. † 336. Պարիսատիս ամուս. Աղեքսանդրի Մեծի.

Դարեհ Գ. Կոդոմանոս = Ստատիրա, Թագ. † 330.

Ստատիրա, Ոխոս. Արիոբարզան.
ամուս. Աղեքսանդրի Մեծի.

## Ջ. ՏԱԽՏԱԿ ԱԶԳԱՀԱՄԱՐԱԿԱՆ

### Թագաւորք Մակեդոնացւոց.

### Ա. Տոհմ Աղեքսանդրի Մեծի.

Արքայ փիլիպպոս Բ. † 336. ամուսինք՝ 1. Ողոմպիա, 2. Կղէոպատրա. (3. Հարճք).

1. Աղեքսանդրոս Մեծ † 323. ամուս. 1. Ռոքսանէ, 2. Բարսինէ, 3. Պարիսատիս, 4. Ստատիրա.

1. Աղեքսանդրոս † 311. 2. Հերակղէս † 309.

1. Կղէոպատրա.

3. Փիլիպպոս Արիդէոս † 317. ամուս. Եւրիդիկէ.

3. Թեսաղոնիկէ ամուս. Կասանդրեայ.

### Բ. Տոհմ Անտիպատրեայ.

Անտիպատրոս հուսակալ † 320.

Կասանդրոս, Թագ. 301. † 298. ամուս. Թեսաղոնիկէ. Եւրիդիկէ, ամուս. Պտղոմեայ Ա.

Փիլիպպոս Ա. † 297. Անտիպատրոս † 294. Աղեքսանդրոս † 294.

### Գ. Տոհմ Անտիգոնեայ.

Անտիգոնոս Թագ. Ասիոյ † 301.

Դեմետրիոս Ա. Պաշարիչ Թագ. ի Մակեդոնիա † 284.

Ստրատոնիկէ ամուս. 1. Սելեւկեայ Ա. 2. Անտիոքեայ Ա.

Անտիգոնոս Գոնատաս † 243.

Դեմետրիոս Բ. † 233 Աղկիոնեւս.

Փիլիպպոս Բ. † 179. Անտիգոնոս Բ. Դոսոն † 221.

Պերսեւս † 166. Դեմետրիոս † 180.

Օտար Թագաւորք.

Պիւռոս Եպիրացի, 287 — 286.
Լիւսիմաքոս արքայ Թրակիոյ, 286 — 282.
Սելեւկոս Ա. արքայ Ասորւոց, 282 — 281.
Պտղոմէոս Կերաւնոս, 281 — 279.
Մեղէագրոս † 279.
Անտիպատրոս † 279.
Սոսթենէս † 278.
(Անտիգոնոս Ա....).

# Է. ՑՈՒՑԱԿ ԱԶԳԱՀԱՄԱՐԱԿԱՆ

Ցոհմ Սեղեւկեանց յԱսորիս.

Անտիգոնոս = Ղաւոդիկէ.

Արքայ Սեղեւկոս Ա. Նիկատոր 312 — 281. ամուս. 1. Ապամէ, 2. Ստրատոնիկէ. դուստր Դեմետրեայ Պաշարչի.

1. Անտիոքոս Ա. Սոտեր † 262. ամուս. Ստրատոնիկէ, մօրու. 2. Փիլա կին Անտիգոնեայ Ա. արքայի Մակեդոնացւոց.

1. Անտիոքոս Բ. Թէոս † 247. 1. Ապամէ. 2. Ղաւոդիկէ. ամուս. Մագասայ արքայի Կիւրենեայ.
ամուս. 1. Ղաւոդիկէ քոյր հօրն, 2. Բերենիկէ դուստր Պտղոմեայ Բ.

Սեղեւկոս Բ. Կաղինիկոս † 227. ամուս. Ղաւոդիկէ. Անտիոքոս Հիերաքս. Ստրատոնիկէ, ամուս. արքային Գամրաց.

Սեղեւկոս Գ. Կերաւնոս † 224. Ստրատոնիկէ ամուս. արքային Պոնտոսի. Անտիոքոս. Գ. Մեծն † 187. ամուս. Ղաւոդիկէ դստր. արքային Պոնտոսի.

Անտիոքոս, † 192. Ղաւոդիկէ. Սեղեւկոս Դ. Փիղոպատոր † 176. ամուս. քոյր իւր Ղաւոդիկէ. Անտիոքոս Դ. Եպիփան. † 164. Կղէոպատրա. ամուս. Պտղոմ. Ե. Անտիոքիս. ամուս. արքային Գամրաց.

Դեմետրիոս Ա. Սոտեր, † 150. Ղաւոդիկէ ամուս. Պերսեւսեայ արքային Մակեդ. Անտիոքոս Ե. Եւպատոր, † 161. Աղէքսանդրոս Ա. Բաղաս, † 145.

Դեմետրիոս Բ. Նիկատոր † 126. ամուս. Կղէոպատրա, դուստր Պտղոմեայ Զ. Անտիոքոս Է. Սիդեւացի † 131. ամուս. Կղէոպատրա կին եղբօրն. Անտիոքոս Զ. Էնթէոս † 142.

* *

Տրիփոն † 139.

Սեղեւկոս Ե. † 125. Անտիոքոս Ը. Գրիպոս † 97. ամուս. Կղէոպատրա. դս. Պտղոմ. Ե. Անտիոքոս Թ. Կիւզիկոս † 96. ամուս. Կղէոպատրա դստր. Պտղոմ. Ե.

* *

Աղէքսանդրոս. Բ. Զեբինաս † 123

Սեղեւկոս Զ. † 94. Անտիոքոս ԺԱ. † 93. Դեմետրիոս Գ. Եւկերոս † 87. Փիլիպպոս, † 83. Անտիոքոս ԺԲ. † 89. Անտիոքոս Ժ. Եւսեբէս † 90. ամուս. Մօրուն.

* *

Տիգրան Բ. Թագաւոր Հայոց — 64.

Անտիոքոս ԺԳ. Ասիացի † 58. Սեղեւկոս Է. Կիպիոսակտես † 57. ամուս. Բերենիկէ. դստ. Պտղոմեայ Թ.

